ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ



## ՆԵՐՍԷՍ ԼԱՄԲՐՈՆԱՑԻ

# ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԷՍԻ

# ԼԱՄԲՐՈՆԱՑՒՈՅ

## ՏԱՐՍՈՆԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆՔ

## Ի ԿԱՐԳՍ ԵԿԵՂԵՑՒՈՅ

ԵՒ

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ

## ԽՈՐՀՐԴՈՅ ՊԱՏԱՐԱԳԻՆ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՌՄՂԶ—1847



# ՅԻՇԱՏԱԿ




# ՄԱՂԱՔԵԱՆ

## ՏՈՀՄԻՆ



# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Եթէ իցէ ոք 'ի պարս վերջնոցն հարց՝ մերոյս մատենագրութեան որ հանգուցանելով մեծի Խորենացւոյն փառս յաճախեցէ ազգիս իւրում հանճարով, և սեպհական առացուածոյն ոճիւ, և լուսաւոր վարդապետութեամբն, և խոհական աշխուժիւք, և զուարթադէմ ազգասիրութեամբ, և ազդոյ պերճախօսութեամբ և այլովք բազմապատիկ բարեմասնութեամբք, առաքէն սուրբն Ներսէս է Լամբրոնացին արքեպիսկոպոս Տարսոնի։ Արդարև ճշմարիտ է բանս և անյերկուանալի, ըստ նմին և խոստովանեալ է յընտրողացն և յանաչառու քննադատից, զի ընտրելագոյն 'ի վաստակս երանելւոյս՝ յետ ճառիցն հռետորականաց կամ թէ դըպրոկ նոցին և համառօտ՝ դրուատից և զարմանալի արժանի մատենանս այս է բացատրութեան խորհրդոյ սրբոյ պատարագին։ Քանզի 'ի սմա աստուածայինն հոգի նորա և եռանդն ամենայն ուրեք փայլէ. 'ի սմա բազում ուրեք և բնիկն ճարտասանութիւն նկունազարդ գեղովն պերճանայ. 'ի սմա և դիւրիմաց պարզութիւն ընդ նախնի հայկազեանս վեհ բարբառոյ գեղեցկապէս զօդեալ։

Ի դէպ էր մեզ արդեօք առաւել քան զամենայն գիտարկութենէ մատենիս՝ ըստ առաջարկութեան բացատրելոց իրացն՝ երկարաբանել աստանօր. քանզի ամենայն ոք որ վեհագոյն 'ի սուրբ խորհուրդս եկեղեցւոյ դաւանէ զխորհուրդ սրբոյ պատարագին՝ պարտի զիմաստս ազօթիցն հետազօտել և կրկնել 'ի բա-

ցատրութիւնս սրբոց հարց, որոց միայն է զանիկ իմացուած այնոցիկ քօղախնդրեալ հոլանել: Մանաւանդ զի և այլ իմն առաւելագոյն կարևորութիւն է զրոցս՝ պատկանաւոր Թշուառ ժամանակիս, յորում աղանդաւորք ոմանք առ 'ի լրումն աղետից ազգիս 'ի ներքս սպըրդեալք՝ զորքոյ և վսեմական և ահաւոր խորհրդոյս ուրանան զէութիւն, և յօրինակ իմն առաստուերագիր զայն նուաստացուցանեն: Սակայն մեր այլում Թողեալ պատեհի զբացատրութիւն իրացս և զճոխաբար խորհրդածութիւնս զվարդապետութեանց երանելւոյս, զայն միայն յուշ արասցուք աստէն մերոցս ընթերցասիրաց, եթէ զիարդ և ընդդէմ օտարածին աղանդաւորաց մերոյ ժամանակիս կանխաւ իմն հոգւով սպառազինեալ երանելիս, զիսկապէս փոխարկութիւն զգոյացութեան հացին և գինւոյ 'ի ճշմարիտ մարմին և յարիւն փրկչին այնպէս 'ի նախաշաւիղ պատրաստութենէ արարողութեանցն և բանից, և 'ի հետևորդ պաշտամանցն և յաղօթից 'ի յայտ ածէ, զի մարթէր այսմ ևեթ մատենի ընդդէմ զրահեղեղ ուղխից մոլորութեան յազգի մերում Թումբ և ամբարտակ կանգնել:

Հանդերձ սոքիմբք զիարդ գեղեցկապէս և քանի իրաւամբք յանդիմանէ 'ի մատենի աստ և զայնոսիկ, որք զիմաստս ինչ աղօթից քահանայից և զպաշտօնէից կամակորեն, և ոչ ըստ սրբոյ եկեղեցւոյ վարդապետութեան կամին իմանալ զայնոսիկ կամ մեկնաբանել. զորս 'ի դէպ է այսր իսկ հրաւիրել առ ոտս բնիկ վարժապետի, որպէս զի ուսցին մի՛ զհարցն իւրեանց զվարդապետութիւն տգիտաբար կամակորել, և մի՛ դարձեալ զօտարացն պարսաւել զուղղափառ իմացուած և զդաւանութիւն, և իբրև 'ի մոլորելոց ոմանց ուծանալ 'ի նոցանէ:

Զայլոց գլխաւոր երկասիրութեանց սրբոյ հայրապետիս ծանօթութեամբք, որպէս և զճոխագոյն պատմութեամբ շնորհազարդ վարուց նորա զանց արարեալ,

հանճարոյ յիշատակութեամբ ևեթ անցից կենացն շա-տասցուք առ տեղեաւս ։

Ծնաւ Ներսէս յամին 1153. և էր հայր նորա Օ-շին իշխան Լամբրոնի, յորմէ Ներսէս զմականունն կալաւ Լամբրոնացի ։ Մայր նորա Շահանդուխտ Պահլաւունի, դուստր եղբօր Շնորհալւոյն, յարգանդէ նուիրեաց զնա Աստուծոյ. այլ յետ ծննդեանն սորջա-ցեալ՝ մինչդեռ տատանէրն 'ի խորհուրդս իւր, անկաւ մանուկն 'ի վտանգ մահու. յայնժամ վերստին մայրն բարեպաշտօն հաստատեալ զուխտ իւր, յառողջանալ մանկանն ընծայեաց զնա 'ի վանս Սկեւռայ, ուր և զարգացաւ նա՝ հրաժարեալ յաւագութեանց յորս ինքնակալն Մանուէլ հրաւիրէր զնա ։ Այլ յառաջա-դէմ լեալ 'ի գիտութիւնս, ուսաւ նա և զյոյն և ըզլա-տին և զեգիպտական դպրութիւնս ։

Ձեռնադրեցաւ նա յութուտասնամենի քահանայ 'ի հօրեղբօրէ մօր իւրոյ 'ի Շնորհալւոյն. և 'ի յաջորդէ նորա 'ի Գրիգորէ Տղայոյ ձեռնադրեցաւ արքեպիսկո-պոս Տարսոնի 'ի տիս քսանևերից ամաց ։ Այլ 'ի յաջորդ ամի, ըստ խնդրոյ միաբանից՝ առ որս երթեալ ստէպ և առանձնացեալ ճգնէր, ձեռն էարկ 'ի վաստակս յայս մեկնութեան սրբոյ պատարագին, որ նախընծայ երա-խայրիք են երկասիրութեանց երանելւոյս ։ Վասն որոյ և ինքն իսկ 'ի մատենի աստ առ միաբանսն բարբա-ռեալ ասէ. «Աղաչեմ զիջանել առ իմ տկարութիւն և մանկական իմաստ, որ 'ի սիրոյ ամենեցուն եկի յայս յանդգնութիւն՝ ծերունեացն և կատարելոցն հասա-կաւ ուսուցիչ լինել» ։

Ի դիմել խաչակրաց լատին զօրաց ընդ Փրեդերիկեայ արևմտեան կայսեր յարևելս, և յառնուլ զԻկոնիոն քա-ղաք փոքուն Ասիոյ, Լևոն Բ իշխան Հայոց յղեաց զերա-նելին առ Գրիգոր կաթողիկոս, հրաւիրել զնա առ ինքն՝ առ 'ի գնալ 'ի միասին ընդ առաջ կայսեր ։ Այլ ընդ ճա-նապարհայն սուլանին աւազակք զուղեկիցս նորա, և

զկարհս նորա յափշտակեցին, ընդ որս և զմնացեալն մեկնութեան սրբոյ պատարագին. ընդ որ յոյժ տրտմեցաւ երանելին, զի չունէր զհաւասար նորա: Այլ յետ ամաց իբր երկուց գտաւ այն 'ի Պահան գաւառի առ ումեմն 'ի մերազնեայց. և 'ի ձեռն եպիսկոպոսի տեղւոյն գնեալ զայն երանելւոյն, " եղև վշտագնեալ հոգւոյ նորա սփոփանք մեծ և մխիթարութիւն ", որպէս ինքն իսկ զայս այսպէս գրէ:

Վախճան երանելւոյս, վաղահաս վասն վշտակրութեանցն առ 'ի յոսոխաց ճշմարտութեան 'ի Հաղբատացւոց և 'ի Չորագետացւոց, եղև յամին 1198 'ի հասակի քառասուն և հինգ ամաց:

Համեմատութեամբ երից ձեռագիր օրինակաց զառաջիկայս յերիւրեցաք զտպագիր. առաջինն բոլորագիր գրեալ յամին ՉԾԵ (1306) 'ի Չորոյ վանս Արճիշոյ. երկրորդն ևս բոլորագիր գրեալ յամին ՉՁԱ (1332) 'ի վանս Կուքոյ. երրորդն նոտրագիր գրեալ ձեռամբ երանելւոյ տեառն Կոմիտասայ քահանայի: Հանդերձ այսու ամենայնիւ խոստովանիմք, զի առ վրիպակագիր թերութեանց երեցունցս ևս օրինակաց՝ կարօտի մնացեալս ուղղագրութեան ուրեք ուրեք ըստ հարազատագոյն օրինակաց, որ գտանելին աներկբայապէս յազգի մերում, և որոց ստացօղք մարթեն չնորհապարտ իւրեանց զազգն կացուցանել՝ եթէ ոչ զայնոսիկ անպտուղս ունիցին 'ի պահեստի:

Զխորհրդատետր սրբոյ պատարագին որպէս և էր 'ի գրչագրին անփոփոխ կալաք 'ի կարգին. ոչ օրէնս իմն և կանոն աւանդել զայն կամելով, այլ զայն այնպէս կալեալ իւր բնաբան մեկնիչն և ըստ այնմ առնոյր բացատրել:

# ՑԱՆԿ ԳԼԽՈՑ

# ՆԵՐՍԵՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ

## ՏԱՐՍՈՆԻ ԿԻԼԻԿԵՑՒՈՑ

### ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ ՎԱՍՆ ՈՒՂՂԱՓԱՌ ՀԱՒԱՏՈՑ ԵԿԵՂԵՑՒՈՑ, ՈՐ Ի ՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆ ԵՒ Ի ՏՆՕՐԷՆՈՒԹԻՒՆՍ ՔՐԻՍՏՈՍԻ




ՀԱՒԱՏԱՄՔ խոնարհականաւ գիտութեամբ զԱստուած նախ քան զամենայն եղականս, անեղ էութիւն, որոյ բնութեանն իսկութեան ոչ կարեմք մտօք վերահասու լինել եւ ոչ բանիւ պատմել, ոչ հուր զնա գիտեմք եւ ոչ լոյս, ոչ պարզութիւն եւ ոչ այլ ինչ որակ հասանելի, որպէս նախ քան զմեզ հարքն ասացին եւ ուսուցին մեզ. այլ զանհասն բնութեան անձնաւորութիւն երից դիմաց որոշման սրբոյ եւ թագաւորականի եւ երկրպագելի Երրորդութեանն, 'ի հայելն 'ի ստեղծուածս՝ որ ըստ պատկերի Աստուծոյ յանձինս մեր՝ փոքր ինչ համարձակիմք նշմարել. զի թէ պատկեր Աստուծոյ ստեղծաք եւ անուանեցաք, պարտ էր 'ի աչնուն ընդդէմ սորա իմաստից մտաց, զնախագաղափարին տեսանել զձեւ, թէպէտ եւ ոչ զբնութիւն. եւ 'ի տեսանելն հաւատալ այնմ որ հաւատայ, ասողին, եթէ “Ըստ պատկերի Աստուծոյ արարաւ մարդս „. բայց եւ այսպէս, որպէս պատկեր անշունչ 'ի նախատիպ կենդանւոյն զօրութենէ եւ 'ի բնութենէ որոշի, այսպէս եւ մեք 'ի խոնարհ մնամք յԱստուծոյ, ոչ ունելով նմանութիւն առ բնութիւն նորա եւ զօրութիւն, այլ միայն 'ի ձեւ յատկութեան անձնաւորութեանցն արժանի գտաք ըստ բանական հոգւոյս գոյանալ, զի մի ասասցուք 'ի սրտի, “Ո՞վ

ելանիցէ յերկինս, կամ ով իջանիցէ յանդունդս իմանալ զԱստուած»: Այլ որպէս ասէ Մովսէս, «Մերձ է բան գիտութեան նորա 'ի սիրտս մեր և յանձինս», որպէս նկարագիր կենդանւոյն 'ի կենդանագիրն. և գիտեմք պատկեր Աստուծոյ զիմանալի բանականս հոգի և զանձնիշխան, որ է էութիւն պարզ և աննիւթ, անապական և անմահ, իմաստուն յընտրութիւն բարւոյ և չարի և հանգուցեալ 'ի բարին, և սա տիրէ 'ի վերայ անբանս շնչոյ, որով ներգործէ 'ի զգայարանս և իշխէ մարմնոյս, և ինքն ըստ արդարութեան վարելով պարզ մնայ և սոցա գեր 'ի վերոյ:

Արդ զի ասացին ոմանք զնոյն զոգիս եռամասնեայ, բան գոլով, ցասումն և ցանկութիւն, սակայն մեր խօսս 'ի վերայ նորին նոյն էութեանն է, որ զեռամասնեայ ունի զօրութիւնս. և ահա նա անմահ բնութիւն և պարզ, որ և բերէ յինքենէ յառաջ բան եթէ ըստ խոհականութեանն, եթէ ըստ ցասման, եթէ ըստ ցանկութեան. այլ բանն որ 'ի նմանէ յառաջ գայ յեռամասնեայ հոգւոյն, և գոյացեալ անձնաւորի 'ի նմանէ, և այլ է՝[1] ամենայն իրօք քան զնա տեսանի[2], որ ոչ 'ի նմա է որպէս զծնունդ, և է առ նմա որպէս զհամաբնութիւն: Այսպէս ասէ և աւետարանիչն վասն Աստուծոյ բանին Քրիստոսի. «Ի սկզբանն էր բանն, և բանն էր առ Աստուած, և Աստուած էր բանն. նա էր 'ի սկզբանէ առ Աստուած»: Այսպէս և 'ի յարացոյց է տեսանել ճշմարիտ քննողի, և նշմարելովն հաւատալ իսկ, զի այս բանս որ անձնաւորեցաւ 'ի միտսն, և է առ նմա, կամօք ծնողի մտացն արտաքս բղխէ, և ելանէ առ Աստուած իմանալի խօսութեամբ[3], կամ իջանէ 'ի զգայարանս և սփռի 'ի մարդիկ լեզւոյ պաշտամամբ, և ձեռին սպասաւորութեամբ: Իսկ է խօսս բղխեալ այլ քան զբանն ծնեալ, զի ոչ թէ յելանելն սորա՝ նա 'ի մտացն պակասէ, այլ 'ի ձեռն ներգործութեան մտացն և բանին որ 'ի նմա՝ սա բղխէ, և նա 'ի ծնօղ միտսն անշարժ մնայ, և անձնաւորի 'ի մտացն. և 'ի բանէն՝ անձնաւորութիւն խօսիցն, եթէ առ իմանալիս ի-

1 Այսինքն՝ էակ կամ էութիւն, իսկութիւն:

2 Բ. օրին. Որոշ 'ի նմանէ:

3 Այլ օր. խօսակցութեամբ:

մնացականապէս, եթէ առ զգալիս սպասաւորութեամբ զգայարանացս որպէս և ասացաւ. այսպէս Քրիստոս ասէ և յաղագս Հոգւոյն սրբոյ. “Հոգին ճշմարտութեան որ ՚ի Հօրէ ելանէ, և յիմմէ անտի առնուցու և պատմեսցէ ձեզ”: Արդ ըստ էութեան և բնութեան անմարմին տեսանի, հոգին ծնօղ և բանն ծնեալ և խօսքն արտաքս բխեալ. սակայն տրամադրողին յերիս հատուածս, ՚ի հոգի, ՚ի բան և ՚ի խօսս: Այս պատկերաւս ՚ի նախագաղափարն Աստուած հայիմք իմացմամբ. և իմանամք զմի աստուածութիւնն և զմի զօրութիւնն և զբնութիւն, երիս անձնաւորութիւնս կատարեալս: Սակայն ՚ի ստորև մնայ յարացոյցս ՚ի նախատպէն բաղում խորք, զի Աստուծոյ բանն անձնաւոր է ՚ի նմա անցնողելի. իսկ մերս ցնդի հանապազ. և յԱստուծոյ բխումնն՝ ընդ զարարածս դիտութեամբ նորա, և առ ծնօղն է անաղաւաղելի՝, իսկ մերս աղաւաղեալ ստուերանայ. քանզի ապականացու և աղցաւոր բնութեանս հարկ է, զի ծնունդ բանի և արտաքս բխումն խօսից ապականացու լինիցի. իսկ անապականին է և անուանի անապական և անփոփոխ և անցնողելի և անշարժ և յամենեցունց ՚ի մէնջ խոստովանեալ երկրպագելի:

Այս երից անձնաւորութեանս ՚ի մի բնութիւն և յաստուածութիւն մի է կամք, մի զօրութիւն, մի տէրութիւն, մի իշխանութիւն, մի թագաւորութիւն, մի անեղութիւն, մի ՚ի վեր քան զժամանակ էութիւն: Պատճառ է Հայր միածնին՝ որպէս հոգի ՚ի նմա ծնեալն բանի, բայց ՚ի վեր քան զժամանակ, և ոչ որպէս մեր միտքս, զի ընդ աճել մարմնական հասակին ապա ներգործէ զծնունդ բանին. մի լիցի զայս յանմարմին պարզութիւն աստուածութեանն կարծել, և ժամանակ ՚ի ներքս ածել յանժամանակն ծնունդ, զի “Ի սկզբանն էր բանն”: Իսկ մեք այսմ կարօտիմք՝ վասն ընդ աղցաւոր մարմնոս բարետոհմութեան ոգւոյ շարամանութե. ապա թէ ՚ի սմանէ արտաքս էր, ոչ կարօտէր ժամանակի առ ՚ի ծնունդն բանի, զի և ոչ ինքն ժամանակաւ կատարի, որպէս ոմանց արտաքնոցն թուի, այլ կատարեալն վասն անկատար մարմնոյս, որ անճառ խառնումն առ նա

1 Յօրինակի միում Անողօփէլի:

ունի , 'ի ներգործելոյ խափանի , մինչև յօդուած սորա կատարի : Եւ առ Աստուած ոչ մարմին և աճումն նորին և ոչ անկատարութիւն , այլ լոյս է փառաց նորա միածնին և նկարագիր էութեանն . և արտաքս առաքումն 'ի նմանէ Հոգւոյն՝ և քննող է խորհրդոց . նա և որպէս խօսիցն գիտութիւն արտաքս գայ 'ի մտացն 'ի լսողսն՝ և յինքենէ ոչ պակասէ , այսպէս և Հոգին սուրբ իմաստնացուցանէ զերկնաւորս և զերկրաւորս խորոցն Աստուծոյ , և առ բխողին միշտ է :

Զայս երիս անձինս[1] և զմի աստուածութիւնս խոստովանիմք երկնի և երկրի արարիչ , որ և ստեղծ յերկինս զհրեշտակս և յերկրի զգալեաց զսեռս . "Արար զհրեշտակս իւր հոգիս , և զպաշտօնեայս իւր բոց հրոյ" ասաց մարգարէն : Եւ զի նախ է իմանալեացն սեռ քան զգալեացս , կարծեմ 'ի բանն Աստուծոյ որ առ Յոբ ակնարկեալ ուսանիմք . "Յորժամ եղեն , ասէ , աստեղք ծերք[2] , ամենայն հրեշտակք աստեղաց օրհնեցին զիս մեծաձայն , և ամենայն հրեշտակք իմ գովեցին զիս" : Արդ յայս իմանալի էութեանց հրեշտակաց որք կան շուրջ զԱստուծով 'ի պաշտօն նորա , միոյն ընդվզեալ յանցեաւ 'ի սահմանեալ կանոնէն , որպէս մեզ անհաս է տեսակ յանցանացն , և 'ի ստորև կործանեալ սատանայ անուանեցաւ , և չարացեալ ինքնիշխան կամօք՝ գըտակ չարեաց եղև :

Յետ որոյ արար Աստուած զորս 'ի վերայ երկրի զարդս 'ի պէտս մարդոյն տէրութեան զոր ստեղծ . և արար զմարդն 'ի պատկեր իւր ըստ իմանալին բնութե̃ , խառնեալ ընդ զգալի նիւթս հողոյ , զի նիւթականն և ըզգայականն արարածոցս լիցի իշխան , այլ և յօդակապ իմանալւոյ և զգալի աշխարհացս բնակչաց : Որում ետ աչս՝ բանական հոգւոյն զմիտս , հայել նովաւ յիմանալի աստուածութիւնն , և ձգել յինքն զճառագայթս Հոգւոյն սրբոյ շնորհաց , այլ և ճաշակել զիմանալի խորհրդոցն Աստուծոյ զտեսութիւն . ետ և զգալի աչս՝ ճառագայթիւք արեգական վայելել յերևելի արարածոցս վայելչութիւնն : Ընդ այս մարդոյս՝ որ եղաւ գործել զդրախտ իմաստիցն Աստուծոյ և պահել 'ի դրախտն

1 Մի օրին . Անձնաւորութիւնս :    2 Մի օրին . Ցերք :

նուԹական, մախացաւ բանսարկուն, և պատրանօք դա-ւաճանեաց. և սողացաւ[1] մարդն 'ի կամացն Աստուծոյ և յօրինացն խաբողին կամօք, և ոչ իւրովք ախոր-ժականօք[2] իբրև զնա. քանզի սպանող է՝ ոչ իւրոյ անձինն մարդն, որ դատապարտեցաւ մահու, այլ սատա-նայ, որպէս ասաց Քրիստոս. "Նա մարդասպան է 'ի սկզբանէ": Իսկ մարդն զի պատրանօք մեղաւ, ընդ պար-տիլն զղջացաւ և ընդ պատիժ մահուն վշտացաւ և եր-կիւղիւ մահուն կայր վտարանդի 'ի ծառայուԹի. յաղագս որոյ և յարդար իրաւանցն Աստուծոյ վերստին 'ի կեանս կոչեցաւ, իբրև պատրանօք և ոչ կամօք մեղուցեալ:

Այս մեր երևեցաւ զղջումն, ասիցէ ոք արդեօք. 'ի նոյն ինքն յԱդամ և 'ի ծնունդս նորա, որպէս գրէ իմաս-տունն. "Նա զնախաստեղծն զհայրն աշխարհի զմիայն հաստատեալ պահեաց, և փրկեաց զնա 'ի յանցանաց իւրոց". իսկ յորդիսն՝ յԱբրահամ և 'ի տոհմ իւր, 'ի Մելքիսեդեկ, 'ի Յոբ և յայլս 'ի հեԹանոսաց, ըստ որում գրէ առաքեալ. "ՀեԹանոսք որ զօրէնս ոչ ու-նէին, բնուԹե զօրինացն գործեցին": Արդ նոքա որք իմանալի մտացն հաւանէին, ճանաչէին զիմանալին Աս-տուած, և լուսաւորէին 'ի ճառագայԹից նորա. իսկ որք 'ի զգայարանաց և 'ի հեշտուԹենէ մարմնոյ գե-րէին, օտարացեալք յարարչէն՝ բանսարկուին կամաց տային զանձինս 'ի գերուԹիւն. և այսպէս յաճախեալ մարմնասիրուԹիւնն յաշխարհ՝ պակասեաց գիտուԹին Աստուծոյ. և գրեԹէ ամենեքեան զաչս մտացն, որում անկ էր 'ի վեր հայել, զգայարանօք ընդ ստորինս ցնդե-ցան, և սատանայի պատրանացն ծառայեցին, Թիւրեալ զբնուԹիւնս յիւր բնական գեղոյն վայելչուԹենէ. և արարին զսատանայ բազմապատիկ մեղօքն չարախօս իւ-րեանց առաջի Աստուծոյ. իբր Թէ կամօք սիրեն սոքա զչարուԹիւն, որ արտաքոյ է բնուԹեն, որպէս և ինքն սիրեաց. և էր վկայ նորա ստուԹեանն ամենեցուն ան-խտրաբար ընդ մեղս բերիլն: Յոբ զի արդար երևեցաւ մարմնով, 'ի հարցանելն Աստուծոյ՝ նորա պարապելոյն տայր զչնորհն, և ոչ արդարոյն անձնիշխան կամացն, յորմէ և խայտառակեալ պարտեցաւ:

1 Մի օրին. Սողեցաւ:  2 Մի օրին. Իւրով ախորժակօք:

Նորա թիւրեցան մարդիկ ինքնիշխանութեամբ յու-
զիղն շաւղաց՝ հաւանեալք պատրողին, և զտիղմ մար-
մնոյն հեշտութեան արկեալ քող հոգւոյ՝ խաւարեցու-
ցին զիմանալւոյն հայեցողութիւն. սակս որոյ և բարկա-
ցաւ Աստուած 'ի վերայ նոցա, ըստ առաքելոյ. «Բար-
կութիւն և սրտմտութիւն Աստուծոյ 'ի վերայ ամե-
նայնի որ գործէ զչար»: Այս էր բարկութիւն իրաւամբք,
զի էր կար նոցա հպել հոգւով յիմաստս Աստուծոյ 'ի
յօրանալն մարմնով յիրս աշխարհիս. բայց ոչ կամեցան,
և եղեն ատեցեալք յԱստուծոյ վասն զհոգի սպանանե-
լոյ 'ի մեղս մարմնոյ, և գտան մեռեալք, ըստ առաքե-
լոյ, «Մինչ դեռ մեռեալն էաք 'ի մեղս մեր»: Ուստի և
արգել արդարութիւն նորա զողորմութիւնն յայտնեալ որք
ոչ խնդրեցին զնոյն. զի անկար էր, որպէս և կափուցե-
լոց աչաց, 'ի քաղցրութիւն լուսոյ նայելն: Իսկ յառաջա-
նալ[1] զարուց ժամանակացն երևեցան ոմանք՝ որք սկսան
հայել 'ի բնութեանս ուղղութիւն, և բացատրել 'ի
նմանէ իմաստիցն քննութեամբ զարտաքսուստ մնեալ
զվատթարութիւնն. որք և սահմանեցին անիրաւութիւն
հոգւոյ զչարութիւնն՝ և զորս 'ի նմանէ ծնունդ՝ արդա-
րութիւն, զառաքինութիւն, և զորս 'ի նմանէ ծնանի,
և այնպիսի ջանալ տնօրինել զսահմանադրութիւնս ոչ
կարացին տիրապէս ճանաչել, թէ թոյնք սատանայի
խառնեալ ընդ մեզ ստիպէ առնել զանիրաւութիւնն.
այլ միայն նայելով 'ի կամս հոգւոյս ճգնութեանն ա-
նօարութեամբ՝ անիրաւութիւն եդին նմա զմեղս. զի
'ի պահելն զբնութիւնս ուղիղ, և 'ի պատահելն մեղաց՝
զղջմամբն ցուցանիմք՝ թէ արտաքոյ բնութեանս սայ-
թաքեցաք. և զառաքինութիւնն արդարութիւն, զի
ուրախ լինելն 'ի նոսին յայտնէ բնական կիրս, և բնու-
թեանս՝ ըստ ուղղութեանն ներգործութիւն. ըստ այնմ
ցուցանելն զգործս օրինացն գրեալ 'ի սիրտս իւրեանց
վկայութեամբ մտաց իւրեանց, և յանդիմանեալ զմի-
մեանս 'ի խորհրդոց իւրեանց:

Այսպիսի վկայութեամբ մտաց և առանց ուսման
գտաւ 'ի մէջ նոցա քաղաքական[2] օրէնք, իշխանու-
թեան կարգ, բարւոյ գովութիւն և չարի պատուհաս.

1 Մի օրին. Յառաջանալով:

2 Մի օրին. Քաղաքականութեան:

և համառօտ ասել, օրինացն կամաց որ յԱստուծոյ՝ լրումն, որ քան զամենայնս օգնականք էին մտացն իմաստութե՟ և վերհայեցողութեան, որով և խնդրեցին զԱստուած ունել ըստ բնականս կամաց փափաքման, և նմա վասն առեղծանելոյն և նախախնամելոյն շնորհ ունել պաշտամամբ: Սակայն ոչ կարացին զճշմարիտն գտանել. զի հաճեցաւ իմաստութիւնն Աստուծոյ ոչ ճանաչել աշխարհի իմաստութեամբ իւրեանց զԱստուած, որպէս զի մի պարծեսցի մարմին առաջի նորա. բայց մարդիկ զաստուածսիրութեանն փոյթ ոչ թողին անպտուղ, այլ առին 'ի պաշտօն զօրս և սիրեցին, և յորոց օգուտ ունել վարկանէին. և այս է 'ի տեառնէ ասացեալ խոկումն անառակին, որ մտածէր. "Յարուցեալ գնացից առ հայրն իմ,,. քանզի ընթացքն է սոցա յառաջանալն 'ի բարեգործութիւնն և յաստուածսիրութիւն: Եւ տես, զի նախ նա խորհեցաւ գալ առ հայրն և ընթացաւ, և ապա հայրն տեսեալ զնոյն 'ի հեռուստ՝ ընդ առաջ ելն և գթացաւ. այսինքն զի նախ մարդիկ խնդրեցին ունել զԱստուած և գտանել զարարիչն իւրեանց և զնախախնամիչ, և ապա երևեցաւ Աստուած նոցին և ծանուցաւ, զի մի տեղի գտցէ բանսարկուն բամբասել զԱստուած որպէս առ Յոբն. իբր թէ ակամայ և բռնի ուղղեաց զմարդկան փրկութիւն, որ էր զրկումն անձնիշխանականի բնականս մեր առեղծուածոյ. ուստի գտանէր և իւր դատելն անիրաւութիւն. վասն զի կարելի էր Աստուծոյ և զնա ակամայ 'ի պատժոց ճողոպրել. այլ զի մի այս լիցի, արդարութիւնն Աստուծոյ թոյլ ետ՝ յորժամ կամեցաւ անձնիշխանս՝ զմեղանչելն, և վատնել զամենայն գանձս առաքինութեան անառակութեամբ: Եւ յորժամ խոկաց զառնա դարձն և ընթացաւ, ապա ընկալաւ և յայտնեաց զգթութե՟ն չափ սքանչելի: Եւ մինչ հեթանոսք ամլեալք աստուածսիրութեամբն 'ի հայրենի տունն բարուք կարգօք ճանապարհ արարեալ փութային, նախահոգակն Աստուած զփրկութիւն նոցին 'ի բերանս մարգարէիցն նախաճառեալ նշանակէր ուրուականօք առակաց, զանխուլ 'ի չարութեանն հօրէ. իսկ անառակ որդին որ գայր առ հայրն, եհաս ճանապարհաւն մինչև յօդդ[1], ուր զշրջանս

1 Մի օրին. Յօդդ, որ զշրջանս:

սատեղաց և լուսաւորացն քննեալ առ 'ի գտանել 'ի մէջ նոցին զարարիչն՝ եւ 'ի յերկրէ, անց ընդ ծով, կոխեաց զտարերս, եթող զզարդս սոցա, և հասեալ յեթերդ՝ այլ ոչ կարէր յառաջել. յոր հայեցեալ 'ի բարձանց 'ի սրբութէն իւրմէ Հայրն երկնաւոր՝ 'ի հեռուստ գթացաւ, և յարուցեալ եկն ընդ առաջ նորա, անկաւ զպարանոցաւն և համբուրեաց. այսինքն՝ զի ընդ բնութիւնս խառնեալ սիրով մարդացաւ. քանզի համբոյրն՝ միութեան է նշանակ 'ի ձգմանէ սիրոյ. և այս եղև ներմարդութեամբ բանին Աստուծոյ 'ի սրբոյ կուսէն. ուստի յայտնեալ մարդ յաշխարհ՝ տնօրինեաց մարդկան ազգի զփրկութիւն. և տնօրէնութիւն զայս վարկանիմ: Քանզի ցուցաք նախ 'ի բանս՝ թէ մարդիկ ծանեան զբնութեանս ուղղութիւն, և բացատրեցին զչարն 'ի բարւոյն ուղղակի, զոմն անուանեալ անիրաւութիւն կամաց և զոմն արդարութիւն. սակայն ոչ կարացին արգասք լինելոյն յանիրաւութէ խոտորել: Մի՞ արդեօք զի ո՞չ կամեցան. և ապա ընդէ՞ր գովեցին զարդարութիւնն և պատժեցին զչարութիւնն. ահաւասիկ յայտ է զի կամեցան զլինելն արդար, և այնր աղագաւ գովեցին զնոյնն. բայց սակայն զդաւաճանիչ բանսարկուն զկնի ունէին, որ զինէր զօրէնս իւր զչար՝ հակառակ օրինաց մտացն նոցա, եպերէր և գերէր զնոսա յօրինաց մեղացն վիհս՝ անդադար մարմնոյս հարկաւոր կրիւքն: Սակայն նոքա ոչ կարացին ճանաչել, թէ այս նորա է դաւաճանութիւն. այլ միայն անիրաւութիւն և չարութիւն եղին բանական հոգւոյս զյանցանսն. և թէ ո՛ էր որ առիթ լինէր սորա անիրաւելոյ զինքն, տգիտացան:

Այլ բանն Աստուծոյ համբուրեալ զբնութիւնս և ընդ սմա խառնեալ. որպէս զի զայս, զոր մարդիկ վկայեցին արդար գոլ բնաւորապէս և ոչ կարացին արդարանալ, պահեսցէ 'ի բնական արդարութիւնն՝ և զհայր մեղացն խայտառակեսցէ. և զի զաստուածատուր օրէնսն, զոր կարելի էր մարմնաւորացս պահել և տկարացաք 'ի խաբանաց թշնամւոյն, պահեալ 'ի գլուխ հանցէ, և զարդարութիւն օրինացն 'ի վերայ մեր սփռեալ՝ դատապարտեսցէ ընդ խաբեցելոցս զխաբողն, որպէս գրէ առաքեալ. “Վասն այսր խորհրդոյ հաւատամք զբանն մար-

մին եղեալ, որ և բնակեաց 'ի մեզ„. զորոյ մարմին լինելն “Ոչ ոք յիշխանաց աշխարհիս այսորիկ ծանեաւ. զի թէ էր ծանուցեալ, ոչ արդեօք զՏէրն փառաց 'ի խաչ հանէին„, որպէս աստ առաքեալ: Այլ էր այս խորհրդոյ խնամս առ Աստուած ծածկեալ յամենայն եղականացս, 'ի հրեշտակաց անտի և 'ի դիւաց և 'ի մարդկանէ. զի հրեշտակաց 'ի ձեռն եկեղեցւոյ յայտնեցաւ. և դևք թէ գիտէին ոչ մարտնչէին ընդ նմա որպէս ընդ մարդ, զեթէն 'ի մէջ դնելով որդիութեանն Աստուծոյ, եթէ տէր փառաց զնա գիտէին:

Այսպէս յայտնեցաւ Աստուած 'ի վերայ երկրի մարդ՝ անհաս և յետ մարմնանալոյն յեղականացս, զի տացէ տեղի բանսարկուին մարմնոյս հարկաւոր կռիւքն մարտընչել ընդ ինքեան. քանզի նա զինքն Աստուծոյ մարտակից ոչ գիտէր, և ոչ պատերազմէր ընդ Աստուած քաջցիւ՝ թէ ծանուցեալ էր գոլ զնա Աստուած. այլ վանէր որպէս ընդ մարդ և ստիպէր ըստ հարկաւոր կռիւցն խոտորեցուցանել յաւելորդսն. սակայն լոյս աստուածութեանն 'ի խաւար մարմնոյն լուսաւոր գոլով խաւար մեղացն ոչ հպէր 'ի նա, որ անհասն էր 'ի խաւարի հօրէն. զի մարմինն հոգւովն հանդերձ կրէր զիւր բնական կիրսն յիւրաքանչիւր հասակս փրկչին, և աստուածութիւնն անհաս 'ի թշնամեացն էր խառնեալ ընդ նմին: Ջանայր սատանայ պատրել և խառնել զաւելորդսն ընդ բնականսն՝ և ոչ կարէր, զի լոյս աստուածութեանն խառնեալ ընդ լուսոյ մտացն՝ և նովաւ ընդ մարմնին, զխաւար նորին բնական կռիւցն պահէր 'ի սահմանս իւր, և ոչ տայր չարութեանն հօր սերմանն առ ինքն մերձենալ. այլ ծանուցեալ զաւելորդսն՝ առ ոտն կոխէր 'ի կռիւս զբնականսն. ուստի և եղև տղայ, և զտղայական ախտից մարտն վանեաց, տղայական կռիւքն ամաչեցուցեալ զթշնամին: Մանուկ, և 'ի վարժումն հնազանդութեան ծնօղացն ոչ կարաց յողդողդել զնա: Երիտասարդ, և ցանկութեամբքն ոչ կարաց գայթակղեցուցանել զնա. և մարտն ոչ եթէ մարմնոյ առ մարմին, այլ հոգիքն չարք ընդ հոգին Աստուծոյ մարմնացելոյ, և հոգւոյ նորա կամաց՝ որ անշարժ եկաց 'ի ներհակացն՝ ոչ եղև կոխան. ըստ որում և ասէ Եսայի. “Մինչ չև ծանուցեալ իցէ մանկանն զբարի կամ զչար,

անարգեսցէ զչարն և ընտրեսցէ զբարին”· և այսպէս պարտեալ յամօթ եղև սատանայ և դևք նորա վերակացուք ախտից, 'ի նմանէ՝ որ երևեցաւ 'ի նմանութիւն մարմնոյ մեղաց, և դատապարտեաց զնոսա մեղաց աշխարհի պարտապանս մարմնովն իւրով։ Քանզի չարախօսէին զմարդկանէ առաջի Աստուծոյ, թէ կամօք և բնութե̃ չարին 'ի մեղս · և ահա մարմինն Քրիստոսի 'ի բնականսն՝ պարսպեալ 'ի ներգործութենէ նոցին դաւաճանութեանցն՝ արդար գտաւ և անարգող չարին և ընտրող բարւոյն · և այսու հաշակեցաւ Աստուած 'ի բնութեանս արարչութե̃ն՝ թէ ոչ ստեղծ չար և բնութեամբ չարակամ· և մարդիկ ստուգեցան 'ի բնական առաքինութեանն բազմանս, թէ զոր սիրենն բնութե̃՝ խափանին 'ի ներգործելոյ, ոչ բնութեամբ կամ կամօք, այլ 'ի գայթակղեցուցանող թշնամւոյն որոգայթից, որ պատճառս առեալ զպատուիրանն վասն ապստամբեցուցանելոյ 'ի նմանէ՝ գործեաց 'ի մեզ զամենայն ցանկութիւնս ախտից։

Արդ յորժամ զայս հանդէս ած 'ի գլուխ Աստուածն մարդացեալ, ներեաց Հայր մեզ · ըստ այնմ· “Ի ներելն Աստուծոյ 'ի հանդէս արդարութեան նորա 'ի ժամանակի աստ յայսմիկ, զի եղիցի նա արդար, և արդարացուսցէ զայնոսիկ որք 'ի հաւատոցն Յիսուսի”· քանզի որպէս ասացաք, ինքն արդար ցուցաւ հանդիսիւ արդարութե̃ն Քրիստոսի 'ի ստեղծուածս իւր, և մեք առ 'ի նոյն հաւատով։ Տեսին զայս և հրեշտակք ըստ առաքելոյ · “Որ երևեցաւ մարմնով, արդարացաւ հոգւով, յայտնեցաւ հրեշտակաց”։ Եւ 'ի նոյն ամաց երեսնից, որ է հասարակութիւն ընթացից կենացս, և անցք ընդ եռացումն բնութե̃ս, ածեալ 'ի գլուխ զյաղթութիւնսն բանին մարմնացելոյ, և կոխեալ զամենայն ախտս որջսերմանի 'ի կիրս մարմնոյս, ած Աստուած վկայ նմին յանապատէն զյառաջընթաց մկրտիչն Յովհաննէս · առ որ եկն տէրն մեր 'ի մկրտութիւն ընդ այնոսիկ՝ որք խոստովանէին 'ի ջուրսն Յորդանանու զմեղս իւրեանց առաջի նորա։ Եւ տեսեալ Յովհաննու 'ի հեռուստ զօրինօք բնական կրից անմեղութիւն նորա, հրաժարէր 'ի մկրտելոյ զայն, որ անկարօտ էր մաքրութե̃։ Իսկ նա ասէր, “Թոյլ տուր, զի այսպէս մեզ վայելէ

լնուլ զամենայն արդարութիւնս „ . այսինքն թէ զբովանդակ արդարութիւնս՝ զոր եդ օրէնքն մարմնոց , և ծանեան հելլենացիքն հոգւոց, զի ես միայն 'ի մարդկանէ գործով կատարեցի . արդ թոյլ տուր կալ առաջի քո , և զ'ի գլուխ ածեալ արդարութիւնս յերկուց և յերից վկայից հաստատել ըստ կամաց օրինացն ։ Իջ ապա 'ի ջուրն . և զի ոչ ինչ ունէր խոստովանել, ել վաղվաղակի . տեսին հրեշտակք տեսին և ամենայն դևք, թէ միայն 'ի մարդկանէ բնական կրիւք վարեալ՝ արդար է, ոչ ինչ սայթաքեալ . յամօթ եղև և սատանայ՝ չարախօսն բնութեանս , զի յանդիմանեցաւ ինքն առիթ մեղաց , և ոչ սա ։ Ձայնեաց Հայր 'ի յերկնից . " Դա է որդի իմ սիրելի , ընդ որոյ տնօրէնութեան գործոյն հաճեցայ „ . այսինքն , զի մարմնով դա միայն զկամս իմ հաճոյացոյց [1] ։

Արդ ըստ աստուածութեանն անկարօտ էր այսմ վկայութեան Յովհաննուէն . սակայն մարդկութիւնն կարօտ էր տնօրինաբար ունել զվկայութիւնն Աստուծոյ , թէ արդար է . զի անսուտ բնութիւնն ճշմարիտ է , և ճշմարտութեան վկայ է ։ Եւ սորա հաճոյ լինելոյ վկայութիւնն՝ հաճոյ գտաւ իւրև զամենայն մարդկութիւն . ուստի և Հոգին սուրբ զոր փչեաց Աստուած 'ի մարդն և յետ յանցանացն բարձաւ , եկն վերստին և եկաց 'ի վերայ բնութեանս նորոգողին Յիսուսի , և ած 'ի նա զամենեսեան զմեզ շնորհօք իւր . քանզի նովաւ 'ի մեզ անցանէ շնորհն ։ Արդ ոչ չափով տայ Աստուած զՀոգին Որդւոյ . և նա ինքն ոչ կարօտի իւրոյ Հոգւոյն , և առնու զնա իբրև զշնորհ . սակայն ըստ տնօրէնութեան և սպասաւորութեան զոր սկսաւ առնել բնութեանս մեր՝ իրաւամբք և արդարութեամբ նորոգութիւն , և առնու և կարօտի , զի 'ի նա մեք առցուք ։ Քանզի նոր Ադամ էր , ցոյց թէ այս այն մարմին է Ադամայ , որ զրկեցաւ 'ի Հոգւոյն սրբոյ ըստ յանցանաց , և առ զնոյն վերստին արդարութեամբ մարմնոյ ըստ արդար իրաւանցն Աստուծոյ . ըստ այսմ խորհրդոյ առ զիւր հոգին ինքն Յովհաննուեն և ած առ Քրիստոս ։ Եւ դարձեալ , ոչ թէ զի որ 'ի Քրիստոս մարդկութիւնն այսմ կարօտ էր , կամ ընդ բանն միացեալ մարմինն Հոգւոյն որպէս

1 Մի օրին . Հաճեցայ ։

կարօտ զօրանայր, մի՛ լիցի. քանզի և զամենայն յաղ-
թութիւնն 'ի գլուխ եած նախ քան զիջումն Հոգւոյն.
այլ որպէս ասացի, մեզ քահանայապետ եղեալ՝ մեզ
եառ և 'ի մեզ անցոյց զշնորհսն. ըստ այնմ, "Ի վերայ
սոցա ես սուրբ առնեմ զանձն իմ, զի եղիցին և սոքա
սրբեալք ճշմարտութեամբ.": Յորդ առ զՀոգին, և օ-
ծաւ նովաւ տնօրինաբար, որ անկարօտն էր. սակայն
սատանայ որ ոչ գիտէր զԱստուած ընդ մարմինն միա-
ցեալ, որպէս զլրումն կարօտութեան համարէր նմա
զՀոգւոյն ընդունելութիւն, և իբր զյաղթութեան փո-
խարէն, ըստ այլ մարգարէիցն: Այլ տես, զի նախ քան
զՀոգին ոչ ինչ արար Քրիստոս նշանս և սքանչելիս,
զի մի՛ երևեսցի մարտակցին, թէ առաւել է քան զմի
ոք 'ի հասարակաց մարդկանէ, որ և ընդ նմա որպէս ընդ
մարդ մաքառեցաւ, և զիւր յաղթահարիլն 'ի մարդոյ
գիտէր. իսկ ապա զգեցեալ Քրիստոս զՀոգին, և որ-
պէս թէ կարօտ նովաւ զօրացեալ, կրկին դրդեաց նա-
խանձն զմարդասպան թշնամին 'ի մարտ ընդ նմա. որ և
եկաց 'ի լերինն առաջի փորձել զնա զգայապէս, որ մին-
չև ցայժմ իմացականապէս. զի այս է նորին սովորու-
թիւն, յորժամ 'ի ներքս պարտի, յերեսս երևի, որպէս
և սրբոցն, որք զօրացան Քրիստոսիւ, արար 'ի յետոյ:

Յորդ կացեալ 'ի լերինն առաջի՝ փորձէր զնա ըստ
քաղցոյն որպէս զմարմնաւոր, և ագահութեամբ որպէս
զշնչաւոր, և ունայնփառութեամբ որպէս զհոգևոր. զի
յայս պարփակի ամենայն գայթակղութիւնք նորա. և
եղեալ նկուն ոչ աստուածեղէն իշխանական զօրութ̃բ,
այլ մարդկեղէն իմաստիցն խոհականութեամբ. որով
յընտրութիւն ձգեալ՝[1] զնորա խորհրդակցութիւնն՝[2] խո-
տորնակ զտաւ յօրինացն, որոյ կատարողացն հետևէր
զղջումն և խղճի ստգտանք. և նա ոչ հաւանեցաւ. զի
մի՛ ստգտցի յօրինացն, որ ասաց՝ բանիւ Աստուծոյ կալ[3]
և ոչ փորձել զԱստուած, և նմա միայն երկիր պա-
գանել. յաղագս որոյ և 'ի բաց եկաց 'ի նմանէ՝ որ
զլոյս վկայութեանցն եկաց ընդդէմ, և օրինօքն ա-
ռաւ զպատասխանիսն: Այլ կատարեալ զյաղթութիւնն՝

1 Այլ օրին. Զգէւ:
2 Ի մի օրին. խորհրդակցութենէն:
3 Մի օրին. կեալ:

դարձաւ 'ի Գաղիլեա, և զօրութեամբ Հոգւոյն ըն-կիզեան արար նշանագործութեանն, որով և 'ի մար-մնոյն որ պարտեաց զգլեամն՝ սկսաւ հալածել զնոսին ի-րաւամբք. զի թէ վասն այնր կալան եղև նոցին, զի խա-բեցաւ և մեղաւ, ապա իրաւացի է այսօր զերծանել 'ի նոցանէ, զի յաղթահարեաց, և անխառն մնալովն ան-մեղ ցուցաւ: Եւ նոքա անուանէին զնա որդի Աստու-ծոյ, ոչ ստոյգ գիտութեամբ, այլ կարծեօք և երկմտու-թեամբ. 'ի գործոյն տարակուսեալք, և ոչ յելից խոր-հրդոյն հաւանեալք: Իսկ Քրիստոս ընդ սաստել դի-ւացն և բժշկելով զախտսն և զմեղս թողոյր, ասելով. « Զի գիտասջիք թէ որդի մարդոյ ունի իշխանութիւն 'ի վերայ երկրի թողուլ զմեղս ». քանզի դաստիարակու-թեամբ աստուածութեանն՝ մարդկութիւնս որ յիւ՝ զանմեղութիւն ուղղեաց, և առ իշխանութիւն ամե-նայն մարդկան, որք յերկրի պատրանօք և ոչ բնութեամբ են մեղաւորք, թողուլ զնոյնս: Իսկ դևքն դրդէին զդպ-պիրսն ասել. « Ո՞ կարէ թողուլ զմեղս եթէ ոչ մի Աս-տուած ». զի ինքն յանձն առցէ զանունն, և 'ի կար-ծիսն հաստատեսցէ զնոսա. իսկ նա տակաւին և ս 'ի պէտս անօրէնութեանն անփոյթ առնէր զյայտնէն, և բանիւ վարդապետութեանն զերկնից արքայութիւնն աւետարանէր. այսինքն թէ ինև 'ի սատանայի իշխա-նութենէն ելէք, և երկնից թագաւորն մերձեցաւ տի-րել ձեզ՝ եթէ հաւատայք: Բայց հաւատայր և ոչ ոք, զի Հոգւոյն շնորհի էր լուսաւորել զմիտս առ հաւատ իմանալի յուսոյն. և զայս ոչ ունէին մարդիկ. և Քրիս-տոս միայն յինքն առ, և այլոց ոչ կարէր ըստ իրաւանցն տալ, զի ինքն միայն գտաւ արդար. և այլ մարդիկ 'ի ներքոյ դատապարտութեանն վասն հաւանելոյ չարին, որում նա նովին մարմնովս յաղթեաց: Վասն այսորիկ ոչ բուսանէր սերմն բանին առանց ցօղոյ Հոգւոյն յան-դաստանս մտաց մարդկան. և հարկ էր նմա զանմեղ իւր մարմինն պատարագել, և զմեղս մարդկան քաւել, և զՀոգին յաշխարհս սփռել. և այս տնօրինեցաւ 'ի հակառակամարտ հնարից թշնամւոյն. քանզի յորժամ յանձն և 'ի մարմինն փրկչին ընթացեալ ոչ կարէր մեր-ձենալ պատրանօք, զդպիրսն և զփարիսեցիսն զինէր նախանձու նմին հակառակ: Բայց տէրն գիտելով զիւր

մարտակիցն, 'ի ձեռն մարդկանն յամօթ առնէր զնա ամենայն ուրեք հեզութեամբն և խոնարհութեամբ. մինչև ոչ հանդուրժեալ 'ի գլուխ ածել զմախանսն, փութացուցանէր մահուանն հնարիւք. քանզի լսէր 'ի նմանէ, զի ասէր. "Ո՞վ 'ի ձէնջ յանդիմանեսցէ զիս վասն մեղաց„. և գիտելով զճշմարտութի հրամանին՝ քաս-քնէր. ուստի և հնարեցաւ զնա 'ի չարչարանաց մատնել նախատուանս. զի գտնէ զհեզն առ բանիցն այպանութեն՝ 'ի կրելն մարմնով զվիշտս՝ զինեալ պատժական զօրութե սայթաքեցուսցէ բարկութեամբ: Այլ նա փոխանակ յարութեանն և փառացն՝ որում ըստ գործոց իւրոց արժանի էր 'ի մարդկանէ՝ յանձն առ զխաչ, արհա-մարհեաց զամօթ:

Այլ մի ոք փոքր կարծեսցէ զարհամարհութիւն ա-մօթոյ 'ի տեառնն վիշտս. զի որպէս մարմնով զչարչա-րանացն վիշտս կրեաց, նոյնպէս և հոգւով զամօթոյն, ըստ երկոցունց աշխատեալ հեզութեամբ. նա որ ըղ-թզենւոյն տունկ չորացոյց զօրութեամբ, հնազանդեալ Հօր մահու չափ և մահու խաչի փոխանակ անհնազան-դութեանն Ադամայ. վասն այսորիկ որպէս անհնազան-դութեամբ հնոյն մեղաւորք բազում եղեն, նոյնպէս և հնազանդութեամբ նորոյս Ադամայ արդարք եղեն հա-ւատացեալքն 'ի նոյն: Այլ թէ այս որպիսի յեղանա-կաւ՝ ասելի է:

Անմեղ երևեցաւ Քրիստոս ինքն միայն, ուստի և Հոգին սուրբ հանգեաւ 'ի նա միայն. և արդարութիւն Աստուծոյ բարեհռչակ եղև 'ի նորին անմեղութիւնն. և թէ ոչ ունի ստեղծուած բնութեանս բնաւորական զչարութիւնն, այլ եկամուտ է. և օրէնքն՝ բնութեանս օգնական է և ոչ հակառակ. ըստ այնմ. "Օրէնսն ետ յօգնականութի„. և ընդ օրէնսն անցանելն՝ և բնութես սահմանի է դրժումն, սակս որոյ և զղջումն: Երևեցաւ սերմանող 'ի մեզ զհակառակն օրինացն և բնութես սատանայ, որ և մարդասպան 'ի սկզբանէ, և յաղագս սպանութեան և դաւաճանութեն գտաւ դատապարտ. յայնմանէ՝ որ եկն դատաստան առնել աշխարհի, և ըն-կենուլ զնա արտաքս. որ և ասէր, իշխան աշխարհիս այսորիկ դատախազութեամբ անմեղութես իմոյ յար-դար իրաւունս Աստուծոյ և Հօր և Հոգւոյն դատա-

պարտեալ է. իսկ մարդիկ դատապարտք էին վասն հաւանելոյ կամաց նորին, և արտաքոյ բնութեանս և օրինացն Աստուծոյ յանխրատութիւն խոտորելոյ. և յայսմ պատժոց որոյ մեք պարտապանք, Քրիստոս որ անմեղն էր և անպարտ՝ էր և գեր 'ի վերոյ մահուն որ մեղացն խայթոց է. սակայն եւս զիւր անմեղ մարմինն պատարագ Աստուծոյ Հօր փոխանակ մեղաց մերոց: Այս վասն զի նա որ անպարտն էր մեղաց, և գեր 'ի վերոյ մահու՝ մեռաւ, մեք որ պարտաւորքս էաք՝ 'ի մահուն պատժոցն զերծաք, և քաւեցաք արեամբ նորա, որ եւս զանձն 'ի վերայ ոչխարաց իւրոց ըստ առաքելոյ. "Զոր յառաջին եդ Աստուած քաւութիւն 'ի ձեռն հաւատոցն արեամբն նորա":

Յառաջ, ասելով, զկանխախօսութիւն՝ մարգարէիցն նշանակէ. յորոց ասէ Եսայի. "Տէր մատնեաց զնա առ մեղս մեր, և մինադիւր ծառայեաց բազմաց, և ըզմեղս բազմաց նա վերացուցէ". և Աստուած Հայր ած զնա 'ի չարչարանսն. քանզի "Այնպէս սիրեաց Աստուած զաշխարհ՝ մինչև զորդին իւր միածին ետ". զի ամենայն որ հաւատասցեն 'ի նորա տնօրէնութիւն մահուն՝ մի կորիցեն, այլ ընկալցին զկեանս յաւիտենականս. իսկ որ ոչ հնազանդին Որդւոյ, բարկութիւնն Աստուծոյ մնայ 'ի վերայ նոցա. քանզի զիրաւացի բարկութիւնն նորա շիջոյց[2] յաշխարհէ միայն նորա մահուն պատարագն, որ վասն մեր տուաւ Հօր:

Արդ եկեալ Քրիստոս 'ի խաչն, եցոյց Հօր թէ ոչ եմ մահու արժանի, վասն զի մահն խայթոց մեղաց է, և ես անմեղ եմ. նա և ոչ կամիմ զնոյն՝ չարչարելի ունելով մարմին, որ վշտանայ մահուամբն. սակս որոյ և երկնչի 'ի նմանէ: Ունիմ և շունչ զգայական՝ որ խորշի յանօթոյ նախատանաց. իսկ բանական հոգիս յօժար է տալ զանձն իմ պատարագ, և զաշխարհս քաւել: Հայր եթէ հնար է ձրի արդարանալ աշխարհի, անցո յինէն զբաժակս մահու երկիւղի. ապա թէ ոչ կամիս, արբից զսա, զի եղիցին կամք քո, զոր իջի յերկնից զի մարմնով արարից: Բայց Հայրն ոչ ձրի արար զմեր քաւութիւնն. որոյ աթոռն յարդարութիւն և յիրա-

1 Մի օր. Կանխատեսութիւն:

2 Ի միում օրին. Չիջոյց:

տունս հաստատեալ է. այլ զողորմութիւն ճշմարտութեամբ՝ որդւոյն տնօրէնութեամբ ուղղեալ առաջի՝ 'ի գլուխ ած զարդարութիւնն. և առեալ զին զսուրբ և զպատուական արիւնն, կշռեաց 'ի գթութիւնն իւր, և յաղթող եղեւ մեղաց ամենայն աշխարհի. և մեք այնր գնոց տուաք Քրիստոսի սեպհական ժողովուրդք, ըստ գրելոյ առաքելոյն. "Ոչ ապականացու արծաթեղինօք փրկեցայք, այլ պատուական արեամբ ամբիծ և անարատ գառինն". և գնոց գնեցայք, փառաւոր արարէք զԱստուած 'ի մարմինս ձեր և յոգիս. և հովուել զժողովուրդ տեառն զոր ապրեցոյց արեամբն իւրով. վասն որոյ և օր ըստ օրէ զայս արիւն պատարագեալ Հօր՝ քաւիմք 'ի պարտեաց մեղացն՝ որպէս գրեալ է. "Արիւնն Յիսուսի սրբէ զմեզ յամենայն մեղաց". քանզի ետ զինքն Աստուծոյ Հօր փոխանակ ամենեցուն մեր. և Հայր առեալ յիւր հնազանդութիւն մահու չափ մատնեաց ըստ մարգարէութեանն 'ի ձեռս թշնամեացն. "Տէր, ասէ, մատնեաց զնա առ մեղս մեր. և նա առ վշտին ոչ բանայ զբերան իւր": Որդ լցեալ 'ի նա զքաղց թշնամեացն որ 'ի ներքին մարդն՝ յաղթեցաւ մարմնոյն չարչարանօք. ոչ բանայր զբերանն պատժողական հրամանաւ չարչարողացն, որ և վշտանայր. զի հնազանդեցաւ Հօր մինչև 'ի մահ խաչի. 'ի վերայ որոյ յարոյց սատանայ զաշակերտն մատնութեանն, զքահանայսն և զդպիրսն զրպարտութեամբն, զդատաւորն անիրաւութեամբն, զզինուորսն նախատանօքն. և տէրն յաղթեաց իւրաքանչիւրոցն հեզութեամբն և խոնարհութեամբն. և պարտաւորեալքն ըստ մարմնոյ՝ զբանսարկուն իրաւամբք և արդարութեամբ պարտեալ կործանեաց. որպէս և ասէր նախ քան զխաչն, "Այժմիկ դատաստան է աշխարհիս, այժմիկ իշխան աշխարհիս ընկեսցի արտաքս": Եւ առաքեալն, "Մերկեաց զիշխանութիւնս և զպետութիւնս, յայտ յանդիման խայտառակեալ նշաւակեաց զնոսա յանձին իւրում 'ի յարութեան իւրում": Խայտառակեալ զայն իմանամք, զի մինչև 'ի խաչին բեւեռելն սպասէր սատանայ նմին ըստերիւրել. յորժամ խաչիւն մահ մարմնոյն կատարեցաւ, մեղքն որ բնութեանս կործանիչ էր՝ բարձաւ և ոչնչացաւ, 'ի մէնջ հեռացեալ, և 'ի դայթակղեցուցանողին վերայ

դարձեալ. և սատանայ մերկացաւ յիշխանութենէն որ ՚ի վերայ մեղանչականացս, և նշաւակեցաւ թէ յանցանքն՝ նորին որոգայթ է, և ոչ մեր կամաց կամ բնութեան պտուղ. և ստուգեցաւ այս, զի մարմինն՝ որ կամաւ իբր մեղաւոր մեռաւ, վասն անմեղութեանն՝ ապականութեանն անկերպարանելի մնացեալ՝ յարեաւ. զի “Մարմին նորա ոչ ետես զապականութի, և ոգին ոչ ըմբռնեցաւ ՚ի դժոխս”, որպէս և գրեաց Պետրոս: Քանզի յորժամ աւանդեցաւ ՚ի ձեռս Հօր, եկն իշխան աշխարհիս ընդ առաջ՝ որպէս և այլ հոգւոց, և ՚ի նմա ոչ եգիտ յիւրոցն. յայնժամ ապա ծանեաւ, թէ մեռաւ ոչ ըստ իւր յաղթութեանն կամ ըստ բնութեանն տկարութեան[1], այլ վասն Հօր հնազանդութեանն, որ ասաց նմին առնել զայս: Յայնժամ զամօթի հարեալ նշաւակեցաւ անմեղութեամբն Քրիստոսի պարտականն մեղաց աշխարհի, և նիզք յուսահատութեանն լուծան, փականք դատապարտութեանն բացան, դրունք պղնձիք իշխանութեան դիւացն փշրեցան. և ոգին Քրիստոսի “Ոգւոցն որ ՚ի բանտին էին՝ երթեալ քարոզեաց զփրկութիւն”, որպէս գրեաց գլուխ առաքելոցն Պետրոս: Եւ զիշխանն աշխարհի կործանեալ առ ոտս, առ յինքն զիշխանութիւն բնութեանս մերոյ յերկինս և յերկրի. ՚ի կատարման տնօրէնութեանն յարութեամբն որ տուաւ նմա իրաւամբք և արդարութեամբ ՚ի տնօրինելն զայս սքանչելի հնազանդութիւն Հօր, որ և զնոյն ինքն առ բարձրացոյց և նստոյց ընդ աջմէ իւր և արար իւր երկրպագուս զերկնաւորս և զերկրաւորս և զսանդարամետական մեռեալսն. և զնա ետ գլուխ ՚ի վերայ ամենայն իրիք եկեղեցւոյ: Յաղագս որոյ և օծումն հոգւոյն էջ ՚ի գլուխն և ՚ի մարմին նորին և յանդամս, քահանայագործելով նորին զմարմինն իւր ըստ կարգին Մելքիսեդեկի՝ Աստուծոյ Հօր. ըստ որում ասէր. “Յորժամ կատարեմ զտնօրէնութիս, ապա երթամ և զմխիթարիչն առաքեմ առ ձեզ”. զոր և առեալ Հօր առհաւատչեայ՝ եհեղ ՚ի մեզ զշնորհս Հոգւոյն, որ վկայէ հոգւոյս մերոյ, թէ եմք որդիք Աստուծոյ. նա և զոր ոչ հանդար-

1 Այս ինքն, ոչ որպէս թէ յաղթեալ իցէ գեհն տկարութ͞ն փրկչին:

տեսաք առանց նորին ճառագայթիցն տանել 'ի Քրիս-
տոսէ՝ եկեալ ուստի մեզ և յիշեցոյց և հաւանեցոյց
զտիեզերս առ 'ի նորին հաւատն, որով և Պետրոս զան-
հաւանսն տեառն նշանօք խառնեալ վարդապետութեան
երեք հազարս 'ի միում աւուր աշակերտեաց. և այս-
պէս միշտ 'ի Քրիստոսէ իջեալ յեկեղեցի իւր շնորհք
Հոգւոյն յայտնէ բնաւիցս զխորս խորհրդոց նորա. ըստ
առաքելոյ. "Այլ մեզ յայտնեաց Աստուած Հոգւովն
իւրով, զի Հոգին զամենայն քննէ, և զխորս Աստուծոյ":
Յայսմ Հոգւոյ լուսաւորեալ մարգարէքն և առա-
քեալք և վարդապետք եկեղեցւոյ, հարքն զայսր խոր-
հրդոյ զօրութիւն ետուն մեզ յիւրաքանչիւր բանս.
զոր շնչաւոր մարդ ոչ կարէ ընդունել, քանզի յիմա-
րութի է նմա. իսկ մեր համեմատեալ ընդ հոգւոյ ըզ-
հոգևոր բանս նոցին՝ հաւատամք ասացելոցս, և խօսիմք
նոցին որբոցն համաձայն. և գիտեմք և վկայեմք խոր-
հուրդ մեծ գոլ զանօրէնութիւնն Աստուծոյ. յայտնի
իսկ և մեծ ըստ առաքելոյ: Ակայէ և Դաւիթ. "Որպէս
զի մեծ են գործք քո տէր", և խոր յոյժ խորհուրդք,
և այր անզգամ ոչ ծանիցէ, և անմիտն ոչ առնու 'ի միտ.
զի ոչ սքանչելիք զգայարանաց առաջի, այլ արդարու-
թեամբ փրկագործութիւն ըստ բազմապատիկ իմաս-
տութեան. և ոչ զօրութեամբ, զի մարմնովն որով մահ՟
նովին լեցի և յարութիւն մեռելոց:

Արդ 'ի գլխաւորելս զհաւատս, զբանն մարմին խոս-
տովանիմք, և զմարմնոյ բնութիւն ընդ նմին անճառ
միացեալ 'ի կուսական արգանդին. և 'ի կրելն զկիրս
մարդոյ ոչ առանձինն 'ի բանէն, այլ ճարտարապետաւ
բանին վարեցաւ յամենայն մարդկութիւնն, Աստուած
գոլով համանգամայն և մարդ, բանն էր՝ որ ներգործէր
և կրէր մարմնովն, խոստովանիմ. բայց զյատկութիւն
բնութեան մարմնոյն ոչ զլանամ յանճառ միութիւնն,
զի մի խորհրդոյս զօրութիւն աղաւաղեսցի. այլ կրեաց
անճառ միացեալ բանն 'ի մարմինն մարմնովն զմարմնոյ
կիրս. և թող ետ մարմնոյն յիւր բնական ներգործու-
թիւնն և 'ի կամսն վարիլ, զի անմեղ մնալով մարդա-
ցեալն Աստուած 'ի հարկաւոր կիրսն և 'ի ներգործու-
թիւնն և 'ի կամսն, բնութեանս արդարութիւնն հռ-
չակեսցի. քանզի Աստուծոյ զինչ մեծ արդար լինել,

բայց մարդոյ մեծ. վասն այսորիկ և մեծ է մերս աստուածպաշտութեան խորհուրդքս, որք հաւատամք յայն՝ որ երևեցաւ մարմնով, արդարացաւ հոգւով. զի նորա արդարութեամբն փրկեցաք. և արդարութիւն հոգւոյ որպէս ուղղէր առանց ունելոյ տարբերութիւն յաստուածայինն կամաց ընդ Աստուած խառնեալն ոգի ըստ իւրն կամաց: Այլ զի ունէր, երևեցոյց 'ի ներգործութիւնս. և զի արդար գտաւ, նովին յաղթեաց թշնամւոյն. նա և զխմոր մարմնոյն կրիցն անմեղութիւնն զմեզ փրկէր, թէ ոչ տարբերութիւն ունէր բնութիւն յաստուածայինն անմեղն բնութենէ. և զի էր այս, եցոյց 'ի ներգործելն մարմնով, և մնալով անմեղ 'ի հարկաւոր կիրսն յոր ամենեքեան մեղաք: Սփռեաց զարդարութիւնն 'ի վերայ ամենեցուն մեր, սակայն յայսոսիկ ոչ տարբերութիւն՝ աստուածութեանն և մարմնոյն անճառ խառնմանն, այլ մի Քրիստոս, մի տէր, մի անձն, մի Աստուած դաւանեմք զԱստուածն համագամայն և մարդ ըստ միաւորութեն բնութեանցն յատկութեանցն հայեցողութեամբ. քանզի Աստուած ոչ է բնութեան անուն, այլ փառացն. և բնութեանն անուն է սքանչելի և անհաս. ուստի և մի Աստուած ասելով զբանն մարմնացեալ, ոչ շփոթեմք զբնութիւնսն. քանզի զնա Հայր կնքեաց Աստուած. և որ Քրիստոսն է ըստ մարմնոյն, նոյն է 'ի վերայ ամենեցուն Աստուած օրհնեալ յաւիտեանս:

Ապա ընդէ՞ր է ումանց յանդգնել և ապաշնորհ առնել զերախտիս արդարութ̃ փրկագործութեն Աստուծոյ, նրբելով և 'ի կարծիս ձգելով զխորհուրդ ներմարդութեն, կարծելով մոլորախորհողացն այնու զԱստուած բարձր երևեցուցանել, անգիտացեալ՝ թէ նուաստացուցանեն մանաւանդ, այլ և զիւրեանց փրկութիւն յաչաղեն. զի Աստուած խոնարհութ̃բն բարձրացաւ. և ընդ այս բազմապատիկ իմաստութիւն՝ որ յայտնեցաւ երկնաւորացն յեկեղեցւոյ՝ հիացան: Արդ որք Աստուծոյ տան զներգործութի մարմնոյ և զկամս իբրև զմիոյ բնութե, և ոչ որպէս Աստուծոյ վերբերութեամբ կրեալ զնոյնն մարմնով, երիս մեղս մեղանչեն. նախ՝ զի զանչարչարելի

1 Մի օրէն. Երկու բաժանմամբ:

բնութիւնն չարչարանաց և կրից մարմնոյ 'ի ներքոյ դնէն, ապա զի մարդով եղև մահ և ոչ մարդով յարութիւն մեռելոց, որոյ խափանեալ էր կամքն և գործն. և Աստուծոյ ամենայն ինչ հնարաւոր է. և ոչ վասն հնազանդութեան բարձրացաւ մարդկութիւնս. զի և ըստ նոցա չհնազանդեցաւ՝ ոչ ունելով կամս, որոյ է այս ներգործութիւն:

Իսկ երրորդն ևս թշուառութի, զի նա բուռն եհար զբնութենէս և ամենայնիւ եղբարցս նմանեաց, զի ողորմած լիցի մեզ քահանայապետ փրկչիւ չարչարանացն. իսկ նոքա արտաքս ձգեն զնա 'ի վշտակցութենէ և յեղբայրութենէ և յողորմածն լինելոյ հաւատար կրիցն փորձիւ. որ և քան զամենայնս է ողբոց արժանի: Իսկ մեք հաւատամք զԱստուած մարդացեալ և մարմնացեալ անյեղաշրջելի բնութեամբ. զի "Ես նոյն եմ, ասէ, և ոչ փոփոխիմ", և ոչ մարմինն որդւոյ մարդոյ այլայլեցաւ 'ի բնութիւն Աստուծոյ. այլ նոր և սքանչելի խառնուածով միացան երկու բնութիւնքն 'ի մի անձնաւորութի պահելով և յետ միութեանն անշփոթ զտարբերութի բնութեանցն յատկութեան. և վասն այսորիկ անուանի խառնումն նոր և սքանչելի. և անօրինեաց արդարութեամբ զփրկագործութիւնն, որոյ բանս վերոյ եղև պատմիչ. և այս անհաս 'ի հրեշտակաց իմաստութիւնս Աստուծոյ նոցին յայտնեցաւ՝ խոնարհութեան բանս, զոր նոքա անմարթ Աստուծոյ գիտէին. որպէս արքունեաց սպասաւորք՝ թագաւորի զատրկանալն: Եւ մեք առ 'ի սոյն հաւատալոյն արդարացեալ խաղաղութիւն և հաշտութիւն կալաք առ Աստուած ըստ առաքելոյ. քանզի վերջացեալքս 'ի գործոց օրինացն պատահեցաք Քրիստոսի շնորհին. և զնորին հաւատոցն արդարութիւն ունիմք, որ յԱստուծոյ տուաւ մեզ. և մեղք այսուհետև մեզ ոչ կարեն տիրել, զի եմք յայսպիսի խորհրդոյս և շնորհիս հաւատն և 'ի գիտութիւնն. որով և սրբիմք հանապազ ըստ առաքելոյ. "Արիւնն Յիսուսի՝ որ 'ի ձեռն Հոգւոյն մատոյց զանձն անարատ պատարագ Աստուծոյ, սրբեսցէ զխիղճ մտաց ձերոց 'ի մեռելոտի գործոց ձերոց պաշտել զԱստուած կենդանի". որ և նոր ուխտիւ իւրով արեամբն հրաւիրելոցս ժառանգեցուսցէ զարքայութիւն յաւիտենից: Որում և զմեզ արժանի արասցէ նոյն ինքն ամենասուրբ և երկրպա-

գերի տէրութիւն Թագաւորականի Նորոգութեանն, վասն որոյ բանս գլխաւորեցաւ 'ի պատիւ և 'ի գոհութիւն անուան իւրոյ և աստուածութեանն փառաց, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն։

## Ի ԽՆԴՐՈՅ ՀԱՅՑՄԱՆ ԵՐԻՑԱԿԻՑ ԵՂԲԱՐՑ

### ՔՆՆՈՒԹԻՒՆ ԿԱՐԳԱՑ ԵԿԵՂԵՑԻՈՑ, ԵՒ ԲԱՑԱՏՐԱԳԷՍ ՈՐՈՇՈՒՄՆ ԱՐՏԱՔՈՒՍՏ ՄՏԵԱԼ Ի ՍԱ ՆՈՐԱՁԵՒՈՒԹԵԱՆՑ

ՍԿԻԶԲՆ առաջի եղեալ բանիս՝ գոհութն զԱստուծոյ կարգեմք, որ շարժեաց զողջակամն իմաստ եղբարց մերոց բանադատել զմեզ 'ի խնդիրս. որ զօգուտն անօրինէ հաւատով քննողաց, ոչ անիրաւացի խորհեալ վասն այսր զգոհութիւն 'ի Քրիստոս կացելոցս, և ընդհեստնորա զշաւիղս ուղղել խրատելոցս¹, զի ահա և նա յայսպիսի դիպող ժամանակ յօրինակ մեզ արար զոյն², այն որ առատացեալ հոգւոց և մարմնոց բժշկութեամբ անգոսնէր յիմաստնոց և 'ի գիտնոց. որոց Ճանաչել զնոյն վայելուչ էր. և հաւատարմանայր յաչս մանկամիտ առաքելոցն, որոց ուսուցանելն զնոյն անյոյս էր։ Ցնծայր ապա Հոգւովն սրբով և ասէր. "Խոստովանիմ զքեն Հայր տէր երկնի և երկրի, զի ծածկեցեր զայս խորհուրդ յիմաստնոց, որպէս և հաճոյ եղև քեզ, և յայտնեցեր տղայոց"։ Նա զխորհուրդ նա որ 'ի ծոց Հօր միշտ, յայնժամ միայն զնմանէ գոհանայր, եթէ ոչ մեզ տալով բարւոք ապացոյց. զի յայնժամ տիրապէս յայտնի կարութիւն զօրութեանն Աստուծոյ, և մեզ պարզապէս երևի՝ յորում անյոյսքն լինիցին հնարաւորք։ Նաև առ որս ներգործութեանն զօրութիւն 'ի ներգործելն ըստ նմին բազում անգամ բնական կրիցն տանք զկատարումն, և վերջանամք 'ի գոհութենէն Աստուծոյ. զոր օրինակ եթէ ոք 'ի փշոց խաղող քաղէ, կամ յան-

1 Մի օրին. Ի տափելոյ։ 2 Մի օրին. Զնոյն։

պտուղ յանդաստանէ պտուղ առոք՝ զփգ յուսահատութեանն ձգի և յուրախութիւն, ըստ այսմ ցնծացաւ նա յայնժամ զպտուղ հաւատոցն զոր ակն ունէր գտանել 'ի դպիրսն և յօրինականսն ձեռնտուութեամբ. զորոց. զի եգիտ 'ի նոսա որք զրկեալ էին յայսպիսի մարդկային իմաստութենէ, տղայք գոլով արհեստի բանաւորութեան. սակս որոյ և զՀօրէ գոհանայր, թէ այս 'ի քէն շնորհ սոցա և յայտնութիւն, և ոչ մարդկան իմաստից գիւտ. որում և զգոհացողականս մատուցանեմ փոխարէն քեզ Հայր: Ապա մեզ արդարև արժան է զնմին իսկ զյուսոյն մերոյ զՔրիստոսէ գոհանալ՝ առ 'ի խնդիրս ձեր հայելով, որ հանդերձեալ է շնորհօքն Աստուծոյ տալ պտուղ քաղցր և ախորժ ձեզ, և բազմաց օգուտ¹. զիարդ և ոչ ցնծասցուք յայսմ ժամու տեսեալ, զի ծածկեալն 'ի բազմաց փափաքելի կրօնից և կարգաց ուղղութի՝ ձեզ ըստ որում են սիրելի քաղցր և ախորժաբար, մինչ զի զլուր բանի որ վասն այսորիկ, արձանագրութեամբ մաղթէք անջնջելի 'ի միտս ձեր ամբարել ճշմարտութեամբ. Եւ բերան գոհանամ ըզՔրիստոսէ և զհոգւոյ նորա սրբոյ, որ շնչէ յոր կամի և յորս ախորժէ 'ի փառս Աստուծոյ Հօր: Այլ նախ՝ թէ ախորժէք, զայս քննեսցուք:

Ո՞յր աղագաւ ծածկեցաւ բան 'ի դպրացն և 'ի փարիսեցւոցն, և յայտնեցաւ առաքելոցն տղայոց. զի թէ ըստ պարզ մնաց՝ Հօր տամք զնոյնն, անմեղադրելի մնան նոքա 'ի մեղանչելն, այլ Հայր միայն զայս հաճեցաւ, զի յորժամ նոքա կամակոր միտք անգոսնեցին զնոյն, յայտնեաց նոցա որք փափաքէին ուսանել, և բնաւորական իմաստիւ ոչ ունէին զօրութի: Այլ յիմաստնոցն էր արհամարհեցաւ, ասիցէ ոք. ոչ թէ կամօք Հօր՝ զոր մի լիցի կարծել, այլ զի ծառայեցուցիչ նախանձով զաչս մտաց խաւարեցուցին, և աւանդութեանց ջատագով լինէին. ոչ որոց յԱստուծոյ ունէին, այլ ծերոցն. զի 'ի նոյն վարդապետական աթոռ նստէին, յորում և Քրիստոս երևեցաւ, և ուսուցիչք էին ժողովրդեանն. յորժամ տեսանէին զտէր մեր 'ի նոյն շնորհս առաւել քան զինքեանս պայծառացեալ՝ քննել զճշմարտութիւնն, 'ի նա-

1 Յօր. միում Ո-փէլ:

խանձէ անտի տկարանայն, և հայհոյութեամբն զնա անգոսնէին. ըստ որում և ասէ իմաստունն. "Նախանձ առն 'ի մերձաւորէ իւրմէ". և զի կամաւ տգիտանայն, որպէս ասացաւ, և ոչ բնութեամբ, ծածկեաց 'ի նոցանէ և Աստուած զնոյնն ։

Դարձեալ և սիւնք օրինացն էին երկու աթոռքն, քահանայութեան և թագաւորութեանն. և ահա այս վաղ ժամանակօք բարձեալ էր 'ի նոցանէ յաղագս գերութեանն և տառապանացն. առ որս տեղի գտեալ ներգործութիւն չարին իբր յանպահապան քաղաք, զանազան աւանդութիւնս եմոյծ 'ի մէջ նոցա, առ աչս մարդկան ահարկու, և առաջի Աստուծոյ փոքունս և արհամարհեալս ։ Յորժամ զայնոսիկ լուծանէր Քրիստոս, քանզի փառասէրք էին՝ դժուարէին ։ Այլ տես զինչ ասէին. "Աշակերտքն քո անցանեն, ոչ զօրէնօքն Աստուծոյ, այլ զաւանդութեամբ ծերոցն". այսպէս է տեսանել և մերս անբարի ժամանակ, աւանդութեանցն զբաղմամբ անքերելի վրէժխնդիրս, և օրինացն և ոչ բնաւ քննողս ։ Այլ ինձ յայսմ վայրի տարակուսանս մեծ. քանզի թէ 'ի մէջ առնում դատել, ահա զընկեր քննելով զանձն իմ կշտամբեմ և անաչառն ատենի մատնեմ, հաւատացեալ ասացելոյն, "Որով չափով չափէք չափեսցի ձեզ". և թէ զանց առնեմ զայսմանէ, ընթացք բանիս ոչ պարզաբար կարող է տալ զիւրն զօրութիւն առանց ընդդիմադրութեանցն լուծմանց և պատասխանեաց ։

Արդ նախ առաջին 'ի սկզբանս աղաչեմ զամենեսեան գթոյն Քրիստոսի Յիսուսի, մի ոք համարեսցի զիս անգգամ կամ բժիշկ մեղանչական առ 'ի զայլս դատելով զանձն արդարացուցանել. այլ զիջանել ձեզ առ իմ տկարութիւն և մանկական իմաստ, որ 'ի սիրոյ ամենեցուն շարժեալ եկի յայսպիսի յանդգնութիւն, որ իմս նուաստութեան[1] անմարթ էր՝ ծերունեաց և կատարելոց հասակաւ ուսուցիչ լինել. և մի յորժամ լսէք զդիմումն բանիցդ պէսպէս անկարգութեան յայտնիչ, 'ի ներքոյ նոցին կացեալ զընդդէմ յառնելն ախորժէք՝ իբր թէ անձանց լինիք վրէժխնդիր. քանզի վրէժխնդիր ա-

1 Յայլում օրին. Նուաստ անձին ։

տխնեցուն մեզ այս է, որ զօրէնսն Աստուծոյ փափաքէ նորոգել. և ոչ այն որ արտաքին արկածիցն լինի ջատագով. զի այն յայտ է, թէ ինքն ընդ անձին իւրոյ ոգորի, Քրիստոսի զօրով անզգամ, և օրինաց նորա թշնամի: Ա՛հ, և վասն զի մանուկ հասակաւ և մեղսասէր անձամբ սպասաւորեմ շնորհաց Հոգւոյն, և հարց մերոց կանոնական սահմանաց, որք առ իս բերկիք՝ ըստ արժանի իմում՝ սաստիւ, իմ աղագաւ աստուածամարտ գտանիցիք, և Հոգւոյն սրբոյ հայհոյօղ, որպէս ասաց տէրն. այլ 'ի մորենոյ ընկալարուք պտուղ, և 'ի տատասկէ թուզ. քանզի Աստուծոյ և ոչ մի ինչ անհնարին 'ի մարդկան տառապելոց. և թէպէտ ես անարժան, 'ի ձերն բազմապատիկ շահ օգտի հայելով ես ինձ 'ի սոյն ձեռնարկել 'ի փառս անուան իւրոյ սրբոյ, խնդրեմ յամենեցունց, մի կշտամբեցայց յումեքէ վասն որոնելոյ զսատանայական սերմանեալ անկարգութիւնս. զի թէ այս ոչ 'ի սկզբանս դատեսցի եղբարք, և անգործ լիցի այժմ առկայացեալ մոլար օրինադրութեանն, յորժամ 'ի խառնարհ դիմեալ բանս զանազան նորաձևութիւնն ուսուցանէ 'ի ժամանակիս կարգացն հեռի, յաշաղկոտքն և տգէտքն զմեզ ոչ եղծեալ օրինաց նորոգիչք համարին, այլ նոր աւանդութեան մուծիչք. որք ոչ զնախնեացն քննեցին ուղիղ ընթացս, և ոչ զկեա նոցա մոլորութե պատճառս. վասն այսորիկ ախորժէ բանս բժշկութե՝ զ'ի խոր խոցոտեալսն կսկծելի դեղովք առողջացուցանել, և յիմարական թմբրութենէն զարթուցանել, զի բազում անգամ և զայս տեսանեմք 'ի բժշկական արհեստ առեալ 'ի կիր:

Եւ մի ոք համարեսցի զիս ընդ մարդ կագել, կամ զեղբարս իմ թշնամանել, զորս առի հրաման իբրև զանձն սիրել. այլ 'ի դէմս նոցա խօսիմ ընդ ախտոն որ 'ի ներգործութենէն սատանայի 'ի մէջ մեր սերմանեցաւ: Արդ յորժամ լսես զհակառակադրութիւնս, և դատիս 'ի խղճէ մտաց՝ ունել ինչ յայնցանէ զորս աստ թշնամանէ, քեզ վշտակից տես զբանս, և ախտին յորմէ չարչարիս՝ կշտամբիչ. զի թէ մարմնոյ բըժիշկք բազում անգամ զնոսին իսկ զանդամս մեր խարելով և հատանելով ոչ թուին թշնամիք, ո՞րչափ ևս առաւել սա որ զհոգւոյ բարեպաշտութիւն ախորժէ

կործելի բանիւք պայծառացուցանել և զոգեղացուցիչ ճճիմն զազրաթորմիք՝ օծութեամբ Հոգւոյն 'ի նմանէ սատակել, սիրելի լիցի ամենեցուն որոց կամին զփրկութիւն։ Արդ խորշին 'ի մէնջ եղբարք մեր և ազգակիցք՝ տեսեալ զի 'ի ժամանակականս աւանդութեանց հրաժարեմք. և բամբասիմք 'ի բազմաց 'ի նոցանէ 'ի բացակայ լինելն, եթէ օրէնս քակտեմք. և յորժամ մերձ առ իրեարս լինիմք, նկուն լինին 'ի ճշմարտութենէն և զաւանդութեանց բուռն հարկանեն։ Նա և յայսմ տամք նոցա տեղի. գեղեցիկ դատիմք 'ի ձէնջ եղբարք, քանզի գրեալ է. "Մի փոխեսցես զսահմանս զոր եդին հարքն քո. և որ քակէ զցանկ, հարցէ զնա օձ,,. բայց ասա, զո՞րս խոստովանիս դու հարս քո. եթէ զառաքեալսն և զհայրապետսն որք աստուածաշունչ բանիւք դեռ ևս կենդանի են 'ի միջի մերում, և առ ամենայն ճշմարտութիւն առաջնորդեն, և ես եմ նոցա ջատագով, և առ 'ի նոցանէ վարժեալ և աշակերտեալ։ Ապա թէ այլս ոմանս, որոց ոչ անուն երևի 'ի միջի մերում, և ոչ արձանագրութիւն բանից վկայ իւրեանց ուղղութեանն, զիմաստասիրութիւն պարտիմք յայսմ վայրի 'ի գործ արկանել, և խոհրութեամբ ճանաչել, մի գուցէ լինիցին մեզ մոլորեցուցիչք 'ի սրբոցն հետոց, որպէս ծերքն Խաբայելի 'ի Մովսիսէ։ Արդ զհոգւոյ հեզութեան և զխոնարհութեան զգեցեալ եկ և քննեսցուք ընդ միմեանս համեմատութեամբ զօրէնս վերջնոցս որ առանց գրոյ, և զառաջնոցն որ գրովք և առաքինութեամբք նոցա փայլեն 'ի մէջ մեր։ Բայց քանզի որ հաւատոյն էր բան, յայլում վայրի հատուցաք, և զսիրոյն որ առ ազգս քրիստոնէից. այժմ առաջի կայ մեզ գտանել զճշմարտութիւն կարգաց եկեղեցւոյ որ ըստ հարցն մերոց սրբոց և երանելեաց ընթացից։

Բուռն հարցուք նախ զժամանակականս առկայացեալ անկարգութեանց. ոչ մտեմք՝ ասեն յեկեղեցի աղօթել, ըստ որում և առաջինքն։ Որ առաջինքն եղբայր, տուր ինձ պատասխանի. սուրբն Գրիգոր, եթէ Ներսէս, Սահակ, կամ այլ ոք յորդւոց նորա, զորս փոխանակ Աստուծոյ ունիմք, և 'ի վերայ նոցա հիմնացեալ

1 Մի օրէն. Ծփանէնժ։

եմք. եթէ ոչ մտին, հաւանութեամբ ընդունիմ զհակառակութիւնդ, և գովեմ զճշմարտութեանդ լինել օժանդակ. ապա թէ այլք ոմանք հուսկ յետոյ՝ օտար 'ի սրբոցն ցուցին մեզ ճանապարհ, որոց ոչ բան ունիմք և ոչ յիշատակ, բարիոք համարիմ զբարեյիշատակացն նախապատուել զործնադրութիւն: Նաև զայս ուսանի ասէ հաւանեցուցես, եթէ նոքա յեկեղեցի աղօթէին 'ի գիշերի և 'ի տուընջեան: Յարձանացեալ խորանացն որք կան մինչև ցայսօր հաստատուն, և ոչ ունին ատընթեր ժամատուն. և Սահակ սուրբ հայրն մեր ձ առ սեղանն տէրունական նստելով՝ ետես զհրաշագանն տեսիլ, ըստ որում ասէ պատմութիւնն. նա և թագաւորքն բագրատունեաց, և որ առ նոքօք հայրապետք՝ ընդ նոյն գնացին շաւիղ՝ եկեղեցիս միայն շինեալ տունս աղօթից. հաւանեցուցանեմ զքեզ այսոքիւք. գիտեմ զի հաւանական բանիս հաւանիս, քանզի զմերոցն բուռն հարի 'ի սկզբանս՝ զիջանելով ըստ քումդ տկարութեան: Ապա թէ ոչ ազգ քրիստոնէից նախապատիւ քան ըզմեզ և յառաջագէտ՝ և այսօր իսկ առ մեզ աղաւաղեալ օրինօքս պայծառանան. բայց իմդ եղբօր տկարացեալ է հայեցողութիւն առ 'ի նոցայն հայել ճշմարտութիւն. վասն այսորիկ 'ի մերս գանձէ հանցուք զնորին և զհինն՝ աշակերտեալ դպիրըս: Էր, ասէ, այս այսպէս յառաջագոյն, բայց յետոյ լուծին զայն օրէնս. ո՞ ոք, 'ի մէջ անցցէ, որպէս զի տեսցուք զառաւելութիւն իմաստիցն, և ուսցուք զպատճառս խորհրդոյն. մի՛ գուցէ այլ ինչ յայտնեցաւ նմա զոր նոքա ոչ ծանեան. գիտեմ զի ոչ գիտեմք զլուծանողն, և ոչ զառ 'ի նա ուղղութիւնն: Այլ զայս ասեն, մերս եկեղեցիք մեռոնած է և օրհնած: Բարիոք ասես. և ո՞ր աղագաւ մեռոնեցաւ, եթէ ոչ զի որոշեսցի տուն Աստուծոյ. կամ թէ մեք մեռոնեմք, և նոքա ո՞չ: Ապա յայտ է թէ թիւրեցաք յուղղոյն շաւղաց զայս առնելով. ապա թէ հաւատաս ինձ, նոքա նախ զայս արարին, և մեզ ուսուցին: Ո՛վ կամիս և զմեռոնին խորհուրդն քեզ ուսուցից, և զեկեղեցւոյս զչափ պատուոյն՝ որպէս ինձ թուի:

Մեք մարդիկ մեռեալ էաք 'ի մեղս մեր, կենդանի զոլով աշխարհի, և մեռեալս Աստուծոյ. ապա յոր

ժամ հաւատացաք 'ի նա, մտաք 'ի ջուրս աւազանին աշխարհի, և կենդանացաք Աստուծոյ. և յետ յառնելոյ 'ի ջրոյն առաք զկնիք սրբոյ մեռոնին շնորհ Հոգւոյն սրբոյ առ մեզ իջուցին, որ տուաւ մարդկան 'ի ձեռն Քրիստոսի, և եղաք այնուհետև տաճար Աստուծոյ. ըստ այսմ և եկեղեցիս անշունչ տաճար էր և անզօր, աղօթեմք 'ի նմա, և մեռոնիւն զշնորհս Հոգւոյն սրբոյ 'ի նա տպաւորեմք, և զանզօրն զօրացուցանեմք, և զանկենդանն՝ հոգւով կենդանացուցանեմք, և նոյն Հոգի է՝ որ 'ի մեզ բնակեցաւ և 'ի նա, և արար զնա մեզ հանդերձ տաճար Աստուծոյ, և մայր մեր ամենեցուն. արդ միով Հոգւով զօրացեալքս զիա՞րդ 'ի միմեանց խորշիմք: Սարկաւագն, ասէ, յամենայն աւուր ձայնէ. "Մի ոք յերեխայից, մի ոք 'ի թերահաւատից, և մի ոք յապաշխարողաց և յանմաքրից մերձեսցի յաստուածային խորհուրդս": Ընդունիմ զայսպիսի աստուածային բարեկարգութի 'ի հարցն իջեալ առ մեզ. սակայն ըստ ճշմարիտ խորհրդոյն զօրութեան և զքեզ նմին կամիմ հաւանել, զի 'ի խորհրդոյն վարէ արտաքս՝ դիտաւցուք, և ոչ յեկեղեցւոյն. յայնժամ հրամանն տայ 'ի բաց գնալ, յորժամ խորհրդածութիւնն կատարի, և ոչ թէ յամենայն ժամ՝ որպէս քեզ թուի: Յայտ առնէ զայս և նոյն ինքն սարկաւագին հրամանն, թէ 'ի ներքս էիր մինչև ցայնժամ, և 'ի ներքին վայրէն զքեզ արտաքս առաքէ. ապա թէ միշտ էր սովորութիւն նոցա արտաքս մնալ, որպէս և այժմ մեք, աւելորդ էր զայս հրամանս սահմանել, թէ որք արտաքս էք՝ արտաքս գնացէք, և մի մերձենայք. այլ էին 'ի տաճարս, և յայնժամ մերժին: Իսկ ո՞յք ոմանք էին՝ որք առաքին 'ի դուրս. թերևս իշխա՞ն տաճարիս, կամ քահանայքն, կամ կրօնաւորքն ընդ Քրիստոսի մեռեալքն, որպէս կարծես. և ոչ երբէք. այլ չև ևս մկրտեալ երախայքն, և անհաւատքն՝ անզեղջ կամօք շաղախեալքն 'ի մեղս, որոց թոյլ ետ բարեկարգութիւնս միշտ 'ի միաբանութիւն եկեղեցւոյս լինել յաղօթս տուընջենային և գիշերոյ, և միայն 'ի խորհրդոյն որոշեաց: Իսկ քեզ քահանայիդ՝ որ երէկ պատարագիչ, զիա՞րդ այսօր իշխանութիւն ունի զնոյն հրամայել՝ ընդ երախայսն արտաքս գնալ. կամ քրիստոնէիդ և կրօնաւորիդ ընդ անհաւատսն հրաժա-

րել։ Ա՛յս և դու զի՞նչ կրես խղճմտութիւն, հարցանեմ, որով յեկեղեցւոյս արտաքս աղօթես այսօր, և վաղուն մտանես. զբամբասե՞ն, և ոչ բնաւ. զխեղկատակե՞ն, և ոչ երբէք. զի զսովին որպէս կարծեմ, և ոչ 'ի մեղաց հա֊մարս ունեմք։ Ապա զի՞նչ, կամիմ ուսանել. յորժամ բնութեա՞նս օրինօք փորձիս. բարւոք է և այդ զգուշու֊թիւն. բայց խրատեցար ոչ լինել քան զօրէնսն օրինա֊ւոր, ճանապարհ գնալ զարքունի, և ոչ խոտորել յաջ կամ յահեակ։ Նա արդ, եղբայր, եկ և ուսիր յինէն զճըշ֊մարտութիւնն. եթէ ըստ կարգի զամենայն մեղս խոստ֊րէիր, որպէս և հրաման ընկալայ, բարւոք էր և զայս խորութիւն ներքոյ իւրումն սահմանի պահել, և ոչ զեր օրինացն անցանել. իսկ ապա թէ բանիւք յանցա֊նէին, խեղկատակութեամբն զ֊ոգին սուրբ տրտմեցու֊ցանէին, նախանձու զեղբայրն սպանանէին, դատելովն դատապարտէին՝ անխտիր 'ի մէնջ կատարին, և ոչ 'ի խորհրդոց հրաժարեցուցանեն. և զգուշութիւնն միայն յայս մեղս է, խորշեսցուք սովաւ, ըստ որում 'ի սրբոցն հրաման ընկալաք. և ո՞ է որ ըստ այսմ մասին յանցա֊նաց լինի մեզ օրինադիր։ Սուրբն և մեծն Բասիլիոս 'ի գիրս հարցողացն, յորժամ հարցեալ վասն այսր՝ պա֊տասխանէ յերեք հարիւր յիսուն և եօթներորդ հար֊ցումն, թէ "Վերագոյն ելաք բնութեան օրինաց 'ի Քրիս֊տոս մկրտեալքս. սակայն զգուշութիւն պարտ է ունել, և յայնմ աւուր 'ի խորհրդոյն հաղորդութեանն հրաժա֊րել, և ոչ եթէ յեկեղեցւոյն"։ Արդ ո՞ ոք քան զսուրբս զայս յայտնեցաւ մեզ զգուշութեան ուղղիչ, անցցէ 'ի մէջ, նախ զնորայն կորզեսցէ[1] զանունն և զօրէնս, և ապա իւր զմեզ աշակերտեսցէ. ապա թէ Բարսեղ և առ 'ի նմանէ պատուիրանն հաստատուն է, և նա որ յամենայնի ուղղադատ և անաչառ դատաւորն է, ըստ այսմ նուագի զայս միայն ետ մեզ զգուշութիւն. բա֊րւոք համարիմ նմա հաւանել՝ քան յայս միայն զերա֊զանցել, որ պատուանդակ սահմանն որ առ 'ի նմանէ տկարացայ կատարել։ Բայց ինձ թուի, թէ որ զայս միայն քննէ, ոչ տիրապէս զաչս մտաց առ գիրս հարցո֊ղացն յառեալ է. ապա թէ ոչ՝ կարողանայր ընտրու֊

1 Այլ օրին. կործանեսցէ։

թիւն առնել մեղանչելոյն, զի ահա զոր նա մահու չափ սահմանեալ է մեղս, և անհաւատութիւն զանհնազանդութիւնն, զմիմեանս դատելն, և զառաջնորդին արհամարհութիւնն, և զկրօնաւորին աշխարհի կենդանի լինելն, մեք ոչ եթէ մեղս միայն չհամարիմք, այլ որպէս զբարեպաշտութիւն ողջունեմք. և յայսմ մասին միայն գերազանց կամաց հօրն սրբոյ զգուշանամք, յայտ առնելով թէ ընդ այլսն և յայսմ զսուրբ հայրն անգոսնեմք. որպէս յայլսն թուլութեամբ և արհամարհութեամբ, և յայս տարադէպ զգուշութեամբ. որպէս զի յամենայնի նորին հրաւամբքն կշտամբեսցուք. քանզի նա զայս գիրս կատարելոց ետ կերակուր, և ոչ տըղայոց. որպէս զի ինչ զիջանելով հրամայեսցէ, այլ ամենայնն է, որպէս և ընթերցողն իմաստութեամբ ճանաչէ :

Յաւելուն դարձեալ. և զի՞նչ թիւրութիւնն է, նոյն զաղօթսն կատարեմք զոր յեկեղեցին և արտաքոյ. և այն զի Պօղոս ասաց. “Յամենայն տեղիս բարձցեն ըզսուրբ ձեռս առանց բարկութեան և երկմտութեան„: Իսկ թէ նոյն էր այս տուն աղօթից, ո՞ր աղագաւ որոշեցաւ յառաջին սրբոցն. տգիտաց և անհաւատից նոյն է. բայց հաւատովք իմաստացելոց այս յերկիրս երկին է. նա և թէ նոյն էր, ընդէ՞ր խորհրդածութիւնքն որ աստ կատարին՝ արգելեալ են յամենայն տեղիս կատարել. ընդէ՞ր և ինքն Պօղոս սմին զնախապատուութիւնն տայ՝ ասելով. “Ո՞չ է տուն տեառն տեղի ձեզ հաց ուտելոյ„. բայց չէ նոյն, որպէս և հանդերձեալ եմք ցուցանել. սակայն նախ առաջին բարիոք համարիմ փոքր ինչ զպատճառս այժմու որոշելոյ մեր յեկեղեցւոյ քննել, որ ոչ էր առ հարսն մեր, որպէս ահա ցուցաք: Ինձ թուի թէ յորժամ ըստ մեղաց մեր 'ի ծառայութիւն մատնեցաք այլազգեաց, և տիրեաց հասարակաց 'ի վերայ աշխարհին Հայոց սուրն Իսմայէլացւոց, փախստական եղեն բնակիչք աշխարհին՝ տարաբերեալք յերկիրս յորում եմք, որ էր Հոռոմոց. և ոչ ունելով ընդ նոսա հաղորդութիւն՝ զորոյ պատճառն քննեալ է յայլում վայրի, ոչ թուլացուցին նոցա Հոռոմք յիւրեանց սեպ-

1 Ի միում օրին. Թէրուբէան:

հական յեկեղեցիս որք են յայսմ աշխարհի՝ աղօթել. իսկ նոցա թափառական գոլով, և բարեյոյս 'ի վերստին դառնալն յաշխարհն հայրենի, շինեցին միայն ըստ ժամանակին պիտոյից մատրուռս փոքրկունս, որպէս և տեսանեմք. և զի ոչ գտին վերստին դարձ, և առտ սկսան բազմանալ, ակարանայր եկեղեցին ամփոփել զնոսա, և 'ի հարկէ շինեցին առ ընթեր զտունս. իսկ այն շինութիւն տանց որ 'ի հարկէ՝ փոփոխմամբ ժամանակի առ յետինս արմատ չարի եղև և հեշտութեան. քանզի յաղօթելն յեկեղեցին՝ զգոյշ լինէին որպէս 'ի տուն Աստուծոյ, և յարտաքոյն թուլանային որպէս 'ի տուն մի հասարակաց: Յաղթեաց հեշտութին ճշմարիտ օրինացն, և սկսան ընդ ամենայն տեղիս շինել զայս տունս՝ իբր առաւել զգուշութեան տալով կարծիս. և հարկաւորապէս ձգեցին զանձինս արտաքոյ ամենայն բարեձևութեան: ՙԱյս զի անխտիր զաղօթմն սուրբ յամենայն տեղիս կատարեմք, որ ոչ է բարեվայելչութիւն առաջին սրբոցն, ըստ որում ցուցաք. քանզի թէ միայն տուն Աստուծոյ սա է՝ զԱստուած 'ի սմա հաւատասցուք լինել, որպէս զթագաւորն որ հանուր աշխարհին տիրելով զօրութեամբ՝ սակայն ինքնութեամբ գտանի միայն յարքունական ապարանսն: Արդ որպէս որք են 'ի ներքոյ զօրութեան արքային, յիւրաքանչիւր տեղւոջէ հարկաւորապէս եկեալ՝ միայն առաջի արքունական գահոյիցն խօսին ընդ նմա, այսպէս և մեզ 'ի տաճարն Աստուծոյ պարտ է առ նա աղօթել առաջի տիրական բեմի սրբոյ սեղանոյն. իսկ եթէ ծուլանամք 'ի տուն նորա մտանել, զիա՞րդ կարեմք զերեսս նորին տեսանել:

Դարձեալ, արտաքոյ եկեղեցւոյ աղօթելով, միայն բարբառ արձակեմք, և ոչ զուշ իմաստից 'ի նոյն պարփակեմք, համարելով թէ հեռի եմք յԱստուծոյ արտաքոյ ելով տան նորա, և ծոյլս և հեղգս յաղօթելն լինիմք:

Երրորդ, զի զմեծ և զամենածայրագոյն փրկանս [1] խորհրդոյ պատարագին արտաքոյ կալով արհամարհեցաք, անճաշակ լինելով 'ի կցորդութենէ մատուցողին և 'ի քաղցրութենէ խորհրդոյն:

1 Մի օրին. Փրկանին:

Չորրորդ, զի ամենեցուն մեր արժանաւորաց և անարժանից արտաքոյ եղեալ եկեղեցւոյ, մեղաւորին ոչ եղև երբէք որոշումն և մերժումն սակս մեղանացն, որով հարկաւորապէս զամօթի հարկանէր և զխղձան աճեցուցանէր առ Աստուած, տեսեալ զի 'ի հասարակաց միաբանութենէս մեղացն վասն քակտեցաւ. և տիրեալ՝ յամօթոյն՝ դիւրաւ տայր զղջմանն տեղի։

Հինգերորդ, զի ոչ միայն անձանց, այլ և աշխարհի եղեաք նուաճ գայթակղութեան՝ հարկաւորապէս ըզտեառնն եղկութիւնն բերելով 'ի վերայ մեր. զի տեսեալ զքահանայսն ժողովուրդքն յում և պետ տեղիս աղօթել, խնքեանք ընաւ անփոյթ արարին զգալն յեկեղեցիս, այլ ուսեալք 'ի նմանէ՝ զտանիս և զմահիճս արարին տեղի աղօթից, առ մեզ հանելով զայսուիկ պատճառն. բաղում և այլ որ ընդ սոքօք անկարգութեան նուաճ եղև արտաքոյ եկեղեցւոյ աղօթելն. և ևս առաւել չար այս, զի հեղգութեան մեր և տարտամութեան պատճառ զերկեւղն և զաստուածպաշտութիւնն առնեմք. յեկեղեցի չաղօթեմք վասն մեղկութեան և հեշտութեան, և որպէս զի 'ի տախտակամած որմն յեցեալ հանգիցուք. և յորժամ ստիպիմք ընդ Քրիստոսի խաչեալքս, աշխարհի մեռեալքս, հարքս և կրօնաւորքս և աշխարհի բարեաց օրինակքս, հրաժարիմք խոստովանեալ՝ թէ չեմ պատրաստ։ Ո՞ր հարցանէ բանս. և ո՞յր աղաղաւ սգոյ տեսակ ձևդ և աշխարհի մեռելութիւնդ. յորժամ 'ի հասարակաց տունս² մտանել անպատրաստ գտանիս. այս տունս քրիստոնէից և անհաւատից է տեղի խրախճանութեան. քանզի ասէ իմաստութիւնն որ շինեաց զսոյն. "Որ ոք իցէ անզգամ, եկեսցէ առ իս և արբցէ, և ցպակասամիտսն՝ ասէ, եկայք կերայք 'ի հացէ ատոր իմմէ". իսկ ապա դու ընդէ՞ր խորշիս կատարեալդ 'ի Քրիստոս և անցեալդ ընդ հասակն տղայական, որ պարտական ես միշտ յիմանալի տունն Աստուծոյ մտանել իմացականապէս. արդ 'ի զգալւոյս ընդէ՞ր հրաժարես՝ որ այնմ է պատկեր։ Եթէ ոք քրիստոնեայ չէ, և զնա եմք պարտական կոչել աստ, որպէս զի եկեալ տեսցէ զքրիստոնէից զբարեկարգու-

1 Մի օրին. Տիրէալ։ 2 Մի օրին. Տանս։

թիւնս. դու ընդ Քրիստոսի խաչեալդ ո՞չ չիկնիս բացակայ ՚ի նմանէ լինել։ Ապա թէ ՚ի հասարակական ժողովրդոց ոք իցես, և ոչ գքեզ հրաժարեցուցանեմք ՚ի քաղցր լծոյս. տէրն իմ կոչեաց առ ինքն զաշխատեալս և զբեռնաւորս հանգուցանել, եր վասն հեղգայք առ նա ժողովել։ Մարդասպա՞ն ես կամ շնացող, և այնր աղագաւ երկուցեալ խորշիս. մի՛ եղբայր. թէ նեխեալ ես թէ փտեալ, իմոյ գլխոյն ես անդամ, բժշկել եմ պարտական և ոչ հատանել։ Եկ մուտ համարձակ ՚ի տունս Աստուծոյ, և լուր ՚ի նմանէ զայդպիսեացն պատիժ և զպատուհաս։ Յետ որոյ ՚ի խորհրդոյն արտաքս վարեալ ՚ի ձեռն սարկաւագին՝ գիտեմ զի զամօթի հարկանիս զղջանաս, թէպէտ և ապառում ես սրտիւ, տեսեալ զախտաւոր հեշտութիւնն քեզ յամենուրախաբար սեղանոյս բաժանիչ. ինձ թուի թէ սարսափես ընդ քիրտն հարեալ, յորժամ կորացուցեալ զպարանոց մեկուսի ՚ի բազմացն լինիս։ Ապա թէ քահանայ ես, սարկաւագ, կամ ժառանգաւոր, տանս տէր ես, ՚ի քում իշխանութեան տեղւոյս արտաքոյ ընդէ՞ր կամիս գլինելն, և անհաւատիցն դասակցել։ Այս ահա անհաւատքն՝ միայն ՚ի խորհրդոյն, և ոչ թէ յեկեղեցւոյս որոշեցան. դու միշտ արտաքոյ սորա լինելով անձամբ զանձն դատապարտես։ Քահանայից աթոռ է, ժառանգաւորաց իշխանութիւն է, կրօնաւորաց աղօթարան է, աշխարհականաց մայր է, մեղաւորաց քաւարան է։ Ամենեցուն է այս տեղի, ամենեցուն պարտ է ՚ի սմա աղօթել, ամենեցուն պարտ է մտանել, բայց ոչ յամենայն ժամանակս։ Ո ժամանակս կալցի յեկեղեցիս ուսաք խոտրել, և ոչ թէ զեկեղեցիս՝ քրիստոնէից ընդդէմ փակել, որպէս և երանելի հայրն մեր Դիոնեսիոս աշակերտն Պօղոսի եդ զհիմն այսորիկ կարգաւորութե՛ ՚ի մէջ ամենայն աշխարհի։ Այս ամենայն սուրբք յիւրաքանչիւր ժամանակս ՚ի վերայ նորա շինեցին զհաւատս իւրեանց. ապա յայտ է՝ թէ որ օտար յայս շաւղացս ընթանայ, հերձուածող է, և նոր չարեաց գտակ։ Այլ մեք վկնի Աստուծոյ զնորայն ունիմք բանիս առաջի նըպատակ զկամս. և գիտեմք հաստատապէս, զի բարւոք միտս ունիմք, կամիմք և զայս բարիոք գնացս ամենեցուն ցուցանել։

Իսկ եղկելի ոք հակառակ այսմ զննելով՝ ոչ գիտէ բնաւ ինքն առ ինքեան՝ թէ բարիոք միտս ունի. այլ միայն աւանդութեանցն սովորութեանց լինի ջատագով։ Սակայն ես էի երբեմն իբրև զքեզ. զայդորիկ առեալ եմ զփորձ անձամբ. և զայսմանէ գիտեմ՝ թէ որք աղագաւ հին սովորութեանցն լինիմ անգոսնիչ, և նոր օրինաց դատակ. և որպէս կարծեմս, ոչ անքննաբար 'ի սոյնս շարժիմ, այլ միայն զի յԱստուծոյ առաւել ակն առնում՝ քան 'ի մարդկանէ, և ճշմարտութեանն անսաչառ լինիմ մտօք խուզող։ Արդ զոր վերոյ յիշատակեցաք երանելի հայրդ մեր Դիոնեսիոս գրելով առ Տիմոթէոս, զեկեղեցի՝ պատկեր երկնաւորացն կարգաց և դասաւորութեանց ուղղեաց 'ի յերկրի, զորոյ պէսպէս վկայութիւնս հանդերձեալ բանն 'ի պատշաճ ժամու տացէ օժանդակ. իսկ այժմ ախորժեմ զգալի և հաւանական յարացուցի պիտոյից խօսել առ տղայաբարոյ թանձրութիւն մտաց այնոցիկ՝ է որք անգոսնեն զուղղապէս խորհել։

Այլ նախ զայս յորդորեմք քննել՝ զհինն ասացեալ բանն, "Արար Աստուած զմարդն 'ի պատկեր իւր. ըստ պատկերի Աստուծոյ արար զնա". իբր թէ ոչ է վայրապար և կամ առ անասնեղէն մարմինս իմաստ զդրոյն քանակի, այլ յայտ է՝ թէ անձնիշխան կամօք եմք պատկեր Աստուծոյ. և կարող եմք 'ի զգալի պատկերէ արքունական ապարանից իմանալ, և յարացուցիւ դնել առաջի զհոգևոր և զբարձրագոյն կարգս եկեղեցւոյ. զի թէ Քրիստոս Աստուծոյ զօրութիւնն և իմաստութիւն այսպիսի առակօք զթաքուն և զխորին խորհուրդս կամաց իւրոց յայտ արար, մեզ ընդդէր է հեղգալ. երբեմն ասելով, "Նման է արքայութիւն երկնից առն թագաւորի որ առնիցէ հարսանիս". և երբեմն, "Յայնժամ նմանեսցի արքայութիւնն երկնից փեսայի և հարսին, որոց կուսանքն ելին ընդառաջ"։ Ահաւասիկ ետ մեզ համարձակութիւն բացայայտել զխորհուրդ տան իւրոյ սրբոյ՝ պատկերաւ թագաւորական իշխանութե։ Ի մէջ կացցէ այժմ մեզ պաղատ թագաւորական կամ տուն իշխանի, ուր զատեան դատողութեանն դնէ։ Արդ թէպէտ և զօրութիւն տէրութեան թագաւորին 'ի վերայ ամենայն աշխարհացն է, բայց սակայն ինքնութի փա-

ուաց նորա յայնմ տան է պարփակեալ. և ամենեցուն հարկ 'ի վերայ կայ անդանօր նմին զերկրպագութիւնն մատուցանել. ապա թէ արտաքոյ այնմ տեղւոյ նմին կամի ոք երկրպագել, յայտ է թէ կամ անարժան էր մտանել յաղքատական ապարանսն, կամ արհամարհեաց զթագաւորն և պատժապարտ գտաւ: Այսպէս և Աստուծոյ իշխանութիւն, նախախնամութեանն զօրութիւն՝ է 'ի վերայ ամենեցուն, բայց ոչ և ինքնութիւն փառացն յամենայն տեղիս, այլ միայն յայս տուն[1], զոր որոշեալ նմին՝ աղաչեցաք 'ի սմին բնակել: Որ արտաքոյ սմին ընդ նմա խօսի՝ յայտ է թէ կամ որիշ է 'ի հաւատոցն որ առ նա, կամ արհամարհեաց զտեղին իւր: Եւ որպէս 'ի տաճար թագաւորին ծառայիցն մտերմից և օտարացն համարձակելի է մտանել, և կալ նորին առաջի և լսել զբարբառ արքային, և յայտնել զիւրաքանչիւր վիշտս. բայց միայն 'ի խորհրդական ժամն լինի բացորոշութիւն մտերմացն, և որոց ոչ այնպէսն իցեն. զի ակնարկելով նորա քարոզն աղաղակէ. 'ի բաց կացէք, արտաքս գնացէք, ով արք, խորհուրդ է թագաւորիս. և ապա որք 'ի ներքս էին արտաքս ելանեն, և որոց անկ է մնալ՝ դիտեն յանձինս իւրեանց. իսկ սոքա յելանելն դժուարին և զամօթի հարկանին վասն անարժան գտանելոյ խորհրդակցութեանն. և յայտ է թէ զմտաւ ածեն ջանալ առ 'ի նա հաւատարմութի, մինչև յայնմ կարգէ ոչ որոշեսցին: Այսպէս և տանս Աստուծոյ՝ ուր բնակեալն է նա, համարձակելի է մտանելն ամենեցուն, և խօսել ընդ տեառն իւրեանց, մեծամեծաց և փոքունց, չարագործաց և բարեպաշտից, և 'ի գիշերային աղօթսն և 'ի տուընջենայինս և յամենայն ժամու:

Իսկ ապա յորժամ հանդերձեալ լինի երկնաւոր թագաւորն խորհուրդ առնել ընդ արժանապատիւ ծառայսն իւր՝ զպատարագին կատարողութիւն, և զձեռնադրութիւն երիցանց, և զմեռոնին կատարողութիւն, յայս երիցս խորհրդոցս ժամանակ սահմանեաց սուրբ հայրն մեր Դիոնեսիոս, ըստ սովորութեան ժողովել ամենեցուն յեկեղեցին՝ անհաւատից և հաւատացելոց,

1 Այսինքն յեկեղեցւոջ առաւել հանդիսանան փառքն Աստուծոյ, քան արտաքոյ, ըստ նմին և անդ՝ քան այլուր պատշաճագոյն է կալ յաղօթս:

մեղաւորաց և արդարոց, սրբոց և պղծոց, չարագործաց և բարեպաշտից։ Իսկ թէ ինձ յանդգնութիւն համարիս զասացեալս, առ գիրս նորա ընթերցիր և գտցես, զի ոչ լուծանեմ 'ի պատուիրանացն Աստուծոյ, և երկիւղ ունիմ յայնպէս ուսուցանելոյ զմարդիկ՝ անաչառ դատաստանի գոլով պարտական. և մի կցորդութեամբ կատարեն զաղօթսն և միտ դնեն ընթերցուածոցն՝ կշտամբեալ 'ի նոցանէ անարժանիցն, և զօրացեալ արժանաւորացն, և խօսին 'ի հասարակաց պաղատանսն ընդ թագաւորն երկնաւոր՝ իւրաքանչիւր զհայցուածս իւր և զխնդրուածս։

Բայց տես և այլ ճշգրտութիւն յարացուցիս. քանզի անդ նախ իշխանքն խօսին զկամս արքային առ ժողովուրդն ըստ իւրաքանչիւր պատուոյ և աստիճանի, և ապա 'ի բարբառելն նորա՝ ամենեցուն լինի լռութիւն, և վճիռ ածէ բան թագաւորին իւրաքանչիւրոցն խնդրելոց. քանզի զոր ինչ ասէ, անյապաղ կատարի. և ոչ կարէ ոք երկրորդել 'ի վերայ հրամանի նորա։ Նոյնպէս և աստ 'ի թագաւորին մերոյ Քրիստոսի կայարանս՝ նախ խօսին առ 'ի նմանէ պատուեալ իշխանքն, և հազարապետք խորհրդոց նորին՝ մարգարէքն և առաքեալքն 'ի դիմաց Աստուծոյ առ մեզ յայտ արարողք կամաց նորին, և յետ նոցա ամենեցուն լինի լռութիւն և զգուշութիւն 'ի ձեռն հրամանատար սարկաւագին. և ապա զատակալի և զուրախարար աւետարանական հրամանն փրկչին հասարակաց խօսի առ ամենեսեան՝ ուղղելով և մխիթարելով զիւրաքանչիւր մեր զտարակոյս։

Եթէ մեղաւոր ոք է, և անմխիթար սգայ վասն մեղաց իւրոց, ձայնէ առ այնպիսին. "Մի խռովեսցին սիրտք ձեր և մի զարհուրեսցին, այլ հաւատացէք յԱստուած և յիս հաւատացէք. 'ի տան հօր իմոյ օթևանք բազում են". և հաստատէ յամուրս ցուպ զդղրդուեալ միտս նոցա։ Եթէ պաշտօնեայ ոք է, և կամի ուսանել զհատուցումն աշխատութեան, լսէ զի ասէ. "Ուր եսն եմ, անդ և պաշտօնեայն իմ եղիցի"։ Եթէ խաչեալ ընդ Քրիստոսի կրօնիւք, և նա մխիթարեսցի բարբառով յուսոյն իւրոյ, յորժամ խօսի ընդ նմա. "Որ ոք եթող զաշխարհ վասն իմ, հարիւրապատիկ առցէ, և զկեանսն յաւիտենականս ժառանգեսցէ"։ Նոյնպէս բարբա-

ռեալ քաղցրալուր և հեզ Թագաւորս մեր, զժողովեալ ծառայս իւր մխիթարեալ ըստ իւրաքանչիւր վշտաց՝ բարեյոյս առնէ, և աւետեօքն զուարճացուցանէ, և զծանրութիւն տրտմութեանն թեթևացուցանէ։

Որդ քանզի այն Թագաւորի հարկաւոր էր՝ յետ տեսութեան բազմութեան ժողովրդոցն և լսելոյ զբանս նոցա՝ 'ի խորհրդեան լինել, զի ոմն պատմեաց՝ թէ աւազակք ասպատակեցին յայսմ անուն կողմ աշխարհիս, այլ ոք՝ մերոն աշխարհի անդաստան ոչ ետ· զվայելչականն պտուղ և երկնչիմք 'ի սովոյ, իսկ ոմանք կագունին և հակառակութիւն, և իրաւունս խնդրեն 'ի նմանէ, նա հարկաւորապէս զամենայնն 'ի հանրականն հանդէս միամտութեամբ[1]՝ լսէ, և ապա վախճան ածեալ հանդիսին՝ զոչ մտերիմն հրամայէ արտաքս հանել. և ինքն առեալ զխորհական իշխանսն՝ 'ի խորհրդեան մտանէ վասն հասարակաց գաւառին փրկութեան, թէ որպէս ասպատակացն յաղթեսցեն, և զսովեալսն արձակեսցեն, և զիրաւունս արասցեն 'ի խաղաղութեան աշխարհին պէտս։

Նոյնպէս և այժմ հոգևոր տէառն և Թագաւորի առաջի 'ի սուրբ եկեղեցի իմացականապէս խօսեցան ոմանք 'ի ժողովրդոցն, թէ միշտ ասպատակ եած 'ի վերայ մեր սատանայ՝ գերելով զմիտս մեր 'ի չնութիւն, 'ի սպանութիւն[2], յարծաթսիրութիւն, և յայլ տեսակս մեղաց. և այլք ոմանք՝ թէ խորշակահար առնէ խեթիւ հայեցեալ արեգականն՝ զբոյսս բարեպաշտութեան մերոյ զանազան փորձանօք. իսկ են և որ 'ի միմեանց ունին մարդիկ զպատերազմ ներգործութեամբն սատանայի։ Զայսոցիկ զամենեցուն հայցուածս լուեալ Քրիստոս՝ խրատեաց զնոսա պատգամաւորօք մարգարէիւք և առաքելովք, յասելն՝ “Մի խաբիք, ամենայն պոռնիկ կամ պիղծ կամ ագահ, որ է կռապաշտ, ոչ ունի ժառանգութիւն յարքայութեանն Քրիստոսի և Աստուծոյ„։ Նա առ նոսա որք 'ի խորշակէն հարան սերմանքն՝ ձայնէ այս պատգամս. “Զօրացարուք տէրամբ և կարողութեամբ զօրութեան նորա, և զգեցարուք զսպառազինութիւնն Աստուծոյ, զի կարող լինի-

1 Մի օրին. Միաբանութեամբ։ 2 Մի օրին. Ի գողութիւն։

ջիք ընդդէմ հնարիցն սատանայի կալ»: Եւ որք ընդ միմեանս մարդիկն մարտեան, տես թէ զինչ ասէ. «Զ միմեանց բեռն բարձէք, և այնպէս կատարեցէք զօրէնսն Քրիստոսի»: Եւ յետ սորա յաւելեալ Թագաւորն զմխիթարականն, սփոփէ զնոսա զօրս ծառայս Նորին երկեցոյց, որպէս կանխաւ ասացաւ. և յետ այնորիկ ախորժէ խորհուրդ առնուլ՝ թէ որպէս օժանդակեսցէ այսոցիկ մեղելոցս. զոր ծանուցեալ հաւատարիմ և մտերիմ ծառային և հրամանատարին սարկաւագին՝ բարձրացուցանէ զբարբառ իւր 'ի լուր ամենեցուն. ով ժողովուրդք, լուայք զպատգամաւորութիւն ծառայից տեառն մերոյ, և զնորին խոկ զաւետաբեր հրամանն: Սորդ այսուհետև խորհուրդ է լինելոց Թագաւորին. և բազումք 'ի ձէնջ անկար են տանել զնորա իմաստիցն զօրութիւնն: Արք տղայամիտ երախայքդ էք, այսուհետև արտաքս գնացէք, զի մի անկատար հասակաւ հոգւոց՝ 'ի կատարեալ իմաստ հոգևորականս ձեռնարկիցէք: Եւ ապա յետ զայս ասելոյն, Նոքա որք էին յեկեղեցիս՝ գնան արտաքոյ, խորհրդոյն զտեալ անարժանք, և ոչ թէ տանն. ըստ որում և Ինքն բանն յայտ առնէ. «Ոչ ոք յերախայից մերձեսցի» ասելով, ոչ թէ 'ի տունս Աստուծոյ, այլ 'ի խորհուրդս Նորին:

Այսպէս մեք, ոչ գիտեմք թէ ուստի վարժեցաք ըղտունս փոխանակ խորհրդոյն պատուելով: Որպէս գրէ և երանելին Դիոնեսիոս՝ թէ յետ աւետարանին գնան արտաքս երախայքն, և որք ընդ ապաշխարութեամբ են: Եւ այս զինչ յայտ առնէ. առաջին, զի մի 'ի տըղայաբարոյ հեթանոսացն՝ որք յայնժամ գային յեկեղեցի Քրիստոսի, դեռ ևս երախայ ելով և անհաւատ՝ խորհրդածութիւնս մեր արհամարհեսցի, և դարձեալ՝ զի 'ի ներս ելով, այժմ բաժանեալ 'ի հասարակաց եկեղեցւոյս և արտաքս առաքեալ, ծանիցեն զիւրեանցն վատթարութիւն և զամօթի հարկանիցին, թէ ըստ մերում չար գործոց պատահեաց մեզ այս անպատուութիւնս. և յորժամ զայս զմտաւ ածեն, հարկաւորապէս 'ի սուրբն և յանամօթն լինել փութան ապաշխարութեամբն և 'ի մասն անբաժին 'ի միաբանականութենէն. ըստ այնմ զոր առաքեալ գրէ. «Շատ է նմա ամօթն որ 'ի բազմաց անտի է. այսուհետև հաստատե-

ցեք 'ի նա զսէրն զոր մի յառաւել տրտմութենէն ընկղ-
մեսցի ,,: Տես թէ որքան էր նմա տրտմութիւնն ար-
տաքոյ միաբանութեան եկեղեցւոյն լինել փոքր ինչ ա-
ւուրս: Բայց մեք և ամս բազում լինիմք, և ոչ ընաւ
տրտմիմք. Էր վասն. զի նոքա յեկեղեցին միաբանք էին,
և յանցաւորն միայն արտաքս. իսկ մեք միաբան ար-
տաքս, և մին միայն 'ի ներս, և ոչ լինի որոշումն. զի թէ
ոչ մտանեմք և ելանեմք հրամանաւ՝ ոչ խայտառակիմք
վասն մեղացն. և յորժամ ոչ յանդիմանիմք, ոչ ամա-
չեմք. և յոչ ամաչելն՝ և ոչ յապաշխարութիւն յորդո-
րիմք. զի մեծ նիւթ է բարիոք նախանձու, յորժամ 'ի
միասին գոլով զոմանս վասն պիղծ գտանելոյ՝ արտաքս
վարեմք, և զայլս վասն բարիս 'ի ներքս պահեմք: Այս
գիտելով սահմանեցին զելանելն. այսր աղագաւ՝ և ոչ
եթէ արհամարհանօք, ըստ որում այժմ վարիմք. զի
կամ ոչ մտանեմք ընաւ, և կամ մտեալ ելանեմք ա-
ռանց ամօթոյ և պատկառանաց:

Ես վասն էր ոչ պատկառեմք, ախորժեմ ուսանել:
Քանզի զոր սուրբս գիտեմք և պարկեշտս վարուք, նո-
քա միշտ արտաքոյ են. և զորս յանդուգն և պիղծս, նո-
ցա է եկեղեցիս խմբարան. վասն այսորիկ մեք 'ի կցոր-
դութիւն սրբոցն և վարդապետացն արտաքս գնալովն՝
ոչ ամաչեմք. ապա թէ նոքա աստ էին՝ և 'ի կցորդու-
թիւն խորհրդոյն, ըստ որում առին զաստիճանն և ըզ-
գործ, և մեղաւորացս միայն էր մեկուսանալն, ամե-
նայն պատկառանք պաշարէր զմեզ յայնժամ՝ և երկիւղ
զգլխման: Իսկ յորժամ դու 'ի հաստատեալ քեզ գոր-
ծոյս խորշիս անձամբ անձին՝ և ոչ հրամանաւ այլոյ կամ
սահմանաւ ապաշխարութեան, այլ զծուլութիւն և ըզ-
կամս մարմնոյն պաշտելով՝, օտարացն և տգիտացն զկամրդ
զնոյն կարող ես առնել փափաքելի, ըստ որում եւդ
պարտական՝ յասելն Եսայեայ, "Մխիթարեցէք մխի-
թարեցէք զժողովուրդ իմ, քահանայք. խօսեցարուք 'ի
սիրտ Երուսաղեմի, և մխիթարեցէք զդա ,,. և մխի-
թարիչ չիք այլ ինչ, բայց միայն այս փրկանք խորհրդոյ:
Քննելի է և այս, թէ զոյս ոմանս սահմանէ հայրն
մեր 'ի պատշաճ ժամուն արտաքս գնալ: Նախ առաջին

1 Մի օրին. Գաբաւնեալ:

զերախայան, որք անհաւատ գոլով չեւ ևս են մկրտեալ. ընդ նոսին և զորս 'ի շաղախումն մեղացն անզեղջ են, և զորս զղջացան՝ և ոչ կատարեալ ապաշխարութեամբ մաքրեցան։ Իսկ մեք, տգիտութեան աշակերտք, երիցունք մանկական խորհրդով, յորոց եմք 'ի սոցանէ. որք յերէկ պատարագիչ և խորհրդածու, և այսօր երախայիցն կցորդ արտաքոյ. և վաղուն դարձեալ 'ի նոյն գործ կանխեալ, զգոյշք միայն խորշելոյն յԱստուծոյ և ոչ մերձենալոյն. և այս երանի թէ երկիւղիւ և ոչ հեղգութեամբ և անհնազանդութեամբ, որ գլուխ է ամենայն չարեաց, որք ոչ զուղիղն ապաշխարութեան ողջունեմք, և ոչ մեղացն թողութեան հաւատամք. զի ապաշխարութիւնն օրինօք պիտի. և մեք զխո՞րդ օրինաւորք, որ դատաւոր մեզ զկամս ունիմք և ոչ օրէնս, զանձինս և ոչ զառաջնորդս, որոց արժան է նախ զանհաւատութիւնս ապաշխարել՝ և ապա զմերս։ Այլ զինչ է հաւատն, եթէ ոչ յուսով գտանել՝ ապաշխարութեամբն որ ըստ հրամանի առաջնորդին զթողութիւն 'ի մարդասիրէն Քրիստոսէ։ Բայց ոչ ոք վասն զանձն մեղանչական դատելոյ յեկեղեցւոյս հրաժարէ. զի ահա ցուցաւ 'ի նոցանէ որք զատ շինեցին՝ թէ հասարակաց տուն աղօթից սահմանեցին, և մեծ քան յեկեղեցի մտանել է զքահանայական աղօթսն 'ի մէջ ժողովրդեանն մատուցանել. զի եկեղեցիս և աշխարհականաց է համարձակելի, և այդ քահանայից միայն։ Որդ եղբայր եթէ 'ի տունս Աստուծոյ մտանել ոչ ես արժանի՝ զմիջնորդութիւն ընդ մարդիկ և ընդ Աստուած զխո՞րդ ժպրհիս կատարել։ Ո՞ ոք ընդ թագաւոր[1] խօսելով թագաւորական ապարանիցն զանձն ոչ վարկանի արժանի. և խօսք այդպիսի, ըստ որում քոյդ է քահանայիդ՝ անընդմիջաբար սիրելութեամբ զքահանայագործութիւն կատարես, և 'ի տեղիս որոշեալ նմին գործոյ ոչ մտանես։ Հրեշտակ 'ի ժողովրդենէդ առ Աստուած առաքիս. եթէ 'ի տաճար նորին ոչ մտանես, խօսել որպէս կարող ես։

Սակայն ներողութեամբ քննեսցուք և զայս, ուստի եմուտ չարս ախտ. ոչ իբր այպանելով զեղբարս մեր,

1 Մի օրին. Ընդ Թագաւորի։

զոր մի՛ լիցի յոգւոյն անարժանիս զմտաւ ածել, այլ զախտս հնարելով 'ի բաց ձգել: Ինձ թուի՝ թէ յանմաստ առաջնորդաց և 'ի տգէտ վերակացուաց, որք թըրշուառական մտօք առաք զայցելութիւն եպիսկոպոսութեան. ոչ իբր զտնտեսութիւն Աստուծոյ, այլ որպէս զմարմնական իշխանութիւն, շահավաճառ համարելով զաստուածպաշտութիւնն, անբաւական ագահութե՟ արծաթոյ և փառաց. որոց հարկ էր զախտ մտացն յագեցուցանելով անփոյթ առնել եղծման եկեղեցական օրինաց. և նոյն սովորութեան մեր հետևեալ, 'ի սովորութիւն որպէս 'ի բնութիւն վարժեալ, տկարանամք տալ տեղի գրաւորական հրամանաց. մանաւանդ 'ի բազմաց որք անկիրթ են իմաստից, և 'ի բարուցն՝ մոլորեալս և նորաձևութիւն թուի հարցն սրբոց հրամանացն հետևողութիւնս:

Ո՛վ չար ներգործութեան բանսարկուին, և արտասուաց արժանի ախտիս, որով հիւանդացեալս դնիմք. ընդարմացեալ 'ի տգիտութէ՟, և զեղեալս ջատագովս օրինացն՝ քակտիչ նմին համարիմք, և զսէր մեր գոռովով խարշատեալ իբր զատելի թշնամանեմք, և զմարդասէր և հեշտ ընթոյն հռչակող՝ անմարդի մտօք այպանեմք: Բայց ինձ մի՛ լիցի գրել զեղեալց իմոց անարգանս. զի թէ մարմնական բժշկաց այս սովորութիւն է, քանիօն առաւել որոց 'ի Քրիստոս բարեպաշտութեամբս եմք պայծառացեալք. այլ միշտ ըստ կարի պատրաստեմ 'ի պէտս նոցա զառողջարար դեղս 'ի փառս Քրիստոսի: Հաւատամ թէ և ուտեմ և զպտուղ աշխատութեան իմոյ զձեր զարթնուլն առ Ճշմարտութի՟ն Քրիստոսիւ Յիսուսիւ տերամբ մերով, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն:

1 Այսպէս յօրինակին:

## ԴԱՐՁԵԱԼ ՎԵՐՍՏԻՆ ԽՏՐՈՒԹԻՒՆ ՆՈՐԱՁԵՒՈՒԹԵԱՆՑ ՈՐ ՄՏԻՆ ՅԵԿԵՂԵՑԻ

### ԵՒ ՔՆՆՈՒԹԻՒՆ ՊԱՏՈՒՈՅ ԵՒ ԱՍՏԻՃԱՆԱՑ· ԶՕՐՈՒԹԻՒՆ Ի ՍՄԱ ՎԻՃԱԿԵԼՈՑՆ ՊԱՐԶԱԲԱՐ, ԸՆԴ ՈՐՍ ԵՒ ԸՆԴԴԻՄԱԴՐՈՒԹԻՒՆ։

ՈՐՈՑ *դիտաւորութիւն անձկալութեան մտաց 'ի մնոտի մարմնական փառացս յուսոյ պատրի, հարկաւոր է միշտ զայն հնարել ընթացս կենաց և բանի, որովք առ 'ի տեսողացն գովութենէն պարարեսցի. արդարև թշուառական մտաց վիճակեալ և ունայն աշխատութեան, և բազում և անհաւատարիմ տերանց, զորս 'ի սպառ և ոչ բնաւ է կարող ողոքել։ Իսկ որք առ մի տէր զակն ոգւոց ամբարձին, ծանեան զայսոցիկ նանրութիւն, և ապա առ նա զկատարեալ հաւատս բոլորեցին. վասն այսորիկ դատաւոր հաւատացեալ՝ զայն յորոյ ձեռանէ ոչ է կարող խուսել՝ անփոյթ առնէ զայսոցիկ գովութեան կամ պարսաւանաց, և նպատակ առաջի աչացն ունի զնորա կամացն լրումն։ Այսոցիկ Քրիստոսի առաքեալն յերբեմն կուրութենէն եղեալ տեսող, աղաղակէր ասելով. " Եթէ տակաւին մարդկան հաճոյ լինէի, ապա Քրիստոսի ծառայ ոչ էի ". յորմէ մեք կարի վերջացեալ՝ ջանամք միշտ մարդկան հաճոյ լինել*[1]. *և յերկոցունցն վրիպիմք, կամօք՝ յԱստուծոյ հաճոյիցն, և ակամայ՝ 'ի մարդկանէ. իսկ նա՝ զի զմիոյ տեառն ընտրեաց զկամս, ստացաւ սեփական ըզփառսն Աստուծոյ և զհասարակաց մարդկան։*

*Արդ զայսպիսի ծանր բեռն՝ ապաւինեալ 'ի խնամսն Աստուծոյ, և յապացոյց բարեացն Պօղոսի, փոքր ինչ յազդերէ մերմէ թափել ջանասցուք, և գուն ինչ նկատել զկամսն Աստուծոյ. թերևս կարասցուք անփոյթ առնել զկամաց մարդկան և խօսել զօգուտ նոցա, ոչ անձամբ անձին, զոր և ոչ հոգևորականքն ժպրհեցան,*

1 Յօրին. միում հաճոյանալ։

այլ զդէզս ազգաղականս ժողովեալ յաստուածային [1] գրոց 'ի պէտս առողջութեան առաջիկայ ախտիս տնօրինեսցուք ։ Այլ նախ զայս դնեմք, թէ քահանայական կարգ և կրօնաւորութեան՝ անջրպետութեամբ հեռի են 'ի միմեանց, վասն զի քահանայութիւն նախապատուութիւն է և երիցութիւն 'ի մէջ ժողովրդեանն . իսկ կրօնաւորութիւն՝ մեռելութիւն է զկնի Քրիստոսի, կարգ խոնարհութեան և լռութեան՝ և ոչ իշխանութեան . որպէս յայտ առնէ երանելին Դիոնեսիոս յիւրաքանչիւրոցն օրինադրութիւն կատարողութեանց . նաև բարեձևութիւն զգեստուցն և քահանայական աղօթքն 'ի վերայ իւրաքանչիւրոցն ։ Այլ պարտ է գիտել, թէ զայս լուծ խոնարհ կրօնաւորութեան ամենեցուն է համարձակելի առնուլ յիւրաքանչիւր հասակէ և վարուց՝ յօժարութեամբ կամաց . բայց զքահանայութիւնն ոչ համարձակեցուցանէ բանս ամենեցուն, և ոչ թոյլ տայ ընտրութիւն իւրոցն կամաց, այլ 'ի կամս և յընտրութիւն վերակացու հօրն և Եպիսկոպոսին ապաստան առնէ ։ Յորժամ նա դատէ զոք պատուելոյ արժանի՝ յառաջ գալ յայս շնորհ, որ անաչառ կամօք դատէ զբաւականութիւն կատարելութեան հասակին՝ իմաստութեան և սրբութեան ։ Զի այսպէս տայ մեզ տարացոյց երանելին Դիոնեսիոս, թէ միանձնացեալ կրօնաւորքն դասակարգին միայն յեկեղեցիս նախապատիւ քան զժողովուրդն . իսկ քահանայք և սարկաւագունք՝ իշխանք և հրամանատու են նոցա և ժողովրդեանն ։ Այսոցիկ վկայ ունիմք և զերանելի հարսն եգիպտացիս . զի զձև կրօնաւորութեան ամենեքեան ունէին, բայց 'ի յերիցութիւնն դժուարաւ ոք 'ի նոցանէ ձեռն արկանէր, և 'ի մէջ բազմացն և բիւրաւորացն մի երէց լինէր . որպէս գիրք նոցա ուսուցանեն ։ Այլ երանելին Եփրեմ կրօնաւոր էր, բայց 'ի սարկաւագութեան պատիւ մեծ թախանձանօք եհան զնա սուրբն Բասիլիոս ։ Այլ զայսոսիկ ո՞ր աղագաւ 'ի մէջ առաք . որպէս զի յայտ լիցի հաւանական վկայութեամբք՝ թէ փոքր և յետին է կարգ կրօնաւորութեան քան ըզզպատիւ քահանայութեան . զոր ամենեքին տեսանեմք

1 Յօրին. միում Յաստուածաբանից:

զայս սահման օրինի ՚ի ժամանակս մեր ՚ի հակառակն փոփոխեալ. և սքանչանամ ընդ հասարակաց մեր կուրութիւն. զի ՚ի կրօնաւորութենէն ամենեքեան որպէս ՚ի ծանր և ՚ի դժուարին գործոյ հրաժարիմք, և ՚ի քահանայութիւն ամենեքեան ձեռներէց լինիմք. և սքանչելի, և ծաղու արժանի այս գործ, զի քահանայանալով զձև կրօնաւորութեան առնումք. և զայն չածեմք զմտաւ՝ թէ այս ձևս այն օրհնութեանն պատշաճի. և անօրէնութիւն է զձևս ՚ի պէտս փառաց մարդկան առնուլ, և յօրհնութենէն հրաժարել. նա և խաբէութի է Աստուծոյ և մարդոյ. զի երևիմք նոցա ձևովս աբեղայք, և մեք յանձինս ոչ գիտեմք զմեզ յայն կարգ աբեղայութե։ Ով թշուառ անմտութեա, և աշխարհանաց արժանի յիմաստնոցն. որոյ տգէտ յիմարութեան և ոչ զայլ ոք տեսանեմք յազգաց գրաւել ՚ի ներքոյ, բայց միայն զմերս թշուառութիւն, զի ամենեքեան նոքա ՚ի վանորայս և ՚ի կրօնաստանս կրօնաւորս բազմացուցանեն, և նովին օրհնութեամբն կնքեն, և զձևն շնորհեն. իսկ քահանայական և սարկաւագութեան պատւոյ՝ սակաւս զոմանս ՚ի նոցանէ ընտրեալ վիճակեն։ Այլ այն զմերս ոչ գիտեմ տգիտացեալ յամենեցունց այսոցիկ զհակառակ բերումն, զի ՚ի հովուական՝ ցպոյ, և ՚ի մանձակալութեան գործոյ, և յայլոց անբան արհեստից առեալ զմանկունս տգէտս՝ փոխանակ միանձնութեան քահանայս կատարեմք. և զկրօնաւորութեան օրհնութիւնն յաչս այնպիսեացն ծանրացուցանեմք՝ մեռելութիւն կոչելով։

Արդ եկ և քննեսցուք զիւրաքանչիւր սոցա զօրութիւն, և բանաւորապէս որոշեսցուք զմեծն և զփոքրն ՚ի միմեանց, և նախ զայս դնեմք։ Որ մեռելութիւն կոչես զկրօնաւորական սքեմն, և վասն այնր խուսեալ ՚ի նմանէ, զիա՞րդ ապա զմկրտութիւն ոչ խորշես. թերևս այն ո՞չ է այսպիսի մեռելութիւն. և ո՞ւր դիցուք զՊօղոսի ասելն. "Որք մկրտեցայք ՚ի Քրիստոս Յիսուս՝ ՚ի մահ նորա մկրտեցայք, թաղեցաք ընդ նմին մկրտութեամբն ՚ի մահ,,։ Եւ նոյն դարձեալ. "Մեռարուք, և կեանքն ձեր ծածկեալ են ընդ Քրիս-

1 Ի միում օրին. [illegible]։

տուիւ յԱստուած. և որք մեռայք մեղացն, զիա՞րդ տակաւին 'ի նմին կայցէք,,: Յայտ առնէ զայս՝ և խորհրդածութիւն մկրտութեանն, օծանելն, և 'ի հանդէս մտանելն, և ապա 'ի ջուրն ընկղմել և մեռանել. ապա յայտ է առաքելական վկայութիւնս՝ թէ և 'ի նոյն ինքն մկրտութիւնն մեռաք արք և կանայք՝ աշխարհի և ցանկութեանց նորա, և ապա թողութիւն մեղաց ընկալաք, և Աստուծոյ կենդանացաք: Իսկ եթէ այս այսպէս է, ասիցէ ոք, զի՞նչ է յաւելուած կրօնաւորութեամբս վերստին մեռելութիւն. եկ զիջանելով կաց առընթեր քանիս, և ասացից՝ քեզ, ոչ զիմ ինչ՝ այլ զհարցն սրբոց: Մկրտութեամբս է մեռելութիւն աշխարհի, բայց և ոչ ցնորից սորա. զի գիրք սուրբք առաւել քան զկար մեր ոչ ինչ օրինադրեցին, այլ 'ի կամս ապաստան արարին, ասելով տեառն, "Որ կարողն է տանել տարցի,, զկուսութիւն. և Պօղոս՝ թէ "Պատուական է ամուսնութիւն և սուրբ անկողինք. ես վասն կուսանաց հրաման ինչ 'ի Տեառնէ ոչ ունիմ, բայց միայն խրատ տամ. լաւ է նոցա եթէ կայցեն իբրև զիս,,: Արդ զայս լսելով մարդիկ և անընդմիջաբար կամելով 'ի սէրն Աստուծոյ վայելել և սուրբ հոգւով և մարմնով հաճոյ նմա լինել, անձամբ անձին ընտրեցին զկուսութիւն, և ոչ եթէ հարկաւոր օրինօք. և զայս որպէս զի յամենայն ցնորից և 'ի զբաղմանց աշխարհի հրաժարեսցեն, և միայն զտեառն հոգասցեն. վասն այսորիկ և յետ այսր զմիտսն հաւանեցուցանել զայն առ քահանայն և կամ առ հայր վանացն, ասելով, որպէս 'ի մկրտութեան մեղաց որ յաշխարհի՝ մեռայ, այժմ կամիմ և 'ի զբաղմանց նորին մեռանել. այս ինքն օրինաւոր ամուսնութե[1], վաճառաց, տուրևառից, դատարկաբանութեան[2], և որոց ընդ սոքօք բերի. և այս կամացս յօժարութիւն խնդրէ օժանդակ զաղօթսն և զօրհնութիւն: Իսկ նա առեալ ածէ յեկեղեցին, և հարցանէ՝ թէ կամայօժար մտօք հրաժարե՞ս յաշխարհէս. և յետ համարձակ խոստովանելոյն զնոյն՝ յապաւէ զհերսն. որ նշանակէ՝ թէ որպէս զայս 'ի մարմնական գլխոյս հատի, նոյնպէս և 'ի մտացս՝ որ է գլուխ ոգւոյս՝ զամենայն խորհուրդ ցան-

1 Մի օրին. Ուսուցիչ:　　2 Յօրին. միում յարկի հեշտաւորաց է:

կութեան աշխարհի ։ Նա փոփոխէ զհանդերձն սգաւորակ, զորօրինակ 'ի մկրտութեանն փոխեն բեհեզ և լուսաւորեալ, նոյնպէս և այժմ Թխատիպ. յայտ առնելով թէ պանդուխտ և 'ի սուգ եմ 'ի նանիրս կեանս, մինչև հասից առ ուրախութիւն իմ Ք՛ի ։ Այքան է կարգ աբեղայութեան, ոչ առեալ պատիւ և ոչ իշխանութի՛, և ոչ հարկաւորի առնել բան վարդապետութեան և ոչ վասն տգիտութեան թշնամանի ։ Ոչ է պարտական զայլս լուսաւորել, և ոչ այլոց բժիշկ լինել. այլ միայն անձին լինել ուղղիչ և դաստիարակ ։ Իսկ քահանայն այսմ ամենայնի պարտական է, և 'ի պատիւ վիճակեցաւ. զի զինչ այլ բարձր պատիւ քան զայս, զհոգին բաշխել, և զնիւթս Աստուած կատարել. և ըստ առաւելութեան պատուոյն՝ և կատարելութեան է պարտական. ոչ միայն սուրբ լինել, այլ և իմաստուն. և ոչ անձամբ զանձն, այլ և զայլս լուսաւորել ։ Աստուծոյ գործակից լինել, որպէս ասաց Պօղոս ։

Ապա յայտնի երևեցաւ կարի բացատրապէս հեռի 'ի համեմատութենէ միմեանց խոնարհ կարգ աբեղայութեան, և բարձր պատիւ վիճակաւորութեան յաստիճանս եկեղեցւոյ ։ Սակայն աղաւաղեցաւ, բարձաւ, տեղի ետ այս բարեկարգութիւն 'ի մէնջ, որպէս կարծեմ 'ի վաղ ժամանակաց. և այնչափ ծառայք եղեալ մախանաց՝ ընդ ամենայն քրիստոնեայս մրցելով, մինչ զի ոչ թնաւ խոնարհիմք ընդ ուղիղ նոցա ընթացս նախանձել, որոց և մերս գրեանք վկայեն ։ Այլ կուրութեամբ կուրաց առաջնորդեմք. քահանայս օծեմք, և կնկուղ տամք, 'ի պատիւ հանեմք, և զգլուխն պատրուակեմք, անգիտացեալ տգիտութեամբ յիմարելոցս՝ թէ այս կընկուղ խոնարհութեան է նշանակ և պատկառանաց, և ոչ համարձակութեան և իշխանութեան ։ Նա որք գտին զսա և ուսուցին, ոչ քահանայութեան ետուն նշանակ, այլ կրօնաւորութեան. և յետ 'ի սուգ լինելոյն և ամօթոյն՝ որով ծածկեցան դէմքն՝ ըստ հաճոյից Աստուծոյ ծառայելոյն, ապա եթէ ազդեցութիւնն Աստուծոյ ասիցէ նմա, "Բարեկամ 'ի վեր մատիր", ածեալ զնա 'ի խոնարհութենէն յիշխանութիւն, և յամօթոյն 'ի համարձակութիւն՝ այսինքն 'ի քահանայութիւն, ոչ թէ ծածկեն զգլուխն այլ բանան. քանզի տան նմա

իշխանութիւն յաղօթս կալցի և մարգարէանալցի. և պարտի ոչ ծածկել զգլուխն, զի մի՛ յամօթ արասցէ զգլուխն իւր զՔրիստոս, որպէս ասաց Պօղոս. քան զոր չիք ինչ մեծ աղետից արժանի զնա ամաչեցուցանելն. Նա և ընդ հազարապետ խորհրդոց նորին մտցել, որ ոչ միայն հրամանաւ այլ և բնաւորական օրինօք զմեզ առ 'ի սոյն հաւանեցուցանէ, եթէ "Առն մարդոյ ոչ է պարտ ծածկել զգլուխ իւր, որ պատկեր և փառք Աստուծոյ է":

Արդ ածելով զոք 'ի պատիւ և յաստիճան Եպիսկոպոսն, ոչ միայն բանայ զգլուխն, այլ և զհերսն յապաւէ, յայտ առնելով թէ ոչ միայն իբրև զմի ոք 'ի հասարակաց մարդկանէ է սա՝ որոց հարկաւոր է բացաւ գլխով լինել, այլ և օժանդակ լինի կամացն Աստուծոյ. որպէս հրամայեաց նոցին առանց գխոյ լինել. որպէս կինն որ զգէսն ընկալաւ և ծածկութիւն 'ի վերայ նորին, օգնէ հրամանին, այսպէս և սա որում գէսն անարգանք է՝ օգնէ օրինացն. և զգէսն 'ի բաց հատանէ, և խրոխտանալով պանծանօք[1] յարդարութիւն գլխոյն իւրոյ Քրիստոսի՝ բացաւ գլխով և պարզ դիմօք առանց ամօթոյ աղօթէ և մարգարէանայ: Ապա թէ ոք այս խորհրդածութեանս հակառակ զինի, պատասխանէ նմա Պօղոս. "Մեք չունիմք այսպիսի սովորութիւն, և ոչ եկեղեցիքն Աստուծոյ": Տեսանե՞ս թէ որպէս հաճութեամբ մնաց՝ 'ի սովորութենէ 'ի շաւղաց հարցն քո արտաքոյ գտար. զի "Որ 'ի փոքուն անիրաւ է և 'ի բազմին անիրաւ է": Եթէ զփոքր կարծեցեալս և դիւրագործելի օրէնս լուծաք, զմեծն և զներհակն մարմնոյս ո՞րպէս լիցուք հաւատարիմք ըստ ճշմարտութեան ուղղել: Եթէ զգլուխս վասն Աստուծոյ օրինացն դժուարիմք բանալ, որոյ ո՞րպէս զնոյն մատուցանեմ, որպէս հրաման ընկալայ: Եւ ո՞ օրինադիր այսմ, հարցանես. Պօղոս բերանն Քրիստոսի, որ ամենայն յանցանաց պատիժ միայն դնէ փոխարէն, և այսմ զծանրն և զդժուարինն. զՔրիստոս, ասէ, ամաչեցուցանէ: Եւ զի՞նչ առաւելութիւն 'ի բանալն կամ յոչն: "Դու ո՞վ ես ո՜վ մարդ՝ որ պատասխանի տաս Աստուծոյ. միթէ ասիցէ՞ ստեղծուածն ցստեղծիչն իւր՝ թէ ընդէ՞ր այդ-

1 Մի օրին. Գործանօք:

պէս արարեր զիս ։ Աստուած սահմանեաց „ . Աստուծոյ օրինացն խորհիչ և քննող ե՞րբ առեր հրաման լինել՝ մարդ գոլով . այլ թէ անցանես ընդ նոյնն , յայտ է թէ արհամարհեցեր և մեղար ։ Այլ զի փոքր ինչ ընդարձակութիւն տաց բանիս , ապա և պոռնիկք ասասցեն ոչ գոլ զանազանութիւն ամուսնութեան և պոռնկութեն , և անխտիր մեղիցեն . նոյն և այլքն որ ընդ սոքօք բերին ։ Աստուած սահմանեաց , թէ այր գոլով յորժամ աղօթես , բաց զգլուխդ . և Պօղոս զնոյնութիւնս նմին վկայ առ և ուսուցիչ . և դու երկոցունցն ընդդէմ մրցելով ոչ առաւելութիւն զկատարեալն համարիս , և ոչ նուազութիւն զոչ կատարեալն ։ Ով անբերելի տգիտութեանս և ապառում բարուցս ։ Ահ Երեմիա ցաւակից մարգարէ , և վշտակցելով ողբա զբեկումն իմ և ժողովրդեան իմոյ ։

Սակայն աբեղայ եմ ասէ , և ոչ է պարտ ինձ զօրհնեալ քողս 'ի բաց ընկենուլ ։ Գեղեցիկ , եղբայր , և ես այդմ վկայեմ , զի աբեղայն ոչ իշխանութիւն ունի 'ի մէջ ժողովրդեանն աղօթելոյ , և ոչ զպատկառանացն զգեստ վերացուցանելոյ ։ Ապա թէ ընդ խոնարհ կարգիդ՝ վիճակեցար և 'ի բարձր աստիճան , յայտ է թէ կրկին փոփոխումն առեր . որպէս աբեղութիւն յաշխարհէ , այսպէս և քահանայութիւն յաբեղութենէ . և 'ի քահանայագործել աբեղայիդ՝ պարտիս քահանայական համարձակութեամբն երեւել . ապա թէ դեռ ևս անօթոյ գործով ծածկիմք , և յաստիճանս մի ձեռնարկեսցուք՝ 'ի բաց խուսեալ յանմեղացն շաւղաց , և մերս փոքրկութեան կրօնաւորութեանս մնասցուք ։

ՆԵՐՍԷՍ ասէ . Դարձեալ և այլ ինչ խնդրեմ ուսանել , ոչ իբրև հակառակելով , այլ հակառակութեան զճշմարտութիւն պարզել ախորժեմ ինձ 'ի կռուփս[1] և յանդիմանութիւն . քանզի իմ է եղբօրն վէրն և բժշկութիւնն . ապա որչափ ևս առաւել հասարակաց ազգիս տմարդութիւն , որոց փոխան և զանձն թէ լինէր արժանի դնել՝ երանելի էի ։ Արդ զինչ , լուաց զի ասացեր , աբեղայ զքեզ գոլ . հաւատամ և ձեւով զգեստուցդ տեսեալ զմարմինդ պաճուճեալ . սակայն խըն-

1 Յօր. միում ի կռափանս ։

ղրեմ ուսանել, ո՞ր և որպիսի՞ օրհնութեամբ ընկալար զմեռելութեանդ ձև ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Յեկեղեցիս ։

ՆԵՐՍԷՍ. Բարիոք, քանզի աստի քաջիլի ամենայն շնորհ ։ Այլ որպիսի՞ օրհնութեամբ ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Քահանայականաւն. զի քահանայ օծեալ զիս Եպիսկոպոսն՝ ետ զկնկուղս ։

ՆԵՐՍԷՍ. Այդ զիա՞րդ լիցի, զքահանայութիւն կընկղով ձևացուցանել, որոյ պատուական ուրարն է և սուրբըն նափորտն իշխանական զգեստ, և ծածկոյթ գըլխոյն Քրիստոս, և ոչ կնկուղ ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Իսկ ապա օրհնութիւն՝ որով զկնկուղս ընդունիմ, ո՞ր է եթէ ոչ այս՝ ուսուցես ։

ՆԵՐՍԷՍ. Բարւո՛, եղբայր, 'ի նոյն ինքն 'ի գիրսն օրհնութեանց ընթացիր[1], և ուսուցէ քեզ. զի նախ հարցականքն են բանք, որպէս 'ի մկրտութեանն, և ապա քո կամաւ խոստովանելն, անձամբ անձին զկտրոցն տալ՝ զհերսդ յապաւել, և յետ այնորիկ զկնկուղդ առնուլ ։ Այլ իւրաքանչիւր զգեստուցն ո՛չ ես լուեալ զօրհնութիւն, զի ասէ. " Զգենու եղբայրս մեր զկնկուղս սաղաւարտ փրկութեան, և զքեմս կնիք խաչակցութեան Քրիստոսի ". Նոյն և այլն. և ապա տան զիւրաքանչիւրսն նմին պահապան և նշան ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Այս և ոչ զմի ինչ յայդցանէ ոչ եմ լուեալ, այլ միայն կացուցեալ զիս և զմիւս ևս այլ՝ Եպիսկոպոսն առաջի սրբոյ սեղանոյն՝ ինձ զաբեղութեան ետ ձև յետ օծելոյն քահանայ, և զնա եթող նովին աշխարհական պատմուճանաւն ։

ՆԵՐՍԷՍ. Ո՛վ մեծի աղետիցս, և ծաղու արժանի մանաւանդ գործոյս. և ուստի՞ն արար զայսքան մեծ շընորհս 'ի հարցն առ մեզ եկեալ. զիա՞րդ և ժպրհեցաւ առանց այնքան բազմադիմի խորհրդական աղօթիւք զօրացուցանելոյ զքեզ՝ այդպէս կերպարանել ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Այո կերպարանեաց ճշմարտութբ, որպէս ասացի, չև ևս օրհնեալ ։

ՆԵՐՍԷՍ. Ապա յայտ է 'ի բարբառոյ բերանոյ քո՝ թէ խաբ եղար, և ոչ կրօնաւոր, միայն մորթով ոչխարաց զմարդիկ պատրել, որպէս տէրն ասաց ։

1 Յօր. մուծ ԸՆԹԵՐՑԻՐ ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Այս ինձ այսպէս թուիմ, յետ 'ի քէն ուսանելոյ:

ՆԵՐՍԷՍ. Հարցանեմ և զայս. և յօծանելն զքեզ քահանայ և յաւելեզայ ձեռնադրութեանն՝ ուստի և կամ յորոց գրոց առաց ընկալեալ զայս աւանդութիւն:

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Ոչ գիտեմ:

ՆԵՐՍԷՍ. Հաւատարիկ տարակոյս ինձ արկանես. զի ահաւասիկ Պիմենսիոս այսոցիկ կարգաց պատմիչ՝ ոչ զայսպիսիս ասաց տարրացոյց. այլ մեծաւ անշփոթութե որոշէ զմիաձնութիւն և զերէցութիւն. և զգեստ փոփոխել 'ի միաձնութեանն ասէ, և ոչ 'ի քահանայութեանն. Նա ուստի եգիտ զնորաձևութիւնն: Այս հարքն եգիպտացիք սովաւ զկրօնաւորութիւն՝ և ոչ զքահանայութիւն քանակեցին:

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Յայտ է եթէ 'ի սգաւորութենէ:

ՆԵՐՍԷՍ. Դարձեալ և այլ ինչ կամիմ քեզ յայտնել:

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Ասա, զի կարօտիմ ուսանել:

ՆԵՐՍԷՍ. Ընթեռնլ է քո երբեք 'ի ձեռս զգիրսն, որով զօրհնութիւնն բաշխեմք, և ընթերցեալ զտեր երբեք 'ի նմին՝ թէ յօրհնելն կրօնաւոր՝ քահանայական պատիւ տնի. կամ 'ի ձեռնադրելն քահանայ՝ սքեմ և կնկուղ զգեցցի:

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Եւ ոչ ընաւ:

ՆԵՐՍԷՍ. Ապա զինչ է զրուցն 'ի քէն, կամիմ ուսանել:

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Նոր զրուցն է. յորժամ որ 'ի կրօնաւորութիւն գայ, աղօթել 'ի վերայ նորա զանազանապէս որպէս 'ի վերայ մեռելոյ, և ասել զայս ձև մեռելութեան ողորմք և պատարագք նմին շնորհել. իսկ զքահանայն ցուցանէ՝ թէ ընտրութեամբն Աստուծոյ և ժողովրդեանն յիշխանութիւն հանցէ[1] եպիսկոպոսն, և սարկաւագն ձայնէ զնոյն, թէ "Աստուածային և երկնային շնորհն կոչէ զսա 'ի քահանայութիւն ըստ վկայութեան անձին իւրոյ և ժողովրդեանս". յետ որոյ տայ նմա զաստուածական իշխանութիւն եպիսկոպոսն՝ զմեղս թողուլ, զպատարագն կատարել, և զայլն

1 Մի օրին. Հանէ:

որ ըստ Նմին ։ Զգեստուցն փոփոխումն յայսմ վայրի ոչ երբէք ընթերցայ ։

ՆԵՐՍԷՍ. Ճարիդ ասացեր. եթէ այսպէս է, առ ինչ հայելով 'ի գրեալսն արհամարհեաց ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Ինձ թուի զայս պատճառել՝ թէ աբեղութիւնն մեռելութի է, և այս քահանայութիւնս իշխանութիւն. 'ի մահուանէն հրաժարեն խնդրողքս, իսկ զպատիւս ախորժեն ։

ՆԵՐՍԷՍ. Այլ եթէ 'ի մահուանէն կամօք հրաժարեցին, զձև մեռելութեանս ո՞ր աղագաւ զգեցան. թերևս 'ի պատրա՞նս տեսողացն ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Զայս ասեն, թէ աբեղայութեան ձև 'ի մէջ մարդկան հաճելի է և փառաւոր ։

ՆԵՐՍԷՍ. Յայտ առնես եղբայր, թէ հաճոյից մարդկան են ծառայք այնպիսիքն և ոչ Աստուծոյ. զոր յԱստուծոյ ոչ կարացին առնուլ՝ անձամբ անձին յափշտակեալ և 'ի պէտս փառաց մարդկան նոքա ձևացեալ ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Արդարև ։

ՆԵՐՍԷՍ. Այս մեծ մոլորութիւն և արտասուաց արժանի յիմարութիւն՝ զաստուածայինն օրէնսն մնոտի կամաց մարդկան ծառայ առնել ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Այլ ասեն և զայս ևս՝ թէ քահանային պարտ է զի որոշեսցի 'ի հասարակական կրօնաւորացն, որպէս զի մի անկարգութիւն տիրեսցէ. վասն այսորիկ դիցեն զկնկուղն ։

ՆԵՐՍԷՍ. Այլ զի՞նչ անուանին կրօնաւորքն, ասա ինձ ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Եղբարք ։

ՆԵՐՍԷՍ. Ի մէջ եղբարց մեծ և փոքր զգեստուց որոշումն եղեալ՝ յայտ է թէ լուծանեն զեղբարձևութիւն հասարակութեան, և զխոնարհագոյնսն՝ 'ի նախանձ բարձրագոյն պատուոյն շարժեն ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Այդպէս լինի ճշմարտապէս. զի մանկունք փոքրկունք տեսեալ զպաճուճանս կնկղոյն՝ թախանձելով զնոյն ձև խնդրեն ։

ՆԵՐՍԷՍ. Այլ էր վասն ոչ տայք ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Վասնզի ասեմք, եթէ մինչև քահանայասցիս, ապա այսպէս ձևասցիս ։

ՆԵՐՍԷՍ. Ո՛վ յիմարութեանս. և Անտոն, Մակար, Պաքոմիոս որք ետուն մեզ զսա, և ինքեանք այսպէս էին

ձեւացեալ. եւ ոչ սարկաւագ չէին, թող թէ քահա-նայ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Ապա հրամայես առանց քահանայու-թեան կնգուղ եւ սքեմ տալ։

ՆԵՐՍԷՍ. Ոչ ես, այլ աստուածաշունչ գիրք եւ հարցն սրբոց աւանդութիւն գրովք առ մեզ հասեալ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Իսկ զիա՞րդ ապա որոշի քահանայն եւ կրօնաւորն 'ի միմեանց 'ի վանս կուսանաց։

ՆԵՐՍԷՍ. Իսկ ոչ մի իրօք ոչ է պարտ որոշել. զի ձեւս որոշիչ կրօնաւորացն յաշխարհականացն է, եւ ոչ թէ նոցին 'ի միմեանց. որպէս զի մի լիցի 'ի մէջ եղբարցն մեծ եւ փոքր. եւ մի վասն սիրելոյ զձեւն անպատշաճա-պէս՝ ժպրհեսցի 'ի բարձր պատիւ երիցութեանն։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Կարի իմն պատշաճ է պահել զայս սովորութիւն։

ՆԵՐՍԷՍ. Հարցանեմ եւ այլ ինչ զքեզ. զձեւ եւ ըզ-կարգ կրօնաւորութեան կամ զպատիւ քահանայու-թեան Հայք անձամբ անձին գտին՝ եթէ յայլոց ա-զգաց ընկալան։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Այդ յայտնի է. քանզի հուսկ յետոյ 'ի ձեռն սրբոյն Գրիգորի հաւատացին, եւ 'ի Յունաց զամենայն բարեձեւութիւն եկեղեցւոյ ուսան, եւ անդա-գան ուրեմն առ սրբոյն Սահակաւ զգրեանն յԱսորոց եւ 'ի նոցանէ թարգմանեցին, եւ ըստ այլոց քրիստոնէից սովորութեան վարէին, նոցա գրովք եւ աւանդութեամբ պայծառացեալ։

ՆԵՐՍԷՍ. Ուղիղ ասացեր. ապա զիա՞րդ ըստ այսմ մասին օտար 'ի նոցանէ գնան շաւիղ. քանզի իմ իսկ տեսեալ է զՅունաց վանս, զՀոռոմց եւ զԱսորոց՝ հարցեալ ճշդիւ եւ ուսեալ, զի նախ կրօնաւոր օրհնեն, եւ ապա կնգուղ եւ սքեմ տան. եւ անհնար է միում ու-մեք 'ի սոցանէ առանց օրհնելոյ կրօնաւոր զոք յեկեղեցն աբեղայ ձեւացուցանել։ Այլ թէ քահանայ կամ սար-կաւագ զայ յաշխարհէ ասացին, թէ մինչ չեւ եւս զհրա-ժարումն յաշխարհէ խնդրեալ եւ աղօթիւք կատարեալ, անհնար է զնա այս զգեստուք ձեւացուցանել։ Իսկ որք էին 'ի վանս նոցին՝ զորս տեսի աչօք իմովք, ծերքն եւ երի-տասարդքն՝ քահանայք եւ սարկաւագունք եւ որք ոչ վի-ճակեալ աստիճանի զանազանապէս, զմիօրինակ զգեստ

ունէին ըստ իւրաքանչիւր սեռի սովորութեան անխտիր համարձակութեամբ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Բայց ասեն որ առ մեզ իմաստունքն՝ թէ նոքա 'ի հաւատոցն թիւրեցան, և ոչ է պարտ նախանձել ընդ նոսին։

ՆԵՐՍԷՍ. Այս ասեմ զայդ և ոչ բնաւ, թէ մեք միայն եմք. Քրիստոսի ժողովուրդ. և իմաստութք քննեալ ոչ գտաք առ նոսին գոնեայ սակաւ ինչ այլափառութի, այլ են ճշմարտապէս ուղղափառք։ Բայց համարեաց թէ 'ի հաւատոցն թիւրեցան, 'ի կարգացն ո՞ր աղագաւ. զի այլ է հաւատոյն բան, և այլ է աւանդութի կրօնից։ Այլ թէ թիւր են, մերս գրեանք, որպէս վերոգրեցաւ, է՞ր վկայեաց նոցա, զորս անմիտքն թիւրս կարծեն։ Դարձեալ թիւր մի ազգն կամ երկուսն, երեք ազգ քրիստոնէից և որ ընդ նոքօք բազմապատիկ ազինք հաւատացեալք աշխարհօք և աթոռովք, զիա՞րդ վրդովեցան 'ի ճշմարտութենէն, և առ յեղյեղեալ և տատանեալ՝ ազգս մեր նոյն միայն մնաց հաստատուն։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Անպատասխանի եմ։

ՆԵՐՍԷՍ. Ա՛յս զի և այսօրինակ վարդապետք զՀոռոմն աղաղակեն թիւրեալս, Ասորիքն էր վասն դեռ ևս փայլեցուցանելն զայս սովորութիւն ուղիղ. և Փռանգք արդ ևս եկեալ 'ի մէջ մեր՝ զիա՞րդ է զի նոցին համաձայնեն 'ի սոյն կարգ, և ոչ մեզ։

ՅՈՎՀԱՆՆԷՍ. Զպարտութիւն խոստովանիմ։

ՆԵՐՍԷՍ. Ասա՛ եկ, եղբայր, նախ քան զայլս դատել՝ անձանց լիցուք բժիշկ և անաչառ դատաւոր, ծանուցեալ՝ թէ կրօնաւորն միայն առանձինն ինքն իւր նուիրեաց զանձն Աստուծոյ, և բաւական է նմին անձինն առաքինութիւն. իսկ քահանայն՝ թէ զկնի իւր կատարելութեան և զայլս ոչ ուղղէ՝ անկատար է, և զարիւն նորա 'ի ձեռաց իւրոց խնդրէ Աստուած. նա թէ զաստիճանն որ նմին հաւատացաւ՝ մինչև 'ի մահ ոչ պահեսցէ[2], դրժեաց ուխտին և դաշանցն, զոր եդ առաջի Աստուծոյ և եպիսկոպոսին։ Արդ զայս ծանուցեալ, զմանկունս նուիրեալս կրօնաւորութեան՝ 'ի կրօնաւո-

1 Ի միում օրին. յաւելու Ն     2 Մի օրին. Պաշտէ։ փառաւորել։

րութեան բարեձևութեան լուծ դիցուք, և յոր ըստ նմին և կարգ և զգեստ. և ոչ 'ի քահանայութեանն պատիւ, զորոյ պաշտօնն ոչ կարողանան կատարել. քանզի զի որպէս մեծ է թագաւորութիւն քան զերկրագործութիւն, այսպէս մեծ է քահանայութիւնն քան զաբեղութիւն. և որպէս նմա բազմապատիկ իմաստութի՜ պիտոյ է՝ որ թագաւորն է, և զայլոց օգուտն տնօրինէ, այսպէս և երիցուն յետ սրբութեանն պիտոյ է և իմաստութիւն, գիտել զառաւելութիւն իւրաքանչիւր գործոցն զոր կատարէ. և ըստ որում երկրագործին սխալանք՝ անձին միայն վնասէ, իսկ թագաւորին ամենայն աշխարհին, այսպէս սխալանք աբեղային փոքր է առ քահանային՝ որ յԱստուծոյ պաշտօնն է կարգեալ, և հայեցողացն պատկեր գծեալ[1]: Նա փոքր է կրօնաւորութիւն ոչ միայն քան զքահանայութիւն, այլ և քան զսարկաւագութիւն. զի սա և կանանց է համարձակելի, որպէս և սուրբն Բարսեղ գրէ. իսկ սարկաւագութիւն և ոչ ընաւ: Զաբեղայն՝ քահանային տայ հրաման Դիոնեսիոս օրհնել. բայց զսարկաւագն եպիսկոպոսն ձեռնադրէ: Սա որ սարկաւագ է, իշխանութիւն ունի յեկեղեցիս զվարդապետեն. և կէս սարկաւագն զերդմնեցուցանելն. բայց նա և ոչ զմի ոք 'ի սոցանէ. ուստի և Աստուած 'ի նմանէ սակաւ պահանջէ, քան յորոց կարգեալ են յիշխանութիւն: Վասն այսորիկ պարտ է մեզ հարցն սրբոց բարեկարգութեց հետևել, և մանկանց՝ որ գան 'ի լուծ կրօնաւորութե զօրհնութիւն և զձև կրօնաւորութեան տալ, այսինքն զգնկուղն և զաքեմն և զփիլոնն, և ածել զնոսա 'ի լուծ խոնարհութեանն քրիստոսի. և զի այս է զգեստ սորա, և ոչ ընաւ առ երիցութիւն զուգին, բաւականապէս ցուցաւ. և ազգ քրիստոնէից այս օրինօք այսօր վարին. և ապա յորժամ առնու զչափ հասակի զօրութեան և զիմաստութեան, ոչ կամաւ՝ այլ բռնութեամբ և 'ի հարկէ մինձակել զնա 'ի պատիւ, որում արժանի դատեն, թէ կէս սարկաւագութեան կամ սարկաւագութեան, և ապա քահանայութեան. զի անդատապարտ և իմաստուն լիցուք 'ի գործ և 'ի պաշտօն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, որում փառք յաւիտեանս. ամէն:

1 Ի միում օրին. Գործէլ:

## ՔՆՆՈՒԹԻՒՆ ՕՐԻՆԱԿԱՑ. ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ ՀԱՐՑՆ ԱՒԱՆԴՈՒԹԵԱՆՑ

### ՈՐՔ ՍԱՀՄԱՆԵՑԻՆ ՑԱՄԵՆԱՑՆ ՏԵՂԻՍ ՔՐԻՍՏՈՆԷԻՑ ՆՍՏԵԼ ԵՊԻՍԿՈՊՈՍԻ Ի ՔԱՂԱՔՍ, ԵՒ ՈՉ ՆԹԷ Ի ՎԱՆՍ. ԸՆԴ ՈՐՍ ԵՒ ՊԱՏԱՐԱԳԻ ԸՆԴԻՄԱԴՐՈՒԹԵԱՆՑ ՊԱՏԱՍԽԱՆԻ.

ՊԱՐԶԱԲԱՐ՝ որպէս կարծեմ, եդ առաջի բանս ըզբացատրութիւն քահանայութեան և կրօնաւորութե. սակայն կարևոր է ուսանել, թէ որ աղագաւ եմուտ այսպիսի անբարեձևութիւն 'ի մէջ մեր, և այլ բազումս առ սորօք՝ զորս ուսաք և համդերձեալ եմք քննել: Սայսոցիկ բացայայտիչ լինել կամելով՝ երկայն կարօտանամք բանից, մանաւանդ թէ և ոչ լսել իսկ ունիմք առանց հակառակութեան, և հաւանութեամբ զնոսին ուսանել՝, որք ստացաք միտս իբրև զանմիտս 'ի մանկանց. զի որպէս Նոքա զխորանն և զյանդիմանութիւնն 'ի սկզբան հաստակեն անգոսնեալ՝ յառաջատելով աւուրցն 'ի վախս անհարթութեան և անզգամութեան կործանեն, և այնուհետև ուղղել դժուարին է զնոսա՝ որ զչար սովորութիւնն յերկարութեամբ ժամանակին իբրև զերկրորդ բնութիւն ստացան. այսպէս և մեք 'ի վաղ ժամանակաց հետէ սկսեալք կոխել զեկեղեցական բարեկարգութիւն և զսահման հայրենի, մինչև յայս անզգամութիւնս վտարեցաք, յորում եմքս 'ի ծագաց մինչև 'ի ծագս աշխարհի: Նախնիկայք մեր մաքսապետք անօրինաց, և զխնամակալձառաւ շնորհացն Աստուծոյ՝ կապէինք պոռնկաց. յաշխարհէ աստուածպաշտութիւնն բարձաւ և յանապատս վտարաւ. այսուհետև յուղղութիւն ջանալով՝ ծիծաղելի լինիմք իմաստնականացն յաչս անմտոց[3], որք կարծեն ոչ զպատուաքուսա մնեալ չար սովորութիւն մեզ ուղղել, այլ զբնութիւն փոփոխել: Ո՛վ աղետալիցս. ես և ոչ առանց արտասուաց

1 Ի միւսում օրին. [illegible]:
2 Մի օրին. Տանել:
3 Մի օրին. [illegible]:

կարող եմ բերել զվկայութիւնս. քաղհանայքս իբրև զժողո-
վուրդն յիմարեցաք. որպէս ՚ի Նախատեսն ուրեմն զԻս-
րայէլ ասաց մարգարէն։

Իսկ մեր յայս ընկղմեալ, զժողովրդոցն արբեցութի՛
և չար յիմարութիւն զի՞նչ պարտ է ասել, որք բարւոյ
օժանդակ միմեանց լինել լուաք՝ յԱստուծոյ, ումեմն
զհոգւոյ օգուտն տնօրինել, և ումեմն մարմնոյ սպասա-
ւորել, ընդ հակառակս եղեալ իւրեանց՝ չարի և մեղաց
միմեանց գտաք տնօրէնք։ Եպիսկոպոսքս գողք եղաք
և գայլք, որպէս եւեթ հայրն մեր վասն մեր. և զժո-
ղովուրդն գիշատեմք։ Եւ ժողովուրդքն զազանաց ստա-
ցան բարս, և ընդդէմ մեր մաքառին։ Ուերկս դժուա-
րին թուի լսողացն ասացեալս։ Եթէ զօտարաց էր չա-
րախօսութիւնս, կարի անպատշաճ. իսկ եթէ զանձինս
իմոյ վէրս անազան ուրեմն ծանուցեալ խոստովանիմ,
ոչ ինչ հրաշափառագոյն անձամբ զանձն կշտամբել.
մանաւանդ թէ և ներողութեան արժանի յարդարն
դատաւորէ։

Բայց թէ կամիս, եկ և քննեսցուք զզօրութիւն բա-
նից. մի արդեօք անպատշաճ ասացեալք՝ ոչ ունի ըստ
նմին և զգործն։ Արդ ո՞չ լուար զՔրիստոս հովիւ, որ
այնչափ սիրեաց զհօտն, մինչև զանձն դնել ՚ի վերայ
նոցա. և առաքեալ զինքն և զորս ընդ իւր արածողս հօ-
տին կոչէ. "Ո՞վ, ասէ, արածիցէ խաշն, և ՚ի կաթանէ
խաշինն ոչ ուտիցէ"։ Իսկ մեք զարածելոյ և ոչ ընտա-
փոյթ արարեալ, այլ բնակելով յայլս և ՚ի ծերոյս վի-
ճակս, ըստ որում գողոցն է սովորութիւն, յանկարծակի
մի անգամ ՚ի տարւոջն կամ երկիցս յարձակիմք ՚ի վե-
րայ հօտին, զոմանս գիշատեմք, զայլս կեղեքեմք, և
զսակ արծաթոյն ժողովեալ, փութապէս իբրև զգողս
յորջս մեր արագապէս եկեալ դադարիմք, պատճառե-
լով թէ վանական եմ, և ոչ բնակեմ յաշխարհ. իսկ
զնոցայն զաշխարհի և զժողովրդոց զազանայնն բարս
որպէս կարող է բանս յայտ ածել վասն առաւել և զե-
րազանց չարութեան. զի ամենևին անգամնեալ և ար-
համարհեալ է յաչս նոցա եկեղեցական իշխանութի.
և ոչ ունին հաւատ կամ յոյս առ սոսա գտնեալ որպէս

1 Յօր. միում Յաւուր։

առ մարմնական իշխան: Մոռացեալ և աղօտացեալ է ամենևին 'ի մտաց նոցա, թէ մեզ հարկաւոր է ըստ մարմնական պիտոյից՝ եկեղեցւոյ վերակացուաց հպատակել. և այնչափ յաճախեցին չար և պաճարամիտ եպիսկոպոսք յաչս սոցա ստութիւն և զանիրաւութիւն, մինչ զի բարձաւ 'ի մտաց սոցին ճշմարտութեան յիշատակն, մոռացեալ ամենևին զհաւատ գիտելոյ՝ թէ եպիսկոպոս կամ քահանայ վասն օրինացն Աստուծոյ առաջնորդէ ժողովրդեանն:

Արդ զինչ պարտ է զսոսին տեսանելով ասել, քան թէ ափ 'ի բերան լինելով համբառնալ. զինչ այլ, քան թէ յաւուրս չարութեան իմաստնոցն լռել, և մի անգամ խօսելովն զերկրորդն ոչ յաւելուլ. զի յորժամ մեք եպիսկոպոսք և քահանայք ոչ գիտեմք զմեր պատիւ և զշխտաւորութիւն գործոյ, աշխարհականացն որպէս կարող եմք զնոյն ուսուցանել. մանաւանդ այսպիսեացս՝ որք խստագոյն ընդդէմ պատասխանեն, "Նահանջել զճանապարհս քո ոչ կամիմ,,: Բայց սակայն մի ինչ ունիմ աշխատութենս մխիթարութիւն. յարձան յաւիտենական և յազգս որ գալոց է թողուլ զիմն և զիմոյ ազգիս զչարիս. և թերևս հասարակաց աշխարհին նոյնս, որպէս առ Ջրհեղեղաւն, և Նոյ միայն արդար: Նա ոչ երբէք, այլ հակառակ նմին. զի հասարակ ազգ ըստ այսմ մասին դեռ ևս բերեն զհարցն աւանդութիւն. և տեսանեմք աչօք մերովք յամենայն քաղաքս նոցա և 'ի տեղիս եպիսկոպոսս, և եպիսկոպոսարանս ազատ 'ի հարկաց՝ որք ըստ օրինօք են, պաշտելով զպատիւ իւրեանց, և առատացեալ պատարագօք որ ըստ քրիստոնէից թագաւորօք և իշխանօք. բայց մերս՝ որ ըստ անօրինօք՝ լռութե՟ կնքեցի. և որք 'ի սակաւաւոր քրիստոնէութիւնս 'ի վանորեայս թաքուցեալք, և աշխարհ ամենայն անհովիւ և անպտուղ նոցին: Նա և բնաւին տգէտ եմք, թէ եպիսկոպոսին հարկաւոր է 'ի մէջ ժողովրդեանն լինել, մոռացեալ բնաւին զառաջնոցն սովորութիւն, և զաչաց մերոց առ այլ ազգս զտեսութի՟. նա և զվտանգն որ յայսմանէ՝ և ոչ բնաւ զմտաւ ածեալ յաղ՟ տգիտութեան հեշտացելոցս: Աստն այսորիկ հարկաւորի բանս թանձրամտութեանս, մարմնական իշխանութեան յարացուցիւ զսոյն երևելի առ-

նել. Թերեւս 'ի մոլորութեան ելով ծանիցուք զնոյնս, և մի որպէս զՃշմարիտս խրոխտասցուք. սակայն ինչ և 'ի վտանգիցն տեղեկացեալ, միթէ կարասցուք զօրութեամբն Աստուծոյ և յայնցանէ խուսել:

Արդ պարտ է գիտել՝ թէ անվայելուչ է և ամենևին անիրաւութիւն առ օրէնսն եպիսկոպոսաց որք վիճակեցան յաթոռս քաղաքաց, արտաքոյ նոցին լինել, կամ վանորէից զաշխարհն ծառայեցուցանել. այլ նստել 'ի քաղաքաց և յաւանաց եկեղեցիս, և հոգալ զհոգւոց նոցա գործն, զոր օրինակ մարմնական իշխանն զմարմնոց. և որպէս այն իշխանն յաղագս մարմնոց տնօրէն լինելոյ հարկս հանէ յաշխարհէն, և զինուորանն նոքօք 'ի պէտս մարմնական նոցա խաղաղութեան՝ նմա պահէ, այսպէս և սմա հարկաւոր է ամենեցուն պտղաբեր լինել յեկեղեցին. զի հպատակելով պաշտօնէիցն՝ միշտ անդադար յաստուածակոյս կողմանն լինիցին ոգին խաղաղարարք. որպէս և տայ վասն այսորիկ մեզ տարացոյց օրէնքն Աստուծոյ 'ի ձեռն Մովսէսի. զի ղևտացոցն ոչ ետ Աստուած ժառանգութիւն մարմնական, բայց 'ի տասանորդաց ժողովրդեանն՝ առ 'ի ծառայելոյ զնոսա առանց զբաղմանց: Եւ առաքելական կանոնն 'ի բազում տեղիս. “Մի արածիցէ, ասէ, խաշն, և 'ի կաթանէ խաշինն ոչ ուտիցէ. կամ տնկիցէ այգի, և 'ի պտղոյ նորա ոչ վայելիցէ”: “Նոյնպէս, ասէ, և տէր հրամանն ետ որոց զաւետարանն աւետարանեն՝ յաւետարանէ անտի կեալ”. Նոյն դարձեալ՝ և արժանի դատեցաւ մշակն կերակրոյ իւրոյ:

Բայց որպէս վերագոյն ասացի, յորժամ 'ի հովուութեան և 'ի մշակութե գործն կանխեն և տքնին վասն ոգւոցն այնպէս՝ որպէս թէ ընդ նոցա համարս տալոց իցեն, որոց պարտին այսպիսեացս սիրով և յօժարութե ժողովուրդքն և իշխանք նոցին զհպատակութիւն կատարել. քանզի նուրբ է բնութիւնն Աստուծոյ և իմանալի, անկար է նոցա 'ի մարմնական զբաղմունսն վրդովել և արժանապէս ընդ նմա խօսել. և յորժամ նա ոչ ըստ որում պարտն է խօսի և միշտ աղօթիւք իւրովք զմեղս ժողովրդեանն քաւէ, բարկութիւնն Աստուծոյ փութայ ըստ մեղացն 'ի վերայ նոցա, ոչ ունելով բարեխօս զի զայն միշտ կնքէ նա: Եթէ ոչ հաւատաս,

զգիրս առ 'ի ձեռս և ուսիր. զի յորժամ եկաց Ահարոն բուրվառով տաճարի Աստուծոյ, անց 'ի ժողովրդեանն պատուհասն։ Այս գիտելով առաջին սրբոց Թագաւորացն՝ հարցն և հայրապետացն՝ սահմանեցին յամենայն գլուխս գաւառաց՝ ուր իշխանքն լինին, նստել և յեկեղեցիսն եպիսկոպոս. զի որպէս նա մարմնոյն ընթացից աշխարհին առաջնորդ լինի, և Թագաւորական իրաւանցն տնօրէն և ուղղիչ, այսպէս և սա հոգւոց առաջնորդ և առ երկնաւոր Թագաւորն Աստուած յուսոյ նոցին և հաւատոց առաւատացուցիչ, և բարեկարգութեան պայծառացուցիչ։ Եւ որպէս այն իշխանն 'ի Թագաւորական ապարանսն բնակէ, և յամենեցունց փոխանակ նորին մեծարի, և որք կան 'ի տան Թագաւորին երկրպագեն նմա, և շնորհ երկրպագութեան առ Թագաւորն վերանայ, այսպէս և սա փոխանակ Աստուծոյ բնակէ 'ի տաճարս նորա, և հարկաւորապէս պահանջէ յամենեցունց զայլ աստանօր, և 'ի ձեռն իւր զերկրպագութիւն նուիրել Աստուծոյ։ Եւ որպէս իշխանն միշտ խոկայ՝ թէ ոք գող կամ անհնազանդ կամ ապստամբ 'ի Թագաւորէն՝ և ուղղէ, այսպէս և սմա հարկաւոր է միշտ քննել զանազանաբար ապստամբեալսն յԱստուծոյ, և հոգածութեամբ յուղղութիւն ածել. և ըստ որում առանց իշխանին ոչ կարէ կեալ քաղաքն 'ի խաղաղութեան ըստ մարմնոյ, այսպէս և ոչ առանց եպիսկոպոսին ըստ հոգւոյ։ Եւ որպէս նա 'ի գիւղս և յաւանս իշխանութեան իւրոյ Թագաւորական շահիցն զհաւատարիմ ծառայսն վերակացուս առաքէ, ըստ այսմ և սա աստուածային զանձուցն փրկութեան հոգւոցն 'ի գեղս և յաւանս, 'ի վանս և յամենայն տեղիս երիցունս և սարկաւագունս կարգէ՝ տնօրինել նոցին ըստ մեծի եկեղեցւոյն օրինաց։ Այս օրինօք մինչև ցայսօր առաջի աչաց մերոց գնան ազգ քրիստոնէից, բայց 'ի մերս Թշուառութենէ. վասն այսորիկ և մարմնականն նոցա իշխանութիւն ամրափակեալ հոգևորաւն մնաց 'ի հաստատութեան. իսկ մերս որ ըստ օրէ քակտեցաւ, և դեռ ևս քակտի, ոչ ունելով զհոգին՝ նեցուկ և ըծակից մարմնոյն։

1 Մի օրին. Ուղղիւ։ 2 Յօրին. միում Նուաճեւ։

Բայց չէ ինչ օգուտ զայս բան յերկարել, քանզի փոխանակ շահեցուցանելոյ զլսողն՝ ինձ թուի թէ գայթակղեցուցանեմ. որք ոչ հային 'ի ստուգութիւն բանիս՝ այլ յիս, որպէս թէ իմն ախտի փառասիրութեան առնում ջատագով զօրէնսն Աստուծոյ: Այլ ես համարձակիմ զառաքելոյն ասել. "Եղբարք եթէ առանցուք ինչ, այն Աստուծոյ է, և եթէ զգաստանամք, այն ձեր է". քանզի թուիմ ինձ՝ եթէ սէրն Քրիստոսի և քրիստոնէից ստիպէ զիս քննել զայս:

Արդ զառաջին բանեն բուռն հարցուք վերստին, իշխանելին՝ որ փոխանակ է թագաւորին 'ի տաճարի նորա, անկար է զամենայն գործն անձամբ կատարել. այլ 'ի պէտս թագաւորական իրաւանցն և իշխանս պաշտօնակիցս իւրեան ունել հարկ է, որպէս զի խորհրդեանն կցորդ լինիցին նստելով ընդ նմա և առ նմա. և այլ են 'ի նոցանէ որք զհրամանս նոցին հրապարակեն յունկնս ժողովրդոցն. և են ոմանք որ զզօրունսն պահեն, և այլք որ ըստ իւրաքանչիւր արժանեաց՝ գործ կատարեն: Սակայն փոքունքն և մեծամեծքն՝ հաւասարապատիւ ծառայակիցք են և ծառայք թագաւորին: Նոյնպէս և յայսմ հոգևորական իշխանութեան աթոռս սուրբ եկեղեցւոյ՝ նախապատիւ և փոխանակ Աստուծոյ է եպիսկոպոսն, իշխանակից և աթոռակից են նմա քահանայքն, հրամանատարք են սարկաւագունքն, հպատակողք դպրաց և 'ի բաց առաքիչ անարժանիցն կէս սարկաւագունք. բայց սոքա 'ի զանազան ընթացս միոյ Աստուծոյ ծառայք են, և իւրեանց համապատիւ ծառայակիցք: Եւ որպէս նոքա զոր ինչ առնուն 'ի պէտս իւրեանց յաշխարհէն, ոչ աշխարհին՝ այլ թագաւորին շնորհ ունին՝ զորոյ և զգործն կատարեն, և նոքին իսկ թագաւորին տան զայն 'ի ձեռս նոցա, այսպէս և եկեղեցւոյ իշխանք զոր ինչ առնուն 'ի ժողովրդենէն՝ Աստուծոյ շնորհ ունին, յորոյ գործն կանխեալ են, և ոչ սոցա, և սոքա պարտին Աստուծոյ տալ և ոչ մարդոյ: Եւ ըստ որում նոքա զպատիւն իւրեանց և զփառսն ոչ անձանց համարին և վասն նորին հպարտանան, այլ թագաւորին, այսպէս և սոքա զպատիւ և զփառս ժողովրդեանն Աստուծոյ պարտին տալ և ոչ անձանց: Եւ որպէս նո-

1 Ա.Ձ. օրին. Աշծանէոյ:

քա յանարգաց ոք գոլով՝ անուն Թագաւորին զինքեանս յարգեաց, և Թագաւորն ամենայն մտոյ և ելից համարս պահանջէ 'ի ձեռաց նոցա, այսպէս և մեք յանարգաց ոք գոլով և յաւանկաց՝ անուանքն Աստուծոյ որ 'ի վերայ մեր՝ փառաւորեցաք 'ի մէջ մարդկան, և ընկալաք 'ի նոցանէ զպատիւ և զնուէրս. և ամենայնին հանդերձեալ է Աստուած համարս պահանջել 'ի մէնջ, ըստ այնմ. "Որում շատ տուաւ շատ խնդրեսցի 'ի նմանէ": Դարձեալ որպէս իշխանին անհաւատութիւն է առ Թագաւորն, եթէ յումեքէ կաշառս առեալ՝ նախ քան զարժանաւորութիւնն զնա 'ի պատիւ և 'ի զինուորութիւն կարգէ, և զտերունի զանձն յանպատշաճ ձեռս մատնէ, այսպէս և եպիսկոպոսին անհաւատութիւն է առ Թագաւորն իւր Աստուած՝ թէ վասն կաշառաց կամ վասն փառաց զոք նախ քան զարժանաւորութիւն 'ի տանն Աստուծոյ 'ի պատիւ և 'ի հոգևոր իշխանութիւն զինուորեցուցանէ, և զաստուածային զանձուն շնորհն յանմաքուր ձեռս մատնէ: Իսկ թէ և գիտէ ոք իշխանն արժանի, ոչ վաղվաղակի 'ի ծայրագոյն պատիւն հանէ, և ընդ իւր նստուցանէ. զի մի անփորձ գտեալ իշխանական կարգին՝ անձին և պատուողին նախատինս լիցի:

Այլ զինչ. թէ յաշխարհական զարմէ է և յառոյգ հասակ մանկանց, զօրէնսն ամբողջ պահելով ոչ համարին նմա նախատինս՝ նախ շանց և թռչնոց սպասաւորել, և յետ այնր կրթելոյ՝ յառն կայ առաջի այնոցիկ որ նստին, և ապա փոխեալ յայնմանէ, կապարճակիր լինի իշխանին և սպասաւոր բաժակի նորա, և յետ այսորիկ վարժելոյ և հասակաւն կատարելոյ՝ ապա լինի ձիաւոր, և 'ի կարգ իշխանացն հաւասարի: Այսպէս և Պօղոս խրատէ զեպիսկոպոսս՝ պահել զհրամանս իւր, զոր վկայութեամբ Աստուծոյ և հրեշտակաց՝ դնէ 'ի վերայ նոցա առանց մտահաճութեան, մի ինչ առնել աչառանօք, ձեռս վաղվաղակի յուրուք վերայ մի դնել, և ոչ լինել կցորդ մեղաց օտարաց: Այլ թէ և հաճելի վարս ունիցի և 'ի պատուականաց ոք իցէ, նախ 'ի խոնարհագոյն աստիճանսն փորձել. զի "Են, ասէ, մարդիկ որոց մեղքն յառաջագոյն հասեալ են 'ի դատաստան, և են որոց զկնի երթան": Դու մի երագես՝

1 Մի օրին. Երագեսցես:

զձեռնադրելն, և յետոյ ծանուցեալ զմեղսն զղջմանս. այլ փորձեա ուսեալ 'ի մարմնական իշխանէն, ծանուցեալ՝ թէ որքան է քոյդ անօսրագոյն խորհուրդ քան զնորայն. զի այս հոգի է, և այն մարմին:

Արդ եթէ նա 'ի դիւրինն զբարեկարգութիւնն ամբողջ պահէ՝ զիւրն օգուտ խոկալով և զնորայն որ 'ի կրթութենէն լինի, դու մի մանկական կարճմտութեան զիմաստութիւն քո, ո՛ եպիսկոպոս, հաւատաս, կամ արծաթոյն պատրանաց, և օտար մեղաց կցորդիս[1]: Այլ որպէս նա շանց կարգեաց զմանուկն սպասաւոր նախ, դու դրանց եկեղեցւոյս արարցես և կէս սարկաւագութեան կարգին, և յետ յայն վարժելոյ և կրթելոյ, ապա դիր զգէն քո զխաչն 'ի ձեռս, և արա զնա սարկաւագ և սպասաւոր քում սեղանոյն և տէրունական բաժակին, զի և ինքն զպատուոյն առաւելութիւն ծանիցէ, և դու զփորձ նորին գիտիցես. հասակաւ կատարեսցի, և իմաստիւք զարգասցի, և յետ այնորիկ թէ լիցի արժանի ծայրագոյն վիճակի քահանայութեան, և քում աթոռակցութեան, ըստ որում և լի են աստուածաշունչ գիրք այսպիսի խրատուք և կանոնական սահմանադրութիւնք հարցն. թերևս վայրապար գրեցին, կամ զընդդէմն սահմանեցին բնութեանս. և ոչ երբէք, այլ զդիւրինն և զհեշտականն: Աստի յայտ է. ես ցուցից:

Յորժամ մանուկ և անփորձ իմաստից ձեռնադրեսցէ քահանայ, որչափ տղայ է և անկիրթ յընտրութիւն բարւոյ և չարի, պաշտէ զնոյն վասն հարկի մարդկան և փառաց. իսկ յառաջացեալ հասակին և ծանուցեալ զառաւելութիւն գործոյն և զունայնութիւն փառացն, հրաժարէ անձամբ անձին 'ի նմանէ. և ունի այնուհետև միայն զպատիւն՝ իւր 'ի դատապարտութիւն և 'ի կշտամբանս. ըստ այնմ, "Անիծեալ որ գործէ զգործ տեառն հեղգութեամբ,": Ապա բարիոք և ամենավայելուչ կարծեմ, մինչ դեռ 'ի տղայական տարբերումն է, պարապել զնա խոնարհութեամբ կրօնաւորական սքեմին, և փոքր փոքր յառաջանալ իմաստիցն՝ պատուել. զի թէ մարդիկ մարմնաւորք դեռ եւս ամբողջ պահեն զայս

1 Յօրին. միում կցորդ լինիս:

սովորութիւն, քանի՛ն առաւել մեզ հարկ է։ Ո՜ ինչ պարտ է ասել։ Ո՞ տեսեր մանուկ, իբրև զքո քահա-նայդ, 'ի ձի նստեալ և պատերազմական զինուք պար-փակեալ։ Ո՞ տեսեր մանուկ, յիշխանաց առ միմեանս հրեշտակ առաքեալ. Եւ վասն. զի ոչ ունի զբաւական իմաստն, զի դիւրապատրելի է դեռ. իսկ մեք մանկունք ոչ 'ի մարդկանէ առ մարդ, այլ 'ի մարդկանէ առ Աս-տուած միշտ հրեշտակս մտեալք. զոր ոչ 'ի կամին կա-րողանամք վասն անիմաստութեան գիտել, և ոչ բնաւ զխորհուրդն՝ որում խորհրդակցիմք։ Ո՜ ինչ ունիմք առ այս ասել, որ վատթարացուցաք զօրէնս հոգևոր քան զմարմնոց։ Հարցուք 'ի մէջ։ Եւ այլ վասն այսորիկ ածեմք քահանայ, զի դեռ ես անմեղ է որպէս զի այ-սու կնքեսցի։ Այլ կնիք անմեղութեան ո՞չ հաւանիս բա-ւական զձև կրօնաւորութեան և զկարգ։

ՆԵՐՍԷՍ. Դարձեալ ո՞չ գիտես, թէ անմեղ և սուրբ վասն այնորիկ է, զի մանուկ է և անիմաստ և դեռ ան-փորձ չարի. յորժամ փորձի կարծես զայն հաւատարմա-ցուցանել՝ թէ պահէ զանմեղութիւն։

ԳՐԻԳՈՐ. Ոչ երբէք։

ՆԵՐՍԷՍ. Այլ թէ առ այս 'ի կարծիս ես, զինչ ստի-պէ զքեզ ոչ թողուլ զնա, մինչև փորձեսցի և մարտի-ցէ, և ապա օրինօք պսակեսցի. կամ թէ պարտեսցի, ազատ 'ի հարկէ և 'ի պարտուց բարձրագոյն աստիճա-նիդ լինիցի։

ԳՐԻԳՈՐ. Քանզի ինքն ստիպէ և խնդրէ։

ՆԵՐՍԷՍ. Այլ ո՞ւր ուսար դու զկամս մանկանն՝ ծե-րոց կատարել. մանաւանդ թէ ո՞չ գիտես՝ թէ շուտա-փոյթ և ջերմ հասակն՝ որ ջերմն խնդրէ, վաղվաղակի ունի յագենալ։ Դարձեալ և գիտէ՞ զնոյն՝ թէ զինչ խնդրէ, եթէ պարզմտութեամբ խնդրէ։

ԳՐԻԳՈՐ. Պարզմտութեամբ՝ ամենայն իրօք։

ՆԵՐՍԷՍ. Յայտ է ապա՝ եթէ յանցանես պարզա-մտացն հաւանեալ. և զնա փոխանակ պատուոյ 'ի խոր-խորատ չարեաց ձգես։

ԳՐԻԳՈՐ. Ծնողքն և ազգատոհմն պահանջեն ըզ-նոյնս քահանայութիւն որդւոյն։

ՆԵՐՍԷՍ. Այլ զինչ դիտաւորութիւն մտաց նոցա, թերևս երկեղն Աստուծոյ։

ԳՐԻԳՈՐ․ Ոչ ընաւ, այլ միայն զի կրօնաւորապէս ձեւացի, և յաչս մարդկան պատուեցի։

ՆԵՐՍԷՍ․ Զայս յառաջագոյն ցուցաք՝ եթէ զձև կրօնաւորութեան և զօրհնութեան պարտ է տալ մանկանց և ծերոց, որք գան 'ի վանս կուսանաց, զկնիկուղն և զաքեմն ըստ սովորութեան հարցն, որպէս հաստատեցաք վերագոյն. եղիցի յայս կամք ծնողացն և իւրն յօժարութիւն. և յետ փայլելոյ 'ի նոյն առաքինութիւն և հնազանդութեամբ, ապա թէ բռնութեամբ վրձակեցի 'ի պատիւ և յաստիճան եկեղեցւոյ։

ԳՐԻԳՈՐ․ Բայց և այլ ինչ ասեն ընտանիքն։

ՆԵՐՍԷՍ․ Զինչ, յայտնեա ճշգրտիւ։

ԳՐԻԳՈՐ․ Մեք, ասեն, վասն այդորիկ որոշեցաք զորդիդ 'ի վանականութիւն, որպէս զի եղեալ քահանայ, մեզ յետ մահու պատարագ արասցէ։

ՆԵՐՍԷՍ․ Ապա յայտ է՝ եթէ ոչ Աստուծոյ ետուն զնոյն, այլ ինքեանց 'ի միջակութիւն վարձեցին. և դեռ ևս նոցա տիրելով՝ ոչ է 'ի ծառայութիւն Աստուծոյ. զի "Որ ոչ, ասէ, ուրասցի զհայր և զմայր (յայտ է՝ թէ զկամս նոցա,) ոչ է ինձ արժանի", ասաց տէրն։

ԳՐԻԳՈՐ․ Իսկ եթէ և նոքա ոչ բռնադատեն, մեզ հարկաւոր է օծել զոսսա քահանայս, որպէս զի զսակ համարոյ պատարագացն յանդ հանիցեն, և զպարտսն մեր վճարեսցեն, զոր պարտիմք աշխարհի։

ՆԵՐՍԷՍ․ Այս զինչ պարտիք. զի տէրն մեր ասաց, "Ձրի առէք, և ձրի տուք". և առաքեալն խրախուսէ. "Եթէ մեք 'ի ձեզ զհոգևորն սերմանեցաք, մեծ ինչ է եթէ 'ի ձէնջ զմարմնաւորն հնձիցեմք". Ապա յայտ է՝ թէ աղօթք ձեր և պաղատանք ոչ վասն անձանց միայն, այլ առաւելապէս վասն աշխարհի քաղաքավարելոցն. զինչ պարտականութիւն է սակաւ պիտոյքն մարմնոյ, որով սպասաւորեն ձեզ. այլ մանաւանդ արժան է. վասն զի ձրի տայք զաղօթս նոցին, ձրի առնուք 'ի նոցանէ և զողորմութիւնս կարևոր պիտոյիցն ըստ տեառն մերոյ հրամանի. և ոչ 'ի ներքոյ պարտուց գրաւեալ։

ԳՐԻԳՈՐ․ Բայց ունկն դիր այժմ ինձ, և ասացից քեզ. սովորութիւն իմն է յաշխարհի զկնի մահուն ողորմութիւն տալ յեկեղեցիս և 'ի վանորայս, և այնմ

հաւատացումն խնդրել քառասներս պատարագաց:

ՆԵՐՍԷՍ. Ողորմութիւնդ բարիոք սովորութիւն է և առաքելական օրէնք. քանզի ուսուցանէ մեզ Պօղոս յամենայն 'ի թուղթսն՝ եթէ ողորմութիւն առնէին եկեղեցիքն հեթանոսաց 'ի ձեռս նորա աղքատացն, որ էին յԵրուսաղէմ՝ և աղօթիցն էին պարապեալ. իսկ զհաւատացումն պահանջել և ոչ երբէք 'ի գրոց լուաք:

ԳՐԻԳՈՐ. Կամիմ պարզաբար ուսանել՝ զինչ էին աղքատքն, և կամ ո՞րպէս լինէր նոցա ողորմութիւնն:

ՆԵՐՍԷՍ. Գործք առաքելոցն պատմէ մեզ զայս, զհաւատալն, 'ի Պենտէկոստէին յիջումն Հոգւոյն, կանանց և արանց[1] յԵրուսաղէմ՝ և մկրտեալ նոցա, ասէ պատմութիւնն. "Էր սիրտ և անձն մի. և ունէին զամենայն ինչ հասարակաց. վաճառէին որք ունէին ստացուածս, և դնէին առ ոտս առաքելոցն". և նոքա 'ի ձեռն ընտրեալ սպասաւորացն 'ի հասարակաց պիտոյս մատակարարէին: Իսկ անհաւատ հրէայքն յափշտակեցին զամենայն ստացուածս նոցա, որպէս գրեաց առաքեալ. "Զյափշտակութիւն ընչից ձերոց խնդութեամբ ընկալարուք". և այնքան բազմութեանն պարապեալ աղօթից միայն՝ կարօտանային մարմնական պիտոյիցն: Իսկ գլխաւորք առաքելոցն Պետրոս և Պօղոս յորժամ բաժանեցին զաշխարհս 'ի քարոզել, Պօղոս 'ի հեթանոսս և Պետրոս 'ի հրէայս, ուխտ եդին զաղքատսն Երուսաղեմի հասարակաբար հոգալ: Այս ասէ Պօղոս՝ եթէ "Այս փութացայ զնոյն գործել[2]", զորոյ զփոյթն մեզ 'ի մէջ առնուլ երկայն կարօտանամք բանից. զի երբեմն պարտապան դնէ զհեթանոսս նոցա, ասելով "Եթէ հոգևորացն նոցա հաղորդք եղեն հեթանոսք, պարտին և մարմնաւորացն կցորդ լինել". և դարձեալ գրէ կորնթացւոցն՝ եթէ "Աքայեցիքն, 'ի հերուն հետէ ասացի այլոց եկեղեցեաց, թէ պատրաստ են. և ձեր նախանձն զբազումս յորդորեաց". նա և 'ի բովանդակ թուղթս առաքելոյ է զնոյն գտանել: Նաև աղօթից յանձնէր հռոմայեցւոցն. "Աղօթս արարէք, ասէ, զի պաշտօնն իմ որ յԵրուսաղէմ ընդունելի լիցի

1 Մի օրին. փոխանակ կանանց և արանց՝ ունի Երեք հազարաց և հինգ հազարաց:

2 Մի օրին. կատարել:

սրբոցն ”: Որպէս ընկալեալ զնուէրս պատարագաց յամենայն հեթանոսաց 'ի հօտ անուշից հաճոյ Աստուծոյ ածէր յԵրուսաղէմ, արժանի դատելով զնոսա այսոցիկ. իսկ նոքա ըստ մարմնոյ բաւականացեալ ընծայիւք հեթանոսաց՝ ոչ երբէք զանձինս նոցա պարտական վարկանէին. և յառաջանալով քրիստոնէութեանն՝ ոչ յԵրուսաղէմ միայն, այլ և յԵգիպտոս և յամենայն տեղիս սկսան այսպէս որիշ յաշխարհէ առանձինն բնակել: Իսկ ազգ քրիստոնէից 'ի սկզբանէ վարժեալ առաքելոցն օրինօք՝ առնէին նոցա զձիրս ողորմութեան. և առնեն մինչև ցայսօր՝ հատուցման ակն 'ի մարդկանէ ոչ կալեալ, այլ յԱստուծոյ՝ որ ասաց. “Որ արբուցանէ ձեզ բաժակ մի ջուր ցուրտ յանուանս այս՝ թէ դուք Քրիստոսի էք, ամէն ասեմ ձեզ, ոչ կորուսցէ զվարձս իւր ”:

ԳՐԻԳՈՐ. Գեղեցիկ այս ասացելոց օրինացս արտաքոյ գնամք մեք:

ՆԵՐՍԷՍ. Որպէս:

ԳՐԻԳՈՐ. Վասնզի յորժամ առնեն զողորմութիւն՝ ոքք յաշխարհէ՝ յեկեղեցիս կրօնաւորաց, թուղթս պահանջեն, և սակ համարոյ ըստ չափոյ տրոցն թախանձանօք խնդրեն:

ՆԵՐՍԷՍ. Ամենայն իրօք անհաւատութեանն տեսանեմ զայս պտուղ, և բարեկարգութե քրիստոնէից քակտիչ. զի հարկ է նոցա 'ի կարծիս լինել, թէ յորժամ ոչ գլխեմք զթիւն, և ոչ ողորմութիւն գտեն յԱստուծոյ, յայնմանէ որ եառ 'ի ձեռն մեր զողորմութի. և մեք զի 'ի պէտս լցուցանելոյ զնոյն լցի 'ի հարկէ, և ոչ վասն Աստուծոյ պատարագել. և զհաղորդութիւն քահանայիցն 'ի խորհրդեանն[1] թուոցն վասն 'ի զանազան տեղիս պառակտել. նաև վասն այսորիկ զանպատշաճս յաստիճան վիճակել. մանաւանդ և փակեմք ըղձեռս աշխարհականաց յողորմութենէն հաւատով, ուսուցանելով զնոսա 'ի համարոցն պէտս վաճառել ըղտուրս՝ և ոչ Աստուծոյ ձրի տալ:

ԳՐԻԳՈՐ. Որ ինչ ասացեր բանիւ՝ գործով լինի ամենայնոդ 'ի մէջ մեր:

1 Յօրին. միում ի հաղորդութենէն:

ՆԵՐՍԷՍ . Այլ զո՞րս 'ի սրբոցն կամ 'ի գրոց առաջնորդ ունիմն այսպիսի խոտորնակ ընթացից, ուսո ինձ :

ԳՐԻԳՈՐ . Ի Հարցն ասեն եկեալ առ մեզ այսպիսի աւանդութիւն :

ՆԵՐՍԷՍ . Նարիոք՝ թէ 'ի նոցանէ . սակայն զանուանս Հարցն կամիմ ուսանել, զի նոքա ամենեքեան կենդանի են 'ի մէջ մեր գրեցելովք վարդապետութեամբքն :

ԳՐԻԳՈՐ . Յանուանէ ոչ գիտեմ զայսօրիկ աւանդիչսն :

ՆԵՐՍԷՍ . Այս յայտ է թէ մոլորին, եղբայր, 'ի ճշմարտութեանն շաւղաց՝ զսրբազան և զանուանի առաջնորդսն թողեալ, զոր ունիմք 'ի մէջ մեր զսրբոյ Հայրապետին Ներսէսի սահմանն կրօնաւորաց մինչև 'ի ջնջին և յուլ և պէտ¹ իւրն Հարկաւորապէս գրեալ : Այլ և Հարցն եգիպտացւոց ամենայն բանն և վարք 'ի գրեանս ժողովեալ . և այսոցիկ ոչ բնաւ տան տարացոյց զկրօնաւորս աշխարՀականաց պարտական լինել . այլ միայն թէ արժանի առնեն ընդունել զողորմութիւնս նոցա 'ի պէտս իւրեանց, երանելիք են . և զայս ուսուցանեն իւրաքանչիւր գրեալքն իմաստուն քննողաց . և մեր՝ թէ ոչ յերկարութիւն բանից 'ի շատախօսութիւն կրթէր, 'ի մէջ առնուաք զամենայն կշտամբիչ այսպիսի խորՀրդոց :

ԳՐԻԳՈՐ . Ասա փոքր ինչ, աղաչեմ :

ՆԵՐՍԷՍ . Գրեալ է 'ի պատմութիւն Հարցն եգիպտացւոց՝ թէ մեծատունն ոմն ոսկի եբեր 'ի Սկիւթ բազում, և ելեալ երիցուն 'ի դրունս եկեղեցւոյն՝ ասէր . "Եղբարք, առէք ձեզ պիտոյ է 'ի սմանէ" . և ոչ ոք Հայեցաւ 'ի նա, և բնաւ ոչ մերձեցան : Այսպիսի կամն մեզ պարտ է ստանալ : Նաև առ Հայրն մեր Մակարիոս Հարցումն արարեալ վասն միաբանակեցաց բազմութեան, "Եթէ դիպեսցի, ասեն, Հասարակաց եղբարցն կարօտութիւն լինել մարմնական պիտոյիցն" . Հրամայէ առնուլ յայնցանէ որք տան յօժարութեամբ, և զփոխարէնն, ասէ, Աստուծոյ Հատուցանել : Արդ ո՞ ոք ժպրՀեսցի 'ի վերայ սոցա երկրորդութիւն օրինաց

1 Մի օրին . Ցուսմղէս :

յաւելուլ. բայց թէ յանմտաց ոք լինիցի, որպէս կարծեմ։

ԳՐԻԳՈՐ. Ասնիմ և այլ ինչ ասել զնոցա մտացն. քանզի ասեն՝ թէ Փիլիպպոս առաքեալն յետ մկրտութեանն ըստ բարկութեանն հրամանին ծանեաւ զինքն արտաքոյ արքայութեանն լինել, և հրաման ետ քառասուն օր պատարագ կատարել, և զինքն յիշել. նաև Եփրեմ թէպէտ և յամենայն սպասուց յետ մահուն հրաժարեաց, ոչ և 'ի սմանէ. և աստուածաբանն առ Մաքսիմոս ուսումնակիցն 'ի բանն գերեզմանական ասէ. "Ոենումն որ աստ վասն ձեր ննջեցելոցդ պատարագի, և զկեանս ձեր այդանօր ցօղէ"։ Մեք ասեն առ այս յուսալով տամք զողորմութիւն նուէր վասն ննջեցելոցն յուխտս կրօնաւորաց, և պահանջեմք զթիւս քառասնից պատարագին [1] նոցա թողութիւն մեղաց մահուամբն Քրիստոսի։

ՆԵՐՍԷՍ. Արդ եկ զպարզմտութեամբ ասացեալդ իմաստասիրաբար քննեսցուք, զի մի լիցի ջատագով զիրք սուրբք ստութեան. յորժամ ոչ տան մեզ զտուրս ողորմութեան՝ խափանեմք յեկեղեցւոյ զխորհուրդ պատարագին՝ թէ ոչ։

ԳՐԻԳՈՐ. Այս ոչ բնաւ։

ՆԵՐՍԷՍ. Այս զպատարագն ոչ խափանեալ՝ յիշեմք զննջեցելոյն ձրի, եթէ մնամք՝ մինչև զողորմութիւնն առնումք։

ԳՐԻԳՈՐ. Յիշեմք անդանդաղ։

ՆԵՐՍԷՍ. Ապա յայտ է եթէ պատարագն ոչ վասն նոցա՝ այլ 'ի փառս Աստուծոյ կատարի, և յիշելն զննջեցելոյն զամենեսեան 'ի ներքոյ աղօթիցն փակեմք առանց վարձու. և դու եթէ տաս զողորմութիւն, ըստ քում հաւատոցդ գտանես յԱստուծոյ՝ մասնակից եղեալ 'ի տալն զողորմութիւն յայս եկեղեցիս՝ ամենայն եկեղեցեաց աղօթից, որք միով բարբառով յիշատակեն զպտղաբերիչս եկեղեցւոյ. զի "Մի է պատարագն և մի է աղօթքն, մի Տէր Յիսուս Քրիստոս, ասաց Պօղոս, որով ամենայնն, և մի եկեղեցի նորա ընդ տիեզերս"։ Այս սուրբքն որ յանձն արարին յիշատա-

1 Օրին. միում պակասէ պատարագին։

կելոց կամ յիշատակեցին, ոչ թէ 'ի տուր և յառս վարձկանութեան զՔրիստոս ձգեցին, այլ միայն ընդ հասարակաց փրկութեան և զինքեանս յանձն արարին հաւատով յիշել. և ընկալան յԱստուծոյ ըստ իւրեանց հաւատոցն: Իսկ այսոքիկ դատարկացեալք 'ի հաւատոցն՝ միայն 'ի թիւսն լինին ապստամբ սատանայական խորհրդակցութեամբ. և զմեզ ձգեն ընդ յանցանօք շնորհավաճառութեան, և կամին զպարգևսն Աստուծոյ արծաթով ստանալ որպէս զՍիմոն. զոր այնքան կըշտամբեաց առաքեալն Քրիստոսի՝ տեսեալ 'ի կնճիռն անիրաւութեան:

ԳՐԻԳՈՐ. Ապա ո՞րպէս արասցուք զտուրևառսն Աստուծոյ 'ի ձեռն կրօնաւորաց, ուսո ինձ զուղիղն և զճըշմարիտն:

ՆԵՐՍԷՍ. Ոչ ես՝ այլ նոյն ինքն վէմն եկեղեցւոյ Պետրոս առ այս եկեալ հաւանեցուսցէ զքեզ: Քանզի ասէ պատմութիւն Գործոց առաքելոցն. "Եւ բազմութեան հաւատացելոցն սիրտ և անձն մի, և ունէին զամենայն ինչ հասարակաց: Իսկ որք ունէին գեղս և ագարակս՝ վաճառէին, և բերէին դնէին զգինսն առ ոտս առաքելոցն". և նոքա ընդունէին սիրով և յօժարութեամբ[1], և ոչ հրաժարէին 'ի տրիցն և յոսկւոյն. և ոչ նոքա փոխարէնս հատուցման պահանջէին: Իսկ իջեալ Պետրոս առ եղբարսն 'ի Սամարիա, տայր նոցա զՀոգին ձրի, և առնոյր 'ի նոցանէ ձրի զողորմութիւնս. իսկ Սիմոն տեսեալ զայն՝ առ արծաթ և եկն առ Պետրոս՝ ասելով, առ զայս 'ի քեզ՝ և տուր ինձ փոխանակ այսորիկ Հոգի. նա 'ի բաց վարեաց ասելով. "Տեսանեմ զքեզ ամենևին 'ի կնճիռն անիրաւութեան, զի զպարգևսն Աստուծոյ արծաթով կամիս ստանալ": Արդ եթէ կամիս եկ և քննեսցուք, ե՞ր վասն սա Պետրոս որ յայլոցն առնոյր, և զԱնանիա այնր աղագաւ մահացոյց, 'ի սորա տրիցն հրաժարեաց:

ԳՐԻԳՈՐ. Կարի յօժարութեամբ պատրաստ եմ:

ՆԵՐՍԷՍ. Մարդկային բնութիւնս յանցանօք անարժան գտաւ Աստուծոյ շնորհացն. Քրիստոս վասն մեր անմեղ մեռաւ, և դարձեալ արձակեաց զայն շնորհ-

1 Ի միում օրին. Խաղաղութեամբ:

որն 'ի վերայ աշխարհի՝ հասարակաբար աղքատաց և մեծամեծաց ։ Արդ պարգև զներգործութիւն Հոգւոյն Քրիստոս իւր մահուն փոխանակ էառ, և մեզ ձրի շնորհ ետ զնոյն՝ յորժամ խնդրեմք հաւատովք ։ Արդ եթէ արծաթն էր որ զնոյնն գնէր , աղքատակիցքն Քրիստոսի զրկէին 'ի շնորհացն ․ բայց այս ոչ է ․ այլ տայր Պետրոս զշնորհսն Քրիստոսի զթողութիւն մեղաց և զՀոգին՝ աղքատաց և մեծատանց ձրի , թէ տային իւր զողորմութիւն՝ և թէ ոչ ։ Իսկ նոքա հաւատովք բերէին զողորմութիւն , որք նախ ընկալան զաստուածոյսն՝ 'ի պէտս եղբարցն իւրեանց աղքատացն ։ Սիմոն զայս հաւատս առ շնորհն Քրիստոսի ոչ ունէր , թէ նա մահու իւր պարգև առ զնոյն՝ և ձրի բաշխեաց աշխարհի ։ Այլն առ Պետրոս 'ի վաճառաշահութիւն , տալ զարծաթն և փոխանակ այնորիկ առնուլ զշնորհն՝ զոր ձրի ոչ հաւատայր առնուլ ։ Ասէ Պետրոս , Ես եմ որ զմահուամբ Քրիստոսի գնեալ հասարակաց շնորհս արծաթոյ վաճառեմ , 'ի բաց գնա անիրաւուղղ ճշմարտութեան ։ Արդ նոյն շնորհս դեռ ևս յաշխարհ փայլէ , զոր ետ մեզ Քրիստոս ձրի ․ և մեք քահանայք 'ի Պետրոսին գոլով վիճակ , և կրօնաւորքն որ ընդ մեօք , յաղքատացն որոց նա սպասաւորէր , և բաշխեմք ձրի յամենայն աւուր զթողութի մեղաց հասարակաց՝ մահուամբն Քրիստոսի՝ կենդանեաց և մեռելոց , աղքատաց և մեծատանց ։ Այլ ունին ամենեքեան զշնորհն Քնի 'ի ձեռն մեր նախ քան զիւրեանց տալն ․ զի միշտ կատարի պատարագն 'ի փառս Աստուծոյ՝ նոցա փրկանք՝ թէ տան և թէ ոչ ։ Իսկ եթէ յետ առնլոյն զայն , և միշտ առնլոյն զմնաս ածեն զՔրիստոսին , "Որչափ արարէք միում 'ի փոքրկանցս յայսցանէ՝ ինձ արարէք" ․ և այսու յուսով տան զողորմութիւն , շատ և բիւրապատիկ պարգևացն Քրիստոսի զնչինն՝ ընկալցուք սիրով ․ որպէս Պետրոս զայնոցիկ՝ որք վաճառէին զգեօղսն և դնէին առ ոտս նորա ։ Իսկ եթէ ոք զանձն արտաքոյ գիտէ շնորհիս , որպէս և Սիմոն , և արծաթով կամի զնոյն ստանալ կամ իւր և կամ մեռելոյ , որպէս թէ տալով զարծաթն՝ ապա վայելէ 'ի նոյնն , ինքն ընդ Սի-

1 Ի միում օրին ․ Հոգւոյն ․ պակասեն այլք ։

մինի դատապարտութեամբն գրաւի, և զմեզ 'ի շնորհաւ վաճառութեան պարտիսն ¹ կործանէ ։

ԳՐԻԳՈՐ. Հաւանական է բանդ ամենայն իրօք, բայց և ճշգրտել զնոյնդ կամիմ։

ՆԵՐՍԷՍ. Այս զինչ այլ սորին հաստատութեան խարիսխ տացուք որպէս զՊետրոս, այլ 'ի պէտս տգիտութեամբ թշուառացելոցն և յաւելցուք ։ Ո՞չ արարաք յԱստուծոյ ². ո՞չ ետ քեզ զաշխարհս 'ի վայելս. ո՞չ մեռաւ վասն քո Քրիստոս. ո՞չ խոստացաւ քեզ զանճառ բարիսն ։ Արդ ընկալեալ զայս ամենայն, քանի՞ թիւրս տաղանդոյ կարող ես կշռել նմին փոխարէն. յայտ է թէ զպարտութիւն խոստովանիս ։ Ապա զարթիր 'ի թմբրութենէդ, և միշտ զողորմութիւն առնելով 'ի ձեռն նորա յեկեղեցիս և յաղքատս, գիտեա զի դեռ ևս դու ես պարտական նախառելոցն, նա թէ և զանձն ևս տաս փոխարէն. զի նախ նա մեռաւ, և ապա դու ։ Ապա թէ զանձն պարտիս Աստուծոյ՝ որպէս գրէ Պօղոս առ Փիլիմոն, զողորմութիւն առնելով վիճակելոցն յաստիճանն Պօղոսի և խորհրդակցացն Քրիստոսի, նախ քան զքե՞զ տալ կարծես թշուառական մտօք՝ և 'ի նոցանէ փոխարինի համարս պահանջես. ո՞չ գիտես՝ թէ միշտ 'ի նոցա զուգական ձիրսն վայելես՝ և տալովդ և ոչ տալովդ ։

ԳՐԻԳՈՐ. Ուղիղ և աններհակ դաւանեցեր զճշմարտութիւն. սակայն ասեն՝ թէ զհամարն ոչ փոխարէն պահանջեմք, այլ որպէս զի պատարագն յայն աւուրս 'ի մեր անուն լիցի, և մեք առաւել գտցուք զողորմութիւն քան զայլ ննջեցեալսն ։

ՆԵՐՍԷՍ. Ո՜վ թշուառութեանս և յիմարութեամբ արբեալ մտածութեանս. Քրիստոս 'ի Հօր անուն մեռաւ, և նմա նուիրեաց զիւր մահ, և դու 'ի քո՞ անուն կամիս զնա սպանանել. ամենայն աշխարհի կեանս պարգևեաց, և դու 'ի քե՞զ միայն կամիս զշնորհ նորա քանակել. ո՞չ երկնչիս թէ և առ քեզ ասասցէ, "Ակն քո չար է, սակայն ես առատ եմ" ։

1 Յօրին. մերում Գարէժ ։

2 Թերևս, ո՞չ արարեր յԱստուծոյ, կամ թէ ոչ արարած ես յԱստուծոյ ։

Երկու օրին. ո՞չ արար Աստուծոյ, կամ յԱստուծոյ, և մի այլ արարած ։

ԳՐԻԳՈՐ . Ապա որպէս հաւատասցուք՝ եթէ մեք վասն ոգւոցն մերոց առաւել գտանեմք շնորհս 'ի պատարագէն՝ քան 'ի յոչ տալն ։

ՆԵՐՍԷՍ . Ոչինչ այլ այսմ բերցուք ուսուցիչ, բայց եթէ զնոյն ինքն զտէրն . " Որ արբուսցէ միում, ասէ, 'ի փոքրկանցս յայսցանէ բաժակ մի ջուր ցուրտ, ամէն ասեմ ձեզ ոչ կորուսցէ զվարձս իւր " . Նմին և 'ի զգալի իրաց առցուք ապացոյց ։ Ո՛ր օրինակ գետ՝ որ ընդարձակապէս հոսի ընդ հարթաձև դաշտ, և մարդիկ կամեցեալ առնուլ 'ի ջրոյ նորա, որ մեծ թակուկով երթայ՝ բազում առնու, և որ փոքու՝ սակաւ . այսպէս և խորհուրդ մահուս Քրիստոսի հասարակաց 'ի վայելս տարածի, և ըստ իւրաքանչիւր հաւատոցն ամանոց շնորհի մեզ, և ոչ ըստ ոգւոցն ։ Այլ զտուրս յեկեղեցի պտուղ հաւատոցն ծանիցուք և սիրոյն, զոր և առ մարդիկ է տեսանել . զի անկարօտ գոլով ոք և արտաքոյ աղքատութեան ախտի, զինչ ինչ պատարագ բարեկամին ընդունի՝ ոչ վասն կարօտութեան, այլ զսէրն դիտելով և այնու ճանաչելով ։ Այսպէս և Աստուած ընդունի զսէրն մեր տրօքն, և ոչ եթէ զտուրսն առանց սիրոյ . ըստ որում գրեաց Պօղոս . " Եթէ բաշխիցեմ զամենայն ինչս իմ աղքատաց, և մատնիցեմ զմարմինս իմ յայրումն, և սէր ոչ ունիցիմ՝ ոչինչ օգտիմ " ։

ԳՐԻԳՈՐ . Ապա իրաւունս դատես տալ զնուէրս պտղոցն յեկեղեցիս ամենեցուն, և ոչ համարս պատարագաց պահանջել . նաև նոցին յոչինչ հատուցանելն զայն մեղանչել ։

ՆԵՐՍԷՍ . Յայտնի և բազմապատիկ վկայութեամբ գրոց զայն հաստատեցաք՝ և ոչ անձամբ անձին, հաւանեալ տեառն՝ որ ասէ . " Ամենայն տունկ զոր ոչ տնկեաց հայրն իմ երկնաւոր, խլեսցի և ընկեսցի արտաքս " ։ Այլ զի ոչ է պարտ զայս առնել, 'ի պտղոյ գործոյն ծանիցուք . զի եկեղեցիս տուն վաճառու և տուր և առից եղև փոխանակ հոգևոր կարգացն ։ Այլ որպէս կրպակաւորն շահիցն աղագաւ զկրպակսն բազմացուցանէ, այսպէս և մեք վասն այս ախտի թուոց բազմութեն 'ի մի կրօնաստան¹ ծակոտեալ եկեղեցիս 'ի միմեանց

1 Մի օրէն . Կրօնաւորաքաղաքն ։

բաժանեցաք. և զՔրիստոսի խորհրդոց զօրութիւն տգիտացեալ՝ միայն վասն մեռելոցն զպատարագս վարկաք, 'ի կենդանեացս փրկանաց անհաւատք եղեալ. զմանկունս տգէտս և զանպատշաճս 'ի պէտս սորին քահանայութեան վիճակեցաք, որոց բարեկարգութիւն և ոչ զդպրութիւն վիճակէ. և սորին ագահութեան վասն զպէսպէս աստիճանս եկեղեցւոյ և Քրիստոսի խորհրդեանն զլացաք. յաշխարհականաց զյոյս և զհաւատս որ առ Աստուած բարձաք. և փոխանակ անախտութեան ախտաւորք յաչս նոցա գտաք. զի տեսանեն արծաթոյ փոխան և գին մեզ զՔրիստոս տուեալ, և ինքեանք վասն սորին տան զնոյն, և զգինս խնդրեն բազմապատիկս: Այս յայտնի և երևելի պտուղ մոլորութեանս. իսկ եթէ առ Աստուած որքան յանցանեմք այսպիսի շռայլութեամբ, ինձ անկար է ասել առաւելութեամբ թշնամանացս յաղթահարեալ:

ԳՐԻԳՈՐ. Եւ ինչ ունիմ առ ասացեալդ երկբայութիւն՝ տեսող գոլով պտղոյ խոտորնակ ընթացից, որպէս և ասացեր. սակայն ոչ ինչ դանդաղիմ և զոր առ կրօնաւորս կրի այսորիկ վասն ախտ՝ 'ի մէջ առնուլ:

ՆԵՐՍԷՍ. Ասա ճշգրտիւ. քանզի յոյժ տեսանեմ զքեզ 'ի վերայ սորին վշտացեալ:

ԳՐԻԳՈՐ. Սահման է 'ի մէջ նոցա՝ յետ վախճանին երիս քառասունս կատարել զեղբօրն յիշատակ պատարագաւն:

ՆԵՐՍԷՍ. Եւ զի՞նչ հաւատան շնորհ լինել մեռելոյն 'ի պատարագէն:

ԳՐԻԳՈՐ. Ո ինչ այլ, բայց եթէ թողութիւն մեղաց, զայս զմտաւ ածեալ՝ եթէ մի մահն Քրիստոսի զամենայն աշխարհ 'ի ծառայութենէ մեղացն ազատեաց, քանի՞ն առաւել յորժամ բազմապատիկ և զերիս քառասունս մեռանի վասն միոյ մեռելոյ. եթէ 'ի ներքին սանդարամետս դժոխոցն իցէ, 'ի վեր ածիցէ:

ՆԵՐՍԷՍ. Ո՛վ տգիտութեանս և ամենևին անբանութեանս[1]. և բազմապատիկ մահք Քրիստոսի. ապա եղիցին և բազում Քրիստոսք ըստ իւրաքանչիւր մահուցն. նաև ո՞ր դիցուք զառաքելոյ ասելն, թէ "Ա

1 Ի միում օրին. անբան գիտութեն:

մի անգամ՝ 'ի վախճան յաւիտենից իւրով պատարա-
գաւն յայտնեալ է, և սրբեսցէ զխիղճ մտաց ոչ զմեռե-
լոցն՝ այլ զկենդանեացդ 'ի մեռելոտի գործոց անտի՝ պաշ-
տել զԱստուած կենդանի ,,: Այլ զի ասէն՝ թէ մահն
Քրիստոսի զաշխարհ փրկեաց. հարցանեմ, զո՞րս փր-
կեաց, զմեռեալս թէ զկենդանիս. և զկենդանիսն զա-
մենեսեա՞ն եթէ զորս հաւատացին և ընդ նմա մեռան:
Եթէ ամենեցուն էր փրկանք՝ այնքան բիւրք հեթա-
նոսացն անհաւատիցն ո՞ր աղագաւ փրկութեանն գտան
արտաքոյ. յայտ է թէ զի վասն ոչ հաւատալոյն: Ապա
թէ անհաւատ ես, յաստուածակոյս կողմանէն արձակ
է փրկութիւնն, իսկ դու անձամբ զանձն 'ի նմանէ
զրկես. իսկ եթէ հաւատացեր, զի՞նչ է հաւատոյդ ու-
սուցիչ, բայց եթէ կատարումն պատուիրանին. "Որ
սիրէ զիս, ասէ, զպատուիրանս իմ պահեսցէ ,,: Այլ
եթէ կատարեցեր զպատուիրանն, վայելեցեր 'ի շնորհս
նորա կենօք և յետ մահու. իսկ եթէ առ այն հեղ-
գացար մինչև 'ի մահ, զի՞արդ հաւատաս յետ մահու
թողութեան, գնացեալ յընդունելութեան օրէս և 'ի
փրկութեան ժամանակէս[1], ըստ որում գրէ խորհր-
դոցն Քրիստոսի հազարապետն. "Այս է ժամանակ
ընդունելի և այս է օր փրկութեան ,,, և ոչ եթէ այն:
Այլ նոյն դարձեալ. "Լուծանել և ընդ Քրիստոսի լինել լաւ
համարիմ ,,, բայց զկեանս մարմնոյ պտուղ գործոյ ունիմ:
Ոչ երբէք նա տգիտացա՞ւ 'ի մերս իմաստութենէ, որք
յետ մահու կարծեմք բարեգործել և թողութիւն գտա-
նել, որ աղաղակէ դարձեալ. "Իւրաքանչիւր ոք զայն
գտանէ զոր իւրով մարմնովն գործեաց՝ եթէ բարի և
եթէ չար ,,: Ուրացեալ են այսպիսիքն և զողորմածին
Աբրահամու՝ մեծատանն յետ մահու զանողորմութիւն,
և զի՞ւր տեառն զյիմար կուսիցն անտես առնել զարտա-
սուսն, և աղաղակել մեծաբարբառ՝ եթէ ոչ գիտեմ
զձեզ: Ստանայի ամենայն իրօք կարծեմ զայս սերմն,
որ ջանայ զայնպիսիսն անպտուղ յաշխատութենէ ա-
ռաքինութեան առնել. զի որ յետ մահու թողութեան
մեղաց յոյս ունիցի, զկեանս մարմնոյն էր վասն 'ի ձր-
ցունս մատնէ. և որ հաւատայ թէ ստացուածոցս զոր

1 Յօրին. միում գնացեալ 'ի փրկութեան օրէս և յընդունելի ժամանակէս:

ժողովեալ եմ, յետ մահու ողորմութիւնն ընդունելի է, կենօք էր վասն զնոյնն վաստնէ, և զցանկութիւն զընչասիրութեանն քաղցեալ պահէ :

Այլ ահա այս կարծիք եղծ և յերկիր կործանեաց զամենայն խորհուրդս քրիստոնէից, և 'ի դերև արար զմահն Քրիստոսի և զուսումն վարդապետութեան առաքելոցն և նոցին հետևողացն, որք զայս յոյս ամենևին բարձին, և խրատեցին՝ ջանալ մինչդեռ այսօրդ առաջի կայ, և անդ հռչակեցին ոչ լինել ողորմութիւն, այլ իւրաքանչիւր գործոց հատուցումն : Այլ թէ յետ մահու թողութիւն մեղաց, էր վասն կրօնաւորիս, ազաս, արտասուես, տառապիս ճգնութեամբ. կեր, արբ և ուրախ լեր. և յորժամ մեռանիս, զոր ոչ կարացեր ուտել և ըմպել՝ տուր վասն պատարագի, զի 'ի հետ ոչ կարես տանել, և արդարացիր : Ապա որպէս կարծեմք, բազումք 'ի կրօնաւորաց այսու յուսով անփոյթ արարեալ զկրօնաւորութիւն՝ գործեն և ժողովեն զարծաթ, որպէս զի յետ մահու պատարագաւս արդարասցին : Առ որս ասասցուք, մոլորեալ էք ոչ գիտելով զգիրս և ոչ զզօրութիւն Աստուծոյ. կամաւ կափուցանէք զաչս առ լոյս գիտութեանն, և 'ի բարուրս հեշտանայք. չէ բազում մահ Քրիստոսի ըստ թուոյ աւուրցդ, որպէս կարծէք, և ոչ հատեալ գիշերատիւ[1] : Աստուծոյ օր է, առ որ ոչ մերձենայ խաւար. այլ այս բովանդակ կեանքս մի օր է նմա համարեալ, ըստ որում գրէ Պօղոս. "Մինչդեռ այս օրդ առաջի կայ" : Յայս 'ի մի օրս եկն Քրիստոս և մեռաւ վասն մերոյ փրկութեան առաջի Նօր, և դեռ ևս մեռեալ է նմա համարեալ. զորոյ գիտութիւն ոչ հնութիւն ժամանակի աղօտացուցանէ : Այլ մեք իւրաքանչիւր ազգ որ ծնանիմք յաշխարհ, զմի մահու խորհուրդ նմին 'ի յուշ ածեմք. և առ մերս մտածութիւն նորոգելով զնոյն հաւատ և գիտութիւն՝ գիտել Աստուծոյ ասեմք, և գտանեմք 'ի նմանէ ողորմութիւն վասն սորա :

Սուրբ է խորհուրդս Աստուծոյ, և իմաստուն և մաքուր մտաց կարօտի. ապա թէ ըստ ձեր պարզմտութեանդ քառասներով նոր 'ի նորոյ Քրիստոս մեռանի,

1 Ի Մեծում օրին. Գիշերաս փէ :

եղիցին բազում Քրիստոսք ։ Նաև այլ Քրիստոս հռոմոց յիւրեանց աշխարհն, և Փռանգաց յիւրեանցն, և մեզ 'ի մերն. զի և զայս կարծեն՝ որք զազգաց քրիստոնէից պատարագս անկատար կարծեն ։ Բայց ոչ է ճշմարտութի այսպէս. "Այլ մեզ մի է Քրիստոս, և մի մահ նորա 'ի վախճան յաւիտեանցս", ասաց Պօղոս ։ Եւ միոյ մահուն յիշատակ, որչափ այս օրս առաջի կայ, սրբէ զխիղճ մտաց մերձեցելոցս հաւատով և սրբութեամբ, և ոչ եթէ զմեռելոցն ։ Մի և եկեղեցի նորա ընդ ծագս տիեզերաց բազմութիւն ազգաց, որք յայս խորհուրդ ճոխանան. և թէպէտ ասէ ձեռն ցոտն՝ թէ չես 'ի մարմնոյ աստի, կամ ակն ցունկն՝ թէ չես ինձ պիտոյ, ոչ եթէ այնու քակտին անդամքն 'ի միմեանց՝ որք 'ի մի գլուխն Քրիստոս պատկանեցան, և 'ի նորայն հաճութիւն և դատաստան յուսան, յորոյ և 'ի շնորհն հասարակաբար վայելեն և վայելեսցեն ։

ԳՐԻԳՈՐ. Ունեայ զասացեալս հաստատութեամբ մի գոլ զմահն Քրիստոսի, և զմեզ օր ըստ օրէ նմին յիշատակի[1] նորոգիչք. արդ խնդրեմ ուսանել թէ ամենևին անյոյս են մեռեալքն 'ի փրկութէ յետ մահու ։

ՆԵՐՍԷՍ. Եւ ուստ՞ յոյս նոցա թողութեան. բեր 'ի գրոց, և հաւանեցայց ։

ԳՐԻԳՈՐ. Ոչ կարեմ ։ Բայց ապա ո՞ր աղագաւ նոցին հանգստեան վասն աղօթել ուսաք, և 'ի պատարագն զնոյն խնդրել ։

ՆԵՐՍԷՍ. Բեր զգիրս առաքելականս այսորիկ վկայ որ հրամայէ զայս մեզ ։

ԳՐԻԳՈՐ. Ոչ գտանեմ. զի թէպէտ և գրէ Յովհաննէս, "Եթէ ոք տեսցէ զեղբայր իւր մեղուցեալ՝ խնդրեսցէ և թողցի նմա". և Յակովբոս, "Յոյժ զօրաւոր են աղօթք արդարոց յօգնականութիւն", կենդանեաց վասն ասէն, և ոչ մեռելոց, զորոյ կցորդութիւնն ապաշխարութեան 'ի ձեռն ունիցի աղօթողն[2] ։

1 Մի օրէն. Ցէշտոռքէնչ. և պակասէ Նորոգիչք ։

2 Այս ձև բանից ընդդէմ այնոցիկ կարգեալ է՝ որք անփոյթ առնեն զվարուց ուղղութենէ, և զամենայն յոյս իւրեանց եդեալ են յաղօթս այլոց յետ իւրեանց մահուն, և 'ի պատարագն. և ոչ խորհին՝ թէ աղօթք և պատարագք օգտեն միայն այնոցիկ 'ի ննջեցելոց՝ որք ուղիղ հաւատով և բարի վարուք ննջեցին 'ի Քրիստոս՝ հանգերձ ճշմարիտ զղջմամբ 'ի վերայ մեղացն գործելոց ։

ՆԵՐՍԷՍ. Այդպէս է, ըստ որում ասացերդ, ճըշմարտապէս. բայց և այս սովորութիւն վասն մեռելոց աղօթելոյ ոչ է արտաքոյ եկեղեցական աւանդութեան, այլ 'ի սրբոցն առ մեզ իջեալ: Այլ թէ ո՞ր աղագաւ, ասացից, որպէս կարծեմ:

ԳՐԻԳՈՐ. Կարօտիմ ուսանել:

ՆԵՐՍԷՍ. Սուրբն և մեծն Աթանաս գրէ 'ի վարս երանելոյն Անտոնի, թէ երբեմն զինն ժամու աղօթսն կատարելով ծերոյն յափշտակեցաւ մինչև յօդս, և յընթացսն տեսանէր զգունդս գունդս դիւաց ընդդառաջ եկեալ նմա, և չար թունօք ժպրհել պատճառս մեղանաց զմանկութեանն 'ի վերայ նորա բարբառել. և ձայն եղև յերկնից, "Զայն ևթող նմա Աստուած. զմիայնակեցութեան ընթացսն քննեա, թէ ինչ 'ի քոյոցն գըտցես 'ի նմա". և նա ափ 'ի բերան եղև ամենևին, և զերծաւ երանելին 'ի մեղսասէր ձեռացն:

Այն դարձեալ հայրն տեսանէր երկայն զոմն մինչև յօդս, և զձեռս տարածեալ՝ զհոգիս մարդկան որք վերանային՝ ըմբռնէր, և զորս ոչ կարէր ըմբռնել՝ կըրճտէր 'ի վերայ նոցա զատամունս: Արդ զայսպիսի մարտ պատերազմի որ յօդս նորա ընդ հոգիս ծանուցեալ, աւանդեցին աղօթիւք օգնել ննջեցելոցն մեզ յընթացս նորա՝ յետ վախճանին, զի զերծցին 'ի չար հրեշտակացն որպէս աղօթեաց Յովհաննէս. "Ի գալս իմում առ քեզ տէր Յիսուս յամօթ լիցին հրեշտակք չարին, սատանայ պարտեսցի, բանսարկուն պապանձեսցի": Վասն այսր նեղութեան նոցա, յորմէ և ամենայն սուրբքըն զգուշացան, տամք զաղօթս մեր նոցա օժանդակ, և ոչ որպէս կարծիքն է ոմանց՝ թողութեան մեղաց հաւատամք մեք լինել ննջեցելոցն. և ոչ զայն ուսաք 'ի սրբոցն խնդրել. քանզի ոչ լիցի, և ընդդէմ է այսպիսի աղօթքս կամացն Աստուծոյ[1], որպէս գրեաց սուրբն Դիոնեսիոս: Այլ զի՞նչ, հանգիստ խնդրեմք. և ամենայն աղօթք՝ նոցա հանգստեան վասն է սահմանած,

1 Եւ այս բանք են ընդդէմ այնոցիկ որ անհոգ վարեն կեանս՝ ապաւինելով յօժանդակութիւնս յետ մահուան. քանզի և առ արժանի լինելոյ այդոցիկ՝ պիտոյ է ըստ Աստուծոյ կեալ, և 'ի շնորհս Աստուծոյ մեռանել. ապա թէ ոչ՝ որ ոչ կամեցաւ զանձին փրկութիւն՝ ոչ ինչ օգտի այլուստ:

և ոչ թողութեան․ այսինքն թէ զորս վարուքն իւրեանց և կենօքն աշխատեցան՝ զերծո՛ ՚ի դիւային պատերազմացն որք յօդս են, և հանեալ ՚ի խաւարային իշխանութեանցն՝ ընդ սուրբս քո պայծառացո․ որոց խոստացար և խնդրեցեր և ասացեր, թէ " Կամիմ զի ուր եմն իցեմ, և սոքա ընդ իս իցեն ", և քո կամքդ գործ է կատարեալ․ և այսմ ապացոյց առցուք ՚ի մարմնական իրաց․ զոր օրինակ ոք առաջի արդարադատ թագաւորի ընդ թշնամւոյ և ընդ ոսոխի յիրաւունս մտանէ, թէպէտ և ունի գործոց իւրոց արդարանալ և վստահ է ՚ի նոյնն, սակայն երկնչի ՚ի չարաթոյն[1] ոսոխէն և յանաչառ կամաց թագաւորին, և ակնարկէ որոց մերձ են յարքայն՝ օգնել իւր․ արդ սոցա օգնելն ներգործէ՝ զիւր ուղղութիւնն ունելով նիւթ ։

Արդ մեռեալ մեր՝ ընթանամք ընդ այնպիսի թըշնամւոյ յիրաւունս, յորմէ և Յովհաննէս ամենամաքուրն խնդրէր զերծանել․ և յԱնտոնի վերայ պատճառս բաղբաղէր ։ Եւս կենօք պարտիմք մահու չափ գունն գործել յապաշխարութիւն առաքինութեան, և ապա յետ մահու զաղօթս եղբարց մերոց առաջի պատարագին Քրիստոսի խնդրել հաւատով օժանդակ․ որպէս և սուրբքն որ խնդրեցին, զնոյն և արարին․ և ոչ զՔրիստոս պատարագել վասն միոյ հոգւոյ[2]: Այլ զի հարկաւորապէս պատարագի Քրիստոս, խնդրել[3] ընդ բազմացն և նմա զերծումն ՚ի դիւաց՝ և հանգիստ ՚ի փառս ։ Այլքան օգտեցուցանեմք աղօթիւք մեր զմեռեալն ըստ ճշմարտութեանն, անկարացեալ՝ յորժամ ինքն ոչ աշխատեցաւ՝ մեր զոք ՚ի դժոխոցն զերծուցանել կամ փրկել․ այլ յորժամ ըստ պատուիրանին արար զընթացսն քաղաքավարութեանն, ընդունի Աստուած զաղօթս մեր օժանդակ նմին ըստ չափոյ հաւատոց մերոց ։

1 Մի օրին․ Չորագոյն ։

2 Այսինքն՝ ոչ է պարտ այնպէս դնել ՚ի միտ, թէ ՚ի պատարագել վասն միոյ հոգւոյ՝ այլում ումեք ոչ հասանէ անտի նպաստ, կամ հոգին այն հարկաւ ազատի, այլ թէ արժանի իցէ նա, այցելութիւանէ նմա Աստուած որպէս և գիտէ, զօրութեամբ պատարագին և աղօթից եկեղեցւոյ և վասն լաւութեան նախընթաց վարուց անձին ։

3 Պակասէ յօրինակի միում Հաստատ Հաւատով օժանդակ մինչև ՚ի Քրիստոս խնդրել ։

ԳՐԻԳՈՐ. Ուսայ խորհուրդս գովելի և հաւանական. բայց կամիմ և զայն ուսանել՝ զքառասնի աւուրցն թիւ յիշատակի ։

ՆԵՐՍԷՍ. Ագահութեան ախտի ծառայելով մոլորեցան 'ի ճշմարտութենէն բազումք. քանզի զքառասունսն թուել իրաւացի էր, ոչ ըստ համարոյ պատարագացն, այլ ըստ աւուրցն՝ յօրէ յորմէ վախճանեցաւ մինչև 'ի քառասներորդն յիշատակել զնա յաղօթս, և ոչ այլ առաւելուլ երիցս և չորիցս և բազմապատիկս. և այսմ կարծեացս սկիզբն թուի ինձ 'ի հնոցն ունել. քանզի "Ելաց, ասէ, ամենայն Իսրայէլ զԱհարոն աւուրս երեսուն„։ Արդ փոխանակ նոցա լալոյն՝ մեք զաղօթեսն առնեմք, պայծառացեալ յուսով յարութեան 'ի վերայ եղբարցն՝ սկսեալ 'ի վախճանէն զայն աւուրս օժանդակեմք նմին յառաջիկայ ճանապարհն ։

ԳՐԻԳՈՐ. Ապա որպէս կարծեմ, անպատշաճ դնես զառանձինն առանձինն եկեղեցիս, և 'ի սակաւ աւուրս զթիւ քառասնիցն լցուցանել ։

ՆԵՐՍԷՍ. Ամենևին իսկ, նաև զբազմապատիկ քառասունսն, զոր դնեն տուրևառիկքն. որպէս ընդարձակագոյնս լուծաք 'ի բանսն զայսպիսի կարծիս ։

ԳՐԻԳՈՐ. Ապա ո՞րպէս կալցուք զայսպիսի սովորութիւն աշակերտեալք ճշմարտութեանն ։

ՆԵՐՍԷՍ. Ըստ որում վերագոյնն ասացի, ոչ զՔրիստոս վասն մեր պատարագել, այլ զի պատարագի Քրիստոս վասն մեր իւրով աստուածեղէն կամօքն միշտ յայսըմ յաւիտենիս, յորժամ մեռանի ոք 'ի մէնջ՝ խնդրել 'ի պատարագն Քրիստոսի աղօթիւք զհանգիստ զաւուրս քառասունն ամենայն եղբարցն, և ոչ զթիւս. զի բազմացն աղօթքն մի է 'ի նոյն օրն, և ոչ բաժանի և 'ի քանակութիւն փայտի պարփակի. և թէ այլ ոք հուպ ընդ առաջնումն վախճանի, ընդ նմին և զնորա յիշատակն բերել, և ոչ թերութիւն վարկանել յիմարեալ մտօք ։

ԳՐԻԳՈՐ. Իսկ զնուէրս տրոց աշխարհականաց ո՞րպէս ընկալցուք ։

ՆԵՐՍԷՍ. Միանգամայն ասեմ, թէ բիւրաւորս և հազարաւորս տայցեն Աստուծոյ 'ի ձեռս մեր պտուղս,

1 Ի միում օրին. Յաւելու ։

ոչ ընաւ զմեզ պարտական արարին. այլ ինքեանք պարտական գոլով Աստուծոյ՝ նմին հատուցին զսականս, և առ նա ակն կալցին փոխարինին, և ոչ 'ի ձեռս մեր, որ ասաց. «Որչափ արարէք միում եղբարց իմոց, ինձ արարէք»: Այլ մեր ընկալեալ զնոյն երկեղածութեամբ 'ի լրումն պիտոյից՝ և ոչ ախտիւ ագահութեան, արժանի դատեսցուք զմշակն կերակրոյ իւրոյ, և ազատ մտօք 'ի նոյն վայելեսցուք:

ԳՐԻԳՈՐ. Ապա թէ ասեն, ոչ տամք ողորմութիւն՝ այլ 'ի պէտս պատարագացն, եթէ արժան է առնուլ:

ՆԵՐՍԷՍ. Եթէ մինչև ցայն ոչ պատարագեալքն, և նորա վասն շարժիմք 'ի նոյն՝ մեղանչեմք 'ի յառնուլն. իսկ եթէ պատարագն ամենայն իրօք լինի 'ի փառս Աստուծոյ, և նա տայ, նորին վասն զայն առեալ՝ լցուսցուք զպէտս եղբարցն. և նմա Աստուած պատարագամն ըստ իւրում հաւատոցն հատուսցէ. և այնուհետև կցորդ է խնդրուածոցն՝ զոր առնեմք 'ի պատարագն, «Յիշեա տէր և օրհնեա զպտղաբերիչս եկեղեցւոյ քում սրբոյ»:

ԳՐԻԳՈՐ. Իսկ 'ի թիւ և 'ի համար ըստ չափոյ տուրցն զպատարագն ո՞չ է պարտ արկանել:

ՆԵՐՍԷՍ. Ոչ և ամենևին ոչ. և դարձեալ ասեմ՝ ոչ. զի մի՛ շնորհավաճառ լիցուք, որ հրամանս առաք ձրի առնուլ և ձրի տալ, ինքն Քրիստոս գլխովին հրամայեաց. և զի՞նչ այլ ձրի առնուլն և ձրի տալ, եթէ ոչ այս, զի մի՛ թուեսցուք պարտապան գոլ և 'ի հատուցմանն փութալ տգիտութեամբ, որք միշտ հատուցանեմք զԱստուծոյն տալով, և ոչ զմերն. և յԱստուծոյ առնուլ պարտիմք և ոչ 'ի մարդկանէ: Այսպիսի հայրենի աւանդութեանս հետևեալ պայծառապէս փայլեցուսցուք զփառս Քրիստոսի Աստուծոյ մերոյ 'ի գործս մեր՝ և զՀօրն նորա Հոգւոյն սրբով, որ է օրհնեալ յաւիտեանս. ամէն:

1 Մի օրին. Հաստատեմ:

## ՈՐՈՇՄՈՒՄՆ ԻՆՆ ԴԱՍՈՒՑ ԱՍՏԻՃԱՆԱՑ ԵԿԵՂԵՑՒՈՅ

### ԵՒ ՅԱՏԿՈՒԹԻՒՆ ԳՈՐԾԱՌՆՈՒԹԵԱՆՑ ՆՈՑԱ, ԵՒ ԶԳԵՍՏՈՒՑՆ. ԸՆԴ ՈՐՍ ԵՒ ԸՆԴԻՄԱԴՐՈՒԹԻՒՆ ԱՅՍՈՑԻԿ ԽՈՐՀՐԴՈՑ ՈՒՆԱՅՆԱՑՈՒՑԱՆՈՂԱՑ։

ԵԿԵՂԵՑԻ քրիստոնէից առաքելական խօսիւք հարսնացեալ երկնաւոր փեսային իւրոյ Քրիստոսի՝ յօրինեաց զսենեակ իւր պէսպէս սպասաւորաց պատմուճանօք՝ [1] ՚ի պատիւ և ՚ի փառս արքային իւրում Քրիստոսի։ Այս զոր օրինակ խօսեալ ոք ՚ի հարսնութիւն որդւոյ թագաւորի՝ հարկաւորապէս նման թագաւորական ապարանիցն պաճուճէ զառագաստ իւր, այսպէս և սա խօսեալ երկնաւոր արքային որդւոյ, և սպասեալ մտանել յառագաստ նորա, այժմ ՚ի դասակարգութիւն համեմատութեան երկնաւոր քահանայապետութեանցն ուղղեաց զկանոն և զաստիճան պաշտօնէից իւրոց. քանզի նոքա՝ որպէս այնորիկ խորհրդազգացքն պատմեցին մեզ, ոմանք անընդմիջաբար են շուրջ զԱստուծով, այս ինքն աթոռքն անուանեալ և քերովբէից և սերովբէից դասակարգութիւնքն, որոց համատիպք են արքեպիսկոպոսք՝ եպիսկոպոսք և քահանայք. և այլք յետ նոցա՝ տէրութիւնք, զօրութիւնք, իշխանութիւնք, զորս գաղափարեն սարկաւագք և կէս սարկաւագք և սաղմոսերգուք. երրորդ դաս ՚ի նոսա՝ պետութիւնք, հրեշտակապետք, հրեշտակք, որոց ապացոյց են կրօնաւորք, ժողովուրդք և երախայք. որպէս զի լիցի և աստ ինն դասակարգութիւն պաշտօնէից Աստուծոյ՝ զանազան պատուովք և իշխանութեամբք։ Բայց դու տես ինձ և այլ ճշգրտութիւն՝ [2] իմաստից, զի որպէս նոքա առաջինքն երեք կարգն, և նախապատիւ դասն թէպէտ ունին ինչ զանազանութիւն անուանց, սակայն հաւասարապատիւ գոլով անընդմիջաբար են շուրջ զԱստուծով, և ՚ի նորա

1 Յօրին. միում պաճուճանօք։ 2 Մի օրին. Ճշմարտութիւն։

լուսափայլութիւնն վայելեն, և երկատեսակ քննութիւն յերկրորդումն մատակարարեն զնոյնն։

Նոյնպէս և այս երեք կարգս արքեպիսկոպոսաց, եպիսկոպոսաց և քահանայից թէպէտ և անուամբ զանազանին 'ի միմեանց, բայց սակայն 'ի մի դաս և յիշխանութիւն պատուոյ են՝ կալ շուրջ զԱստուծով անընդմիջաբար, այսինքն զսրբով սեղանովն, յորում տարրացեալ զօրութիւնն Աստուծոյ, և վայելել համարձակաբար 'ի կատարողութիւն խորհրդոյ սրբոյ պատարագին և 'ի մտաւորական գիտութիւնն Աստուծոյ՝ մատակարարեն զնոյն յերկրորդումն որ զկնի իւրեանց՝ 'ի դասս պաշտօնէիցն։ Իսկ նոքա ունելով զմիջնորդն աստուածատեսակութեան բեմին՝ ոչ ունին համարձակութիւն կամ պատիւ հայել անընդմիջաբար յԱստուած, այլ 'ի նախադաս կարգէն ընկալեալ զնոյն լուսափայլութիւն բարերարապէս՝ ոչ յաչաղեն պահել զնոյնն առ իւրեանս, այլ հեղուն զսրբազան գիտութիւնն յերրորդն՝ որ ընդ ինքեամբ է դասակարգութիւն ժողովրդոցն. սարկաւագն զվարդապետութիւն քարոզութեանն հռչակեցուցանելով առ նոսա, կէս սարկաւագն զաստուածաշունչ գրոց ընթերցողութիւն, երգեցողն զսաղմոսացն քաղցրաձայնութիւն։ Իսկ նոցա ընկալեալ, որք մի են դասով և զանազան պատուովս, բարեվայելչապէս 'ի նոյն վայելեն, և առ ինքեանս քանակեալ սահմանեն՝ ոչ ունելով պատիւ կամ իշխանութիւն առ այլս զնոյն իջուցանել, բայց եթէ ինքեանց նովաւ պայծառանալ։ Զայս գիտելով խորհրդոցն Քրիստոսի քահանայագործողն Պօղոս՝ յերիս մասունս զսոսա որոշեաց, ասելով. « Զորս եդ Աստուած յեկեղեցւոջ, այս են. նախ զառաքեալս՝ որք են եպիսկոպոսք, երկրորդ զմարգարէս՝ որք են քահանայք, երրորդ զվարդապետս՝ որք են սարկաւագքն »։ Բայց ոչ ինչ վայրապար կարծեմ առնուլ զսոսա ըստ կարգի պատուոցն և աստիճանի, և զիւրաքանչիւրոցն խորհրդական զգեստ, և գործառնութիւն ցուցանել. զոր այժմ աղօտացեալ ամենևին 'ի մէնջ տեսանեմ, թերևս 'ի ձեռն այսր գոնեայ տեղի տացուք ճշմարտութեանն, և ոչ ընդ խաբս գնալով՝ լիցուք ներհակ նմին զինուորք և արհամարհիչք։

Արդ առաջին աստիճան է յեկեղեցի դաս պա-

տրիարգաց, որ թարգմանին առաջին հարք, այսինքն հայրապետք. և նստին նոքա ընդ տիեզերս 'ի չորս մայրաքաղաքաց չորս աթոռսն, ուր աւետարանիչքն գրեցին զաւետարանսն: Այս վասն զի նախ Մատթէոս գրեաց յԱնտիոք, պատրիարգն Անտիոքու զնախապատուութիւն ունի քան զայլսն. իսկ յետ նորա Մարկոս յԱղեքսանդրիայ, յաջորդ նորա պատրիարգն յետ սորա դասակարգեցաւ. և Ղուկաս 'ի Հռովմ գրեաց. որ Հռոմայն է՝ ըստ կարգի երրորդ էր պատուով, թէպէտ և զօրութեամբ առաջին. այլ Յովհաննէս հուսկ յետոյ յԱփեսոս գրեաց. որ նորայն եղև պատրիարգ, վերջին էր աթոռով քան զերիսն: Այս կարգաւորութեամբ վարեցաւ եկեղեցի տիեզերաց մինչև 'ի ժամանակս Յուստինիանոսի թագաւորի, ըստ չորս աւետարանչացն ընդ չորս բաժանեցաւ աշխարհ յիշխանութիւն չորից հայրապետացն. բայց Յուստինիանոս իբրև թագաւորեաց, կամ եղև նմա փոխել զաթոռ սրբոյն Յովհաննու յԱփեսոսէ 'ի Կոստանդինուպօլիս, և հաւանեցուցեալ զժողով եպիսկոպոսացն կատարեաց զնոյնն: Այլ Յուստինիանոս դարձեալ փոխեաց զաթոռն Մարկոսի յԱղեքսանդրէ յԵրուսաղէմ. քանզի մինչև 'ի սորա ժամանակն՝ Կոստանդինուպօլսի և Երուսաղեմի եպիսկոպոսք՝ ինքնագլուխք միայն էին, այսինքն ոչ ինքեանք ընդ այլովք և ոչ այլք ընդ նոքօք. Կոստանդինուպօլսին վասն թագաւորեալ քաղաքին, և Երուսաղեմին՝ վասն զի քաղաք է երկնաւոր թագաւորին. ըստ այսմ և 'ի Նիկիայ ժողովըն սահմանս գտցես:

Արդ ահա ասացաք զառաջին դաս եկեղեցւոյ՝ որ են հայրապետք, և կոչին յունարէն պատրիարգք. սոքա ունին զգեստ զառաքելականն, որ եմիփորոնն է հինգ կրկին՝ հինգ կրկին խաչիւք զարդարեալ. իսկ նափորտ զգենու բազմախաչ, 'ի վերոյ[1] որոյ արկանէ զպատուական եմիփորոնն: Այս գործ և իշխանութիւն է պատրիարգին ձեռնադրել զարքեպիսկոպոսս, որք են ընդ իւր վիճակաւ. և 'ի չորս բաժին տիեզերաց նոքա տան հրաման վասն ժողով լինելոյ:

Երկրորդ դաս աստիճանի եկեղեցւոյ են արքեպիս-

1 Մի օրին. Ի վերայ:

կոպոսք, որ Թարգմանին եպիսկոպոսապետք կամ առա-ջին եպիսկոպոսք. և զգեստ է նոցա նոյն նափորտն բազ-մախաչ, և 'ի վերայ եմիփորոն չորեքկլին. և գործ է նո-ցա ձեռնադրել զմետրապօլիտս, և օրհնել զմեռոնն սուրբ. և երեք արքեպիսկոպոսքն ունին իշխանութիւն ձեռնադրել զպատրիարգն իւրեանց: Ի սոյն աստիճան են կաթողիկոսք, որ Թարգմանին ընդհանրականք. բայց ունին առաւելութիւն պատուոյ քան զարքեպիս-կոպոս, զայս՝ զի ոչ եթէ յիւր վիճակն միայն, այլ ընդ-ամենայն տեղիս՝ ուր ազգքն իւր և համացեղքն են, ունի իշխանութիւն ձեռնադրել նոցա եպիսկոպոսս և տալ զմիւռոնն, վասն այնորիկ անուանի և Կաթողի-կոս:

Երիր դաս աստիճանի եկեղեցւոյ մետրապօլիտք, որ Թարգմանին մայրաքաղաքացիք, և զգենուն նափորտ միայն՝ առանց խաչի, և 'ի վերայ եմիփորոն երեք կրկլին. և գործ է նոցա ձեռնադրել եպիսկոպոսս, և օրհնել զմիւ-ռոնն՝ արկանելով 'ի նա զպատրիարգական միւռոնն, զոր պահէ եկեղեցի յաւելուածով, և երեք մետրապօլիտ ունին իշխանութիւն ձեռնադրել զարքեպիսկոպոսս իւրեանց, սակայն 'ի նախապատիւ պատրիարգէն պար-տի առնուլ զօրհնութիւն՝ սոցա հաճութեամբ և վկայ-ութեամբ:

Չորրորդ դաս աստիճանի եկեղեցւոյ եպիսկոպոսք՝ որ Թարգմանին այցելուք կամ տեսուչք [1], և զգենուն զնա-փորտն, և 'ի վերայ եմիփորոն կրկլին միայն. և գործ է նոցա ձեռնադրել զամենայն վիճակաւորս, և զսեղանն օր-հնել և զխաչ և զաւազան և զիւղն օծութեան. մինչև յայս է եպիսկոպոսի իշխանութիւն:

Հինգերորդ դաս աստիճանի եկեղեցւոյ երեփոխնք և պապայք, որ Թարգմանին քահանայք և երիցունք. քահանայք 'ի քաղաքս լինին, և երիցունք 'ի գեւղս և յագարակս. մի են երկոքեան, բայց յաղագս պատուո-ցըն՝ անուամբ զանազանին. և զգեստ է նոցա նափորտն միայն առանց եմիփորոնի, զի սոքա ուրար միայն արկա-նեն զերկոսին ուսովքն. և գործ է նոցա պատարագ-մատուցանել, և բաշխել զնոյն ժողովրդեանն, մկրտու-

1 Յօրէն. միումփէնոգէ:

թիւն առնել, և աղօթս մատուցանել, և խաղաղութիւն տալ ժողովրդեանն, առաջնորդել և զմեղս թողուլ. և ոչ յայլ ինչ համարձակել, այսինքն ոչ օրհնել սեղան և ոչ վիճակել զոք աստիճանի. զի այս եպիսկոպոսին պատիւ է և իշխանութիւն:

Վեցերորդ դաս եկեղեցւոյ՝ դիակոնք, որ թարգմանին սպասաւորք, այսինքն սարկաւագունք. և զգեստ է նոցա պատմուճան հոլանի առանց գօտւոյ, և ուրար արկանեն զահեակ ուսովքն միայն. և գործ է նոցա հրամանաւ քահանային աւետարան կարդալ, և քարոզել և վարդապետել, և զհաց պատարագին պատրաստել. և զմաղզմայն և զսկիհն և զքշոցսն բերեն 'ի սենեկէն 'ի սեղանն, և 'ի սեղանոյն ածեն արտաքս 'ի բաշխումն. Նոցին իշխանութիւն է և խունկ ածել, և որ ինչ միանգամ սպասաւորութիւն է՝ սպասաւորեն, մինչև 'ի կատարել կարգաց ժամուցն ամենայնի: Եւ հրամայէ քահանայն ձեռնադրեալ սարկաւագին և կէս սարկաւագին զիրս ընթեռնուլ ժողովրդոցն և քարոզել զև ևս խաղաղութեանն, և ընթեռնուլ զաւետարանն. Նոքին են աստուածային նուիրացն և պատարագի սպասաւորք և քողածիգք, այսինքն սարկաւագք. իսկ կէս սարկաւագքն զքահանայապետականն պահեն զսպասաւորութիւն. և նոքա բերեն քահանային ջուր առ 'ի լուանալ՝ յառաջ քան զխորհուրդ պատարագին, քահանային մերձ կալ և մոմեղէն ունել. և յորժամ սարկաւագ օրհնեն, կոչել, և քահանայապետին անսայթաքելի կատարել սպասաւորութիւն:

Եօթներորդ դաս իւրոյ եկեղեցւոյ՝ դպրակոնք, որք են կէս սարկաւագաց. և ունին զգեստ որպէս զսարկաւագին՝ հոլանի անգօտի, բայց զուրարն նոքա զահեակ բազկաւն ածեալ կապեն վերոյ արմկանն 'ի կախ ունելով կրկին. և գործ է նոցա առաքեալ կարդալ, և զխաչադրօշս գաւազանս կրել և զմոմեղէնսն. և զեկեղեցին նոքա զարդարեն և զդրունսն պահեն:

Ութերորդ դաս եկեղեցւոյ՝ անագանուք, որ թարգմանին ընթերցողք. և ունին զնոյն զգեստ պատմուճանի հոլանի, բաց յուրարէն, և նոքա ոչ առանց գօտւոյ, այլ գօտի կապեն 'ի վերայ պատմուճանին, որք արտաքոյ եկեղեցւոյն ելեալ, թէ կամին՝ մեկնակս զգենուլ

մարթ է ․ և գործ է սոցա ընթեռնուլ զմարգարէս և զնաւագիրս և զվարդապետականս ։

Երրորդ դաս եկեղեցւոյ՝ փսաղտք, որ Թարգմանին երգեցողք ․ և զգեստն որպէս զընթերցողն ․ իսկ գործ է նոցա կանգնել և միայն երգել զալէլուն և զմեսեդին ։

Ահա ցուցաւ ինձ դաս պաշտօնէից վիճակելոց յեկեղեցի, և գործ նոցին, և զգեստ խորհրդականք, որք ոչ եթէ վայրապար են, կամ մինչև 'ի մարմնական նշանակս միայն, այլ մարմնաձև կերպարանօքն ցուցանեն զիմանալի խորհրդոյն զօրութիւն, զորս ասել տակաւ ինչ՝ ոչ դանդաղիմ։

Արդ եցոյց բանս 'ի պատրիարգէն մինչև 'ի կէս սարկաւագն իջեալ հարկաւոր ամենեցուն նոցա և վայելուչ զգօտէլոյծ պատմուճանսն, զի նափորտն գօտէլոյծ՝ է քահանայական կարգին զարդ, և պատմուճանն՝ սարկաւագաց ։ Այլ զինչ այլ այս ուսուցանէ մեզ, եթէ ոչ զպատիւ և զիշխանութիւն նոցա 'ի տաճարիս ․ քանզի գօտին ծառայական նշանակ է ․ ըստ այնմ, " Գօտի ածեալ պաշտեսցէ զնա " ․ նաև 'ի պաղատ Թագաւորի ինքն միայն գօտէլոյծ 'ի գահոյսն բազմի, իսկ որք մնեն առաջի նորա՝ հոլանի ոչ ունին իշխանութիւն կալ, այլ գօտով ․ յայտ արարեալ, Թէ իշխան և հրամանահան 'ի վերայ մեր՝ միայն արքայն է, իսկ այլքս ծառայք և պաշտօնեայք նորա ։ Արդ որպէս նա յիւրում իշխանութեանն, վասն զի իշխան է՝ գօտէլոյծ լինի, այսպէս և սոքա յեկեղեցիս ըստ իւրաքանչիւր արժանեաց իշխանութեան վիճակեալ՝ գօտէլոյծ կան իբրև իշխանք 'ի վերայ ժողովրդեանն, և ոչ որպէս ծառայակիցք միայն ․ յայն կարգն գոլով զոր Տէրն առ առաքեալսն ասաց ․ " Զձեզ ոչ ևս կոչեմ ծառայս, զի ծառայն ոչ գիտէ զինչ գործէ տէրն նորա ․ այլ զձեզ կոչեցից բարեկամս, զի զամենայն զոր լուայ 'ի հօրէ պատմեցի ձեզ " ։ Քանզի սոքա ըստ իւրաքանչիւր դասու արժանեաց՝ պատմելոյ 'ի տեառնէ խորհրդեանն՝ խորհրդակիցք գտան արժանի լինել ․ եպիսկոպոսքն զհոգին բաշխել, քահանայքն պատարագել, սարկաւագքն ուսուցանել ․ և այսպէս գործակցեալք Աստուծոյ և ժառանգակիցք են նմա, և բարեկամք յեկեղեցիս, զոր գնեաց արեամբն իւրով անդրանիկ եղբայրն սոցա Քրիստոս ։ Այս վասն

գօտելցծ լինելոյն հաստատապէս քննութիւն։

Յետ այսորիկ պարտ է գիտել, թէ և արկանել զու-րարն զանազանապէս՝ ըստ իւրաքանչիւրոցն զինչ ունի պատրուակեալ զազգեցութիւն իմաստից. ապա թէ ոչ՝ զինչ վտանգ էր ամենեցուն յերկուս ուսն ձգել։ Բայց զայն հուշակէ, թէ այս լուծս քաղցր է, զոր ասաց Քրիստոս առնուլ մեզ 'ի յանձինս։ Եւ ես կէս սար-կաւագս տղայ գոլով իմաստիցն աստուածայինն, դեռ ևս տկարացայ զնոյնն բառնալ. այլ միայն բուռն եմ հա-րեալ զնմանէ տկար գործով ձախու ձեռամբս, որ ցու-ցանէ զներքին մարդոյն իմոյ տղայութիւն առ գիտու-թիւն պատուիրանին. վասն այսորիկ և ըստ իմ արժա-նեացս՝ միայն այս վիճակեցաւ ինձ պատիւ՝ զայլոց բառս ընթեռնուլ ժողովրդեանդ, և պահելով զդրունս՝ ու-նել իշխանութիւն զանմաքուրսն 'ի մաքրոցն զատանել։ Իսկ սարկաւագն ոչ միայն բուռն եհար, այլ զօրացաւ և 'ի յուսն ունել. բայց ոչ 'ի տիրապէս գործիականն, այլ 'ի ձախ միայն, որով տայ տարացոյց, թէ զօրացայ շնորհօքն Աստուծոյ՝ 'ի ներքին մարդոյս ուսն բառնալ զլուծ քաղցր պատուիրանին, և զօրացեալ նովաւ՝ երի-տասարդապէս մրցիմ ընդ թշնամւոյն. յաղագս որոյ ետ ինձ Հոգին Աստուծոյ իշխանութիւն՝ յետ զանձն մար-զելոյ՝ և զայլս խրատել վարդապետութեամբ և ուսու-ցանել, պաշտել զնուիրագործութիւն պատարագի՝ թա-գաւորին մերոյ հպատակ սպասաւորութեամբ։ Բայց քահանայն երկոքումբք ուսովք զնոյնն բարձեալ՝ լիա-պէս ցուցանէ զանձն պատուիրանին կատարիչ. վասն այսորիկ և տուաւ նմա իշխանութիւն՝ Աստուծոյ լինել խօսակից խորհրդական աղօթիւք, և ոչ եթէ միայն որպէս զսարկաւագն ընդ ժողովուրդն։ Եւ եպիսկո-պոսք զի 'ի վերայ ուրարին ունին և զպատուական եմիփո-րոնն խաչիւք շուրջանակի պաճուճեալ՝ զայն յայտ առ-նեն, եթէ մեք յետ զքաղցր լուծն բառնալոյ՝ զօրացաք և զխաչն բառնալ և գնալ զհետ Քրիստոսի. և որպէս այս ձևացեալ խաչս է 'ի վերայ լանջաց մերոց երևելա-պէս, այսպէս և ներքին մարդս մեր համարձակապէս աղաղակէ. “Ինձ քաւ լիցի պարծել, բայց միայն 'ի խաչն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, որով ինձ աշխարհ 'ի խաչ ելեալ է, և ես աշխարհի„։ Եւ զի այսպէս 'ի

խաչն Քրիստոսի հեղուսաք յօժարութեամբ զանձինս, տուաւ մեզ այս շնորհ 'ի տեառնէն՝ փոխանակ նորա նստել 'ի մէջ ժողովրդեանս, և զաթոռ իշխանութեան՝ զոր արեամբն իւրով գնեաց Քրիստոս, իբրև զընտանի հարազատ նորա և զխաչակից եղբայր՝ ժառանգել. ունիմ և զՀոգին հրաման բաշխել՝ զոր առ նա խաչիւն իւրով, և ետ յիս, և սովաւ պատուեմ զիւրաքանչիւր ոք ըստ արժանեաց աստուածայնապէս ։ Իսկ հինգ խաչն յեմիփորոնն, թէ հինգ զգայարանքս խաչեալ է աշխարհի և ցանկութեանց սորա ։

Օայսքան բարեզարդութիւն աստիճանաց դասուց եկեղեցւոյ և զգեստուցս վայելչութիւն՝ ծնեալ 'ի տատանեալ ազգս, և ոչ ընաւ գտի 'ի մէջ սոցա. այլ աղաւաղեալ և վեր 'ի վայր վրդովեալ. և մեր այնքան 'ի յուղիղ պողոտայէն անընդելութեամբ մոլորեալ, մինչ զի ոչ ըղձամք 'ի նոյնս՝ իբրև խաւարեալքն՝ լուսոյ. այլ և հակառակիմք և ոտն հարկանեմք այսպիսի աստուածավայելուչ մաքրագործութեանս, ասելով ոմանց, աւելորդ են այսոքիկ ։ Նա մոռացեալ է ընաւին 'ի մտաց մերոց՝ թէ այլ աստիճան կայ յեկեղեցի բայց 'ի քահանայից և յեպիսկոպոսաց ։ Ո՛վ թշուառութեանս և արտասուաց արժանի մոլորութեանս. վասն այսորիկ և քահանայք ելով՝ 'ի դպրաց իմաստութե̄ կարգ. թերևս կարողանամք լինել. և եպիսկոպոսք՝ ընաւ և ոչ ճաշակեալ զքաղցրութե̄ բարեկարգութեանս. զոր բովանդակն ասել հեղգանամ, բաւականացեալ 'ի լինելն անձամբ անձին իմոյ կշտամբիչ ։ Բայց զինչ պարտ է ասել և զայպանելն և անգոսնելն զբարեզգեստութիւն հայրենի աւանդութեանս յիմարեալ մտօք. զոր ասեմ, ասեմ և ոչ ամաչեմ, ինձ 'ի նախատինս և 'ի դատապարտութիւն. զի են ոմանք 'ի մէնջ՝ որպէս ասացի, յորոց ամենևին այս խորհրդածութիւն աղօտացեալ է, թէ հարկաւոր է եպիսկոպոսին պատուական զգեստիւքն պաճուճիլ 'ի փառս Աստուծոյ. և քահանային առանց այսր ոչ 'ի խորհրդածութիւն ժպրհել ։ Իսկ յորժամ զգաստացուցանեմք, զինչ, թերևս տեղի տա̃ն յանձինս ճշմարտութեանն հաւանել. և ոչ երբէք. այլ ընդդէմ բերեն զկարծեցեալ զօրաւոր պատասխանին՝ հոգին, ասէ, լցի սուրբ, թէ ոչ՝ այլ ամենայն ա-

ւելորդ է ։ Ո՛վ Թշնամանաղիր և ունայնացուցիչ ճշմարտութեանն. և մեք զայս ոչ եթէ անմաքուր հոգւոյ տամք ունել, այլ քում սուրբ հոգւոյդ կատարելութե. որ անկատար է մարմնաւորիդ հոգւոյդ սրբութիւն՝ առանց մարմնոյդ բարեզարդութեան ։ Ապա թէ բաւական համարիս զհոգւոյ սրբութիւն առանց զգալի նշանակաց, այսուհետև աշակերտեա զմեզ՝ մկրտել առանց ջրոյ, աղօթել առանց եկեղեցւոյ, պատարագել առանց հացի ։ Ապա թէ այսոքիկ ընդ հոգւոյն մարմնական նիւթքս խառնին, և չունիս ինչ պատասխանի, յայտ է թէ ունայն ձայնիւ աղաղակես զձայն՝ զոր ոչ կարես հաստատել. և որպէս անհնար է առանց ջրոյ մկրտել և առանց հացի պատարագել, այսպէս և քահանային անհնար է առանց այսպիսի խորհրդական զգեստուց 'ի քահանայագործութիւն ժպրհել. զի նոքին որ զայն սահմանեցին՝ և զայս ուսուցին. և Աստուած՝ թէ հաւանիս ուսանել, ուսոյց Մովսեսի զայս ձև պատմուճանաց ։ Արդ նոքա անբան արեանցն սովաւ հպատակէին, և դու 'ի բանական պատարագիս պաշտօն՝ հեղգանաս ։ Ով կամիս, և այլ ինչ զարհուրելի ասացից քեզ. զորդիքն Ահարոնի՝ հուր քաւութեանն 'ի ներքոյ քահանայական պատմուճանացն այրեաց, և 'ի պատմուճանսն ոչ ժպրհեցաւ մերձենալ. Թերևս աւելորդ էր այն, որպէս քեզ թուի ։ Ո՛վ իմոյ Թշուառութեանս և մոլորութեանս, ուր վարդապետեցայ խոնարհ երևել 'ի գոհս մարդկան, զհաճոյս նոցա ջանամ 'ի գձուձն որսալ կերպարանք. իսկ աստ ուր փառքն և զգեստն փառաց ոչ է իմ այլ Աստուծոյ, կամ զգենում որպէս զիմ փառս զարդուց, և կամ արհամարհեմ որպէս 'ի փառասիրութենէ հրաժարեալ, ըստ որում և է մասին ընդ պատուիրանազանցութեանքն գրաւեալ. որ[1] պարտ էր ունել զայն 'ի փառս Աստուծոյ և ոչ յիմ. և հարկ ունէի յանգոսնելն՝ փառացն Աստուծոյ թերութիւն համարել և ոչ իմուն ։

Տես ինձ դարձեալ և այլով օրինակաւ զանհարթու-

1 Մի օրին. ունի առաւելութեամբ այսպէս. բայց որում և է մասին ընդ պատուիրանա, ով պարտական սուրբ հարկ և եղեւարկ, մի մեղազանցութեանքն գրաւեալ որ ։

թիւն խորհրդոյս․ քանզի որք յայսմ վայրի զհոգին մաքուր նախապատուեցաք և զքահանայական զգեստն անգոսնեցաք, զընկուղ կրօնաւորական կարգին՝ որով 'ի պէտս մարդկան ձևացաք, և ոչ օրհնութեամբ զնոյն ընկալաք, այնքան զգուշութեամբ պահեմք՝ մինչ զի և 'ի խօսելն ընդ Աստուծոյ աղօթիւք՝ հեղգանամք զնոյնն ընթադրել։ Իսկ յայսմ վայրի դարձեալ ընդդէմ դառնամք Ճշմարտութեանն ջատագովաց՝ զսրբութենէ հոգւոյ հարեալ բուռն, առ որ ժպրհի բանս յանձնել առարկու։ Ո՜ եղբայր, գովութեամբ հոգւոյ զօրէնս հոգւոյ տապալիչ, ուստի մեզ թէ որպէս ընկալցուք զաղփաղփունդ քո աւանդութիւն․ եթէ սուրբ հոգիդ ոչ կարօտացաւ քահանայական զգեստուցն, պարտ էր զի և կնկղիդ մի լիցի կարօտ․ ապա թէ անդ զօրէնսն արհամարհեաց ոչ զգենլոյն, և աստ անգոսնէ զգենլով, յայտ է թէ ոչ սրբութեան ունիս ջատագով զմաքուր հոգիդ, այլ պատուիրանացն Աստուծոյ արհամարհութեան, որպէս զի ամենևին սկզբնաչարն զքեզ իւր պատերազմակից օրինազանցութեամբդ ստասցի՝ նովին խաւարեալ խորհրդով․ զի որպէս նա միշտ մեղանչելովն՝ ընկղմեալ յամբարտաւանութիւն՝ ոչ զգայ, այսպէս ջանայ և զծառայդ Քրիստոսի խարդաւանել․ ապա թէ ոչ զինչ դանդաղեցուցանէ զմեզ առ օրէնսն Աստուծոյ բացաւ գլխով աղօթել․ զոր Պօղոս 'ի սահմաննեն՝ և 'ի բնական վկայութիւնն ապաստան առնէ․ “Իսկ ո՞չ բնութիւնդ, ասէ, զքեզ ուսուցանէ, զի այր եթէ գիսաւոր է, անարգանք են նմա”։ Արդ եթէ զգեստդ՝ որ բնական փառք էր գլխոյդ, հաւանեալ օրինացն հատեր, զարտաքինն ծածկոյթդ ո՞ դանդաղեցուցանէ յաղօթելն 'ի բաց ընկենուլ։ Ասիցես եթէ հարցն սովորութիւն։ Իսկ ո՞ է հայր քո հաւատարիմ․ Պօղո՞ս, որ աւետարանաւն ծնաւ, թէ այլ ոք․ ապա թէ զնա ախորժեմք լինել՝ նմին հաւանեսցուք, որ ասէ․ “Ամենայն այր յորժամ յաղօթս կայցէ կամ մարգարէանայցէ, և զգլուխն ծածկեալ ունիցի, զՔրիստոս զգլուխն իւր ամաչեցուցանէ”։ Ո՜վ թէ որքան մեղանչեմք հեշտ և դիւր օրինացս դրժելով․ որով ոչ միայն մեղանչեմք, այլ և զփառսն երկնի և երկրի տմարդութեամբ մեր ամաչեցուցանեմք․ հեշտ կարծես, և

վասն այնորիկ կախեա՝ զպատուիրանս, և ո՛չ գիտես թէ և ամենայն օրէնքն Աստուծոյ դիւր են և զկնի բնութեանս. և այնր աղագաւ պատշաճաւորք լինիմք, զի բնութեանս կամաց և նորա օրինացն լինիմք յանցաւորք։ Ոչ հրամայեաց մեզ ատել զիրեարս և ոչ զրկել և ոչ սպանանել, որք ընդդէմ են կամաց մերս. այլ զսէրն և զմիաբանութիւնն՝ զոր բնութեամբ ախորժեմք. այսպէս և աստ բնութիւնս զգիտաւոր այրն խօսէ, Աստուած հետևեցոյց զօրէնս իւր՝ կամաց նորին. դու, ասէ, որոյ դէմն անարգանք է, յորժամ ընդ իս խօսիս կամ զբանս իմ, բացաւ գլխով խօսեա։

Արդ քննեսցուք, զի՛նչ բռնութիւն ստիպէ զմեզ անարգել զօրէնս Աստուծոյ, 'ի վերայ որոց մեռանել հրաման ընկալաք, բայց եթէ անիմաստութիւնն։[1] Ո՛րնչ դարձեալ զզուանս կրեմք՝ անգոսնել զքահանայական զգեստն, առանց որոյ և ոչ սուրբքն կարացին Աստուծոյ խօսակցել, զոր ոչ դանդաղիմ յիշել. զի զԲադարատ ո՞ այլ՝ քան թէ այս փայլեցոյց յաչս քաղաքապետին Բոնիփատոսի իբրև զհուր. զԲարսեղ ո՞ այլ այնքան սքանչացոյց յաչս Եփրեմի, զորոյ և զպատկերսն նովին պատուական պատմուճանովքն ունիմք գծագրեալք։ Սոքա են՝ որ զբարեկարգութիւն քրիստոնէից այսու օրինակօք ուղղեցին, և ոչ եթէ յանյիշատակաց ոք. զսոցա օրէնս առ ոտս կոխելով՝ զնոսին յայտ է թէ արհամարհեմք։ Աղքատ են ասեն՝ ազգս, և 'ի տարկութի մատնեալ, և վասն այնորիկ լքին զօրէնս։ Վկայեմ և ես արտասուօք աղքատութեանս և ծառայութեանս. և աղաղակեմ առ արդարադատն Աստուած, արդարութեամբ և յիրաւի ածեալ զայս 'ի վերայ մեր վասն մեղաց մերոց, զի ոչ պահեցաք զպատուիրանս; որով բարի լինէր մեզ. վասն այսորիկ և մատնեցաք 'ի ձեռս տերանց խստասրտաց։ Բայց որպէս կարծեմ, ոչ թէ վասն աղքատութեան միայն՝ զտաք սուրբ պատուիրանիս դրժող, այլ տիրապէս վասն արհամարհութեան. քանզի ո՛ւմ ումեք՝ որ փոյթ առնէ, ոչ է դիւրաւ գտանել 'ի կտաւիս կամ 'ի ստեւոյ ոչխարաց զայս զգեստ պատրաստել։ Արդ եթէ զմտաւ ածէաք, որպէս թէ

1 Մի օրին. ծոխէ։ 2 Մի օրին. ասէ։

չեմք քահանայ առանց զգեստուցն՝ որպէս և ոչ առանց կնկղի կրօնաւորք, այսպէս հարկաւորելով դիւրաւ պատրաստէաք զնոյնն, թէ և դժուարագիւտ լինէր։

Կամիմ և զայլ նիւթ հակառակութեան խզել ամենեւին՝ բաղձացեալ ճշմարտութեանն ուղղութէ. քանզի լուայ յոմանց ասացեալ. Առաքեալ զօրէնս բացաւ գըլխով աղօթելոյ աշխարհականաց սահմանեաց, իսկ մեք զկրօնաւորականս ունիմք կնկուղ, զոր հրեշտակն եցոյց սուրբ հօրն Պաքմիմոսի, և ասաց. Զգեցո զդա կրօնաւորաց, և 'ի ժամ հաղորդութեանն նովին կնկղովն կացցեն։ Առ որ համառօտ զայս դնեմք, եթէ 'ի կրօնաւորէ ումեքէ կամ 'ի հրեշտակէ ունէաք զօրէնս բացաւ գլխով աղօթելոյն, պարտ էր զի միոյն բան զմիւսումն լուծցէ. իսկ եթէ 'ի նոյն ինքն 'ի Պօղոսէ, յայնմ առաքելոյ՝ որ գրեաց, “Եթէ մեք կամ հրեշտակ յերկնից աւետարանեսցէ ձեզ աւելի քան զոր աւետարանեցաքն՝ նզովեալ լիցի”։ Ուրեմն լուար, զի փակեաց 'ի մէնջ Պօղոս զհաւանեալն հրեշտակի կամ մարդոյ՝ որ ներհակ իւրոցն վարդապետէ օրինաց ասելով. “Զոր ասացի, ասէ, և դարձեալ ասեմ, եթէ հրեշտակ յերկնից աւետարանեսցէ 'ի ձեզ աւելի քան զոր աւետարանեցաքն՝ նզովեալ լիցի”։ Յետ այսորիկ ուսիր և զայս, զի հրեշտակն զկնկուղն կրօնաւորացն ասաց ունել՝ և ոչ եթէ երիցանցն. և բազում անգամ ցուցաք, թէ որիշ է կարգ կրօնաւորութեան յաստիճանաց եկեղեցւոյ։ Արդ եթէ կրօնաւոր ես միայն, թերևս գրաւեալ ես ընդ օրինօքն Պաքմիմոսի, և ոչ ունիս իշխանութիւն աղօթել կամ վարդապետել, այլ լռութեամբ ընդ միտս և ընդ Աստուած խօսել. իսկ եթէ յետ խոնարհութեանն 'ի պատիւ աստիճանի վիճակեցար յեկեղեցի՝ լինել քահանայ կամ սարկաւագ, մեծն զփոքրն ելոյծ և ինքն էառ տեղի. զի որպէս զաշխարհական զգեստն ծածկեաց ասքեմ կրօնաւորութեանն, որ վեհագոյն էր քան զնա, այսպէս զսահման կրօնաւորական ամօթխածութեան՝ համարձակեցոյց եկեղեցական իշխանութիւնն՝ որ բարձրագոյն էր նմին։ Բայց քանզի ասաց բանն, յերկուց և յերից վկայից հաստատել ստուգութեանն, կարևոր է ասացելոյ պատուիրանիս և 'ի կենդանեաց ածել վկայս, որք ամենևին բացերևապէս

փայլեցուցանեն զճշմարտութիւնն. և վկայ ոչ զմի մարդ կամ զերկուս՝ այլ զբովանդակ ազգս ամենայն քրիստոնէից ըստ իւրաքանչիւր սեռի, որք այսու պարծանօքս առաջի աչաց մերոց պանծան: Փռանգք յապաւիչք գիսոյ և բացագլուխք. և Հոռոմք մեծարիչք օրհնացս և հնազանդք. իսկ մեր օտար 'ի նոցանէ ընթացք՝ և 'ի դրոց յայտ է, թէ մոլար է և զարտուղի. ուստի դառնալ աղաչեմք և հաշտել ընդ Քրիստոսի, զոր խռովեցուցաք ընդ մեզ յամօթ առնելովն. և զնա ունել պսակ գլխոց մերոց որ պատուականագոյն է քան զակունս պատուականս. և ոչինչ է չար՝ որ հակառակ կայ նմա, ըստ առաքելումն. որում յերկրպագութեան ծառայիցս փառք ընդ Հօր և սուրբ Հոգւոյն յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ԸՆԴԷ՞Ր ՑԱՄՐՈՑ ԵՒ ՈՉ Ի ԿՏԱՒՈՑ ԶԳԵՍՏ ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ:

Ի հին օրէնսն մինչ չև էր Աստուած ընդ ծնանելն բնութիւնս խառնեալ, կտաւի հրամայեաց առնել զզգեստ քահանայիցն, որ յերկրէ բոյս, և 'ի մարմնոյ կենդանեաց մաքուր՝ և ոչ յախտէ ծնեալ. իսկ յորժամ Քրիստոս սիրեաց զմեզ՝ և ընդ մեր բնութիւնս խառնեցաւ, 'ի կուսէ ծնաւ, և զամուսնութիւն սըրբեաց, և զախտից նիւթոց մարմինս ընդ անախտ աստուածութին միաւորեալ՝ գառն անուանեցաւ, առնումք այսուհետև ոչ զանշնչից տարրն նիւթ քահանայական զգեստուց, այլ և զստև գառանց շնչաւորաց, քահանայագործել զճշմարիտ գառնն՝ որ բառնայ զմեղս աշխարհի:

## ԽՄԱՍՏԱՍԻՐՈՒԹԵԱՄԲ [1] ԲԱՑԱՑԱՅՏՈՒԹԻՒՆ

### ԱՍՏՈՒԱԾԱՅԻՆ ԽՈՐՀՐԴՈՑ ՊԱՏԱՐԱԳԻՆ, ԵՒ ԱՌ ՈՒՆԱՅՆԱՑՈՒՑԻՉՍՆ ՋՆՈՑՆ՝ ԸՆԴԴԻՄԱԴՐՈՒԹԻՒՆ։

ՔԱՆԶԻ որ մինչև ցայժմ հաստատելոյ զճշմարտութիւն բանին կարօտեալ՝ ՚ի պէտս այնոցիկ այսր անդր ճարակեցաւ, զխուիւ և զփուշ որոմնացան մշակին յանդդաստանէ մտաց մեր աստուածային հրովն մաքրեալ, զուտ և պայծառ յօրինեաց զիմանալիս հոգւոյս պարզութիւն, որ կարօտի այսուհետև այլ ինչ նշոյլ իմաստից ՚ի վերայ իւր արտափայլել. ըստ որում և զարմաթոյ է տեսանել զնիւթ, որ այնքան զնշոյլս արեգականն ոչ կարէ տանել՝ որչափ աղտովն է տժգունեալ. իսկ յորժամ զայն լուացողական աճառօք [2] ՚ի բաց մաքրեն, շողացուցանելով զնոյն ընդդէմ արեգականն՝ վաղվաղակի յինքն ընդունի զծագումն ճառագայթիցն, և նովաւ գեր քան զբնութիւնն պայծառանայ. այսպէս և բանականս ՚ի մեզ մարդ ժանգահարեալ և տգեղացեալ օտարոտի վարդապետութեամբք և ստայօդ աւանդութեամբ՝ տգեղ և անմաքուր էր ՚ի բնականն ՚ի լուսափայլութենէ. իսկ այժմ զի զօրացեալ տերամբ՝ ըստ կարի զայն աճառաւ նախագրելոցդ ՚ի սմանէ լուացեալ հանաք, և տեսանեմք զնոյն բնական գեղովն պայծառացեալ, բեր այսուհետև նպատակ դիցուք զսա առաջի ծագման ճառագայթի իմանալի արեգականն Հոգւոյն Աստուծոյ. Թերևս ըստ յուսոյ մեր և հաւատոց, արձակեալ ՚ի սա զնշոյլս իմաստից՝ փայլեցուսցէ զնոյնս, ճաճանչել իւրով պայծառութեամբն, առ ՚ի կարող լինելոյ զառաջի եդեալ խորհրդոյս քննել զօրութիւն. և ոչ միայն լոյս լինել, այլ և լուսաւորել զայլս տացէ զօրութիւն, ըստ որում անարժանն հոգւով ժպրհեալ՝ առի զպատիւ և զիշխանութիւն՝ անձամբ անձինս կրօփանս և դատապարտութիւն։ Թերևս լիցի ինձ այ-

1 Մի օրին. Իմաստութեամբ։ 2 Մի օրին. Օճառօք։

սուղիկ փոքր ինչ յերկիւղէ այսր պարտուց խուսափել, և զօգուտ խորհելով եղբարց՝ 'ի սիրողացն զմիմեանս կարգն դասել:

Ուսաք 'ի գրոց՝ Աստուծոյ զմարդկայինն բնութիւն իւր պատկերակից ստեղծանել: Նա Աստուած յորժամ ասեմ, զԵրրորդութեան փառս բանիս յայտնեմ, որ աղբիւրն և պատճառն է եղականաց՝ իմանալեաց և զգալեաց. նոյն որ և զայս կենդանի խառնուած և հաղորդարար երկուցն բնութեանց, յետ յանցանացն ոչ արար անտես, զի մի զրկեսցի արդարութիւն՝ 'ի մարմին եղելոցս թշուառութեան. այլ ողորմեալ փրկանգելոցս՝ ըստ տանելոյ՝ տղայական հասակին յիւրաքանչիւր ժամանակս վարժեաց օրինօք, խրատեաց մարգարէիւք, և փրկեաց որդւոյն ըստ յառաջադրութեան ծածուկ խորհրդոյն: Արդ քանզի ծանեաք զԱստուած արդար՝ այլ և ողորմած, և մարգարէն յողորմութիւն և յիրաւունս օրհնէ զնա. և դարձեալ՝ "Ողորմութիւն և ճշմարտութիւն, ասէ, գնասցեն առաջի երեսաց քոց Աստուած, որոյ աթոռդ յարդարութիւն է հաստատեալ և յիրաւունս". և որք քննեցին զնոյնս հարք սուրբք հոգելից՝ այսպէս ասացին, այսինքն սոցա արդարութեանս և ողորմութեանս, որ նախաշաւիղ ընթանան երեսացն Աստուծոյ, ոչ զրկել 'ի միմեանց՝ կամ զընկենուլ զիրաւունս իրերաց. որպէս. քանզի միշտ զնախադասութիւնն տայ ողորմութիւնն արդարութեանն, և ինքն ոչ երբէք քան զնա յառաջէ ընթանալ. իսկ ընթացեալ արդարութեանն յորժամ ինչ խորոց ընդդէմ նորա ձգեն մարդիկ փոքր և կամ մեծ անխտիր, մինչև 'ի չնչին իրաց կասեալ նհանջի, և ողորմութեանն այնուհետև տայ տեղի՝ ներգործել պէսպէս և զանազան շնորհս փրկութեան: Բայց սակայն կարօտիմ ապացուցիւ զբանս յայտնել. և զայս ոչ յարտաքնոց, այլ 'ի նորին 'ի տեառնն գործոց:

Աւազակն մինչև 'ի վերջին շունչն ոչ ձգեաց խորոց սիրոյ կամ հաւատոյ ընդդէմ արդարութեանն Աստուծոյ, վասն այնորիկ անընդհատ տիրէր 'ի վերայ նորա արդար իրաւունքն, և ածէր զնա 'ի պատիժ յաւիտենից դատապարտութեանն. իսկ յորժամ արտաքս եբեր յանձնիշխան կամաց զփոքրն բան, "Յիշեա զիս տէր

յարքայութեան քում", այս չնչին մէտ կշռոց զու-
գեալ ընդ արդարութիւնն Աստուծոյ՝ յաղթեաց նմին, և արձակ զողորմութիւնն՝ առնել առ նա ճանապարհ, և ասել. "Այսօր ընդ իս լիցես 'ի դրախտին": Ո՜վ մեծ և անկշռելի ողորմութեանս՝ որ թափեալ հեղաւ 'ի վերայ նորա: Այսպէս և այս արդար իրաւունք տիրէր 'ի վերայ մարդկան, և փակեալ պահէր զողորմութիւն փրկագործութեանն 'ի սոցանէ մինչև 'ի վախճան յաւիտեանցս և 'ի յետին շունչ. իսկ յորժամ ինքեանք անձնիշխան կամօք խնդրեցին զնա, արգելին զարդարութիւնն, և արձակ զողորմութիւնն զայն զմեծն հեղին. որպէս ասէ Պօղոս. "Աստուած, որ մեծն է ողորմութեամբ, մինչ դեռ մեռեալն էաք 'ի մեղս մեր, կենդանիս արար զմեզ 'ի Քրիստոս": Եւ խնդրեցին ո՞րպէս. առ նոյն ինքն Պօղոս ընթացուք ուսանել. "Հեթանոսք, ասէ, որ ոչ գիտէին զօրէնս՝ բնութբ զօրինացն գործեցին. նոքա ցուցին զգործս օրինացն գրեալ 'ի սիրտս իւրեանց վկայութբ մտաց իւրեանց". Թերևս ոչ վարկցուք խնդրել զԱստուած օրինացն նորա կատարողաց:

Կամիս ուսանել, թէ և զԱստուած ո՞րպէս խնդրեցին. Եկ զկնի նորա յԱրիսպագոսն աթենացւոց, և լուր զի՞նչ ասէ. "Արք աթենացիք, զԱստուած զոր դուք յանծանօթս պաշտէք՝ ես զնա քարոզեմ ձեզ". ապա յայտ է, թէ խնդրեցին ամենայն իրօք մարդիկ զԱստուած, և ապա Աստուած ծանուցաւ նոցա:

Թերևս ոչ դանդաղելի է 'ի պէտս ասացելոցս հաստատութեան 'ի մէջ առնուլ զառակ անառակ որդւոյն 'ի փրկչէն ասացեալ. որ զի՞նչ այլ յայտ առնէ, քան զուշ ունել մարդկան աստուածգիտութեանն. քանզի անառակն ուրեմն ասէ եկն 'ի միտս իւր և ասէ. "Յարուցեալ գնացից առ հայր իմ". և ո՞ր էր այս խոկումն, եթէ ոչ ընտրել 'ի մէջ պաճարամիտ հեթանոսաց արանցն իմաստասիրաց՝ այնոցիկ՝ որք դատեալ զբնութիւնս, ծանեան զէութիւն սորա բարի՝ որոշեցին բացատրապէս քննութեամբ, և զարտաքուստ արկեալ 'ի սա սերմանս չարին հակառակ բնութեանս, կարգեցին թագաւորս, գրեցին օրէնս քաղաքականս, պատժեցին զսպանութիւն, դատեցին զյափշտակութիւնս, պա-

տուեցին զողջախոհութիւն, գովեցին զխաղաղութիւն, հաստատեցին զմիաբանութիւն. և արդարև եկին 'ի միտս իւրեանց՝ խոկացեալ զհայրենի տանն պայծառութիւն: Այլ և զընթացսն դիտեն դիտել, զի ասէ. "Եւ յարուցեալ եկն առ հայրն". զո՞ր շաւիղ թողին նոքա, զորս ոչ յաղագս գիտելոյ զԱստուած կոխեցին: Այն յոյսն և խուզողական՝ վարանումն արար զնոսին երկրաչափս, երաժիշտս և համարողս. նոյն որ կայր 'ի բնութիւնն՝ հայրենի տանն փափագ՝ վերացոյց զնոսա 'ի ներշրջանակացն տեղեկութիւն: Արդ 'ի Ճանապարհ առնելն մարդկայինն մարմնոյ առ Աստուած՝ մինչև ցո՞րվայր կարէ ընթանալ. բայց թէ յոր նոքա ձկտեցան, յօդդ ելին և զբնութիւնս տարերց քննեցին, զդիրս աստեղաց քանակեցին, և զընթացս լուսաւորացդ ծանեան. և տեսեալ հայրն ողորմած 'ի հեռուստ, այսինքն յանհաս վայրէ և 'ի հողմայինն թևոցն թեթևութենէ, զի որդին վարանէր 'ի գիտութիւն հայրենեացն Ճանապարհի, շրջէր 'ի մէջ լուսաբերաց՝ և աստեղացն պարուց, և զհայրն բոլորեցունց արարչութեամբ և խնամօք ոչ գտանէր. քանզի զի՞արդ Աստուած 'ի մարդոյ հասանի. իսկ սա բազմախոյզ լինելովն 'ի հասանելոյ ոչ յուսահատէր. վասն այսորիկ հայրն յարուցեալ եկն ընդ առաջ նորա, դու, ասէ, և ես առաւելապէս աշխատելով առ իս ոչ կարես հասանել միանգամ որոշեալդ. ես զամ ընդառաջ սիրեցեալ որդւոյդ. մինչև ցայն թաքուցանէի զսէրն, մինչ ոչ խնդրէիրն, իսկ այժմ և զպարանոցդ համբուրեմ, այսինքն զէութիւնս իմ ընդ քոյդ խառնեմ: Եւ ծառայիցն հրամայէր զպատմուճանն առաջին հանել և սմա զգեցուցանել. և զի՞նչ այլ էր մեր առաջին պատմուճան, բայց եթէ հոգին զոր փչեաց Աստուած 'ի մարդն առաջին. և նա զրկեալ 'ի նմանէ զմաշկեղէնն փոխանակ այնորիկ ընկալաւ, այժմ հրամայէ պաշտօնէայ հոգւոց հրեշտակաց զլուսափայլութիւն հոգւոյն որ յինէն առ ձեզ միջնորդութեամբ միմեանց զանազանապէս իջանի, և առ դա ածեալ ըստ իւրում տանելոյն զգեցուցէք, և միոյ հոգւոյ հաղորդեալ՝ այսուհետև խաղաղութիւն ընդ միմեանս

1 Մի օրին. խաղաղական:

արարէք. և զայն եզն որ պարարեցաւ խաչիւն, զիրա-
ցաւ չարչարանօքն, ածէք և օր ըստ օրէ 'ի պէտս ու-
րախութեան և ցնծութեան դորա բաշխեցէք:

Մ՚ի են պատուով և իշխանական անուամբ հրեշտակք և քահանայք, որպէս կոչեաց մարգարէն. որք զայս պաշտօն գործոյ 'ի պէտս ուրախութեան եկեղեցւոյ հեթանոսաց՝ գործակցութեամբ միմեանց հրաման առին միշտ կատարել. և տես զի ոչ սահմանէ զզենումն, այլ թէ զենէք, և միշտ անքանակ. յայսմ յաւիտենից նովաւ ուրախ լինիցուք, դուք 'ի զենեալն ուրախացեալք, որդիդ՝ որ է հաւատացեալ եկեղեցիդ՝ յուտելն և 'ի սրբելն, ես յընդունելն և 'ի հաշտելն, և եզնն 'ի միշտ պատարագելն: Ա՛յս շնորհ անզուգական պարգևաց՝ տուաւ յԱստուծոյ ազգի մարդկութեանս, զորոյ իմաստիցն քաղցրութիւն խուն մի ճաշակեալ բանս զմայլեցաւ: Ո՛այց թէ որոյ աղագաւ ոչ բաւական համարեցաւ որդւոյն շնորհ՝ զպարանոցին համբուրելն և զպատմուճանին զգեցուցանելն, այլ և զորթին միածին ետ միշտ 'ի խրախութիւն, համառօտիւ ասել բանս յօժարի:

Մ՚արդկային բնութիւնս մարմին գոլով՝ անմարմին ունի թշնամի և չարախօս բազմամեքենայ, և ամենաչար մախանօքն միշտ ընդդէմ սորա զինեալ, և պատրանօքն զսա ոչ եթէ վայրապար խարդաւանէ, այլ որպէս զի միշտ առ Աստուած չարախօսեսցէ. ըստ այնմ. «Քանզի նստան իշխանք և չարախօսէին զինէն առ քեզ տէր, սակայն ծառայ քո խորհէր յիրաւունս քո»: Այս զի չեղև ումեք կար 'ի նորա մեքենայից զգուշանալ կամ զերծանել, այլ թագաւորեաց մահն հօգւոց 'ի վերայ ամենեցուն, և Աստուած տրտմէր, զի ստեղծեալ 'ի նմանէ բարի բնութիւնս, ակամայ կամօք և խաբէութեամբ չարագործի՝ չարեաց կցորդէր, և առ նա հայել ոչ զօրէր, ողորմեցաւ սմա արդարապէս. քանզի թէ տիրապէս յանցանելն և սկիզբն մեղացն և բաղձանքն 'ի սմանէ էր՝ անարժան էր ողորմութեան որպէս կամակոր բանսարկուն. ապա թէ ընդ խաբս մոլորէր, և զչարն տգիտութեամբ որպէս զբարի կարծէր, պարտ էր զի յարարչէն ածցի 'ի գիտութիւն ճշմարտութեան, և 'ի չարախօսէն ձեծաբանելոյ զերծցի, որ զիւրն ներգործութիւն սոցա առաջի իրաւանցն Աստու-

ծոյ դնէր. յորժամ թուի թէ ճանճրացեալ մարգարէն՝ ա֊սէր. "Ի նմին թագուցին ինձ որոգայթ, ՚ի նմին նախատեցին զանձն իմ, և յարեան ՚ի վերայ իմ վկայք չարեաց: Արդ դու տէր զերծո զիս ՚ի խորամանկու֊թենէ նոցա, և յառիւծուց զմիամօրութիւն իմ. և զար֊թիր և հայեաց տէր յիրաւունս իմ, Աստուած իմ և տէր իմ ՚ի դատաստանս իմ, և իրաւ արա ինձ ըստ ար֊դարութեան քում„: Յայսպիսի զզուանս գոլով ՚ի նո֊ցանէ մարդկութիւնս՝ ՚ի ձեռն հայեցողաց աչաց մար֊գարէիցն թախանձէր զԱստուած. իսկ նա զարթու֊ցեալ ՚ի քնոյն՝ յաղաչանս նորա՝ հայեցաւ յիրաւունս, ոչ բացատրապէս, այլ բնաւորականն փորձիւ. զի անըստ֊գիւտ արդարութեամբ լցի զոր պահանջեաց փրկու֊թիւն. և առաքեաց զբնութենակից որդին խառնել ընդ բնութիւնս, զորոյ վկայքն չարեաց ՚ի նմին չա֊րախօսէին. որ եկեալ՝ զհաւատացեալ նմա գործ ՚ի Հօրէ առնել և կատարել, խառնեցաւ ընդ հողեղէնս բնութիւն անշփոթ միութեամբ, կրեաց զամենայն կիրս սորա ճշմարտութեամբ. և անհաս ունելով բան֊սարկուին զէութիւն աստուածութեանն՝ տայր թոյլ մարմնոյն ներգործել զիւրն բնական կիրս. իսկ նա՝ թըշ֊նամին, ըստ չար սովորութեանն մերձենայր և ընդ սորա անմեղ կիրս՝ զներգործութիւն թիւնիցն խառնել. և պարտեալ յետս ընթադրէր. քանզի էր լոյսն և ՚ի խա֊ւար աշխարհի լուսաւոր. և զխորդ խաւար նմին հասա֊նէր: Այլ թէպէտ նա չարն տգիտացեալ ընդ լոյսն՝ որ֊պէս ընդ խաւար հարկանէր, միշտ զամօթի հարեալ կործանէր. և որդին Աստուծոյ մարմնացեալ և զկիրս մարմնոյ կրեալ՝ արդար առաջի Հօրն նովաւ երևէր: Ծանեաւ և զմեքենայս չարին դատաստանաւ անձին իւրոյ, և իրաւ արար մեզ ըստ արդարութեան իւրոյ: Եւ իրաւունքն զինչ. բայց թէ անմեղն և կենդանին փոխանակ մեր մեռաւ, և զմեզ ՚ի մեղաց և ՚ի մահուա֊նէ յանմեղութիւն և ՚ի կեանս վերագրեաց, և զմե֊ռեալս ընդ հինն Ադամայ՝ նորոգեաց նորին Ադամ. ըստ որում գրեաց Պօղոս. "Որպէս միոյն յանցանօք յամե֊նայն մարդիկ դատապարտութիւն, այսպէս և միոյն արդարութեամբ յամենայն մարդիկ արդարութիւն կե֊նաց„. և "Զի թէ միոյն յանցանօք՝ մեղաւորք բազումք

եղեն, պարտ և արժան էր՝ զի և միոյն արդարութ՟ արդարք բազումք եղիցին,,․ որ և եղև իսկ․ քանզի ամենեքեան որք 'ի Քրիստոս մկրտեցան՝ արդարացան, և զՔրիստոս զգեցան, և յորդեգրութիւն Աստուծոյ հաւատով և յուսովն գրեցան։ Բայց զի չև ևս է յայտ որդիութիւնն, որպէս գրեաց Յովհաննէս․ "Սիրելիք, այժմ որդիք Աստուծոյ եմք, բայց դեռ չև ևս է յայտ, թէ զի՞նչ լինելոց եմք․ թէպէտ և հաւատով գիտեմք՝ եթէ նման նմա լինելոց եմք,,․ այլ այսօր պարտիմք այնպէս լինել, որպէս և նա եկաց յաշխարհի, զի 'ի մէջ կարճաց շրջիմք 'ի վայրս պանդխտութեան, ըստ որում ասաց Աստուած առ Եզեկիէլ։ Եւ պանդուխտն յայլ աշխարհ ակն ունի ուրախութեան, և ոչ եթէ յայն՝ ուր բնակի անդ․ այլ աստ իրաւացի է 'ի հետս ընթացից չարչարանաց նորա կոխել, և անդ ընդ նմա փառաւորիլ։

Եւ զի այս կայր մեզ առաջի շաւիղ յաւիտենական կենացն, ետես նա՝ տկարն մեր ճանապարհն և ճշմարտութիւնն, որով ձգեցաք առ Հայրն, բազմադիմի զնետս մուխս չարին 'ի վերայ ճանապարհի կենցաղոյս տեղատարափ խաղացեալ․ ծանեաւ փորձիւ, և փորձելոցս օգնական եղև ողորմածն և հաւատարիմ քահանայապետն․ զի միայն իւր կարելի եղև զանմարմին թշնամւոյն ներգործութիւնն խայտառակել, և զերազանց նմին զտանել․ իսկ մեր զգալի մարմնոյս ո՞րպէս էր կարելի ընդ աշխարհակալն անմարմին իշխանութիւն և պետութիւնն առանց իւր օժանդակութեանն պատերազմել․ վասն այսորիկ օգնական եղև տկարացս՝ իւր սուրբ մարմնովն և արեամբն, զի մի չարախօսն 'ի վերայ մեր մեծաբանեսցէ և վաշ վաշ աղաղակեսցէ։ Եւ օգնութիւնն ո՞րպէս․ բայց եթէ միշտ 'ի մէջ մեր մեռանելովն։ Եւ միշտ՝ ասելով, ոչ եթէ զնա նորոգապէս կարծեմք մեռանել, "Որ մի անգամ՝ 'ի վախճան յաւիտենիցս, որպէս ասէ առաքեալ, իւրով պատարագաւն յայտնեցաւ,,․ այլ զի՞նչ, խորհրդածութիւն է բանս․ և զայս ո՞ այլ ուսուցանէ մեզ, եթէ ոչ հազարապետն խորհրդոցն Աստուծոյ։ Քրիստոս էառ մարմին և զկիրս նորա ճշմարիտ, և յաւուրս մարմնաւորութեանն՝ որպէս ասէ Պօղոս․ "Աղօթս և պաղատանս առ Հայր մատու-

ցանէր, որ կարէր զնա ապրեցուցանել„. ոչ թէ զի կարօտ էր, որ որդի նորա էր և Աստուած, այլ զի զմարմնոյն՝ ընթացս ճանապարհի ուսուցէ մեզ: Եւ յորժամ կամեցաւ և նա ինքն անմեղ մեռանել, „Եղև ամենայն հնազանդելոց իւրոց, առէ, պատճառ փրկութե յաւիտենից„: Մի հնազանդելոց, և ոչ եթէ միոյ ժամանակի մարդկան, այլ ամենեցուն որք յիւրաքանչիւր ժամանակս հաւատան 'ի նա՝ կայ բարեխօս յաստուածակոյս կողմ անդ [1], և բարեխօսէ ոչ թէ յամենայն ժամ՝ այլ յորժամ մեք խնդրեմք: Եւ մեր տկար դոլով՝ անկար է անաղօտ միշտ պահել զմահու նորա յիշատակ, որ առ Աստուած անաղօտ է. վասն այսորիկ ուսոյց զմեզ, թէ առաջի ամենատես գիտութեան Հօր իմոյ՝ իմ արիւնս և մահս անծերանալի և անհնանալի քահանայապետ և բարեխօս է ձեր. և ես չարչարակից և վշտակից ամենեցուն ձեր՝ ընդ աջմէ նորա նստեալ, և ոչ կասիմ կամ ձանձրանամ 'ի նմանէ. նաև ոչ եթէ 'ի մի ժամանակին առաւել բարեխօսեմ կամ 'ի միւսն նուազ, այլ միայն իմ մահուն չնորհ անգործ՝ և բարեխօսէն և Հօրն իմոյ ողորմելն, յորժամ դուք մոռացեալ՝ ոչ խնդրիցէք զնոյն. և մարմնաւոր գոլով՝ գիտեմ զի մոռանայք, վասն այսորիկ առէք զհացս զայս, այս է մարմին իմ. զայս միշտ արարէք մահուն իմոյ 'ի միտս ձեր վերստին յիշողութիւն առաջի Հօր. և այս բաժակս է արիւն իմ նորոյ ուխտի. և որպէս նոր ուխտ, այսինքն հաշտութեան, միշտ ընդ ձեզ և ընդ Աստուած միջնորդ և առհաւատչեայ, որպէս զի դուք յուտելն և յըմպելն զսա՝ զմահ իմ՝ որով զԱստուած հաշտեցուցի ընդ ձեզ, անձնիշխան կամաց յօժարութեամբ առաջի նորա պատմիցէք. և յորժամ դնիցէք զհացս և զգինիս՝ որ է մարմին իմ և արիւն, և զմահն պատմիցէք առաջի Հօրն, զինչ լինիցի. ձեր յիշողութեամբդ և նա զմտաւ ածէ զանմոռացն յինքենէ զյիշատակ մահուն, և առաքէ զաստուածեղէն զօրութիւն ներգործութեան Հոգւոյն. և զարիւնն և զմարմինն՝ զոր տայք դուք նմին, հոգիացուցեալ Աստուած կատարէ, առ որ զմերձեցեալսդ աստուածեղէն զօրութեամբն մաքրէ,

1 Մի օրին . յաստուածակոյս կողմանէ :

և սրբեալ կենդանացուցանէ. ըստ այնմ. «Որ ոչ ուտէ զմարմին իմ և ըմպէ զարիւն իմ, ոչ ունի կեանս յանձին. իսկ որ ուտէ և ըմպէ, նա յիս բնակեսցէ և ես 'ի նմա». քանզի ես կենդանի եմ վասն Հօր, և որ ուտէ զիս՝ և նա կեցցէ վասն իմ. այսինքն, ես կենդանի եմ վասն աստուածախառն մարմնոյս. իսկ որ հաղորդի ինձ, 'ի վերայ նորա իմն մահու շնորհն սփռի, ըստ որում գրեաց աւետարանիչն. «Արիւնն Յիսուսի սրբեսցէ զմեզ յամենայն մեղաց»։

Արդ՝ որպէս ունի խորհրդական աւանդութիւնս մեր, ոչ է պատարագս Քրիստոսի՝ նորին որ է իսկական էութեան նորա մահ. այլ զի նա մի անգամ մեռաւ, և իւրով արեամբն եմուտ 'ի սրբութիւն սրբութեանցն 'ի ներքին կողմն վարագուրին, զօրացաւ այն մի մահն զյաւիտենից փրկութիւն գտանել մարդկան, որպէս ասաց Պօղոս։

Այս փրկութիւնն որպէս. զի միշտ դնելով զսա՝ որպէս ասացաւ, առաջի Աստուծոյ մահուն նորա յիշատակ և պատմաբանութիւն, աղօթիւքն բխուցանէ 'ի վերայ նուիրացն զՀոգին. և եղեալ հացն՝ Աստուծոյ մարմին, սրբէ զխիղճ մտաց մերձեցելոցս 'ի մեռելոտի գործո՛ց անտի։

Այս դու տես զճշգրտութիւն իմաստիցս 'ի Պօղոսէ ասացեալ. «Արիւնն Քրիստոսի, ասէ, որ 'ի ձեռն Հոգւոյն յաւիտենականի». այսինքն թէ յայսմ յաւիտեանս Հոգւոյն շնորհ որ տուաւ մեզ վերակացու, կատարէ զսոյնս Քրիստոս և արիւն Քրիստոսի. և առնէ զանարատս պատարագ՝ խղճի մտաց մերոց անդեղայ։ Ո՜վ մեծ և անքաւս շնորհաց, առ որ տկարանայ բան իմաստից ձգտել, և 'ի գոհութիւնն երկրպագութեանք լինի ապաստան. քանզի որպէս ասացաւ, դնելով զսուրբ նշանակսն 'ի վերայ աստուածընկալ սեղանոյն և յիշատակաւ մահու տեառն զկամս Հօրն թախանձեալ՝ կատարեալ Աստուած և մարմին Աստուծոյ ընդունիմք զնոյնն Հոգւոյն՝ միջնորդ խաղաղութեան յերկինս և յերկրի։ Քանզի աստուածութեամբն երկնաւոր՝ և մարմնովն երկրաւոր, յարախառնիմք անդամքս մարմնոյն ընդ գլուխն մեր և Աստուած ընդ Քրիստոս. և ապա որպէս անբան ոչխարացն արիւնն ըստ հնոյ ուխ-

տին փոխանակ մատուցանողացն հեղցի և զնոսա ըստ մարմնոցն սրբէր, այսպէս և թանաւոր զարեանս արիւն մատուցեալ և հեղեալ փոխանակ մեր, ոչ միայն զմար-մինս, այլ և զխիղճ միտաց պատարագողացս մաքրէ, և զմերձեցելոցն սրբէ, և յեկեղեցիս Աստուած յամենե-սին եղեալ՝ զամենեսին կատարէ, և զչարախօս Թշնա-մին ամօթով ընթացրէ. զի եթէ յիւր ուղղին ոչ խնայէ Աստուած՝ որ զմեզ արդարացուցանէ, զիարդ ոչ նովաւ հանդերձ զամենայն ինչ մարդկայինս բնութեան շնոր-հեսցէ:

Նայց տես և այլ խորհրդոյ զօրութիւն յառաջիկայ շնորհիս քննութիւն. քանզի ասաց առաքեալ, “Որ մե-ռանին՝ արդարացեալ է 'ի մեղաց, զի զպատիժ պար-տուցն հատոյց”. և մեք զի միշտ մեղանչականք ըստ տկար բնութեանս՝ հարկ է և միշտ մեռանել. եդ հօ-վիւն քաջ զանձն իւր 'ի վերայ հօտին, և փոխանակ մեր մեռանի հանապազ. քանզի ըստ որում ասացաւ՝ և դեռ ևս մեռանի. զի որքան այս օր՝ յաւիտենիս այսորիկ առաջի կայ, և մարդիկ նորոգ յաշխարհ ծնանին, մահ նորա չէ կատարեալ, քանզի գլուխ է մեր, և մեք ան-դամք նորա 'ի մարմնոյ նորա և յոսկերաց նորա որ է եկեղեցի: Արդ որքան անդամոցս մահ չէ սահմանեալ, և ոչ գլխոյն. և որքան կարօտիմք մեք ըստ մեղացն մե-ռանել և արդարանալ 'ի նմանէ, նա և դեռ ևս փոխա-նակ մեր դնէ զանձն 'ի մահ առաջի հօր 'ի վերայ սրբոյ սեղանոյն, և մեք կցորդ լինիմք մահուն՝ հաղորդութեան խառնմամբ. և մեռեալ՝ զօրութեամբ կամաց՝ արդա-րանամք 'ի մեռելոտի գործոցն՝ որով խիղճ միտացս չարչարի:

Այլ զի նուրբ է խորհրդոյս զօրութիւն, թերևս կարասցուք յարացուցիւ զայն ստուգել: Որ օրինակ արեգակնդ որ յերկինս՝ յառաջին արարչութեանն ստեղ-ծաւ, բայց միշտ նոյն է լուսաւորիչ, և ոչ ոք ասէ 'ի վերջին ժամանակս աղօտացեալ զզօրութիւն ճառա-գայթիցն կամ նուազեալ. բայց հայեցողքս և ընդու-նողքս լուսոյն ոչ եմք նոյն, որք 'ի մարմին աչաց զնոյն պարփակեմք. և ոչ ոք ասէ, այլ արեգակն յերեկեանն յայս օրէ որիշ է, այլ ուխք ընթացից ժամանակին են այլ և այլ, և ոչ նա՝ որով նոքա սահմանին. այսպէս

ինձ իմս և զմահն Քրիստոսի. իմանալի արեգակն և լուսաւորիչ մարդկային բնութեանս եղեալ յիւրում ժամանակին, բայց ոչ եթէ յայնժամ եղև և այսօր աղօտացաւ զօրութիւն նորա. այլ զոր օրինակ արեգակն անաղօտ է առ վերջինս որպէս յառաջինսն, այսպէս և մահն Քրիստոսի անաղօտ կենդանացուցիչ և լուսաւորիչ է միշտ ծնելոց յաշխարհի՝ ըստ որում առաջնոցն, և ոչ հնացաւ. Թէպէտ և այլ և այլ են իւրաքանչիւր ժամանակի մարդիկ որ 'ի նմանէ վայելեն, սակայն նա նոյն է և անաղօտ կեանք և կենդանարար. և զոր օրինակ նա ծածկի ընդ երկրաւ, և դարձեալ նոյն լոյսն ծագէ օր ըստ օրէ, և զխաւարն հատանէ, և զհայեցողսն լուսաւորէ, այսպէս և սա ծածկի յիմանալի աչաց մերոց, մինչ չև է բաշխեալ. իսկ յորժամ պատարագի, նոյն Քրիստոսն՝ որ երէկ և այսօր, նոյն և յաւիտեանս զիմանալի աչս հոգւոց հաւատով հայեցողացն և մերձեցելոցն լուսաւորէ, և զխաւար մեղացն 'ի նոցանէ փարատէ:

Այսքան յարմարումն ապացուցիս զօրեաց. իսկ 'ի սա հասանէ միայն հաւատ և տարփումն, և ոչ եթէ յօդուած՝ բանի կամ օրինակաց. զի "Հոգի է, ասէ, Աստուած". մերձենան 'ի նա հոգիացեալքն՝ և ոչ պիտառութիւնք[1] զգալեացս հայելեաց. այլ զի թանձրացաք մտօք՝ և 'ի զբաղմանց աշխարհիս թակարդեալ, հարկաւորիմք երևելեօք զաներևոյթսն իմաստասիրել: Արդ այս երևելի արեգականս լոյս առաջի կայ՝ 'ի վայելումն պայծառ աչաց՝ որք կարեն զլոյս նորա սրբապէս տանել. իսկ եթէ ումեք ախտացեալ է հայեցողութիւնն, պատրուակաւ և աղօտաբար զլոյսն ձգէ, զի մի յառաւելութենէ լուսոյն վշտասցի: Սա դարձեալ՝ և ոչ ոք 'ի խաւար արգանդի մօրն գոլով նմին տեսող կարող է լինել, մինչև պատշաճ ժամանակաւ ծնցի. այսպէս տարացոյց տայ մեզ սուրբն Դիոնեսիոս, զերախայսն կարծել յարգանդ մօրս եկեղեցւոյ, դեռ ևս 'ի ստեղծումն և 'ի կենդանութիւն[2] հաւատոց և տկար և անզգայ ելով 'ի տղայութեան. վասն այսորիկ անօգուտ է՝ մինչ չև վերստին ծննդեամբն ածեալ եմք զնոսին 'ի

1 Մի օրին. Պիտառութիւնք:  2 Մի օրին. Ի կենդանական գոյութիւն:

լոյս՝ յիմանալի արեգական հայել. որպէս և մեռուկն, թէ յանպատշաճ ժամանակին ծնցի՝ ոչ կենդանի, այլ վիժած անուանի. զորոց զօգուտն խորհելով սարկաւագն՝ ՚ի խորհրդականն ժամու հրամայէ նոցա զարտաքս գնալ. նոյնպէս և այնոցիկ որք զաչս մտացն ախտիւ մեղացն հիւանդացուցին, և անզեղջ կամօք ՚ի նոյն հեշտացան, անմարթ է ախտաւոր մտօք յանախտ լոյսս հայել. որոց բարեկարգութիւն եկեղեցւոյս քող արկանէ զանջրպետութիւնն, զի մի յառաւելութենէ լուսոյն յաղթահարեալ՝ ևս խաւարեսցի. ապա թէ ոք մաքուր ունի զհայեցուածսն, և հեղգ և դանդաղ մտօք ՚ի նմանէ վերջանայ, ինքն կամաւ ձգէ զանձն ՚ի խորխորատ խաւարի, և զրկէ ՚ի լուսոյս քաղցրութենէ. և նիւթ ունի դանդաղութեանն զանհաւատութիւն, թէպէտ և անզգայեալ ոչ ճանաչէ. զի թէ հաւատայր զոյն լոյս գերազանց գոլ քան զգալիս, որպէս և է տիրապէս, երբ ողջոյն հրաժարման տայր սմա և արտաքս կամաւ գնայր ՚ի տաճարէս ընդ այնոսիկ որք ելինն ակամայ. բայց զի ոչ հաւատայ և տգէտ է խորհրդոյս զօրութեան, ահա այսուիկ յայտ է: Եւ ո՞յք են սոքա, եթէ ոչ նուիրեալք խորհրդոյս, քահանայք որք այսօր պատարագեն, և վաղիւն ՚ի կարգ երախայիցն զանձինս դասեն. և երանի թէ յայնժամ միայն, յորժամ զհրամանն միայն առնուլին նոքա յելանել. այլ և բնաւ իսկ ոչ մտանեն յեկեղեցիս այսօր, որք յերէկ յիշխանական յաթոռն էին բազմեալ ՚ի բարձրութեան բեմին: Եւ թէ ուստի՞ գտին զայսքան խուսափելս ՚ի սմանէ, ՚ի գրոց ոչ կարեն ցուցանել. զի գիրք ըստ որում բազում անգամ ցուցաք, ոչ միշտ արգելու զեկեղեցիս անարժանիցն՝ ըստ թիւրն կարծեաց, այլ ունելով զնոսա ՚ի ներս՝ միայն ՚ի խորհրդականն ժամու արտաքս առաքէ:

Որ՞նչ աստացուք և զայնոցանէ, որք ոչ միայն յեկեղեցւոյս, այլ և ՚ի հաղորդութենէ խորհրդոյս զամ մի ողջոյն և զևս բազում հրաժարեն. ոչ միայն որք ընդ կեանս աշխարհիս շաղախին[1], այլ և նոքին՝ որք զձև մեռելութեան Քրիստոսի զգեցողք՝ կրօնաւորք և քահանայք: Եւ ողբոց արժանի այս, զի յանցանելով ոչ

1 Մի օրին. Գաւաշին:

որպէս զյանցաւորս ամաչեմք, այլ և պանծամք և պարծիմք 'ի հրաժարելն : Վասն զի մեծ և աստուածեղէն է այս խորհուրդս, և ես ոչ կարեմ ամէն պատրաստել : Ով մարդ՝ և դու գիտես տկարապէս զԱստուծոյ մեծութիւնն, եթէ ինքն Աստուած : Որդի ինքն կոչեաց զքեզ կցորդ իւրոց խորհրդոցն, և դու կամիս հրաժարիս. ո՞չ և զառ Մովսէս սաստն լուար, և այն զի երկիւղած էր այրն. և մեզ բազում անգամ ոչ երկիւղն, այլ հեղգութիւնն և անհաւատութիւնն՝ այսօրիկ բարբառոյ արմատ, որպէս գիտեմք իւրաքանչիւր ոք՝ 'ի խիղճ մտաց անաչառ եղեալ դատաւոր : Սակայն պարտ է ապա զուղիղն խոստովանել. ոչ եթէ բարիոք երկեղն հրաժարեցուցանէ, այլ զի յոյսն և հաւատն և սէրն որ առ Քրիստոս՝ զնաց յամենեցունց մեր մտաց. և ոչ ամենևին հոգամք խուզել և քննել զանօրէնութեան նորա մատակարարութիւն, թէ ո՞ր աղագաւ եղև առ մարդիկ. այլ պարզամիտք, անյոյսք և անխմաստք, որպէս 'ի չար գործս, նոյնպէս և 'ի բարիս : Այլ ազգք թէպէտ և յանցանեն, զկայծակն յուսոյ և հաւատոցն՝ որպէս կարծեմ, ոչ շիջուցանեն : Իսկ մեք 'ի ծառայական երկիւղ և 'ի խոտորնակ կարծիս վարանեցաք՝ միայն. ոչ բնաւ կամեցեալ զակն ոգւոց 'ի սոցանէ բարձրացուցանել, այլ զարիւնն Յիսուսի, որոյ վկայքն աղաղակեն, թէ "Արբէ զմեզ յամենայն մեղաց", և ինքն ձայնէ, թէ "Որ ոչն ուտէ զիս, ոչ ունի կեանս յանձին. և յիս բնակէ՝ որ ուտէ զմարմին իմ և ըմպէ զարիւն իմ", մեռեալ մտօք՝ 'ի մեռելոցն պէտս միայն կատարեմք, և ընդ նոսին թաղեմք զկեանսն, որք ոչ ուտել զնա կարեն և ոչ ըմպել. իսկ զանձինս դատարկ և անշահ 'ի շնորհէն վարկանիմք : Ո՛վ ողբոց արժանի կարծեացս, ո՜վ սոդոմայական գինւոյս արբեցութեան, որով այսչափ ժամանակս թմբրեցաք : Եւ Եսայիաս և ծանր մեզ զախտիս այսօրիկ չարիս : Ասէ Եսայի. "Ո՛վ է խուլն, եթէ ոչ ժողովուրդն իմ. և ո՞վ է կոյրն, եթէ ոչ որ տիրեն նոցա" : Արդար և ճշմարտապէս. քանզի ուսուցիչքս կուրացաք տեսանել զճշմարտութիւնն, և որք ուսանել կարօտին՝ զականջս խփեն իժի և քարբի

1 Մի օրին . Վարեղոյ :

առ նոյն խօսին : Վա՜յ մեզ զի վաղեցաք զԱստուծով, որպէս ասաց ուրեմն Ովսէէ . և եղո՛ւկ զի ամպարշտե-ցաք 'ի փրկչէն , և բամբասեցաք զնա սուտ . զի զոր նա մեզ կենաց զբաւական ետ , իբրև զոչինչ պիտանացու 'ի մեռեալս ձգեցաք , իբր թէ չեւս կենդանեացս օգուտ : Հաւասիկ ճշմարիտ բամբասանք Աստուծոյ սուտ . առ որ ասէ սոյն մարգարէ . " Վասն այսորիկ հնձեցի զմարգարէսն ձեր , և կոտորեցի զնոսա բանիւ բերա-նոյ իմոյ , զի իրաւունք քո իբրև զլոյս ծագեսցեն , և դու զաչս քո կափուցեր . ասէ , անցեր զուխտիւ իմով և յօ-րէնս իմ ամբարշտեցար , և եղեր իբրև զաղաւնի մի միամիտ սրտաթափ , որոյ ոչ իցէ սիրտ . Թագուցին քահանայք զճանապարհս գիտութեան . վասն այսորիկ ասէ եղև ժողովուրդ իմ իբրև զքահանայ հակառա-կող : Բայց դու քահանայ , զի մերժեցեր զգիտու-թիւն՝ մերժեցից և ես զքեզ , զի մի քահանայանայցես ինձ . և զի մոռացար զօրէնս Աստուծոյ քո , մոռացայց և ես զորդիս քո . զմեղս ժողովրդեան իմոյ կերայր , և ոչ ուսուցեր . վասն այսորիկ և անօրէնութիւնք նոցա տիրեն 'ի վերայ քո . և եղիցիս քահանայդ իբրև զժողո-վուրդն յիմարեալ " : Ըստ ախտի մերում չարի՝ ընկա-լաք 'ի քէն, աստուածային մարգարէ, զյանդիմանութի՟ւ . վասն այսորիկ և զամօթի հարեալ՝ կափուցեալ զշըր-թունս՝ ոչ կարեմք խօսել : Եկեսցէ և այլ ոք 'ի համա-պատիւ քոց մարգարէիցն՝ սաստել և նոցա յիմարու-թեանն : Խօսի և աստուածայինն Մաղաքիաս զայս ինչ առ ժողովուրդն . " Իցէ՞ թէ խաբիցէ մարդ զԱս-տուած , զի դուք խաբեցիք զիս . և ասիցէք , ի՞ւ խա-բեցաք զքեզ . զի տասանորդք և պտուղք առ ձեզ են , և չարկանելով չարկանէք՝, և խաբէք զիս . և տարին կատարեցաւ , և զարդիւնս ամենայն 'ի շտեմարանս ձեր ժողովէք : Արդ դարձարուք այդուիկ , ասէ տէր ամենակալ " . ահաւասիկ որ ունիցի ականջս լսելոյ լուիցէ . զի իւր համարի Աստուած զխաբէութիւն ան-պտղութեան ժողովրդոցդ , յայտ է թէ զպտուղն . իսկ դուք դրժեցիք ճշմարտութեանն . զտալն՝ մեզ համա-րիք , և զփոխն ուժդութեամբ պահանջէք . և կամ ամե-նեւին զձեռս 'ի պտղաբեր լինելոյ Աստուծոյ կորացու-ցանէք . դրէք 'ի վերայ մեր զչնչին պատարագն՝ զոր

տայք Աստուծոյ, ոյք տասանորդելոյն էք պարտական։ Անհաւատութեամբ խարխափէք. զՔրիստոս առանց հաւատոց ոսկւով միայն կամիք գնել. ո՞չ գիտէք, թէ նա սիրով գնի, և ոչ արծաթով. սիրոյն լցի պտուղ պատարագդ. ապա թէ ոչ՝ ոչ ինչ օգտիս 'ի ջամբելն զինչսդ աղքատաց. ապա թէ սէր ունիս, և նովաւ շարժեցար օժտաբեր լինել Աստուծոյ, համարս տուրևառից՝ 'ի սիրելոյն ո՞յր աղագաւ պահանջես. միթէ ո՞չ գիտես զնա հարուստ, միթէ տկարանայ՞ առ փոխարէնն. արդեօք տկարացեա՞լ զծածուկս սրտի քո գիտել, և յինէն կարօտանայ ուսանել, թէ այն անուն զայս ինչ ետ քեզ 'ի ձեռն իմ։ Յիմար մտաց այս կարծիք. զամենատես գիտութիւնն Աստուծոյ տկարացուցանել։

Այլ աղօթից ասես կարօտել. բարւոք. և համար իմոցն աղօթից ո՞յր աղագաւ խնդրես. ո՞չ գիտես՝ թէ հարկաւորապէս յայս գործ ոտոշեցայ՝ միշտ անդանդաղ առ Աստուած վասն քո խօսել՝ 'ի գիշերի և 'ի տուընջեան կանխելս առաջի նորա՝ քո է բարեխօսութիւն. ընդէ՞ր ոչ ամաչես այսքան աշխատութեանս զփոքրդ փոխարէն 'ի համար արկանել։ Ապա թէ կամիս զաղօթըս պատարագին գնել, պահանջեմ և ես զայլ ժամանակն՝ յորս առանց գնոց՝ 'ի վերայ քո թախանձիմ՝ ահա հակառակութիւն սատանայական։

Ո՛հ, եղբարք, զայս զմտաւ ածէք. տուք զԱստուծոյն՝ որ ետ ձեզ ձրի՝ ձրի Աստուծոյ, և առէք և զնորայն ձրի. և մի զմեզ վասն մարմնական պիտոյից ընդ աստուածավաճառութեամբ ձգէք. մի է զԱստուած վաճառել, և զձիրս շնորհաց նորա։ Համար տուրևառիցն՝ կրպակաւորացն է գործ. յեկեղեցիս՝ որպէս 'ի կրպականոց, մի հարկաւորէք զմեզ փայտ համարոյ կախել, և զշնորհ ողորմութեան Քրիստոսի 'ի թիւ արկանել։ Սարսափեցէք գոնէ անագան. զի ոչ է առ մարդ մեղանչելս մեր, այլ առ Աստուած. Հեղի՝ որդւոցն խրատով լցի մեզ վարդապետ. եթէ մարդ մարդոյ յանցանէ, առ Աստուած մաղթեն և թողու. իսկ որ առ Աստուած մեղանչէ, ո՞վ աղօթեսցէ վասն նորա. չիք այլ որպէս զայս առ Աստուած յանցանք, զշնորհ նորա 'ի թիւ արկանել. և առաւել վասն այնորիկ՝ զի 'ի յանցանելս ոչ գիտեմք զմեզ յանցաւորս։ Զանկիւնս ե-

կեղեցւոյս սեղանովք 'ի պէտս այսորիկ լցաք, և ոչ դատեմք զանձինս ագահս. արծաթասէրն ագահ է համարեալ, և 'ի պէտս արծաթոյ պատարագողն՝ ոչ դատի մեղանչական։ Կոստանդնուպօլսի մեծ եկեղեցին մի սեղանովն բաւականացաւ, և Անւոյ կաթողիկէն, և Երուսաղեմի սուրբ Սիոնն, և Անտիոքայ սուրբ Պետրոսն, և Տարսոնի սուրբ Սոփին. և բազմապատիկ սպասաւորքն թերևս արժանի վարկանին արժանապէս զայն պաշտել. և 'ի վաներս քան զթիւ բնակողացն զսեղանսն բազմացուցաք, և բարեպաշտութիւն զնոյն համարիմք. որքան ծակոտեալ կրպականոցքն բազմանան, փառս շինութեան դնեմք. և ոչ ոք է՝ որ իմանայ, և ոչ՝ որ զմտաւ ածէ. "Ամենեքեան խոտորեցաք 'ի միասին և անպիտանացաք":

Քննելս զսոյն՝ յանդգնութիւն կարծի, և խօսելն՝ նորաձևութիւն. և որք հնոցն աշակերտք զանձինս դնեմք, 'ի նոցա շաւղացն որպէս երկինք յերկրէ հեռի ընթանամք. ոչ խորհիմք, թէ միոյ Քրիստոսի մի սեղան բաւական է, և բազմապատիկ պաշտօնեայք նմին սակաւք. և եկեղեցիք բազումք՝ վասն աստուածասիրութեան մարդկան շինեցան, և ոչ 'ի պէտս համարոց. որպէս զի 'ի մի եկեղեցին բազումքն հաղորդեսցին, և ոչ թէ միութիւնն պառակտեալ՝ 'ի յորջս ծակուց թագիցեն։

Հաղորդութիւն անուանեմք զայս խորհուրդ, և ոչ գիտեմք՝ թէ հակառակ անուանն ընթացք մեր լինին. զի որ մինչև ցայնվայր միաւորք էաք և հաղորդք իրերաց, յայնժամ քակտեալ բաժանիմք և յայլ և այլ տեղիս պառակտիմք։ Եւ զինչ այլ ունիմք այսմ պատճառ ասել, եթէ ոչ զախտ համարոցն, որք զմիանձնութիւն աղօթակցացս անզօր թուեն, և զբաժանեալն զօրաւոր։ Ա՜յ թշուառութեան իմոյ. և ո՞ւր կատարի Պօղոսի ասելն, "Միաբանութեամբ 'ի մի բերան փառաւորեսջիք զԱստուած". ո՞ւր և տեառն նորա, "Ուր երկու և երեք 'ի ձէնջ միաբանեսցին՝ զամենայն որ զինչ և խնդրեսցեն՝ եղիցի նոցա": Ուստի՞ գտաւ ամուր այս հիման քակտիչ կրօնքս. Ե՞ր վասն ընկղմեցաւ օրէնք հոգւոյն կենաց՝ յօրէնս մեղացն և մահու։ Ո՞ւսոյց զմիաբանութիւն քակտել յաստուածազանիցն.

չկայ ոք և ոչ երևի . զօրէնս միայն պինդ ունիմք , զորոյ սահմանիչսն ոչ բնաւ ճանաչեմք . բայց մի, եղբարք, և այլ ևս, բաւական է ընդ խաբս մոլորութիւն . տացուք անագան ուրեմն տեղի ճշմարտութեան յանձինս . ստացցուք մի միայն զաղաւնոյ պարզութիւն յանձինս , այլ և զօձի իմաստութիւն . քննութեամբ հաւանեսցուք օրինացն , և մի յիմարութեամբ . զպտուղն տեսցուք զծառին , արդեօք տատասկ իցէ թէ խաղող , և ապա արմատոյն հաւատասցուք . մինչև ցայժմ տատանակումք խոցոտիմք , թէպէտ և ոչ զգամք : Եթէ քննեմք , ապա զասացելոցս զօրութիւն ճանաչեմք . որոց տացէ Քրիստոսն Աստուծոյ՝ իմաստ ասացելոցս և գիտութիւն քան զթշնամիսն առաւել, և քան զամենայն ուսուցիչսն և զծերսն իմաստնանալ, և յամենայն ճանապարհաց չարաց զոտս արգելուլ, զբանս Նորին զճշմարիտս պահել, և 'ի քիմս մտաց զսոյն քաղցրացուցանել, և իմացեալ զթիւր շաւիղսն՝ ատել, և ճրագ զլոյսն ունելով 'ի յաւիտենական կեանսն լուսաւոր շաւղօք ժամանել՝ շնորհօք Հոգւոյն Աստուծոյ, որ է օրհնեալ յաւիտեանս [1] :

## ԲՆԱԽՕՍՈՒԹԵԱՄԲ ՔՆՆՈՒԹԻՒՆ ՑԱՂԱԳՍ ԶՕՐՈՒԹԵԱՆ ԱՂՕԹԻՑ

### ԵՒ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ ԹԷ ՊԱՐՏ Է ՆԵՐԳՈՐԾՈՒԹԵԱՄԲ ՄՏԱՑ Ի ՆՈՑՆ ԿԱՆԽԵԼ

ԱՐԱՐԻՉՆ Աստուած՝ զեղական արարածոց կենդանեացս ազգ՝ յերկիս սեռս զանազանեալ որոշեաց . նախ եղելոց հոգեղինացն զօրութեանց զվերին կայեանսն՝ առ ինքեամբ և հուպ ընդ իւր տալով տեղի բնակութեան . իսկ զզգալեաց և անասուն կենդանեաց որ յերկրէ՝ սահմանեաց 'ի սոյնս , յորմէ ստեղծանն՝ բազմանալ , և 'ի

1 Բանիցս կարգ ինքնին իսկ յայտ առնէ, զի դիտումն մատենագրիս ոչ պախարակել է զբազմաւորութիւն պատարագաց մատուցելոց 'ի միում եկեղեցւոյ, այլ խափանել զանկարգն և զչարաչար կիրառութիւն նորա, որ և առ ամենայն ողջամիտ քրիստոնեայս պախարակելի է :

ծոց անդ մօրն դարձեալ լուծանել ։ Այլ զբանաւորս զայս մարդ յետոյ քան զանասունս 'ի ներս մուծեալ՝ որպէս ուսաք 'ի պատմութենէն, շաղկապումն և խառնուած արար սովաւ իմանալեաց և զգալեացն էութեանց. քանզի առ հող յերկրէ՝ ուստի անասնոցն ջոկք գոյացան, և փչեաց յերեսս նորա շունչ կենդանի, որով իմանալի պատկերն Աստուծոյ 'ի նա եկաց, և եղև մարդն՝ հողեղէն որպէս զանասունսն, և պատկերակից Աստուծոյ՝ որպէս զհրեշտակս իմանալին այն հոգւով. ոչ վայրապար զայս տնօրինեալ, որ սեպհական զանունն իւր մարդասէր յորջորջէր, «Ես Աստուած մարդասէր եմ» ասէ. այլ որպէս աղօտապէս ձգտիմք յանհասխորոցն քննութիւն, զի նիւթ և պատճառ ունիցի մարդն զմարմինս ապաշխարութե՟, և ներողութե՟ն Աստուծոյ. ներելի յԱստուծոյ, վասն զի բնաւորապէս ունի զինեալ զօրէնսն հակառակ օրինաց մտացն, և գերիչ յօրէնսն մեղաց. և զի գերի 'ի մեղսն՝ և ոչ թէ յօժարի, արդար իրաւունքն տայ նմա տեղի ապաշխարութեան ։ Իսկ ապաշխարէ, քանզի հաճեալ է ընդ օրէնսն Աստուծոյ ըստ ներքին մարդոյն. և 'ի կործանելն յոչ հաճոյսն՝ բնաւորապէս ունի զղջումն ։ Այսպէս մարդն իմաստնացաւ զյանցանելն զգալ, և ապաշխարել. և արդարն Աստուած՝ դատեցաւ յետ այնորիկ նմին զթողուլն. ըստ այնմ, զոր տէրն ասաց. «Որդիք աշխարհիս իմաստնագոյն են քան զորդիս լուսոյ յազգս իւրեանց» ։

Արդ. քանզի ասացեալս հաստատեցաւ լինել մարդոյս 'ի բանական և յանբան էութենէ մի կենդանի, պարտ է գիտել, ո՞ արդեօք իցէ բան սորա. մի՞ արդեօք յիմար լիցուք՝ կարծել զբարբառս 'ի մարմնոյս արտաքս հնչեալ, և ընդ փողս բախեալ, լեզուովս յերիւրեալ և 'ի յօդս ցնդեալ՝ գոլ բան. քանզի զայս և առ անասուն կենդանիս է տեսանել. նա զի և Աստուած, յորոյ պատկերն ստեղծաք, և հրեշտակք՝ որոյ նմանեցաք, ոչ ունին զայսպիսիկ զգործիս մարմնեղէն՝ որ զբանն յօդացուցանէ, սակայն տիրապէս են բանականք և ասին ։ Ուրեմն ապա ոչ այս բան՝ որ կերպարանի շրթամբք, այլ ձայն նիւթական՝ որ զգենու զիմանալին բան, և նիւթականացս երևելի առնէ ։ Իսկ եթէ էաք աննիւթ

միայն , որպէս զնոսա՝ որոց կցորդիմք բանիւս , ոչ կարօտանայաք ձայնից , այլ միայն իմացականապէս զներգործութիւն բանին միմեանց ազդէաք . որպէս և 'ի համասեռ ազգս է զայսոցիկ զտարացոյցն գիտել . զի ահա որ զհռոմայեցին խօսի 'ի լուր ինձ առ համազգին ձայն , զձայնն զգալի հաւասար ընդունիմք 'ի յունկան զգայարանս . սակայն իմանալին բան միայն առ նա ազդէ՝ որ զվարժումն ունէր նախակրթութեան ։ Այլ և այժմ ահա զտառս գրոյս յարմարելով՝ ազդումն ձայնիս խափանեալ է , և բանականս ներգործէ զիւրն . և սոյն տառ ոչ տեսանողացն միանգամայն ամենեցուն է գիտելի , այլ միայն վարժմամբ ներկրթութեամբ բանականին 'ի սոյն խորհողաց ։

Զայս նախաշաւիղ բանիս բնախօսութիւն առ 'ի պէտս 'ի խոնարհ դիմելոյ ճառիս արարաք , ոչ արտաքուստ , այլ 'ի բնութենէ խրատել մեզ առ արհեստ սահմանի աղօթից . որոց մաղթեմ լսողացդ և ըստ այսմ մասին զիջանել առ ունկնդրութիւն , զոր 'ի պէտս օգտի հասարակաց մեր հիւսեմք ։

"Աստուած հոգի է" , ասաց տէրն , և յերկրպագուացս ոչ զպարանոցի խնդրէ կորացումն կամ զծնգաց մածուցումն , կամ զձայնի բարբառումն , այլ հոգւով և ճըշմարտութեամբ զերկիր պագանելն . այսինքն զիմանալի միտս առ իմանալին Աստուած վերաբերողապէս ձըգտեցուցանել . զի այս է որ զնա հաշտեցուցանէ[1] , և ոչ բարբառ բերանոյ ։ Սովաւ Մովսէս լռութեամբ աղաղակին զԱստուած ձանձրացուցանէր , մինչ ասէր . "Զի գոչես առ իս" ։ Թերևս ձայնի գոչմանն կարծիցես 'ի նրբաձայնէն յերկինս հասեալ . և ոչ երբէք , այլ հոգւոյն աղաղակ ։ Այս ձայն էր՝ որ 'ի յոչ շարժել շրթանց , քահանայապետին՝ զԱննա արբեալ երևեցուցանէր ։ Սովաւ և Դաւիթ յաղաղակելն ասէր . "Խորհուրդք սրտի իմոյ առաջի քո յամենայն ժամ , տէր օգնական իմ և փրկիչ իմ" . քանզի ոչ եթէ բացակայ է 'ի մէնջ Աստուած , որպէս զի ձայնիւն զգաստացուսցուք , այլ մերձ է յամենեսին . ըստ որում ասաց . "Աստուած մերձաւոր եմ ես , և ոչ հեռաւոր .

1 Ի միում օրին . Հէշտացուցանէ ։

մերձեցարուք առ իս, և ես մերձեցայց առ ձեզ»։ Արդ որպէս զնորա մերձ առ մեզ լինելն հաւատամք, այսպէս և մեք մերձեսցուք առ նա. և մերձ է Աստուած առ մեզ իմացականապէս և ոչ զգալի կերպարանօք. պարտ է և մեզ խօսել առ նա և մերձենալ առ նա՝ իմանալի հոգւով և ոչ զգալի բարբառոյս ձայնիւ. այլ նախ ամբառնալ զմիտս առ նա՝ և ապա թէ կարօտիմք, ընթացակից տալ զձայնս՝ մտացն։

Իսկ եթէ միտքն՝ որիշ է յԱստուծոյ և ձայնն զգալի միայն առ նա խօսի, շատախօսութիւն է աղօթքն մեր հեթանոսաբար, որպէս ասաց տէրն. սակայն ընդ ուղիղն ախորժելով գնալ պողոտայ, նախ զայն հաւատասցուք՝ թէ մերձ է յամենեսեան Աստուած, ըստ որում ամենայն աստուածաշունչ գիրք հաստատեն. և ոչ է երկինք պատրուակ արարչին իւրոյ՝ առ 'ի թագուցանել զմեզ յամենատեսն աչաց. իսկ մեք ոչ եմք մերձ 'ի նա, վասն զի մոլորեցուցաք զմիտս մեր 'ի զանազան ընթացս կենցաղոյս, զայս որում կարելի էր զԱստուած տեսանել։ Արդ դարձուցեալ զայն և ամփոփեալ 'ի վայրապար ցնորմանէն՝ 'ի վեր ճանապարհ նմին արասցուք, ամենասուրբ պատեհութեամբ անպղտոր խորհրդովք խօսել ընդ Աստուած աղօթիւք, և մերձենալ 'ի նա, ըստ որում հրաման ընկալաք։ Քանզի նախ զիարդ է հաւատալի յէիցս զօտարանալն, որ զանգործն տեսանէ՝ և նախ քան զգիտելն մեր, և զօրութիւն ազդմանն քննութեան անցանէ մինչև ցորոշումն շնչոյ և ոգւոյ, յօդից և ուղղոյ ըստ որում գրեաց առաքեալ։ Զոր ոչ ինչ դանդաղելի է օրինակաւ հաստատել, 'ի պէտս գիտութեան մերձ նորա լինելոյն՝ և ուսուցանել զմերն առ նա մերձենալ։ Զոր պարտ է համարել, որպէս թէ լուսաւոր ինչ լար յերկնից 'ի ստորին վայրս երկրի կախեալ, և մեր բուռն հարեալ զնմանէ, և զձեռս ձեռամբ փոփոխեալ, կարծիս տամք 'ի սկզբանն՝ որպէս թէ զլարն 'ի մեզ քարշեալ ածեմք. իսկ նա քանզի յերկինս արմատացեալ է, ոչ թէ 'ի ստորև բերի, այլ պնդագոյն փոփոխմամբն և բուռն հարկանելովն՝ զմեզ յերկրէ 'ի ճաճանչեղ վայրս երկնից վերածէ. այսպէս է և գիտութիւն Աստուծոյ հաստատեալ աստուածաշունչ գրովք՝ մերձ առ ամենեսեան զնա գոլ։

Արդ եթէ ոք այնմ ատացելոյն տիրապէս սրտիւ հաւատայ, և գիտանէ որ մերձ է առ ամենեսեան՝ ձեռօք մտաւոր աղօթից բուռն հարկանէ, 'ի կարծելն զԱստուած մերձ ինքեան՝ և այնպէս ընդ նմա խօսել, ինքն ընդ աստուածային գիտութեան՝ բարձրանայ 'ի լուսաւոր վայրս երկնից աստուածային կայանին։ Նման այսորիկ նախ քան զուսանելն զառաջակայ խորհրդածութիւն աղօթից սրբոյ պատարագին՝ զաղօթելոյ Ճանապարհն պարտիմք գիտել, թէ մտացն է ներգործութիւն աղօթք, և իղձք սրտին տոփման, և ոչ բարբառոյ կամ բերանոյ. և ոչ կարեմք զնա լսելի առնել Աստուծոյ, բայց եթէ միտք արտաքոյ եղեալ ամենայն զբաղմանց՝ զիւրն ներգործեսցէ իմացութիւն. որ է այլ ոչ ինչ, որպէս կարծեմ, բնաւորապէս նմա, բայց միայն առ Աստուած համբառնալն, և նորա լուսոյն ընուլն. յետ որոյ և այնպէս ուղղել կարող է զմարմնոյս Ճանապարհ։

Արդ պատարագիչք եղեալ ծանիցուք զպատարագելն ոչ այլ ինչ, բայց միայն խօսակցութիւն Աստուծոյ. և խօսիմք ընդ Աստուած՝ ոչ եթէ զայն ինչ զոր նա ոչ գիտէ՝ 'ի յուշ նմին ածելով, այլ զգիտելի նմա խորհուրդն մեր՝ յօժարական կամօք 'ի պէտս փրկութեան աշխարհի առ նոյն խօսել։ Եթէ մեք մտաւորապէս զնոյն ոչ ծանիցուք, և զիղձս փափաքանաց ընդ աղօթելն ոչ զուգեսցուք, այլ վարանեալ խորհրդով միայն՝ Աստուծոյ վարկցուք ուսուցանել, Աստուած մնայ և այնպէս յիւրում գիտութեան յոչ մեր Ճանաչելն, և մեք դատարկ և անշահ դառնամք յերեսաց նորա, զնա ոչ տեսական աչօք մտացն տեսեալ, և ոչ պարգև ընկալեալ։ Որ ծանուցեալ՝ որոց հաւատացաւ այս գործ պաշտաման, ոչ ինչ այլ այսպէս զգուշալի լիցի, որպէս զմիտս մաքրել. մանաւանդ զի և ամենայն սպառահարկութիւն պաշտաման պարկեշտութեան մերոյ՝ սորին վասն պատրաստեցաւ, եթէ կուսութիւն, եթէ զգեստուց բարեձևութիւն, եթէ յաշխարհական կենաց որոշողութիւն. որպէս զի յապահովացեալ միտքն առ ինքն եկեսցէ, և զիւր լոյսն տեսանիցէ։ Իսկ եթէ յամենայն աղօթից ժամանակս այս պահանջի 'ի մէնջ, որքան առաւելապէս 'ի խորհուրդ սրբոյ պատարագին,

յորում ոչ թէ սոսկ միայն աղօթեմք, այլ հաւատարմա-
պէս և ընտանեբար ընդ Աստուած 'ի խորհուրդ մտա-
նեմք, և բարեկամաբար ընդ նմա խօսիմք։ Եթէ 'ի
սոսկալւոյն այն ժամ ազնիւ և մաքուր միտքն ոչ լինիցի՝
յանձին ցաւոց և արտաքին զբաղմանց, յանդգնութիւն
առաւելապէս է մեզ կարծել զաղօթելն, քան թէ փրկ-
կութիւն։ այլ պարտ է որպէս զի 'ի խորհրդակցելն
իմանալի մտացս՝ ճաշակելով զքաղցրութիւն խորհրդոյն
ըմպիցեմք, և ապա այլոց հրամայիցեմք, «Ճաշակե-
ցէք և տեսէք, զի քաղցր է Տէր»։

Եւ այս ոչ եթէ դժուարին կիրք, կամ արտաքոյ
բնութեանս, այլ բնաւորապէս և ընտանի. քանզի ի-
մացող մտացս չիք այլ ինչ սնունդ կամ կերակուր ան-
զեղջ, բայց եթէ գիտութիւն Աստուծոյ. քանզի յա-
մենայն յայլ իրս ածեալ՝ ապաշաւն է զկնի. իսկ առ
Աստուած վերացեալ՝ ուրախութիւն և ցնծութիւն և
անտարակոյս զուարճականութիւն, այն զոր ետ մեզ
Պօղոս. «Ուրախ լերուք 'ի Տէր յամենայն ժամ, և
դարձեալ ասեմ, ուրախ լերուք»։ Իսկ եթէ օտար յայս-
պիսի մաքրութենէ մտաց՝ և այլով խորհրդով, և ոչ
յաստուածային սիրով 'ի սրբագործութիւնս ձգտիմք,
յիրաւի է ոչ քաղցրանալն սորա 'ի քիմս մեր, և մեծ
պատիժն առ Աստուած մեղանչելոյն։

Ընդէ՞ր և ոչ յանձանց իսկ տամք զկրաւն՝ ըստ առա-
ցելումն. քանզի ընդ մարդ խօսելով՝ զուշ մտաց հար-
կաւորապէս ընդ բարբառն ուղերձեմք, մի՛ արդեօք 'ի
վայելչական կարգէ բանին խոտորեալ՝ այպանիցիմք. իսկ
զԱստուած սոսկ բարբառով առանց գործակցութեան
մտաց կարծեմք հաշտեցուցանել։ Ո՛վ թէ ո՞րքան յի-
մարութիւն ըստ այսմ մասին այսօր մածեալ զմեօք
տեսանեմք, և 'ի քննել զնոյն ոչ վեհերիմք, որպէս զի
զղջումն ըստ յանցանացս թերևս կարասցուք յանձինս
ձգել։ Ո՞ր բան ոչ ողբասցէ զմեզ՝ որ ջանամք ջանալով,
և նիւթեմք և համբարեմք զոչինչ։ Եւ այս ո՞րպէս.
քանզի ջան մեր և աշխատութիւն ոչ թէ առ 'ի զմիտսն
յաղօթսն ուղղել, այլ միայն զթիւս սաղմոսացն գլխել,
և 'ի բազմացուցանելն զնա երագընթաց լեզուաւն մի-
տեալ. և կատարումն աղօթից զայն համարիմք, իսկ
թերութիւն՝ զոչ նորին յաճախելն։

Սուրբ ուսաք, սուրբ վարժեցաք, ով ստացաւ զմեզ այսպիսի մտաւոր բաղձանմանցս աշակերտ: Սաղմոսերգուն հրամանս տայ սաղմոս ասել նմա՝ ոչ բազում, այլ իմաստուն, ոչ աղաղակել, այլ 'ի միտ առնուլ. և առաքեալ՝ զահանայ և սաղմոս ասել Աստուծոյ 'ի սիրտս՝ հրամայեաց: Ո՞ր էր օրինագիրն որ զսոցայն տապալեաց և զիւրն ուղղեաց, բայց թէ սկզբնաչարն սատանայ: Որպէս հաւատամք իմանալոյն Աստուծոյ զբարբառ ձայնից քաղցրացուցանել, կամ զիա՞րդ յուսամք այնուիկ զաղօթսըն կատարել[1]: Տէրն Ճրագ մարմնոյն լուսատու՝ ոչ զձայնն ասաց, այլ զմիտսն. նորա առատանալոյն մեզ լուսաւորել, և ոչ անհամաճար կցորդիցն աղաղակաւ, ուստի ոչ միտքն քաղցրանայ, և ոչ լսելիք հեշտանայ: Ձայնք և եղանակք ողբականք և ուրախականք յեկեղեցի՝ մնացին լուսաւորութենէ օգնական՝ երաժշտական արհեստիցն տուան, և ոչ թէ զաղօթից սահման կարող են լնուլ: Իսկ մեք զմիտս նոցա յերիւրմանն և բեկբեկելոյն հանճարոց ծառայ տուեալ, և 'ի մեծ և 'ի ծայրագոյն բարւոյն 'ի լուսաւորութենէ աղօթիցն թափուր գտաք. զոր օրինակ որ զճշմարտութիւնն թողու, և և ընդ նորին օրինակն պշնու:

Ահ թէ որքան է թմբրութիւնս: Ո՞չ գիտէք եղբարք՝ զձայնս աշխարհականաց պարարիչ երաժշտական զօրութեանքն յեկեղեցի սահմանեալ, որպէս զի զօրութիւն արհեստին քաղցրացեալ որտից նոցա՝ կակղացուսցէ զնա և մեղկացուսցէ. որպէս մրմունջք խաղուցն 'ի չարն, այսպէս և այս 'ի յերկիւղն. իսկ 'ի մեր եղանակացս այսպիսի համեղութիւն ամենևին տեղի ետ, ընդ որս ոչ թէ միայն չքաղցրանան լսողքն, այլ և ընդ լսելն տաղտապեալ տագնապին և տեղի տան. և մեք անզեղջ կամք որպէս բարեկարգութիւն զնոյն համարիմք, և զնուազութիւն՝ աստուածային պատուիրանացն թերութիւն:

Զէ եղբարք՝ ոչ է ընթացս մեր ընդ Ճանապարհն ճշմարտութեան, և ոչ 'ի հետս սրբոց հարցն, որք զայս կրօնաւորութեան ճանապարհս գտին, նոքա զօրակութիւն աղօթիցն խորատեցին գիտել, և ոչ զքանակու-

1 Յայլում օրին. Աւարտել:

թիւն։ Այլ մեք հակառակ այնմ՝ զչափ համարոյ սաղմոսերգութեան՝ երագութեանն զրեմք, և անպտուղ 'ի յերկար ժամանակաւ սերմանելոյ զնոյն գտանեմք. քանզի պտուղ աղօթից է սէրն և խնդութիւնն և խաղաղութիւնն առ Աստուած։ Իսկ մեք զայս և ոչ ընդ երկար ժամանակաւ կարողացաք ստանալ, զոր հայրքն մեր 'ի դոյզն ժամանակս ընդգրկեցին։ Պարտ է ապա զգալ զտկարութիւնս, և մի կապել մարմնոյ և լեզուի ծանրութիւն բեռանց սաղմոսաց դժուարակրաց, և մըտաց մատամբ ոչ խթել 'ի նոսա. այլ այնչափ ճաշակել զերկարութիւն աղօթիցն, որչափ սա զօրէ հալել և ծակել, զի մի լիցուք անբան պաշտօնեայք Աստուծոյ, իբրև զնոսա՝ որք առ կուռսն անմռունչս երթային՝ և գային։

Որպէս կարողանամք զայս ուղղել՝ ասիցէ ոք. կարծեմ ոչ ինչ այլ այնպէս մարզիչ զմեզ յուղիղս ճանապարհ, ըստ որում յեկեղեցի աղօթելն. զոր 'ի հակառակէն ստուգեսցուք. զի արտաքոյ սորա լինիմք մտածելով թէ հեռի լինիմք յԱստուծոյ, ըստ որում ծառայն արտաքոյ տաճարին յերեսաց արքային։ Իսկ առ այս կարծիս անզգոյշ լինիմք յաղօթելն, խառնելով ընդ սաղմոսելն գործ և ընդ գործն շատխօսութիւն, ուտի ծնանի դատարկաբանութիւն, և անտի խեղկատակութիւն. լեալ այնուհետև փոխանակ հաշտելոյն ընդ Աստուծոյ աղօթիւքն՝ խռովութիւն կրկին, ըստ որում զեկուցանէ Պօղոս. « Մի՛ տգեղ բանիւք տրտմեցուցանէք զհոգին սուրբ Աստուծոյ, որով կնքեցարուքն »։ Իսկ զիա՞րդ հնար է ոչ միայն զմիտս՝ այլ և զլեզու տուեալ նանրութեան ծառայ՝ միաւորաբար աղօթել. ուստի զգուշացեալ՝ հարկաւորապէս զեկեղեցի տեսցուք խօսակցութեան Աստուծոյ պատշաճ, ուր հպատակեմք լեզուոյ առ լռութիւն, և մարմնոյ առ արիութիւն։ Ո՛չ ի յամենայն տեղի է Աստուած, հաւատամ և ես, բայց ես ոչ յամենայն տեղւոջէ առ նա՝ այլ միայն աստ հաւատամ կացեալ զանձն առաջի նորա. ուր և զպտուղ հաւատոցն տամ զգուշութ̄ի մարմնոյս. իսկ յորժամ սա զգուշանայ օր ըստ օրէ, առաջնորդ լինի մտացս մաքրութեան առ 'ի կարող լինելոյ և սմա մտանել յիմանալի կայանսն Աստուծոյ, ըստ որում մարմինս 'ի զգալիս. ա-

պա թէ ոչ՝ և դեռ ևս մարմնոյս զգուշանայ երկնչի և խնդրէ զգալի տունս, որպէս հաւատացից, թէ հրեշտակ աղօթիցն տեսանէ զերեսս Հօրն իմոյ որ յերկինս է. իսկ նորա ոչ արարեալ զերթևեկութիւն անդր 'ի խաղաղութենէն որ ընդ Աստուծոյ, դեռ ևս բացատրութեամբ հեռի եմ, ոչ ունելով ապա զծանօթութիւն խաղաղութեամբն՝ որպէս Հայր առ Որդի, անպատուղ եմ 'ի խօսելոյն առ նա, և դեռ ևս ընդ ծառայութեամբ երկիւղին գրաւեալ. և որ երկնչի, չէ կատարեալ 'ի սէրն, աստուածաբանն գրեաց Յովհաննէս:

Արդ որ դեռ ևս զմեր սէրն չեմք կատարեալ առ աստուած ուղղել կամ զխաղաղութիւն, այլ 'ի ներքոյ եմք տանջանաց, որքան ժպրհութիւն է այլոց բարեխօսել պատարագաւն: Օ՛ինչ պարտ է ասել, բայց թէ զլեզուս 'ի քիմս կցել. և որ ոչ եմ՝ որպէս նայն էր յաշխարհիս յայսմիկ, զիա՞րդ առ նա համարձակաբար խօսել կարիցեմ: Այլ պարտ է զծառայական երկիւղ՝ որոց 'ի բարեկամաց կարգի Աստուծոյ դասեցաք, 'ի բաց ընկենուլ, և սիրել զԱստուած, վասն զի նա նախ սիրեաց զմեզ, ամաչել 'ի նմանէ պատուիրանազանցութեամբն, և ոչ երկնչել միայն. զի այսքան անօրութիւն առաքինութեան քննել և ունել քահանայից հարկաւոր է, որք ծայրագոյն խորհրդոյն են պաշտօնեայք, և Աստուծոյ սակս փրկութեան մարդկան խորհրդակիցք: Ոչ մոռանամ զտէրունականն առ իս ասացեալ. "Ի բերանոյ քումմէ դատեցայց զքեզ ծառայ չար". սակայն անձամբ անձինս յօժարիմ զրել զդատապարտութեանս կռուփ՝ քան պաճարապէս լռել, և ընդ լոյս պատուիրանին՝ որպէս ընդ խաւար սլանալ: Առ որ և ասացից իսկ. Ո՜վ անձն, թերևս բռնադատեցա՞ր յումեքէ. ոչ լուար 'ի կամս ապաստանեալ զկուսութիւնն, ասելով, "Ո՞ր կարողն է տանել տարցի": Դու ինքնին գերազանց օրինացն հասարակականի կարգեցեր քեզ շաւիղս, ընտրեցեր զտեառն հոգալ և ոչ զմարդոյ, սուրբ լինել ոչ միայն մարմնով այլ և հոգւով, և հաճոյ Աստուծոյ, ընդ այնր և 'ի սոսկալիդ ժըպրհեցար աստիճան:

Արդ եկ և կացուցից զքեզ ընդդէմ բանիս դատախազի. զի՞նչ է որ խափանէ զքեզ 'ի հոգալոյն զԱստու-

ծոյ, այսմ առաջի բազում վկայից երեւելդ պարտական։ Ո՛չ ինչ ըստ ճշմարտութեան, այլ թէ ըստ քում կամացդ դանդաղութեն։ Ո՛վ թշուառական, և թէ հեշտութեանդ սիրելիր ծառայել և աշխարհի լինել կենդանի, մեռար՝ 'ի յումմէ բռնադատելոց նմին ձեւով և կրօնիւք անձնիշխան կամացդ տիրող. որ փառք, որ հեշտութիւն, որ պատիւ կամ իշխանութիւն, երախտիք, կամ սիրելութիւն, մշտնջենաւորութին կամ անմահութիւն առ 'ի գԱստուած սիրելոյն զքեզ զղջացոյց։ Այր անմաքուր, և ատենին Քրիստոսի իրաւամբք պատժապարտ, թերեւս ոչ տեսեր, և կամ լուար խաւարեալդ յիմաստութենէ, զի նմին վասն թագաւորք զփառս երկրորդ վարկան՝ իբր զանցաւոր առ մշտընջենաւոր. և իշխանք տնանկացան, մարդիկ առոյգք և զուարթք ընդ սուր և ընդ հուր որպէս ընդ շուշանս հոլոտաց խաղացին, հաստատուն զյոյս անլախճան կենացն՝ առաջի արթուն մտացն արձանացուցեալ։ Թերեւս դու իմաստնացար քան զնոսա, վերջինդ ծնունդ՝ ժամանակի վերջնոյ՝ ապաքէն մշակ անպիտան։ Ո՛չ գիտես 'ի հանդէս կարգեալ զքեզ, և ոչ 'ի հանգիստ։ Հանդիսան անդամնօք է, ուր Պօղոս բազում աշխատութեք ասէր մտանել։ Դա[1] ընդ սուր մարտեաւ, և դու յարհամարհանաց յաղթիս. նա գազանամարտիկ եղև, և դու 'ի սրամտութենէ պարտիս. նմա 'ի ծովէ և 'ի ցամաքէ վիշտ և տառապանք, դու յամենայնի զփառս և զհանգիստ խնդրես՝. նա աշխարհի խաչեալ՝ որպէս և աշխարհ նմա, իսկ քեզ աշխարհ խաչեալ, և դու նմին կենդանի։ Հոգին հեծութեան քում բարեխօս սիրով, և դու խեղկատակութեամբ և ատելութեամբ նմին տրտմեցուցիր։ Հրեշտակք պահապան շուրջանակի, և դու անզգուշութեամբ՝ նոցին զարհուրեցուցիր։ Կեանքըդ երազ ցնորմանց խուսափեալ 'ի քէն, և դու բռնութեամբ կամաց նմին ընկրկիր։

Ո՛վ յիմարութեամբ քան թէ յանցանօք թշուառացեալ, հայեաց յայսկոյս և յայն, թէ զո՞վ տեսանես 'ի սորին ընկերակցացն առանց դրժելոյ պահապանս. տես զի բազումք ջանացան և ոչ կարացին զայս զանձս հող-

1 Յովհաննէս միում Պօղոսի։

մոց ննջեցելոց սեփականել. այնպէս և դու ես նժդեհ և անցաւոր, ըստ որում ամենայն հարքն քո: Արդ՝ արա քեզ զհանգիստն 'ի մեղաց, մինչ չև երթեալ իցես. և մի՛ որպէս պատկերի շրջեսցիս՝ այդքան 'ի զուր յամենայն տեսակս ախտից խռովիր. Ծանիր ստուգապէս 'ի ճշմարտութեան հօրէ՝ զի հանապազ ունիս տալ ըստ ամենայնի մինչև 'ի չնչին դատապարտութի և 'ի մտածմն անսուանդրութի. զգուշեա զի քոյին չափովդ՝ յահեղն տեառն չափելոց է քոյդ գործոց քննութիւն յարդարոյն դատաւորէ: Պատրաստական լեր անձն թշուառացեալ՝ դարձն առաջ զդատաստանն քո առ քեզ. ուսիր, զի զանձն քո դատապարտես՝ որով զընկերն դատիս. զգուշեա, զի չես ազատելոց 'ի դատաստանացն Աստուծոյ՝ որ խիստ և անզղջ սրտիւ գանձեցեր քեզ զբարկութիւն: Արձանացիր 'ի յոյսն, մինչ դեռ ժամանակս 'ի ձեռս է, մատիր առ արքայն ահաւոր, մինչ դեռ 'ի շնորհացն աթոռ է, հաւատա գտանել շնորհս 'ի դէպ ժամանակի օգնականութեան: Պաշտամբք ուխտեցեր ծառայել, մի՛ հեղգանար. հրաժարեցեր յամենայնէ, մի՛ կարծեր ողորմութեամբ արդարանալ. յաշակերտութեանդ ես կոչցի, մի՛ 'ի տեառն ընթացակցութենէ նահանջիր. խաչին ես աւետարանիչ, մի՛ յաչաց քոց նորին տեսութիւն ատաւրացի. սրբոցն ես քանից ուսուցիչ, մի՛ վարք նոցին եղկելոյդ ծանրասցի. 'ի մշտնջենաւոր կեանս հրաւիրեցար, մի՛ քեզ առօրեայս քաղցրասցի: Աղօթեամբն առ մահն վարժեաց, հանգստեամբն զհանդերձեալսն խնամատարեա, փառօք զանվախճանն կշռեա, և այսպէս յամենայն իրս զճանապարհս ոտից քոց ուղղեա, անաչառ մատնեալդ դատաստանի:

Այլ դու նայեաց յիս ամենակարող տէր իմ Յիսուս յաթոռոյ փառացդ և շնորհաց, տալով անարժան քո ծառայիս զանխափան միտս՝ 'ի յոյս հանդերձեալ քո յուսոյդ: Տես, տէր, թէ որքան վտանգիւք յաղցաւոր կենացս կրից՝ 'ի զանազան հողմոց բքաբեր չնչմանց՝ երեքալեանն խռովութեամբ թշուառացեալ մտացս երերեալ. չունիմ տէր պտուղ գործոյ՝ քեզ նուէր հաշտութեան, քանզի զօր ունել կարծէի, մաշեալ պակասեաց 'ի քում ահաւորութեանդ ենկեալ գիտութիւն. և ես մերկ և թափուր կիսամեռ և ողբեկործան, միայն զմար-

դատաւորութեան ատեցդ կախիմ՝ բուռն հարեալ զդամանէ, և ոչ երբէք զԹողուլն ախորժեմ։ Հան զիս 'ի չարս շաւղաց՝ զորս բերանով իմով աղարտեմ. և ուստ զճանապարհս քո ուղիղս՝ որում կամօք սրտիս վկայեմ։ Ընդկայ 'ի մահիճս մեղաց, և ես յինէն զզարթութիւն մեղացս ' թողըքեմ. տուր զբժշկութիւն ախտացեալ հոգւոյս, որ առողջացուցանել զայլս խաբեմ։ Ո ուխտա հոծեալս բանի յեկեղեցիդ անդրանկաց՝ առաջի ամենայն երկրպագանաց քոց նուիրեմ. կերիցեն տնանկք, և յագեսցին 'ի սմանէ, և օրհնեսցեն զքեզ՝ որ զտէրդ խնդրեն։ Ո աղօտացեալ քո լոյս բարեկամացն ցուցանեմ. յիշեսցեն սովա, և դարձցին առ տէրդ, որք 'ի ծագաց երկրէ քումդ գիտութեան փափագեն։ Քեզ փառք, պարծանք և գովու աշխարհի, 'ի յերկինս փառաւորեալ յաւիտեանս. ամէն։

## ԶԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ԱՆՈՒԱՆԵԼՆ ԶՏՈՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԵԿԵՂԵՑԻ

ԵԿԵՂԵՑԻ անուն տիրապէս 'ի վերայ ժողովրդեանն առնու՝ քան 'ի տաճարն. ըստ այնմ, զոր Աստուած առ Մովսէս ասաց. "Եկեղեցացո ինձ զժողովուրդդ", այսինքն ժողովեա։ Եւ գիրք ժողովողին եկղեսիաստէս կոչի, որ է ժողովող։ Ապա ըստ պարզ տեսութեան ժողովքն մարդիկս, և ոչ եթէ տունս. և սա համանունաբար սոցա կոչի եկեղեցի՝ իբր ժողովարան. նա զի և մի հոգի ընկալան 'ի շնորհացն Աստուծոյ տունս և մարդիկս. և անձնաւորեցաւ և սա զօրութեամբ հոգւոյն Աստուծոյ 'ի ձեռն օրհնութեան հաւասար նոցա. և զմի հոգի ունելով միով անուամբ կոչել տանս և բնակչացն վայելուչ է, զոր և ուսուցանէ մեզ պատմութիւն գործոց առաքելոցն հաւանաբար, թէ յօրն պենտակոստէից սաստիկ հնչումն Հոգւոյն որ 'ի յերկնից՝ նախ զտունն ելից յորում նստէին առաքեալքն, և ապա նստաւ իւրաքանչիւր 'ի վերայ նոցա, զայսպա խորհուրդն ազդելով. այսինքն զի ամենայն եկեղեցի նախ ինքն ընդունի զՀոգին Աստուծոյ, և ապա զմեզ

1 Ցոր. միում Վերտոյս ։

ծնանի աւազանին արգանդաւ հոգեւոյն , և անձնցու-ցեալ վարդապետութեան ատեամբք , 'ի զանազան վի-ճակս աստիճանաց յետ կատարման հոգևոր հասակին՝ վիճակէ զոմանս ։ Իսկ զորս ոչ առ սոյնս զօրէն , նոքօք հովուէ , և ընդ յարկաւ իւրով միշտ ամփոփակեալ պարսպէ ։ Նոյա ուրեմն մի մարմին են յանշնչական ար-ձանաց տաճարս ՝ կանգնեալ , և որդիքն առ 'ի սմանէ ծնեալք միով հոգւով կենդանացեալք ։ Ուստի և գիրք սուրբք և օրհնութիւնք երգոց՝ եզականապէս որպէս ընդ մի դէմս անձին խօսին ընդ նոսա զուրախարար և զաւետեաց հնչմունս ։ Սակայն մեզ պարտ է իմանալ , թէ առ մեզ են ամենայն խորհրդածութիւնք բարբա-ռոցն , որք 'ի գիրկս նորին մնեալք խրախճանամբ 'ի Քրիստոս 'ի փեսայն նորա ։ Զայս և առաքեալ գը-րեաց ․ " Յորժամ գայցէ եկեղեցին ամենայն 'ի մի վայր , ոչ է տուն տեառն տեղի ձեզ հաց ուտելոյ " ։ Եւ տէրն առ Պետրոս ․ " Ի վերայ քո շինեցից զիմ եկեղեցի " , ու-ղիղ դաւանութեան հաւատացուցանել զքրիստոնէից ժո-ղովուրդս նշանակեալ ։

## ԶԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ԻԳԱԿԱՆ ԱՆՈՒԱՄԲ ԶԵԿԵՂԵՑԻՍ ԿՈՉԵԼ ԵՒ ՀԱՐՍՆ ԱՆՈՒԱՆԵԼ ԻՍԿ ԶՔՐԻՍՏՈՍ ՓԵՍԱՅ ՔԱՆԶԻ ԱՌԱՔԵԱԼ ԱՍԷ

ՏԷՐՆ մեր ասաց յաւետարանին ․ "[1] Նմանեցաւ ար-քայութիւն երկնից առն թագաւորի՝ որ առնիցէ հար-սանիս որդւոյ իւրոյ " ։ Եւ առաքեալն նորին 'ի հպա-տակութիւն առն և կնոջ խրատելով զեփեսացիսն՝ յա-ւելու ․ " Խորհուրդս այս մեծ է , բայց ես ասեմ 'ի Քրիստոս իսկ և յեկեղեցի " ․ համարձակութիւն տան մեզ՝ զեկեղեցի և զՔրիստոս 'ի տիպ փեսայի և հարսին օրինակել , այնու զի օտար և մաքուր 'ի կար-ծեաց ախտաւոր թուլութեան ամենասուրբն միտք ։ Պարտիմք և մեք այսմ վեհագոյն բարձրանալ ; և զխոր-հրդոյս քննել զօրութիւն ․ զի ոչ թէ միայն 'ի նոր կտա-կարանս , այլև 'ի հնոցն է զսոյն ուսանել , ըստ որում ասէ Եսայի ․ " Որպէս ուրախ լինի փեսայ առ հար-

1 Յօրին ․ միում Անընչական որյանս կանգնէալ ։

ծոց անդ մօրն դարձեալ լուծանել։ Այլ զբանաւորս զայս մարդ յետոյ քան զկենաւսն 'ի ներս մուծեալ՝ որպէս ուսաք 'ի պատմութենէն, շաղկապումն և խառնուած արար սովաւ իմանալեաց և զգալեացն էութեանց. քանզի առ հող յերկրէ՝ ուստի անասնոցն ջոկք գոյացան, և փչեաց յերեսս նորա շունչ կենդանի, որով իմանալի պատկերն Աստուծոյ 'ի նա եկաց, և եղև մարդն՝ հողեղէն որպէս զանասունսն, և պատկերակից Աստուծոյ՝ որպէս զհրեշտակս իմանալին այն հոգւով. ոչ վայրապար զայս տնօրինեալ, որ սեպհական զանունն իւր մարդասէր յորջորջէր, "Ես Աստուած մարդասէր եմ", ասէ. այլ որպէս աղօտապէս ձգտիմք յանհաս խորոցն քննութիւն, զի նիւթ և պատճառ ունիցի մարդն զմարմինս ապաշխարութե̃, և ներողութե̃ն Աստուծոյ. ներելի յԱստուծոյ, վասն զի բնաւորապէս ունի զինեալ զօրէնսն հակառակ օրինաց մտացն, և գերիչ յօրէնսն մեղաց. և զի գերի 'ի մեղսն՝ և ոչ թէ յօժարի, արդար իրաւունքն տայ նմա տեղի ապաշխարութեան։ Իսկ ապաշխարէ, քանզի հաճեալ է ընդ օրէնսն Աստուծոյ ըստ ներքին մարդոյն. և 'ի կործանելն յոչ հաճոյսն՝ բնաւորապէս ունի զղջումն։ Այսպէս մարդն իմաստնացաւ զյանցանելն զգալ, և ապաշխարել. և արդարն Աստուած՝ դատեցաւ յետ այնորիկ նմին զթողուլն. ըստ այնմ, զոր տէրն ասաց. "Որդիք աշխարհիս իմաստնագոյն են քան զորդիս լուսոյ յազգս իւրեանց"։

Արդ քանզի ասացեալս հաստատեցաւ լինել մարդոյս 'ի բանական և յանբան էութենէ մի կենդանի, պարտ է գիտել, ո՞ արդեօք իցէ բան սորա. մի՞ արդեօք յիմար լիցուք՝ կարծել զբարբառս 'ի մարմնոյս արտաքս հնչեալ, և ընդ փողս բախեալ, լեզուովս յերիւրեալ և 'ի յօդս ցնդեալ՝ գոլ բան. քանզի զայս և առ անասուն կենդանիս է տեսանել. նա զի և Աստուած, յորոյ պատկերն ստեղծաք, և հրեշտակք՝ որոց նմանեցաք, ոչ ունին զայսոսիկ զգործիս մարմնեղէն՝ որ զբանն յօդացուցանէ, սակայն տիրապէս են բանականք և ասին։ Ուրեմն ապա ոչ այս բան՝ որ կերպարանի շրթամբք, այլ ձայն նիւթական՝ որ զգենու զիմանալին բան, և նիւթականացս երևելի առնէ։ Իսկ եթէ եաք աննիւթ

միայն , որպէս զնոսա՝ որոց կցորդիմք բանիւս , ոչ կարօտանայաք ձայնին , այլ միայն իմացականապէս զներգործութիւն բանին միմեանց ազդեմք . որպէս և 'ի համասեռ ազգս է զայսոցիկ զտարացոյցն գիտել . զի ահա որ զհռոմայեցին խօսի 'ի լուր ինձ առ համազգին ձայն , զձայնն զգալի հաւասար ընդունիմք 'ի յունկան զգայարանս . սակայն իմանալին բան միայն առ նա ազդէ՝ որ զվարժումն ունէր նախակրթութեան : Այլ և այժմ ահա զտառս գրոյս յարմարելով՝ ազդումն ձայնիս խափանեալ է , և բանականս ներգործէ զիւրն . և սոյն տառ ոչ տեսանողացն միանգամայն ամենեցուն է գիտելի , այլ միայն վարժմամբ ներկրթութեամբ բանականին 'ի սոյն խորհողաց :

Զայս նախաշաւիղ բանիս ընախօսութիւն առ 'ի պէտս 'ի խոնարհ դիմելոյ ճառիս արարաք , ոչ արտաքուստ , այլ 'ի բնութենէ խրատել մեզ առ արհեստ սահմանի աղօթից . որոց մաղթեմ լսողացդ և ըստ այսմ մասին զիջանել առ ունկնդրութիւն , զոր 'ի պէտս օգտի հասարակաց մեր հիւսեմք :

“Աստուած հոգի է„ , ասաց տէրն , և յերկրպագուացս ոչ զպարանոցի խոնարհել կորացումն կամ զծնգաց մածուցումն , կամ զձայնի բարբառումն , այլ հոգւով և ճըշմարտութեամբ զերկիր պագանելն . այսինքն զիմանալի միտս առ իմանալին Աստուած վերաբերողապէս ձըգտեցուցանել . զի այս է որ զնա հաշտեցուցանէ[1] , և ոչ բարբառ բերանոյ : Սովաւ Մովսէս լռութեամբ աղաղակին զԱստուած ձանձրացուցանէր , մինչ ասէր . “Զի գոչես առ իս„ : Թերևս ձայնի գոչմանն կարծիցես 'ի նորբաձայնէն յերկինս հասեալ . և ոչ երբէք , այլ հոգւոյն աղաղակ : Այս ձայն էր՝ որ 'ի յոչ շարժել շրթանց , քահանայապետին՝ զԱննա արբեալ երևեցուցանէր : Սովաւ և Դաւիթ յաղաղակեն ասէր . “Խորհուրդք սրտի իմոյ առաջի քո յամենայն ժամ , տէր օգնական իմ և փրկիչ իմ„ . քանզի ոչ եթէ բացակայ է 'ի մէնջ Աստուած , որպէս զի ձայնիւն զգաստացուսցուք , այլ մերձ է յամենեսին . ըստ որում ասաց . “Աստուած մերձաւոր եմ ես , և ոչ հեռաւոր .

1 Ի միում օրին . Հէշտացուցանէ :

մերձեցարուք առ իս, և ես մերձեցայց առ ձեզ ,, ։ Արդ որպէս զնորա մերձ առ մեզ լինելն հաւատամք, այսպէս և մեք մերձեսցուք առ նա . և մերձ է Աստուած առ մեզ իմացականապէս և ոչ զգալի կերպարանօք . պարտ է և մեզ խօսել առ նա և մերձենալ առ նա՝ իմանալի հոգւով և ոչ զգալի բարբառոյս ձայնիւ . այլ նախ ամբառնալ զմիտս առ նա՝ և ապա թէ կարօտիմք, ընթացակից տալ զձայնս՝ մտացն ։

Իսկ եթէ միտքն՝ որոշ է յԱստուծոյ և ձայնն զգալի միայն առ նա խօսի, շատխօսութիւն է աղօթքն մեր հեթանոսաբար, որպէս ասաց տէրն . սակայն ընդ ուղիղն ախորժելով գնալ պողոտայ, նախ զայն հաւատասցուք՝ թէ մերձ է յամենեսեան Աստուած, ըստ որում ամենայն աստուածաշունչ գիրք հաստատեն . և ոչ է երկինք պատրուակ արարչին իւրոյ՝ առ 'ի թագուցանել զմեզ յամենատեսն աչաց . իսկ մեք ոչ եմք մերձ 'ի նա, վասն զի մոլորեցուցաք զմիտս մեր 'ի զանազան ընթացս կենցաղոյս, զայս որում կարելի էր զԱստուած տեսանել ։ Արդ դարձուցեալ զայն և ամփոփեալ 'ի վայրապար ցնդմանէն՝ 'ի վեր ճանապարհ նմին արասցուք, ամենասուրբ պատեհութեամբ անսպառ խորհրդովք խօսել ընդ Աստուած աղօթիւք, և մերձենալ 'ի նա, ըստ որում հրամանն ընկալաք ։ Քանզի նախ զիմարդ է հաւատալի յեխցս զօտարանալն, որ զանգործն տեսանէ՝ և նախ քան զգիտելն մեր, և զօրութիւն աղդման քննութեան անցանէ մինչև ցորոշումն շնչոյ և ոգւոյ, յօդից և ուղղոյ ըստ որում գրեաց առաքեալ ։ Զոր ոչ ինչ դանդաղելի է օրինակաւ հաստատել, 'ի պէտս գիտութեան մերձ նորա լինելոյն՝ և ուսուցանել զմերն առ նա մերձենալ ։ Զոր պարտ է համարել, որպէս թէ լուսաւոր ինչ լար յերկնից 'ի ստորին վայրս երկրի կախեալ, և մեր բուռն հարեալ զնմանէ, և զձեռս ձեռամբ փոփոխեալ, կարծիս տամք 'ի սկզբանն՝ որպէս թէ զլարն 'ի մեզ քարշեալ ածեմք . իսկ նա քանզի յերկինս արմատացեալ է, ոչ թէ 'ի ստորև բերի, այլ պնդագոյն փոփոխմամբն և բուռն հարկանելովն՝ զմեզ յերկրէ 'ի ճաճանչեղ վայրս երկնից վերածէ . այսպէս է և գիտութիւն Աստուծոյ հաստատեալ աստուածաշունչ գրովք՝ մերձ առ ամենեսեան զնա գոլ ։

Արդ եթէ ոք այնմ ասացելոցն տիրապէս սրտիւ հաւատայ, և զնմանէ որ մերձ է առ ամենեսեան՝ ձեռօք մտաւոր աղօթից բուռն հարկանէ, 'ի կարծելն զԱստուած մերձ ինքեան՝ և այնպէս ընդ նմա խօսել, ինքն ընդ աստուածային գիտութեան՝ բարձրանայ 'ի լուսաւոր վայրս երկնից աստուածային կայանին: Այսմ այտորիկ նախ քան զուսանելն զառաջակայ խորհրդածութիւն աղօթից սրբոյ պատարագին՝ զաղօթելոյ ճանապարհն պարտիմք գիտել, թէ մտացն է ներգործութիւն աղօթք, և խղճք սրտին տագնման, և ոչ բարբառոյ կամ բերանոյ. և ոչ կարեմք զնա լսելի առնել Աստուծոյ, բայց եթէ միտք արտաքոյ եղեալ ամենայն զբաղմանց՝ զիւրն ներգործեսցէ իմացութիւն. որ է այլ ոչ ինչ, որպէս կարծեմ, բնաւորապէս նմա, բայց միայն առ Աստուած համբառնալն, և նորա լուսոյն ընդունլն. յետ որոյ և այնպէս ուղղել կարող է զմարմնոյս ճանապարհ:

Արդ պատարագիչք եթէ ծանիցուք զպատարագելն ոչ այլ ինչ, բայց միայն խօսակցութիւն Աստուծոյ. և խօսիմք ընդ Աստուած՝ ոչ եթէ զայն ինչ զոր նա ոչ գիտէ՝ 'ի յուշ նմին ածելով, այլ զգիտելի նմա խորհուրդն մեր՝ յօժարական կամօք 'ի պէտս փրկութեան աշխարհի առ նոյն խօսել: Եթէ մեք մտաւորապէս զնոյն ոչ ծանիցուք, և զխղձս փափաքանաց ընդ աղօթեն ոչ զուգեսցուք, այլ վարանեալ խորհրդով միայն՝ Աստուծոյ վարկցուք ուսուցանել, Աստուած մնայ և այնպէս յիւրում գիտութեան յոչ մեր ճանաչելն, և մեք դատարկ և անշահ դառնամք յերեսաց նորա, զնա ոչ տեսական աչօք մտացն տեսեալ, և ոչ պարգև ընկալեալ: Զոր ծանուցեալ՝ որոց հաւատացաւ այս գործ պաշտաման, ոչ ինչ այլ այսպէս զգուշալի լիցի, որպէս զմիտս մաքրել. մանաւանդ զի և ամենայն սպասահարկութիւն պաշտաման պարկեշտութեան մերոյ՝ սորին վասն պատրաստեցաւ, եթէ կուսութիւն, եթէ զգեստուց բարեձևութիւն, եթէ յաշխարհական կենաց օրոշողութիւն. որպէս զի յապահովացեալ միտքն առ ինքն եկեսցէ, և զիւր լոյսն տեսանիցէ: Իսկ եթէ յամենայն աղօթից ժամանակս այս պահանջի 'ի մէնջ, ո՞րքան առաւելապէս 'ի խորհուրդ սրբոյ պատարագին,

յորում ոչ թէ սոսկ միայն աղօթեմք, այլ հաւատապէս և ընտանեբար ընդ Աստուած 'ի խորհուրդ մտանեմք, և բարեկամաբար ընդ նմա խօսիմք: Եթէ 'ի սոսկալին այն ժամ ահիւ և մաքուր միտքն ոչ լինիցի՝ յանձին ցաւոց և արտաքին զբաղմանց, յանդգնութիւն առաւելապէս է մեզ կարծել զաղօթելն, քան թէ փըրկութիւն: այլ պարտ է որպէս զի 'ի խորհրդակցելն իմանալի մտացս՝ ճաշակելով զքաղցրութիւն խորհրդոյն ընկլիցեմք, և ապա այլոց հրամայիցեմք, “Ճաշակեցէք և տեսէք, զի քաղցր է տէր”:

Նա այս ոչ եթէ դժուարին կիրք, կամ արտաքոյ բնութեանս, այլ բնաւորապէս և ընտանի. քանզի իմացող մտացս չիք այլ ինչ սնունդ կամ կերակուր անզեղջ, բայց եթէ գիտութիւն Աստուծոյ. քանզի յամենայն յայլ իրս ածեալ՝ ապաշաւն է զկնի. իսկ առ Աստուած վերացեալ՝ ուրախութիւն և ցնծութիւն և անտարակոյս զուարճականութիւն, այն զոր ետ մեզ Պօղոս. “Ուրախ լերուք 'ի տէր յամենայն ժամ, և դարձեալ ասեմ, ուրախ լերուք”: Իսկ եթէ օտար յայսպիսի մաքրութենէ մտաց՝ և այլով խորհրդով, և ոչ յաստուածային սիրով 'ի սրբագործութիւնս ձգտիմք, յիրաւի է ոչ քաղցրանալն սորա 'ի քիմս մեր, և մեծ պատիժն առ Աստուած մեղանչելոյն:

Ընդէ՞ր և ոչ յանձանց իսկ տամք զկրաւն՝ ըստ առացելումն. քանզի ընդ մարդ խօսելով՝ զուշ մտաց հարկաւորապէս ընդ բարբառն ուղերձեմք, մի արդեօք 'ի վայելչական կարգէ բանն խոտորեալ՝ այպանիցիմք. իսկ զԱստուած սոսկ բարբառով առանց գործակցութեան մտաց կարծեմք հաշտեցուցանել: Ո՛չ թէ ո՞րքան յիմարութիւն ըստ այսմ մասին այսօր մածեալ զմեօք տեսանեմք, և 'ի քննել զնոյն ոչ վեհերիմք, որպէս զի զղջումն ըստ յանցանացս թերևս կարասցուք յանձինս ձգել: Ո՞ր բան ոչ ողբասցէ զմեզ՝ որ ջանամք ջանալով, և նուէթեմք և համբարեմք զոչինչ: Նա այս ո՞րպէս. քանզի ջան մեր և աշխատութիւն ոչ թէ առ 'ի զմիտսն յաղօթսն ուղղել, այլ միայն զթիւս սաղմոսացն գլխել, և 'ի բազմացուցանելն զնա երագընթաց լեզուաւն միտեալ. և կատարումն աղօթից զայն համարիմք, իսկ թերութիւն՝ զոչ նորին յաճախելն:

Ուստի՞ ուսաք, ուստի՞ վարժեցաք, ո՜վ ստացաւ զմեզ այսպիսի մտօք բաղձալմանցս աշակերտ։ Սաղմոսերգուն հրամանս տայ սաղմոս ասել նմա՝ ոչ բազում, այլ իմաստութք, ոչ աղաղակել, այլ 'ի միտ առնուլ. և առաքեալ՝ զոհամալ և սաղմոս ասել Աստուծոյ 'ի սիրտս՝ հրամայեաց։ Ո՞ր էր օրինագիրն որ զաղօթսն տապալեաց և զիւրն ուղղեաց, բայց թէ սկզբնաւորն սատանայ։ Որպէս հաւատամք իմանալոյն Աստուծոյ զբարբառ ձայնից քաղցրացուցանել, կամ զիմարդ յուսամք այնուիկ զաղօթսրն կատարել[1]։ Տէրն ճրագ մարմնոյն լուսատու՝ ոչ զձայնս ասաց, այլ զմիտսն. նորա առաստանալոյն մեզ լուսաւորել, և ոչ անհամաձայն կցորդիցն աղաղակաւ, ուստի ոչ միայն քաղցրանայ, և ոչ լսելիք հեշտանայ։ Ձայնք և եղանակք ողբականք և ուրախականք յեկեղեցի մտացն լուսաւորութէ օգնական՝ երաժշտական արհեստիւքն տուան, և ոչ թէ զաղօթից սահման կարող են լինել։ Իսկ մեք զմիտս նոցա յերկիւղանն և բեկբեկելոյն համարոց ծառայ տուեալ, և 'ի մեծ և 'ի ծայրագոյն բարւոյն 'ի լուսաւորութենէ աղօթիցն թափուր գտաք. զոր օրինակ որ զճշմարտութիւնն թողու, և և ընդ նորին օրինակն պշնու։

Ո՛հ թէ որքան է թմբրութիւնս։ Ո՞չ գիտէք եղբարք՝ զձայնս աշխարհականաց պարարիչ երաժշտական զօրութեամբն յեկեղեցի սահմանեալ, որպէս զի զօրութիւն արհեստին քաղցրացեալ սրտից նոցա՝ կակղացուսցէ զնա և մեղկացուսցէ. որպէս մրմունջք խաղուցն 'ի չարն, այսպէս և այս 'ի յերկիւղն. իսկ 'ի մեր եղանակացս այսպիսի համեղութիւն ամենևին տեղի ետ, ընդ որս ոչ թէ միայն չքաղցրանան լսողքն, այլ և ընդ լսելն տաղտապեալ տագնապին և տեղի տան. և մեք անգեղջ կամք որպէս բարեկարգութիւն զնոյն համարիմք, և զնուազութիւն՝ աստուածային պատուիրանացն թերութիւն։

Զէ եղբարք՝ ոչ է ընթացս մեր ընդ ճանապարհն ճշմարտութեան, և ոչ 'ի հետս սրբոց հարցն, որք զայս կրօնաւորութեան ճանապարհս գտին, նոքա զորակութիւն աղօթիցն խորատեցին գիտել, և ոչ զքանակու-

1 Յայլում օրին. Աւարտել։

թիւն ։ Այլ մեք հակառակ այնմ՝ զչափ համարոյ սաղմոսերգութեան՝ երագութեամբն գրեմք, և անպտուղ 'ի յերկար ժամանակաւ սերմանելոյ զնոյն գտանիմք․ քանզի պտուղ աղօթից է սէրն և խնդութիւնն և խաղաղութիւնն առ Աստուած ։ Իսկ մեք զայս և ոչ ընդ երկար ժամանակաւ կարողացաք ստանալ, զոր հարքն մեր 'ի դոյզն ժամանակս ընդգրկեցին ։ Պարտ է ապա զգալ զտկարութիւնս, և մի կապել մարմնոյ և լեզուի ծանրութիւն բեռանց սաղմոսաց դժուարակրաց, և մըտաց մասամբ ոչ խթել 'ի նոսա․ այլ այնչափ ճաշակել զերկարութիւն աղօթիցն, որչափ սա զօրէ հալել և ծասկել, զի մի լիցուք անբան պաշտօնեայք Աստուծոյ, իբրև զնոսա՝ որք առ կուռսն անմռունչս երթային և գային ։

Որպէս կարողանամք զայս ուղղել՝ ասիցէ ոք․ կարծեմ ոչ ինչ այլ այնպէս մարզիչ զմեզ յուղիղս ճանապարհ, ըստ որում յեկեղեցի աղօթելն․ զոր 'ի հակառակէն ստուգեսցուք․ զի արտաքոյ սորա լինիմք մոռացելով թէ հեռի լինիմք յԱստուծոյ, ըստ որում ծառայն արտաքոյ տաճարին յերեսաց արքային ։ Իսկ առ այս կարծիս անզգոյշ լինիմք յաղօթելն, խառնելով ընդ սաղմոսելն գործ և ընդ գործն շատախօսութիւն, ուստի ծնանի դատարկաբանութիւն, և անտի խեղկատակութիւն․ լեալ այնուհետև փոխանակ հաշտելոյն ընդ Աստուծոյ աղօթիւքն՝ խռովութիւն կրկին, ըստ որում զեկուցանէ Պօղոս․ "Մի՛ տգեղ բանիւք տրտմեցուցանէք զհոգին սուրբ Աստուծոյ, որով կնքեցարուքն" ։ Իսկ զիա՞րդ հնար է ոչ միայն զմիտս՝ այլ և զլեզու տուեալ նանրութեան ծառայ՝ միաւորաբար աղօթել․ ուստի զգուշացեալ՝ հարկաւորապէս զեկեղեցի տեսցուք խօսակցութեան Աստուծոյ պատշաճ, ուր հպատակեմք լեզուաւ առ լռութիւն, և մարմնոյ առ արիութիւն ։ Օ ի յամենայն տեղի է Աստուած, հաւատամ և ես, բայց ես ոչ յամենայն տեղւոջէ առ նա՝ այլ միայն աստ հաւատամ կացեալ զանձն առաջի նորա․ ուր և զպտուղ հաւատոցն տամ զգուշութի մարմնոյս․ իսկ յորժամ սա զգուշանայ օր ըստ օրէ, առաջնորդ լինի մտացս մաքրութեան առ 'ի կարող լինելոյ և սմա մտանել յիմանալի կայանսն Աստուծոյ, ըստ որում մարմինս 'ի զգալիս․ ա-

պա թէ ոչ՝ և դեռ ևս մարմնոս զգուշանայ երկնչի և խնդրէ զգալի տունս, որպէս հաւատացից, թէ հրեշտակ աղօթիցն տեսանէ զերեսս Հօրն իմոյ որ յերկինս է. իսկ նորա ոչ արարեալ զերթևեկութիւն անդր 'ի խաղաղութենէն որ ընդ Աստուծոյ, դեռ ևս բացատրութեամբ հեռի եմ, ոչ ունելով ապա զծանօթութիւն խաղաղութեամբն՝ որպէս Հայր առ Որդի, անպտուղ եմ 'ի խօսելոյն առ նա, և դեռ ևս ընդ ծառայութեամբ երկիւղին գրաւեալ. և որ երկնչի, չէ կատարեալ 'ի սէրն, աստուածաբանն գրեաց Յովհաննէս:

Արդ որ դեռ ևս զմեր սէրն չեմք կատարեալ առ Աստուած ուղղել կամ զխաղաղութիւն, այլ 'ի ներքոյ եմք տանջանաց, որքան ժպրհութիւն է այլոց բարեխօսել պատարագաւն: Ո՞չ պարտ է ասել, բայց թէ զլեզուս 'ի քիմս կցել. և որ ոչ եմն՝ որպէս նայն էր յաշխարհիս յայսմիկ, զիա՞րդ առ նա համարձակաբար խօսել կարիցեմ: Այլ պարտ է զծառայական երկիւղ՝ որոց 'ի բարեկամաց կարգի Աստուծոյ դասեցաք, 'ի բաց ընկենուլ, և սիրել զԱստուած, վասն զի նա նախ սիրեաց զմեզ, ամաչել 'ի նմանէ պատուիրանազանցութեամբն, և ոչ երկնչել միայն. զի այսքան անօրութիւն առաքինութեան քննել և ունել քահանայից հարկաւոր է, որք ծայրագոյն խորհրդոյն են պաշտօնեայք, և Աստուծոյ սակս փրկութեան մարդկան խորհրրդակիցք: Ոչ մոռանամ զտէրունականն առ իս ասացեալ. “Ի բերանոյ քումմէ դատեցայց զքեզ ծառայ չար”. սակայն անձամբ անձինս յօժարիմ գրել զդատապարտութեանս կռուփ՝ քան պաճարապէս լռել, և ընդ լոյս պատուիրանին՝ որպէս ընդ խաւար սլանալ: Առ որ և ասացից իսկ. Ո՞վ անձն, թերևս բռնադատեցա՞ր յումեքէ. ոչ լուար 'ի կամս ապաստանեալ զկուսութիւնն, ասելով, “Որ կարողն է տանել տարցի”: Դու կնքնին գերազանց օրինացն հասարակականի կարգեցեր քեզ շաւիղս, ընտրեցեր զտեառն հոգալ և ոչ զմարդոյ, սուրբ լինել ոչ միայն մարմնով այլ և հոգւով, և հաճոյ Աստուծոյ, ընդ այնր և 'ի սոսկալին ժըպրհեցար աստիճան:

Արդ եկ և կացուցից զքեզ ընդդէմ բանիս դատախազի. զի՞նչ է որ խափանէ զքեզ 'ի հոգալոյն զԱստու-

ծոյ, այսմ առաջի բազում վկայից եղեալդ պարտական։ Ոչ ինչ ըստ ճշմարտութեան, այլ թէ ըստ քում կամացդ զանդաղութէ։ Ով թշուառական, և թէ հեշտութեանդ սիրէիր ծառայել և աշխարհի լինել կենդանի, մեռար՝ 'ի յումմէ բռնադատեալ նմին ձեռվ և կրօնիւք անձնիշխան կամացդ տիրող. որ փառք, որ հեշտութիւն, որ պատիւ կամ իշխանութիւն, երախտիք, կամ սիրելութիւն, մշտնջենաւորութի կամ անմահութիւն առ 'ի զԱստուած սիրելոյս քեզ զղջացոյց։ Նոյն ամենեքեան, և առաւելն Արիստոտի իրաւանքք պատժապարտ, թերևս ոչ տեսեր, և կամ լուար խաւարեալդ յիմարութենէ, զի նմին վասն թագաւորք զփառս երկրորդ վարկան՝ իբր զանցաւոր առ մշտնջենաւոր. և իշխանք տնանկացան, մարդիկ առողջք և զաւարթք ընդ սուր և ընդ հուր որպէս ընդ շուշանս հոլովեալ խաղացին, հաստատուն զլոյս անվախճան կենացն՝ առաջի աթոռն մեծացն արձանացուցեալ։ Թերևս դու խնամոտացողաց քան զնոսա, վերջինդ ծնունդ՝ ժամանակի վերջնոյ՝ ապաքէն միակ անպիտան։ Ոչ գիտես 'ի հանդէս կարգեալ զքեզ, և ոչ 'ի հանգիստ։ Մանգիստան մնացական է, ուր Պօղոս բազում աշխատութե̃ առեր մտանել։ Նա ընդ սուր մարտեաւ, և դու յարհամարհանաց յաղթիս. նա զազանամարտիկ եղև, և դու 'ի սրտմտութենէ պարտիս. նմա 'ի ծովէ և 'ի ցամաքէ վտանգ և տառապանք, դու յամենայնի զփառս և զհանգիստ խնդրես'. նա աշխարհի խաչեալ՝ որպէս և աշխարհ նմա, իսկ քեզ աշխարհ խաչեալ, և դու նմին կենդանի։ Փոքին հեծութեան քում բարեխօս սիրով, և դու խեղկատակութեամբ և սնոտութեամբ նմին տրտմեցուցիր։ Հրեշտակք պահապան շուրջանակի, և դու անզգուշութեամբ՝ նոցին զարհուրեցուցիր։ Սեանքըդ երազ ցնորական խուսափեալ 'ի քէն, և դու բռնութեամբ կամաց նմին ընկրկիր։

Ով յիմարութեամբ քան թէ յանցանօք թշուառացեալ, հայեաց յայսկոյս և յայն, թէ զով տեսանես 'ի սոյին ըմբռնողացն առանց դրժելոյ պահապանս. տես զի բազումք Զանացան և ոչ կարացին զայս զանձս հող-

1 Յօրինակի միում Պահանջէ։

մոց խնդրեանց սեփականել. այնպէս և դու ես նժդեհ և անցաւոր, ըստ որում ամենայն հարքն քո: Մի՛ այլ արա քեզ զհանգչելն 'ի մեղաց, մինչ չև երթեալ իցես. և մի՛ որպէս պատկերի շրջողդ՝ այդքան 'ի զուր յամենայն տեսակս ախտից խռովիր. ծանիր ստուգապէս 'ի ճշմարտութեան հօրէ՝ զի հանճար անձինս տալ ընդ ամենայնի մինչև 'ի չնչին դատարկաբանութի և 'ի մնոտի ունանայնութի. գիտեա զի քոյին չափովդ՝ յահեղն ատեան չափելոց է քոյդ գործոց քննութիւն յարդարոյն դատաւորէ: Պատրաստական լեր անձն Թշուառացեալ՝ զարձն ապա զդատաստանն քո առ քեզ. ուսիր, զի զանձն քո դատապարտես՝ որով զընկերն դատիս. գիտեա, զի չես ապրելոց 'ի դատաստանացն Աստուծոյ՝ որ խիստ և անողորմ սրտիւ զանձեցեր քեզ զբարկութիւն: Մերձեցի՛ր 'ի յոյսն, մինչ դեռ ժամանակս 'ի ձեռս է, մատի՛ր առ առքայն ահաւոր, մինչ դեռ 'ի շնորհացն աԹոռ է, հաւատա զառնել շնորհս 'ի դէպ ժամանակի օգնականութեան: Պաշարմունք ուխտեցեր ծառայել, մի հեղգանար. հրաժարեցեր յամենայնէ, մի կարծեր ողորմութեանց արդարանալ. յաշակերտութեանց ես կարգի, մի 'ի տեառն ընԹացակցութենէ նահանջիր. խաչին ես աւետարանիչ, մի յաչաց քոց նորին տեսութիւն ստուերասցի. սրբոցն ես բանից ուսուցիչ, մի վարք նոցին եղկելոյդ ծանրասցի. 'ի միանձնեայ կեանս հրաւիրեցար, մի քեզ առօրեայս քաղցրասցի: Ներողութեանն առ մահն վարժեալ, հանդուրժեալն զհանդերձեալսն խնամատարեա, փութօք զանկախձանն կշռեա, և այսպէս յամենայն իրս զճանապարհս ոտից քոց ուղղեա, անաչառ մատնեալդ դատաստանի:

Այլ դու նայեա յիս ամենակարող տէր իմ Յիսուս յաԹոռոյ փառացդ և շնորհաց, տալով անարժան քո ծառայիս զանխռով միտս՝ 'ի յոյս հանդերձեալ քո յուսոյդ: Տես, տէր, Թէ որքան վտանգիմք յանցաւոր կենաց կրից՝ 'ի զանազան հողմոց բքաբեր շնչմանց՝ երկբայեանն խռովութեանց Թշուառացեալ մնացի երկբեալ. չունիմ տէր պտուղ գործոց՝ քեզ նուէր հաշտութեան, քանզի զոր ունել կարծէի, մաշեալ պակասեաց 'ի քում ահաւորութեանց եկեալ գիտութիւն. և ես մերկ և Թափուր կիսամեռ և ոգեկործան, միայն զանր-

դասիրութեան ոտիցդ կախիմ՝ բուռն հարեալ զգմանէ, և ոչ երբէք զթողուլն ախորժեմ: Հան զիս 'ի չարս շաւղաց՝ զորս բերմամբ խմով աղարտեմ. և ուս զճանապարհս քո ուղիղս՝ որում կամօք սրտիւ վկայեմ: Անկայ 'ի մահիճս մեղաց, և ես ինձէն զգարշութիւն մեղացս[1] բողոքեմ. տուր զբժշկութիւն ախտացեալ հոգւոյս, որ առողջացուցանել զայլս խաբեմ: Զուխտս հօծեալս բանի յեկեղեցիդ անդրանկաց՝ առաջի ամենայն երկիւղածաց քոց նուիրեմ. կերիցեն տնանկք, և յագեսցին 'ի սմանէ, և օրհնեսցեն զքեզ՝ որ զտէրդ խնդրեն: Զաղօտացեալ քո լոյս բարեկամացն ցուցանեմ. յիշեսցեն տմաւ, և դարձցին առ տէրդ, որք 'ի ծագաց երկրէ քումդ գիտութեան փափագեն: Քեզ փառք, պարծանք և գրաւ աշխարհի, 'ի յերկինս փառաւորեալ յաւիտեանս. ամէն:

## ԶԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ԱՆՈՒԱՆԵԼՆ ԶՏՈՒՆ ԱՍՏՈՒԾՈՅ ԵԿԵՂԵՑԻ

ԵԿԵՂԵՑԻ անուն տիրապէս 'ի վերայ ժողովրդեանն առնու՝ քան 'ի տաճարն. ըստ այնմ, զոր Աստուած առ Մովսէս ասաց. "Եկեղեցացո ինձ զժողովուրդդ", այսինքն ժողովեա: Եւ գիրք ժողովողին եկղեսիաստէս կոչի, որ է ժողովող: Ապա ըստ պարզ տեսութե՛ ժողովրդին մարդիկս, և ոչ եթէ տունս. և սա համանունաբար տոցա կոչի եկեղեցի՝ իբր ժողովարան. նա զի և մի հոգի ընկալան 'ի շնորհացն Աստուծոյ տունս և մարդիկս. և անձնաւորեցաւ և սա զօրութեամբ հոգւոյն Աստուծոյ 'ի ձեռն օրհնութեան հաւատար նոցա. և զմի հոգի ունելով միով անուամբ կոչել տանս և բնակչացն վայելուչ է, զոր և ուսուցանէ մեզ պատմութիւն գործոց առաքելոցն հաւանաբար, թէ յօրն պենտակոստէից սաստիկ հնչումն Հոգւոյն որ 'ի յերկնից՝ նախ զտունն ելից յորում նստէին առաքեալքն, և ապա նստաւ իւրաքանչիւր 'ի վերայ նոցա, զառյապա խորհուրդն ազդելով. այսինքն զի ամենայն եկեղեցի նախ ինքն ընդունի զՀոգին Աստուծոյ, և ապա զմեզ

1 Յօր. միում Վ.իրայս:

ծնանի աւազանին արգանդաւ հոգեպէս, և ածնցուցեալ վարդապետութեան ստեամբք, 'ի զանազան վիճակս աստիճանաց յետ կատարման հոգևոր հասակին՝ վիճակէ զոմանս ։ Իսկ զորս ոչ առ սոյնն զօրէն, նոքօք հովուէ, և ընդ յարկաւ իւրով միշտ ամրափակեալ պարսպէ ։ Ապա ուրեմն մի մարմին են յանշնչական արձանաց տաճարս[1] կանգնեալ, և որդիքն առ 'ի սմանէ ծնեալք միով հոգւով կենդանացեալք ։ Ուստի և գիրք սուրբք և օրհնութիւնք երգոց՝ եզականապէս որպէս ընդ մի դէմս անձին խօսին ընդ նոսա զուրախարար և զաւետեաց հնչմունս ։ Սակայն մեզ պարտ է իմանալ, թէ առ մեզ են ամենայն խորհրդածութիւնք բարբառոցն, որք 'ի գիրկս նորին սնեալք խրախանամք 'ի Քրիստոս 'ի փեսայն նորա ։ Զայս և առաքեալ գրեաց. «Յորժամ գայցէ եկեղեցին ամենայն 'ի մի վայր, ոչ է տուն տեառն տեղի ձեզ հաց ուտելոյ» ։ Եւ տէրն առ Պետրոս. «Ի վերայ քո շինեցից զիմ եկեղեցի», ուղիղ դաւանութեն հետևեցուցանել զքրիստոնէից ժողովուրդս նշանակեալ ։

## ԶԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ԻԳԱԿԱՆ ԱՆՈՒԱՄԲ ԶԵԿԵՂԵՑԻՍ ԿՈՉԵԼ ԵՒ ՀԱՐՍՆ ԱՆՈՒԱՆԵԼ, ԻՍԿ ԶՔՐԻՍՏՈՍ ՓԵՍԱՅ ՔԱՆԶԻ ԱՌԱՔԵԱԼ ԱՍԷ

Տէրն մեր ասաց յաւետարանին. «Նմանեցաւ արքայութիւնն երկնից առն թագաւորի՝ որ արնիցէ հարսանիս որդւոյ իւրոյ» ։ Եւ առաքեալն նորին 'ի հպատակութիւն առն և կնոջ խրատելով զեփեսացիսն՝ յաւելու. «Խորհուրդս այս մեծ է, բայց ես ասեմ 'ի Քրիստոս իսկ և յեկեղեցի». համարձակութիւն տան մեզ՝ զեկեղեցի և զՔրիստոս 'ի տիպ փեսայի և հարսին օրինակել, այնու զի օտար և մաքուր 'ի կարծեաց ախտաւոր թուլութեան ամենասուրբն միտք ։ Պարտիմք և մեք այսմ վեհագոյն բարձրանալ ; և զխորհրդոյս քննել զօրութիւն. զի ոչ թէ միայն 'ի նոր կտակարանս, այլև 'ի հնոցն է զսոյն ուսանել, ըստ որում ասէ Եսայի. «Որպէս ուրախ լինի փեսայ առ հար-

1 Յօրէն. միում Անշնչական արձանս կանգնեալ ։

սին, այսպէս ուրախ լիցի 'ի քեզ տէր Աստուած քո": Եւ "Որ օրինակ բնակէ երիտասարդ ընդ կուսի, այսպէս բնակեսցեն որդիք քո 'ի քեզ": Այլ և Պօղոս դարձեալ գրէ. "Խօսեցայ զձեզ առն միում խառնել զկոյս մի սուրբ յանդիման առնել Քրիստոսի": Եւ այսպէս ամենեքեան նոքա համեմատեն զճանապարհ մեր խօսման հարսին, և հարսանեաց: Քանզի յորժամ խօսեալ լինի կին առն՝ հեռի է 'ի նմանէ տեսութեամբ, և միջնորդք հարսնածուք գան և առթեն զնա, յորոց լսէ վասն մեծութեան փեսային և վասն փառաց գեղեցկութեան նորա, և 'ի խօսից անտի առթացն կաթէ և սերմանի սէր փեսային 'ի սիրտ կուսին. և գերեալ վարի միտք նորա 'ի սէրն որ առ նա, և թողու զհայր իւր և զմայր, և առ նա ընթանայ: Այսպէս եկեղեցւոյ քրիստոնէից առիթք եղեն մարգարէքն և առաքեալքն. խրատեցին մոլորեալ զժողովուրդն և ըզտուն հօրն, և պատմեցին նմա զմեծվայելչութիւն մեծութեանն Քրիստոսի, և վասն գեղոյ աստուածութե նորա. և հաւատացաք մեք 'ի նա: Եւ ըստ որում նոքա ոչ միայն զփեսայն հարսինն, այլ և զհարսն զովեն փեսային, սոյնպէս և առաքեալքն որ պատմեցին զմեծութիւն տեառն մերոյ, և նմա մատուցին բանս բարիս վասն եկեղեցւոյ հեթանոսաց, և աղօթս և խնդրուածս հաշտութեան առաջի բարձրելոյն:

Եւ ըստ որում յետ սոցա զխաղաղութիւնն խօսելոյ՝ 'ի մի անձնաւորութիւն գան հարսն և փեսայն, այսպէս յետ գերելոյ զմիտս հեթանոսաց 'ի հնազանդութիւնն Քրիստոսի առաքելոցն, ամենեքեան 'ի Քրիստոս մկրտեցան, և մարմին նորա և ոսկերք անուանեցան, և ընդ նա յօդակապութեամբ Հոգւոյն խառնեցան: Եւ որպէս փեսայն յետ այնորիկ բերնաւորէ որդիս 'ի հարսնէն զանազանս, այսպէս և Քրիստոս արկ զվարդապետութի իւր յարգանդ մտաց եկեղեցւոյ իւրոյ սրբոյ, և ծնաւ 'ի նմանէ որդիս բազումս և հատակս զանազանս՝ զդասս հարց և հայրապետաց, մարտիրոսաց և ճգնաւորաց, արդարոց և սրբոց: Եւ որպէս մայրն յետ ծնանելոյ զորդիսն՝ առ 'ի կատարելութի սնուցանէ զնոսա, ըստ այսմ և ստինք մշտաբուխ եկեղեցւոյ միշտ դիեցուցանէ զորդիս իւր, և սնուցանէ մինչև հասուցէ զամենեսեան յայր

կատարեալ 'ի չափ հասակի կատարածման Քրիստոսի։ Պարծեալ որպէս չէ օտար փեսայն կուսին՝ որ խօսեցաւ ընդ նմա, զի 'ի միոջէ բնութենէ են. այսպէս և մեք չեմք օտար տեառն մերոյ, այն զի մարմնակիցք նորա եմք։ Եւ որպէս չէ օրէնս կնոջ փոխանակել զանկողին առն իւրում ընդ այլում, ապա թէ ոչ՝ շուն համարեալ լինի, այսպէս եկեղեցւոյ ոչ է պարտ տեղի տալ յինքեան օտարոտի վարդապետութեան, որ զներհակն ուսուցանէ օրինացն Քրիստոսի։ Եւ որպէս հարսն հանդերձիւ զարդարի, և ինքն զգլխովն մերկ պատուոյ է փեսային, սոյնպէս և գործք մեր բարիք լինին մեզ զարդարանք, զի հաճոյ լինիցուք նմա տեառն, և մեք միայն եմք պատուոյ նմա։ Եւ որպէս կին յորժամ զարդարի, ոչ հարցանէ ընդ ընկերսն թէ գեղեցիկ է, այլ առնու հայելի, և ինքն ուղղէ զզարդ գունոյ իւրոյ. այսպէս և եկեղեցի ոչ ընդ այլ ոք հարցանէ, այլ 'ի հայելիս սուրբ գրոց յառեալ զաչս մտացն՝ զպաճուճանս առաքինութեան իւրոյ նմա ուղղէ։ Որպէս կարի վայելչապէս խորհելով առաքեալ՝ անուանեաց զեկեղեցի հարսն Քրիստոսի։

## Ո՞ՐՊԷՍ ԵՒ ԶՏ՞Ր ԱՂԱԳԱՒ ՄԵՐՍ ԵԿԵՂԵՑԻ ԾՆՈՒԱՆԻ ԴՈՒՍՏՐ ՎԵՐԻՆ ՍԻՈՆԻ ԵՒ ԵՐՈՒՍԱՂԵՄԻ

ՍԻՈՆ վերին և Երուսաղէմ՝ ուսուցանեն մեզ գիրք սուրբք խորհրդականապէս առաքելոց և մարգարէից՝ զժողովս սրբոցն որ առ Աստուծոյ. ըստ այնմ զոր գրէ առաքեալ. "Վերինն Երուսաղէմ ազատ է, որ է մայր մեր ամենեցուն". և Զաքարիաս, "Ուրախ լեր յոյժ դուստր Սիոնի, քարոզեա դուստր Երուսաղեմի", առ եկեղեցիս հեթանոսաց ասելով։ Քանզի զսա ծնան դասք մարգարէիցն հնոյ օրինացն աշակերտք. և նոր օրէնքս և վարժեալք սոքա 'ի նախ եղելոցն՝ դուստր կոչեցան, զի նոքաւ ծնան։ Իսկ այժմ անուանիմք դուստր ոչ ներքինն Երուսաղեմի՝ այլ վերնոյն։ Ըստ Պօղոսի. "Մատուցեալ էք 'ի Սիոն լեառն և 'ի քաղաք Աստուծոյ կենդանւոյ յԵրուսաղէմ յերկինս". խորհրդոյս առ այն վարժելով զմիտս՝ թէ սուրբքն աստուածահաճոյք այժմ առ Աստուծոյ են, յետ նոցուն առնելոյ զզօրութի

սատանայի, և մարդկան յերկինս ճանապարհ հորդելոյ, ըստ այնմ զոր ինքն աղօթէր. «Հայր, կամիմ զի ուր եսն եմ և սոքա ընդ իս իցեն». և առ աւազակն, «Այսօր ընդ իս իցես ՚ի դրախտին»: Եւ Պօղոս, «Լուծանել և ընդ Քրիստոսի լինել լաւ համարիմ»: Եւ Յովհաննէս աւետարանիչն աղօթէր. «Ի գալս իմում առ քեզ տէր Յիսուս զճանապարհս իմ անփորձ պահեա յօդայինն այսոցն». զոր և սուրբն ետես Անտոնիոս, և գրեաց Աթանաս: Բազում և այլ ունիմք ապացոյց այսմ, բայց կարևորապէս սուղ ինչ բնախօսել է պարտ:

Հոգին իմանալի բնութիւն է և անմահ՝ զգայուն և անձնաւոր, ՚ի մեկուսանալն ՚ի մարմնոյս և ՚ի լքանելն զսա՝ յայտ է թէ առ Աստուած դիմէ. իսկ ՚ի գնալն նորա՝ գայ սատանայ և քննէ՝ թէ գտանէ ՚ի նմա ինչ յիւրոցն, մինչ զօրել ըմբռնել, որպէս և ետեսն Անտոն: Մնան ՚ի տեղի ինչ, ըստ որում գրեաց սուրբն Եփրեմ ՚ի ճառ մնանանխին, մինչև յօրն դատաստանի անվրդով ՚ի սատանայէ, և անփառս յԱստուծոյ[1]: Բայց առ որս ոչ գտանէ նա յիւրոցն, ըստ որում ասաց Քրիստոս, «Գայ իշխան աշխարհիս այսորիկ, և յիս ինչ ոչ գտանէ», և որպէս ոչ եգիտ յԱնտոն, զերծանին և առ Աստուած և ընդ Աստուծով հանգչին ՚ի սէր և ՚ի գիտութիւն նորա վայելեալ: Բայց զտիրապէս փառսն ըստ գործոցն ոչ ընկալեալ մինչև յօրն դատաստանի, «Աստուծոյ վասն մեր լաւագոյն համարեալ զի մի առանց մեր կատարեսցին», և առանց վշտակից մարմնոյս փառաւորեսցին: Այլ որպէս յայս կեանս ոգք անօսրանան մտօք, իմացականապէս տեսանեն և զուարճանան ՚ի սէրն Աստուծոյ մարմնին գոլով, սակայն մարմինն հեշտութեամբ ոչ կցորդի այսմ ուրախութեան, այլ մանաւանդ վիշտն սորա ծնանի զնոյն, այսպէս և սրբոցն մարմինքն մնան ըստ անհաս իմաստիցն Աստուծոյ ներքոյ ապականութեան մինչև ՚ի դատաստանն. և ինքեանք ըստ որում ՚ի մարմնոյս կապանս՝ հպէին յԱս-

1 Այսինքն առանց փառաց մարմնոյ: Իսկ բանք Եփրեմի այս են. «Ի տեղի ուրեմն միայն ոգիքն իւրաքանչիւր մարմնոյ, զի հարկ աւանդ ետուն երկրի զմարմինս» ՚ի ճառն մնանանխին, էջ 363. հատ. Բ: Տե՛ս անդ և զծանօթութիւնն:

տուած անձնապէս, առաւելապէս այժմ են առ նա՝ ազատեալ 'ի կապանացն :

Նաև այն ժողովն նոցա՝ վերին Սիոն և Երուսաղէմ անուանի՝ այսմ եկեղեցւոյս մայր, զի սա 'ի նոցանէ ծնաւ՝ և դուստր է նոցա՝ որք հոգևոր երկամբքն ծնան ըստ Պօղոսի. "Որդեակք իմ, զորս դարձեալ երկնեմ„. և որպէս ծնունդքն միշտ յառաջանալով ծնանին յայլոց, և ինքեանք զայլս ծնանին, և որ յետոյ՝ զնախին ունի մայր, այսպէս առաքեալքն ծնան զհետևողսն իւրեանց և գնացին. որք մնացին՝ զնոսա մայր կոչէին. և յետ նոցա մի ըստ միոջէ ծնանին սուրբք զմանկունս եկեղեցւոյ՝ և մեռանին և գնան 'ի մի ժողովն. և սա հանապազ զնոցա ժողովն իւր մայր անուանէ. զորոց յիշատակն կատարելով հանապազ, որպէս որդին զի համարձակաբար ընդ մայրն խօսի քան ընդ հայրն՝ երկնչելով 'ի նորա իշխանական սաստէն, այսպէս և մանկունք եկեղեցւոյ համարձակաբար խօսին ընդ մայրն իւրեանց ընդ վերինն Երուսաղէմ 'ի ժողովս սրբոցն, և թախանձեն զնոսա բարեխօսել առ Քրիստոս Հայրն և Աստուած վասն ինքեանց. իսկ նոքա ընդունին սիրով, և մայրենի գթովն մաղթեն առ նա. զորոց պտուղ աղօթիցն բազումք պէսպէս սքանչելեօք ճաշակեցին, և զայսպիսի կարծիս յանձինս մեր հաստատեցին՝ մայր անուանել մեզ զվերինն Սիոն և Երուսաղէմ :

## ԹԷ ՊԱՐՏ Է ՀԱՒԱՏԱԼ ԶԵԿԵՂԵՑԻ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՐԿԻՆ ՑԵՐԿՐԻ :

ԱՍՏՈՒԱԾ մարդ եղև, և երկնաւորն երկրաւոր, ապա և երկիրս երկին եղև. և զի այս է ճշմարտապէս, լի են գիրք սուրբք բանիւք որք ածեն զմեզ յայս հաւանութիւն : Աղաղակեցին և հրեշտակք. "Փառք 'ի բարձունս Աստուծոյ, և յերկիր խաղաղութիւն, և 'ի մարդիկ հաշտութիւն„ : Գոչէ և Պօղոս. "Զմիջնորմն ցանկոյն քակեաց, և եկն աւետարանեաց խաղաղութիւն ձեզ հեռաւորաց, և խաղաղութիւն մերձաւորաց„ : Այլ թերևս ասիցես՝ թէ այս յայնժամ էր մինչ տէր մեր մարմնովն էր 'ի վերայ աշխարհի. և ո՞ւր ապա դիցուք զասելն նորա, "Ես ընդ ձեզ եմ, ոչ մի ժամանակ կամ

երկուս, այլ մինչև 'ի կատարած աշխարհի,,. և "Ուր երկու կամ երեք ժողովեալ են յանուն իմ, անդ եմ ես 'ի մէջ նոցա,,: Անտատուն մնաց ոչ ինչ այս զարմանալի. զի նոյն տէրն է երկնի և երկրի, և այնպէս ստեղծուած նորա մարդն՝ ըստ ոգւոյ և հրեշտակք. այլ մեղքն էր որոշիչ 'ի մէջ մեր և Աստուծոյ, և դատապարտնլիք յանցանացն Ադամայ, զոր բարձեալ Քրիստոս՝ հաստատեաց զխաղաղութիւն արեամբ խաչին իւրոյ, և եբաց զբերան մարդկան՝ Աստուծոյ Հայր կարդալ, որոց և ինքն Որդին սեփականեաց բունն հարեալ զզաւակէն Աբրահամու. ուրեմն կարելի է հաստատր երկնից իմանալ զեկեղեցի Աստուծոյ, ուր բնակեն հաստատարեալք հրեշտակաց յուսովն մարդիկ, և փառաբանեն զնա նոքին կցորդեալ: Պարտ է գիտել, զի խնկութեանն Աստուծոյ հասանին՝ որպէս 'ի մէնջ է ծածկեալ և 'ի հրեշտակաց. զի "Զ Աստուած ոչ ոք տես երբէք,, ասացաւ. բայց յորժամ սիրեմք զնա, զօրութեամբ և 'ի մեզ բնակէ, ըստ որում 'ի նմա: Այլ զի բնակեաց՝ ահա բազումք աղաղակեցին. "Ո փորձ խնդրէք զՔրիստոսի՝ որ խօսի ընդ ձեզ խօսի. և դուք տաճար էք Աստուծոյ, և Հոգի նորա բնակեալ է 'ի ձեզ,,. հաւատամք զի Աստուած բնակէ 'ի մարդիկ որպէս և 'ի հրեշտակս. և մարդիկ բնակեն յեկեղեցիս և 'ի տաճարս սուրբս, ըստ որում և նոքա յերկինս. և միաձայնութեամբ երկնաւորացն և երկրաւորացս պաշտի սոցին արարիչն, որ է 'ի մէջ երկուց և երից ժողովելոց՝ ըստ անսուտ խոստմանն. և մաքրեալ աչաց իմանալի լեալ յայտնապէս երևի, որպէս ոչք բազում անգամ տեսին, որոց բաց և անախտ էին միտք:

## ԶԻ ՅՈՐԺԱՄ ՄՏԱՆԵՄՔ Ի ՏԱՃԱՐՍ ՍՈՒՐԲ ՊԱՐՏ Է ՀԱՒԱՏԱԼ ԱՆԸՆԴՄԻՋԱԲԱՐ ԶՄԵԶ ԱՌԱՋԻ ԱՍՏՈՒԾՈՅ ՈՐՊԷՍ ԵՒ ՀՐԵՇՏԱԿՔ:

ՓԱՌՔՆ Աստուծոյ, և ներգործութիւն իմաստիցն և զօրութեանն հասանէ առ երկնաւորս և երկրաւորս. իսկ գիտութիւն բնութեանն և ոչ ումեք ցարդ եւս եղև հասանելի յեղականացս, ոչ մարդկան և ոչ գերագունիցն քան զմեզ հրեշտակաց: Այլ 'ի զօրութիւնն՝ ամենայն

ոգք որ մնացին՝ հայր յԱստուծոյ և 'ի գիտութիւնն՝ ըստ առաւելութեան մաքրութեանն առաւելապէս հասանել. ըստ որում զձայնս է լսանել. զի որք մերձաւորք են առաւել լսեն, և որչափ հեռի են մարդիկ՝ աղօտանայ առ նոսա, այսպէս խնամանք և զլոյս արեգականն, զի լոյսն նորա և բնութիւնն անհաս է 'ի մէնջ, բայց 'ի նշոյլս ճառագայթիցն ըստ չափոյ մաքրութեան աչաց վայելեմք, ըստ այսմ և խնամութիւնն Աստուծոյ անհաս է 'ի մէնջ, սակայն նշոյլ գիտութեանն մերձաւորս: Նաև ոչ տեսանեմք, որչափ զաչս խնամակալս 'ի խոնարհ կոյս աշուցեալ՝ դանդաղիմք առ նա բարձրացուցանել 'ի զբաղանաց աշխարհի պատրեալ, յապահովացեալ 'ի տգանել՝ երևելի մնաց լոյսն իւր՝ առաւելապէս քան յամենայն տեղիս՝ 'ի տունս որոշեալ անուանն Աստուծոյ և փառօք նորա լցեալ. ուր ոչ երկու կամ երեք, այլ բազումք զլոյս երեսաց նորա խնդրեմք տեսանել, և հաւատով յանուն Որդւոյ՝ որպէս առաք հրամանն, զՀայր թախանձեմք: Նայց նախ մտանելն է, և ապա խնդրելն. զանձ 'ի տաճարս՝ որ է տուն Աստուծոյ, և խօսիմք ընդ նմա համարձակաբար աղերսանօքն Յիսուսի նորոգողին մեզ զայս համարձակութիւն:

Յայտ է արդեօք զի Աստուած 'ի մէնջ ոչ ծածկի, այլ միայն մոլորութեամբ մտաց հեռանայ 'ի նմանէ. իսկ որ անսասերգուր ունէր զնա, տես թէ զինչ աղաղակէր. «Ելանեմ յերկինս, և դու անդ ես. իջանեմ 'ի դժոխս, և անդ 'ի մօտ ես. յեզերս ծովու թևօքս թռչիմ, և անդ ձեռն քո տիրէ ինձ»: Ծանեաք զի և սիրելեացն իւր աչընթեր էր, և յորժամ խօսէին՝ պատասխանէր. և ոչ է երկինք պատրուակ խնամոցն հայեցողութեանն Աստուծոյ որ զսիրտս և զերիկամունս քննէ. պարտ է ապա հաւատով հանդիսատ փառաց նորա զորոշեալ տունս, ուր 'ի մտանելն առաջի նորա ծանիցուք լինել կցորդութեանն հրեշտակաց, որք խնամակալապէս զխնամոցն խունկ մերոց աղօթիցն առնուն, և Աստուծոյ նուիրեն, ըստ որում ասաց 'ի յայտնութենէ անտի Յովհաննու:

## ԶԻ՞ՆՉ ՆՇԱՆԱԿԷ ՁԵՒ ԿԵՐՊԱՐԱՆԱՑ ՍՐԲՈՑ ՏԱՃԱՐԻ ԵԿԵՂԵՑԻՈՑ ԶԻ ԱՆՋՐՊԵՏԵԱԼ Է ԽՈՐԱՆՆ Ի ՀԱՍԱՐԱԿԱՑ ԽՄԲԱՐԱՆԷ ՏԱՃԱՐԻՆ

ԵՐԿԻՆ 'ի յերկիր հաւատացաք գոլ զսուրբ տունս. վասն այսորիկ և 'ի տեղւոջ կայանի երկնաւորացն ձեւակերպեցաւ պատկեր սորա. ըստ որում ուսեալ յառաքելոցն սուրբն Դիոնեսիոս աւանդէ մեզ այսպէս. "Քանզի նոքա, ասէ, երանելիքն առաքեալք, անմարմնապէս մաքրութեամբ յերկրի հուպ գոլով հրեշտակաց՝ կարող եղեն զերկնայնոցն կարգաւորութիւն մաքուր մտօք ճանաչել, և 'ի ձեռն միջնորդութեան և գրոյ բանի աշակերտաց իւրեանց աւանդել։ Այլ զի անկար էր մարմնաւորացս և աշխարհի վիճակելոց զվերնականացն գիտութիւն նոցա նմանաբար ուսանել, կարևոր համարեցան մարմնական նշանակօք մեզ զնոյնն տալ՝ որպէս զի ուսցուք զզգալի պատկերօք զերկնայինս, և բազմազանութեամբ՝ զծածուկսն, և նիւթովք զաննիւթսն, և մերովքս զգերագոյնսն, գրով և առանց գրոյ վարժեցին„։ Զայս ասելով երանելոյս, զարթուցանէ զմիտս մեր իմանալ զեկեղեցի պատկեր երկնի, և զխորանն սուրբ և զորբարանն բեմ ապացոյց փառաց աթոռոյն Աստուծոյ, զորով շուրջ կան անընդմիջաբար աթոռքն, քերովբէքն և սերովբէքն։

## ԶԻ՞ՆՉ ՆՇԱՆԱԿԷ ԵՒ ՍԵՂԱՆՆ ՍՈՒՐԲ

Այլ զսեղանն սուրբ՝ պատկեր Աստուծոյ. քանզի որպէս խաչն պատկեր նորա անուանի՝ բնակելով 'ի նմա զօրութիւնն իւր, այսպէս և 'ի սմա տպաւորեցաւ զօրութիւն և ներգործութիւն Հոգւոյն սրբոյ՝ քահանայապետականն օրհնութեամբ և կատարողականն մեռոնիւ։ Ուսուցանէ և զայս մեզ սուրբն Դիոնեսիոս 'ի խորհրդածութիւն մեռոնին այսպէս ասելով. Այլ եթէ ընդէր սեղանն սուրբ, յորոյ վերայ նուիրագործութիւն պատարագին կատարի՝ սրբի մեռոնիւս օծմամբ,

1 Մի օրին. Մարմնաւոր։ 2 Յօր. միում Բաղձաբնեամբ։

այսպէս իմանամք, թէ ամենայն փրկագործութեան մե-
րոյ պատճառ և սրբութեան սկիզբն Քրիստոս է. որ և
յետ ամենայն տնօրէնական խոնարհութեանն՝ հաճե-
ցաւ լինել սեղան վասն մեր. սեղան ըստ աստուածու-
թեանն, և զմարդկայինն անճառ միացեալ ընդ նո-
քեան բնութիւնն՝ պատարագ ընծայեաց մահուամբ 'ի
վերայ աստուածութեանն, որպէս 'ի վերայ սեղանոյ՝
Հօր. ուստի և եբեր կտակ ազատութեան ամենայն
մարդկան իւրով [1]խորհրդաբար ողջակիզելովն. ըստ
այսմ ինձ առցես զսրբութեան սեղանն, որով կա-
տարի պատարագն նախ 'ի ձեռն աստուածային օծու-
թեան կատարեալ, որպէս թէ ինքն Քրիստոս ըստ մե-
ռոնիս շնորհաց իմացականապէս բնակի 'ի սեղանն,
և կատարէ զնա ըստ գերունակ աստուածութեանն նը-
մանութեան. 'ի վերայ որոյ և մատուցանէ զինքն ըստ
մարմնոյ պատարագ՝ որպէս և յայնժամ, և արդ օր
ըստ օրէ բերելով 'ի Հօրէ մեզ քաւութեան մեղաց
զշնորհս, զի ամենայն սրբութեամբ լցուսցէ զմարդիկ.
առ այս հայի նուիրական սեղանոյն արձանումն 'ի մէջ
սրբոյ խորանին, և դնելն 'ի վերայ նորա զաւետարանն
սուրբ, այսինքն զՔրիստոս. և որպէս շուրջ զԱստու-
ծով և անջրպետապէս 'ի նմանէ կան հրեշտակք փա-
ռաբանիչք, այսպէս շուրջ զսեղանովն անջրպետութ-
բեմին պարեն դասք պաշտօնէից. և որպէս զերգս օր-
հնութեան նոքա 'ի խոնարհ վայրէն առ Աստուած առա-
քեն 'ի բարձունս, այսպէս երգք և պաշտամունք՝ քաղ-
ցրաձայնութեան սոցա արտաքոյ խորանին կատարի.
և ըստ որում 'ի ներքին կողմ վարագուրին միայն կա-
րապետն մեր եմուտ Քրիստոս՝ յանդիման լինել երեսացն
Աստուծոյ վասն մեր, այսպէս 'ի ներքին կողմ խորանին
միայն քահանայն մտանէ 'ի պատկեր նմանութե՟ Քրիս-
տոսի խորհրդական աղօթիւքն առաջի սեղանոյն բա-
րեխօսել վասն մեր. և որպէս յոյս մեր այժմ զՔրիս-
տոսէ է կախեալ, ըստ որում գրէ առաքեալ, որ գրաւա-
կանն է մարդկան 'ի յերկինս, այսպէս յոյս ամենայն եկե-
ղեցւոյն զքահանայէն է կախեալ աղօթից 'ի խորհըր-
դածութե՟ պատարագին, յոր մաղթէ Ա՟ծ վասն նոցա:

1 Մի օրին. Պաշտօնք:

## ԶԻ՞ՆՉ ՆՇԱՆԱԿԷ ԶԳԵՍՏ ԿԵՐՊԱՍՈՒՑՆ ԶՈՐ Ի ՎԵՐԱՅ ՍՐԲՈՑ ՍԵՂԱՆՈՅՍ ՍՓՌԵՄՔ

ՍՓՌԱՆՑ խորհրդոյ աւանդութիւն՝ ընդհանուր եկեղեցւոյ քրիստոնէից ոչ է, այլ աստուածային իմն ազդեցութեամբ 'ի հարցն հաստատեալ. և մեզ թէ և էր կարելի անձամբ անձին զզօրութիւն նոցա խուզել, վայելուչ էր վասն հաւատարիմ զքննութիւնս առնելոյ զնոցայն առնուլ բան. ոչ թէ զի ամենևին տկարութիւնս կարօտի առ զօրաւոր մրցակիցս, մանաւանդ զի առաջադրութիւնս՝ ոչ եթէ վարդապետութիւն է, այլ օրինադրութիւն: Արդ զայս խորհուրդ սուրբն Գրիգոր աստուածաբան յայտնէ 'ի թուղթն որ առ Դորոթէոս կոմսն այսպէս գրելով. "Սրբագոյն սնդոյն սփռեալ յաստուածեղէն պատարագին՝ արիւնաթացոյն է սպասաւորութիւն Յովսեփայ. զի որպէս նա զմարմինն պատեալ զտեառնն եդ 'ի սնդոնի և 'ի գերեզման յուղարկէր, յոր ձեռն ամենայն ազգի մարդկան յարութիւն պարգևեաց, այսպէս և մեք 'ի վերայ սնդոնի կտաւոյն պհացն առաջադրութեան և զբաժակն օրհնութեամբ սրբելով՝ ճշմարտապէս զնա մարմին և արիւն տեառն առանց յերկուանալոյ ճաշակեմք հաւատովք. և նա մեզ զանապականութիւն շնորհէ, որ 'ի Յովսեփայն մեզ ընծայեալ տուաւ 'ի թողութիւն մեղաց մերոց Քրիստոս,,:

## ԶԻ՞ՆՉ ՆՇԱՆԱԿԵՆ ԱՍՏԻՃԱՆՔ ԱԹՈՌՈՑՆ ՇՈՒՐՋ ԶՍՐԲՈՎ ՍԵՂԱՆՈՎՆ Ի ՄԻՄԵԱՆՑ ՈՐՈՇԵԱԼ Ի ՎԵՐԱՅ ՈՐՈՑ ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆՆ ԱԹՈՌ ՀԱՍՏԱՏԵԱԼ

ԱՄԲՈՂՋ պահելով զկարգ բանիս՝ և զայս կարեմք[2] ճշգրիտ[3] ուսանել. քանզի զեկեղեցիս երկին ուսաք, և զխորանն երկնից երկին և տեղի Աստուծոյ. և չէ պիտոյ վերստին հաստատել. այլ և զսեղանն պատկեր աստուածութեանն: Արդ որպէս անդ շուրջ զԱստուծով

1 Մի օրին. Առաջադրեալս:
2 Մի օրին. կամիմք:
3 Մի օրին. ճշգրտիւ:

*են անընդմիջաբար երեք դասք սերովբէիցն և քերովբէիցն և աթոռոց, այսպէս և որք են 'ի պատկեր նոցա քահանայք՝ բազմեալ հանգչին 'ի սոսա 'ի խորհրդականն ժամու: Եւ զի քահանայապետն մեր Քրիստոս «Անց ընդ երկինս, որպէս գրէ առաքեալ, և վեհագոյն նոցա նստաւ ընդ աջմէ Աստուծոյ», այսպէս քահանայապետն որ է պատկեր Քրիստոսի, գայ յարտաքին վայրէս յետ կատարելոյ զպաշտօն խնկարկութեն, որպէս և Քրիստոս զտնօրէնութեանն, և նստի վեհագոյն ամենեցուն 'ի բարձրագոյն աթոռն, որպէս ընդ աջմէ Աստուծոյ: Ուսանիմք զայս 'ի պատմութենէ սըրբոյն Պետրոսի Աղեքսանդրու հայրապետին. քանզի նա երանելին մաքուր ունելով զհայեցուածսն՝ ոչ կարէր համարձակել ինքն 'ի պատկեր Քրիստոսի նստել յաթոռն, ուր յայտնապէս զնա տեսանէր: Ո՛վ շնորհազարդ հոգւոյն. «Պատկառեմ, ասէ, 'ի վերայ պատուանդանին նստել, և ոչ եթէ յաթոռն»: Ահա ճշգրտեմք սովաւ, թէ յամենայն քահանայապետական յաթոռ բազմի Քրիստոս. և ուր նա է, առ նովաւ և ընդ նովաւ են պաշտօնեայքն իւր հոգիք հրեշտակք՝ առ ընթեր համադասիցն իւրեանց քահանայիցն, որպէս ասացաւ:*

## ԶԻ՞ՆՉ ՑԱՑՏ ԱՌՆԵՆ ԼՈՒՑՄՈՒՆՔ ՋԱՀԻՑՆ ԵՒ ԼԱՊՏԵՐԱՑՆ ԵՒ ԲՈՒՐՈՒՄՆ ԽՆԿՈՑՆ Ի ՍՈՒՐԲ ԵԿԵՂԵՑԻՍ

*ԼՈՅՍ ծայրագոյն և անմերձենալի է Աստուած անհաս և անձառելի. և լոյսք յետ նորա երկրորդ գոյացան յառաջին լուսոյն՝ հրեշտակայն դասակարգութիւք. լոյս երրորդ հաստատեցաւ մարդս, որպէս ուսուցին վարդապետք եկեղեցւոյ, և գրեցին արտաքին բնախօսքն, որ և է տիրապէս յաղագս իմանալւոյն որ 'ի սա ներքինն մարդոյ: Արդ քանզի եղաք զեկեղեցի ապացոյց երկնից առաջի հաւատոցն աչաց, լուցանեմք 'ի նա զլոյս ջահիցն, ոչ եթէ իբր Աստուծոյ առ 'ի նմանէ լուսաւորել, որ անկարօտն է, այլ նշանակեն սոքա բազմութեամբ պայծառութեան իւրեանց զգումար բազմութեան հա-*

1 Մի օրէն. ի խորհրդեանն:

ւատացելոցն որք կան 'ի տաճարն առաջի Աստուծոյ ։ Այլ զայս պատկեր զգալի արարին իւրեանց իմանալի լուսոյ մտացն, որ իմացականապէս արծարծի հրով սիրոյն Աստուծոյ ։ Այլ զոր օրինակ ջահս որ 'ի խարուկէն լուցեալ բորբոքեալ արծարծի՝ միշտ 'ի վեր կոյս ձգտելով, այսպէս և որք են յեկեղեցիս ժողովուրդք յաստուածային սիրոյն կայծականց բորբոքեալ միշտ առ Նա վերամբամն՝ լուսաւոր խորհրդովք զվերինն խորհելով, որպէս և հրեշտակք ․ ըստ որում և տէրն զառաքեալսն լոյս անուանեաց, և 'ի ձեռս կուսանացն զլապտեր վառուց Նոցա առակեաց, զոմանս անդ պայծառացեալս՝ որք ստ 'ի փառս Աստուծոյ վառեալ պահեցան, և զայլս խաւարեալս և շիջեալս՝ որք 'ի պէտս փառաց մարդկան պճնեցան ։

Արդ որպէս լոյսն առ Աստուած սիրոյն արծարծելոյ մտաց մեր կերպացաւ, այսպէս և խնկոցն անուշահոտութիւն բարդելոյ ծխոյ աղօթից Նոցին տայ զտարացոյց ․ զի որպէս սա զգալի անուշահոտութիւնս մաքրապէս հոտոտելովքն հեշտացուցանէ զընդունողսն, այսպէս և մեր աղօթքն իմանալի խունկ ծխեալ առաջի Աստուծոյ՝ զուարճացուցանէ զկամս Նորա և ուրախանայ 'ի Նոյնն ։ Ըստ այսմ առնու հայրն մեր Եղիս 'ի գլուխսն որ վասն աղօթից [1] 'ի յայտնութենէ անտի Յովհաննու վկայութի՛ այսպէս ․ "Դաշտք խնկոցն՝ աղօթք սրբոցն, զոր քսան և չորք ծերքն կրէին ․ և տաշտ համարեալ սէրն որ առ Աստուած, այսինքն հոգևորական սէրն, յորում զաղօթսն ներգործեն հոգւով և ճշմարտութեամբ"։ Այս և 'ի հին գրոց լուաք ․ "Հաստատեցաւ տէր 'ի պատարագն Աբէլ 'ի հոտ անուշից" ․ ոչ թէ միայն 'ի զգալի ծուխ ճենճերոյն, այլ ընդունէր ընդ իմանալի ծխոյ աղօթիցն և զգալի պատկեր Նորա զպատարագն 'ի հոտ անուշից ․ զի հոգևոր Նուիրագործութիւն Աստուած միայն 'ի հոգեղինաց հրեշտակացն պահանջէ ։ Իսկ մեր խառն գոլով 'ի հոգւոյն և 'ի մարմնոյ, կամի և 'ի մէնջ զմարմնաւոր հպատակութիւն՝ ըղձից հո-

1 Բանք սուրբ հօրն Նեղոսի այսպէս ասեն ․ "Որ ոք կամեսցի անուշահոտ խունկս կազմել, զերևելի կնդրուկն և զկասիոս և զեղունգն և զստաշխն առ հաւասարակ հանդերձեսցէ ըստ օրինացն ․ այս է չորից առաքինութեանցս ցոյցք" ․ Ճառ ԺԲ ։

գւոյ ընթացակից. որպէս արարին սուրբքն և աւանդե-
ցին մեզ. ապա թէ ոչ զինչ կարօտանայ Աստուած մե-
ծեղինացն և խնկոց, զոր քրիստոնեայք ընծայս բերեն
՚ի տուն նորա ։ Բայց սակայն ընդունի զապացոյց հա-
ւատոցն և սիրոյն, տալով նոցա նշանակ թէ այսպէս ըն-
կալաւ և զմտաւորական խնդիրսն ։ Ապա թէ առանց
սիրոյ և հաւատոյն լինիցի, այսպէս պատասխանէ.
“ Խունկք ձեր պիղծ են ինձ „ ։ Իսկ եթէ հաւատն և
սէրն առանց ոգւոյն՝ ասէ. “ Ոչ մատուցեր ինձ խունկս
՚ի Սաբայէ „ ։ Նոյն զուղիղն խնդրելով՝ երկոքեանս
պարտ է, զի միմեանց վկայք լինիցին. մարմնաւորս հո-
գևորին, և հոգևորն մարմնաւորին, ՚ի մարմին և ՚ի հո-
գի եղելոցս անստգիւտ սիրոյ նշանակ ։

## ԴԱՍԱԿԱՐԳՈՒԹԻՒՆՔ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՀԱՄԱՏԻՊ ԵՐԿՆԱՒՈՐԱՑՆ ԿԱՐԳԱՑ

Որ երկին յերկիր է տաճարս սուրբ՝ ահա ցուցաւ
որպէս կարծեմ. պարտ է գիտել զի և բնակչաց սորա
դասք՝ ըստ նոցա սահմանեցան ՚ի սրբոյն, զոր համառօ-
տաբար ունել իրաւացի է. սակայն զնոսա նախ պարտ
է ՚ի մէջ առնուլ՝ որոց մերս ապացոյց է ։ Երիս դասս զնո-
սա ուսաք ՚ի միմեանց անջրպետեալս կայանօք տեղւոյ.
իսկ զերիսն դարձեալ զանազանեալ յիւրաքանչիւր
կայանս յերիս երիս, ոչ կայանօք՝ այլ միայն անուամբ
և պատուով ։

Արդ նախ քան զամենեսեան և առաջին դաս որք
շուրջ զԱստուծով կան անընդմիջաբար աթոռքն և սե-
րովբէքն և քերովբէքն, յինքնակատար աստուածու-
թենէն նոցա լուսաւորեալ և իմաստնացեալ՝ իջուցա-
նեն աննախանձ կամօք զլուսաւորութիւն գիտութեանն
և զշնորհս ՚ի խոնարհագոյն դասսն, կցորդս արարեալ
զնոսա իւրեանց գիտութեանն ։ Երկրորդ զկնի նոցա
դաս՝ իշխանութիւնք և զօրութիւնքն և տէրութիւնք,
որք յառաքեալ լուսագիտութիւնն ՚ի վեհագունիցն ըստ
չափոյ զօրութեան իւրեանց վայելեալ՝ տան յևս կրսե-
րագոյնսն ։ Երրորդն գոլով յետ նոցա և վերջին դաս՝
պետութիւնքն և հրեշտակապետքն և հրեշտակք, առ
որս իջեալ լուսաւորութիւնն ՚ի նախակացելոցն՝ ՚ի նո-

սին նահանգի. և այսպէս 'ի ձեռն միմեանց միջնորդութեան ամբառնան և յետինքն 'ի գիտութիւն աստուածութեանն ըստ կարի ընդունելութեան, որով և կատարեալք լինին և անուանին։ Իսկ յետ սոցա քահանայականս կարգաց՝ ամենառատ բարեգործութիւնն կամեցաւ և զմարդկան ազգ հաղորդեցուցանել այսպիսի կարգաց և շնորհաց, որպէս զի և զմեզ իւր գիտութեն ստացի հաղորդս և զարդարեսցէ փառացն շնորհօք, ուստի 'ի ձեռն վերնոցն խորհրդազգածայ՝ զներքին եկեղեցի իւր այնպէս յօրինել յերիս դասս և յինն իշխանութիւնս պատուոյ և անուանց։

Արդ ուստի բանս զսեղանն պատկեր Աստուծոյ, և զբեմն տեղի նմին. 'ի տեղի իսկութեանն Աստուծոյ շուրջ զնովաւ դասակարգէ բարեզարդութիւնն զեպիսկոպոսապետս, զեպիսկոպոսս, և զքահանայս, որք թէպէտ և անուամբ զանազանին և իշխանութեամբ, սակայն 'ի մի դաս քանակին հաւասարապէս կալ շուրջ զսեղանովն, և աներնդմիջաբար խօսել ընդ նմին խորհրդականն աղօթիւք, և 'ի նմանէ ընկալեալ զլուսափայլն գիտութիւն՝ իջուցանեն բարեյօժար կամօք 'ի խոնարհագոյն դասսն, այսինքն զխաղաղութիւնն, զհաղորդութիւնն՝ և զայլ քահանայական կատարմունքն։ Երկրորդ յետ նոցա անջրպետութեամբ բեմին որոշեալ՝ սարկաւագք և կէս սարկաւագք և սաղմոսերգուք, լցեալ 'ի նոցա շնորհացն՝ հեղուն յևս յետինսն զնոյն. ոմն զքարոզութեանն վարդապետութիւն, ոմն զընթերցողութիւնն, այլ ոմն սաղմոսերգութեամբն զնոսա լուսաւորեալ։ Իսկ վերջին դաս կրօնաւորացն և ժողովրդոցն և երախայիցն զանազանութիւն՝ ընկալեալ 'ի սոցանէ զշնորհ գիտութեան իմաստիցն՝ ըստ իւրաքանչիւր չափոյ լուսաւորին, և առ ինքեանս զնոյն նահանջեն։

Այսպիսի աստուածաւանդ կարգօք զարդարեալ մերս եկեղեցի՝ երկնայնոցն եկեղեցւոյ համատեսակք զաստուածատեսակութի նոցա մարմնական մասամբք նկարագրեալ։ Այլ թերևս ասիցես, թէ ոչ գոյ առ երկնաւորսն կարգ որ մաքրութեան կարօտին, որպէս զերախայքն. և զայս Ճշմարտեմք ոչ գոլ առ նոսա անսուրբ կամ կարօտ մաքրութեան, այլ մաքրութիւն 'ի վերայ երկնայնոցն ասեմք զառաջնոցն հեղեալ առ յե-

տինսան զլուսափայլութիւն, որովք աստուածային հան-ճարոյն զան սոքա 'ի գիտութիւն և 'ի լուսաւոր տեղե-կութիւն:

## ԶԻ՞ՆՉ ԲԱՑԱՅԱՅՏԷ ԱՆՈՒՆՆ ԵՐԷՑ ԿՈՉԵԼ ԶՎԵՐԱԿԱՑՈՒՍ ԺՈՂՈՎՐԴՈՑ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԵՒ ՔԱՀԱՆԱՅ

Երէց՝ ծերունեացն է անուն, փոխեալցն յերիտա-սարդական հասակէն և 'ի ծերութիւն յեղաշրջելոցն. այսպէս է տեսանել և յաստուածակոյս կողմն՝ տղայու-թիւն, երիտասարդութիւն և ծերութիւն հոգւոց. որ-պէս ասէ Պօղոս զանձնէ. «Մինչ տղայն էի, իբրև զտը-ղայ խօսէի և հանճարէի, այժմ եղեալ այր՝ զտղայու-թեանն խափանեցի»: Նա որ միջամուխն էր աստուա-ծային խորհրդոցն, զանուն իւր երէց գրէր. և զաշա-կերտսն յայս երիս հասակս որոշէր, որովք ուսանիմք ընթացս հասարակաց հոգւոյ, որպէս և մարմնոյն, զի զնոր եկեալն 'ի հաւատս՝ մատաղատունկ ասէին կոչել գիրք: Արդ որ ոք նորոգ որոշեալ 'ի խաւարէ աշխար-հի և մերձեցեալ յօրէնսն Աստուծոյ՝ տղայ է այնպի-սին, թէպէտ և հասակաւ մարմնոյն ծեր է: Իսկ յա-ռաջացեալ յայնմանէ առաքինութեամբ և գիտութ̃բ զօրացեալ, ոչ միայն զանձն այլ և զայլս խրատել, այն-պիսին երէց է 'ի հասակ հոգւոցն. վասն այսորիկ զքա-հանայս երէցս անուանեմք՝ թէպէտ և մանկունք են, ծե-րունեացն մակադրութեամբ. յայտ առնելով կոչմամբն՝ կատարեալս զնոսա ըստ աստուածային հասակի առա-քինութեանն, ոչ միայն անձանց, այլ և այլոց հրա-տարակելով զնոսա ուսուցիչս. վասն որոյ և ծերոց պա-տիւ ասէին 'ի մէջ ժողովրդոցն, որպէս հայր 'ի մէջ հո-գւոց՝ երկամբք ծնելոց մանկանցն նախադասեալք:

## ԸՆԴԷ՞Ր ՔԱՀԱՆԱՅ ԱՆՈՒԱՆԻՆ ԵՐԻՑՈՒՆՔ

Քահանայ՝ ըստ մերումս պատշաճեալ լեզուի՝ մաք-րող կամ սրբիչ անուանի, և մաքրագործութիւն երի-ցանց է՝ նախ զգործս ամենայն հօտին սրբել, և ապա զանձինս նոցա: Քանզի ամենայն մարդոյ անկար է խո-րին խորհրդոցն Աստուծոյ հասանել. իսկ սա նորին

ընտրութեամբ և ժողովրդեանն վկայութեամբ՝ իբրև զիմաստուն տեղեակ նորին, 'ի բաց որոշեցաւ 'ի հասարակական կարգէ՝ միջնորդ լինել ընդ Աստուած և ընդ մարդիկ. այսինքն մաքրութեամբ մտաց առ Աստուած հայել, և վշտակցութեամբ մարմնոյ առ ժողովուրդն, և զխաղաղութի սոցա խոհական տքնութեամբ տնօրինել հանգունատիպ քահանայապետին մերոյ Քրիստոսի՝ որ նստի ընդ աջմէ Աստուծոյ, և այնպէս փորձ է մերումս տկարութեան, որպէս գրեաց Պօղոս. որոյ փոխան զոլով քահանայս՝ հարկաւորապէս յոր գործէ՝ նայեցեալ՝ անտի ուշ ունի ժողովրդեանն, և տեսանէ զնոսա ցնդեալ և զբաղեալ 'ի հոգս աշխարհիս և վերջացեալ վասն այնր 'ի կանխելոյն առ Աստուած. վասն այսորիկ սա վշտակից զոլով նոցա մարմնով՝ և ընտանի Աստուծոյ մտօք, փոխանակ նոցա կայ առաջի Աստուծոյ, զամենեցուն համար պարտուց յանձն իւր ընկալեալ խոստովանի, և աղէկիզութեամբ զհասարակաց փրկութիւն հայցէ. այս է առաջին մաքրագործութին:

Իսկ երկրորդն և վեհագոյնն՝ զառնն անարատ Քրիստոս, զոր մատուցանէ վասն նոցա Աստուծոյ Հօր պատարագ, և մաղթէ վասն նոցա այց առնել ողորմութբ հօտին, որով զյաւիտենական ընկալցի զփրկութիւն. զոր ընկալեալ պարգև 'ի Հօրէ՝ բաշխէ ժողովրդեանն. և զպատմուճան հոգւոց նոցա 'ի կրից մարմնոյն աղտեղեալ՝ այսպիսի լուացողական աճառով՝ սրբէ. ըստ այնմ. "Արիւնն Յիսուսի սրբէ զմեզ յամենայն մեղաց": Սրբէ դարձեալ և զերախայսն մկրտութեամբ, զմեղօք շաղախեալսն թողութեամբ, զբարեգործսն օրհնութբ. ուստի և տիրապէս առ զմաքրողականն անուն, որ է քահանայ:

## ԶԻ՞ՆՉ ԶՕՐՈՒԹԻՒՆ ԵՊԻՍԿՈՊՈՍՆ ԱՆՈՒՆ ՑՈՒՑԱՆԷ

ԱՆՈՒԱՆՔՍ այսոքիկ ոչ եթէ բնաւորն էութեան է, այլ ներգործութեան գործոյն, յորմէ վերջացեալք՝ պիտակ զանունն կրեմք անձանց նախատինս, ըստ որում եմ իսկ: Որ օրինակ իշխան ոք կոչի՝ յորժամ

1 Մի օրին. Օծ........:

ունի որոց իշխէ, և արքայ՝ յորժամ ունի որոց առաջնորդէ։ Իսկ առանց նիւթոյն սուսկ անուն է նմին այպանունին, այսպէս և եպիսկոպոսն անուն 'ի հելլենացի լեզու է, իսկ առ մերս այցելու թարգմանի. և այցելութիւնն՝ ընդարձակութիւն առատութեան է առաջնորդելոյն, վասն այսորիկ զտիրապէս գթութեանն առ զանուն. զի առաջնորդել է՝ միայն հովուել զորս 'ի ձեռին, իսկ այցելութիւն 'ի ստիպելոյ գթոյն, և կորուսելոցն միշտ 'ի խնդիր ելանել և զամենեսեան ողորմած կամօք սփոփել. ըստ այնմ այցելութեանն յորժամ այց արասցէ ձեզ Աստուած, այսինքն այժմ անտես եղելոյ յայսմ մասնէ խնամոց։

Արդ սա հռչակէ անուամբքն՝ թէ միշտ այց առնէ և նախախնամէ սիրովն Աստուծոյ զամենեցուն հոգւոց փրկութիւն։ Իսկ վերջացեալ յայսմանէ և ընդ այլ ճանապարհ գնացեալ՝ ոչ կարօտիմ 'ի բանէն զոր խօսեցաւ Քրիստոս ընդ իս դատել, այլ նոյն ինքն անունս իմ դատի զդատապարտեալս յաւուրն յետնում։ Այլ զիա՞րդ մխիթարեցայց յուսակտուր կործանեալս 'ի կամաց իմոց։

## ԶԻ՞ՆՉ Է ՏԻՐԱՊԷՍ ՔԱՀԱՆԱՅԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ ՍՈՑԱ

ՀՐԵՇՏԱԿ լինել յԱստուծոյ առ մարդիկ, և 'ի սոցանէ միջնորդ խաղաղութեան առ Աստուած. ըստ այնմ զոր մարգարէն ասէ առ սոսա. “Շրթունք քահանայիդ զգուշասցին գիտութեան, վասն զի օրէնս խնդրեսցեն 'ի քէն՝ որ հրեշտակ ես տեառն ամենակալի„։ Յայտ արար՝ թէ չէ բաւական սորա միայն սրբութիւն անձին, այլ պարտի զկատարեալն ունել զգիտութիւն աստուածայնոցն. զի 'ի խնդրելն 'ի նմանէ զճանապարհս ընթացից օրինացն Աստուծոյ ժողովրդեանն՝ կարող լիցի ցուցանել զուղիղն։ Այլ ցուցանէ ո՞րպէս, եթէ ոչ յորժամ ապացոյց բարբառոյն զանձն տայ, և զպէսպէս իմաստութիւնն նմին օժանդակ, զոր դիւրաւ մի ոք համարեսցի ստանալ. այլ զոր օրինակ հրեշտակ թագաւորին ոչ միայն ունի ուր առաքի պարզաբար զհրամանսն ասել, այլ այնպէս ձևացուցանէ զնոյնն որով հնարաւոր կարծիցէ զհաւանութիւնն, և ջանս նորա ոչ

միայն 'ի պատմելն՝ այլ և 'ի հնազանդեցուցանելն․ պարտական է ամենայն իրօք և կարգեալն յայս պատիւ յԱստուծոյ հրեշտակ և հրամանատար նորին՝ քահանայք, նախ զամենայն կամս և զպատուիրանս Աստուծոյ որ 'ի հին և 'ի նոր կտակարանս ամփոփեալ յանձինս իւրեանց ամբարել, և ըստ նոցա զընթացս քաղաքավարութեան կերպացուցանել․ և ոչ այնու բաւականանալ՝ այլ ուսելոցն հրեշտակ լինել, և 'ի դիմաց Աստուծոյ միշտ վայելչապէս ժողովրդեանն զնոյն պատմել․ այսինքն այլով օրինակաւ խօսել ընդ մանուկն, և այլ ընդ ծերն, այլ ընդ յանցաւորն, և այլ ընդ բարեգործն․ ոչ զնոյն օրինադրել ամուսնացելոյն և կուսին, ըստ որում գրէ պարզաբար առ Տիմոթէոս՝ առաքեալն ։ Այլ որպէս յարացոյցն հրեշտակ թագաւորին՝ նուաճեալ զաշխարհն իմաստութեամբ առ նոյն վերստին դառնայ փոխեալ զբարբառ իւր․ և որ աստ զթագաւորն ահաւոր և բուռն ցուցանէր, և առ որս եկն՝ զնոսա ըստամբակս, մտեալ առ նա զթագաւորին քաղցրութիւն այնուհետև յիշէ, և զաշխարհին հնազանդութիւնն․ այլ և պատարագ ածեալ 'ի նոցանէ՝ 'ի հաշտութիւն նովաւ աղերսէ․ ըստ այսմ և սա քահանայս՝ յետ ժողովրդեանն ցուցանելոյ ահաւոր զօրէնսն և զհրամանս Աստուծոյ, դառնայ առ նոյն աղօթիւքն, և զմարդասիրութիւնն նմին յուշ ածելովն՝ յիշէ զպէսպէս ողորմութիւնն 'ի վեր քան զարժանն մարդկան եղեալ․ և խոնարհ կերպարանօք և արտօսրալիր հայցուածովք[1] թախանձէ զնա, մանաւանդ և զնոցայն տառապանսն պատմէ առ որս եկն հրեշտակ․ Ստանգին, տէր, անմարմին ունին թշնամի, անզգեղջ չարագործ՝ մարտակից․ ներեա գթելոյն սոցա քում պատուիրանի․ մարմնոյ վիճակեցան աղցաւոր կրից, նախախնամեա զսոսա յիւրեանց տառապանսն ։

Այսպիսի է զօրութիւն ամենայն քահանայական աղօթից փոխանակ ժողովրդեանն և վասն նոցին պաղատանք․ ապա տայ և պատարագ 'ի նոցանէ Աստուծոյ հօր՝ պատճառ և միջնորդ խաղաղութեան ։ Իսկ սա ոմն այլ ոք, եթէ ոչ այն որ եկն ոչ դատել զաշխարհ, այլ

1 Մի օրին․ Հայեցուածովք․ և այլ օրին․ Հաստատունօք ։

փրկել, որ կայ ընդ աջմէ Աստուծոյ բարեխօս վասն մեր. և միշտ կենդանի առնել կարող է զինքեամբ մատուցեալսն առ Աստուած. որպէս գրեաց Պօղոս. Յիսուս Քրիստոս Աստուած ճշմարիտ և գլուխն եկեղեցւոյ իւրոյ. զոր առեալ 'ի մէնջ որպէս զգլուխ՝ նովաւ զամենայն անդամս ընէ նուէր 'ի վերայ սրբոյ սեղանոյն Աստուծոյ Հօր՝ ասելով, տկարացան տէր, հեղգացան, ծոյլ գտան առ կատարումն քո սուրբ պատուիրանին. մեղաք և անօրինեցաք. և սահմանեցեր "Անձն որ մեղիցէ նոյն և մեռցի". արդ այս տէր մեր և գլուխ մեռանի վասն մեր մարմնով, և մեք ամենեքեան մեռանիմք ընդ սմա կամօք. արդարացո զմեռեալքս 'ի մեղաց մերոց, զորոց դատապարտութիւնն սա յանձն իւր ընկալաւ, որ անմեղս է. և սրբեա սովաւ զխիղճ մտաց մերոց՝ կենդանապէս պաշտել զքեզ Աստուած կենդանի. քանզի տեսանես, ահա մահ եղև վասն ուխտին, որում յանցաւորք գտաք՝ առցուք զաւետիսն հրաւիրեալքս 'ի ժառանգութիւն կենացդ յաւիտենից. այս է քահանայագործելն։

## ՅՈՐՊԻՍԵԱ՞Ց ՀԱՍԱԿԱՑ ԻՐԱՒԱՑԻ Է ԱՌՆՈՒԼ ԶԱՆԱԶԱՆ ԱՍՏԻՃԱՆՍ

ՅԱՅՏՆԻ է այս ճշմարտութեամբ օրինացն, և բնութեանս կրիւք, զի տէրն մեր որ ամենակատարն է բնութիւն, լռեալ դադարեաց 'ի վարդապետականն գործոյ, մինչև սահման մարմնական հասակին զլրումն առեալ 'ի թիւ երեսնից ամացն ժամանեցաւ. և զՅովսէփ մինչև ցայս կէտ ընդ կիրթ փորձանաց անցոյց, և ապա ընտիր գտեալ՝ թագաւոր կացոյց Եգիպտոս. նոյն և զԴաւիթ և զՄովսէս. որովք ուսանիմք՝ թէ անմարթ է վաղվաղել և զոք 'ի մանկանց վասն հմտութեան յերիցութեան աստիճան վերացուցանել, որպէս և զծերն յաղագս տգիտութեան. այլ երկոքումբք հարկ է լինել կատարեալ. որպէս զի մի մատաղ հասակն իւիք փորձեալ յառաջադիմանալովն՝ 'ի դատաստան անկցի սատանայի, վասն այսորիկ նախ մինչ դեռ մանուկն է՝ ըզպաշտպանութեան գործսն կատարեսցէ, զընթերցողութեանն, զսաղմոսողոգութեանն, յետ որոյ և զսարկա-

ւագութեանն. և այս փորձ և ընտիր գտեալ բարիոք, և անցեալ ընդ երիտասարդական հասակն յեղյեղուկ դիւրաշարժութիւնն, առցէ զպատիւ կատարելոցն. որպէս զի զգուշագոյն լինիցի նմա շնորհն, և մի դիւրաւ գտանելովն դիւրաւ արհամարհելի:

Եւ այս և Սաղովմոն բազում անգամ խրատէ զմեզ յառակսն՝ զբնութեանս փորձ ճշդեալ. քանզի ասէ՝ որպէս ոչ զհետս նաւուց ծանեայ 'ի ջուրս կամ զարծուոյ յօդս, այսպէս և ոչ զմիտս մանկան յերիտասարդութեանն. այն զի ընդ մարմնոյն փոփոխման և միտքն տարաբերի, և տարաբերեալ մտաց զառաջնորդական պատիւ հաւատալ՝ զգուշալի է: Եւ մի 'ի մէջ կացցէ այժմ մեզ Դանիէլ կամ Տիմոթէոս, վասն զի ոչ մի ծիծառն գարուն առնէ՝ ասէ Աստուածաբանն: Ապացոյց մեզ ամենայն կարգաց և կրօնից Քրիստոս տուաւ, և ոչ այլ ոք. իսկ զնա տեսաք այսմ օրինաւոր սահմանի 'ի ներքոյ կացեալ մեզ առ 'ի խրատ:

## ՈՐՈ՞Վ ՈՐՈՇԵԱԼ ՃԱՆԱՉԻՆ ՅԵԿԵՂԵՑԻ ԱՅՍՈՔԻԿ ԴԱՍՔ

ԾԱՌԱՅԱԿԱՆ և իշխանական տեսակ զգեստուցն յայտնապէս զանազանէ զոսա 'ի միմեանց. քանզի ամենայն որ ժառանգաւոր է, գօտելոյծ զգեստուն տարացոյց տայ՝ թէ հաւատացեալ ինձ գործոյն իշխան եմ 'ի մէջ եկեղեցւոյս. իսկ կրօնաւորքն և աշխարհականքն և երախայքն գօտւով կացեալ յաղօթելն՝ զծառայական իւրեանց կարգն խոնարհութ̄բ ցուցանեն: Բայց տես և այլ զանազանութ̄ի, զի մի դասն և երեք կարգն, այսինքն երախայիցն հաւատացելոց և սրբոյ ժողովըրդեանն, և կրօնաւորացն կուսանաց՝ գօտւով կան յաղօթելն. իսկ կէս սարկաւագացն և ընթերցողացն և սարկաւագաց երեք կարգն և մի դասն՝ գօտելոյծ և թեզանեօք պատմուճանաւ: Բայց որ 'ի ներքս են 'ի խորանն սուրբ՝ մի դասն և երեք կարգն, այսինքն քահանայքն և եպիսկոպոսք և եպիսկոպոսապետք՝ գօտելոյծ պճղնաւոր ունին զպատմուճանսն և առանց թեզանեաց. որ զայս նշանակեն, թէ որք գօտւովն՝ են պատրաստական սպաս հրամանին, որպէս զծառայս կատարել զոր ինչ պատգամաւորութեամբն իւրեանց բերեն յԱստուծոյ

բան հրամանի ։ Իսկ սոքա որ զկնի նոցա ժառանգաւորք են և իշխանք , բայց ոչ տիրապէս հրամայողք ժողովըրդեանն , այլ պաշտօնեայք նոցա 'ի ներքոյ քահանայական դասուն հրամանի . զի զոր ինչ նոքա բանիւ հրամայեսցեն , սոքա գործով առ ժողովուրդն կատարեն , վասն այնորիկ և Թեզանեօքն պատրաստ առ 'ի գործ ունին զձեռս ։ Իսկ զինչ է գործն սարկաւագին . խունկ արկանել , և զխորհրդական սպասն բերել . դպրացն զմոմեղէնսն և զայլ ինչ կրել . կէս սարկաւագացն զդըրունսն պահել ։ Իսկ քահանայական կարգն յայտնանէ 'ի գործոցս որիշ է , միայն գործ է նոցա առ Աստուած պատգամաւորութիւնն , և խօսելն աղօթիւք վասն ժողովրդեանն , և իշխանութեամբ հրաման տալ պաշտօնէիցն զիւրաքանչիւր գործ . յաղագս որոյ պճղնաւոր և առանց Թեզանեաց ունի զպատմուճանն , յայտ արարեալ՝ Թէ բանի միայն է սպասաւոր , և ոչ մարմնական գործոյ . բանական աղօթիւքն միայն պաշտօն տանի Աստուծոյ և ժողովրդեանն , և ոչ զգալի գործով . քանզի խնկարկելն տնօրէնութիւն է նմա , և երկրորդին աստիճանի , որպէս ցուցաւ , և ոչ սեպհական գործ , այլ զիջումն 'ի պէտս հօտին ։

## ԶԻ՞ՆՉ ՆՇԱՆԱԿԷ ԲԱՑԱՒ ԳԼԽՈՎ ԿԱԼ. ՍՈՑԱ Ի ՏԱՆ ԱՍՏՈՒԾՈՅ Ի ԺԱՄ ԱՂՕԹԻՑՆ Ի ԽՈՐՀՐԴԱԿԱՆ ՏԵՂԻՈՋ ՔՆՆԵԼԻ Է ԶՍՏՈՅԳՆ

ՀԵԹԱՆՈՍԱՑ առաքեալն Պօղոս կրթելով զնոսա յօրէնս ճշմարիտս , կարի իմն կարեւոր հրամայէ նոցա ունել զայս կերպարան . " Առն ամենայնի , ասէ , գլուխ Քրիստոս է . և յորժամ սա յաղօթս կայ , եթէ ծածկէ զգլուխն՝ յամօթ համարի ինքեան զգլուխն իւր ըզՔրիստոս . վասն այսորիկ ոչ պարտի ծածկել զգլուխն , զի պատկեր և փառք Աստուծոյ է ,, ։ Յետոյ և 'ի բնութիւնն ապաստանեալ՝ վկայութեամբ նորա հաստատէ զասացեալն . " Իսկ ո՞չ բնութիւնդ իսկ ուսուցանէ զձեզ , զի այր եթէ գիսաւոր է՝ անարգանք են նմա , բայց կին եթէ գիսաւոր է՝ փառք են նմա ։ Ապա թէ ոք այսմ հակառակի , մեր սովորութեանն արտաքոյ գտանի , և եկեղեցեացն Աստուծոյ որ յԱնտիոք և յԵրուսաղէմ ,,

ասաց 'ի վախճան օրինացն ։ Արդ զի մի իւիք հակառակ ամբարձցի եկեղեցի հեթանոսաց օրինադրին իւրոյ Պօղոսի և բնութեանն սահմանի, ոչ ծածկէ զգլուխն 'ի մտելն 'ի տուն Աստուծոյ աղօթել. այլ և զաւելորդսն 'ի գիսացն[1] որ անարգանք են նմա՝ յապաւէ. որպէս և կինն՝ զի գեղքն փառք են նմա՝ ծածկութիւ օրինացն օժանդակէ. սակս այնորիկ ամենեցուն հասարակաց արանց հարկ է զաւելորդսն 'ի գլխոյ հերացն յապաւել և 'ի ժամ աղօթիցն բացաւ գլխով լինել. զի մի իւիք լիցուք առաքելական օրինացս դրժող ։ Այսպէս տեսանեմք այսօր զընթացս նախապատիւ ազգին Յունաց, զի հասարակաց են բացագլուխ և առանց յաւելուածոյ հերաց. և զայս փառս կնքեանց ունին, որպէս և գրեաց առաքեալ ։ Իսկ ժառանգաւորք եկեղեցւոյ ոչ թէ միայն որպէս զհասարակաց ժողովուրդն՝ զհերսն յապաւեն, այլ և զգագաթունսն ամենեւին 'ի հերաց մերկեալ ջնջեն, զոր մի կարծեսցես վայրապար և առանց խորհրդոյ, այլ եկ և քննեսցուք ըստ կարի, զինչ հարկ եղև առաքելոյ սահմանել զայս, և զմեզ 'ի սոյնս կըրթել. և իմանամք այսպէս ըստ կարի մեր ։

Աստուած զմարդն 'ի հոգւոյ և 'ի մարմնոյ մի կենդանի արար, և զերևելի մարմինս գործի ետ իմանալին մտաց, որպէս զի սորա յայտնի կերպարանքն զնորա ծածուկ կամսն հրատարակեսցէ. այսինքն ջրով զմարմինն 'ի մկրտութեանն լուանալովն՝ զմտացն յաղտոյ սրբելն հաստատեմք, և իւղով զմարմինն կնքեալ՝ զհոգւոյն սուրբ 'ի միտս դրոշմեմք, և զպարանոց յաղօթս կորացուցեալ՝ զմտացն առաջի Աստուծոյ զխոնարհելն ցուցանեմք, և զձայն բարձրացուցեալ, զնորա առ Աստուած աղաղակն յայտ առնեմք. զի մարդ և պատկեր Աստուծոյ՝ նա է, և սա համանգոյ նմին և զգալի կերպարան ։ Արդ որպէս ամենայն տարացոյցք արտաքին մարդոյս ներքնումն ներգործութեան է յարացոյց, այսպէս և այս. քանզի որպէս գլուխս 'ի մարմինս է առաջին և իշխանական 'ի վերայ այլոցն, այսպէս և 'ի բանականն հոգւոյ մասունք առաջին և իշխանական է անձնիշխանն միտք, ընդ իւրով ունելով զմարմինս զգայարանովք և զգալի շնչով,

1 Մի օրին. ի գլխոյն ։

և զցասմնական տեսակն և զցանկականն, զի սորա հրամանաւն ըստ ճշմարտութեանն վարին. և որպէս 'ի գըլուխս բազմապատիկ է հերքն և միշտ 'ի յաճումն, այսպէս և 'ի միտս անթիւ են խորհուրդքն և համապատածինք: Արդ որպէս զհերացն աւելորդն 'ի գլխոյս հատանեմք, այսպէս և առ Քրիստոս յուսոմն 'ի մտացն զաւելորդ խորհուրդսն յապաւեմք. և որպէս զգլուխ 'ի բաց ունիմք առանց նիւթեղէն ծածկութից, այսպէս և ամենայն քրիստոնեայ՝ զմիտսն 'ի բաց ունի առաջի Աստուծոյ, և զխորհուրդս նորա առանց մարմնական ցանկութեանց. և ոչ է ծածկեալ զնա ինչ յաշխարհէ և 'ի սորա կրից, բայց միայն առ յոյսն իւր Քրիստոս սէրն և հաւատն. զի սորա է նա գլուխ, և ասի յԱռաքելոյ՝ մտացս, և սորին գիտութեան նախ և առաջին առ նա հաւատն: Արդ եթէ ծածկէ զգլուխ մարմնոյն յաղօթելն, որ է ապացոյց գլխոյ հոգւոյն մտացն, յայտ առնէ թէ և միտքն է ծածկեալ 'ի մարմնական նիւթաւոր խորհրդոց և ցանկութեանց. և որ այսու զմիտքն ծածկէ, զՔրիստոս և զառ նա զյոյսն և զսէրն ամաչեցուցանէ: Արդ յորժամ լսես՝ “Քրիստոս 'ի ձեզ է, և զՔրիստոս զգեցեալ էք, և տաճար Աստուծոյ էք„, զմիտսն իմա. զի նորա գիտութիւնն հաւատն և սէրն զսոսա ընդունի և տաճարանայ. և պարտ է մարմնականս գործոյ զնորա ծածուկ ներգործութիւնն հաչակել. այսինքն, թէ որպէս չիք մարմնական ծածկոյթ 'ի վերայ իշխանական անդամոց գլխոյս յաղօթելս առ քեզ, Աստուած, այսպէս և չիք հիւթաւոր խորհուրդ 'ի վերայ մտացս, այլ միայն Քրիստոս, և առ նա դաշն և սէրն և հաւատն և յոյսն: Իսկ զի ամենեցուն քրիստոնէից անկ է զաւելորդս հերացն յապաւել, բայց ժառանգաւորացն զամենայնն մաքրել 'ի գագաթանէն, զայս իմանամք՝ թէ մեք որոց մտաց եղև գլուխ Քրիստոս, վասն առ 'ի նա սիրոյն և յուսոյն հատաք 'ի խորհըրդոց մերոց զամենայն աւելորդ ցանկութիւնս աշխարհիս, այսինքն զշնութիւն, զգողութիւն, զպղծութիւն, զսպանութիւն, զագահութիւն և զայլ տեսակս մեղաց, և միայն հարկաւորօքն բաւականանամք, սուրբ ամուսնութեամբ, և արդար ստացուածովք. զնոսին և խորհիմք, և ոչ զանիրաւսն, որպէս հերքդ զկշիռն ու-

նի՝ և ոչ աւելի։ Բայց ժառանգաւորքն զի սափրեն զայն, յայտ առնեն՝ թէ ամենայն ցանկութիւն աշխարհի պակասեաց 'ի ներքին խորհրդոց մերոց և ջնջեցաւ. յաղագս այսր եղաք յեկեղեցիս ժառանգակից և եղբայր Քրիստոսի և բարեկամ, 'ի ծառայական կարգէն վերացեալ. զի "Աշեցաք զամենայն զխոտութի՝ հպարտացեալ 'ի վերայ գիտութեանն Աստուծոյ, և գերեցաք զամենայն միտս 'ի հնազանդութիւն Քրիստոսի"։

Իսկ եթէ հերքն տարացոյց է խորհրդոց մտացն, բազում է այսր 'ի գրոց ածել վկայութիւն. իբր զայն՝ "Բազում եղեն քան զհեր գլխոյ իմոյ՝ որք ատեին զիս տարապարտուց". և "Փշրէ Աստուած զգլուխս թշնամեացն, և զհերոն կարձնալին". և տէրն, "Ձեր և ամենայն հեր գլխոյ թուեալ է" յայնմանէ որ քննէ զորոշումն շնչոյ և ոգւոյ։ Արդ քանզի եկն Քրիստոս, և զմեղաց զորոյ Մովսէս զկատարումն եհատ, նա զարմատն և զցանկութիւնն. և կատարումն մեղացն է մարմնով, իսկ արմատն մտօք, վասն այսորիկ Մովսէս յօրինակ հատանելոյ զկատարումն մեղացն՝ զմարմնոյն թլփատեաց. իսկ առաքեալ յապացոյց զարմատն հատանելոյ խորհրդոցն՝ զհերսն 'ի գլխոյն։ Բայց մի ոք ներհակ բերցէ բանիս, թէ վասն զի արդեամբք տկարանամք առ խորհրդոյս զօրութիւն, նշկահեսցուք և զօրէնս. քանզի եթէ զայս այսպէս խորհիս, ապա և մկրատիս մի, զի մեռելութեան նշանակ է ընդ Քրիստոսի, և մահու նորա տնկակցութիւն։ Այլ ահա թէպէտ և այսպէս ուխտեմք արդեամբք, ըստ խորհրդոյն սակաւուց է մեռանել. և քահանայանամք, բայց 'ի գլուխ օրինացն որպէս պարտիմք՝ ոչ ժամանեմք. այսպէս և զայս օրէնս՝ զխորհրդոյս զօրութիւն գիտել պիտի, և զմարմինս ըստ առաքելական օրինաց կերպարանել. իսկ եթէ մտօք տկարանամք հաւասարել նմին և առանց պատրուակի խորհրդոց լինել, այսպէս հաւատասցուք՝ թէ մարմնոյս ձև զկամս ցուցանէ՝ թէ զայս ախորժեմ բացագլուխ լինել և ըստ ներքին մարդոյս, որպէս արտաքինս է. իսկ թէ ծածկի սա ոչ յիմ ախորժակաց, այլ 'ի թշնամւոյն ներածութեանց։ Այլ առեալ յասոյն մեր Քրիստոսի զկամս մեր նշանակաւ ապացուցին, զտկարութիւնն շնորհօքն իւր արդարացուցանէ 'ի ձեռն

հաւատոցն. զի Նա է միշտ արդարութիւն մեր, և ոչ գործն. այլ զհաւատոյն տամք և ’ի Նորա գործոյն վայելեմք. ըստ այնմ, “Շնորհօք Նորա էք փրկեալք ’ի ձեռն հաւատոցն. և այս ոչ ’ի ձէնջ, այլ յԱստուծոյ պարգև է, ոչ ’ի գործոց՝ զի մի ոք պարծեսցի”: Ուրեմն որ անգոսնէ զօրէնս, զհաւատոյն առ շնորհս արհամարհեաց, և ’ի գործս իւր յուսացաւ, և ’ի մարմին բազկի իւրոյ ապաստան եղև, որոց տկարացեալ՝ ոչ հաւատաց շնորհօք արդարութեանն. իսկ որ կատարէ և զգործն՝ որ ըստ ապացուցին ոչ կարէ, հռչակէ՝ թէ կամիմ զնոյն, բայց ըստ տկար բնութեանս վերջանամ. և ’ի շնորհիդ Քրիստոս ’ի ձեռնտուութիւն յուսամ զոր հաւատն և սէրն ստանայ սեպհական: Քրիստոնէից արդարութի Քրիստոս է և առ Նորա շնորհն և յոյսն և հաւատն. “Զի թէ գործովք արդարութի էր, ապա Քրիստոս զուր մեռաւ”, ասէ առաքեալ. իսկ զի չէ զուր մահն, յայտ առնէ՝ թէ զոր ինչ տկարանայք յօրինաց իմոց կատարել, առ իս յուսացիք, և սրբեմ. զոր գիտելով առաքեալ Նորին ասէ. “Արիւնն Յիսուսի սրբէ զմեզ յամենայն մեղաց”:

## ԶԻ՞ՆՉ ԵՆ ԵՒ Ո՞ՐՊԷՍ ԱՅԼ ՄԱՐՄՆՈՅ ԶԳԵՍՏՔ ՈՐՈՎ ՊԱՃՈՒՃԵԱԼ ԲԱՑԱԳԼՈՒԽ ԶԽՈՐՀՐԴԱԿԱՆ ՊԱՇՏՕՆՆ ԿԱՏԱՐԵՆ ԺԱՌԱՆԳԱՒՈՐՔ ԵԿԵՂԵՑՒՈՅ

ՅՈՒՑԱՒ հասարակ բանիւ՝ թէ ամենայն ժառանգաւորի է զգեստ զատելոյծն, և իշխանականն, և գլուխն բաց, և առանց հերացն պատրուակի, այսուհետև խընդրելի է, ուստի եգիտ զայս տեսակ ձևոյ կերպարանաց եկեղեցի, և կամ ’ի յոլքան տարազս կերպարանի ’ի մէջ իւր բաժանեաց: Արդ խուզեալ ճշմարտապէս գտանեմք զայն յԱստուծոյ հրամայեալ Մովսեսի. ըստ այնմ զոր առաքեալ ասէ. “Որք առակաւ և օրինակաւ երկնաւորացն ’ի վրան ժամուն պաշտէին”: Բայց դու մի զայն ընդդէմ բերեր՝ թէ զատուեր հանդերձելոցս ունէին օրէնքն, և հինն անց. քանզի է ինչ՝ որ անց ’ի հնոյն, և է՝ որ առաւել ևս հաստատեցաւ: Եւ քանզի յերկս դրոշեաց Մովսէս զվրան ժամուն, ’ի սրբութիւն սըրբոցն, և ’ի խորանն սուրբ, և ’ի սրահ խորանին, ’ի սըր-

բութիւն սրբոցն եդ զտապանակն և զսեղանն քաւու-
թեան, յօրինակ աստուածութեանն, որ յերկինս երկ-
նից 'ի սրովբէից պաշտեցեալ. իսկ յառընթեր խորանն
եդ զսեղան հացիցն, և զսեղան խնկոցն, և զաշտանակն
յոսկւոյ կազմեալ սոցա, որ էր երկնի օրինակ և անա-
պական 'ի նմա պաշտօնէիցն պաշտաման. իսկ 'ի սրահն
արտաքին եդ զպղնձի սեղանն ուր զոհքն և պատարագքն
մատչէին յօրինակ երկրի. արդ զապացոյցն երկրի և
զերկրաւոր զոհից սովորութիւն եթող եկեղեցի, հա-
ւանեալ Աստուծոյ որ ասաց. « Ընդ զոհս անասնոց ոչ
հաճեցայ ». բայց զներքին խորանսն որ երկնի և երկ-
նից երկնի յարացոյցք էին, ըստ առաքելոյ առ և ընկա-
լաւ, և զիւր սովորութիւնն այսպէս հաստատեաց, զի
ըստ սրբութեան սրբոցն ուղղեալ զխորան տաճարիս,
և ըստ երկրորդ սրբութեանն զտաճարս, եդ 'ի ներքոյ
զսեղան քաւութեան զտէրունի մարմնոյն զոհարանն,
և արտաքոյ զխունկսն և զաշտանակս լուսոյ, և զընծայ-
արան սեղան տէրունի հացին, որպէս և ուսաւ:

Արդ որպէս զտաճարս և զսեղանս որ 'ի սմա՝ ուղղե-
ցաք ըստ երկնից օրինակի և նախատիպն գաղափարի,
այսպէս և զճշմարիտ պատարագիս քահանայագործօղս
պատուեալ փառաւորեցաք քահանայական նոցա զգես-
տուքն, զոր ընկալան 'ի հրամանէն Աստուծոյ: Եւ տես
զհաստատութիւն օրինակին, քանզի յորժամ արտա-
քոյ խորանին 'ի սրահն և 'ի սեղան զոհիցն որ խափա-
նելոց էր՝ պաշտէին, ոչ եթէ այսու զգեստուքս զարդա-
րէին, այլ զայս զգենոյր քահանայապետն Ահարոն և
որդիք նորա քահանայքն՝ յորժամ 'ի խորանն խունկ
արկանէին, և զաշտանակսն լուցանէին, և 'ի սրբութի̃
սրբոցն աղօթել մտանէին. քանզի ասաց, ասէ, Աստուած
ցՄովսէս, « Եւ արասցես պատմուճանս Ահարոնի եղ-
բօր քում և որդւոց իւրոց, որովք քահանայասցին ինձ »:
Եւ այս օրինակ սրբոց պատմուճանացն՝ զոր առնիցեն.
« Պճղնաւոր պատմուճան, և 'ի վերայ այնորիկ վակաս
զուսովքն և զլանջօքն, և զտախտակն դատաստանաց յե-
ռեալ ընդ վակասին առ լանջօքն, և վտաւակս պճղնա-
ւոր և զօձիսն գրապանաւ. և զխոյրն բոլորակ ձևեսցես
շուրջանակի. և վակասն լիցի 'ի կապուտակէ և յոսկւոյ
և 'ի կարմրոյ մանելոյ և 'ի բեհեզոյ նիւթելոյ գործ ոս-

տայնի նկարակերպ երկու վակասք ընդ միմեանս յե-
ռեալս, և վերջք նոցա մանուածոյս ծաղկեալս, գործ
հիւսկէն,,. այսպէս, ասէ, լցի և տախտակն դատաստա-
նաց 'ի զանազան երանգոց, յոր և երկոտասան ակունքն
ընդ վակասն յեռեալ. իսկ վտաւակն որ է 'ի վերայ սո-
ցա, ասէ, համակ կապուտակ լցի, և ստորոտն զանգա-
կօք և նռնաձևօք զարդարեալ,,:

Այսպէս և ըստ այսմ օրինակի է և նորս քահա-
նայից պատմուճանք. զի զգենուն 'ի ներքոյ զպճղնաւոր
պատմուճանն, և 'ի վերայ նորին արկանեն զփակասն,
որ այժմ կոչի առ մեզ ուսանոց, այնպէս ըստ որում
հրամայեալ է 'ի զանազան նիւթոց նկարակերպեալ:
Իսկ զտախտակն դատաստանի ունին միայն քահանայա-
պետք յաջակողմ կախեալ 'ի վերայ բարձիցն, և զվը-
տաւակն պճղնաւոր 'ի վերայ այնորիկ՝ զոր այժմ կոչեմք
նափորտ: Սուրբն ապա աստուածադիր է օրէնն զգես-
տուց եկեղեցւոյ առաջնորդաց, և ոչ մարդկեղէն իմաս-
տից գիւտ, և արհամարհելով զսա առ օրէնս Աստուծոյ
մեղանչեմք. զի թէ նոքա անբան արեանցն պաշտօ-
նեայք այսքան զգուշութիւն ուսան. իսկ մեզ անբիծ
զարիւնն որդւոյն Աստուծոյ սպասաւորաց՝ քանիօ՜ն ա-
ռաւել պարտ է ունել հպատակութիւն մարմնոյ և հոգ-
ւոյ 'ի քահանայագործելն:

Արդ պարտ է գիտել՝ թէ պատմուճանն պճղնաւոր
ամենեցուն է ժառանգաւորաց եկեղեցւոյ զգեստ, և
հոլանի կայն ըստ իշխանական պատուոյ և առանց գօտ-
ւոյ: Իսկ սարկաւագացն պատուոյ և իշխանութեանն
առաւելութեան նշանակ այս է, զի զվակասն միայն 'ի
վերայ ահեակ ուսին արկցէ 'ի վերայ պճղնաւոր պատ-
մուճանին: Իսկ քահանայիցն ևս քան զնոսա գերա-
զանցութի, զի երկու ուսովքն զնոյնն բառնայ զքաղցր
տէրունական լծոյն ապացոյցն, և զպճղնաւոր վտաւակն.
այսինքն զնափորտն 'ի վերայ այնորիկ զգենուցու: Բայց
քահանայապետից՝ կրել ընդ վակասին և զտախտակն
դատաստանաց, որ է ծայրագոյն պատիւն. և ոչ միայն
զգենուլ զնափորտն վտաւակ պճղնաւոր, այլ առնուլ
'ի վերայ նորին, զպատուական եմիփորոնն խաչիւք զար-
դարեալ. որովք Քրիստոսի Աստուծոյ յուսոյն մերոյ
պատկեր զանձն ցուցանէ. քանզի նա զխաչն փառս իւր

անուանեաց. “Այժմ, ասէ, փառաւորեցաւ որդի մարդոյ, և Աստուած փառաւորեցաւ 'ի նմա,,. գրէ և աւետարանիչն. “Զի և ոչ էր Հոգի, քանզի Յիսուս չև էր փառաւորեալ,,:

Այս ընդէ՞ր էր խաչն փառք Քրիստոսի՝ խնդրելի է. այսինքն՝ զի 'ի նմա ետ զմարմին իւր Հօր պատարագ կամաւոր վասն մեղաց մեր, և զձեռագիր յանցանաց մարդկան պատառեաց. և ազատելովն զմեզ 'ի դատակնքէ մահուն՝ փառաւորեաց զանուն իւր 'ի մէջ արեամբ իւր փրկեալ հօտիս, և վասն մեր առ ամենայն դասս հրեշտակաց:

Արդ նոյա՝ որպէս փառաւորեցաւ, նմա աւ յեկեղեցւոյ մէջ յաթոռ իւր քահանայապետն փոխան 'ի մէջ այս հօտիս. զոր Քրիստոս ոչ վայրապար՝ այլ մահուամբ ժառանգեաց. վասն այսորիկ և զեմիփորոնն զարդարեալ խաչիւք զգենու, յայտ արարեալ՝ թէ ընդ թագաւորին մերոյ Քրիստոսի և ես որ փոխան եմ նորա՝ զհինգ զգայարանս իմ 'ի խաչ հանի ամենայն ցանկութեանց աշխարհի. և կենդանի եմ ես՝ ոչ ինձէն, այլ կենդանի է յիս միայն Քրիստոս: Այս զայս մահս իմ որ ընդ նմա՝ ունիմ փառք ինձ, և առիթ պատուոյ և իշխան 'ի մէջ հօտիս նորա լինելոյ. վասն այսորիկ և յաթոռ նորա նստիմ յաջորդ 'ի մէջ եկեղեցւոյս. զի և ինձ աշխարհ 'ի խաչ ելեալ է, և ես աշխարհի: Որպէս նա կամաւոր մահուամբ մարմնոյն ժառանգեաց զսա, և եղև առաջնորդ 'ի յերկինս, այսպէս և ես կամաւ մեռայ ընդ նմա աշխարհիս ըստ հինգ խաչից ապացուցի հինգ զգայարանօքս, և կեամ միայն մարմնով վասն պտղոյ գործոյ և հօտիս առաջնորդելոյ. ապա թէ ոչ՝ կամքս և ցանկութիւնս բովանդակ 'ի խաչ է ելեալ աշխարհիս: Իսկ եպիմիստիկոնն զոր կոչեմք բազպանս, որ է և այս քահանայապետական պատուոյն՝ վասն պատրաստ առնելոյ զձեռսն 'ի քահանայագործելն՝ սահմանեցաւ, զի մի թեզանիք պատմուճանին սայթաքեցուցէ զնա 'ի պաշտօն պատարագին. այլ զի այն զսպեսցէ զձեռսն, և պատրաստ սպասաւորութեան արասցէ. իսկ տախտակն դաստաստանի՝ զոր կրէ սա 'ի վերայ բազկացն, ըստ որում և 'ի հնումն քահանայապետն 'ի վերայ լանջացն, զայն տայ մեզ տարացոյց՝ թէ որպէս նա երկո-

տասան ակամբք զերկոտասան նահապետացն անուանս տանէր առաջի Աստուծոյ վասն քաւութեան որդւոցն բարեխօս, այսպէս և ես զանուն փրկչին մերոյ Քրիստոսի՝ որ է 'ի սրտին վերայ, տանիմ առաջի Աստուծոյ միջնորդ հաշտութեան. իսկ վակասն լանջացն և նափորտն վտաւակ՝ երկրորդ դասուն որ յետ քահանայապետին՝ քահանայիցն կարգի տուաւ որպէս և քահանայապետին. և զվակասն ուսանոց՝ իմանամք քաղցր լըծոյն Քրիստոսի տարացոյց, զոր բարձին 'ի վերայ պարանոցին իւրեանց, և 'ի գործ պատուիրանին վաստակին անաշխատ. վասն այսորիկ և արժանացան առ 'ի նըմանէ զվերակացութիւն և զառաջնորդութիւն ժողովըրդեան իւրոյ ժառանգել. զի մի միայն ինքեանք, այլ և 'ի սեղանաւորս զարծաթ վարուց իւրեանց արկեալ բազմապատկեցուսցեն։

Իսկ նափորտն վտաւակ զարքունական պատիւն հրաչակէ. այսինքն թէ վասն զի զներքին մարդս բովանդակ 'ի ներքոյ լծոյ օրինացն Քրիստոսի եդի, վասն այսորիկ արտաքոյ ետ ինձ իշխանութիւն 'ի տունս իւր և յեկեղեցի առաջնորդ լինել ամենեցուն վերակացու, և նորին առ սոսա հրամանացն հրեշտակ, որպէս և ցուցանէ զօտելոյծ պատմուճանս՝ թէ ոչ եմ 'ի կարգ ծառայութեան, այլ 'ի բարեկամացն դաս և 'ի խորհրդակցացն Քրիստոսի. և ոչ ևս կոչէ զիս ծառայ, այլ բարեկամ. զի ունիմ զօրութիւն իմաստից՝ տանել զբանից նորա զօրութիւն, զոր ինձ աւանդեաց։ Բայց խոնարհ քան զսոսա սարկաւագացն աստիճան, թէպէտ և ունին զվտաւակ պատմուճանն և զիշխանական՝ այլ թեզանեօք, և զվակասն լանջանոց 'ի վերայ ահեակն ուսի միայն, յայտ արարեալ՝ թէ մեք զլուծ պատուիրանին կարողացաք մի ուսով միայն բառնալ 'ի ներքին մարդս. վասն այսորիկ և իշխանք կարգեցաք պաշտելոյ և սպասաւորելոյ, և ոչ թէ առաջնորդելոյ. յաղագս այսորիկ և թեզանեօքս զձեռս պատրաստ առ 'ի գործ արարաք, առնուլ զնուէր ժողովրդեանն և տալ Աստուծոյ, և զնորա պարգեւն նշանակաւ խնկարկութեանն ըստ հրամանի քահանայիցն բաշխել ձեզ. նոյնպէս և այլ պաշտօնէիցն դասք՝ որք յետ սոցա կարգեցան, ցուցանեն թէ իշխանք են ոչ. տիրապէսք, այլ գործաւորք և պաշ-

տօնէայք քահանայապետին և քահանայից հրամանի․ ոմն զդրօշմն պահել, այլ ոմն զմօմեղէնսն և զջահսն կրել։

Արդ զայս զգեստուց նիւթ ազգ քրիստոնէից 'ի զանազան երանգս նիւթոյ փոխեցին․ և քանզի 'ի հնումն Աստուած կտաւիս հրամայեաց առնել զպատմուճանսն, Փռանգք անփոփոխ պահեցին զաւանդութիւնս և կտաւիս զգենուն․ նա և խոյր 'ի գլուխս դնեն, և յաղօթելոյ ժամն վերացուցանեն։ Իսկ Հոռոմք առ 'ի միտս յառեցան՝ թէ յայնժամ մինչ Աստուած մարմին ոչ էր զգեցեալ և ոչ մարդ ծնեալ, 'ի դէպ էր յանծնանելի նիւթոյ զնորա պաշտամանն զգեստ պատշաճել․ իսկ այժմ զի Քրիստոս զառն եղև և անուանեցաւ, վայելուչ է զնոյն պաշտողացս՝ նորին ստևոքն առանց պաճուճանաց զարդարիլ․ իսկ վակասն ուսանոց եմիփորոնն և այլն ամենայն մի և նոյն է հասարակաց ամենեցուն․ այսինքն 'ի զանազան որակութեանց թելոց կատարեալ, ըստ որում և զմերս է տեսանել․ նոյնպէս և զգեստուցն ձև և կերպարան։

Արդ որոշի այժմ յեկեղեցի Աստուծոյ քրիստոնէից ժողովուրդ յերիս դասս, 'ի ժողովուրդն, 'ի պաշտօնեայսն, և 'ի քահանայսն․ և նոքին դարձեալ յիւրաքանչիւր դաս զանազանին յերիս աստիճանս․ քահանայիցն կարգ՝ յեպիսկոպոսապետս, յեպիսկոպոսս և 'ի քահանայս․ քանզի սոքա պատուով մի են, և միայն անուամբ և աստիճանաւ զանազանին։

Երկրորդ դաս սարկաւագացն որոշի յերիս աստիճանս, 'ի սարկաւագս, 'ի կէս սարկաւագս և 'ի դպիրս։

Երրորդ դաս ժողովրդեանն՝ ոչ ըստ աստիճանի, այլ միայն հաւատով զանազանին, 'ի կրօնաւորս, 'ի սուրբ ժողովուրդս և 'ի հաւատացեալ երախայքն։

Եւ տեղ կայանի է քահանայական դասուն շուրջ զԱստուծով կալ 'ի խորանն սուրբ, որպէս զաթոռն, զսերովբէսն, զքերովբէսն, անընդմիջելի հպաւորութք։ Իսկ սարկաւագացն ընդ մէջ նոցա և 'ի խոնարհ դասու ժողովրդեանն․ այսինքն մտանել 'ի խորանն համարձակ և հաղորդել քահանայական խորհրդոցն և բերել զնոյն արտաքս և մատակարարել ժողովրդեանն, ոմն զքարոզութիւնն, ոմն զընթերցումն, ոմն զսաղմո-

սերգութիւնն։ Իսկ ժողովուրդն լինին առընթեր սոցա և ուսանին զասացեալն զանազանաբար հպատակութք. քանզի 'ի կրօնաւորացն իջանէ 'ի սուրբսն, և 'ի սրբոցն յերախայսն, և առ նոսա նահանջի, որպէս երկնային գիտութիւն առ հրեշտակս։ Այսոցիկ երից դասու 'ի վերայ կարգելով զգլուխն առաքելոց, Քրիստոս, զՊետրոս՝ յանձն արար զսոսին նմին արածել ըստ զանազան սիրոյն զօրութեանց. "Սիմոն, ասէ, սիրես զիս". և յորժամ խոստովանեցաւ, ապա ասաց՝ թէ "Արածեա զգառինս իմ", այսինքն զհասարակաց ժողովուրդնն։ Իսկ երկրորդ պահանջել զհաստատութիւն սիրոյն յաւել, թէ "Արածեա զոչխարս իմ", այսինքն քահանայական պատուոյն իշխել գառանցն և ընդ նոսին պաշտօնէիցն դասու։ Իսկ և առաւել զսէրն գրաւական առեալ՝ ապա ետ նմա իշխանութիւն քահանայապետութեան, տիրել քահանայիցն և որ ընդ նոքօք պաշտօնէիցն և ժողովրդոց։ Այլ զի՞նչ այլ յայսմանէ ուսուցանէ մեզ աղբիւրն իմաստութեան՝ քան զայս, եթէ ոչ է բաւական այլ իրք պատուիրանի զոք 'ի մարդկանէ յարածելոյ զհօտն Քրիստոսի յաստիճան հանել, բայց միայն առ նա սիրոյն հաղորդութիւնն։ Քանզի մինչև զայս ճաշակս առեալ է ձեռնտուութեամբ իշխանութեան, դիւրաւ ումի զնա դրժել հակառակամարտն, իսկ 'ի սմանէ հաղորդեալ՝ զօրանայ 'ի վերայ մարտին՝ օգնականութեամբն Աստուծոյ։

Այլ այս ո՞ր սէր է. այն՝ զոր Պօղոս տայ տարացոյց. "Եթէ ունիցիմ, ասէ, զխորհուրդս և զգիտութիւնս, և ջամբիցեմ զինչս իմ աղքատաց, և մատնիցեմ զմարմինս իմ յայրումն, և սէր ոչ ունիցիմ, ոչ ինչ օգտիմ"։ Սմանէ և Յովհաննէս գրէ. "Երկիւղ ոչ գոյ 'ի սէրն. այլ սէրն կատարեալ 'ի բաց մերժէ զերկիւղն"։ Յորժամ յայս սիրոյս սահման ժամանեմք աշակերտքս, ապա տէր մեր առեալ զնոյն գրաւական՝ զգառինս իւր տայ մեզ յարածել, և կացուցանէ յաստիճանս սարկաւագութեան և յիշխանութիւն եկեղեցւոյ իւրոյ։ Իսկ զի սիրոյ սահման և չափ ոչ է, այլ օր ըստ օրէ առ բաղձալին զաճելն է բնաւորեալ, յորժամ յայնմ աստիճանէ ևս աճեցուցանէ զսէրն, և ազատի առաւելապէս 'ի մարմնական վայրաքարշութենէ, ապա առեալ տեառնն

զսձումն առաւելութեան սիրոյն՝ տալ նմա զպատիւ քահանայութեան, իշխել և ոչխարացն պաշտօնէից, և առաջնորդել նոքօք հանդերձ զառանցն ժողովրդոց. որոյ յառաջադէմն նկրտեալ սիրովն՝ որպէս և Պետրոսն, և ըստ երկուց աստիճանացն անսայթաք ընթացեալ առ տէրն իւր բաղձանօքն, և 'ի նա ապաստանեալ զգիտութիւն առաւելութեան սիրոյն, լինի արժանի 'ի ծայրագոյնն ելանել յաստիճան քահանայապետութեան, և արածել զխոյսն՝ զգասս քահանայիցն, և զոչխարսն՝ զկարգս պաշտօնէիցն, և զգառինս՝ զխումբս ժողովրդոցն։ Յետ որոյ լինի համարձակ լսել 'ի Քրիստոսէ, թէ եկ զկնի իմ 'ի հայրենի փառսն, և 'ի խոստացեալ աթոռսն։

Այսպէս ընթացք և զանազանութիւն են սիրոյ, և այսպէս ըստ իւրաքանչիւրոցն չափոյ որոշեցան 'ի Քրիստոսէ աստիճանք հոլովութեան. զորովք ոչ է պարտ զանց առնել, այլ վերձակելոցս դիտել, և զտկարութիւն տգիտութեն մերոյ աշխարել. իսկ ոչ վերձակելոցն՝ ճանաչել և առ կամս օրինացն տեառն իւրոյ զգուշաբար բերիլ. քանզի դատաստան կայ ամենայնիս և հատուցմունք արդար իրաւամբք։ Նա կարի անմտութիւն է՝ 'ի պէտս մարմնոյ հեշտութեան՝ յԱստուած մեղանչել, որպէս և ասէր Հեղի առ որդիսն իւր. "Որդեակք յորժամ մարդ առ մարդ մեղանչէ, առ Աստուած աղօթեն վասն նորա. իսկ յորժամ յԱստուած մեղանչէ, առ ով աղօթեսցեն ընդ նորա„։ Ամենայն յանցանք մեղք է, և մարմնոյ տկարութիւն առաջի Աստուծոյ և ներելի 'ի նմանէ վասն հարկաւորապէս լինելոյն բնութեանս ախտակիր. իսկ այս ոչ մեղք միայն, այլ և զզուանք և անիրաւութիւն Աստուծոյ՝ զիւր պատիւն յափշտակել 'ի նմանէ առանց իւրոց կամաց, և առնուլ զնոյն ոչ 'ի պէտս փառաց իւրոց, այլ 'ի մեր. որք կարեաք և առանց այնր զհարկաւոր կեանս կատարել. և այս յանդգնութիւն ծնանի յարհամարհութենէն Աստուծոյ և 'ի կարծիս ձգելոյ զվրէժխնդրութիւն նորա։

Ո՛վ թշուառութեանս, և եբարձ յուշոյ մտաց մերոց բանսարկուն զԱրայելի ապացոյցն լինել զանազանապէս. որպէս և գրէ առաքեալ, "Այն օրինակաւ լինէր առ նոսա, և գրեցաւ 'ի մեր վարդապետութի„։ Ո ի ո՞

այլ տուաւ բերանոյ երկրի նոր սքանչելեօք կերակուր, եթէ ոչ ինքնայօժար կամօք խնդրողացն զպատիւ և զիշխանութիւն և զաստիճան քահանայութեան, զտունն Կորխայ ասեմ, զԴաթանայ և զԱբիրոնի. որոց և բուրվառքն պահեցան յիշատակ չարեացն 'ի մէջ Իսրայելի: Այլ զտապանակն Աստուծոյ արար գերի այլազգեացն, թէ ոչ քահանայիցն առ 'ի պաշտօնն իւրեանց հեղգութիւնն. և այն 'ի միս կաթսայի արհամարհութիւն. քանիօ՞ն մերս առաւել առ որդւոյն Աստուծոյ պաշտօն ժպրհութիւն, և առ Հոգւոյն սրբոյ շնորհս վայրապար ծախումն: Ո՞ւմ այլ ումեք մեղք էր, որ ոչ քաւեցաւ զոհիւք և պատարագօք, բայց թէ քահանայիցն. "Մեղք տանն Հեղեայ, ասաց Աստուած, ոչ քաւեսցի զոհիւք և պատարագօք,,: Արդ քանի՛ առաւել տեսանի առ մեզ յանդգնութիւն 'ի պաշտօնս մեր քան զորդւոցն Հեղեայ: Ապա, եղբարք, զտեառն առ մեզ զերկայնմտութիւնն փրկութիւն համարեցուք, և ձողոպրել միշտ յանաչառ ատենէն զգուշասցուք:

## ԶԻ՞ՆՉ ՆՇԱՆԱԿԷ ԱՆՈՒԱՆԵԼ ԶՍՈՒՐԲ ԶՊԱՏԱՐԱԳՆ ԽՈՐՀՈՒՐԴ

ԽՈՐՀՈՒՐԴ 'ի մարմնականս սովոր եմք կոչել զժամանակն, յոր թագաւորն զիշխանակիցսն առանձինն առնու 'ի հասարակաց ամբոխէն, և խորհուրդ առնու ընդ նոսին զհնարս խաղաղութե̃ աշխարհին և զխնամս յաղթութեան թշնամեացն, և որոց 'ի սոյն յարին կարեւոր խնդիրք: Այլ հարկ է յայնժամ իշխանացն առ տէրն իւրեանց համարձակ խօսել վասն ուղղութեան խորհրդոյն և օգտի աշխարհին, զոր առաջի բազմացն ոչ համարձակէին: Նոյնպէս և վիճակեալքն 'ի քահանայականս կարգ՝ Աստուծոյ գործակիցք են, ըստ որում գրեացն Պօղոս. մանաւանդ և աթոռակիցք, զի նորա փոխան վարեն զիշխանութիւն հոգւոյ 'ի մէջ մարդկան: Արդ հարկաւոր է սոցա ըստ աւուր աւուր առանձնանալ 'ի հասարակաց ամբոխէն, և առ տէրն իւրեանց 'ի խորհուրդ մտանելով՝ զընթացս գործոյն որ 'ի ձեռս առին՝ ցուցանել. ուստի և առանձնանան 'ի պատշաճ ժամու պատարագին 'ի խորանն սուրբ՝ շուրջ կացեալ զԱ

տուծոյ. զորոյ զօրութիւնն հաւատացաք 'ի սեղանն գերագոյն տպացեալ. և Թագնաբար յուշ ածեն նմա զմեծամեծ երախտիսն, որ արար 'ի վերայ աշխարհի. այնպէս սիրեցեր, ասեն, զաշխարհ, մինչև զորդիդ միածին ետուր. և ոչ միայն ետուր, այլ և ընդ կիրս տըկարութեանս սահմանեցեր անցանելոյ. յետ որոյ և խաչի վասն մեր մատնեցեր. որ կատարեալ զհնազանդութիւնն՝ մերովս ընդ աջմէ քումմէ առհաւատչեայ փըրկութեան բազմեցար: Արդ աղաչեմք զքեզ խորհրդապէս, մի զայսքան անզուգական երախտիս՝ փոքունց յանցանացն հաւասարեր, և վասն մեղաց յաստուածային շնորհացդ զրկեր. այլ որոց զսէրն 'ի թշնամութեանն մահուամբ դորա յայտնեցեր, առաւել կենօքն առատացո. և թէ մինչ թշնամիքն էաք՝ հաշտեցաք ընդ քեզ մահուամբ որդւոյ քո, ապա այժմ առաւելապէս ապրեսցուք սովաւ յարդար իրաւանցդ բարկութենէ:

Այսպիսի Թախանձանօք խորհրդապէս շարժեն զգըթութիւնն Աստուծոյ յողորմութիւն աշխարհի. և զի շարժի՝ ուսոյց մեզ իմաստութիւն նորին Քրիստոս. “Ամենայն զոր ինչ խնդրէք յանուն իմ 'ի հօրէ, տացի ձեզ”: Եւ զայսպիսի առատութ̃ գթութ̃ն ոչ դատեցաւ բարեկարգութիւն եկեղեցւոյ հասարակաց ժողովրդեանն լսել. զոր սոքա 'ի սէրն Աստուծոյ համարձակեալ վասն նոցին պաղատին. և որպէս և ոչ մարմնական իրաւունք զխորհուրդ արքայի. այլ միայն քահանայիցն անմռունչ ձայնիւ և սրտի աղաղակաւ առ Աստուած հառաչել հարազատապէս, և ոչ 'ի ներքոյ ծառայականն երկիւղի: Եւ այս երբ լինիցի, եթէ ոչ յորժամ սիրտք մեր ոչ ըստգտանիցեն զմեզ, ըստ որում գրեաց Աստուածաբանն. “Սիրելիք եթէ սիրտք մեր ոչ ըստգտանիցեն զմեզ, համարձակութիւն ունիմք առ Աստուած. և զոր ինչ հայցեմք, առնումք 'ի նմանէ, զի զպատուիրանս նորա, ասէ, պահեմք, և զհաճոյս առաջի նորա առնեմք”:

## ԶԻ՞ՆՉ ՅԱՅՏ ԱՌՆԷ ԱՆՈՒԱՆԵԼՆ ԶԱՅՍ ԽՈՐՀՈՒՐԴ ՊԱՏԱՐԱԳ

ՊԱՏԱՐԱԳՆ հաշտութեան նուէր է, 'ի ծառայէ տեառնն մատուցեալ, և 'ի խաղաղութիւն նուաճիչ. և ըստ չափոյ մեծութեան պատարագին յորժամ մատուցանէ՝ հաւատայ զողորմութիւն գտանել: Արդ քանզի մարդիկ 'ի սկզբանն յանցաւորութեամբնն խռովեցան ընդ Աստուծոյ, և խորոց թշնամութեան եղին զմեղսն 'ի մէջ իւրեանց, եկն այն՝ որ ոչն գիտէր զմեղս, և վասն մեր մեղք անուանեցաւ, նահանջել զթշնամութիւնն 'ի մարմնի իւրում, և արար հաշտութիւն արեամբ խաչին իւրոյ, աւետարանել ձեզ խաղաղութիւն հեռաւորաց և խաղաղութիւն մերձաւորաց. իսկ մեք որք կոչեցաք աւետարանաւն, և նուաճեցաք միով հոգւով առ Հայր, յուսով խնդամք, այլ մարմնով գոլով դեռ ևս ունիմք զհակառակն օրինաց մտաց և գերիչ յօրէնս մեղացն. զոր ծանուցեալ որ զփորձն էառ ամենայնի ըստ նմանութեան մեր առանց մեղաց, աւանդեաց մեզ զփրկագործ իւրոյ մահուն յիշատակ՝ 'ի նշանակ հացիս և գինւոյս, իբր թէ ասելով, առէք զայս, սա է մարմին իմ և արիւն, որ նոր ուխտ խաղաղութեան եղև ընդ ձեզ և ընդ Աստուած. և յորժամ թշնամանադիրն ուխտին ջանայ մեղօք զձեզ յանցաւորս առնել, դիք զայս պատարագ առաջի Աստուծոյ, և իմոյ մահուն յիշատակ աւարէք առ նա, թէ քո միածնիդ մահու չափ և մահու խաչի, Հայր սուրբ, քեզ՝ վասն զմեզ արդարացուցանելոյն հնազանդեցաւ, որով և արդարացաք. բայց սակայն վերստին մեղքն Ադամայ տիրեալ դատապարտեաց զմեզ: Արդ աղաչեմք, առաւել քան զնոյնն առաւելութեամբ բարձրասցի շնորհ թողութեան միածնիդ քո որդւոյս՝ նորոյս Ադամայ. և վերստին զմեզ արդարացուսցէ, զորս պարտիքն Ադամայ դատապարտեաց: Զայս առ 'ի Քրիստոսէ ուսեալ, և առեալ հրաման, կատարեմք, և տամք զմահ նորա միշտ փոխանակ մեր պատարագ Հօր. և յորժամ տամք, հաւատամք գտանել զողորմութիւն. զի թէ Աստուած ինքնին է՝ որ զմեզ սովաւ արդարացուցանէ, որպէս գրեաց Պօղոս, ո՞վ է որ

դատապարտ առնիցէ։ Այլ տես, զի ոչ ասաց՝ Թէ արդարացոյց, այլ զմշտնջենաւոր յարակայութիւն շնորհին ցուցանելով արդարացուցանէ ասէ, այսինքն միշտ յիշատակաւս. ըստ որում և նա ոչ միանգամ, այլ միշտ բարեխօսէ ընդ աջմէ Աստուծոյ վասն մեր։

Արդ որքան նա բարեխօսէ, և մեր զնոյնն պատարագելով՝ զշնորհ Թողութեան մեղացն բերէ, և բարեխօսէ մինչև վերստին դարձեալ գայ. վասն այսորիկ և հրամայեաց, մատուցէք զիմն պատարագ փոխան ձեր Հօր, և զմահ իմ յուշ ածէք նմա, որպէս տէրս եմ ձեր՝ մինչև եկից դարձեալ. իսկ իմ ունելով զկամն ձեր օժանդակ՝ և զհայեցուածսն, պատրաստ եմ 'ի միշտ բարեխօսելն։ Ուրեմն արդեամբք և ճշմարտութեամբ է նա պատարագ փոխանակ մեր. և մեք մի կարծեսցուք 'ի մատուցանելն զնա՝ ունայն 'ի հատուցմանէ շնորհի դառնալ, այլ հաւատասցուք քաւութիւն լինել ըզնոյն մեղաց մերոց, այլ և ամենայն աշխարհի, որպէս ասացաւ։

## ԶԻ՞ՆՉ ՑՈՒՑԱՆԷ ԶՊԱՏԱՐԱԳՍ ԱՆՈՒԱՆԵԼ ԳՈՀՈՒԹԻՒՆ[1]

ՅՈՐԺԱՄ քննեմք զազդումն գոհութեանս, ուստի ծնեալ արդեօք, 'ի բազմապատիկ երախտեաց զնոյն գտանեմք. յոր վայելողն ոչ կարացեալ զկշիռ հատուցմանն չափել, 'ի գոհանալոյն ապաստան լինի բարբառ. և տուող պարգևին նովաւ հեշտացեալ[2] պարարի ցընծալով։ Բայց է սովորութիւն մարդկան, որ 'ի խնդիրս առ ոք 'ի սիրելեաց կանխեն, զառաջին երախտիմն նախ նմին գոհութեամբ յուշ ածեալ՝ զմիտսն քըքրեն, և ապա զայժմուս խնդիր հայցուածոց ընդ նմին կցորդեն. իսկ նա Թերևս ոչ դանդաղի առ տալն՝ պարարեալ 'ի բարւոյն գոհութեանց և յիշատակաց։ Նոյնպէս և մեր գտեալ յԱստուծոյ և 'ի Հօրէ մեծ և անգուգական բարիս, զամենայնն միահամուռ այժմ գոհութեամբ նմին յուշ ածեմք, զյոչէից գոյացուցանելն, զօրինօք դաստիարակելն, զորդւոյն փրկելն, զհոգւով նորոգելն, յորդիութեան պատիւն զհանելն։ Զայս ամենայն 'ի

1 Այն է Թարգմանութիւն յն. ձայնիս, εὐχαριστία.

2 Մի օրին. Հաւբէշէալ։

խորհրդականն ժամու քահանայքն յիշատակեալ գոհութեամբ շնորհակալ նմին լինին, բերան եղեալ ամենայն մարդկային ազգի, որ յայս վայելեցաք հասարակաբար 'ի պարգևս, և զայսպիսի գոհութիւնս նուիրել Աստուծոյ, որպէս հրամանն ընկալաք. "Գոհացողք, ասէ; լինիջիք զԱստուծոյ և զՀօրէ". և դարձեալ, "Փառաւոր արարէք զԱստուած 'ի մարմինս ձեր". և նոյն վերստին ասէ. "Գոհացարուք յամենայն ժամ 'ի վերայ ամենայնի յանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի զՀօրէն և զԱստուծոյ": Արդ այսմ պատուիրանի եղեալ առաջի Հօր զՔրիստոս՝ նովաւ գոհանամք զնմանէ 'ի վերայ ամենայնին, և պարարեալ զանկարօտն ծայրագոյն մեր բանականն պտղով, այնուհետև 'ի խնդիրսն առնեմք Ճանապարհ. դու, ասելով, որ զմեծամեծսն ետուր, և լցեր զբերանս մեր գոհութեամբ 'ի վերայ այսոցիկ օրհնել զփառս քո, տուր և զայս խնդիրս, այսինքն զորս մի ըստ միոջէ խորհրդածութիւն ցուցանէ, սէր, խաղաղութիւն եկեղեցւոյ և աշխարհի, և բնակելոց 'ի սմա զփրկութիւն, սովաւ զոր տամք քեզ ընծայ:

Իսկ նա քանզի մարդասէր է վկայեալ համապազ, և միջնորդ խնդրոյս սիրելւոյն որդի, հաւատամք հաստատաբար ոչ լինել անտես, այլ առնուլ զգոհութիւնն զթութեամբ, և տալ զխնդրուածսն առատութեամբ. ըստ որում ասացն. "Ո՞վ է Աստուած մեծ իբրև զիս կարող թողուլ զմեղս և ջնջել զանօրէնութիւնս":

## ԶԳՈՀՈՒԹԻՒՆՍ ՀԱՂՈՐԴՈՒԹԻՒՆ ԱՌ Ի՞ՆՉ ՀԱՅԻ ԱՆՈՒԱՆԵԼՆ

ՀԱՂՈՐԴՈՒԹԵԱՆ յորջորջումն յայտ առնէ, թէ զանազանութիւն բազմութեանն 'ի մի անձնաւորութիւն գան սովաւ, և որք մարմնական վայրաքարշութեամբ այլայլեալ են, 'ի ձեռն այսր Ճաշակման 'ի մի տեսակ աստուածանմանութիւն փոխին:

Դարձեալ ըստ այլում տեսութեան հաղորդութես անուն, քանզի 'ի Քրիստոս մերձենամք սովաւ և անդամք, որ խտրոց արարեալ զմեղսն բաժանեցաք 'ի նմանէ, այսու վերստին դարձեալ 'ի գլխոյն իջանէ առ

մեզ կենդանութիւնն յետ առողջարար դեղոյն ապաշխարութեան, և հաղորդիմք 'ի կեանսն՝ կենդանացեալք 'ի մեղացն մեռելութենէ. եղեալ մի հոգի ամենայն եկեղեցւոյն բաժանեալ մարմնոցն: Ըստ այնմ զոր գրէ առաքեալ. "Որ մերձենայ 'ի տէր, մի հոգի է". և դարձեալ առ կորնթացիսն. "Բաժակն օրհնութեան հաղորդութիւն է արեանն Քրիստոսի. հացն զոր բեկանեմք հաղորդութիւն է մարմնոյն Քրիստոսի". և մեք բազումքս որ զմի հացն կերաք՝ մի, ասէ, լինիմք մարմին. այսինքն զի 'ի միոջէ հացէն վայելեմք. և յեղաշրջեալ ըստ նորին սրբութեանն տարրանամք հաղորդեալք իրերաց և միացեալք 'ի Քրիստոս:

## ՈՐՊԷՍ ՊԱՐՏԻՄՔ ՀԱՒԱՏԱԼ ԹԷ ՃՇՄԱՐՏԱՊԷՍ ՔՐԻՍՏՈՍ Է ՍԱ ԱՌ ՈՐ ՀԱՂՈՐԴԵՑԱՔՍ ԵՒ ՄԱՐՄԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ ԵՒ ՈՉ ՕՐԻՆԱԿ ՄԱՐՄՆՈՅՆ ՔՐԻՍՏՈՍԻ

ԲԱԶՈՒՄ և պէսպէս բանք վասն այսր 'ի տեառնէ ասացեալ և յառաքելոց նորին՝ կարող են ածել զիմաստունս 'ի հաւանութիւն. զի ասաց բարձրաբարբառ 'ի ժողովուրդն յուսուցանելն 'ի Կափառնաւում. "Որ ոչ ուտէ զմարմին իմ և ըմպէ զարիւն իմ, ոչ ունի կեանս յանձին". զի մարմին իմ ասաց, և ոչ զօրինակ մարմնոյն. "Եւ որ ուտէ և ըմպէ, նա յիս բնակեսցէ, և ես 'ի նմա": Յետ որոյ զբանսն ասացեալն գործով կատարեաց, զի "Էառ, ասէ, հաց, գոհացաւ օրհնեաց սրբեաց, և ետ աշակերտացն, և ասէ. Առէք կերայք 'ի սմանէ, այս է մարմին իմ". և ոչ օրինակ մարմնոյն. նոյնպէս և զբաժակն արիւն անուանեաց, և ոչ օրինակ արեանն զոր ճաշակողքն աղաղակէին. "Արիւնն Յիսուսի սրբէ զմեզ յամենայն մեղաց". և "Որ ուտէ և ըմպէ զնա անարժանութեամբ, ոչ թէ զօրինակն ոչ խտրէ, այլ զմարմինն տեառն". քանզի օրինակ է մարմնոյ գծագիրն պատկեր, և Աստուծոյ՝ արեգակն կամ այլ ինչ 'ի յէից, զորս բաղդատեմք: Արդ որպէս գծագրեալ պատկերն ոչ է կենդանի, և ոչ կենդանացուցանել ունի զօրութիւն, այսպէս և սա թէ սոսկ օրինակ էր, ոչ ինքն կենդանի և ոչ զայլս սրբէր. որպէս գոչեաց աստուածաբանն. և որպէս արեգակն օրինակ

Աստուծոյ՝ չունի աստուածական զօրութիւն, և նայեցողն 'ի նա ոչ դատապարտի, յորժամ անխտիր յօրինակն Աստուծոյ մերձենայ, այսպէս և 'ի սորա ճաշակելն ոչ դատաստան անձին ուտէր ըստ Պօղոսի, թէ օրինակ էր. քանզի օրինակ անուանի, որ զգաղափար գոյին ունի, և ոչ զզօրութիւնն, որպէս ասացաւ, նկարագիր է կենդանոյն: Իսկ մարդ մարդոյ ոչ օրինակ՝ այլ համաբնութիւն կոչի. այսպէս և սա համաբնութի է Աստուծոյ, և ոչ օրինակ. վասն այնորիկ և ունի զօրութիւն զմեղս սրբել՝ որպէս և զԱստուած. ապա թէ օրինակ էր, ոչ սրբէր, որպէս և ոչ պատկերն խօսի:

Բայց զի թանձրամիտ գոլով, թէպէտ և բերանովք սմին հաւատամք, և ոչ սրտիւք: Մեր՝ ապաւինեալ 'ի հոգին Աստուծոյ՝ զիմանալի խորհուրդս ըզգալի օրինակաւ երկիւղած մտաց հաւանական արտացուք. զի յորժամ զայն տեսանեմք գոլ հնարաւոր, կարող եմք հաւատալ՝ թէ և այս յամենակար մարդասիրութենէն Աստուծոյ տնօրինի առ 'ի մերն փրկութիւն:

Արեգակն ստեղծուած Աստուծոյ նիւթական լոյս 'ի վեր քան զմարմինս՝ որ ըստ օրէ սփռէ զճաճանչ ճառագայթին 'ի վերայ աշխարհի, յորմէ լուսաւորին ամենայն էքս արտաքուստ կոյս. այսինքն քար և փայտ և որք ըստ նոցա. իսկ յինքեանս զլոյսն ոչ կարեն տանել և նմին համատիպ լինել իւրովն լուսով. բայց միայն անօսրագոյն տարր ապակւոյ և մաքուր քարինք՝ զորս ակունս կոչեմք[1], քանզի սոքա ընդունին յինքեանս ըզլոյսն, և նովաւ զօրացեալք՝ լոյս ծագեն 'ի տեսողսն, յառաջոյ կուսէ ընկալեալք, և յետոյ սփռեալք. զոր այլ նիւթ ոչ կարէ առնել: Արդ համարեսցուք զոյք խաւարչտին ինչ տուն, և լուսանցոյց յարկին յապակւոյ. յորժամ ծագէ արեգակն, ոչ ապաքէն 'ի վերայ ամենայն տանն փայլէ, սակայն յինքն զճառագայթն ապակին միայն ընդունի, և զ'ի ներքս կացեալն յարախառնեալ լուսովն՝ ընդ էութիւն իւր լուսաւորէ. և ոչ ոք կարէ տեսութեամբ զանմարմին արեգակն կամ զմարմին ապակոյն՝ որ խառնեցան ընդ միմեանս՝ բացատրել: Այսպէս իմացուք իմանալի արեգակն զիսկութիւն սա-

1 Մի օրին. Անուանեմք:

տուածութեանն սրբոյ Երրորդութեն գերագոյն էու-
թիւն գերագոյն լոյս քրիստոնէից վերատեսուչ. զՀայրն
անսկիզբն, զՈրդին միածին և զՀոգին համամիառ յան-
ճառն իսկութի և փառս գերագոյապէս հաստատեալ.
իսկ կամացն բարեաց ախորժեալ զնախախնամութիւն
արարածոցս՝ արտաքս բխէ առ 'ի յինքենէ զելողութի
Հոգւոյն՝ արարածոցս լուսափայլութիւն, որ նախ առա-
ջին զօրանայ և պայծառացուցանէ զՀրեշտակական զօ-
րութիւնսն և զերկնայինսն ըստ իւրաքանչիւր դասու և
կայանի, որպէս արեգակնդ զնախ քան զմեզ զօդդ, և
անտի եղեն նոքա սուրբք և մաքուրք և բնակարան ա-
մենայն բարութեանց. իսկ մեր գոլով 'ի խաւարչտին
տանս, այսինքն 'ի հոսանուտ կեանս, և 'ի բնաւորական
ախտից ապականութիւնս, անկարանամք զճաճանչ ճա-
ռագայթի հոգւոյն տանել որպէս զնոսա առանց միջ-
նորդի, այլ առաջի դնեմք ընդ մեզ և ընդ Հոգին միջ-
նորդ զսուրբ նշանակ հացիս և գինոյս, որպէս ապա-
ցոյցն զապակին արեգականն, և 'ի յուշ ածեմք զխոս-
տումն փրկչին մերոյ Քրիստոսի՝ Աստուծոյ Հօրն, և
զկիրս նորա փրկագործս. յոր հայեցեալ՝ ծագէ զարե-
գակն իմանալին զՀոգին 'ի վերայ աշխարհի. և նա փայ-
լեալ աստ միայն զայս նիւթ գտանէ ներընդունակ, որ
տիրապէս ընդ նա խառնի որպէս արեգակն զապակին,
և խառնի անճառապէս. որպէս զի ոչ կարել որոշել
զզգալի նիւթս յիմանալի հոգւոյն, ըստ որում. և ոչ
զնա 'ի ճառագայթից արեգականն. այլ է նոյն Աս-
տուած հացս, որպէս և Հոգին. ըստ որում նոյն լոյս
ապակին՝ որպէս և արեգակն. և այս ո՛ր հոգի է, եթէ
ոչ այն՝ որ զՏէր մեր իբրև զպատուակից զօրացուցա-
նէր և 'ի սքանչելեացն ներգործութիւն կցորդէր. որ
տուաւ մեզ մատակարար շնորհաց մինչև յաւիտեան.
ապա ուրեմն Աստուած Հոգին ընդ մարմին հացիս խառ-
նեալ՝ Քրիստոս և Աստուած զսա առանց յերկուանա-
լոյ օծանէ. և է ոչ յարացոյց Աստուծոյ, որպէս արե-
գակն զոր առաք և ապակին, այլ նախատպին զօրու-
թեան ընդունակ, և մարմին, ըստ որում և անուանե-
ցաւ արիւն Յիսուսի, և ոչ արեանն յարացոյց. և զօ-
րութի ունող թողուլ զմեղս որպէս զԱստուած: Արդ
որպէս արգելեալքն 'ի տանն՝ յապակոյն, որպէս յարե-

զակամէ պայծառացան լուսովն զոր ընկալան. այսպէս և մեք 'ի խաւարային կեանս գոլով սա սուրբ ընծայս քահանայական աղօթիւքն ընդունի յինքն զներգործութիւն լուսոյ իջման Հոգւոյն, և զհայեցողսն 'ի յինքն ճաշակմամբ մտաց և մարմնոյ՝ լուսաւորէ, սրբէ և արդարացուցանէ: Նայլ թէ ասիցես. ընդէ՞ր միայն այս նիւթ և ոչ այլ ոք յէիցս նմին ընդունակ, ասասցուք. և ընդէ՞ր միայն այն նիւթ արեգականն և ոչ այլ ոք. զի այն Աստուած որ զնա զգալի լուսոյ[1] արար պարունակիչ, զսա առ բարձրացոյց, օրհնեաց և սրբեաց, և իմանալի լուսոյ աստուածութեանն զօրացոյց լինել պարունակող, և ոչ այլ ոք կարէ տեսանել զնա, բայց միայն սա՝ զոր անուանեաց իւր մարմին ըստ այսմ խորհրդոյ: Դարձեալ մանր խուզելով թէ ասեն ոմանք, ընդ այն մարմին Որդին միացաւ և ընդ այս Հոգին, ասասցուք, թէ բնութիւն աստուածութեանն և փառաց ոչ ունին զանազանութիւն՝ անձնաւորութեամբ որոշեալքն, և ընդ այս Հոգին խառնեալ որ բնութենակից է Որդւոյ, բնութի Որդւոյն խառնեցաւ, և Քրիստոսի եղև մարմին, մանաւանդ զի հոգին Քրիստոսի էջ առ մեզ, և նա ետ զնա նախ առաքելոցն և նոքա աշխարհի. զի իւր արդարութեանն ընկալաւ զնա 'ի Հօրէ փոխարէն, և սփռեաց 'ի յաշխարհս, որում խորհրդազգածն առաքեալ՝ գրէ "Եթէ ոք զՀոգին Քրիստոսի ոչ ունի, սա չէ նորա". և աստուածաբանն Յովհաննէս, "Նասուփկ, ասէ, գիտեմք եթէ 'ի նմա եմք, զի 'ի Հոգւոյ իւրոյ ետ մեզ": Աստի յայտ է թէ զմարդիկ մկրտութեամբ, և զհացն առաջադրութեան Հոգին ներգործէ մարմին Քրիստոսի. և զմեզ և զնա նոյն ինքն լինի յօդակապ և խառնէ, և չէ պարտ վասն այսր հակառակել զգրոց զօրութիւն գիտողաց: Իսկ թէ ոք ասէ, մարմինն Քրիստոսի միս էր և արիւն, և այս հաց և գինի, ասասցուք թէ զօրութեամբ և էութեամբ բնութեան մի մարմին անուանի միոյն և հացն, համազգոյ գոլով իրերաց 'ի չորից տարերցս գոյացեալքն. և որպէս արիւնն մարմին, այսպէս և զինին բնութեամբ մի, թէպէտ և ոչ որակութեամբ. զի թէ արտաքոյ էր տա-

1 Մի օրին. Նիւթոյ:

ըներցս մի ոք 'ի սոցանէ, յայտ է թէ թերութիւն ունէր մինն քան զմիւսն. ուրեմն արմատ մի ունելով և պատճառ մի, անուանին մարմին, և միոյ Քրիստոսի մարմին՝ միոյ հոգւոյ գոլով ընդունակ:

## Ո՛ՐՊԷՍ ԿԱՐԱՑՈՒՔ ՀԱՒԱՏԱԼ ԹԷ ՑԱՄԵՆԱՅՆ ՏԻԵԶԵՐԱՑ ԵԿԵՂԵՑԻՍ ԶԱՆԱԶԱՆ ԱԶԳԱՑ ՄԻ ՔՐԻՍՏՈՍ Է ԵՒ ՄԻ ՄԱՐՄԻՆ ՔՐԻՍՏՈՍԻ ՊԱՏԱՐԱԳԻ[1]

Ունիմք և այսմ բազմապատիկ 'ի գրոց վարդապետութիւն, սակայն սուրբ հակառակութեանն աղօտացոյց զխմանալի լոյս մտաց մեր առ 'ի նոյնն յաւել. ապա թէ ոչ ո՞ր դիցուք զառաքելոյ ասելն, "Եթէ հրէայք եթէ հեթանոսք՝ ամենեքին զմի հոգի արբաք. և չիք խտիր, զի ամենեքեան դուք մի էք, յորոց վերայ անունն Քրիստոսի կոչի, և զնա զգենլով քրիստոնեայք անուանեցայք. քանզի մի է տէր, մի հաւատք, մի մկրտութիւն, մի եկեղեցի 'ի զանազան ազգաց որոշեալ և մկրտութեամբ ծնեալ և Քրիստոսի անուանեալ": Նոյն ասիցես, որպէս զանազան ազգաց պատարագ մի պատարագ է, նա զի և զանազան հացքն: Նա որ ասասցուք. մի՛ տղայք լինիք մտօք, այլ 'ի չարեաց տղայացեալ՝ մտօք կատարեալ լերուք առ 'ի քննել զճշմարտութիւն և նմին հաւանել: Զի եթէ զանազան Քրիստոսք էին կամ զանազան Աստուածք զանազան զօրութեամբ իւրաքանչիւր ազգացն տիրեալք՝ ճշմարիտ էր կարծիսն, և ունէր զանազանութիւն պատարագն հակառակամարտ Աստուածոցն զօրութեամբ կատարեալ, զի այն ազգին Աստուածն զիւր զօրութիւն փառացն 'ի նորա պատարագն տպաւորէր, և այսմ 'ի սորայն: Իսկ թէ ասես, Քրիստոս մի է՝ բայց առ նա հաւատովն սոքա զանազանապէս բերին, ծանիր զի զոր վասն այսր բան ընդարձակագոյն քննեալ ուսուցաք հաւանաբար՝ որպէս զՔրիստոս մի, և զսոցա հաւատն առ նա միապէս. ապա թէ Քրիստոս մի է, և մեր ամենեցուն յոյսն առ նա միով օրինակաւ, և մի հոգի՝ անուանեալքս յանուն նորա յիւրաքանչիւր ազգս ընկալաք, և չիք խը-

[1] Մի օրին . Պատարագ և նուէր :

տիր 'ի հաւատոցն Աբրահամու որդւոցս ծնելոց, յայտ է թէ մի է եկեղեցի ընդ տիեզերս, և մի միով Հոգւովն 'ի նոսա կատարեալ պատարագն. զի որպէս դու խնդրես զՀոգւոյն կատարիչ քում նուիրացն, այնպէս խնդրէ և նա իւրումն. և թէ զանազան են լեզուքն, բայց ոչ թէ զանազան Հոգիս խնդրէք, այլ զմին, միաւանդ և մի բանիւք աղօթից, և մի ձևակերպութիւն առ 'ի նոյն ամենայն ազգաց քրիստոնէից խորհրդածութիւն: Ուրեմն զմին Հոգւոյն խնդրելով քո և նորա՝ նոյն մինն էջ 'ի վերայ և զօրացոյց և կատարեաց՝ զիմն, որ Հայ եմ, և զնորայն որ Փռանգ և զայլումն որ Հոռոմ. և մի էութիւն զիւրաքանչիւրոցս նուէր տարրացոյց: Ահա պարտ է, և զառաջին օրինակէն դարձեալ բուռն հարցուք. որպէս մի արեգակն է որ զիմն զգալի աչք և զնորայն լուսաւորէ, այսպէս մի Հոգի զիմ պատարագս և զնորայն սրբէ, և իմանալի աչաց լոյս շնորհէ: Իսկ եթէ ոք 'ի չարութենէ դրդեալ՝ ասիցէ, ես միայն տեսանեմ զարեգակն և ոչ դու, միայն զիւր չարութիւնն ցուցանէ, և ոչ զիս 'ի համասփիւռ լուսոյն զրկէ՝ որչափ մաքուր է հայեցուածս. այսպէս և ազգ որ զազգ անկատար և թերի յաչաղէ, յորոյ վերայ անունն Քրիստոսի է, զիւր չարութիւնն ցուցանէ՝ և ոչ զնա 'ի հասարակաց շնորհէն զրկէ, բայց թէ ինքն զիմանալի հայեցողութիւնն կամաւ կափուցանէ: Չիք ապա զանազանութիւն միոյ Քրիստոսի պաշտօնէիցս 'ի մի խորհրդածութիւնն. և որք զայս ոչ այսպէս կարծեն, զանձինս դատապարտեն, և ոչ թէ զհեզութեան Հոգւոյն յաչաղանաց ախտի ծառայեցուցանել կարեն, կամ հակառակութե գործակից սատանայ: Այլ նիւթքն, ասեն, զանազան են պատարագին: Եթէ հաց և գինի ոչ են ըստ որում 'ի Քրիստոսէ մեզ աւանդեցաւ, յայտ է թէ ոչ կարեն զներգործութի Հոգւոյն ըստ այսմ խորհրդոյ ընդունել, և մարմին Քրիստոսի անուանել. ապա թէ հաց է և գինի, տանի ստուգապէս զլոյս զօրութեան սուրբ Հոգւոյն, որպէս և ապակին զարեգակնն: Այլ խմոր է ընդ նոյն խառնեալ և ջուր: Ո՛վ յանդգնութեան և անօգուտ հակառակութեան, որ ձգէ զմեզ 'ի շատխօսութիւն. ած զվերոյգրեալ օրինակն 'ի մէջ. եթէ խառնեմք ընդ ապակին որակութի

ինչ գունոյ 'ի պէտս վայելչութեան՝ թերեւս այն տկարացուցանէ՞ զնա տանել զլոյսն արեգական, կարծեմ և ոչ բնաւ. ապա մի զզօրութիւն Հոգւոյն նիւթոց աղագաւ քան զարեգակնս եղական տկարացուսցուք: Այլ խնդրես որպէս մի մարմին է Քրիստոսի 'ի զանազան աշխարհս և յեկեղեցիս պատարագք. և այսմ զնախագիծ ապացոյցն 'ի մէջ առցուք ուսուցիչ: Դիցէ բանս 'ի տանն ոչ մի ապակի, այլ բազումս յիւրաքանչիւր կողմանս և յանկիւնս, նոքա թէպէտ և 'ի քառակողմ կոյսն որոշեցան, այլ լոյսն որ ծագէ 'ի վերայ և բնակէ 'ի նոսին, մի է, և մի անուանին որոշեալքն, և միոյ զօրութեան լուսոյ ընդունակքն. գոլով նիւթոցն ազգակից, և լոյսն որ բնակեցաւ 'ի նոսա՝ մի. այսպէս և յամենայն կողմանս աշխարհի թէպէտ և զանազան են եկեղեցիք, սակայն մի նիւթ ունի 'ի նոսա նուէր պատարագի հաց և գինի, 'ի վերայ որոց ծագի մի արեգակն համասփիւռ իմանալի Հոգին Աստուծոյ, և տարրացուցանէ զնոսա մի Աստուած և մարմին Աստուծոյ. որպէս զգալի լոյսն զընդունակ նիւթսն. և ըստ որում որք յայսմ կողմ որ զհարաւոյս է՝ հայլն 'ի պարունակող լուսոյ յապակին[1], և որք յայն՝ որ յարևելից է, միայն տեղեօք տեսանեն զնոսա որոշեալս. ապա թէ ոչ բնութիւն նիւթոյն մի է, և լոյսն որ ընդ իւրաքանչիւրսն խառնեցաւ՝ անորիշ, մանաւանդ և զորոշեալսն ընդ ինքեան և ընդ միմեանս խառնէ: Այսպէս որք 'ի ծագս տիեզերաց իմանալին աչօք ընդ սուրբ այս խորհուրդյառեն, մի բնութիւն մարմնոյ հացի և գինւոյ տեսանեն, տեղեօք բաժանեալ և ոչ էութեամբ. 'ի վերայ որոյ ծագեալ Հոգին՝ խառնէ զնոսա ընդ ինքեան, և զմեզ ճաշակմամբն ընդ իրեարս, և առնէ միոյ գլխոյն մերոյ Քրիստոսի մի անդամ զիւր սուրբ եկեղեցի, որք ընդ տիեզերս զանազան ազգաց քրիստոնեայք:

Եւ զի այս այսպէս է ճշմարտապէս՝ ահա ցուցաւ հաւանաբար, որպէս կարծեմ, և չէ բաժանեալ Քրիստոս 'ի Պօղոս և յԱպօղոս. և ոչ եկեղեցի նորա 'ի հայ կամ 'ի հոռոմ կամ 'ի փռանգ, թէպէտ և տկարացն կարծիք այսմ ծառայէ. զի բաժանեալ էաք՝ թէ առ այլ

1 Մի օրին. Աղաւնոյն:

Աստուած յոյս ունէաք իւրաքանչիւրքս։ Իսկ միոյ տեառն Քրիստոսի անուն կոչեցեալ 'ի վերայ մեր՝ մի եմք ամենեքեան. և որիշ 'ի մէնջ՝ որ խորշի յանուանէն Քրիստոսի։ Իսկ որ համարի զինքն քրիստոնեայ և 'ի համանուն քրիստոնէէ վասն տարալեզուութեան խորշի, յայտ է թէ կամաւ զինքն 'ի գլխոյն Քրիստոսէ որոշէ, և 'ի նորա անդամոց։ Ապա խաղաղութիւն առեալ 'ի Քրիստոսէ կտակ յետ մահու՝ մեք նմին պտուղ տացուք զսատանայական հակառակութիւնն, և այն զի զմիջնորդն խաղաղութեան ամենաչարն հնարեաց ունել՝ նիւթ ատելութեան, քան զոր չիք ինչ աղետից արժանի։

ԵԹԷ ՊԱՐՏ Է ՀԱՒԱՏԱԼ Ի ՁԵՌՆ ԱՆԱՐԺԱՆ ՔԱՀԱՆԱՅԻ ԶՊԱՏԱՐԱԳՆ ԿԱՏԱՐԵԱԼ ՈՐՊԷՍ ԶՍՐԲՈՑՆ

ԱՍՏՈՒԱԾ յառաջին արարչութեան արեգակն ստեղծ մարմնոցս 'ի վայելս, առանց որոյ չիք էիցս կենդանութիւն։ Երկրորդ ստեղծուած արար, կամ թէ պարտ է ասել նորոգութիւն հոգւոց մարդկան և լոյս ետ իմանալի նորոգելոցն՝ իմանալի զՈրդին միածին որ ձայնէր բարձրաբարբառ. "Ես եմ լոյս աշխարհի, որ գայ առ իս 'ի խաւար մի մնասցէ,,։ Արդ եթէ որքան յառաջնումն բազմացան չարիք մարդկան առաջի Աստուծոյ, գիտեմք ամենեքեան. զի ոչ միայն զարարիչն արարածովքս ոչ ծանեան, այլ մանաւանդ և հակառակ նորա աստուածս գտան. Թողցի ապա 'ի բնութեանս օրինաց 'ի պէսպէս վատթարութիւն նոցա մոլորումն։ Սակայն բազումողորմ արարիչն տեսեալ զայնքան նոցա անառակութիւնն զղջացաւ, ոչ ընդ իւրն արարչութիւն. այսինքն ոչ ամփոփեալ պարուրեաց զպատճառ մարմնաւոր կենացս զարեգակն 'ի մարմնով վատթարացելոցն, այլ ներէր նոցա երկայնմտութեամբ, զղջացեալ մանաւանդ 'ի պատուհասելն և ոչ թէ 'ի բարեգործելն, տեսեալ զմիտս մարդկան 'ի խնամս չարին հաստատեալ, զոր և տէրն ասէր. "Ծագէ զարեգակն 'ի վերայ չարաց և բարեաց,,։ Իսկ եթէ զայն շնորհ կենաց պատճառ և լոյս մարմնոյ՝ չարութիւն մարմնա-

1 Մի օրին. Հնարէցուցանէլ։

ւորացն ոչ արգել, այլ ծագէ միշտ գթութեանց Հայր, քանի՞ն առաւելապէս այսմ պարգևի պարտիմք հաւատալ, եթէ ոչ զղջանայ Աստուած վասն մեղաց մարդկան զնոյն արգելուլ, այլ միշտ ծագէ 'ի վերայ հոգւոց՝ քահանայական աղօթիւք. և որպէս զզգալի արեգակն ոչ արգելու 'ի չարացն, ըստ որում և ոչ 'ի բարեացն, այսպէս և ոչ զիմանալին՝ յանարժանին կատարելն, ըստ որում և ոչ յարժանաւորին։ Իսկ եթէ ասիցես, հոգւոյ աչօքն խաւարեալ է, ասեմք. այս խորհուրդ ոչ թէ նորա հոգւոյն միայն է լոյս, այլ բնաւ աշխարհի. նա թէ խաւարեալ է՝ ոչ տեսանէ, բայց սակայն զշնորհն ըստ իշխանութեան պատուոյն առեալ սփռէ. զի ոչ թէ իւր է այլ Աստուծոյ, և նա աստուածայնոցն մատակարար. ծառայքս Աստուծոյ 'ի միջնորդութիւն նորա ըստ հաւատոցն իւրեանց վայելեն, իսկ նա տեառնն իւրում պարտի զդատաստանն՝ զոր անմաքրապէս պաշտէ. և ըստ որում նոքա որ 'ի լոյս զգալի ծանեան զԱստուած և ոչ իբրև զԱստուած փառաւորեցին՝ անդր դատապարտին, այսպէս և իմանալի լուսոյ հայեցողն՝ թէ անզեղջ մնայ 'ի չարիսն նանրացեալ խորհրդովք, սակայն լոյսն ոչ թէ զիւրն ներգործելոյ դադարէ։ Այս և զայս պարտ է հաւատացելոցս յայտնի առնուլ, զի թէ սուտ և անզօր մնայր 'ի ձեռն անարժան քահանայիցն պատարագն, ընդէ՞ր նա որպէս զոչ խորող մարմնոյն տեառն՝ դատապարտէր կամ դատաստան անձին իւրում ուտէր և ըմպէր. այլ դատի վասն այնորիկ՝ զի անզեղջ խոստումն Աստուծոյ տայ 'ի ձեռն նորա վասն առաքելական պատուոյն զՀոգին, և նա 'ի սուրբն անմաքրապէս և շաղախեալ վարուք հպեալ, դատանի դատաստանի պարտական. և ոչ թէ որպէս 'ի սուտ հաց և 'ի գինի, որ ամենեցուն համարձակելի։

## Ո՞ՐՔԱՆ ՇՆՈՐՀ Է Ի ՊԱՏԱՐԱԳԷՆ Ի ԲԱՑՈՒՍՏ ՏԵՍՈՒԹԵԱՄԲՆ ԱՌԱՆՑ ՃԱՇԱԿՄԱՆ

ՏԻՐԱԳԷՍ մաքրութիւն և ոչ բնաւ՝ ոչ կենդանւոյ և ոչ մեռելոյ, որպէս ոմանք կարծեցին[1]. զի որ ուտէն զիս՝ ձայնէ սա առ մեզ, և ըմպէ՝ ունի կեանս յանձին, և ոչ թէ որ տեսանէ: Նա և յորժամ բաշխեաց, ոչ բաւական համարեցաւ զտեսանելն առաքելոցն, այլ ետ ճաշակել. "Առէք, ասէ, կերայք 'ի սմանէ,,. ուրեմն չիք տարեալ սրբութիւն[2] առանց արժանապէս սորին ճաշակմանն՝ ոչ կենդանւոյ որ յեկեղեցին է, և ոչ մեռելոյ: Բայց սակայն և ոչ զայս հաստատեմք, զմեծ[3] այս ժամանակ աղօթից իբրև զմի 'ի գիշերային կամ 'ի տուընջենային պաշտամանէ նոցա, որք առընթերակացեալ սրբոյ խորհրդածութեանն՝ աղօթեն. այլ որքան հուպ առ մեզ տեսանեմք զՔրիստոս այժմ քան յամենայն ժամ, այնքան երագ հաւատասցուք զաղօթսն առ նա ժամանել, և զողորմութիւն նորա սթափ 'ի վերայ մեր ծագել. զի մեծ է բարեխօսն, և յորդառատ այժմ խնդրուածք պատարագողին առ Քրիստոս վասն առընթեր կացելոցն: Սակայն և այնպէս մեզ պարտ է անկատար զանձինս համարել, մինչդեռ ոչ եմք արժանապէս յայս սեղան վայելեալ, և զկեղտ մեղացն որով ըզշնորհ որդեգրութեանն աղտեղացուցաք՝ լուացողական աճառովս վերստին մաքրել. այլ մնասցուք վերջացեալք ըստ մեղաց յայս շնորհէ մեծէ՝ սրտակտուր և սրտաթափ իբրև զորդիս ստամբակս 'ի սեղանոյ հօրն և 'ի կցորդութենէ եղբարց բաժանեալք, առեալք զհաղորդութիւն զօրութեան հանդերձելոյ կենացն, և վերըստին 'ի դրունս մահու դարձեալ մեղաց շաղախմամբ:

1 Երկ. օրին. Ջի մեծ այս:

2 Ցանդիմանէ բանս զայնոսիկ, որք ընդ մի համար գրեցին զճաշակողն և զտեսողն սրբոյ խորհրդոյն, և միօրինակ մասնակից զկենդանին և զվախճանեալսն, յորս կայ ոչ սակաւ խոտոր:

3 Մի օրին. յաւելու կամ 'ի մեղացն մահուանէ կենդանութիւն:

## ՈՒՍՏԻ՞ ԵՄՈՒՏ ԱՅՍ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ ՋՅԻՀԼԱՏԱԿ ՄԵՌԵԼՈՑՆ Ի ՊԱՏԱՐԱԳՆ ԽՆԴՐԵԼ ԵՒ Է՞Ր ՎԱՄՆ

ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆՍ *այս 'ի սրբոց անտի աւանդեցաւ յառաջնոցն հարցն երանելեաց, ըստ որում պատմութեանցն ուսուցանեն բանք. բայց ուղիղ մտօք և ոչ ստերիւրեալ կարծեօք, որպէս այժմ բազումք տեսանին. այսինքն զի պատարագն հարկաւորապէս մատչի Աստուծոյ, և յանուն Աստուծոյ յանձն առարին զինքեանս՝ որպէս կենօք, նոյնօրինակ և յետ մահու յիշել, և ոչ եթէ զհասարակաց փրկանան միայն յինքեանս դրաւեցին, կամ զԱստուած փոխանակ մարդոյ որից հատուցին և կամ յանուն մարդոյ նուիրեցին զհնազանդեալն ˆօր մահու չափ և մահու խաչի, և 'ի նորա յանունն մեռեալ: Որ թէպէտ և ասեմք ըստ հետս նոցա զմերս սովորութիւն, մեծ զանազանութիւն տեսանի 'ի դիտաւորութեան կամաց նոցա և մերումս. քանզի որպէս զբազում ինչ յուղիղ շաւղաց ստերիւրեաց չարն, և բազմաց զթիւրն որպէս զուղիղ եցոյց պողոտայ, այսպէս և յայսմ մասին մեզ արար: Արդ եթէ ոչ առցուք զզէնն արդարութեան՝ որ յաջմէն և յահեկէն. արդարև մոլորեցաք 'ի ճանապարհին որպէս յանապատի: Պիտել կարծեմ զապացոյցդ 'ի զանազան դէմս, և հեղգանամ երկրորդել, զի սուրբքն զԵրրորդութիւնն յերիս անձնաւորութիւնս որոշեցին, նա խրատեաց զԱրիոս ըստ անձանցն և բնութեամբ բաժանեալ. և նոքին զերիս անձինսն աստուածութեամբ մի խոստովանեցան, յորդորեաց զՍաբէլ և անձամբ շփոթել. և սոքա հակառակամարտ հերձուածս աստուածաշունչ գրովք յախտն չար զօրանային, և սրբոցն կարծէին զանձինս համախոհս՝ պէսպէս վկայութիւնս առեալ ջատագովք՝ որոց ոչ հաւանեցան ճշմարտութեան աշակերտքն, այլ յերկուցն թիւրեալ՝ զմաքուրն պահեցին հաւատ: Այսպէս և այս գտեալ 'ի մէջ եկեղեցւոյ նորաձևութիւն՝ աւանդութիւնս 'ի սրբոցն է, 'ի պատարագն յիշել զննջեցեալսն. բայց ոչ այսպիսի սովորութեամբ 'ի մեռելոցն յանուն զնոյն կատարել*[1], *և 'ի վաճառաշա-*

1 *Կշտամբութիւնս ընդդէմ տխմարաց է, ոյք կարծէին թէ պատարագն մատչի առաւել վասն ննջեցելոց՝ քան կենդանեաց:*

հաւթիւն զՔրիստոս ձգել, և կենօք հեղգանալ, և յետ մահու 'ի նոյն ապաւինել. նա դարձեալ և ոչ զայս լուծանել կամելով անպատուղ զմեռեալսն յօգնականութենէ խնդրուածոցն կարծել կամ զրկել յիշատակելոցն 'ի պատարագս. իբր թէ փախչել յՔրիստոսի բաժանմանէն, և 'ի Սաբելի չփոթեալն ապաւինել, որ երկոքին չարք. այլ պարտ է ընդ ուղիղն գնալ պողոտայ, և ոչ լուծանելով 'ի պատուիրանացն՝ այնպէս ուսուցանել զմարդիկ, նա և ոչ երկնչել 'ի զուղիղն գոչելն՝ 'ի կուրացն գայթակղել. վասն հաւանեալք ճշմարտութեան, հաստատեմք զնոյնն այսպէս։ ԶՔրիստոս գիրք սուրբք յայտնապէս հռչակեցին վասն կենդանեաց մեռեալ. զի "Որոց հաւատացեն, ասէ, յանուն նորա՝ ետ նոցա իշխանութիւն որդիս Աստուծոյ լինել, որք ոչ յարենէ և ոչ 'ի կամաց մարմնոյ, այլ յԱստուծոյ ծնան„։ Բայց ուսաք դարձեալ 'ի նոցանէ խորհրդաբար և ոչ յայտնապէս, թէ և մեռելոցն արար 'ի մահուն ազատութիւն. ըստ որում գրեաց առաքեալն Պետրոս, "Ոգւոցն որ էին 'ի բանդին՝ երթեալ քարոզեաց„. և աւետարանիչն, "Բազում մարմինք ննջեցելոց սրբոց յարեան, և մտին 'ի քաղաքն սուրբ„։ Արդ եթէ 'ի գնալն առ մեռեալսն՝ որքան և որպիսի էր շնորհն առ նոսա, մեզ՝ նոքա զորս կարծեմ գիտողս՝ ոչ բնաւ կամեցան յայտնել. կամ թէ 'ի քարոզելն՝ զամենեսեան ազատեաց, թէ զոմանս. կամ թէ ո՞յք էին որ ծանեան զնա. կամ ո՞յք ոչ[1]. նա զի և որ Քրիստոսի խորհրդոցն քահանայագործողն էր, ոչ բնաւ զայս բան ած 'ի մէջ։ Այլ զի գնաց Քրիստոս առ մեռեալսն հաստատուն է. և զի ոգիքն 'ի զգայութեան են, երանելին Յոհան յայտնապէս ետես. բայց թէ շնորհ ո՞րքան եղև առ նոսա, ստուգապէս ծանեաք ոչ բնաւ։ Արդ ընդ այն շաւիղն զոր ցուցին մեզ՝ պարտիմք անստերիւր գնալ և ըստ այսմ խորհրդոյ. այսինքն պատարագել զՔրիստոս՝ ըստ որում հրաման ընկալաք, իւր մահուն յիշատակ և նոյն փրկագործութեան

1 Վասն այսպիսւոյ անյայտութեան թաքուն իրացս՝ եղեն պէսպէս անհեթեթ և մոլար կարծիք առ ոմանս վասն ազատութեան մեռելոց նախ քան զՔրիստոս. նմին իրի չէ պարտ յածիլ յատարոտի բանս, այլ ըստ սուրբ գրոց և ըստ սրբոց հարց իմանալ, թէ ազատութիւն եղև հոգւոց արդարոցն եւեթ։

անձինս առ մեզ կնիք, և հաւատալ հաստատապէս, ըստ որում ինքն ուսոյց. որ ուտէ զմարմին իմ արժանապէս, և ըմպէ զարիւն իմ սրբապէս, յիս բնակեսցէ, և ես 'ի նմա. և տիրապէս և ճշմարիտ և ստոյգ ճաշակողացն փրկանք և մաքրութիւն 'ի մեղաց. ըստ այնմ. “Արիւնն Յիսուսի սրբէ զմեզ յամենայն մեղաց”: Այլ զի հարկաւորապէս յիշէ միջնորդութեամբ Քրիստոսի առաջի Հօր քահանայն՝ զկենդանիս ամենայն ըստ իւրաքանչիւր կարգի և աստիճանի, յետ այնորիկ և զմեռեալսն, հաւատամք դարձեալ օգտել յաղօթից նորա ըստ իւրաքանչիւրոցն հաւատոց և յուսոյն՝ կենդանեաց և մեռելոց: Եւ զայս ընծայս տալ Աստուծոյ 'ի ձեռս նորա՝ յուսոյ է պտուղ և հաւատոյ. թէ կենդանի տայ վասն իւր հաւատով, առնու ըստ չափոյ սիրոյն, և թէ վասն մեռելոյ, և մեռեալ վասն իւր առնու և նա յԱստուծոյ հատուցումն՝ որպէս տեսանէ Աստուած զհաւատս նորա: Իսկ նշանակ հաւատոցն ո՞ր է: Ոչ առնել տուրևառութեան համար և շահավաճառութիւն և ջան առ 'ի զրկել և զթիւսն բազմացուցանել. այլ տալ զպտուղ սիրոյն, որպէս ետ պոռնիկն զիւղն, և կցորդ նմին զարտասուսն: Ոչ բնաւ զայս զմտաւ ածել, թէ կամ զայս քեզ, և փոխան սմին պատարագէ զՔրիստոս ինձ. այլ թէ զի պատարագի Քրիստոս 'ի ձեռն քո ինձ 'ի փրկութիւն, նախ քան զիմն տալ՝ արժանի լիցի այս իմ նուէր՝ նորին 'ի սպաս պիտոյից. և ոչ բնաւ անհաւատութեան տալ կարծիս համարս պահանջելով: Այլ մեզ՝ որոց սպասաւորել բանի վիճակեցաք՝ պարտ է սրբոցն հետևել. և որպէս նոքա կնքեցին ամենեւին փակել զլոյս քաւութեան մեղաց յետ մահու՝ աղաղակելով և ասելով. “Այս է ժամանակ ընդունելի՝ այս օր փրկութեան, Ջանացարուք՝ մինչդեռ այս օր առաջի կայ”: “Բազումք ասիցեն յաւուր յայնմիկ, տէր տէր յանուն քո մարգարէացաք. և ասացից, ոչ գիտեմ զձեզ”. իւրաքանչիւր ոք առնու փոխարէն՝ զոր ինչ իւրով մարմնովն գործեաց, եթէ բարի և եթէ չար: “Եղբայր ոչ փրկէ և ոչ մարդ. ոչ օգնեն ինչք յաւուր պատերազմի, այլ արդարութիւն փրկէ 'ի մահուանէն յաւիտենականէ”:

## ԽՈՐՀՐԴԱԾՈՒԹԻՒՆ Ի ՆՈՑՆ ԵՒ ՎԱՍՆ ՆՈՐԻՆ

ՔՐԻՍՏՈՍ խնդրեաց վասն առաքելոցն, " Հայր կամիմ, զի ուր եմ ես իցեմ, և սոքա ընդ իս իցեն, զի տեսցեն զփառսն իմ ". և Պօղոս վկայէ նմին. " Լուծանել և ընդ Քրիստոսի լինել լաւ համարիմ ": Յովհաննէս աղօթէր, " Ի գալս իմում առ քեզ, տէր Յիսուս, աջակողմանքն կացցեն, և ձախակողմանքն ամաչեսցեն ". և տուր զճանապարհս իմ առ քեզ անքռնադատ վճարել, առնուլ զայն՝ զոր խոստացար սիրելեաց քոց: Այսոքիւք և այլ բազմօք խորհրդական բանիւք 'ի գրոց ուսանիմք, զի սուրբք որ ընդ հետ շաւղաց Քրիստոսի գնացին, յորժամ ելանեն 'ի մարմնոյս՝ հոգիքն առ Աստուած գնան, որ ետ զնա: Աւելորդ վարկանիմ ասել և զտեսիլ կրօնաւորացն յերկուց լերանցն զհոգի սրբոյն Ներսիսի, որ բարձրանայր հրեշտակաց բանակօք, և զԱնտոնի, զՊօղոսի, և զԱմոնի, նա և զԻւրն իսկ, ըստ որում գրէ մեծն Աթանաս՝ թէ եհաս հոգւով միանգամ և երկիցս մինչև յօդս տեսեալ զներգործութիւն սատանայի մինչև ցայն կէտ ժպրհեալ այժմ, և այնուհետև նահանջեալ, որովք հաստատեմք զառաքելոյ ասել՝ ըստ իշխանի իշխանութեան օդոյս այսր: Արդ այս խորհուրդ չարութեան նորա՝ մարտ որ յօդս, գիտելի էր սրբոցն. վասն այսորիկ յանձն արարին մեզ՝ յետ մահու խորհրդական աղօթիւք զերծանելոյն կցորդել: Զայս և տէր ուսոյց յաւետարանին. " Գայ իշխան աշխարհիս այսորիկ, և յիս ինչ ոչ գտանէ. այլ զի ծանիցէ աշխարհ թէ սիրեմ զՀայր, և որպէս ետ ինձ պատուէր՝ այնպէս առնեմ ". այսինքն ես ոչ թէ ըստ դատակնքի մեղացն Ադամայ մեռանիմ, քանզի մեղք ինձ ոչ բնաւ տիրեաց. այլ Հօր հնազանդիմ մահու չափ, և որպէս ետ ինձ պատուէր՝ այնպէս առնեմ. զի փոխանակ ամենայն աշխարհի փրկութեան մեռանիմ անմեղս, և զայս ծանիցէ աշխարհ յետ այս սակաւ ժամուց՝ յորժամ արձակեմ զհոգիս առ Հայր. և գայ իշխան նորա չար բանսարկուն ընդ առաջ, և յիս յիւրայոցն ոչ ինչ գտանէ: Այսու խորհրդապէս ուսանիմք թէ 'ի կարծիս էր սատանայ Աստուծոյ մարդեղութեանն և

անմեղութեանն, տեսեալ զնա մարմնով և բնաւորական կրիւք նորա վարեալ, և զանհաս էութիւնն պատրուակեալ: Ապա յորժամ արձակեաց տէրն զհոգին որպէս եցոյցն կանխաւ, եկն ընդ առաջ՝ որպէս սովոր էր ամենայն հոգւոց, թերևս գտցէ ինչ յիւրոց ներգործութեանցն 'ի նմա, և եգիտ և ոչ ինչ. ապա խայտառակեալ նշաւակեցաւ առաջի Աստուծոյ և հրեշտակաց 'ի մարմինն Քրիստոսի՝ կեղծիքն նորա լինել մեղաց մարդկային բնութեանս 'ի նորա ներգործութենէն, և ոչ 'ի բնաւորական կրից, և մերկացուցեալ եհան 'ի նմանէ Քրիստոս զիշխանութիւն իւր և զպետութիւն, որպէս գրէ առաքեալ. այս է զիշխանութիւնն՝ որ ունէր 'ի վերայ հոգւոցն, և չարչարէր զմեղուցեալսն, որպէս զմեծատունն և պահէր 'ի ներքոյ դատակնքին Ադամայ զարդարսն, որպէս զԱբրահամ. եբարձ զայս իշխանութիւն 'ի նմանէ, և արդարութեամբն իւրով մի մարդն Յիսուս Քրիստոս առ յինքն իշխանութի' 'ի Հօրէ յերկինս և յերկրի, ըստ որում ասացաւ առաքելոցն, "Տուաւ ինձ իշխանութի' յերկինս և յերկրի". զիշխան աշխարհիս դատապարտեալ, և զհոգիսն 'ի դժոխոցն վերածեալ, ըստ որում գրեացն Պետրոս. և առեալ զնոսա որ ցանկային տեսանել զօր նորա՝ ուրախացոյց, և ընդ ինքեան բարձրացոյց:

Իսկ զպարտականսն դատաստանի՝ որպէս զՍոդոմայեցիսն, եթող ազատ 'ի չարչարանացն՝ մինչև 'ի միւսանգամն իւր գալուստ, ըստ որում ասաց յաւետարանին. "Եկեսցէ ժամանակ՝ յորում ամենեքեան որ 'ի գերեզմանս կայցեն՝ լուիցեն ձայնի իմում, և ելիցեն արտաքս. որոց բարիս գործեալ է՝ 'ի յարութիւն կենաց, և որոց չար արարեալ՝ 'ի յարութիւն դատաստանաց. և որ հաւատայ յիս, 'ի դատաստան ոչ մտանէ, այլ փոխեցաւ 'ի մահուանէ 'ի կեանս": Այսու ուսանիմք, զի սուրբքն որ յետ մահու ընդ խաւարային իշխանութիւն զերծան, որպէս ետես Անտոն, ոչ մտանեն 'ի դատաստան, այլ մնան աւանդ. և զայլս դատին ինքեանք. արդ

1 Յայտ է թէ մարմնոցն չարչարանաց, որոց է չարչարել յետ հասարակաց յարութեան. որպէս և յաջորդ բանքն զայն յայտ առնեն. ուր զչարչարանս հոգւոյն իւրոյ ծանոյց և մեծատունն պապակեալ 'ի տապոյ դժոխոց:

եւս յամօթ արարեալ զսատանայ անքասիր կրօնաւորութեամբքն ։ Այնպէս և ամբարիշտք մեծամեծք՝ որ լըցեալ է չափ պարտեաց նոցա, չէ ինչ պիտոյ թէ 'ի դատաստան մտանիցեն. այլ իբրև յառնեն, իսկ և իսկ դառնան 'ի դժոխս. ըստ այնմ, զոր Դաւիթն ասաց, "Դարձցին մեղաւորք անդրէն 'ի դժոխս, և ամենայն հեթանոսք որք մոռացան զԱստուած"։ Եւ Եսայի ասէ. "Ամենայն հեթանոսք իբրև զկաթիլ մի 'ի դուլէ են, և իբրև զմէտ մի 'ի կշռոց համարեցան, և կղզիք ամենայն իբրև զառաւօտս մերժեցան, և ամենայն հեթանոսք իբրև զոչինչ են և յոչինչ համարեցան". զի ամենայն հեթանոսք որ ոչ գիտեն զԱստուած և ոչ ունէին յոյս յարութեան կամ 'ի պէտս նորին ուշ բարեգործութէ, իբրև զոչինչ համարեալ են նմա, և ոչ մտանեն 'ի դատաստան նորա, այլ իբրև յառնեն, իսկ և իսկ դառնան 'ի դժոխս. և այլ աշխարհս որք կոչին մեղաւորք, նոքա մտանեն 'ի դատաստան[1] ։ Եւ դատաստանն զինչ այլ, եթէ ոչ յարդար դատաւորէն խնդիր իրաւանց ընդ մեզ և ընդ մախացող թշնամին սատանայ. քանզի որ մեղաւորքս եմք, և սակս նորին 'ի խաւարային իշխանութեանցն որ 'ի ներքոյ երկնից ըմբռնեցաք յետ մահու, և նա կարծէ թէ թողեալ ներողութեանն Աստուծոյ, իբր զի ընդ իւր պատժիցին, յորժամ գայ Քրիստոս և յարուցեալ 'ի մեռելոց մտանեմք առաջի նորա 'ի դատաստան, նա որոյ գիտութիւնն սքանչելապէս զօրացաւ յիս, մինչ զի ոչ հանդարտեմ, անհաս իմաստութեամբն քննեալ որոշէ մինչև ցորոշումն շնչոյ և ոգւոյ, զոր առ 'ի յինէն գործք, և զորս 'ի չարէն արկածք, և առ մեղս ծածուկ խայթուածովքն սատարութիւն. և յայնժամ ապա տիրապէս դատապարտէ զիշխան աշխարհիս այսորիկ, որ այժմ այնու յուսովն[2] դատապարտեցաւ ։ Եւ այս և Հայր ոչ դատի զոք, այլ զամենայն դատաստան ետ Որդւոյ իւրում. որպէս զի որ չարչարե-

1 Այսինքն՝ անհաւատք և յայտնի չարագործք դարձցին անդրէն 'ի դժոխս, առանց պէտս ունելոյ նորոգ քննութեան 'ի դատաստանի ։ Իսկ մնացեալքն՝ որոց անյայտ էին չարիքն, յայտնի դատաստանաւ տառապին վերստին 'ի նոյն 'ի դժոխս՝ ըստ ծանրութեան մեղաց իւրեանց կրել զպատուհաս ։

2 Այսինքն ակնկալութեամբ յետին պարտաւորութեան ։

ցաւն և զփորձ եառ թշնամւոյն, անմեղ փորձելոցս և վտանգելոց լիցի օգնական։ Յորում աւուր գայ կատարի՝ ՚ի վերայ մարդկան հրամայեալն, "Տուք ողորմութիւն, և ահա ամենայն ինչ ձեր սուրբ է"․ քանզի ասէ, եկայք օրհնեալք Հօր իմոյ, որ զքաղցեալսն կերակրեցէք, և զծարաւիս արբուցէք, զհիւանդս տեսէք, և զօտարս ժողովեցէք։ Արդ զինչ պարտ է առ այս խորհրդաբար իմանալ, կամ ուր խնդրել զդասս առաքելոցն, որք ոչ ստացան անձանց կերակուր, և ոչ զայլս կերակրեցին․ կամ զվկայսն՝ որք ծարաւեցան միայն, և ոչ այլոց արբուցին․ կամ զձգնաւոր հարսն՝ որք մերկացան յաշխարհէ, և ոչ զայլս զգեցուցին։ Քանզի այս կոչումն՝ միայն ողորմածացն է, և ոչ նոցա․ յայտ է թէ հաւատացեալ նոքա՝ այնչափ ՚ի մարտին քաջացան, մինչ զի ոչ մտանել ՚ի դատաստան, որպէս ասաց տէրն․ "Ի դատաստան ոչ մտանէ, այլ փոխեցաւ ՚ի մահուանէ ՚ի կեանս"։ Եւ ժամանեալք յօդդ՝ սպառազինութիւն Աստուծոյ ՚ի դիմի հարին չարին յաւուրն չարութեան, և յաղթեցին հնարիցն սատանայի, որպէս ետես Անտոնն․ և անցեալ ՚ի վերոյ քան զնոսա՝ ուր սահմանեաց Աստուած վայելեն ՚ի սէր նորա և ՚ի գիտութիւն մինչև ՚ի յարութիւն․ և յայնժամ լինի յարութիւն նոցա միայն կենաց, և ոչ դատաստանաց․ իսկ որոց չար արարեալ իցէ խառն ընդ բարիսն և յերկուցն միջի, է յարութի նոցա դատաստանաց, և ՚ի կեանս թէ զորս վիճակէ յայնպիսեացն արդար դատաւորն կամ ՚ի տանջանս, ինքն միայն գիտէ։ Ուսոյց և մեզ փոքր ինչ զկամս իւր, այսինքն ստանալ բարեկամս ՚ի մամոնայէ անիրաւութե մարտակիցս ՚ի դատաստանին զդասս կարօտելոց։ Զայս գիտելով սուրբքն՝ սահմանեցին ոմանց տալ զողորմութիւնն կենօք և յետ մահու, և ոմանց մաղթել անյապաղ վասն ողորմածացն Աստուծոյ, առ ՚ի սրբել զպատարագ նոցա, և ՚ի հօտ անուշից ընդունել։ Եւ թէ կենդանիք են, յոյս է նոցա վասն ողորմութեանն՝ որ յաղքատս և յեկեղեցիս ՚ի բանն յայն․ "Որ արբուսցէ ձեզ մի բաժակ ջուր ցուրտ՝ թէ դուք Քրիստոսի էք, ամէն ասեմ ձեզ, ոչ կորուսցէ զվարձս իւր"։ Իսկ եթէ կենօք ոչ զօրեցին, և յետ մահու արձակեն զձեռս յողորմութիւնն կամ անձամբ կամ ՚ի ձեռն ընտանեաց, յոյս

է նորա օգնութեամբ ողորմութեանն, և մեք ըստ պըտղոյ հաւատոյն աղօթիւք 'ի կշիռս գործոց իւրոց բարեաց ծանրութիւն խառնեալ՝ յաղթել չարին և զերծուցանել զնա ընդ իշխանութիւն օղոյն. ապա թէ առ այն տկարանայ գործքն և մնայ 'ի ստորև ընկռնեալ 'ի մեղացն, մինչև յօրն դատաստանի հաւատամք լինել ձեռնտու ողորմութեանս և աղօթից մերոց յայնժամ առաջի Քրիստոսի, որպէս ինքն գիտէ կշռել՝ որ ամենողորմն է[1]: Զի այս է դիտաւորութիւն աղօթից և պատարագաց՝ զոր տամ 'ի փրկութիւն մեռելոց, գործոց իւրոց զոր 'ի կենանն արար՝ օգնականութիւն, և ոչ տղայաբարոյ կարծիք՝ թէ մեղացն տիրապէս քաւութիւն[2]. զի մեղաց քաւութիւն զմեզ գիրք 'ի կենանս ապաշխարութեամբ ուսուցին գտանել. յետ մահու ասէ մարգարէն, "Միթէ պատմեսցէ ոք երբէք 'ի գերեզմանի զողորմութիւնս քո,,. ոչ թէ վասն զի ոչ գիտէ չպատմէ, այլ զի ոչ ունի զաշխատութիւն մարմնոյն օգնական. վասն այսորիկ ոչ հաւատայ ապաշխարութեամբ գտանել զողորմութիւն, և չէ. զի թէ անմարմին յանցաւոր թողութիւն կայր, դևք ոչ էին անյոյս 'ի փըրկութենէ. և անմարմին յանցաւոր զայն կոչեմք՝ որ ըզմեղսն զկնի տարաւ առանց ապաշխարութեան: Յուսայ 'ի մեր աղօթքս, և չէ վայրապար առաջի ողորմածին Աստուծոյ, բայց և ոչ կատարեալ փրկանք յետ մահու լինի 'ի ձեռն այլոցն՝ առ որ ինքն հեղգացաւ. զի իւրաքանչիւր ոք ժառանգէ զոր ինչ իւրն մարմնովն գործեաց՝ եթէ բարի և եթէ չար: Զայս և երանելին Դիոնեսիոս ուսուցանէ 'ի տեսութիւն խորհրդոյ թաղման ննջեցելոց՝ զոր 'ի մէջ առնուլ ոչ կարծեմ վայրապար, որպէս զի մի կարծեսցուք ստութեան ուսուցիչք, այլ հայրենի աւանդութեանն արձանացուցիչք: Եւ ասէ այսպէս. "Դնեն զննջեցեալն 'ի մէջ եկեղեցւոյն, և քահանայապետն աղօթս առնէ 'ի վերայ նորա,,: Բան

1 Այսինքն յաւուրն դատաստանի յայտնի լինի, թէ օգնեսցին ննջեցելոց նպաստք մատուցեալք յեկեղեցւոյ:

2 Այսինքն բուն քաւութիւն մեղաց լինի զղջացելոցն յառաջ քան զմահն. իսկ ննջեցելոց թէպէտ և լինի աղօթիւք և պատարագօք քաւութիւն ներելի մեղաց, այլ եթէ 'ի մահուչափ մեղս մեռցի ոք չիք նմա յոյս քաւութեան:

զի ինքն սուրբն՝ որպէս զայլ կարգս եկեղեցւոյ, և զայս սահմանեաց ։ Ապա քննէ թէ և զինչ յայտ առնէ աղօթեքն․ "Ամենայնի, ասէ, որ ըստ մարդկայինն տկարութեն մեղուցեալ ննջեցելոյն՝ թողութիւն լինել, և կարգել զնա 'ի լոյս, և 'ի դաս կենդանեացն 'ի գոգն Աբրահամու, Իսահակայ, և Յակովբայ 'ի տեղւոջ՝ ուստի 'ի բաց փախուցեալ են տրտմութիւնք, ցաւք և հեծութիւնք„ ։ Այսու առ 'ի մէնջ կանխաւ ասացելոցն կցորդ լինի երանելիս, զանազանութիւն տալով հանդըստարանաց արդարոցն և մեղաւորաց ։ Զի թէ դասք արդարոցն առանց տրտմութեան են և հեծութեան, յայտ է թէ ջոկք մեղաւորացն 'ի սոյնս վարակին ։ Ոո՞յք են առանց տրտմութեան, եթէ ոչ նոքա որք իշխանութեան օդոյս անցին գերակայ ։ Դարձեալ և զինչ այլ տրտմութիւն, եթէ ոչ 'ի նմանէ իբրև զգործակից ըմբռնիլն՝ անբերելի հեծութիւն և անտանելի տըրտմութիւն ։ Զայն զղջումն կամաց մեր կարծեմ, վասն այսորիկ թէ 'ի պատարագն խնդրուածք՝ թէ 'ի վերայ մարմնոյն աղօթք, յայսմանէ զերծանելոյ է հնար 'ի խաւարային իշխանութենէն և 'ի տրտմութեան վայրէն․ և նախ իւր գործն պիտոյ է ընթացիցն զօրութիւն, և ապա աղօթք մեր նմին օգնական ըստ որում հաստատէ զայս տարակոյս յառաջընթացեալ բանիւս երանելիս այսպէս․ "Ասասցես, ասէ, զայս ուղղակի ասացեալ 'ի մէնջ․ բայց տարակուսիս, էր աղագաւ յաստուածպետական բարերարութեան խնդրէ քահանայապետն զմեղուցելոյն թողութիւն, և ընդ աստուածատեսակացն համակարգ և երանելի վիճակադրութիւն․ զի թէ փոխարէն հատուցումն առցէ ամենայն ոք յաստուածայնոյն արդարութենէ, որոց 'ի մերձակայ կենցաղս գործեաց՝ քաղցունց կամ այլ այսպիսեաց․ և կատարեալ յայսմ կենցաղի զիւր գործսն ննջեցեալն, յո՞ր յայլ անկումն փոխեալ եկեսցէ քահանայականօքն աղօթիւք առաւել քան զիւր արժանաւորութիւնսն„ ։ Զայս հարցական դնէ երանելիս, և պատասխանէ լուծեալ զտարակոյս ինքն դարձեալ, այսպէս ասելով․ "Քանզի աստանօր կենացս փոխարէն առցէ զվիճակաւորութիւն իւրաքանչիւր ոք, քաջ գիտեմ, ասացելոցն հետևելով․ քանզի փակեաց տէր, ըստ նորին և բերցէ իւրաքան-

չիւր ոք զորս 'ի ձեռս մարմնոյն զոր ինչ գործեաց եթէ բարի և եթէ չար": Յաւելու ապա դարձեալ, զի և արդարոցն աղօթք ոչ միայն թէ յետ մահու չեն օգուտ յանցաւորաց[1], այլ և ոչ յայսմ կենցաղի. քանզի զինչ օգտեցաւ Սաւուղ 'ի Սամուէլի աղօթիցն, կամ զինչ զԻսրայելացւոց ժողովուրդն օգտեցոյց մարգարէականքն աղօթք: Բայց յաղագս ասացելոցն աղօթից՝ զորս քահանայապետն առնէ 'ի վերայ ննջեցելոցն, զոր 'ի մեզն է եկեալ աւանդութիւն յաստուածայնոցն առաջնորդաց, կարևոր է ասել, և պարտ է գիտել թէ առաջնորդս իւր ասէ զՊօղոս և զԻերոթէոս: Աստուածային քահանայապետն յայտնաբանիչ է, որպէս ասացեալքն ասեն, աստուածականացն արդարութեանց. քանզի հրեշտակ տեառն ամենակալի է, ուսեալ յաստուածաւանդ ասացելոցն, թէ որ սրբութեամբ կենցաղավարեցան երևելի[2] և աստուածային կեանքն ըստ արժանաւորութեան արդարացի լծովք փոխարինին, անտես առնելով բարերարութեամբքն աստուածպետականի մարդասիրութեան զեղեալն 'ի նոսա բիծ 'ի մարդկային տկարութենէ. վասն զի ոչ ոք մաքուր յաղտոյ, որպէս ասացեալքն ասեն. և գիտէ քահանայապետն, թէ այս խոստացեալ է կեանք արդարոց 'ի ճշմարիտ ասացելոցն: Խնդրէ զայս սրբազան զհատուցումս լինել և պարգևիլ որոց սրբութեամբն կենցաղավարեցան, միանգամայն և յաստուածանմանութիւնն կոյս աստուածատեսակաբար տպաւորեալ՝ զայլոցն պարգևս որպէս զանձին իւրոյ խնդրել շնորհս. քանզի ոչ ուրեք երբէք խնդրէ քահանայապետն յաստուածպետականին բարերարութէ զայն որ ոչն էր Աստուծոյ հաճոյ և տուեալ լինէր 'ի նմանէ աստուածային խոստումն, վասն որոյ անսրբազանիցն ննջեցելոցն ոչ առնէ զայս աղօթս: Ապա թէ յանդգնի նա որ 'ի քահանայագործութիւնն յանդգնաբար շարժեցաւ՝ և ոչ 'ի կատարողապետէն Աստուծոյ, ոչ թէ յաղօթիցն միայն վրիպեսցէ՝ արդարութեանն Աստուծոյ ոչ լսելով նմա, այլ և 'ի քահանայական կարգէ անկցի այսու օտար օրինացն ծառայեալ, և 'ի չարաչար խնդիրսն եկեալ. զի "Խնդրէք, և

1 Իմա, 'ի մեռելոցն մահուչափ մեղս: 2 Մի օրին. Երևելի:

ոչ առնուք, ասէ, վասն զի չարաչար խնդրէք,,: Ի սոյն յարէ և մեկնիչ գրոյն զիւր բանն այսպէս. "Տես, զի միայն արժանաւորաց գթութեանն Աստուծոյ են աղօթք արդարոցն օգուտ, թէ կենդանեաց և թէ մեռելոց, և ոչ մեղաւորաց և արժանեաց դատապարտութեանն,,: Հաւասիկ ընդարձակ բանիւ երանելոյ հօրս ցուցաւ արթուն մտաց, որքան և որպէս օգուտ են ննջեցելոցն 'ի յիշատակելոյ աղօթիցն պատարագաց, և աւելորդ է 'ի վերայ սորին երկրորդել. այլ միայն զմերս զարտուղի և անհամեմատ սորա ընթացս այսուհետև փոքր ինչ քննել. զի չէ բաւական ցուցանել զճշմարտութիւնն, այլ կարևոր է և զստութիւնն 'ի նմանէ բացատրել. որպէս զի իւրաքանչիւրն 'ի վերայ իւրոյ ամատոյ արձանասցի:

Արդ պարտ է գիտել, թէ զուղիղ աւանդութիւնս արար մեզ բանսարկուն ոչ 'ի շինութիւն, այլ 'ի գայթակղութիւն. և պակասեցուցեալ զիմաստն՝ ետ պարզմտութեամբ 'ի նոյն վարիլ: Նախ՝ զի յետ մահու թողութեան յոյս առաք, զոր ամենեւին ամենայն ուրեք փակեցին գիրք սուրբք. և հարկ է յայս յուսացելոց ըզկեանս 'ի հեղգութիւն մտանել: Երկրորդ՝ զի հաւատն պակասեաց յաշխարհէս, և մոռացան թէ կենդանեաց փրկանք է պատարագս, և 'ի նոցանէ պահանջէ իւր զընծայաբերութիւնն, այլ ամենեքեան կենօք անհաւատ և աննուէր սորա, յետ մահու հաւատան 'ի փրկութիւն, և տան զնուէրսն[1]: Երրորդ զի այսր աղագաւ 'ի տուրեւառութիւն անկաւ շնորհս, և 'ի թուականութիւնս քառասներորդաց. որով գտաւ 'ի մէջ մեր անբերելի անկարգութիւն, զի մի ասացից՝ անօրէնութիւն. քանզի ծանուցեալ եկեղեցւոյ վերակացուք թէ ըստ բազմութեան թուոցն է և վարձն և 'ի պէտս արծաթսիրութեան, բազմացուցին 'ի մի տեղ տասն՝ աւելի կամ պակաս ծակոտեալ մատրունս խորանօք և սեղանովք. ըստ նմին և քահանայք թուոցն լցուցին, և զվարձսն առատացուցին: Ի պէտս այսորիկ եմուտ ամոնացին և մովաբացին յեկեղեցին. և կրճատեալն յիմաստութե-

1 Աշտամբութիւնս առ այնոսիկ է, որք ոչ ինչ հոգան 'ի կենդանութեան օգնել 'ի սրբոյ խորհրդոյն, այլ միայն յետ մահուն խորհին օգուտ գտանել:

նէ և մաքրեալ 'ի շնորհաց եղև քահանայ. բարձաւ
այլ զառակարգութիւն պաշտօնէից եկեղեցւոյ, սար-
կաւագաց և կիսասարկաւագաց՝ իբր զանկարգս և զան-
կատարս՝ յաղագս ոչ զթիւն գլխաւորելոյ։ Ի ծանր ա-
ղէտս մատնեցաք, և յողբոց արժանաւոր մեղս, և ոչ
զոյ որ իմանայ, և ոչ այն որ խնդրէ զճշմարտութիւնն
Աստուծոյ. աստուածավաճառք եղաք, 'ի մարմնական
շահավաճառութեան պէտս քահանայացաք, և քահա-
նայացուցաք։ Ո՜վ աղէտիցս, ո՜վ յիմարութեանս. յԻս-
րայէլի միանգամ 'ի տարւոջն մի քահանայ մտանէր ա-
րեամբ օտարաւ 'ի սրբութիւնսն, և զամենայն ժողո-
վուրդն քաւէր. իսկ մեք Քրիստոսի ամենայն աւուր
վասն մեր պատարագելոյն յամենայն տեղիս՝ տկարացաք
հաւատալ թէ քաւէ. այլ զնոյնն 'ի զանազան տեղիս
և 'ի մի վայրն անպատուեցաք. և մատուցաք յանձուկ
և անպատիւ ծակոտեալ խորանան առանց սպասաւո-
րութեան սարկաւագի, առանց հպատակութեան դպ-
րի, առանց անուշահոտութեան խնկի, առանց լուցման
ջահի, որ 'ի հարցն մեր ամենայն սահմանեցաւ 'ի պէտս
նորին և 'ի կատարումն։ Օ այսքան բարեկարգութ̃ս
զանց արարաք, և միայն համարոցն ծառայք եղեալ՝ ըզ-
պատարագելն և զհաղորդութիւն քահանայիցն 'ի մի-
մեանց պառակտեցաք առանձին առանձին լինել և ըզ-
թիւսն աճեցուցանել։ Ողբասցեն զմեզ երկինք և եր-
կիր, թէ առ ո՞ր խորհուրդ գնացաք խոտորնակ, և զո՞ր-
քան մեծ շնորհ յանարգութիւն արկաք. և 'ի պէտս
այսորիկ թուոց՝ յայն ձեռս մատնեցաք զՔրիստոս, ուս-
տի մեք բազում անգամ զարչիմք։ Յաղագս այսորիկ
մանկանց դեռաբուսից ախմարաց արարաք զնա խաղա-
լիկ. որք այնչափ պաշտեն, մինչ ոչ գիտեն. և յորժամ
փոքր ինչ ճանաչեն[1], բացուստ 'ի բաց 'ի հաւատացեալ
գործոյն հրաժարեն, կամ թէ յանդգնաբար առ նոյնն
բերին։ Եղծաւ լքաւ՝ յերկիր կործանեցաւ բարեկար-
գութիւն հրահանգութեան եկեղեցւոյ. և արմատ և
նիւթ կործանման այս ախտ. և երանի թէ զոնեա անաս-
զան ճանաչէաք[2] կամ 'ի բժշկութիւն միտէաք, և ոչ
խնդրողացն զճշմարտութիւնն ընդդէմ զինէաք, ջատա-

1 Մի օրին. ճանաչէին։ 2 Մի օրին. ճողոպրէաք։

զով 'ի բարեպաշտից կալեալ և ոչ զոք. և նոցին բանից պատմողացն յամրահաւատք, մանաւանդ թէ ամենեքին անհաւանք: Թէ 'ի հրեշտակաց էր եղեալ այս օրէն թուականութեան, պարտ էր լուծանել, յորժամ այսքան բիւրապատիկ չարեաց եղև գտակ. և ոչ թէ յայնց ումանց՝ զորոց և ոչ ընաւ զանուանսն գիտեմք, թող թէ գիրք կամ բան վկայ: Թէրևս անպատշաճ կարծես զասացեալսդ բան. բայց ես բազումս ունիմ վկայս: Ո՞չ լուծին զօրէնսն ուղիղս կատարեալ հասակին մկրտութեան, յորժամ ոչ մարդիկ առ նոյն ուղղապէս բերէին: Արդ թէ և ուղիղ է[1], այս օրէնք թուելոյ զշնորհսն Քրիստոսի, յորժամ զայդքան վերոյգրեալ թիւրութիւնդ եգիտ մեզ, լուծցի քակտեսցի քակտիչն բարեկարգութեան, և ձրին բաշխեսցի ձրի, և առցէ զհատուցումն իւր ձրի. պաշտեցեալն 'ի սերովբէից պաշտեսցի և 'ի համակարգութենէ եկեղեցւոյ ըստ իւրաքանչիւր աստիճանի, և մի 'ի բաժանմանէ. փորձեսցուք միշտ զսովորութիւնս, զնա որոյ կատարումն բարի է՝ ընկալցուք, և որ այսքան չարեաց գլուխ է՝ 'ի բաց կացցուք իշխանութեամբս, զոր ետ մեզ տէր 'ի շինել, և ոչ 'ի քակել, 'ի փառս անուան իւրոյ որ է օրհնեալ յաւիտեանս, ամէն:

## ԲԱՂԴԱՏՈՒԹԻՒՆ ԱՌ ՄԻՄԵԱՆՍ ՍԱՀՄԱՆԱԴՐՈՒԹԵԱՆՑ ԵԿԵՂԵՑԻՈՑ ՔՐԻՍՏՈՆԷԻՑ ՀՌՈՄՈՑ ՓՌԱՆԿԱՑ ԵՒ ՀԱՅՈՑ ԵՒ ԱՌ ՄԻ ԴԻՏԱՒՈՐՈՒԹԻՒՆ ՑՈՒՑԱԿ ՆՈՑԻՆ ԱՒԱՐՏՄԱՆ

Եթէ նոցա՝ որ զգիրս սուրբս հին կտակարանացն քննեցին և յեկեղեցի աւանդեցին, հարցն մերոց սրբոց, փոյթ եղև 'ի պէտս ստուգութեան գրեցելոցն զիւրաքանչիւր ոք 'ի թարգմանչացն անուամբ և բանիւ 'ի մէջ առնուլ. այսինքն եօթանասունքն զայս այսպէս թարգմանեցին, իսկ Ակիւղաս զայն այնպէս, և Թէոդոտիոն այլով օրինակաւ. իսկ 'ի վեցիջեանսն այսպէս է գրեալ: Եւ այսքան խուզողութեամբս զմի ճշմարտութիւնն գտին, ոչ հրաժարեալ յարանց՝ որ ոչ էին ճըշ-

1 Իմա, թէ և ուղիղ լինէր:

մարտութեանն աշակերտք, զնոյն անգայթակղ ուսանել. ապա և մեզ ոչ է վայրապար՝ որ եղաք առաջի զեւս բարձրագոյն խորհրդոյ զօրութիւն ուսանել, զիւրաքանչիւր ումեք յազգաց քրիստոնէից զառ 'ի սոյն աւանդութիւնս 'ի մէջ առնուլ. Թերևս կարասցուք գոնեա այնպէս զանստերիւրն 'ի մէջ մեր ուղղել զճշմարտութիւնն, և զվայելուչ բարեկարգութիւն գիտելով, համատատապէս մի եկեղեցի Քրիստոսի ըստ իւրաքանչիւր ազգաց քրիստոնէից բազմութիւն, և մի անդամք են, ըստ իւրաքանչիւր պատուոյ յարմարեալ առ իրեարս, և պատկանեալ 'ի համարակաց գլուխն Քրիստոս, որ եղև մեզ խաղաղութիւն յԱստուծոյ [1]օրէ արդարութիւն և սրբութիւն և փրկութիւն: Արդեամբ ապա անկար է ոտին ասել ցձեռս՝ թէ չես ինձ պիտոյ. և կամ գլխոյ ցոտս՝ թէ չես ինձ պիտոյ: Նաև ամենևին խելագարութեան վիճակեալ, որ ասէ՝ թէ չեմ 'ի մարմնոյ աստի. և ոչ կարէ տիրապէս զչ լինելն համատել, գլուխ իւր զՔրիստոս համարելով. զի թէ գլուխ նա է, ապա հարկաւորապէս նուաճի լինել յանդամոց քրիստոնէից 'ի ներքոյ միոյ գլխոյն եղեալ մի մարմնոյ մասն: Իսկ թէ ոք առ այս խորհրդոյ գիտութիւն կամակորի, այլ դնելով զինքն 'ի քրիստոնէից եկեղեցւոյ, կամ զնոսա առ 'ի յիւրմէ՝ սակս բայից և բառից քննութեան, կամ վասն զանազան ' աւանդութեանց, Աստուած աշխարհիս այսորիկ կուրացոյց զսիրտս այնպիսեացն, զի մի ծագեսցէ առ նոսա լուսաւորութիւն գիտութեանն Քրիստոսի: Այլ ինձ և որոց ողջունեն զճշմարտութեանն աշակերտութիւն, մի լիցի 'ի ներքոյ այսպիսի կարծեաց վարանել, որ բաժանէ 'ի Քրիստոսէ՝ առ որ տենչամն խառնիլ. կամ զազգ քրիստոնէից՝ ժպրհել և որպէս զմի մարդ յաչաղել, որ ուսայ և 'ի կատարեալն լինել՝ անձինս միայն տալ պարծանս, և ոչ առ ընկերաւն: Թէ այլապէս կարգօք անջրպետեմք 'ի միմեանց ըստ իրաց փոքրկանց, այլ գոլով հաւասար նոցին քրիստոնեայ, և յընտանութենէ մարմնոյ ՟այ, մի եմ ընդ եղբարս, և միոյ արգանդի ծնունդ, ուստի նոքա ստեղծան վերստին, և պատուեմ առաւելապէս

1 Մի օրին. Զանազանողէս:

քան զկամս մարմնոյ՝ զԱստուծոյ ծնանելն. և որ այնպէս իմ եղբարք և մարմնակիցք՝ ՚ի համատոհից և յայլալեզուաց, և մի Քրիստոս և մի քրիստոնեայք: Իսկ թէ ոք յայսմանէ հրաժարէ, իբրև զկաթնկեր դատեմ և զտգէտ բանին արդարութեան. և ես ոչ խորշիմ, այլ զկնի ընթանամ այնպիսւոյն. զի գրեալ է, "Ոչ մի յաղթիր ՚ի չարէն, այլ յաղթեա՛ բարեաւն չարին": Իսկ զլուսաւոր զայս խորհուրդ ամենեցուն ընձեռեմ՝ ըստ իւրաքանչիւր ազգաց, որոց կամին ըստ ճշմարտութեանն ՚ի Քրիստոս միալ. ոչ թէ վայրապար ուսումն կամ ՚ի պարզմտութենէ յառաջ եկեալ, այլ ՚ի խորագիտութենէ, զի այսպէս ասացից, և ՚ի գիտութենէ հաստատել, և զամենայն յաչաղանս նորագիւտս ՚ի յետ ընթադրել: Որդ քանզի նախ ՚ի հաւատս Քրիստոսի՝ և առաջին քան զամենայն ազգս Յելլենացւոցն է ազգ, որք յետոյ առին զանուննն Հռոմայեցւոց, և վասն այսորիկ և նախադասիւ սոքա դասեցան ՚ի մէջ ամենայն քրիստոնէից. ուսանելով մեր զայս յեկեղեցւոյ գրոց բազմութենէ, որ ՚ի զանազան ազգս է. զի նոցա բարբառովն ուրեք ուրեք եղեալ են բանք և անուանք, և ոչ յեղաշրջեալ, առ ՚ի պատիւ ազգին. որպէս զՔրիստոսի անունն, և զամէննն, զտէր ողորմեայն յայլ ազգս[1], և զպռօսխումէն ՚ի մերս. և նոքա յեկեղեցւոյն աւանդութեամբ զմեծին Հռոմայ պատուել զաթոռ, որպէս ծանեաք, ՚ի նոցին բարբառ զընթերցուածսն առնել ՚ի հանդիսական աւուրս ՚ի մեծ եկեղեցին[2]. առ այս զառաքելականն պատուելով կամս, որ հրամայէ ՚ի պատիւ զմիմեամբք ելանել. և դարձեալ ասէ, մի եղիցի ինչ ըստ գրգռութեան կամ ըստ սնապարծութեան, այլ զմիմեանս լաւ համարել առաւել քան զանձինս:

Նոցին էր մերս եկեղեցի առընթեր և սահմանակից. առ որս և սուրբն Գրիգոր և իւրքն վարժեցան և ձեռնադրեցան, և ըստ նոցա կրօնիցն ընթացից և զմերս ուղղեցին բարեկարգութիւն: Իսկ յետ գիւտի գրոյն թարգմանիչքն զճշմարիտ գիրս աստուածաշունչս առ ՚ի նոցանէ բերին ՚ի Հայաստանեայս: Նաև ինչ և յԱսորոց

1 Զի և Լատինք և Ասորիք և Վրացիք և այլք Կիւրիէ էլէ՛իսոն ասեն:

2 Փռանգք և Յոյնք զհանգամանակն յերևելի տօնս՝ ոչ միայն յունարէն, այլ և լատիներէն ասեն:

ընկալան տեղեկութիւն կարգաց։ Բայց որ Հռոմայե-
ցւոցն էր ազգ և եկեղեցի, կոչեցեալն այժմ փռանգք,
յաւուրսն առաջինսն բացակայ ելով 'ի մէնջ վիճակաւ
և աշխարհաւ, կարծեմ չունել ինչ նոցին կարգացն
հմտութիւն և տեղեկութիւն 'ի նախնեացն։ Բայց թէ
այժմ յորժամ զօրացաւ բազուկ նոցա, և տիրեցին
այսմ աշխարհի, ականատես մեր ունելով զաստուա-
ծայնութիւն իւրեանց և զբարեվայելչութիւն հրահան-
գից եկեղեցւոյ գերազանց յոքունց, ընդ որս և մերոցս
կարգաց գտանեմ իւիք իւիք համեմատութիւն, թէ-
պէտ և ոչ զբովանդակն. նոյն և ընդ Յոյնս իրս իրս
խառնեալ, և յոմանս որոշեալ։ Այլ չէ ինչ զարմանք զա-
նազանութիւնն առ 'ի սոյն խորհուրդ. քանզի կամ մե-
րոց հարցն հաճոյ թուեցաւ առ 'ի մերս եկեղեցի առ-
նել առաւելութիւն և նուազութիւն, և կամ նոցա որք
յետոյ նստան յաջորդք աթոռոց՝ առաւելութիւն սահ-
մանաց պատշաճ համարեցան յեկեղեցի մուծանել։ Այլ
զի՞նչ, պարտ է ընդդէմ դառնալ կամ խոտել. և ոչ եր-
բէք. զի թէ զայս խորհիմք, ո՞ւր պահի առաքելոյ հրա-
մանն, "Ոգիք մարգարէից՝ մարգարէից հնազանդին"։
Եւ այսորիկ թէ երկրորդին որ նստի՝ յայտնեսցի, ա-
ռաջինն լռեսցէ։ Եպիսկոպոսք են և տնօրէնք եկեղեցւոյ,
զհաւատոյ շաւիղն ամբողջ պահելով զոր ինչ կարգաց
առաւելութիւն առնեն կամ պակասութիւն, 'ի փառս
անուանն Քրիստոսի է, և 'ի պէտս բարեձևութեան
կարգաց քրիստոնէից։ Ապա զի՞ թէ որպէս ընկալաք յա-
ռաքելոցն, և չէր ինչ աճումն լեալ 'ի պայծառանալ
բարեպաշտութեանն, առաքելական աւանդիցն առա-
ւելութիւն վարկանելով, ո՞ւր էին երգոցն քաղցրաձայ-
նութիւն՝ որ այժմ յեկեղեցի. ո՞ւր տաճարացն պայ-
ծառութիւն. ո՞ւր զանազանապէս 'ի նոսին տօնախըմ-
բութիւնք։ Քանզի այս ամենայն առ նոքօք ոչ էր, սա-
կայն լցին հետևողքն և աճեցուցին. և դեռ ևս աճէ և
և պակասէ 'ի նոցանէ՝ որք վարձկանեցան յայգէգոր-
ծութիւն եկեղեցւոյ. զի զոր օրինակ նա՝ որ այգէգործ
մշակն է՝ ըստ ժամանակին պիտոյից թողու զուռն 'ի յոր-
թըն, և ոչ աւելի կամ պակաս. և տեսանէ, զի այն
ուռն՝ որ յանցեալ ամն ետ զպտուղն, յայսմ ամի չէ ինչ
պիտանացու, այլ մանաւանդ և խափանումն այլոցն, յա

պաւէ զնա, և դեռաբուսիցն տեղի պատրաստէ, զորթն խնամելով այնու. և ոչ վասն այնորիկ ինչ թշնամանի, այլ 'ի նորայն առնեն ապաստան յիմաստութիւն տեսողքն՝ յորժամ գիտեն զհմտութիւն արհեստին։ Այսպէս 'ի մէջ աշխարհի ծառ և որթն տնկեցաւ հաւատոյն բան, և սաղարթք 'ի նմանէ յառաջ եկին պէսպէս բարեկարգութիւնք. իսկ գործողք նորա և մշակք՝ առաջնորդք եկեղեցւոյ։ Որպէս նա 'ի պէտս զօրութե՟ և առոյգութեան որթոյն՝ զոմանս 'ի հնացեալ բարունակացն հատանէ, որք նախ էին պիտանացուք և այժմ անպիտանք. այսպէս և սոքա 'ի պէտս զօրութեան հաւատոյն՝ զոմանս 'ի հին կարգացն յորժամ պատշաճ համարին բառնան, և այլս ուժեղագունի քան զնա պատրաստեն տեղի բուսանել։ Եւ չէ ինչ պարտ սակս այսորիկ 'ի սոսա բամբասողական նետս ձգել, գիտելով զհմտութիւն և զխոհականութիւն անձինն, եթէ յերկիւղէ զայս յառաջ բերէ և յիմաստութենէ ծնանի, զի մի ուռն զորթն խանգարեսցէ հնամաշովն. այսինքն կարգն զզօրութիւն հաւատոյն նուաղեցուսցէ. այլ պէսպէս դեռաբուսիւք բարունակօք կարգացն՝ որթոյ հաւատոյն արմատ նմա 'ի խոր առաքեսցէ, և զպտուղ բարեգործութեանն յերկնից արքայութե՟ հնձանսն զեղցէ. ըստ այսմ դեռ ես տեսանեմք զխոկումն հարց քրիստոնէից եկեղեցւոյ, որպէս և Հռոմոց առաջնորդք։ ՙՔանզի տեսին վասն փարթամութեան ազգին՝ տձևպճնեալ զժառանգաւորս եկեղեցական զգեստու՝ մետաքսեայ և ոսկեթել պատմուճանօք, բարձին զսովորութիւն առաջնոցն՝ որք այսպէս զգենուին, և սահմանեցին ամենեցուն զմի նիւթ զգենուլ 'ի սպասաւորութիւն սուրբ, այսինքն անպաճոյճ 'ի ստեւոյ ոչխարաց։ Եւ գովելի է յետոյ մտեալ օրէնքս 'ի փառս Աստուծոյ։ ՙՆոյնպէս և փռանգք՝ զի տեսին զժառանգաւորս 'ի կանայս գիճութեամբ փաղփեալ, և զնուէրս եկեղեցւոյ 'ի պէտս որդւոցն ծախեալ, բարձին զունելն նոցա կանայս. զի մի ասեն եկեղեցիս որ ՙՔրիստոսի է ժառանգութի՟ ընդ մարմնաւոր ընտանութեամբ գրաւեսցի։ Եւ պահեսն արդ ես զհայրենի աւանդութիւնն՝ թէ և նեղին, որպէս լսեմք, 'ի մարմնոյս բնական պիտոյից. բայց 'ի կամս վեհագունի հօրն թողուն զօրէնս

համապատուին: Նոքին դարձեալ 'ի յետին ժամանակս 'ի Հայրապետէ ումեմնէ ( )գոստոս անուն՝ առին հրաման սափրելոյ զմօրուս ժառանգաւորաց, խորհրդոյ աղագաւ առ հրեշտակս նմանութեան[1]. և դարձեալ զի համապատիւքն հաւասար երևեսցին, և մի ոք յայլս մօրուացն փառս որսասցէ: Իսկ բարեբարոյ ազգն ընդդէմ քնութեան և սովորութեան՝ զհրամանս հօրն որպէս զորդիս մտերիմս սիրով ընկալան: Պատին և յորժամ յայս աշխարհս անցին՝ այլ օրէնս լինել եղբայրութե կարգօք կրօնաւորաց 'ի մէջ աշխարհի և զինուորական զգեստուք առ 'ի պէտս հաւատարիմ մարտի ընթերակայ Թշնամեացն[2]. և գովելի է սկիզբն, եթէ 'ի կատարումն սատանայ զիւրն որոմն ընդ բարի սերմանն չխառնէ. որպէս և ունին մարտասէրքն[3] ընդդէմ իւրաքանչիւրոցս ասել. գիտեմք և մեք. բայց յետոյ, և ոչ 'ի սկզբանն սահման կարգին այնպէս: Ոչ թէ զինչ խառնեցաւ ընդ սոսին, ինձ՝ դատելն և զիմ ազգ ժպրհութիւն է՝ որ օգտի 'ի դատելոյն և յանդիմանելոյն. յայլ ազգս մի լիցի ձեռնարկել, որոց ոչ կարգեցայ քննիչ, և ոչ օգտեցուցանեմ 'ի քննելն: Իսկ որ քննեն՝ միայն զքաղց Թշնամութեանն յագեցուցանեն, և նոցա բամբասանօքն զիւրեանց սխալանսն Թեթևացուցանեն, իսկ օգտել և ոչ ինչ[4]: Այլ բանս յիւր կարգն դիմել յօժարի:

Դարձեալ՝ և Հոռոմք, զի դժուարին և ոչ որպէս այժմ, քաղցրալուր ունէին զեղանակս յառաջնոցն. Գերմանոս պատուական նոցա հայրապետ եղեալ 'ի ժամանակս Հերակլի և Կոստանդեայ Արքայից[5], հանդերձ Յովհաննու և Կոզմայիւ կրօնաւորօք 'ի Դամասկոսէ՝ յեղաշրջեցին զնոյն 'ի դիւրալուր և յախորժակս լսողաց, և բազմապատկապէս աճեցուցին զերգս տօնականս: Այսպէս հարքն իւրաքանչիւրոցն 'ի ժամանակս

1 Այսպէս լուեալ է Լամբրոնացին յոմանց 'ի լատինացւոց ժամանակի իւրոյ, ոչ թէ 'ի սրբոյն Օգոստինոսէ մուծեալ իցէ բանս:

2 Այն է կարգն ասպետաց սըրբոյն Յովհաննու Երուսաղեմացւոյ, որոց բարի սկիզբն յանբարին յանգեցաւ վախճան:

3 Մի օրէն. Մուրդաւէրէ:

4 Տես, զի և Լամբրոնացին որ զազգն իւր խրատէ, գիտէ Թէ նաև յայլ ազգս կայ ոչ սակաւ ինչ խրատելոյ արժանի. բայց զայդ յիւրաքանչիւր առաջնորդս ազգացն առնէ ապաստան:

5 Իմա, միով դարու զկնի:

իւրեանց զառաքելականն պահեցին օրէնս. «Եթէ երկ֊
րորդումն յայտնեսցի, ասէ, առաջինն լռեսցէ. և զա֊
մենայն ինչ փորձեցէ՛ք և զբարին ընկալարուք, և յիրաց
չարաց 'ի բաց կացէք»: Իսկ որդիքն՝ այսինքն համացեղ
ազգն յառաջնորդացն ընթացակցութենէ ոչ խոտորե֊
ցան, և ոչ հարցն հրամանի ընդդէմ դառնալ ժպրհե֊
ցան, տեսեալ առ Աստուած զանպատուութիւն նոցին
վերացեալ: Իսկ մերս՝ որպէս ասացաւ, կանխագոյն ու֊
րեմն 'ի Յունաց թարգմանեցան գրեանք և կարգ, և
վաղվաղեալ զկնի սատանայական հակառակութեանն,
'ի մէջ արկաւ որոմն, որ վասն հաւատոյն բանի. դղըր֊
դեալ տղայքն դեռաբոյսք 'ի գայլոց ծանուցն՝ տեղի
ետուն ատելութեան ընդ հարսն առաջինս: Իսկ ոչ գի֊
տեմք, զիա՞րդ փոփոխմամբ ժամանակաց նոյնն առաջա֊
ցեալ՝ սին և ազազուն արար զսաղարթ սիրոյ և բարե֊
կարգութեն, հրաժարական ողջոյն ստիպեալ ետ տալ
ամենայն եկեղեցեաց քրիստոնէից, և յաշտարակ ամ֊
բարտաւանութեանն հանեալ՝ զինքն միայն ճշմարիտ
ետ աղաղակել, մոռացուցեալ՝ զի այսպէս ասացից, ըզ֊
գործոցն կշռել 'ի Պօղոսէ հրամանս, և 'ի պարծանս
անձին տալ զնոյն՝ և մի առ ընկերաւն. այլ անդր 'ի
բարձրաւանդակն կացեալ աշխարհաւ և կամօք, 'ի ծաղ֊
կելն ընաւորական իմաստիւ նոցա եկեղեցեացն՝ խոնար֊
հեցան և ոչ ընաւ, թող թէ ճաշակել ոչ միայն և ըզ֊
համեղութիւնն իմանալ, այլ և ոչ 'ի բացուստ կալ և
հոտոտել. գիտելով սկզբնաչարին՝ որ յայն աշտարակն
եհան զնոսա, զի թէ զհոտն առնուին և 'ի համն փա֊
փաքէին, և նորին փափաքմամբ և յաշտարականն խո֊
նարհեալ ողջոյն խաղաղութեան տային, և անգործ
իւրն լինէր մեքենայք այնուհետև: Վասն այսր երկեղի
ած բանդեաց զնոսա յամուր մախանացն, և կնիք եդ 'ի
վերայ նորա անլուծանելի զգործակցաց իւր կանոնա֊
դրութիւն. յաղագս որոյ և թերի մնաց 'ի բազում իրս
որ ըստ մերս եկեղեցւոյ վայելչութիւն սպառեալ և
պասքեալ, յաղագս անջրպետ ձգելոյ զթշնամութիւն
'ի մէջ մեր և իմաստութեան աղբերն: Իսկ թուել զըս֊
պառեցուցիչ ախտոմն հեղգանամ, կամ թէ զճշմարիտն
ասել երկնչիմ. զի մի կարծելով ուղղել՝ 'ի յանդգնու֊
թիւն զոմանս 'ի տկարամիտ եղբարց իմոց ձգեցից:

Երգս մնաց առ մեզ դժուարալուրն ամենևին. և ան-
փոյթ գոլով անաւշահամ. պողոցն՝ զդառնահամն ախոր-
ժելով ճաշակեմք: Եկեղեցիք մաքսատունք այլազգեաց
եղեն անմտութք. ուստի զնոսա անիմաստութիւնն՝
պարսպեաց. և 'ի ներքոյ միոյ ձեռին մի քրիստոնեայք
գոլով մեք ծառայք և նոքին ազատք: Եպիսկոպոսաց
տնօրէն լինել քաղաքաց և գաւառաց մոռացաւ, թէ
այդ այլազգեաց է սովորութիւն, և ոչ մեր. աքեմ և
կարգ կրօնաւորութեան աղաւաղեցաւ, և որպէս զծանր
արհամարհեցաւ. և քահանայական պատիւն եղև կո-
խան անպատուիցն. աստիճանաց եկեղեցւոյ զանազա-
նութիւն առաքելական աւանդութեամբ որպէս զաւե-
լորդ ինչ 'ի յետ ընթադրեցաւ. զգեստուց բարեձևու-
թիւն անգոսնեցաւ. պատարագն յանպատշաճ և յան-
պատիւ տեղիս անպատուեցաւ. թողցի ասել և 'ի տուր-
եւառս ծախելն: Ո՛վ անմտոյց աշտարակի յիմարու-
թեանս ամրութեան՝ ուր նստեալ առանձինն 'ի համա-
կարգ եղբարց որիչ՝ զայսպիսի մանկունս չարեաց ստեղ-
ծեալ ծնաք, 'ի զուր դատելով և զնոսա մոլար 'ի շաւ-
ղաց հաւատոյ կարծելով: Բայց դիցուք թէ և յայս նո-
րաձևեցան, զկարգս եկեղեցւոյ և զառ 'ի նոյն իմաստու-
թիւնն թերևս ընդ այսմ մոռացան հաստատեալքն ա-
թոռով և աշխարհաւ: Իսկ թէ ոչ, ապա ընդէ՞ր հրաժա-
րեմք ընդունել զոր հարքն մեր պատուեցին, և մեզ ա-
ւանդեցին: Բայց չունիմք ասել առ ատելութիւն, և
ոչ զառ 'ի նմանէ չարեացն սահման կարող եմք գիտել՝
բազմաթիւ լինելովս. զոր օրինակ և ոչ զսիրոյն բարիոք
բողբոջս 'ի հակառակատիպ ծաղկացն. զի սա առօգիչ
իւր ունի զԱստուած և զկամս նորա. և նա զհակա-
ռակն Աստուծոյ և զգաղտնի խայթոցս նորա: Արդ
զակն ոգւոց 'ի ծմակեցուցիչ այս ախտէ բարձրացու-
ցեալ, և զտապ ջերմութեան սիրոյ և խաղաղութեան
յարդարութեան արեգակնէ 'ի մեզ ծագեալ, բարիոք
վարկանիմ առաջիկայ խորհրդոյս աւանդութեան, զոր
հանդերձեալ եմք քննել, փոքր ինչ բաղդատութիւն
առնել ընդ այլոց ազգաց քրիստոնէից ըստ այսմ մասին
սահմանադրութեան, և սակաւուք՝ թէ իրաւունս վար

1 Մի օրէն. Անմտութիւն:

կանի բանս՝ լրումն առնուլ մերում թերութեանս ։ Արդ պարտ է գիտել թէ մեր խորհրդածութի̃ պատարագի նախ թարգմանեցաւ քան զհաստատելն յեկեղեցի սրբոյն Յովհաննու ոսկեբերանի աւանդութե̃ցն որ եղեալ հայրապետ Կոստանդնուպօլսի՝ բազում կարգս աճեցոյց յեկեղեցի հանդերձ աշխարհալոյս՝ վարդապետութեամբն ․ ընդ որս և կատարողութեան պատարագին առաւելութիւն արար քան զսովորութիւն առաջնոցն, զորս սահման մեք ոչ ունիմք և ոչ փռանգք, նաև ոչ Հռոմք ըստ այլ հարցն խորհրդոյ ։ Այլ թէ Բարսղին է պատարագ, և թէ Աթանասին, նախ զՈսկեբերանի ասեն մինչև 'ի վերաբերումն ընծայիցն, և ապա զնոցայն ։ Քանզի որպէս և ասացաք՝ յետոյ նա հաստատեաց բազմապատիկ քարոզութիւնս սարկաւագին 'ի խորհրդականն ժամու և ըստ նոցին աղօթս ։ Եւ զայս ոչ վայրապար, այլ ըստ այնմ խորհրդոյ կարծեմ. քանզի առ առաջնովքն եռանդն գոլով բարեպաշտութեանն՝ սրտի մտօք ամենայն ժողովուրդն աղօթէր 'ի պատարագն ․ յետոյ սկսան հեղգանալ, մինչ քահանայն 'ի խորհրդեանն է՝ 'ի շատխօսութիւն կամ 'ի դանդաղութիւն միտեալ ։ Երանելի հարս² տեսեալ զայս՝ սահմանեաց զհրաման քարոզութեան սարկաւագին, որպէս զի հարկաւորապէս և անդանդաղ զամենեցուն միտս արթուն պահեսցէ, և 'ի խնդրուածս ողորմութե̃, և զկամն նոցա կցորդ քահանային կամաց, որ վասն նոցա աղօթէ ․ զի 'ի հրամայելն խիտ առ խիտ սարկաւագին հարկաւորապէս՝ թէ զտէր աղաչեսցուք, ո՞վ է որ դանդաղի 'ի յաղաչելոյն ․ բայց թէ ոչ զայս բռնադատութիւն լսէին, բազումք հեղգային ։ Ո՛վ երանելի և քաղցր աստուածազգեացն հոգւոյ ․ այսպիսի վայելէր մեզ քահանայապետ չարչարակից զգածեալ տկարութեամբ ժողովրդեանս ․ որք յորժամ կամօք հեղգացաք, հարկիւ բռնադատեալ ձգեաց յաղաչելն ։ Այս աւանդութեամբս վարի Հռոմոց եկեղեցին ․ քանզի ասեն նախ քան զխորհուրդ պատարագին երիս սաղմոս և ըստ իւրաքանչիւրոցն քարոզութիւն և աղօթք առ 'ի սրբոյ հօրէս սահմանեալ ։ Ապա յետ այնորիկ ընթերց-

1 Մի օրին ․ Աստուածազգեցելոյս ։

2 Մի օրին ․ Երանելի հայրս ։

մունք մի ըստ միոջէ. և ոչ յետ աւետարանին ասեն զՀաւատոյն դաշն, այլ յապաղեցուցեալ զնա մինչև քահանայն 'ի վերայ երախայիցն աղօթէ, և սարկաւագն զնոսին արտաքս առաքէ. և բերեալ սարկաւագն ընծայս 'ի սեղանն՝ զսուրբ ողջոյնսն աւարտեն, և միաբան զՀաւատոյն երգեն: Եւ այս ոչ թէ վայրապար, այլ երանելին Դիոնեսիոս ըստ այսմ տայ մեզ տարացոյց՝ թէ յետ արտաքս գնալոյ երախայիցն՝ միայն հաւատացեալքն զՀաւատոյն դաշն երգեսցեն. որոյ հետևեալ ողջունեալ միանձնանան, և միաբանութեամբ 'ի մի բերան փառաւորեն զԱստուած, որպէս հրամայէ առաքեալ: Բայց փռանգացն կարճառօտ է քան զնոցայն, և կարի համեմատ մերումս. քանզի նոքա յետ աւետարանին երգեն զխոստովանութիւն հաւատոյն, ըստ որում և մերս է սովորութիւն: Այլ զի և 'ի փռանգ մի երէց 'ի ժամուն պատարագէ երկու պաշտօնէիւք՝ սարկաւագաւ և կիսասարկաւագաւ. և կացեալ 'ի խորհրդեանն՝ տարածեալ ունի զձեռսն: Իսկ Յոյնք բազմութի քահանայից 'ի միասին. եպիսկոպոսապետն եպիսկոպոսօքն որ նախապատիւն է կացեալ առաջի սեղանոյն, և այլքն առընթեր նմին աղօթեն զսուրբ խորհուրդն, հաւանեալ և ըստ այսմ մասին սրբոյն Դիոնեսիոսի. քանզի նա այսպէս հրամայէ՝ ասելով. «Քահանայապետն կացեալ առաջի աստուածայնոյն սեղանոյ, և շուրջ զնովաւ բազմութիւն քահանայիցն, և 'ի սարկաւագացն որք ճոխագոյնքն են»: Քանզի և զայս վայելուչ կարծեմ և ընդ անստերիւր պողոտայն շաւիղ. զի խորհուրդ հաղորդութեան անուանի, և պարտին հաղորդքն միաբան աղօթել, և հաւասարապէս առ միմեանս 'ի նոյն վայելել: Իսկ խորհուրդ պատարագին համահաւասար է ամենայն ազգաց, դիտաւորութիւն բանից աղօթիցն և զնոյն 'ի ծածուկ ասել. սրովբէական երգն, աղօթքն տէրունական չունելով և ոչ մի ինչ զանազանութիւն: Բայց միայն զի փռանգք այժմ զտէրունական աղօթսն պատարագիչ քահանայն երգէ միայն 'ի լուր ամենայն ժողովրդեան, և ոչ որպէս զայլ ազգս խնդրէ զնոյն աղօթել: Այսքան և այսպիսի չնչին զանազանութիւնս քրիստոնէից ոչ է առ 'ի Քրիստոս հաւատոցն համարեալ թերութի. նա և ոչ նիւթք

խորհրդածութեանն այլ և այլք, որք ունին 'ի փառս Քրիստոսի պատրուակեալ ընդ ինքեամբ այլ և այլ խորհուրդս։ Այսինքն զի փռանգք և հայաստանեայքս զհաց նուիրացն բաղարջ առնեմք վասն պարկեշտ և գեղեցիկ այնպէս լինելոյ առ 'ի պաշտօնէիցն գործեալ, և ունիմք խորհրդոյն օժանդակ՝ զի տէր մեր բաղարջ 'ի բաղարջակերացն օր առեալ օրհնեաց սրբեաց և մարմին իւր անուանեաց։ Իսկ խմորուն առնեն Հոռոմք, և զնոյն 'ի ժողովրդենէն վասն ընծայաբեր լինելոյ նոցա զհաց պատարագին փրկութեան իւրեանց աղագաւ. որպէս 'ի հնումն որ զանբանիցն զոհսն տային 'ի ձեռս քահանայիցն և նոքօք սրբէին. զի և զայս անմահ զենմանս փրկութեան նուէր փրկեալքն սիրով մատուցեն։ Այլ ունին ապացոյց զառաքելոյն սուրբս, որք ոչ փոյթ արարին որոշել 'ի միմեանց զտեսակ հացիցն որք Հոգւոյն սրբէին։ Գեղեցիկ է զանազան մտածութիւնն 'ի մի խորհուրդ փառացն Աստուծոյ. և ոչ ինչ վասն այսորիկ ունի Թերութիւն պատարագն 'ի կատարմանէ Հոգւոյն ըստ ախմարացն կարծեաց։

Դարձեալ զի և ջուր արկանեն 'ի նոյն տեղս երկու ազգքս խառն ընդ գինին՝ յայտարարութիւն առ 'ի կողից փրկչին կրկնավտակ աղբերացն. իսկ մեք ոչ արկանեմք՝ քննեալ թէ նա գինւով զխորհուրդն աւանդեաց, և 'ի բերոյ որթոյ այնուհետև ոչ ճաշակել ասաց. և չէ ինչ վասն այսորիկ հակառակութիւն, զի գինին 'ի ջրոյ ունի զնիւթ գոյացութեանն որպէս և բնախօսքն քննեցին։ Նա և ջուրն որ յետոյ արկաւ 'ի գինին, ոչ եթէ զիւրն ամբողջ պահեաց որակութիւն՝ այլ 'ի նորայն փոխեցաւ բնութիւն։ Աւելորդ է մերս սոցա աղագաւ առ իրեարս գայթակղութիւն, և մեծի օրինաց[1] սիրոյն ընդդիմադրութիւն։ Դարձեալ զի և մեք զհացն ջերմն խնդրեմք զպատարագին, և Հոռոմք զգինին, մտածելով մեր՝ թէ 'ի հնումն ջերմն հաց դնէին 'ի սեղանն առաջադրութեան. և նոցա՝ թէ կենդանութեան տեսակ է ջերմն ջրոյս խառնուած։ Յետին այս օրինադրութիւնք եկամուտք, և ոչ 'ի հարցն առ մեզ ժամանեալ. այլ մերս ծնեալ յառաւել հպարտութէ

1 Մի օրէն. Օրինակաց։

և նոցայն 'ի դամնդատ հեշտասիրութենէ՝ ոչ առաւելութիւն խորհրդոյս և ոչ նուազութիւն։ Ի՞ր վասն. զի հինն ջերմն առնէր իբր 'ի տիպ Հոգւոյն, չունելով զՀոգին մատակարար պաշտամանն։ Այլ մեր զկեանսն ունելով՝ պատկեր կենդանւոյ ջերմութեամբ առնել չէ հարկաւոր։ Իսկ թերութիւն սորին վասն բազում, զի քահանայիցն եղև հարկ առնել զնոյն, և թերութիւն լինի հարկաւոր աղօթիցն վրդովումն մտաց և աշխատութիւն մարմնոյ, յորմէ խոյս տալն իրաւացի է և ըղբարեձևութիւնն պատուել, զփառանգք ունելով ապացոյց. որք առնեն բաղարջ՝ և ոչ ամենայն աւուր. և պատկառ կալ և ջան ունել միայն մտաց մաքրութեան աղօթողացն, և զոր ինչ այնմ ներհակ՝ առանց խտրութեան յապաւել. զի յայս կոչեցաք հոգւով պաշտել զԱստուած Աստուծոյ, և ոչ մարմնական ինչ հպատակութեամբ. այլ մարմնոյքն հոգւոյն են օժանդակք, և ոչ հարկաւորին նորին կամացն լինել խափանիչք։ Ապա ուրեմն մի է ամենայն քրիստոնէից եկեղեցի, և մի յուսով գնան 'ի Ճանապարհն հանդերձեալ կենացն. և ոչ է պարտ մնոտի բարբանօք իւրաքանչիւրոցս անձանց պատուամատոյց լինել և ազգի ջատագով, և զեղբայրն անգոսնել, և զխիղճ մտաց նոցա գայթակղեցուցանելով 'ի Քրիստոս մեղանչել։ Այլ որպէս 'ի մի Աստուած Հայր է հաւատ մեր, և 'ի մի տէր Յիսուս Քրիստոս Որդին նորա, այսպէս լիցուք մի անձինք և մի նորա եկեղեցի՝ իւրաքանչիւր աւանդութեամբք որոշեալ, և յօդակապութեամբ սիրոյն ընդ միմեանս խառնեալ, և առ բարեձևութիւնս իրերաց խոնարհեալ և օգտեալ, լուծանելով զչարաչարն՝ որ հակառակ այսմ ներգործութէ սատանայի 'ի մէջ մեր. և զտեառն փառս որ 'ի խաղաղութենէ անդամոցս ուղղել՝ հրատարակեսցուք 'ի յերկինս և 'ի յերկրի։ Այս զի ընդ երկնաւորս արժանի գտաք խառնել և հաշտել, մի մեք 'ի միմեանց քայքայեսցուք՝ առաջի նոցա ծաղր թշնամեացն լինելով, և նոցին տրտմեցուցիչք. մի քննութեամբ աւանդութեանցս լուծցուք զայն՝ վասն որոյ սոքա եղան, այսինքն զսէրն Աստուծոյ առ մեզ, և մեր առ իրեարս։ Ո ի չիք այլ

1 Մի օրին. Եղծանելով ղարն։

դժուարին քան Աստուծոյ մարդ լինել. եթէ սէրն զայս արար նորաձեւութիւնս, և հաւատամք, չիք այլ ինչ որ ճաշակողացն որին ոչ է դիւրահաւան: Մի՛ ունիմք թըշնամի ընդ այն մարտիցուք, որ անմարմինն է մախացող. 'ի մարմնաւորացս յամենեցունց պահանջէ Աստուած միմեանց վշտակից լինել, և յիրերաց տկարութիւն սիրով խոնարհել և զմիմեանց բարեպաշտութիւնս յարգել: Այս ես վասն զի հաւատացի, յաղագս որոյ խօսեցայ, և սուտ ասեմ զայսորիկ հակառակ մտածութիւնս, սիրալիր մտօք կարևոր համարեցայ նուաստս յոգունց Ներսէս, զի ասել զանուն աստ իրաւացի է 'ի փառս խորհրդածութեան սրբոյ պատարագին. Եւ խորհրդածութիւն առ մեզ աւանդեալ 'ի սրբոյն Յոհաննու ոսկեբերանի սահմանադրութեանցն: Աղաչեմ ընդունել սիրով՝ և թէ այլ ոք քան զմերս այլ յետ մեր գեղեցկացուցանէ զնոյնս, և զնորայն 'ի փառս Քրիստոսի, և 'ի պարծանս եկեղեցւոյ. յորում օրհնի նա յաւիտեանս:

1 Ի պատարագամատոյցն Յովհաննու ոսկեբերանի կոչեցեալ առ Յոյնս՝ կան ինչ ինչ, որ չեն 'ի մերս յաւելեալ:



# ՕՐՀՆՈՒՔ ԸՐԿԸՆԵՆԼՈՑ

# ՍԿՐՍ ԵԿԵՂԵՑՒՈՅ[1]



Յորժամ կամեսցի քահանայն պատարագ մատուցանել, պարտ է այսպէս խորհրդաբար զգեստաւորել:

Հանդերձ սարկաւագօքն մտանէ յաւանդատունն ուր զգեստն է պատրաստագին. և զգեցեալ պաշտօնէիցն ըստ իւրաքանչիւր աստիճանի, ասեն այս սաղմոս, Յիշեա Տէր զԴաւիթ, տուն առ տուն ամենեքեան:

Քարոզէ սարկաւագն. Եւ ևս խաղաղութե զՏէր աղա:

Ժողովուրդն ասէ. Տէր ողորմեա:

Սարկաւագն. Խնդրեսցուք հաւատով և միաբանութբ 'ի տեառնէ, զի զողորմութեան զշնորհս իւր արասցէ 'ի վերայ մեր. ամենակալ Տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա:

Ժողով. Կեցո Տէր:

Երէ. Ողորմեաց մեզ Տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում. ասասցուք ամենեքեան միաբանութեամբ, Տէր ողորմեա:

Ժողով. Տէր ողորմեա, ժբ:

Քահանայն խոնարհի և ասէ զաղօթս զայս. Որ զգեցեալ ես զլոյս որպէս հանդերձ Տէր մեր Յիսուս Քրիստոս, անճառելի խոնարհութեամբ 'ի յերկրի երևեցար, և ընդ մարդկան շրջեցար. որ եղեր քահանայապետ ճշմարիտ ըստ կարգին Մելքիսեդեկի, և զարդարեցեր զեկեղեցի քո սուրբ. Տէր որ պարգևեցեր և

[1] Ի միոյ ևեթ օրինակէ:

մեզ զնոյն զերկնային հանդերձն զգենուլ․ արժանի արա և զիս 'ի ժամուս յայսմիկ զանպիտան զծառայս քո որ համարձակեալս և մերձեցեալ 'ի նոյն հոգևոր պաշտօն փառաց քոց, որպէս զի զամենայն անբարշտութիւնս մերկացայց, որ է հանդերձ պղծութեան, և զարդարեցայց լուսով քո։ Ունկեա յինէն զչարիս իմ, և թօթափեա զյանցանս իմ, որպէս զի արժանի եղէց հանդերձեալ լուսոյդ առ 'ի քէն․ շնորհեա ինձ քահանայական փառօք մտանել 'ի պաշտօն սրբութեանց քոց ընդ այնոսիկ ոյք անմեղութեամբ պահեցին զպատուիրանս քո․ զի և ես պատրաստ գտայց երկնաւոր առագաստիդ ընդ իմաստուն կուսանսն փառաւորել զքեզ Քրիստոս որ բարձեր զմեղս ամենեցուն։ Դու ես սրբութիւն անձանց մերոց և քեզ բարերարիդ Աստուծոյ վայելէ փառք իշխանութի և պատիւ, այժմ և միշտ և յաւիտեանս։

Այս մատուցեալ կիսասարկաւագքն զգեցուցանեն նմա զհանդերձն սաղմոսելով․ Դատ արա ինձ տէր, զի ես յանբծութեան։

Ապա 'ի զգենուլն զհանդերձն ասէ․ Զգեցո ինձ տէր ըզհանդերձ փրկութեան և պատմուճան ուրախութե, և շուրջ պատեա զգեստովս փրկութե․ շնորհօք ՏՆ մերոյ։

Ապա ածէ գօտի․ Շուրջ պատեսցէ կամար հաւատոյ զմէջս սրտի իմոյ և զմտաց, և շիջուսցէ 'ի սմանէ զխորհուրդս աղտեղիս, և զօրութիւն շնորհաց քոց յամենայն ժամ բնակեսցէ 'ի սմա․ շնորհօք տեառն մերոյ։

Ուրարն․ Զգեցո տէր պարանոցի իմոյ զարդարութիւն, և սրբեա զսիրտ իմ յամենայն աղտեղութենէ մեղաց․ շնորհօք տեառն մերոյ։

Բազպանն․ Տուր տէր զօրութիւն ձեռին իմոյ, և լուա զամենայն աղտեղութիւնս իմ, որպէս զի կարող լինիցիմ սպասաւորել քեզ անաղտեղութեամբ հոգւոյ և մարմնոյ․ շնորհօք տեառն մերոյ։

Շուրջառն․ Տէր ողորմութեամբ քո զգեցո ինձ զգեստ պայծառ, և պարսպեա ընդդէմ ներգործութեանց չարին․ զի արժանի եղէց փառաւորել զքո փառաւորեալ անունդ․ շնորհօք տեառն մերոյ։

Յորժամ զխոյրն դնէ եպիսկոպոսն․ Տէր, դիր սաղաւարտ փրկութեան 'ի գլուխ իմ պատերազմել ընդ զօրութի թշնամւոյն․ շնորհօք տեառն մերոյ։

Իսկ եթէ կամի զայս ասասցէ 'ի զգենուլն զհանդերձն . ածէ զօտի ընդ մէջն , և արկանէ ուրար զուսովքն ասելով . Քահանայք քո զգեցցին զարդարութիւն , և սուրբք քո ցնծալով ցնծասցեն ։

Դնէ զբազպանսն , և զգենու զփիլոնն ասելով . Ընծացէ անձն իմ 'ի տէր , զի զգեցոյց ինձ հանդերձ փրկութեան , և պատմուճան ուրախութեան . իբրև փեսայի եդ ինձ պսակ , և որպէս հարսն զարդու զարդարեաց զիս ։

Իսկ եթէ եպիսկոպոս լինի խորհրդածուն , առնու զսուրբ կոնքեան , ածեալ 'ի վերայ լանջացն և զպատուական եմիփորոնն , և գայ առընթեր ընծայարանի սեղանոյն՝ լուացեալ զձեռս , և մատուցեալ անկանի առաջի սեղանոյն 'ի վերայ երեսաց իւրոց լուռ և անմռունչ , և ասէ զաղօթս զայս առ սուրբ Հոգին տնօրէն գործոյն .

ԱՄԵՆԱԿԱԼ Աստուած բարերար մարդասէր , Ած բոլորից յօրինող երևութից և աներևութից , փրկող և հաստատող , խնամող խաղաղարար , Հօր հզօր Հոգի . հայցեմք բազկատարած մաղթանօք՝ գոչմամբ հեծութեան յանդիման եղեալք ահաւորիդ ։ Աղաչիմք մեծաւ դողութեամբ , սաստիկ երկեղիւ՝ մատուցանել նախ զբանականս զայս պատարագ քում անքննին տէրութեանդ , իբր աթոռակցի , փառակցի և արարչակցի հայրենի անկապուտ պատուոյդ , և քննողի ծածկութե՜ն խորոց խորհրդոց ամենակատար կամաց Հօր Միածնուելի , և կենդանատուի և արարչի ամենայնի ։ Ի ձեռն քո ծանուցաւ մեզ Երրեակ անձնաւորութիւն միասնական աստուածութեանդ յորոց մի և դու ճանաչիս անհաս . քև և 'ի ձեռն քո առաջինքն նահապետական տոհմին շառաւեղք տեսանողք անուանակոչեալք , զանցեալսն և զգալոցսն , զեղեալսն և զոչ գոյացեալսն աներևութաբար բանիւ վերապատմեցին ։ Հոգի Աստուծոյ քարոզեալ զքեզ Մովսէսի՝ որ 'ի գնալն քո 'ի վերայ ջրոցն անպարագիր զօրութիւն , ահեղ շրջարկութեամբ թևապարփակ տածողականաւ պաշտպանողօրէն գթասիրեալ 'ի ծնունդս նորոգս , զաւազանին խորհուրդ ծանուցեր՝ յոր կերպարան օրինակութեան նախ քան զկառուցանել զլոյծ մանուած վերջնում վարագուրիդ յօ-

ընծեցեր կարող տիրապէս զանվախճանակ բնութիւնս ա-
մենից բնաւից գոյից բոլորից ամենայն էից յանէից։ Եւ
ստեղծանելն 'ի նորոգութիւն յարութեան ամենայն ե-
ղեալքս առ 'ի քէն, յայնմ ժամանակի՝ որ օր վերջին
է այսմ կենցաղի, և օր առաջին երկրին կենդանեաց.
քեզ հնազանդեցաւ միութբ կամացն որպէս Հ՟օր իւ-
րում ազգակիցն քո՝ էակիցն Հ՟օր անդրանիկն Որդի մե-
րով կերպիւ, զքեզ աւետարանեաց Ճշմարիտ Աստուած
հաւասար և համագոյ Հ՟օրն իւր հզօրի. զառ 'ի քեզ
հայհոյութիւնն անքաւելի քարոզեաց, և իբր զաս-
տուածամարտից զ'ի քէն հեստելոցն չարաբանական
բերանսն կարկեաց, և զիւրն շնորհեաց արդարն և ան-
արատն՝ զտիչ ամենայնի, որ վասն մեղաց մերոց մատ-
նեցաւ, և յարեաւ վասն զմեզ արդարացուցանելոյ. նմա
փառք 'ի ձեռն քո, և քեզ բարեբանութիւն ընդ Հ՟օր
ամենակալի յաւիտենից յաւիտեանս, ամէն։

Դարձեալ կրկնեսցի 'ի նոյն կարգ բանի՝ մինչև 'ի
վերայ հայեցութիւն լուսոյն հրաշապէս ազդեալ յայտ-
նեսցի, աւետարանել վերստին զկրկին խաղաղութիւն։

Աղաչեմք և աղերսեմք արտասուալից հառաչմամբ
յամենայն անձնէ՝ զփառաւորելի արարչութիւնն անեղծ
և անստեղծ անժամանակ Հ՟ոգւոյդ գթածի, որ բարե-
խօսդ ես վասն մեր յանմռունչ հեծութիւնս առ ողոր-
մածդ Հ՟այր, որ զսուրբսն պահես, և զմեղուցեալսն քա-
ւես՝ մաքրես և տաճարս կազմես կենդանիս կեցուցիչ
կամաց բարձրելոյդ Հ՟օր։ Արդ ազատեա զմեզ յամե-
նայն անմաքուր գործոց՝ որ ոչ է հաճոյ քումդ բնա-
կութեան, և մի՛ շիջցին առ 'ի մէնջ լուսոյդ շնորհաց
փայլմունք 'ի տեսականացս աչաց իմաստից. վասն զի
զքեզ ուսաք միանալ 'ի մեզ 'ի ձեռն աղօթից, և ըն-
տիր վարուց խնկելոց։ Եւ քանզի մինդ յԵրրորդութէդ
պատարագի, և միւսդ ընդունի հաճեալ ընդ մեզ հաշտ-
արար արեամբ անդրանկի իւրոյ, իսկ դու ընկալցիս
զմեր պաղատանս, և յարդարեսցես զմեզ օթևանս պա-
տուականս ամենայն պատրաստութեամբ 'ի վայելումն
ճաշակման երկնաւոր գառինդ՝ առանց պատժոց դատա-
պարտութեան ընդունել զայս անմահացուցիչ մանա-
նայս կենաց նորոյ փրկութեան։ Եւ հալեսցի 'ի հրոյս
յայսմանէ գայթակղութիւնս մեր, որպէս մարգարէին

կենդանախառնոցն կայծականքն 'ի ձեռն ունելեացն մատուցմամբ, զի յայսմ ամենայնի քոյդ քարոզեսցի գըթութիւն՝ ըստ որում Որդւոյդ Աստուծոյ Հօրդ քաղցրութիւն, որ զանառակ որդին մերձեցոյց 'ի հայրենի ժառանգութիւնն, և զպոռնիկն յառաջեցոյց յերկնային արքայութիւնն արդարոցն երանութեան: Այո՛ այո՛, և ես մի եմ 'ի նոցանէ. և զիս ընկալ ընդ նոսին իբր մարդասիրութեան կարօտեալ մեծի, շնորհօք քո ապրեալ, զի յայսմ ամենայնի՝ յամենայնի ծանիցի մարդասիրութիւն քո ընդ Հօր փառաւորեալ համապատուաբար 'ի մի կամս, և 'ի մի իշխանութիւն գովութեանց. զի քո է գթութիւն և կարողութիւն, զօրութիւն և փառք յաւիտեանս յաւիտենից:

Ապա յարուցեալ գայ առնթեր ընծայարան սեղանոյն. առ որ մատուցեալ նախասարկաւագն զնշխարն որ է հաց, դնէ 'ի մաղզմայն ասելով. Յիշատակ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի:

Եւ առեալ զգինի արկանէ խաչանիշ 'ի բաժակն՝ որ է սկիհն, ասելով. Յաղագս յիշատակի տնօրէնութեան տեառն Աստուծոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի:

Եւ քահանայն ասէ զաղօթս զայս, սրբոյն Յովհաննու ոսկեբերանի. Աստուած Աստուած մեր, որ զերկնաւոր հացդ՝ զտէր մեր Յիսուս Քրիստոս զկերակուրդ ամենայն աշխարհի առաքեցեր փրկիչ և կեցուցիչ, բարերար և մարդասէր, օրհնել զմեզ, ինքնին դու օրհնեա և զառաջադրութիւնս զայս. յիշեա որպէս բարերար զմատուցողս և վասն որոյ մատուցանի, և զմեզ անդատապարտ պահեա 'ի քահանայագործութիւն աստուածային խորհրդոց քոց: Զի սուրբ և փառաւորեալ է ամենապատիւ մեծվայելչութիւն փառացդ Հօր և Որդւոյ և Հոգւոյդ սրբոյ այժմ և միշտ և յաւիտեանս:

Դպիրք. Ամէն:

Եւ ապա սարկաւագն ծածկէ ասելով. Տէր թագաւորեաց վայելչութիւն զգեցաւ:

Եւ տուեալ խունկ 'ի ձեռս քահանային, ինքն առընթեր կալով ունելով զբուրվառն. և նա առեալ մատուցանէ խնկելով և ասէ. Խունկ մատուցանեմ առա-

ջի քո Քրիստոս բուրումն հոգևորական ։ Ընկալ 'ի սուրբ և յերկնային և յիմանալի քո մատուցարանդ 'ի հոտ անուշից, և առաքեա առ մեզ փոխարէն զշնորհս և զպարգևս Հոգւոյդ սրբոյ ։ Եւ քեզ փառս մատուցանեմք ընդ Հօր և ընդ Հոգւոյդ սրբոյ․ այժմ և միշտ ։

Եւ դնէ խունկ, խաչակնքէ երիցս անգամ երկրպագեալ, և ապա արկանէ շուրջ զսեղանովն հպատակաբար ։ Եւ առընթեր գոլով նմին սարկաւագն խնկակալաւն, և կիսասարկաւագն առաջի մոմեղինօք, իջանէ քահանայն 'ի մէջ եկեղեցւոյն, և խնկէ ամենայն բազմութեան ժողովրդեանն ինքնին ։ Եւ վերստին դառնայ 'ի խորանն սուրբ․ դարձեալ արկանէ սեղանոյն, և տայ զբուրվառն 'ի սարկաւագն․ և նա ծխէ նմին, իսկ քահանայն երիցս երկրպագեալ համբուրէ զսեղանն ։ Եւ սարկաւագն հրամանն առեալ ելանէ 'ի մէջ եկեղեցւոյն՝ կանգնի ձեռնամած, և ձայնէ 'ի խորանն առ քահանայն․ Օրհնեա տէր ։

Քահանայն․ Օրհնեալ թագաւորութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւի ։

Ժողովուրդն․ Ամէն ։

Սարկաւագն քարոզէ ժողովրդեանն ասելով բարձր 'ի թիւ․ Եւ եւս խաղաղութեան զտէր աղաչեսցուք ։

Ժողով․ Տէր ողորմեա ։

Սարկաւագն․ Վասն 'ի վերուստ խաղաղութեան և փրկութեան անձանց մերոց զտէր աղա ։

Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի և հաստատութե սրբոյ եկեղեցւոյ և ամենայն օրհներգուացս զտէր աղա ։

Վասն սրբոյ տաճարիս, և որոց հաւատով ընկալեալ զերկեղ տեառն աղօթեն 'ի սմա զտէր աղաչեսցուք ։

Վասն հայրապետին մերոյ կենաց և փրկութե հոգւոյ զտէր աղա ։

Վասն պատուական քահանայից, և որոց 'ի Քրիստոս սարկաւագաց և ամենայն ժառանգաւորաց եկեղեցւոյ զտէր աղա ։

Վասն բարեպաշտ և աստուածապահ թագաւորին մերոյ, և ամենայն պաղատանն և ամենայն զինուորաց նորա զտէր աղա ։

Վասն լինելոյ նորա յաղթող, և խորտակելոյ զամենայն թշնամիս առ ոտս նորա զտէր աղա։

Վասն ամենայն քաղաքաց և գաւառաց, և որոց հաւատով բնակեալ են 'ի նոսա զտէր աղա։

Վասն պտղաբերութեան երկրի, և ժամանակաց զտէր աղա։

Վասն ճանապարհորդաց, նաւորդաց, վաստակաւորաց, և վասն փրկութեան գերեաց զտէր աղա։

Վասն փրկելոյ զմեզ 'ի վշտաց, և 'ի նեղութեանց զտէր աղա։

Ընկալ կեցո և պահեա զմեզ տէր քոյին շնորհիւդ։ Կեցո տէր։

Զամենասրբուհի աստուածածինն զամենօրհնեալ տիրուհին, և զմիշտ կոյսն Մարիամ, յիշեսջիք և զամենայն սուրբս և նոքօք զտէր աղա։ Յիշեա։

Եւ ևս առաւել վասն միմեանց և միաբան ճշմարիտ և սուրբ հաւատոյս զտէր աղա։

Զանձինս մեր։ Քեզ տեառն յանձն եղիցուք։ Ողորմեաց մեզ տէր Աստուած։

Եւ քահանայն խորհրդաբար ասէ զաղօթս։ Բայց պարտ է գիտել, զի զայս և զորս յետ այսորիկ աղօթանի՝ ոչ միայն մինչև յաւարտումն քարոզին. այլ մինչդեռ սարկաւագն ընդ ժողովուրդն խօսի բարձր, նա աղօթիւքս 'ի ծածուկ ընդ Աստուած, և յաւարտելն նորա զքարոզն, քահանայն զփառսն աւարտէ՝ բարձրաբարբառ 'ի լուր ժողովրդեանն. որպէս զի միաձայն ասասցեն զԱմէնն։ Այս է սահման բնաւիցդ։

Տէր Աստուած մեր, որոյ կարողութիւնդ անքննին է, և փառքդ անհասանելի. որոյ ողորմութիւնդ անչափ է, և գթութիւնդ անբաւ. դու ըստ առատ մարդասիրութեան քում նայեաց 'ի ժողովուրդս քո և 'ի տաճարս յայս սուրբ. և արա ընդ մեզ և ընդ աղօթակիցս մեր առատապէս զողորմութիւնս քո և զգթութիւն։ Բարձր. Զի քեզ վայելէ ամենայն փառք, պատիւ և իշխանութիւն յաւիտեանս յաւիտենից։

Ժողով. Ամէն։

Յետ այսորիկ ասեն զսաղմոսս զայս 'ի ձայն դաս դաս՝

ըստ ուխտից ձայնից Խոնարհեցոյեցն յեղանակաց.

Բարի է խոստովան լինել Տեառն, սաղմոս ասել անուան քում Բարձրեալ: Փառք քեզ Աստուած, 'ի բուն:

Ուղիղ է Տէր Աստուած մեր, և ոչ գոյ 'ի նմա անիրաւութիւն: Փառք քեզ Աստուած:

Փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ: Փառք քեզ Աստուած:

Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտ: Փառք:

Ու միաձայնեալ երկու դասն ընդ մի բերան ասեն զայս գկնի. Միածին Որդի և Բանդ Աստուած, և անմահ էութիւն, որ յանձն առեր մարմնանալ 'ի սուրբ Աստուածածնէն, և 'ի միշտ կուսէն: Անփոփոխելիդ մարդ եղեալ և խաչեցար, մինդ 'ի սրբոյ Երրորդութէն, փառակից ընդ Հօր և ընդ սրբոյ Հոգւոյդ կեցո զմեզ:

Սարկաւագն. Ու ևս խաղաղութե՟ զտէր աղաչ:

Ժողովուրդն. Ընկալ կեցո և ողորմեա, և պահեա զմեզ Տէր քոյին շնորհիւդ:

Զսրբուհի աստուածածինն զօրհնեալ տիրուհին և միշտ կոյսն Մարիամ: Ու ևս միաբան: Զանձինս: Ողորմ:

Քահանայն, մինչդեռ քարոզէ, ասէ խորհրդաբար.

Տէր Աստուած մեր, կեցո զժողովուրդս քո, և օրհնեա զժառանգութիւնս քո, զլրումն եկեղեցւոյ քո պահեա. սրբեա զսոսա որք ողջունեցին սիրով զվայելչութիւն տան քո: Դու զմեզ փառաւորեա աստուածային զօրութեամբ քով, և մի թողուր զյուսացեալսս 'ի քեզ:

Ի ձայն. Զի քո է կարողութիւն և զօրութիւն և փառք այժմ և միշտ:

Խաղաղութիւն:

Որ հասարակաց զայս, և միաձայն մեզ ամենեցուն ուսուցեր աղօթել, և զերկուց և զերից միաձայնելոց յանուն քո զխնդրուածս պարգևել խոստացար: Դու և այժմ զծառայից քոց զխնդրուածս առ 'ի յօգուտն կատարեա, շնորհելով մեզ յայսմ յաւիտենիս զգիտութիւն քում Ճշմարտութեան, և 'ի հանդերձեալն զկեանս յաւիտենականս պարգևելով. զի բարերար և մարդասէր ես Աստուած, և քեզ վայելէ փառք իշխան:

Դարձեալ սաղմոս ըստ խորհրդոյ աւուրն դաս և դաս շարականաւ ասեն.

Տէր թագաւորեաց: Օգնեա տէր: Շարական, Լուսով ա̃մծ: Բացան դր: Տօնէ այսօր Երուսաղէմ:

Սարկաւագն ձայնէ. Պռօսխումէ:

Եւ ասեն զերեքսրբեանն ժողովուրդքն:

Բայց պարտ է գիտել, թէ յորժամ հանդիսական տօն լինի, կամ եպիսկոպոս 'ի խորհրդեանն, այլով օրինակաւ է հրահանգութիւնս մինչև յայս վայր 'ի պատիւ աւուրն. այսինքն զի եպիսկոպոսին ոչ է անկ 'ի սկզբան ժամուցն մտանել 'ի խորանն, այլ այսպէս տնօրինեսցի. Աւագ երէցն և մի ոք 'ի սարկաւագացն կացեալ յեկեղեցին, և ասէ սարկաւագն որպէս վերոյ գրեալ է նմա սկսանել. Օրհնեալ թագաւորութիւն:

Եւ մինչ սարկաւագն քարոզէ, և ժողովուրդն ասեն զՏէր ողորմեայն, գայ եպիսկոպոսն զգեստաւորիլ պատուակից քահանայիւքն, համդերձ սարկաւագօքն և կիսասարկաւագօքն և այլ պաշտօնէիւքն՝ որք հպատակ են նմա ըստ իւրաքանչիւր գործոց. և չէ պարտ այլում յայլ աստիճանի գործ ձեռնամուխ լինել, որպէս ոչ փոքրն 'ի մեծին՝ այսպէս և ոչ մեծն 'ի փոքուն: Այլ տարցին առաջի նորա նախ կիսասարկաւագն զմոմեղէնսն լուցեալս, յետ նորա 'ի նոյն կարգէն զգաւազանսն խաչագլուխսն. և նախ սարկաւագքն ունիցին զաւետարանն և զբուրվառն, և յետոյ նոցա քահանայքն դաստարկ գան. և յետոյ քահանայիցն գայ եպիսկոպոսն՝ երկու սարկաւագ. ունելով պաշտօնեայս իւր, և մտեալ յեկեղեցին՝ յորում որք ենն յիւրեանց պաշտամանն անվրդով, սոքա եկեալ կանգնին առ դրունսն. որպէս և գային նախ մոմեղինաւորքն, ապա որք զգաւազանսն ունին, և ապա սարկաւագքն, և յետ նոցա քահանայքն ոչ բոլոր, այլ մի զմիոյն կնի յերկայնսն տող երկու դաս մինչև 'ի դուռն՝ մէջին փողոց, և դէմք իւրեանց 'ի միմեանս: Եւ եպիսկոպոսն կանգնի 'ի նախադրունսն հուպ առ սեամսն 'ի մէջ, և մնան անշարժ և անփոփոխ պաշտելով զառաջին սաղմոսն. Բարի է խոստովան լինել տեառն. որպէս և գրեալ է: Եւ ասէ եպիսկոպոսն և քահանայն զաղօթս նոցին. Տէր Աստուած մեր, կեցո զժողովուրդս քո:

Քարոզէ սարկաւագն՛ այն՝ որ յառաջն էր յեկեղեցին, և ոչ 'ի կարգս սոցա, այլ առ դուռն խորանին ըստ վերոյ գրելոցդ ։ Եւ սոքա ասեն զերկրորդ սաղմոսն, Տէր թագաւորեաց, խորհրդաւոր շարականաւն ։ Եւ քարոզէ զկնի այն սարկաւագն, և սոքա ասեն զաղօթսն. և աւագ երէցն 'ի խորանն՝ Որ հաստարակաց զայս, և միաձայն. զայն որ վերոյ փոխ է դրած առանձինն յայն օրն այս սաղմոսիս ասասցեն ։ Եւ յետ աւարտելոյն այսօր սաղմոս մի, այլ յաւելուն խորհրդապէս 'ի պատիւ աւուրն. և ասեն զայս ալէլուիաւ ըստ ութ ձայնիցդ Պարեցոյին եղանակի դաս և դաս ։ Եկայք ցնծասցուք 'ի տէր. ալէլուիա. Կանխեսցի ալէլուիա. մինչև յաւարտ փառք Հօր և Որդ. ալէլուիա. այժմ և միշտ. ալէլուիա ։

Եւ երբ զայս սաղմոսս սկսանին, թողու եպիսկոպոսն զիւր տեղն որ առ սեամն, և գայ ընդ մէջ երկուց դասուցն հեզութեամբ, և ընդ իւր երկու սարկաւագքն. և սոքա որպէս կային՝ մնան անվրդով, և չփոփոխին ըղհետ նորա, այլ մնան մինչև նա գայ 'ի ծայր դասուցն 'ի մէջ տաճարին, և ապա շարժին քահանայքն յետուստ կուսէ՝ նախապատիւքն նախ, և այլն զկնի ։ Եւ գան ըղհետ եպիսկոպոսին երկու երկու հաւասարք միմեանց, և երկուք յետ նոցա, և ապա սարկաւագն, և ապա կիսարկաւագն. որպէս զի լիցի այնմ որ բուն յառաջն էր կանգնեալ դէպ խորանին՝ բուն յետոյ շարժել 'ի գնալ. որպէս եպիսկոպոսն որ բուն յետոյ էր՝ բուն յառաջն եկն, և գնան և կանգնին առ դուրս խորանին՝ ըստ պատուոյ զկնի եպիսկոպոսին, նախ քահանայքն, և ապա այլքն որպէս ասացաւ ։ Զի լիցի այնմ որ յեկեղեցին յառաջ մտաւ 'ի խորանն բուն յետոյ մտեալ և եպիսկոպոսն անդ յետոյ, աստ յառաջամտէ. բայց նախ քան զմտանելն մինչդեռ ամենայն եկեղեցին պաշտէ զսաղմոսն, խոնարհի և աղօթէ 'ի ծածուկ. Նոյնպէս և քահանայք ընդ նմա զաղօթս զայս.

Տէր Աստուած որ կարգեցեր յերկինս դասս, և զինուորութիւնս հրեշտակաց և հրեշտակապետաց 'ի սպասաւորութիւն փառաց քոց, արա և այժմ ընդ մուտս մեր մտանել սրբոց հրեշտակաց, և լինել պաշտօնակից մեզ և փառաբանակից քում բարերարութեանդ, զի քո է կարողութիւն և զօրութիւն և փառք յաւիտեանս, ամէն ։

Եւ որք առընթեր են ասեն զԱմէն ։

Իսկ բովանդակ եկեղեցին զիւրեանց ասեն անմիջոց զսաղմոսդ, և նոքա զաղօթս յայնժամ աւարտեն՝ եթէ Ձեռք նր ստեղծին զմեզ ։ Իսկ 'ի փոխելն զմի ոտն մտէ եպիսկոպոսն նախ առաջին 'ի խորանն, և ապա այլ քահանայքն․ սաղմոս, Եկայք երկիր պագցուք նմա և լաց ։ ՙԱյս իրքն է տէր Աստուած մեր․ Ի բուն զսաղմոս շարականաւ․ Այսօր աստուածութիւնն զուարճանայ նոր․ Այսօր և մեք ցնծու․ Խնդայ և զուարճ ։

Մինչդեռ եկեղեցին զսաղմոսն պաշտէ՝ մտեալ եպիսկոպոսն 'ի խորանն, և ընդ նմա քահանայն և սարկաւագն զկնի, և կիսարկաւագն որպէս վերոյ գրեցաւ երկու երկու՝ որք եկին ընդ նմա յեկեղեցիս և այլ աւելի ոչ, երկրպագեն սեղանոյն, և կանգնին ։ Եւ մատուցեալ սարկաւագն խունկ յեպիսկոպոսն, առնու և ասէ զաղօթս խնկոցն․ և եդեալ զխունկն՝ առնու զբուրվառն և ինքնին խնկարկէ շուրջ զսրբով սեղանովն ։ Առաջի նր ունելով կիսասարկաւագն զմոմեղէնն, և սարկաւագն զկնի խնկանոցն, իսկ ապա նա գայ 'ի դասս քահանայից և ծխէ նոցա․ ապա ինքն միայն յեկեղեցին, և որք ընդ նմա մոմեղէնն և խունկն, և ծխէ ամենայն լրման եկեղեցոյն՝ մինչև ց յետին ժողովրդոցն, որպէս հրամայէ սուրբն Դիոնեսիոս ։ Իսկ պաշտօնեայքն արտաքոյ խորանին պաշտեն զխորհրդական շարականսն եկեղեցոյն, յերկարեալ մինչև նա աւարտէ զխնկարկութիւնն, և դառնայ վերստին 'ի խորանն, և ծխէ սրբոյ սեղանոյն ։

Եւ ապա սարկաւագն որ ունի զգործ քարոզութեն 'ի մէջ եկեղեցւոյն, ասէ Պռոսխումէ, և բարձրացուցանէ զաւետարանն ընդ բանին ։

ԺՈՂՈՎՈՒՐԴՆ․ Սուրբ Աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ․ երիցս ասէ ։ Եւ անդէն առ նմին խոնարհի քահանայն և ասէ զաղօթս․

Աստուած սուրբ որ 'ի սուրբս բնակեալ ես, և երեքսրբեան ձայնիւ սերովբէք գովեն զքեզ, և քերովբէք փառաբանեն, և ամենայն երկնային զօրութիւնք քեզ երկիր պագանեն ։ Որ 'ի չգոյէ 'ի գոյ ածեր զամենայն արարածս, որ արարեր զմարդն ըստ պատկերի

1 Յօրինակին Ձհոսբն ։

քում և նմանութեան, և ամենայն շնորհիւ քո զարդարեցեր զնա, և ուսուցեր խնդրել զիմաստութիւն և զգօնութիւն. և ոչ անտես արարեր զմեղուցեալն, այլ եդեր 'ի վերայ նորա ապաշխարութիւն քաւութեան[1]: Դու արժանի արարեր զմեզ զնուաստացեալ և զանարժան ծառայս քո և 'ի յայսմ ժամու կալ առաջի փառաց սըրբութեան սեղանոյ քո, և զօրհնաւոր երկրպագութիւն և զփառաբանութիւն մատուցանել քեզ: Դու տէր ընկալ 'ի բերանոյ մեղաւորացս և զերեքսրբեան օրհնութիւնս, և պահեա զմեզ քոյին քաղցրութեամբ. թող զամենայն յանցանս զկամայ և զակամայ. սրբեա զհոգիս և զմարմինս մեր, և շնորհեա 'ի սրբութեան պաշտել զքեզ զամենայն աւուրս կենաց մերոց բարեխօսութե՟ սուրբ աստուածածնիդ և ամենայն սրբոց որք յաւիտենից քեզ բարեհաճոյացան. զի սուրբ ես Աստուած մեր, և քեզ փառք:

Եւ կատարի աղօթքս և երեքսրբեանն միանգամայն:

Սարկաւագն. Ասասցուք ամենեքեան միաբանութե՟, տէր ողորմեա:

Ժողովուրդն. Տէր ողորմեա:

Յամենայն անձնէ և յամենայն մտաց զտէր աղա:

Ամենակալ Աստուած հարցն մերոց, զքեզ աղա:

Լուր մեզ և ողորմեա:

Վասն սրբոյ տաճարիս և հաւատացելոց՝ որք են 'ի սմա երկեղիւ տեառն զտէր աղա:

Վասն փրկելոյ զմեզ յամենայն վշտաց և 'ի նեղութենէ զտէր աղա:

Վասն բարեպաշտ թագաւորաց յաղթութեան և զօրութեան, հանապազորդ խաղաղութեան և առողջութեան, և որպէս զի տէր Աստուած մեր առաւել գործակից լինի նոցա զտէր աղա:

Ընկալ: Զսրբուհի աստուածածին: Եւ ևս մի: Զանձինս մեր: Ողորմեա:

Եւ վասն եղբարցս մերոց, և համօրէն ամենայն ժողովրդեանս՝ որք եկին յամենապայծառ 'ի տօնս տեառն մտադիւրութեամբ աղօթել զտէր աղա:

1 Ի լուսանցսն փրկութեան:

·Քահանայն բազկատարած ասէ զաղօթս. Տէր Աստուած մեր, զբազկատարած զաղաչանս ծառայից քոց վերընկալցիս և ողորմեսցիս ըստ մեծի ողորմութեան քում. զգթութիւն քո առաքեա 'ի վերայ մեր, և ամենայն ժողովրդեանս՝ որք ակն ունին առ 'ի քէն ողորմութեանդ. զի ողորմած և մարդասէր ես, և քեզ փառք :

Յետ այսորիկ երիցս երկրպագեալ համբուրեն զսեղանն. և ասէ սարկաւագն ցքահանայն. Յաստիճանն եկեսցուք : Եւ ասէ սարկաւագն. Օրհնեա զաստիճանս զայս. և օրհնեալ բազմի, և տայ 'ի ձեռս նորա զաւետարանն : Յետոյ խոնարհեալ առ ոտս նորա առնուն հրաման, և ընդունի յինքն զնոյն 'ի ձեռանէ քահանայէն. ապա յետ ասելոյն ընթերցողին զառաքեալն և զալէլուսն, գայ հանդերձ աւետարանաւն առ դուրս խորանին, կամ յամպոնն, և պաշտկամբ կիսասարկաւագի ընթեռնու սարկաւագն զաւետարանն :

Ապա թէ ըստ որում վերոյ գրեցաք, եպսն ձեռնադրութի հանդերձեալ է առնել սարկաւագի, կամ քահանայի, կամ թէ արքեպիսկոպոսն եպիսկոպոսի, ՟մ հաստատութ՟ք պարտ է գիտել թէ այս է ժամանակն : Զի թէ կիսասարկաւագի է՝ իւր զգեստովն և ուրարովն է ընդ նոսա, և թէ սարկաւագ՝ և քահանայ կամի լինել, իւրովն, և թէ քահանայ՝ և եպիսկոպոս կամի լինել, իւրով նափորտամբն է : Յետ ասելոյ եպիսկոպոսին զբազկատարած զաղօթսդ՝ ոչ նստի : Այլ սակայն որ զքարոզութիւն ունի յաւելու վերստին ասելով զքարոզ ձեռնադրութեանն կարգի. և որ 'ի խորանն են սարկաւագքն առնուն զնուիրեալն 'ի դասակարգութե՟ն, և բերեալ արկանեն առաջի սրբոյ սեղանոյն, և 'ի ներքոյ ձեռին եպիսկոպոսին : Եւ թէ սարկաւագ է 'ի լինելն՝ 'ի վերայ ահեակ ծնկին, և թէ քահանայ՝ յերկուսն. իսկ եթէ եպիսկոպոս՝ զաւետարանն դնեն 'ի վերայ պարանոցին, և կատարէ 'ի վերայ նորա եպիսկոպոսն զաղօթս ձեռնադրութեան իւր փոխովն :

Յետ այնորիկ վերաձայնէ սարկաւագն առ ժողովուրդըն. Աստուածային և երկնաւոր շնորհն 'ի ձեռն առ-

նու զայս անուն յայս ինչ. և վկայեալ յամենեցունց, յաւելու եպիսկոպոսն զօրս ըստ նմին աղօթք խորհըր-դաւոր : Եւ եթէ ձեռնադրեալն եպիսկոպոս է, այլ ե-պիսկոպոսունքն զձեռս 'ի վերայ դնիցեն և ձեռնադրողն 'ի գլխոյն :

Յետ կատարելոյն զայս աղօթս փոխումն, թէ սար-կաւագ օծաւ, առնու եպիսկոպոսն զուրարն և ինքն դնէ 'ի վերայ ահեակ ուսին. ապա թէ քահանայ՝ ինքն ե-պիսկոպոսն փոխէ զուրարն 'ի վերայ երկուց ուսոցն, և զգեցուցանէ զնափորտն. իսկ եթէ եպիսկոպոս՝ ար-քեպիսկոպոսն ինքնին արկանէ զպատուական եմիփո-րոնն զլանջօվքն : Եւ անհնարին է և զաղփաղփումն և անկար զերկուս աշտիճանսն 'ի միում աւուր տալ. թող-ցի ապա անիրաւութիւնն առ անօրէնսն : Եւ երթեալ նստի արքեպիսկոպոսն յաթոռն քահանայք ընդ նմա. իսկ ձեռնադրեալն մնայ առաջի սրբոյ սեղանոյն 'ի ծունկս, թէ սարկաւագ է կամ քահանայ՝ մինչև կրկնեսցի 'ի վերայ նորա աղօթքն : Ապա եթէ եպիսկոպոսն՝ ոչ, այլ ընդ համապատիւսն նստցի. և յետ աւետարանին գայ առաջի սրբոյ սեղանոյն, և կատարեն զնոյն որպէս ցու-ցանեմք :

Բայց այժմ նստեալ նոցա՝ գայ առ սաղմոսերգուն 'ի մէջ եկեղեցւոյն, և ինքն միայն առանց օգնականի ա-սէ. Սաղմոս ասացէք թագաւորին մերոյ, սաղմոս ասա-ցէք :

Եւ առնու 'ի նմանէ ամենայն եկեղեցին և ասեն. Սաղմոս ասացէք Աստուծոյ մեր :

Ինքն դարձեալ միայն երկրորդէ. Ծափս հարէք ամե : Եւ զայս ասացեալ երկրպագէ յայսկոյս և յայնկոյս և գնայ : Կամ ընթեռնու զառաքեալն ըստ խորհրդեան աւուրն, կամ թէ կամի զձեռնադրութեան ընթեր-ցուածքն՝ թէ օրն այնր խորհրդոյ է.

Պօղոսի առաքելոյն 'ի Կորնթացւոց թղթոյն է ընթերցուածս :

Եղբարք, գովեմ զձեզ, զի զամենայն ինչ զիմ յիշե-ցէք, և որպէս աւանդեցի ձեզ՝ զաւանդութիւնսն ու-նիք. կամիմ զի գիտիցէք դուք եթէ առն ամենայնի գլուխ Քրիստոս է, և գլուխ կնոջ այր, և գլուխ Քրիս-տոսի Աստուած : Ամենայն այր յորժամ յաղօթս կայ-

ցէ, կամ մարգարէանայցէ, և զգլուխն ծածկեալ ունի-ցի՝ յամօթ առնէ զգլուխ իւր. և ամենայն կին յորժամ յաղօթս կայցէ, կամ մարգարէանայցէ բացաւ գլխով յամօթ առնիցէ զգլուխ իւր, զի այնպէս համարէ՝ եթէ գերծեալ իցէ։ Զի թէ ոչ քօղեսցի կինն՝ փոքրեսցէ զհերս իւր. ապա թէ անպատեհ է կնոջ փոքրել կամ գերծուլ, քօղեսցի։ Այր մարդոյ չէ պարտ ծածկել զգլուխ իւր, զի պատկեր և փառք Աստուծոյ է. իսկ կինն փառք առնն է։ Զի ոչ եթէ այր 'ի կնոջէ, այլ կին յառնէ. քանզի ոչ իսկ հաստատեցաւ այր վասն կնոջ, այլ կին վասն առն. վասն այսորիկ կինն պարտի շուք ունել գլխոյն վասն հրեշտակաց, բայց ոչ կինն առանց առնն, և ոչ այր առանց կնոջ, բայց ամենայն յԱստուծոյ։ Այլ դուք ձեզէն տուք զիրաւ. արժա՞ն է կնոջ մարդոյ հոլանի յաղօթս կալ առաջի Աստուծոյ. և ոչ բնութիւնն իսկ ուսուցանէ ձեզ, զի այր եթէ զիսաւոր է անարգանք են նմա, բայց կին եթէ զիսաւոր է՝ փառք են նմա. զի գէսք փոխանակ զգեստու տուեալ են նմա։ Ապա եթէ ոք կամեսցի հակառակող լինել, մեք չունիմք այնպիսի սովորութիւն, և ոչ եկեղեցիքն Աստուծոյ։

Յետ ընթերցուածոյս երկրպագէ։ Եւ դարձեալ սաղմոսերգոյն գայ, և սկսանի միայն ինքն՝ թէ փոքր է կամ մեծ առանց օգնականի. Ալէլուիա։

Առնու ամենայն եկեղեցին զնոյն, և երկրորդեն, Ալէլուիա. յաւելուն դարձեալ զայս միայն. Յարեաւ Աստուած և ցրուեցան։ Եւ 'ի կատարումն երգոյս երկրպագէ յայսկոյս և յայնկոյս, ազդելով թէ աւարտեցի։

Եւ նոքա ամենեքեան երկրորդեն զնոյն զնախասացեալն, Ալէլուիա, ալէլուիա։

Նոյն երգողն առնու դարձեալ բարձրագոյն, Ալէլուիա. և սարկաւագն ունելով առաջի զմոմեղէնսն յալէլուս յետին՝ գայ առ դուռն խորանին աւետարանաւն, և 'ի կատարմանն ձայնէ՝ ոչ եղանակաւ, այլ միայն ինքն բարձրաբարբառ. Օրթի։

Քահանայն. 'Ի խորանէն դառնայ առ ժողովուրդն և խաչ հանէ ասելով. Խաղաղութիւն ընդ ամենեսին։

Ժողովուրդն. Եւ հոգւոյդ քում։

Սարկաւագն. Երկիւղածութեամբ լուարուք։

Քահանայն. Սրբոյ աւետարանիս:

Սարկաւագն ձայն. Պրոսխումէ:

Ժողովուրդն. Պրոսէօթէօս:

Սարկաւագն ընթեռնու. Տէր մեր Յիսուս ասէ.

Մի՛ համարիք եթէ եկի լուծանել զօրէնս: — ԺԶ. նա մեծ կոչեսցի յարքայութեան երկնից:

Ժողովուրդն. Փառք քեզ տէր Աստուած մեր:

Եւ անդէն առ նմին սկսանին զՀաւատամսն: Եւ սարկաւագն տանի յետ ընթերցմանցն զաւետարանն 'ի քահանայն համբուրել. և մինչ ժողովուրդն երգեն զՀաւատամսն, մեկնէ զխորհրդականն, ընդունի 'ի վերայ ստեղանոյն զգուշութեամբ, և եպիսկոպոսն կամ արքեպիսկոպոսն եպիսկոպոսակցօք. սարկաւագն հանէ զեմիփորոնն, զի մինչև ցայժմ 'ի տեղին յորում նստեալ էին՝ էին կանգնեալ, և ոչ առաջի ստեղանոյն: Ապա յետ հանելոյն զնոյն առնու սարկաւագն յահեկ թագկին վերայ ձգէ՝ որպէս եհան առանց ծալելոյ, և նա զայս առաջի սրբոյ ստեղանոյն միայն նամփորտամբն. և թէ ոք ձեռնադրի՝ անդ է առաջի ստեղանոյն 'ի ծունկս, և մնասցէ ևս:

Հաւատամք 'ի մի Աստուած Հայր ամենակալ, արարողն երկնի և երկրի՝ երևելեաց և աներևութից. և 'ի մի տէր Յիսուս Քրիստոս յՈրդին Աստուծոյ ծնեալն յԱստուծոյ Հօրէ միածին, այսինքն յէութենէ Հօր: Աստուած յԱստուծոյ, լոյս 'ի լուսոյ, Աստուած ճշմարիտ յԱստուծոյ ճշմարտէ ծնունդ և ոչ արարած. նոյն ինքն 'ի բնութենէ Հօր, որով ամենայն ինչ եղև յերկինս և 'ի վերայ երկրի, երևելիք և աներևոյթք. որ յաղագս մեր մարդկան, և վասն մերոյ փրկութեան իջեալ յերկնից՝ մարմնացաւ, մարդացաւ, ծնաւ կատարելապէս 'ի Մարիամայ սրբոյ կուսէն Հոգւով սրբով. որով էառ մարմին՝ հոգի և միտք, և զամենայն որ ինչ է 'ի մարդ ճշմարտապէս և ոչ կարծիս ունելով: Չարչարեալ, խաչեալ, թաղեալ, ելեալ յերկինս նստաւ ընդ աջմէ Հօր: Գալոց է նովին մարմնով և փառօք Հօր դատել զկենդանիս և զմեռեալս, որոյ թագաւորութեան ոչ գոյ վախճան: Հաւատամք և 'ի սուրբ Հոգին, յանեղն

և 'ի կատարեալ որ խօսեցաւ յօրէնս և 'ի մարգարէս և յաւետարանս. որ էջն 'ի Յորդանան, քարոզեաց յառաքեալսն, և բնակեցաւ 'ի սուրբսն: Հաւատամք յայս միայն ընդհանրական և առաքելական եկեղեցի: Հաւատամք և 'ի մի մկրտութիւն, յապաշխարութիւն, 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց, 'ի յարութիւն մեռելոց, 'ի դատաստանն յաւիտենից, յարքայութն երկնից, և 'ի կեանսն յաւիտենականս. ամէն:

Մինչ ասի այս վերոյ գրեալքս և կատարեսցին, թէ մի քահանայ է՝ կանգնի առաջի սեղանոյն. ապա թէ եպիսկոպոս քահանայիւք, եպիսկոպոսն կայ առաջի սեղանոյն, և քահանայք դաս դաս ըստ պատուոյ յետոյ նմին, 'ի մի եզրէ խորանին մինչև ցմիւսն:

Սարկաւագն քարոզէ առ դուռն խորանին. Եւ ևս խաղաղութեան զտէր աղա:

Ժողովուրդն. Տէր ողորմեա:

Եւ ևս հաւատով աղաչեսցուք և խնդրեսցուք 'ի տեառնէ Աստուծոյ 'ի փրկչէն մերմէ Յիսուսէ Քրիստոսէ 'ի ժամուս պաշտամանս և աղօթից. զի արժանի ընդունելութեան արասցէ, լուիցէ ձայնի աղաչանաց մերոց. ընկալցի զխնդրուածս սրտից մերոց, թողցէ զյանցանս մեր, ողորմեսցի 'ի վերայ մեր. աղօթք մեր և խնդրուածք մտցեն առաջի մեծի տէրութեան նորա: Եւ նա տացէ մեզ միաբան միով հաւատով և արդարութեամբ վաստակել 'ի գործս բարեաց. զի զողորմութեան զշնորհսն արասցէ 'ի վերայ մեր. տէր ամենակալ կեցո և ողորմեա:

Ժողովուրդն. Կեցո տէր:

Սարկաւագն. Զժամս պատարագիս, և զառաջիկայ օրս խաղաղութեամբ անցուցանել հաւատով 'ի տեառնէ խնդրեսցուք:

Ժողովուրդն. Շնորհեա տէր:

Սարկաւագն. Զհրեշտակ խաղաղութեան պահապան անձանց մերոց հաւատով 'ի տեառնէ խնդրեսցուք:

Զքաւութիւն և զթողութիւն մեղաց մերոց հաւա:

Զսրբոյ խաչին մեծ զօրութիւն 'ի պահպանութիւն անձանց մերոց, քրիստոնէութեամբ կատարել ըզ-

կեանս մեր անամօթ և բարի պատասխանատուութի՟ւն առաջի ահաւոր բեմին ՚ի Քրիստոսէ խնդրեսցուք ։ Եւ ևս մի ։ Զամենայն ։ Ողորմ ։

Քահանայն ասէ զաղօթս մինչդեռ նա քարոզէ . որ ՚ի կատարումն քարոզին փառս տայ, և ապա երկրպագէ ժողովուրդն յետ խաղաղութեան . և քահանայն խոնարհի և զփոխ ասէ . Տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս, որ մեծ ես ողորմութեամբ, և առատ պարգևօք բարերարութեան . որ դու քոյին կամաւ համբերեցեր ՚ի ժամուս յայսմիկ չարչարանաց խաչի և մահու յաղագս մեղաց մերոց, և պարգևեցեր առատապէս զպարգևս և զշնորհս Հոգւոյդ սրբոյ երանելի առաքելոցն ։ Հաղորդս արա զմեզ տէր աստուածային պարգևացս այսոցիկ, թողութեան մեղաց, ընդունելութե՟ Հոգւոյդ սրբոյ . զի արժանի լիցուք փառաւորել զքեզ ընդ Հօր և Հոգւոյդ սրբոյ . այժմ և միշտ ։

Ժողովուրդն . Ամէն ։

Քահանայն . Խաղաղութիւն ամենեցուն ։

Ժողովուրդն . Եւ հոգւոյդ քում ։

Սարկաւագն ասէ . Աստուծոյ երկրպագեսցուք ։

Ժողովուրդն . Առաջի քո տ՟ր . և խոնարհին ամենեքեան ։

Խոնարհի քահանայն և ասէ . Խաղաղութեամբ քո Քրիստոս փրկիչ մեր՝ որ ՚ի վեր է քան զամենայն միտս և զբանս, ամրացո զմեզ և աներկեղ պահեա յամենայն չարէ ։ Հաւասարեցո զմեզ ընդ ճշմարիտ երկրպագուս քո՝ որք հոգւով և ճշմարտութեամբ քեզ երկիր պագանեն . վասն զի ամենասուրբ Երրորդութեանդ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ . այժմ և միշտ ։

Ժողովուրդն . Ամէն ։

Քահանայն . Օրհնեալ տէր մեր Յիսուս Քրիստոս ։

Ժողովուրդն . Ամէն ։

Քահանայն դառնայ առ ժողովուրդն, և հրաման տայ երախայիցն ելանել ասելով . Տէր Աստուած օրհնեսցէ զամենեսեան ։

Սարկաւագն ձայնէ բարձր բարբառով . Որ երախայքդ էք երթայք ։ Մի ոք յերախայից, մի ոք ՚ի թերահաւատից, և մի ոք յապաշխարողաց և յանմաքրից մերձեսցի յաստուածային խորհուրդս ։

Ժողովուրդ հաստատեցելոյ. Մարմին տէրունական և արիւն փրկական կայ առաջի. Երկնային զօրութիւնքն յաներևոյթս երգեն և ասեն անհանգիստ բարբառով. սուրբ սուրբ սուրբ տէր զօրութեանց։

Իսկ սարկաւագն. Սաղմոս ասացէք տեառն Աստուծոյ մերոյ դպիրք ձայնիւ քաղցրութեամբ զերգս հոգևորս։

Դպիրքն միաձայնեալ երգեն զՈրք զքերովբէից։ Իսկ սարկաւագունքն գնան 'ի սարկաւագատունն, բերեն ըզսուրբ նուէրսն՝ մոմեղինօք և խնկովք. իսկ քահանայն խոնարհի և ասէ զաղօթսն որ զկնի այսր է գրած, որպէս զի աղօթքն և Որք զքերովբէիցն 'ի միասին աւարտեսցի։

Որք զքերովբէիցն խորհրդաբար կերպարանիմք զխորհուրդս, և կենդանարար Երրորդութեանն զերեքսրբեան օրհնութիւնս մատուցանեմք, զամենայն կենցաղականս 'ի բաց դնելով զգործ, որպէս զի զթագաւորն ամենեցուն ընդունիցիմք, և հրեշտակացն հանդիսապէս ընծայեալ բերեմք զկարգ. ալէլուիա։

Մինչ նոքա զայս երգեն, սարկաւագքն զնուէրսն զգուշութեամբ վերաբերեն 'ի սեղանն. և քահանայն կայ 'ի խոնարհ և աղօթէ 'ի ծածուկ այսպէս.

Ոչ ոք արժանի է յըմբռնելոցս մարմնաւոր ախտիւք ցանկութեան մտանել 'ի սեղան քո, կամ սպասաւորել արքունական փառաց քոց. զի պաշտել զքեզ մեծ և ահաւոր զօրութեանց իսկ է. սակայն վասն անչափ բարերարութեանդ քո անպարագրելի բանդ Հօր եղեր մարդ, և քահանայապետ մեր երևեցար. և իբրև տէր ամենեցուն այսմ սպասաւորութեան և անարիւն զենման զքահանայութիւն աւանդեցեր մեզ։ Վասն զի դու ես տէր Աստուած մեր որ տիրես երկնաւորաց և երկրաւորաց, որ 'ի վերայ քերովբէական աթոռոյ բազմիս, սերովբէից տէր, և թագաւոր Իսրայէլի։ Որ միայն սուրբ ես և 'ի սուրբս հանգուցեալ, աղաչեմք զքեզ միայն բարերար և հեշտալուր, նայեա յիս 'ի մեղուցեալ և յանպիտան ծառայս քո, և սրբեա զհոգի և զմարմին իմ յամենայն պղծութենէ չարին, և բաւականացո զիս զօրութեամբ սրբոյ Հոգւոյդ՝ որ զգեցեալ եմ զքահանայական շնորհ կալ առաջի սրբոյ սեղանոյս և քահանայագործել զքո ան-

արատ մարմինդ և զպատուական արիւնդ ։ Քեզ խոնար-հեցուցեալ զպարանոցս իմ և մաղթեմ, մի մերժեր զիս, և մի դարձուցաներ զերեսս քո յինէն, այլ արժանի ա-րա մատուցանել քեզ զընծայս զայս 'ի մեղուցեալ և յանարժան ծառայէս քումմէ. վասն զի դու ես որ մա-տուցանես և մատչիս և ընդունիս և տաս Քրիստոս Աս-տուած մեր, և քեզ փառք վերառաքեմք հանդերձ ան-սկիզբն քո Հարբդ, և ամենասուրբ Հոգւովդ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

Եւ կատարի խորհրդաւոր աղօթքս, և սրովբէական երգն միանգամայն. ապա սարկաւագն առ դուրս խորա-նին քարոզէ, և կիսասարկաւագն ջուր բերեալ քահա-նային լուանալ զձեռս առաջի սրբոյ սեղանոյն. և սար-կաւագն, Եւ ևս խաղաղութեան զտէր աղաչեսցուք ։

Ժողովուրդն. Տէր ողորմեա ։

Եւ ևս հաւատով և սրբութեամբ կացցուք առաջի սրբոյ սեղանոյս Աստուծոյ, և ահիւ. մի խղճիւ և գայ-թակղութեամբ, մի նենգութեամբ, խորամանկութ̃բ, մի երկմտութեամբ և թերահաւատութեամբ, մի պատ-րանօք և խաբէութեամբ ։ Այլ ուղիղ վարուք, պարզ մտօք, միամիտ սրտիւ, կատարեալ հաւատով, լցեալ սիրով, առաւելեալ և լի ամենայն գործով բարութե̃. կացցուք յաղօթս առաջի սրբոյ սեղանոյս, և գտցուք զողորմութիւն յաւուր յայտնութեան, և 'ի միւսան-գամ գալստեան տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի ։ Ամենակալ տէր Աստուած մեր կեցո ։

Եւ 'ի հանդիսի օր զայս քարոզն որ վերոյ գրեալ է ։

Քահանայն տարածեալ զձեռսն, և 'ի ծածուկ ա-սէ զաղօթս զայս.

Աղօթք Աթանասէ ։

Տէր Աստուած զօրութեանց և արարիչ ամենայն լի-նելութեանց՝ որ յանէութենէ զբնաւս 'ի ցուցակութի̃ ածեալ գոյացուցեր. որ և զմերս հողեղէն բնութիւն պատուեալ մարդասիրապէս, այսպիսի ահաւոր և ան-պատում խորհրդոյս կարգեցեր սպասաւորս ։ Դու տէր որում պատարագեմք զպատարագիս, ընկալ առ 'ի մէնջ զառաջադրութիս զայս, և աւարտեա զսա 'ի խորհրդա-

կանութիւն մարմնոյ և արեան միածնի քո: Պնեղ թո-
ղութեան մեղաց պարգևեա ճաշակողացս զհացս զայս
և զգինիս: Շնորհօք և մարդասիրութեամբ տեառն
մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի, ընդ որում Հօր
և Հոգւոյդ սրբոյ փառք այժմ և:

Ժողով. Ամէն:

Սարկաւ. առ դրունս քարոզէ. Ողջոյն տուք միմեանց:

Իսկ եթէ ձեռնադրութիւն լինի, ոչ այժմ ասեն զՈղ-
ջոյն տուք, այլ յետոյ ասելոյն եպիսկոպոսին զաղօթսդ
որ գրեցաւ. և նուիրեալն ցարդ ևս անշարժ առաջի սե-
ղանոյն է: Որ եպիսկոպոսին աւընթերակայ սարկա-
ւագն է՝ զեմիփորոնն պատուոյ դարձեալ զգեցուցանէ
նմա. և սարկաւագն որ ունի զքարոզութիւնն՝ արտա-
քոյ քարոզէ այժմ զձեռնադրութեան քարոզն՝ որպէս
և է յայն կարգն ըստ իւրաքանչիւր պատուոյ գրեալ.
այսինքն քահանայն Աստուած մեծն: Ապա կամիս ասա
զսոյն և սարկաւագութեան ձեռնադրութեանն: Իսկ մինչ
նա զքարոզն ասէ և ժողովուրդն զՏէր ողորմեայն, նուի-
րեալն 'ի ծունկս է առաջի սեղանոյն և եպիսկոպոսին:
Իսկ դնէ եպիսկոպոսն զաջն 'ի վերայ գլխոյն որպէս կայ
'ի ծունկսն և չշարժի. և ասէ զաղօթսն ըստ պատշա-
ճին, որպէս զի 'ի վախճան քարոզին սա զփառսն եր-
գեսցէ. իսկ յետ այնր տուեալ զխաղաղութիւնն, և
երկրպագեալ ամենեցուն, խոնարհի և ինքն և ասէ ըղ-
փոխ աղօթիցն, և աջն անշարժ 'ի գլուխն մինչև աւար-
տի աղօթքն: Յետ փառացն սարկաւագն որ ունի զքա-
րոզն, յիւր տեղն անշարժ է 'ի դուրսն, յաւարտեն
ձայնէ. Ողջոյն տուք միմեանց 'ի համբոյր սրբութեան.
որք ոչ կարացին հաղորդել աստուածային խորհրդոյս,
և առ դրունս են՝ աղօթեսցեն: Յետ ասելոյ նորա զայս՝
խոնարհի եպիսկոպոսն, և զսեղանն համբուրէ և կանգ-
նի. իսկ ձեռնադրեալն զայ, և յետ նորա համբուրէ
զսեղանն և զեպիսկոպոսն: Իսկ թէ քահանայ է կամ
եպիսկոպոս ձեռնադրեալն, կանգնի յաջ անկիւն սեղա-
նոյն, և նա 'ի ձախն, դէմք իւրեանց 'ի միմեանս. և զան
այլքն որք են 'ի խորանն, և ողջունեն զմէջ սեղանոյն
և զնոսա, կանգնելին զհետ նոցա մի յայսկոյս և մի յայն.
ապա թէ սարկաւագ է՝ աւընթեր կանգնի եպիսկոպո-

սին, և ողջունի յամենեցուն որպէս գրեցաւ: Իսկ եթէ որ պատուաւոր առանց ձեռնադրութեան, ողջունեն ըզմիմեանս քահանայքն որ են 'ի խորհրդեանն. և մինչ նոքա ողջունեն, դպիրքն զայս յեղանակեն յեկեղեցին.

Քրիստոս 'ի մէջ մեր յայտնեցաւ, որ էն Աստուած աստ բազմեցաւ. եկեղեցիս մի անձն եղաւ, համբոյրս յօդ լրման տուաւ. թշնամութիւն հեռացաւ, սէր ընդհանուրըս սփռեցաւ: Արդ պաշտօնեայք բարձեալ ըզձայն՝ տուք օրհնութիւն 'ի մի բերան, միասնական աստուածութեան՝ որում սրովբէք են սրբաբան:

Միանգամայն կատարի ողջոյնքն և երգս. յետ որոյ դառնան 'ի սեղանն, և հանէ դարձեալ եպիսկոպոսն զեմիփորոնն. իսկ ձեռնադրեալն՝ թէ եպիսկոպոս է ընդայլոն պատարագէ. ապա թէ քահանայ, 'ի հիւսիսոյ կուսէ կանգնի՝ ունելով զդէմս 'ի սեղանն, և դնէ զերկոսին ձեռսն 'ի սեղանն 'ի վերայ միմեանց. և եպիսկոպոսն առնու զմաղզմայն հացովն, և դնէ 'ի վերայ ձեռինն նորա և անդր օրհնէ, և անդ մնայ անշարժ կրկնելով զնոյն մինչև 'ի կատարումն խորհրդոյն և հաղորդելոյն: Ապա թէ սարկաւագ է, յետ ողջունելին ամենեցունց զքարոզութիւնն ինքն արասցէ առ դուրս խորանին ասելով.

Զդրունս, զդրունս իմաստութեամբ և զգուշութեամբ: (Զհաստատմանքն թէ կամիս աստ ասա:) Եւ փակին դրունք խորանին:

Սարկաւագն. Ահիւ կացցուք, երկեղիւ կացցուք, բարիոք կացցուք, և նայեցարուք զգուշութեամբ:

Ժողովուրդն. Առ քեզ Աստուած:

Սարկաւագն. Պատարագ Ք՟ս մատչի գառնն Ա՟յ:

Ժողովուրդն. Ողորմութիւն և խաղաղութիւն, և պատարագ օրհնութեան:

Քահանայն դառնայ 'ի ժողովուրդն և ասէ. Շնորհք սէր և աստուածային սրբարար զօրութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ եղիցի ընդ ձեզ ամենեսեան:

Ժողովուրդն. Եւ հոգւոյդ քում:

Սարկաւագն. Ի վեր ընծայեցուցէք զմիտս ձեր աստուածային երկեղիւն:

Ժողովուրդն. Ունիմք առ քեզ տէր ամենակալ:
Սարկաւագն. Եւ գոհացարուք զՏ̃է բոլորով սրտիւ:
Ժողովուրդն. Արժան և իրաւ:
Քահանայն 'ի ծածուկ. Արժան է ստուգապէս և իրաւ՝ ամենայորդոր փութով փառաւորել զքեզ Հայր ամենակալ. որ զքոյին անքննելի և արարչակից բանիւդ զանիծիցն բարձեր զկրձինն: Որ ժողովուրդ յինքեան զեկեղեցի առեալ սեփականեաց զհաւատացեալս 'ի քեզ, և զննելի բնութեամբ ըստ 'ի կուսէն տնտեսութեանն հաճեցաւ բնակիլ 'ի մեզ, և նորագործ աստուածապէս ճարտարապետեալ զերկիրս երկին արար: Վասն զի որ ոչն համարձակէին առաջի կալ զուարթնոցն ջոկքն զարհուրեալ 'ի փայլակնացայտ և յանմատոյց լուսոյ աստուածութեանդ, եղեալ այդպիսիդ մարդ յաղագս մերոյ փրկութեան, շնորհեաց և մեզ ընդ երկնայինսն պարել զհոգեղէն պարսն. և ընդ սերովբէսդ և ընդ քերովբէսդ միաձայն սրբասացութե̃ յօրինել նուագս, և համարձակապէս գոչելով աղաղակել ընդ նոսին և ասել:

Ժողովրդեանն հրամանն տայ սարկաւագն, և երգեն միաձայն. Սուրբ սուրբ սուրբ տէր զօրութեանց, լի են երկինք և երկիր փառօք քո. օրհնութիւն 'ի բարձունս. օրհնեալ որ եկիր և գալոց ես անուամբ տեառն. ովսաննա 'ի բարձունս:

Յորժամ նոքա սկսանին զսուրբս, և քահանայն զաղօթս սկսանի ցած և ոչ մեծայ. Սուրբ, սուրբ, սուրբ ես ճշմարտապէս և ամենասուրբ. և ո՞վ ոք պանծասցի բովանդակել բանիւ զքո 'ի մեզ զանեղաւ բարեգործութեանդ զեղմունս. որ և անդէն իսկ 'ի նախնումն զանկեալն ընդ մեղօք զանազան եղանակօք խնամեալ սփոփեցեր, մարգարէիւք, օրինացն տուչութեամբ, քահանայութեամբ և ստուերականաւ երինջոցն մատուցմամբ: Իսկ 'ի վախճանի՞ աւուրցս այսոցիկ զդատակնքեալ իսկ ըդպարտեաց մերոց խզեալ զդատակնիքս, ետուր մեզ զՈրդին քո միածին պարտապան և պարտս, զենումն և օծեալ, զառն և երկնաւոր հաց, քահանայապետ և պատարագ. վասն զի ինքն է բաշխող, և նոյն ինքն բաշխի 'ի մեզ միշտ անծախապէս: Վասն զի եղեալ հաւաս-

տեառ, և առանց ցնորից մարդ, և անշփոթ միութեամբ մարմնացաւ 'ի սուրբ և յաստուածածնէն կուսէն Մարիամայ. Ճանապարհորդեաց ընդ ամենայն կիրս մարդկային կենցաղոյս առանց մեղաց, և յաշխարհակեցոյց և յաւիտենին փրկութեան մերոյ եկեալ կամաւ 'ի խաչն: Առեալ զհացն 'ի սուրբ յաստուածային յանմահ յարարչագործ ձեռս իւր, օրհնեաց, գոհացաւ, սրբեաց, եբեկ, ետ իւրոց ընտրեալ սուրբ և բազմեալ աշակերտացն ասելով. Առէք կերայք 'ի սմանէ ամենեքեան, այս է մարմին իմ՝ որ վասն ձեր է բաշխեալ 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց:

Ժողովուրդն. Ամէն:

Ըստ նմին օրինակի և զբաժակն առեալ օրհնեաց, գոհացաւ, սրբեաց, ետ իւրոց ընտրեալ սուրբ և բազմեալ աշակերտացն ասելով. Արբէք 'ի սմանէ ամենեքեան. այս գինի Նոր ուխտ է իմով արեամբս՝ որ վասն ձեր և բազմաց հեղու 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց:

Ժողովուրդն. Ամէն:

Քահանայն. Եւ զայն միշտ իւր յիշատակ առնել պատուիրան աւանդեաց մեզ բարերար Որդիդ քո միածին. և իջեալ 'ի ստորին վայրս մահու՝ մարմնովն զոր 'ի մերմէս ընկալաւ յազգակցութենէ, և զնիգս դժոխոցն աղարտեալ հզօրեղապէս, զքեզ միայն ծանոյց մեզ հաւաստեաւ Աստուած ճշմարիտ, զԱստուածդ կենդանեաց և մեռելոց:

Այժմ երկրպագեն ձեռօքն կալեալ զսպաս սրբութեան յառաջ մղեսցէ, և ունելով զնոյնն ասասցէ. Եւ արդ մեք տէր ըստ այսմ հրամանատրութեան յառաջ բերեալ զայս խորհուրդ փրկական մարմնոյ և արեան միածնիդ քո, յիշեմք զդորա որ վասն մեր զփրկագործ չարչարանսն, զկենդանատու զխաչելութիւնն, զերեքօրեայ թաղումն, զերանելի յարութիւնն, զաստուածապէս համբարձումն, զնստելն ընդ աջմէ քո Հայր, զահաւոր և զմիւսանգամ գալուստն խոստովանիմք և օրհնեմք: Զքոյս 'ի քոյոցս քեզ մատուցանեմք, ըստ ամենայնի և յաղագս ամենեցուն:

Ժողովուրդն երգեն հրամանաւ սարկաւագին. Ամե

օրհնեալ ես տէր. օրհնեմք զքեզ, գովեմք զքեզ, գո-
հանամք զքէն, աղաչեմք զքեզ տէր Աստուած մեր։

Քհն. Քեզ արդարև տէր ա̃ծ մեր գովեմք, և զքէն
գոհանամք հանապազ, որ զանց արարեր զմերով ան-
արժանութեամբս, այսպիսի ահաւոր և անպատում խոր-
հրդոյս կարգեցեր զմեզ սպասաւորս. ոչ յաղագս մերոյ
ինչ բարեգործութե՛ յորոց յոյժ թափուր եմք, և միշտ
ունայն գտանիմք հանապազ. այլ ՚ի քո բազմազեղ նե-
րողութիւնդ ցանգ ապաւինեալ, համարձակիմք և մեր-
ձենամք ՚ի սպասաւորութիւն մարմնոյ և արեան միա-
ծնի քո։

Սարկաւագն. Աստուծոյ երկրպագեսցուք։

Ժողովուրդն. Առաջի քո տէր։

Քահանայն խոնարհէ և ասէ. Երկրպագանեմք և ա-
ղաչեմք և խնդրեմք ՚ի քէն բարերար Աստուած, առա-
քեա ՚ի մեզ և յառաջի եդեալ յընծայս այս զմշտնջե-
նաւորակից քո և զէակից սուրբ Հոգիդ։

Եւ կանգնեալ սարկաւագն, ահիւ և դողութեամբ
ձգեալ զձեռն առնու զծածկոյթն ՚ի սպասուցն, և խո-
նարհի ՚ի յանկիւն սեղանոյն։ Իսկ քահանայն կնքէ
զնուէրսն յառեն զայս. և սարկաւագն ասէ զԱմէնն
միայն՝ ոչ բարձր։

Որով զհացս օրհնեալ մարմին ճշմարտապէս արա-
ցես տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի։

Սարկաւագն. Ամէն։

Եւ զբաժակս օրհնեալ արիւն ճշմարտապէս արասցես
տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի։

Սարկաւագն. Ամէն։

Որպէս զի եղիցի սա ամենեցուն մեզ մերձեցելոցս
յանդատապարտութիւն, ՚ի քաւութիւն և ՚ի թողու-
թիւն մեղաց։

Սարկաւագն. Ամէն։

Եւ համբուրէ քահանայն զսեղանն. և այսուհետև
զձեռսն հաւասարնուիրացն խոնարհեցուցանէ, և զաչսն
՚ի նոյն յառեալ ասէ անմռունչ. Սովաւ շնորհեա զսէր,
զհաստատութիւն և զղձալի զխաղաղութիւն ամենայն
աշխարհի, սրբոյ եկեղեցւոյ և ամենայն ուղղափառ
եպիսկոպոսաց, քահանայից, թագաւորաց աշխարհի,

իշխանաց, ժողովրդոց, ճանապարհորդաց, նաւելոց, կապելոց, վտանգելոց, աշխատելոց, գերելոց և որք 'ի պատերազմունս բարբարոսաց:

Տուր և օդոց շնորհեա բարեխառնութիւն, և անդոց զպտղաբերութիւն, և ախտացելոց 'ի պէսպէս ցաւս զփութապէս առողջութիւն:

Տուր հանգիստ զամենեսեան 'ի Քրիստոս ննջեցեալ հարսն, զսուրբ հայրապետսն, զառաքեալս, ըզմարգարէս, զվկայեալս, զեպիսկոպոսունսն, զերիցունս, զսարկաւագունս և զընաւ ուխտս եկեղեցւոյ քում սըրբոյ, և զամենեսեան յաշխարհական կարգէ զայրս և ըզկանայս հաւատով զվախճանեալս:

Ընդ որս և մեզ այց արասցես բարերար տէր աղաչեմք:

Ժողովուրդն. Յիշեա տէր և ողորմեա:

Քահանայն 'ի ձայն բարձր. Աստուածածնի սրբոյ կուսին Մարիամու, և Յովհաննու Մկրտչին, սրբոյն Ստեփանոսի, և ամենայն սրբոց եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս, աղաչեմք:

Ժողովուրդն. Յիշեա տէր և ողորմեա.

Սարկաւագն զայս այժմ յաջակողմ սեղանոյն զդէմն ուղղեալ 'ի պատարագն, և զձեռսն տարածեալ ասէ զայս բարձր բարբառով 'ի լուր ժողովրդեանն.

Առաքելոց սրբոց, մարգարէից, մարտիրոսաց և ամենայն սրբոց հայրապետաց, երիցանց, ուղղափառ սարկաւագաց և ամենայն սրբոց:

Ժողովուրդն. Յիշեա տէր և ողորմեա:

Սարկաւագն. Սուրբ և աստուածահաճոյ հայրապետի, վկայի, կուս. ձգն. (այսր անուանն) զորոց զյիշատակն կատարեցաք այսօր եղիցի յիշ:

Առաջնորդաց մերոց և առաջին լուսաւորչացն սրբոց, Թադէոսի առաքելոյ, Գրիգորի լուսաւորչի, Արիստակիսի, Վրթանիսի, Յուսկանն, Գրիգորիսի, Ներսիսի, Սահակայ և ամ՟ սրբոց հօրնաց և հովուապետաց հայաստանեայց եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս:

Միանձնացելոց սրբոց, առաքինազարդ կրօնաւորաց, Անտոնի, Մակարայ, Մեսրովբայ և Գրիգորի, և ամենայն սրբոց հարց և աշակերտելոց նոցին որք ընդ տիեզերս, եղիցի յիշ:

Թագաւորաց հաւատացելոց սրբոց Կոստանդիանո-սի, Տրդատայ, Թէոդոսիցն, և ամենայն սրբոց թագա-ւորաց և իշխանաց եղիցի յիշ։

Ընդհանուր ամենայն հաւատացելոց, արանց և կա-նանց, ծերոց և տղայոց, և ամենայն հաւատով 'ի Քրիս-տոս կատարելոց եղիցի յիշ։

Ապա խունկ արկանէ շուրջ զսեղանովն. և քահա-նայն սկսանի զաղօթսն, Յիշեա տէր և ողորմեա և օրհ-նեա։ Եւ նախասարկաւագն յետ խնկարկութեանն զայ 'ի նոյն յաջակողմն սեղանոյն. դարձեալ կանգնի նոյնպէս, և յաւելու ասել զայս.

Եւ ևս զոհութիւն և փառաբանութիւն մատուս-ցուք տեառն Աստուծոյ մերոյ վասն սուրբ և անմահ պատարագիս որ 'ի վերայ սրբոյ սեղանոյս. զի զսա մեզ 'ի սրբութիւն կենդանութեան պարգևեսցէ։ Սովաւ շնորհեսցես զսէր զհաստատութիւն և զղձալի զխաղա-ղութիւն ամենայն աշխարհի, սրբոյ եկեղեցւոյ և ամե-նայն ուղղափառ եպիսկոպոսաց. եպիսկոպոսապետին մերոյ, և եպիսկոպոսին մերոյ, և քահանայիս որ զպա-տարագս մատուցանէ, եղիցի յիշ։

Եւ վասն փրկութեան և զօրութեան թագաւորաց քրիստոնէից և իշխանին մերոյ։ Ազատութիւն եղբարց մերոց գերելոց, և շնորհ առաջիկայ ժողովրդեանս. հան-գիստ հաւատով 'ի Քրիստոս ննջեցելոցն։

Ժողովուրդն. Ընդ ամենայնի, և յաղագս ամենեցուն։

Քահանայն, մինչդեռ սարկաւագն զայս ասէ, զա-ղօթսն կատարէ խորհրդիւ. Յիշեա տէր և ողորմեա, և օրհնեա զսուրբ կաթողիկէ առաքելական եկեղեցի քո՝ զոր փրկեցեր պատուական մարմնով և արեամբ միածնի քո, և ազատեցեր խաչիւն սրբով. շնորհեա սմա զանշարժ զխաղաղութիւն։ Յիշեա տէր և ողորմեա, և օրհնեա զա՟մ ուղղափառ եպիսկոպոսունս՝ որք ուղիղ վարդապե-տութբ համառօտեն 'ի մեզ զբանն ճշմարտութե։ Եւ առաւել զեպիսկոպոսապետն մեր (զայս անուն) շնորհե-լով մեզ ընդ երկայն աւուրս ուղիղ վարդապետութբ։

Ժողովուրդն. Ամէն։

Յիշեա տէր և ողորմեա, և օրհնեա զքո առաջի կա-ցեալ ժողովուրդս, և զպատարագիս մատուցողքս, և

պարգեւեա իւրաքանչիւրոց սոցա զպիտոյս եւ զօգտակարս։ Յիշեա տէր եւ ողորմեա, եւ օրհնեա զուխտաւորս, եւ զպտղաբերիչս եկեղեցւոյ քում սրբոյ՝ որք յիշեն զաղքատս ողորմածութեամբ. եւ հատո՛ նոցա ըզպարտս նոցա ըստ ընդաբոյս առատութեան քում հարիւրապատիկ աստ եւ 'ի հանդերձելումդ։

Յիշեա տէր եւ ողորմեա եւ գթա 'ի հոգիս հանգուցելոցն. դասաւորեա զնոսա այցելութեամբ 'ի լոյս երեսաց քոց ընդ սուրբս քո, եւ արժանաւորեա ողորմութեան քո։

Յիշեա տէր եւ զայնոսիկ՝ որք յանձնեցին մեզ զխնդրեանս յիշատակել յաղօթս զկենդանիս եւ զհանգուցեալս, եւ կառավարեա զկամս հայցմանց նոցա եւ զմերս ընդ ուղղորդն եւ որ լին է փրկութեամբ, եւ վարձատրեա բոլորեցունց զանանց եւ զերանելի զբարութիւնսդ. եւ զտեալ զխորհուրդս մեր տաճարացո ընդունելութե մարմնոյ եւ արեան միածնի քո տեառն մերոյ եւ փրկչի Յիսուսի Քրիստոսի, ընդ որում քեզ Հօր միանգամայն եւ Հոգւոյդ սրբոյ վայելէ փառք իշխանութիւն եւ պատիւ։

Ժողովուրդն. Ամէն։

Քահանայն. Եւ եղիցի ողորմութիւն մեծին Աստուծոյ եւ փրկչին Յիսուսի Քրիստոսի ընդ ձեզ ամենեսեան։

Ժողովուրդն. Եւ հոգւոյդ քում։

Սարկաւագն առ դուրս խորանին յետ այսր քարոզէ. եւ քահանայն ասէ զաղօթսն. Աստուած ճշմարտութե, ծածուկ զդգ ընդ քարոզելոյն, որպէս զի 'ի միասին աւարտեսցի։

Եւ եւս խաղաղութեան զտէր աղա։

Ժողովուրդն. Տէր ողորմեա։

Ամենայն սրբովքս զորս յիշատակեցաք, եւս առաւել զտէր աղա։

Վասն մատուցեալ սուրբ եւ պատուական պատարագիս տեառն Աստուծոյ մերոյ զտէր աղա։

Որպէս զի տէր Աստուած մեր որ ընկալաւ զսա 'ի սուրբ եւ յերկնային եւ յիմանալի իւր մատուցարանն, փոխանակ առ մեզ առաքեսցէ զշնորհս եւ զպարգեւս Հոգւոյն սրբոյ զտէր աղա։

Եւ եւս միա։ Զանձինս։ Ողորմ։

Քահանայն տարածեալ զձեռս, և ասէ 'ի ծածուկ ընդ քարոզին. Աստուած ճշմարտութեան, և Հայր ողորմութեան, գոհանամք զքէն որ 'ի վեր քան զերանելի նահապետացն զմեր պարտաւորելոցս առաւել մեծարեցեր զբնութիւնս. վասն զի նոցա Աստուած կոչեցար, իսկ մեզ Հայր հաճեցար անուանիլ գթալով: Եւ այժմ տէր աղաչեմք զքեզ, զայսպիսի առ 'ի քէն պատուականս և զնորոգ անուանադրութեանս շնորհ օր ըստ օրէ պայծառացեալ ծաղկեցո 'ի մէջ եկեղեցւոյ քո:

Եւ տուր մեզ համարձակաձայն բարբառով բանալ զբերանս մեր, երգել և ասել:

Ժողովուրդն. տարածեալ զձեռսն երգեն բարձր. և քահանայն 'ի ծածուկ:

Հայր մեր որ յերկինսդ ես, սուրբ եղիցի անուն քո. եկեսցէ արքայութիւն քո. եղիցին կամք քո որպէս յերկինս և յերկրի. զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր. թող մեզ զպարտիս մեր, որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց. և մի տանիր զմեզ 'ի փորձութիւն, այլ փրկեա 'ի չարէ:

Ի ձայն. Զի քո է արքայութիւն և զօրութիւն և փառք այժմ:

Քահանայն. Խաղաղութիւն ամենեցուն:

Ժողովուրդն. Եւ հոգւոյդ քում:

Սարկաւագն. Աստուծոյ երկրպագեսցուք:

Ժողովուրդն. Առաջի քո տէր:

Քահանայն խոնարհի և ասէ. և ամենայն ժողովուրդն խոնարհի. Որ աղբիւրդ ես կենաց և բղխումն ողորմութեան, Հոգիդ սուրբ, ողորմեա ժողովրդեանս որ խոնարհեալ երկիրպագանեն առաջի աստուածութեանդ քո. պահպանեա զսոսա ամբողջս, տպաւորեա յոգւոջ սոցա զձև մարմնոյ ցուցակի առ 'ի ժառանգութիւն և 'ի վիճակ հանդերձելոցդ փառաց,

Քրիստոսիւ Յիսուսիւ տերամբ մերով ընդ որում քեզ Հոգւոյդ սրբոյ և Հօր ամենակալի փառք իշխանութիւն և պատիւ այժմ և միշտ և յաւիտեանս:

Եւ սարկաւագն բարձր բարբառով ասէ յետ այսր.

Պռոսխումէ:

Քահանայն վերացուցանէ զընծայսն երկոքին ձեռօքն առաւել քան զգլուխ իւր և ասէ.

Սրբութիւն սրբոց ։

Ժողովուրդն միաձայն աղաղակեն . Միայն սուրբ , միայն տէր՝ Յիսուս Քրիստոս 'ի փառս Աստուծոյ Հօր , ամէն ։

Քահանայն ունելով զնոյն 'ի ձեռին ասէ բարձր 'ի լուր ժողովրդեան . Օրհնեալ Հայր սբ ճշմարիտ Ած ։

Ժողովուրդն . Ամէն ։

Օրհնեալ Որդին սուրբ ճշմարիտ Աստուած ։

Ժողովուրդն . Ամէն ։

Օրհնեալ Հոգին սուրբ ճշմարիտ Աստուած ։

Ժողովուրդն . Ամէն ։

Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ այժմ և միշտ ։

Քահանայն դարձեալ խոնարհի , և աղօթէ խորհրդաբար . Նայեա տէր մեր Յիսուս Քրիստոս յերկնից 'ի սրբութենէ քումմէ և յաթոռոյ փառաց թագաւորութեան քո . եկ 'ի սրբել և 'ի կեցուցանել զմեզ՝ որ ընդ Հօր նստիս , և աստ պատարագիս ։ Արժանի արա տալ մեզ յանարատ մարմնոյս քո և 'ի պատուական, արենէ և 'ի ձեռն մեր ամենայն ժողովրդեան ։

Ապա զայս ասացեալ երկրպագէ , և համբուրէ զսեղանն . և յարուցեալ ձգէ զձեռն 'ի սուրբ մարմինն , և առեալ զնոյն ողջ թանայ յանապական արիւնն ։ Ապա ապա բարձրացուցանէ ակներև ժողովրդեանն , և ասէ առնուա բարձր .

Ի սուրբ 'ի սուրբ պատուական մարմնոյ և յարենէ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի ճաշակեսցուք սրբութեամբ՝ որ իջեալ յերկնից բաշխի 'ի միջի մերում ։ Սա է կեանք , յոյս յարութեան , քաւութիւն և թողութիւն մեղաց . սաղմոս ասացէք Աստուծոյ մերոյ , սաղմոս ասացէք երկնաւոր թագաւորի մերոյ անմահի , որ նստի 'ի կառս քերովբէականս ։

Սարկաւագն . Սաղմոս ասացէք տեառն Աստուծոյ մերոյ դպիրք ձայնիւ քաղցրութեամբ զերգս հոգևորս . զի նմա իսկ վայելեն սաղմոսք , օրհնութիւնք , ալէլուք . պաշտօնեայք , հանդերձ երգով սաղմոս ասացէք , և զտէր յերկինս օրհնեցէք ։

Եւ սկսանին եկեղեցին եղանակել. Քրիստոս պատարագեալ բաշխի։ Իսկ քահանայն, մինչ նոքա յերգսն են՝ առնու զմարմինն 'ի ձեռն, եւ համբուրէ արտասուօք զայս ասելով.

Խոստովանիմ եւ հաւատամ, զի դու ես Որդի Աստուծոյ որ բարձեր զմեղս աշխարհի։ Եւ բեկեալ արկանէ 'ի բաժակն արեան ասելով. Լրումն Հոգւոյն սրբոյ։

Ապա խնդրէ 'ի Ճշմարիտն Աստուծոյ զպէսպէս հայցուածս անձին եւ ժողովրդեանն՝ որչափ եւ կամի տալով յերկայնութիւն երգեցողացն։ Յետ այսր առեալ Ճաշակէ ասելով.

Մարմին պատուական եղիցի մեզ 'ի կեանս. եւ սուրբ արիւն քո 'ի քաւութիւն եւ 'ի թողութիւն մեղաց։

Առնու եւ 'ի բաժակէ արեանն Ճաշակ մի. եւ մինչ նա յայս է, դպիրքն պաշտեն։ Հաղորդեցուցանէ եպիսկոպոսն զնոր ձեռնադրեալն, ոչ 'ի բերանն՝ այլ յափն տալով զսրբութիւն. նոյն եւ զայլ քահանայսն։

Քրիստոս պատարագեալ բաշխի 'ի միջի մերում, ալէլուիա։ Զմարմին իւր տայ մեզ կերակուր, ալէլուիա։ Եւ սուրբ զարիւն իւր ցօղեաց 'ի մեզ, ալէլուիա։ Մատիք առ տէր եւ առէք զլոյս, ալէլուիա։

Լոյս Ճշմարիտ եւ Ճառագայթ Հօր, ծագումն եւ կնիք, բան եւ ծնունդ, որ կանգնեցեր յեօթեանց սեանց զեկեղեցի սուրբ, ածեալ 'ի սպանդ զեզն պարարակ։ Շնորհեա մեզ կերակրել յիմաստութեան քում սեղանոյս. Ողորմեա։

Ճաշակեցէք եւ տեսէք, զի քաղցր է տէր. ալէլ։

Հաց կենաց եւ անմահութեան Ճաշակ, սուրբ եւ անՃառ սոսկալի խորհուրդ, որ 'ի յերկնից իջեր կենդանութիւն մարդկան, կենդանի եւ կենդանարար. պարգեւեա քաղցելոցս զքաղցրութեն քում Ճաշակումն. Ողորմեա։

Օրհնեցէք զտէր յերկինս, ալէլուիա։

Դուռն երկնից եւ Ճանապարհ արքայութեան, տէր երկնի, յերկնայնոցն օրհնեալ դասուց, որ զմարմին քո եւ զարիւն բաշխեցեր առաքելոցն. մաքրեա զմեզ հաղորդիլ սրբութեան քում խորհրդոյս. Ողորմեա։

Օրհնեցէք զնա 'ի բարձունս. ալէլուիա։

Բան Հօր եւ քահանայապետ սուրբ, յանմարմնոց

գովեալ 'ի բարձունս. որ 'ի վերայ խաչին պատարագեալ մարմնով՝ հեղեր զարիւնդ 'ի փրկութիւն. սրբեա զմեղս մեր կենարար և փրկական քաւիչ քո արեամբդ. Ողորմեա։

Օրհնեցէք զնա հրեշտակք նորա, ալէլուիա։

Մեծ հօգևոր և գլուխ անկեան օծեալ, բարեբանեալ 'ի հրեշտակաց. որ 'ի խաչին բացեր զկողահոս աղբիւրդ, զանմահութիւն ցօղեալ տիեզերաց. արբո մեզ ծարաւեացս զբաժակ քո փրկութեան. Ողորմեա։

Օրհնեցէք զնա ամենայն զօրութիւնք նորա, ալէլուիա։

Գառն Աստուծոյ զենեալ միշտ և կենդանի, անմեղ եկեալ 'ի պատարագ, որ 'ի հաշտութիւն Հօր պատարագեալ բառնաս զմեղս աշխարհի, յանմահից զօրաց փառաւորեալ. յիշեա զհոգիս հաւատով 'ի քեզ ննջեցելոց մերոց. Ողորմեա։

Այս երգս ոչ եթէ հարկաւոր յամենայն աւուր պարտ է ասել 'ի լման, այլ ըստ պատշաճին. դիտել պարտ է զժամանակն, և զկամս քահանային՝ որչափ կամի 'ի ճաշակելն զայն յերկարել։ Իսկ զօրհնեալըդ ասել պարտ է, և զորս զկնի նոցին մի տուն կամ երկու կամ երեք, որչափ ժամանակն խնդրէ։

Ապա սարկաւագն առնու զբաժակն նուիրօքն, և դառնայ 'ի ժողովուրդն ասելով.

Երկեղիւ և հաւատով յառաջ մատիք։

Քահանայն որ զկնի գայ՝ կնքէ զնոսա ասելով. Կեցո տէր զժողովուրդս քո, և օրհնեա զժառանգութիւն քո, հովուեա և բարձրացո յայսմ հետէ մինչև յաւիտեան։

Ժողովուրդն համբարձեալ զձեռս միաբան ասեն. Օրհնեալ եկեալ անուամբ տեառն. Աստուած մեր երևեցաւ մեզ։

Եւ հաղորդին արժանաւորքն։ Յետ հաղորդութեան երգեն.

Լցաք 'ի բարութեանց քոց տէր, ճաշակելով զմարմին քո և զարիւն. փառք 'ի բարձունս կերակրողիդ ըզմեզ։ Որ հանապազ կերակրես զմեզ, առաքեա 'ի մեզ զհոգևոր քո օրհնութիւն, փառք 'ի բար։

Եւ լուանայ քահանայն զձեռս. սարկաւագն՝ մինչ նոքա պաշտեն՝ խունկ արկանէ շուրջ զսեղանովն. Եւ

առեալ զպարտն տանի 'ի սարկաւագատունն. և թէ եպիսկոպոս՝ 'ի սոյն ժամ դարձեալ զգեստս զեմիփորոնն, և քարոզէ սարկաւագն արտաքոյ, և նա ասէ զաղօթս Գոհանամք:

Այլ ևս խաղաղութեան զտէր աղաչեսցուք:

Այլ ևս հաւատով ընկալեալք յաստուածայինն սուրբ յանմահ խորհրդոյս, զտէառնէ գոհացարուք:

Քահանայն ընդ նմին ասէ ցած. Գոհանամք զքէն տէր, որ զայսպիսի ճաշակումն բարութեան շնորհեցեր մեզ 'ի փրկութիւն կենդանութեան. նովիմբ պահեա զմեզ սուրբս և անարատս, բնակեալ զմեօք քո աստուածայինն խնամովդ, հովուել զմեզ, և հանգուցանել յանդաստանի կամաց քոց սրբոց և բարերարաց, որով ամրացեալք յամենայն բանսարկուին ընդդիմութեանց՝ քում և եթ եղիցուք արժանի լսել ձայնի, և քեզ միայնոյ քաջայաղթ և ճշմարիտ հովուիդ հետևեալ, և առ 'ի քէն ընդունել զպատրաստեալ տեղի արքայութեան քո, Աստուած մեր և տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս որ ես օրհնեալ ընդ Հօր և սուրբ Հոգւոյդ, այժմ և:

Խաղաղութիւն ամենեցուն:

Սարկաւագն. Աստուծոյ երկրպագեսցուք:

Ամենին անհաս երրեակ միութէդ, հաստիչ, անբաժին և անքակ տէրութեանդ սրբոյ Երրորդութէդ, և միանական աստուածութեանդ վայելէ փառք իշխանութիւն և պատիւ:

Այլ երկրպագեալ համբուրէ զսեղանն, և իջեալ 'ի մէջ եկեղեցոյն, ասէ զաղօթս բարձրաձայն.

Որ օրհնես զայնոսիկ՝ որ օրհնեն զքեզ տէր, և սուրբ առնես զյուսացեալս 'ի քեզ. կեցո տէր զժողովուրդս քո, և օրհնեա զժառանգութիւնս, զլրումն եկեղեցւոյ քո պահեա, սուրբ արա զնոսա՝ ոյք ողջունեցին սիրով զվայելչութիւն տան քո, և մի թողուր զյուսացեալքս 'ի քեզ: Խաղաղութի պարգևեա ամենայն աշխարհի, եկեղեցւոյ, քահանայից, թագաւորաց քրիստոնէից, և զինուորեալ մանկանց նոցին[1]. զի ամենայն տուրք և բարիք, և ամենայն պարգևք կատարեալք 'ի

1 Ի լուսանցսն իշխանաց:

վերուստ են իջեալ առ 'ի քէն՝ որ ես հայր լուսոյ, և քեզ փառք իշխանութիւն և պատիւ, այժմ:

Ժողովուրդն ասեն միաբան. Եղիցի անուն տեառն օրհնեալ յայսմհետէ մինչև յաւիտեան: Եղիցի անուն տեառն: Եղիցի անուն տեառն: Երիցս ասեն:

Քահանայն դառնայ 'ի վերայ նոցա, և ասէ. Կատարումն օրինաց և մարգարէից դու ես Քրիստոս փրկիչ մեր՝ որ լցուցեր զամենայն հայրական տնօրէնութիւնս քո. լցո զմեզ հոգւովդ քով սրբով:

Ժողովուրդն. Ամէն:

Եւ սկսանին. Օրհնեցից զտէր յամենայն ժամ:

Եւ կիսասարկաւագն նշխար բերէ առաջի քահանային, և նա օրհնեալ բաշխէ ամենեցուն՝ մինչև ասեն զսաղմոսն Օրհնեցից զտէր յամենայն: Ի տէր պարծեսցի: Մեծ արարէք զտէր: Խնդրեցի 'ի տեառնէ: Մատիք առ տէր: Փառք հօր և Որդւոյ և հոգւոյն սրբոյ:

Քահանայն կնքեալ արձակէ զժողովուրդն ասելով. Օրհնեալ եղերուք 'ի շնորհաց սուրբ հոգւոյն, երթայք խաղաղութ̃բ, և տէր եղիցի ընդ ամենեսեան:

Ժողովուրդն. Ամէն:



# ԽՐԱՏ ԵՒ ՄԽԻԹԱՐՈՒԹԻՒՆ

## ՎԵՐՈՅ ԳՐԵԱԼ ԳՈՐԾՈՅՍ

### ԲԱՐԵՁԵՒ ՍՊԱՍՈՒ[1]

ՎԱՍՆԶԻ բազում եցոյց բանս հրահանգութե գործ սարկաւագացն աստիճանի, և առ մեօք այս կարգ ընդաջինջ է յեկեղեցւոյ, ոչ է պարտ սակս այսր թերութե և զայլ բարեձևութիւնս լուծանել. այլ ուր չէ 'ի մէջ սարկաւագ, քահանայ համապատիւ իւր քահանային որ ունի զգործ պատարագելոյն՝ արասցէ պաշտօն՝ լցեալ զթերութիւն սարկաւագին. և չէ անձահ. զի թէ տէր մեր ոչ եկն պաշտօն առնուլ այլ պաշտել, և էր 'ի միջի մերում որպէս սպասաւոր, մեր նորա խորհրդոյն պաշտօն սարկաւագութեան տանել՝ նմին է համանմանութիւն: Նաև զայս որպէս. քահանայ որ որիշ կամի զպատարագն առնել, մի զատցի 'ի խաւարային ումբոլոնան, այլ մնասցէ 'ի մեծ եկեղեցին, և աւագերիցուն պաշտօն արասցէ, և ընդ նմին հաղորդեսցի: Այսն պատարագն է՝ զինչ աստ ընդ կցորդակից եղբայրն, և զինչ առանձինն. թողցի այսմ աւաւելութիւն մաքուր մտաց գիտելի: Այսն թէ և ոչ կէս սարկաւագ չէ՝ ոք 'ի քահանայիցն, զի այս է առաստ այսօր, զնորին գործ արասցէ. որիշ և մի ամենեքեան խառնակեսցեն զգործ աստիճանին զալեյուն և զառաքեալն. այլ որպէս և գրեալ է՝ միայն միննս: Այս և զայս պարտ է գիտել՝ թէ չունիմք հրաման և իշխանութիւն յՔրիստոսէ յայտնի գործառնութիւնս ծածուկ գլխով կամ կնկղով մերձենալ. և թէ առնեմք, դատիմք որպէս զառաքելական օրինացն անհաւատս և քակտիչս. և լինիմք Քրիստոսի ամաչեցուցիչս, և զնա մեզ ամօթ համարեալ, որպէս եցոյց Պօղոս: Այլ ամենայն հաստատութեամբ նախ քան

1 Յօրինակս ինչ Սպասաւորաբեան:

զզգենուլ զքահանայական զգեստ՝ զկնկուղն 'ի բաց պարտ է ձգել և զգտակն, և մերկ գլխով զամենայն պաշտամունսն կատարել, զընթեռնուլն առաքեալ և աւետարան, զասելն ալէլու, զաղօթելն[1], և միանգամայն ասեմ, զինչ գործ է որ դու իշխանութի առեր առնել զինքն յեկեղեցի, և աշխարհականն ոչ իշխէ, և ոչ կրօնաւոր սոսկ. Թէ դու զինքն ծածկեալ գլխով կատարես, զՔրիստոս նախատեցեր և հայհոյեցեր. և թէ քեզ նախատինք և ամօթ համարեցար զբանալ զգլխոյդ, զքո գլուխն զՔրիստոս համարեցար քեզ ամօթ. և թէ դանդաղեցար և հեղգացար բանալ զգլուխդ 'ի ցրտոյ կամ 'ի խորշակէ, և վասն այսր չդանդաղեցար 'ի պաշտամանէն համարձակիլ 'ի նա, 'ի պիղծ ձեռաց է քո նուիրագործութիւնն: Եւ եթէ զայս օրէնս՝ որ 'ի Քրիստոսէ Պօղոսիւ եդաւ՝ իբրև զթեթև և զոչինչ անգոսնեմք, և ոչ կատարեմք, անէծք սաստ եկեսցէ 'ի վերայ մեր, ասացեալն, "Անիծեալ որ ոչ կացցէ յամենայն 'ի գրեալս 'ի գիրս օրինացս այսոցիկ՝ առնել զամենայն". և եթէ ոք զայս բարեկարգութիւնս[2] իբրև ըղփոքր յանձն կամ յայլս լուծանէ, փոքր կոչեսցի յարքայութեան երկնից. որպէս ասացն[3] որ եղն. ինձ թուի՝ թէ վասն այսր անգոսնեալ է օրէնս, որ թեթև է և դիւրատար[4]: Ով անբանութեանս. զգտակդ 'ի գլխոյդ հեշտ է առնուլ՝ թէ բան մի հանել ընդ բերանդ և զՔրիստոս Աստուած ասել. բանն է հեշտ, և թէ չասէիր զայս բանս, որքան մեղար: Արդ ծանիր, զի հեթանոսաց առաքեալն Պօղոս որ զայդ հաւաս սահմանեաց մեզ հեշտ, և զայս օրէնս հեշտս. եթէ 'ի ծանր օրէնսն մեղանչեմք, ներելի եմք վասն մարմնոյս տկարութեան. իսկ յորժամ յայս մեղանչեմք՝ ոչ տկարութիւնն ստիպեաց, զի զինչ տկարութիւն բանալ զգլուխ, այլ արհամարհութիւն օրինացն. և եմք 'ի յանցանէն այնուհետև[5] աններելիք. զի չիք տկարութիւն մարմնոյ, որ մեզ զնոյն ներելի առնէ: Արդ զարթուցեալ ծանէրուք զորքանութիւն մեղացդ, և մի հակա-

1 Մի օրին. յաւելու. Զպօ- փորագէն:

2 Մի օրին. Բարեգործութեան:

3 Երեք օրին. Սահմանեաց:

4 Չորք օրին. Թէ ընթե է և դիւրաւ կատարի:

5 Մի օրին. Այսուհետև:

ռակլիք ընդդէմ բնութեան օրինացն, և Քրիստոսի փառացն, և Պօղոսի հրամանացն, և եկեղեցեացն Աստուծոյ սովորութեց. զի մի 'ի քահանայագործեն և դուք զամօթի հարկանիցիք՝ լուեալ, "Ընկեր, զիարդ մտեր այսր՝ ոչ ունելով հանդերձ հարսանեաց":

## ՍՐԲՈՅՆ ԴԻՈՆԵՍԻՈՍԻ ՑԱՂԱԳՍ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԱԻԱՆԴՈՒԹԵԱՆ [1] ԵՒ ԴԻՏՈՒՄՆ ՆՈՑԻՆ [2]

Արդ քանզի որ մեր է քահանայագործութիւն, ով սրբազանդ Տիմոթէոս, յԱստուծոյ է աւանդեալ, և որք առին զաստիճան պատուոյ յեկեղեցի Աստուծոյ, գործակիցք կարգեցան ատ աստուածայնաբար գործով պաշտամանն, ցուցանել պատշաճ համարիմ զսրբոյ խորհրդոյս կատարման դիտումն յառաքելական խորհրդոյն և աւանդութեանցն զոր 'ի նոցանէ ընկալաք։ Այլ տես, որպէս զի մի արտաքս փայլեցուսցես զորս հանդերձեալ բանս ցուցանէ, որք են պատրուակելիք որպէս զսրբութիւն սրբութեանց. այլ երկիւղիւ պահպանեալ, և քո զխորին խորհուրդս տէրունեան իմանալով հոգւով և մտօք պատուեսցես, անարատ և անկցորդ պահելով զսա 'ի յանարժանիցն։ Քանզի սրբոցն միայն վայելէ առ սրբութիւնս յայս կցորդութիւն գիտութէ, և յանմաքրիցն պահել զգուշութեամբ. որպէս և ընկալաք զտէրունական խրատսն՝ ասացեալ. "Մի տայք զսրբութիւն շանց, և մի արկանէք զմարգարիտս առաջի խոզից":

Արդ զայս սկիզբն արասցուք բանիս՝ ասելով, թէ աստուածութիւնն որ գերագոյն է էութեամբ երկնաւորաց, լինի անճառ սիրովն և ողորմութեամբն և նոցա աստուածանմանութեան և սրբութեան սկիզբն և պատճառ. սակայն երանելեաց և քան զմեզ լաւագունից էութեանց հրեշտակացն յայտնագոյն միանգամայն և իմանալի երևմամբ զլուսաւորութիւն իւր փայլեցուցանէ. իսկ մարդկան՝ որք վիճակեցան թանձրութեան մարմնոյ և աղցաւոր կրից և այլայլական բարուց, ան-

1 Մի օրին. Կարգաւորութեան: կամ կարգաց աւանդութեան:
2 Մի օրին. Ցաղագս եկեղեցւոյ.

կարելի է առ ամենամաքուրն մերձ կացուցանել[1] ըզ-բազմօտարութիւնս մեր, բայց միայն առաքինութբ և պարկեշտ և անարատ կրօնաւորութեամբ: Նման այսորիկ եթէ խորհեսցի ոք 'ի մէնջ առ Աստուած հայել, և ըստ կարողութեան միաւորել ընդ նմա, պարտ է նախ զաչն հոգւոյ, այսինքն զմիտս, յաշխարհական իրաց յետս դարձուցանել. և բոլորապէս արտաքս ելանել 'ի զգայարանացս հաճութենէ, և առ ինքն ժողովել. զի աշխարհական հոգս 'ի բազում մասունս ցնդէ զնա՝ ախորժակօք և հեշտութեամբ մարմնոյ: Արդ եթէ միտքն բոլորապէս 'ի ներքս դառնայ յայսցանէ, և միայնակ առանձնանայ յինքեան մաքրութեամբ, կարէ այնուհետև բուռն հարկանել զտեսութենէ աստուածային ճառագայթիցն: Եւ այս ոչ 'ի ձեռն զգալեաց աչաց, քանզի ոչ հասանէ յայս մարմնոյս խոնարհութի, այլ մաքրութեամբ մտաց հպաւորեալ յամենավայելուչ մաքրութիւնն, և յանձն իւր ստացեալ՝ մնայ անփոփոխելի[2] 'ի նոյն մաքրութիւն: Այսպիսի մաքրեալն և այսպէս յաշխարհական ցնորմանէ ամփոփեալն՝ ապա կարողանայ 'ի սուրբ գործ պաշտաման քահանայական աստիճանացս ելանել. որով մերձենայ յաստուածային սպասաւորութե պաշտօն, նմանութեամբ հրեշտակացն՝ գերագունիցն քան զմեզ էութեանց. հայի սա անձին[3] յարակայ և անփոփոխ սրբութեամբ առ սքանչելի և աստուածային լոյսն Յիսուսի, որքան հասանելի է հայել և տեսանել, և գիտութեամբ նորին տեսութեանն լուսաւորէ զխորհրդական իւր իմաստութիւն: Եւ այսպէս կարող լինի կալ 'ի սարկաւագութեան, և զանխաքուրմն 'ի հեթանոսաց մաքրել վարդապետութեամբն և ուսուցանել. առնուլ զպատիւ լուսատեսակ քահանայութեան[4], և մկրտել և լուսաւորել զորբեալսն, ելանել 'ի պատիւ քահանայապետութեան և կատարել և աստուածագործել զմկրտեալսն Հոգւոյն պարգևօք: Իսկ եթէ զինչ է հրեշտակացն և հրեշտակապետացն և պետութեանցն քահանայապետութիւն, գերագու-

1 Մի օրին. Մերձեցուցանել:
2 Մի օրին. Անփոփոխ:
3 Մի օրին. Ըստ անձին:
4 Մի օրին. Առնուլ զլուսատեսակ քահանայութեան պատիւ:

նիցն իշխանութեանց, զօրութեանց և տէրութեանց, և կամ համակարգիցն աթոռոցն էութեց, սերովբէից և քերովբէից, զորս միշտ հուպ գոլ Այ և ընդ Աստուծոյ ուսաք լինել, թէպէտ և ոչ արժանապէս՝ սակայն որպէս հասանելի էր, և որքան 'ի գրոց տեղեկացաք զնոցանէ, կարգաւ պատմեցաք, բայց սակայն այսքան կարևոր է ասել, որպէս զի նոյն ինքն՝ որ նոցա է երկնաւորացն, և որ այժմս պատմի առ 'ի մէնջ դասակարգութիւն երկրաւորացս, մի և զնոյն ունի զօրութիւն ըստ ամենայն քահանայական իրողութեան։ Բայց քանզի էութիւն աստուածութեանն վեհագոյն գոլով ամենեցուն նոցա, ըստ հպատակութեան դասուցն միջնորդութեան զամենեսեան զնոսա առ ինքն վերացուցանէ, այսպէս և որ մերս է քահանայապետ, որպէս մարդկան հասանելի է՝ նախակատարեալ, և համեմատեալ սրբութեանն Աստուծոյ և աստուածացեալ՝ կարող է և ըզնուաստագոյնսն առ ինքն բարձրացուցանել վարդապետութեամբն, մկրտութեամբն, կատարողութեամբն և ձեռնադրութեամբն, որպէս զի քահանայք եղեալ՝ հետևեսցին քահանայապետին, և սարկաւագք՝ քահանայիցն, և ժողովուրդն սուրբ՝ նոցա, և երախայքն կոչեցեալք՝ ժողովրդոցն. և աստուածային և սուրբ կցորդութեամբ արդարև էին լաւիմաստնոյ և բարւոյ հաղորդ լինել իւրաքանչիւր ումեք ըստ կարողութեն։ Արդ գերագոյն էութեանցն կարգ՝ որոց այժմ յիշումն արարաք՝ անմարմին է, վասն այսորիկ վեհագոյն և իմանալի է քահանայապետութիւնն. իսկ զմերս տեսանեմք համեմատաբար մեզ զգայական նշանակօք զանազանեալ դասուցն 'ի միմեանց և որոշեալ. սակայն միատեսակ յաստուածանալն ըստ մերում չափաւորութեն համբառնամք։ Դարձեալ զԱստուած և զաստուածային առաքինութիւնսն՝ նոցա աննիւթ գոլով յայտնապէս իմանան որպէս պարտ է, այլ մեք զգալեօք պատկերովքս առ աստուածային տեսութիւնս համբառնամք ըստ կարողութեան։ Նա և զայս ճանաչել է ճշմարտապէս, զի մի է Աստուած, որում զանազան դասք անմարմնոցն հետևին. բայց հաղորդ լինին ոչ միապէս միոյ և նորին, այլ իւրաքանչիւր ոք՝ որպէս և աստուածային կարգն բաժանեաց ըստ արժանաւորութեան զչափն։

Եւ զայս մանրամասնաբար յայլում վայրի ճառեցաք. բայց այժմ զմերս քահանայապետութե՟ սկիզբն և էու-թեան առել փորձեցայց, զամենայն քահանայապետու-թեան սկիզբն և կատարումն զՔրիստոս կարդալով: Արդ է քահանայապետութիւն՝ ըստ բարեպաշտ աւանդու-թեանս մեր՝ որոց ընդ նովաւ են սահմանեալ բոլորո-վիմբք հանդիպելոցն միահամուռ պետ և գլուխ և կա-տարումն: Վասն այսորիկ և ասի և է քահանայապե-տութիւնս մեր պարունակող ամենայն կարգացն սրբա-զանից, ընդ ինքեամբ ունելով զաստիճան քահանայից և սարկաւագաց, և զդասս ժողովրդոցն և երախայիցն. և ինքն վեհագոյն գոլով նոցա՝ կատարեալ պատուոյն ունի զհաղորդութիւն. զոր և մականունութիւնն յայտ-նէ՝ ամենեցուն ունելով նորա կարգաց զպետութիւն, յայտնի նշանակելով մակադրութիւն անուանս զԱս-տուծով և զաստուածային այրն և կրօնիւք առաքինու-թեան բնաւից վեհագոյն գոլ, և ամենայն աստուածայ-նոյ գիտութե՟ տեղեակ և ուսուցիչ: Վասնզի այսպէս գոլով մաքուր և ըստ տեառն կամացն կատարէ զմերա-կացութիւնն. և ճանաչի այսորիկ սրբութեան սկիզբն և աղբիւր մի՝ պատճառն ամենայն էից էութիւն բա-րերար Երրորդութեան. յորմէ գոլն և բարի գոլն է ա-մենայն էից վասն բարերարութեանն: Այս աստուա-ծութիւն, որ գերագոյն է քան զամենայն եղականս, երեք անձնաւորութիւն և մի աստուածութիւն, որ-ղարև մեզ անհասանելի է, սակայն ինքեան գիտելի. որոյ և կամք են բանաւորաց փրկութիւն՝ երկրայնոցս մեր և գերագունիցն էութեանց երկնայնոց: Եւ այս ան-կար է լինել յեղականս, եթէ ոչ աստուածացին աղ-բեալքն. իսկ աստուածանալն է առ Աստուած միութի՟, որպէս հասանելի է, և նմանութիւն. յաղագս որոյ և մարդկան զանազան օրինօք զգուշութիւն սահմանե-ցաւ, պատսպարիլ նոքօք, և 'ի ներհակաց մեղացն փախչել. որպէս զի ճշմարիտ հանձարոյն տեղեկասցի, և մաքրութեամբ մտաց յաստուածական լուսաւորու-թիւնն հայեսցի, կերակրելով զինքն 'ի հոգևոր ճաշա-կացն. և այնպէս կարող լինիցի զաստուածութեանն նմանութիւն 'ի յանձն բերել ըստ չափոյ մարդկան: Իսկ բնութեամբ աստուածութիւնն, յորմէ շնորհի

աստուածանալ մաքրելոյն, զողորմութիւն իւր և զբա-
րերարութիւն նախ 'ի փրկութիւն և յաստուածանալն
բանականացն և իմանալեացն էութեանցն պարգևեաց,
որոց բարեկարգապէս յաստուածութենէն կատարումն
անմարմինն և իմանալի է. քանզի ոչ արտաքուստ շար-
ժէ զնոսա Աստուած 'ի յաստուածայինսն, այլ իմացո-
ղացն ինքն իմացումն եղեալ՝ 'ի ներքուստ լուսաւորէ ըզ-
նոսա և մաքրէ աննիւթ մաքրութեամբ: Բայց մեզ
ըստ նոցա նմանութեանն[1] ծածկապէս է պարգևեալն.
այսինքն աստուածաւանդ օրինօք, յորոց սահմանեալ
պատշաճեցաւ զանազան կարգ եկեղեցւոյ նիւթական
նշանակօք ըստ մեր հասողութեան[2]: Եւ զայս աւան-
դութիւն ճշմարիտ կարգաւորութեանս՝ որքան ինչ կա-
տարեմք, յաստուածայնոց հարցն մերոց զրով և ա-
ւանդ գրոյ հաստատեցաւ 'ի մեզ: Վասնզի նոքա երա-
նելի հարքն անմարմնապէս մաքրութեամբ 'ի յերկրի
հուպ գոլով հրեշտակաց՝ կարող եղեն զերկնայնոցն կար-
գաւորութիւն մաքուր մտօք ճանաչել, և 'ի ձեան միջ-
նորդութեան բանի և գրոյ աշակերտաց իւրեանց աւան-
դել: Եւ զի անկար էր մարմնաւորացս և յաշխարհի վի-
ճակելոցս զվերնականացն գիտութիւն՝ նոցա նման որք
վարուք հայեցան 'ի հրեշտակս իմացականապէս՝ ուսա-
նել, կարևոր համարեցան մարմնաւոր նշանակօք մեզ
զնոյն տալ. քանզի ոչ ամենայն ոք կարող է, և ոչ ամե-
նեցուն ճշմարիտն գիտութիւն, որպէս ասացաւ: Այս
վայելչապէս դասք սուրբ առաքելոցն՝ որք եղեն սկիզբն
մերոյս քահանայութեան՝ նախ անձամբ զշնորհս հո-
գւոյն սրբոյ ընկալան, և յետ այնորիկ առաքեցան ընդ
աշխարհս յառաջ ածել զմարդիկ 'ի հաւատս, և զնոյն
հոգի ընձեռել նոցա. որք և աննախանձ սիրով հա-
ճեալք ընդ քարոզութիւն՝ աշակերտելոցն հաւատովք
ուսուցին ճանաչել զգալեօք պատկերովք զերկնայինսն,
և բազմազանութեամբ զծածուկսն, և նիւթովք զան-
նիւթսն, և մերովքս զգերագոյնսն: Եւ զայս զրով և
աւանդ գրոյ ետուն մեզ, խորհրդազգածս արարեալ
զհաւատացեալս սրբոյ օրինադրութեանն[3]. ոչ վասն զե-
կեղեցի 'ի հեթանոսական սովորութեցն որոշելոյ միայն,

1 Մի օրին. Բնութեանն:
2 Յօրինակս ինչ. Հաղորդութեան:
3 Մի օրին. Սրբոյ Երրորդութեան:

զոր և ոչ խորհել ամենևին պարտ է, այլ որպէս յառաջագոյն ասացի՝ մեր համեմատ զգայական իրօք սահմանել զաւանդութիւն կարգաց եկեղեցւոյ երկնայնոցն նմանութիւն։ Վասնզի կարօտացաք այսպիսեօքս յիմանալի աստուածային կոյս համբառնալ։ Եւ թէ մեք են օրինակք, կամ յորոց նմանութիւն սահմանեցաւ, յառաջակայ բանիւս հանդերձեալ եմք ցուցանել. թէ որպէս աստուածային աւանդութեան օրինադիրքն՝ անմարմին դասուց հրեշտակաց հաստատուն կայիւք, և նոցա անշփոթ կարգօք, և իւրաքանչիւր աստիճանաց զանազանութեամբ կարգեցին զպաշտօն եկեղեցականաց, յազգակցութիւն իմանալեացն վերացուցեալ զմարմնաւորացս նմանակերպութիւն։ Վասն որոյ և քոյդ սրբազան արժանաւորութեան հաւանեալ, քանզի պարտ է վերստին յիշել զքա, որպէս զի ամենագերագոյն աւանդութեանս ոչ հաղորդեցուսցես զոք յանմաքրիցն և յանարժանիցն, բայց միայն զհամակարգս քո քահանայապետս. մանաւանդ թէ և զնոսա հաւանեցուսցես՝ նախ ըստ առաքելական օրինադրութեանն խոստովանել հաւատ, և յետ այնր մաքրութեան՝ի մաքուրս մերձենալ, այսինքն քահանայից հրեշտակացելոց միայն՝ հպել յաստուածագործական օրէնս, և եպիսկոպոսաց կատարելոց ՚ի կատարեալս, և սարկաւագաց սրբոց յամենայն սուրբս, ըստ քեզ մաքրութեամբ այսպիսի աստուածային պարգևիս հաղորդութեան արժանացեալք։

ԱՅՍՔԱՆ և այսպէս երանելի հայրս[1] ուսուցանէ մեզ զեկեղեցական կարգաւորութի, ոչ վայրապար և պարզ տեսութիւն կամ արհամարհանաց գործ, այլ յառաքելոցն իջեալ աւանդութեան խորհուրդ հրեշտակական կարգաւորութեանն, և ախորժելի ճշմարտասիրացն. զոր կարևոր համարեցայ ըստ կարի խուզողութեամբ ևս փեռեկել առաջի այնոցիկ որք խնդրեն զիմացութիւնն, ժպրհութի մեծ ունելով անձամբ զանձն ՚ի սոյն շարժել՝ եթէ ոչ յեղւարց բռնադատեալ էաք հայցուածոց. որոց զհնազանդելն կարևոր վարկայ և

1 Սուրբն Դիոնեսիոս։

գործել, քան թէ արհամարհութեամբ 'ի դանդաղութեան մահիճս ննջել։

Այլ պարտ է նախ զայս իմանալ թէ երանելի հայրս՝ որում փոյթ եղև զայս սահման կարգացս քննել, մանուածով լազմաբառութեան զնոյն թագուցանէ։ Այլ որպէս սաստ վերադոյնդ առ Տիմոթէոս, որում աւանդեաց զնոյն պատսպարել, զի մի ամենեցուն լիցի համարձակելի. այսինքն զի խորհուրդք են աստուածայինք, և պարտ է խորհրդածուացն միայն զնորին զօրութիւնն գիտել։ Այլ քանզի մեք վերջինքս՝ վերջին եղաք ժառանակի ծնունդք, պասքեալք և ծարաւիք՝ վարժողական աղբերացն առեալ զպատիւ, և զգործ խորհրդածութեանն, և 'ի զօրութենէ խորհրդոցն զոր գործեմք՝ տգէտք և անիմաստք, կարևոր համարեցայ յօգուտ եղբարց հակառակ շաւղօք առ խորհրդոյս քննութիւն գնալ, և զգանձս իմաստից զոր երանելիքն 'ի խնդրողաց և 'ի սիրողաց մանուածով բառից թաքուցին, զի յառաւել երկասիրութիւնն առաւելապէս առ 'ի նոյն փափաքն աճեսցէ նոցա, ես ապառեցելոցս 'ի սիրոյ նորին և յուսահատելոցս 'ի խնդրոյ՝ մերկ և յայտնի բանիւ ցուցանեմ, թերևս գտեալ ակներև տեսեալ ձգիցիմք առ 'ի փափաք ըղձալոյն. և մի ոք զմեզ այպանեսցէ՝ տեսեալ մինչև 'ի չնչին իրաց իջեալ 'ի քննութիւն. այլ զպատճառն ուսցի, զի վասն այսորիկ քննեցաք զփոքունս ըստ մեծամեծացն, և խորհրդածեցաք զմանունսն, որպէս զի մի նոքին որպէս զհարևանցի ինչ իրս արհամարհեսցին, և մեք գտցուք պարտական դատաստանի աստղին. “Որ ոք լուծցէ մի ինչ 'ի պատուիրանացս յայսցանէ 'ի փոքունց, և ուսուսցէ այնպէս զմարդիկ, փոքր կոչեսցի յարքայութեան երկնից„։ Յայսմանէ տիրական հրամանէ սարտուցեալ տարտամս առ 'ի նորին կատարումն՝ ցանկացայ զհարցն գործավարաց պահել սովորութիւն. առ որս տեսանեմք, զի կաթնակեր ունելով զմանկունս և անկիրթ ճաշակելիս կատարեալ կերակրոց, նախ ինքեանք առնուն զհացիկն և յատամունս մանրեն, և ապա եդեալ 'ի բերան նոցա՝ առ 'ի նոյնպիսի կերակրոց ճաշակումն զողայոն դաստիարակեն։ Նոյնպէս և վարդապետաց՝ որոց պաշտօն բանին հաւատացաւ 'ի Հոգւոյն, հարկաւոր է առնուլ զկատարեալ հոգւոցն կերակուր

գրաւորական վարդապետութեան, և զնոյն յատամունս խուզողութեան մանրել և դիւրամարսականելի և ախորժականել որոց կարևոր է առ 'ի նոյն սնունդ և աճումն. զի այնպէս յառաջանալով աւուրցն՝ և ինքեանք զնոյն զօրացելին ընդունել: Ապա թէ ոչ էր այս հարկ և սէր ընդ աստուածայնոյն սնանելոյ եղբարց, և փափագ յառաջատելոյ նոցին 'ի կաթնկեր լինելոյ, որոց կատարեալն է կերակուր, որքան տմարդութիւն էր հասակի և ախտապաշար մտոյ և թերավարժ աշակերտի՝ առ 'ի յաստուածայնոյն խորհրդոյս ձեռնարկել քննութիւն. կամ զինչ հաւատալի է անձամբ յանձին զայս գործ վճարել՝ եթէ ոչ զ՟ոգին Աստուծոյ հաւատացաք ունել պաշտպան: Կամ զինչ գործի մեծաբանել կարէ 'ի գործեն, կաւն 'ի ձուլէն, կամ մանգաղ 'ի հնձէն, կամ գրիչ 'ի գրչէն, որ յիմաստութ՟է մարդկան պատշաճեցան առ պէտս գործոյն: Կամ զինչ շահ ինձ յաւետարանելս կամաւ կամ ակամայ, յորժամ տնտեսութիւն անօրէնութեան յանձն առարեալ ինձ:



## ԶԻ՞ՆՉ ՑԱՅՑ ԱՌՆԷ ՔԱՀԱՆԱՅԻՑՆ ՀԱՆԴԵՐՁ ՍԱՐԿԱՒԱԳՕՔՆ ՅԱՒԱՆԴԱՏՈՒՆՆ ՊԱՅԾԱՌԱԶԳԵՍՏԻԼ [1]

ԵԿԵՂԵՑԻՍ *տաճար և տուն Աստուծոյ է, որպէս գրեաց Պօղոս. «Ոչ է տուն տեառն տեղի ձեզ հաց ուտելոյ». և սոքա իշխանք կարգեցան առաջի Աստուծոյ ՚ի սոյնս զիւրաքանչիւր գործ կատարել: Իշխանին անմարթ է յարքունական ապարանսն և նորին առաջի [2] զզգեստուց փոփոխումն առնել. այլ պարտ է որպէս զի առաջի նորա միայն իշխանականաւն երևեսցի փառօք, և առա զանէրունին կատարեսցէ պաշտօն գործոյ, և ոչ զանձին. վասն այսորիկ հանդերձեալք կատարել զգործն Աստուծոյ, այսինքն զպատարագն սուրբ, յարտաքին զաւիթն զարդարին, և ՚ի տաճարս Աստուծոյ իւրաքանչիւր պատուոյ կերպարանօք զանազանապէս ներգործեն զայլ և այլ պաշտօն տնօրէնութեան աստուածային խորհրդոյն: Բայց դու տես ինձ և զայս, զի զգենուլն և մտանելն առաջի Աստուծոյ նոցա է՝ որոց սիրտն է ուղիղ ընդ նմա. և հաւատարմութիւն կամաց ծառային առնէ զպաճուճանս նորա ըղձալի արքային. ապա թէ զներքին պայծառութիւնն մտաց՝ որոյ ապացոյց է մարմինն՝ ոչ ունի հաւասար նմին պայծառ և առ Աստուած բարձրացեալ, կարծեմ յանդգնութիւն մեղ և դատապարտութիւն զարտաքինս. այսպէս և ոչ ներքին պայծառութիւնն առանց արտաքոյս [3] է կատարեալ ՚ի մարմնով հոգիացելոցս:*

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԻՆ ՈՐ ՆԱԽ ՔԱՆ ԶԳԵՆՈՒԼՆ

«ՅԻՇԵԱ *Տէր զԴաւիթ և զամենայն հեզութիւն նորա»: Դաւիթ անուամբ զորդին Դաւթի կոչեմք զՔրիստոս, որ թագաւորեաց ՚ի վերայ տան նորա ՚ի յաւիտեան, և խնդրեաց ՚ի նմանէ զհեթանոսս ՚ի ժա-*

1 Մի օրին. Զգէստաւորիլ:
2 Այսինքն առաջի արքայի:
3 Մի օրին. Արտաքնոյս է կատարեալ մարմնով հոգիացելոցս:

ռանգութիւն, յորժամ ծնաւ այսօր ըստ մարմնոյ, և հեզ երևեցաւ քան զամենայն որդիս մարդկան. մինչ զի ձայնել բարձրաձայն. "Ուսարուք յինէն, զի հեզ եմ և խոնարհ սրտիւ: Եկայք առ իս աշխատեալք, և առէք զլուծ իմ քաղցր՝ հանգերուք": Նա ամրացաւ եկեղեցի, և այսպիսի քաղցր տեառն անուն կոչեցեալ է 'ի վերայ մեր. վասն այսորիկ հանդերձեալ խօսել ընդ Աստուած Հայր, և խնդրուածս 'ի նմանէ առնուլ, ոչ զիւր ինչ յիշէ առաջի նորա բարեգործութիւն, այլ զօծելոյ տեառն իւրոյ Յիսուսի՝ ասելով. յիշեա տէր Աստուած Հայր զՔրիստոս, որ ըստ մարմնոյ Դաւիթ, և տես զանչափ հեզութիւն նորա և զխոնարհութիւն 'ի մարդանալն վասն մեր և վասն մերոյ փրկութեան: Եւ այս թէ որչափ յաջորդ բանիւս յայտնէ. "Որպէս երդուաւ տեառն և ուխտս եդ Աստուծոյ Յակովբայ": Եւ ո՞ւր երդուաւ Քրիստոս, Աստուծոյ Հօր, թերևս ասիցէ ոք: Երդումն մարդկայինն 'ի մէջ համակամ աստուածութեանն ոչ է. բայց այս գործ տնօրէնութեան իւրոյ զուխտադրութիւն է Որդւոյ առ Հայրն. ըստ այնմ զոր ասէր, զգործն զոր ետ ինձ Հայր՝ պարտական եմ իբրև զուխտադիր առնել և կատարել:

"Թէ ոչ մտից 'ի յարկս տան իմոյ, թէ ելից յանկողինս մահճաց իմոց, թէ տաց քուն աչաց իմոց կամ նինջ արտևանանց իմոց, կամ հանգիստ իրանաց իմոց, մինչև գտից զտեղի յարկի տեառն Աստուծոյ Յակովբայ": Տուն և յարկ և մահիճք Քրիստոսի էր հայրական ծոցն, իսկ քուն և նինջ էր անտես առնելն ողորմութեամբ զմարդիկ, և հանգիստ էր փառք աստուածութեանն: Ի ծոցոյ և 'ի տանէ հանգստենէ երկնից ել և եկն յաշխարհս. և նա որ նախ ննջէր 'ի խնամելոյ զսոսա, կանխեաց հանապազ վարդապետութեամբն և բժշկութեամբն 'ի մարմնոց և 'ի հոգւոց նախախնամութիւնն: Եւ այնչափ աշխատեցաւ խաչիւ և չարչարանօք, մինչև եգիտ զտեղն և զյարկն՝ ուր Աստուած հանգչէր, այսինքն զհեզս և զխոնարհս, և զորս դողան 'ի բանից նորա: Ո՛ որ ծանուցեալ Առաքելոյն Պօղոսի ասէր. "Դուք տաճար էք Աստուծոյ": Եւ ինքն ասէրն յորժամ եգիտ զտեղի բնակութեանն

ասէր, "Ես և Հայր եկեսցուք և օթևանս առ նմա արասցուք ,,: Արդ զայս ամենայն աշխատութիւնս Որդւոյն՝ կամաց հաճութեամբ Հօրն՝ նմին յուշ ածեալ, և զմահու չափ հնազանդութիւն նմին հեզոյն 'ի գործոյն հրատարակեալ, պատմէ և զեղանակ մեր զնոյն աստուածային խորհրդոյն ուսուցանելոյ:

"Ահա լուաք զնմանէ յԵփրաթայ, և գտաք զնա 'ի դաշտս մայրեաց ,,: Ոչ եմք ասէ իբրև զանմիտ հեթանոսս անփորձ յայսպիսի աստուածագործակ տնօրէնութեանց, այլ լուաք զմարմնով երևումն Աստուծոյ 'ի վերայ աշխարհի, և 'ի պէտս խաղաղութեան երկնի և երկրի՝ զծնունդն յԵփրաթայ Բեթղեհեմի. և յորժամ լուաք, հաւատացաք 'ի նա բոլորով սրտիւ, և գտաք զնա իսկական էութեամբն՝ ոչ միայն 'ի ծոց քո, որ է տուն և մահիճք իւր սեփական, և յաթոռ փառացդ հայրական, այլ և 'ի հարթ 'ի խոնարհ դաշտս երկրի մարմնով երևեալ 'ի մէջ մարդկան, և հաճեալ և բնակեալ ըստ հոգիս յատակեալս խոնարհութեամբ, և բուսուցանողս ծառոց և սաղարթուց առաքինութեան. զի յորժամ այնպիսի ծառքն յայնպիսի դաշտն անտառանան՝ այն է նորա հանգիստ հովանւոյ, և ընդ այնպիսի գերանօքն բազմի՝ որպէս և ասաց առ հարսնն:

"Մտցուք 'ի յարկս նորա և երկիր պագցուք 'ի տեղւոջ ուր կայցեալ են ոտք նորա ,,: Յարկս Քրիստոսի բանս զհայրական ծոցն ստուգեաց. արդ որպէս զայն մարդիկ խնդրեն մտանել, ուր ոչ ոք եմուտ բայց միածինն Որդին, անցեալ 'ի ներքին կողմն վարագուրին: Արդ վասն զի նա եմուտ, վասն այնորիկ և մեք խնդրեմք մտանել. զի թէ զառհաւատչեայն ոչ ունէաք, անյոյս էաք. բայց որովհետև նա քահանայապետ է մեզ, անդանոր եղև և սրբելոցս նովաւ մտանելն համարձակելի. և զի այսպէս է, Պօղոս խրախուսէ. "Մատիցուք, ասէ, առաջի աթոռոյ շնորհաց նորա ,,: Եւ մտանելն զինչ այլ է, եթէ ոչ իմացական աղօթիւք հպելն յիմանալին: Այս մտիցս, խնդրեմք հայր Աստուած, վասն հեզութեան Քրիստոսի քո և մերոյ յուսոյ, արժանի արա զմեզ բարձրանալ 'ի յերկրէ, և մտանելով 'ի յերկինս՝ կախիլ զոտից յուսոյդ մերոյ, և հոգւով ճշմարտութեամբ երկիր պագանել 'ի վե-

ըմն տեղւոջ՝ ուր հանգեաւ ոսկր նորա[1], յետ անքուն աշխատութեանն որ յերկրի :

« Արի տէր 'ի հանգիստ քո, դու և տապանակ կտակի սրբութեան քո ,, : Ո՛վ թէ որքան էառ բանս համարձակութիւն՝ առաւելեալ 'ի հեզութիւնն Քրիստոսի, զոր մինչև ցայժմ զնորայն առաքինութիւն որ ըստ մարմնոյ վասն իւր Հօրն նուիրէր, իսկ այժմ կախեալ զտուիցն՝ զնոյն ինքն զտէրն յարուցանէ 'ի տեղւոն, ուր կայ լինել իւր աղօթակից. արի, ասէ, տէր, այդր 'ի հայրական աթոռոյդ, ուր հանգեար, և բարեխօսեա վասն մեր որպէս խոստացար, առնուլ 'ի դիմանէ զհօգւոյն և տալ մեզ. և ոչ դու միայն աստուածութեանդ փառօք, այլ և տապանակաւ մարմնոյդ՝ որ երկրպագեցար Աստուած մի դովաւ յերկնաւորաց և յերկրաւորաց. քանզի այդ է որ սովորէ հանապազ առնուլ մեզ զողորմութիւն. և դովաւ յանդիման երեսաց Հօրդ քահանայապետեա մեզ : Եւ այս թէ ո՞յր աղագաւ, ինքն յայտնէ ասելով :

« Քահանայք քո զգեցցին զարդարութիւն, և սուրբք քո ցնծալով ցնծասցեն ,, : Սուրբք են ամենայն դասք քրիստոնէից, և երիցունք առաջնորդք նոցա քահանայքն. արդ վասն այսորիկ, ասէ, յարուցեալ մարմնով քո բարեխօսեա, որպէս զի նախ առաջին առաջնորդք ժողովրդեանս զսրբութիւն և զարդարութիւն և զխորհս Հոգւոյդ որպէս զպատմուճան արկցուք զանձամբ, և լիցուք այդու համարձակ կալ 'ի մէջ ժողովրդեանն, որք 'ի զանազան մեղաց ըմբռնմանէ վարանեալ են տրտմութեամբ. որոց պարտուցն փոխան արժանացեալք զքեզ պատարագել, յամենեսեան 'ի նոսա զցնծութիւն և զուրախութիւն տարածեմք, ծանուցեալ զմինդ փախման ամենեցուն մեղաց մեռեալ[2] :

« Վասն Դաւթի սիրելւոյ քո մի դարձուցաներ զերեսս օծելոյ քում ,, : Մեծ էր խնդրուածն զոր հայցեաց, արդարութիւն և ցնծութիւն՝ երիցանցն և ժողովրդոցն[3]. վասն այնորիկ դարձեալ զՈրդւոյն միջնորդութենէ բուռն հարկանէ՝ յարուցեալ զնա

1 Մի օրին. Ուր հանգուցեալ է ոսկր նորա :

2 Մի օրին. կենաց մեռեալ :

3 Մի օրին. ժողովրդեանն :

առաջի Հօրն. և այսնա, որում ինքն Հայրն վկայեաց. "Դա է, ասէ, որդի իմ սիրելի". արդ վասն սիրելի Որդւոյդ Քրիստոսի քո ծնելոյ, մի դարձուցաներ զերեսս քո յօծակից անդամոց նորին քրիստոնէից, առ 'ի դերև առնել զխնդրուածս մեր: Քանզի բաւական է սիրելւոյդ արդարութեանն յիշատակ զամենեսեան զմեզ զմեղուցեալքս մաքրել 'ի պարտեաց, և զքեզ յողորմութիւն շարժել 'ի վերայ մեր. քանզի և զայս ինքն խոստացաւ մեզ, թէ "Զոր ինչ խնդրիցէք յանուն իմ 'ի Հօրէ իմմէ, առնուցուք". և զի նա խոստացաւ, յայտ է թէ զքո կամքդ յայտնեաց, զի որպէս լսէ 'ի քէն՝ դատի. և ահա դու երդուար 'ի փառս քո՝ նովաւ զմեզ փրկել. ըստ որում ասէ.

"Երդուաւ տէր Դաւթի ճշմարտութեամբ և ոչ ստեացնմա, 'ի պտղոյ որովայնէ նորա նստուցանել յաթոռ նորա": Պտուղ որովայնի Քրիստոսի են ծընեալքն 'ի վարդապետութենէ նորա հաւատովք, ըստ որում ասէր առ առաքեալսն, "Որդեակք իմ". արդ Քրիստոս վասն նոցա և վասն ամենայն հաւատացելոց բանիւն նոցա աղօթեաց. "Հայր, կամիմ զի ուր եսն իցեմ, և սոքա ընդ իս իցեն": Հայրն արար զկամս նորա. այն իսկ[1], զի զնա եդ իշխան 'ի վերայ երկնաւորաց և երկրաւորաց. իսկ նա փոխանակ իւր եդ զդասս առաքելոցն՝ ասելով. "Որպէս առաքեաց զիս Հայր իմ, և ես առաքեմ զձեզ": Արդ զայս 'ի մէջ առնու, որպէս զի ցուցցէ Աստուծոյ՝ թէ իբր 'ի պարտականէ խնդրեմք 'ի քէն զողորմութիւն, որ կարգեցաք յաթոռ Որդւոյ քո յաջորդք առաքելոցն սրբոց:

"Թէ պահեսցեն որդիք քո զօրէնս իմ, և զվկայութիւնս իմ զոր ուսուցից նոցա, որդիք նոցա նստցին յաւիտեանս յաւիտենից յաթոռ քո": Թէպէտ և զԱստուած պարտական ողորմութեանց դատեաց բանս, ոչ դանդաղի և զորպէսն օգնականութեան նորին ցուցանել. այսինքն երդուայ իմ միածնին, նստուցանել յաթոռ նորա զմարդիկ, բայց ոչ թէ վայրապար նըստին[2], այլ յարաժամ ընդ հետս շաւղաց արդարութեան նորա ընթանան. իսկ ապա թէ 'ի համանմա-

1 Մի օրին. Յայնմիկ: 2 Մի օրին. Նստին:

նութեան վերջանման, և յաթոռոցն կործանման, և Քրիստոս որ հնազանդ եղև Հօր մահու չափ և մահու խաչի՝ առ 'ի նմանէ անուն 'ի վեր քան զամենայն անուն, և մեզ փրկութեան շնորհ, ոչ վայրապար, այլ յորժամ որդիքս վարդապետին՝ որպէս զնա ջանասցուք պահել զօրէնս և զվկայութիւնս Աստուծոյ։ Ահա այս կատարի 'ի մէնջ, միանձնաւորապէս խոստանալ մեզ զփառացն ժառանգութիւն. և ոչ երբէք հետևողքս յետնեալ գտանիցին յառաքելական պատուոյն՝ նոցին գործոցն հաւասարեալք. այլ միշտ պտուղ վարդապետութեան վերջնոցն նոցին յաթոռ առաջնոցն. Եւ վասն. քանզի

“Հաճեցաւ տէր ընդ Սիոն և ընտրեաց բնակել 'ի նմա. ասէ. այս է հանգիստ իմ յաւիտեանս յաւիտենից. 'ի սմա բնակեցայց, զի հաճեցայ ընդ սա”։ Հաճեցաւ Արդարոյն արեամբն, որ ետ զանձն իւր վասն մեր, և ջնջեաց զձեռագիր յանցանաց մերոց. յորժամ այն պատարագեցաւ մահուամբն Քրիստոսի, Աստուած Հայր հաճեցաւ 'ի մարդիկ, ըստ որում գրէ Պօղոս. “Ըստ հաճութեան կամաց իւրոց եղև այս ամենայն 'ի գովեստ փառաց շնորհաց իւրոց”. զայս ցուցանէ և մարգարէս. նա և ոչ միայն հաճեցաւ 'ի նոր Սիոն յեկեղեցի հեթանոսաց, այլ և ընտրեաց զսա յամենայն ազգաց իւր 'ի բնակութիւն. ըստ որում ասաց տէրն, “Դու Հայր 'ի յիս և ես 'ի քեզ, զի և սոքա 'ի մեզ իցեն”. և այս ոչ եթէ յայժմու յաւիտենիս միայն որ անցաւոր է, այլ բնակէ 'ի սուրբս իւր 'ի միանձնաւոր յարութեանն[1] առ 'ի լինել Աստուած ամենայնում յամենայնի։

“Զորս սորա օրհնելով օրհնեցից, և զաղքատս սորա լցուցից հացիւ”։ Զայս 'ի դիմաց Աստուծոյ առնու այսուհետև ասել բանս. դուք ասէ խնդրեք, ով մարդիկ, վասն իմոյ սիրելւոյս չդարձուցանել զերեսս 'ի ձէնջ, որք անդամք էք սորա. այլ ծանիք[2], զի ես ոչ թէ սորա վասն զայս միայն արարի ձեզ, այլ և դաշամբք զձեզ աթոռակից սմին արարի, վասն մեծի նուիրաց մահուն զոր փոխան ձեր պատա-

1 Մի օրին. Յաւիտեանն։ 2 Մի օրին. Ծանիցուք։

ըազեաց ինձ կամաւ. յետ այնորիկ և հաճութեամբ ընտրեցի զձեզ ինձ աթոռ լինել քերովբէից հաւասար: Յաւելի և զօր սորա անուամբ անուանիք, օրհնութեամբն որ ոչ անցանէ՝ հոգևորաւն օրհնել, և զաղքատացեալս 'ի ձէնջ՝ յիմաստութեան և յարդարութեան հացէն կերակրել: Եւ զի այսմ արժանաւորեցայք, տես թէ որպէս շնորհակալ լինի առաքեալ. "Օրհնեալ է Աստուած, ասէ, որ օրհնեաց զմեզ ամենայն հոգևոր օրհնութեամբ յերկնաւորս 'ի Քրիստոս", զի Քրիստոսիւ և որպէս զնորա օրհնեցայք 'ի Հօրէ:

"Քահանայից սորա զգեցուցից զփրկութիւն, և սուրբք սորա ցնծալով ցնծասցեն": Տես զանբաւ մարդասիրութեանն շնորհ. զի զոր մեք 'ի սկզբանն Քրիստոսիւ և վասն նորա խնդրեցաք 'ի Հօրէ, յետ այլ պարգևացն և զայս առատապէս ընծեռէ. քանզի անդ զՔրիստոս տապանակաւ մարմնոյն յարոյց առաջի Հօրն, և կացուցեալ զնա յանդիմանն՝ խնդրեր[1] վասն նորա ոչ դարձուցանել զերեսս, այլ զգեցուցանել երիցանց զարդարութիւն. իսկ հայրն տեսեալ զնա յաղաչանս վասն իւրոցն՝ ակնարկէ յԱրդին, ասելով. քահանայից սորա՝ որ խնդրեցիք[2] զարդարութի, վասն սորին ոչ միայն զայդ զգեցուցանեմ, այլ պատարագաւն զոր մատուցանէք՝ նախ առաջին զձեզ փրկեմ, և ապա զամենայն ժողով սրբոցդ 'ի ցնծութիւն արդարութեամբ փոխեմ:

"Անդ ծագեսցէ եղջիւր 'ի Դաւիթ, պատրաստ արարից ճրագ օծելոյ իմոյ": Անդ, ասէ, յայտ է թէ 'ի Սիոն, ուր հաճեցաւ բնակել, ծագեսցէ եղջիւր 'ի Դաւիթ. եղջիւրն ուժգնութեան ապացոյց[3] և զէն հարկանող թշնամեաց. ըստ այնմ, "Այն են եղջիւրքն որ ցրուեցին զՅուդայ և զԻսրայէլ": Արդ անդ 'ի մէջ նոր Սիոնի՝ ուր բնակել հաճեցայ, օրհնեցի և փըրկեցի, տաց նոցա և 'ի նոսա եղջիւր և զօրութիւն ընդիմածինս իմ Որդի, որով կարողանայք խոցոտել զթըշնամիսն: Եւ զայս ո՞ է որ առնէ, եթէ ոչ մահ նորին

1 Մի օրին. խնդրէ:
2 Մի օրին. խնդրիցէք:
3 Մի օրին. Եղջիւրն ուժգնութեան է փարացոյց:

'ի մէջ մեր և յիշատակ ։ "Պատրաստ արարից ասէ զճրագ օծելոյ իմոյ"․ այսինքն զլոյսն իմաստութեան և գիտութեան, որ ծագի սովաւ ձեզ միշտ առանց խնայելոյ, պատրաստեալ առաջի նոցա որք կամին տեսանել ։

"Թշնամեաց նորա զգեցուցից զամօթ, այլ 'ի վերայ նորա ծաղկեսցի սրբութիւն իմ"։ Ո՞ է այլ թըշնամի եկեղեցւոյ Քրիստոսի, և որոց նա է եղջիւր զօրութեան, եթէ ոչ խաւարին իշխան և լուսոյն հակառակ․ նորա ասէ ամօթ զգեցուցանեմ ։ Արդարև մեծ ամօթ է նորա և պատկառանք տկարութեանն, յորժամ տեսանէ զմարդիկ՝ զորս ինքն մեծաւ ջանիւ գթեցոյց և տրտմեցոյց, մահուամբն Քրիստոսի և ողորմութեամբն՝ դարձեալ հաստատեալս և զուարճացեալս, յետ այնորիկ և նովաւ զօրացեալս և լուսաւորեալս, վասն այսորիկ ասէ․ ձեզ զփրկութիւն զգեցուցանելով՝ թշնամեաց ձերոց ամօթ և տրտմութիւն տարածի 'ի վերայ․ այլ 'ի վերայ ձեր ոչ միայն այս, այլ և իմ սրբութիւնս ծաղկի, զի աստուածահաճասարք լինիցիք՝ յԱրդւոյն Աստուծոյ սեղանոյ վայելեալք, որում փառք յաւիտեանս յաւիտենից․ ամէն ։

## ԶԻՆՉ ՔԱՐՈԶՈՒԹԻՒՆ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ ՅԵՏ ԱՅՍՈՐԻԿ

ՍԱՐԿԱՒԱԳՆ յորժամ զայսչափ առատութիւնս սիրոյ և խոստմանցն Աստուծոյ ծանեաւ՝ 'ի սաղմոսելն ամենեքեան, ապա հրաման տայ ամենեցուն․ ով եղբարք, ծանեայք մարգարէիւս, թէ որչափ գթութիւնն Աստուծոյ 'ի ձեռն Քրիստոսի հեղաւ 'ի վերայ մեր․ արդ քաջալերեալք այսու յուսով, "Խնդրեսցուք հաւատով և միաբանութեամբ 'ի տեառնէ, զի զողորմութեան զշնորհսն արասցէ 'ի վերայ մեր՝ տէրն ամենակալ, կեցուսցէ և ողորմեսցի"։ Այսինքն լուայք, զի խոստացաւ տէրն, եթէ երկու 'ի ձէնջ միաբանեալք, զոր ինչ խնդրեսցեն հաւատով՝ առնուցուն․ արդ մեք կըցորդեալք մարմնով լծեսցուք և զխղճս հոգւոց և զհաւատս կամաց 'ի միաբանութիւն, և խնդրեսցուք 'ի

1 Մի օրին․ Հաղորդութեանցն ։

տեառնէ շնորհս մեզ՝ զմեծ զողորմութիւն նորա, որ կարող է զառաջարկութիւնս տնօրինել 'ի բարի: « Ամենակալ տէր Աստուած մեր, կեցո և ողորմեա »: Յորժամ ուսոյց նոցա զճանապարհս աղօթիցն իբրև զվերակացու և զդատաւորական, ապա յԱստուած[1] դարձուցանէ զբանն. տէր, ասէ, որ ամենեցուն տիրես, և զամենեսեան նախախնամես, կեցո զմեզ ողորմութեամբ 'ի կործանմանէ մեղաց և 'ի սայթաքելոյ խորհրդոց: Իսկ եղբարցն ծանուցեալ, թէ զայս արժան է խնդրել յԱստուծոյ՝ զկեցուցանելն, կցորդեն և ինքեանք վարդապետին բանից՝ զնոյն երկրորդեալ ասելով. Կեցո տէր: Զի յորժամ դու պաշտպանեալ խնամովք կեցուցանես, չիք ոք որ համարձակի կործանել: « Ողորմեաց մեզ տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում »: Զայս և որոց ըստ սմա զօրութիւնք, վերագոյն ասոր դարձեալ 'ի քարոզութեան սարկաւագին:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ԱՂՕԹԻՑՆ

ՔԱՀԱՆԱՅՆ, մինչդեռ նոքա բարձրաձայն աղօթեն, ընտանեբար և խորհրդապէս խօսի ընդ Քրիստոսի, ասելով. « Որ զգեցեալ ես զլոյս որպէս զհանդերձ, տէր մեր Յիսուս Քրիստոս, անճառելի խոնարհութեամբ 'ի յերկրի երևեցար և ընդ մարդկան շրջեցար »: Մեծ էր և անչափ խոնարհութիւնն Քրիստոսի 'ի մարդ լինելն, զոր սկիզբն բանիս կարգէ. զի թէ զայս ասէ ընկալաք 'ի քէն մինչ ոչ խնդրեցաք, հաւատամք այսու և հայցուածոցս ոչ դառնալ ունայն: « Որ եղեր քահանայապետ ճշմարիտ ըստ կարգին Մելքիսեդեկի, և զարդարեցեր զեկեղեցի քո սուրբ »: Կարգ Մելքիսեդեկի էր[2] միանձնաւորելն 'ի քահանայապետութեան, որպէս ասէ Պօղոս. ըստ նորա ընթացիցն երևեալ Քրիստոսի՝ ճշմարտեաց զՄելքիսեդեկ 'ի ստուերական ապացոյցն, և եմուտ յերկինս՝ մեզ ճշմարիտ քահանայապետ և քաւիչ. որ և քաւեալ զեկեղեցի իւրով պատարագաւն՝ զարդարեաց զսա շնորհօք Հոգւոյն, զոր առ 'ի Հօրէ յետ հաշտութեան, և առաքեալ

1 Մի օրին. Ամ Աստուած: 2 Մի օրին. է:

յերկիր՝ զարդարեաց նովաւ զհաւատացեալս զանազան շնորհաց պսակօք, ըստ այնմ. « Ումեմն 'ի Հոգւոյն տուեալ է բան իմաստութեան, այլում բան գիտութեան», և որ զհետ այսորիկ. « Տէր ամենակալ, որ պարգևեցեր մեզ զնոյն զերկնային զհանդերձ զգենուլ»: Երկնային հանդերձ դարձեալ զշնորհս Հոգւոյն ասէ, որով զարդարեցաք. զի զնա նախ Քրիստոս յինքն ընկալաւ և ապա 'ի մեզ սփռեաց, մինչ զի լինել մկրտելոցս 'ի Քրիստոս Հոգւովն զՔրիստոս զգենուլ. զայս շնորհ յիշէ. « Արժանի արա և զիս 'ի ժամուս յայսմիկ՝ զանպիտան ծառայս քո, որ համարձակիմս և մերձենամ 'ի հոգևոր պաշտօն փառաց քոց, որպէս զի զամենայն ամբարշտութիւնս մերկացայց, և զարդարեցայց լուսով քո»: Դու, ասէ, որ զայսոսիկ զօրս յիշատակեցի՝ արարեր, այժմ և զիս արժանացո շնորհաց քոց. խառնեալ ընդ առաջին երախտիսն իմաստութեամբ և զիւր թախանձանսն. քանզի այս դիւրաւ ածել կարէ զտէրն յունկնդրութիւն, յորժամ նորա զծայրագոյն շնորհսն խոստովանի, և ինքն զյետին խոնարհութիւն ողջունէ. զանպիտան ծառայս քո ասէ, ըստ այնմ, « Յորժամ զամենայն ինչ կատարիցէք՝ ասասջիք ծառայս անպիտանս զձեզ գոլ». այլ զի հոգևոր պաշտօն դնէ, ցուցեալ թէ գոյր և մարմնաւոր պաշտօն Աստուծոյ 'ի հնումն, որք ոչ կարէին ըստ միտս քահանայագործել. այլ միայն կերպակրովք և մարմնոց արդարութեամբ, այսինքն զի 'ի զոհել քահանային՝ միայն զմարմնական նշանակսն կատարէր, և ոչ իմացականապէս առ Աստուած հարկաւորէր ձկտել. իսկ մերս գերազանցէ քան զնոցայն, զի հարկ է այնմ որ զմարմնական նշանակսն ունի առաջի՝ մտաւոր աղօթիւքն առ Աստուած մտանել. և առ Աստուած զիա՞րդ կարէ մերձենալ, թէ ոչ պարզեսցի 'ի շաղախմանէ մեղացն սրբեալ. վասն այսորիկ, ասէ, հոգևորիս եմ գործաւոր և պաշտօնեայ, և անձամբ զանձն մաքրել տկարացայ. աղաչեմ տէր, նախ դու լեր ինձ քահանայ և սրբիչ շնորհօք քո, և մերկացո զիս յամենայն թխատիպ մեղաց, որով տգեղացաւ հոգիս 'ի պիղծ հանդերձիցն, և ապա ընդ զգենուլ մարմնոյս զլուսատեսակ պատմուճանս՝ զգեցո և հոգւոյս զլոյս իմաստութեան և գիտութեան և սրբութեան:

“Անկեա յինէն զչարիս իմ, և թօթափեա զյան-ցանս իմ, զի արժանի եղէց հանդերձեալ լուսոյդ առ ՚ի քէն”: Դարձեալ թախանձանք մաքրութեան. քանզի գիտէ հաստատութեամբ, թէ սուրբ Հոգին իմաստութեան փախչի յայսպիսի կրից, սակս այսորիկ և ժտի նախ ՚ի նոցանէ սրբիլ, և ապա զլոյս Հոգւոյն ընդգրկել, զի կարող լիցի զհոգևոր պաշտօն հոգիըն-կալ մտօք կատարել: “Շնորհեա ինձ քահանայական փառօք մտանել ՚ի պաշտօն սրբութեանց քոց ընդ այ-նոսիկ՝ ոյք անմեղութեամբ պահեցին զպատուիրանս քո”: Մեծ են փառք քահանայութեանն յարժանա-պէս ունողին, ընդ Աստուած և ընդ մարդիկ միջնորդ լինել, և յԱստուծոյ առնուլ զշնորհս և ՚ի նոսա բաշ-խել. վասն այսորիկ յետ մաքրութեան և զայս երկրորդ շնորհ ՚ի նմանէ խնդրէ առ ՚ի կարող լինել մաքուր մտօք մտանել ՚ի սրբութիւնն երկնից, և մարմնով ՚ի պաշտօն սրբոյ և տէրունի սեղանոյն:

“Ընդ այնոսիկ, ասէ, ոյք պահեցին զօրէնս քո”: Զի ոչ եթէ ինձ միայն խնդրեմ զայս պարգև, այլ բազումք նախ քան զիս զօրացեալք և անմեղութեամբ ՚ի փառս անուան քո զայն գործեցին:

“Զի և ես պատրաստ գտայց երկնաւոր առա-գաստին ընդ իմաստուն կուսանսն փառաւորել զքեզ Քրիստոս՝ որ բարձեր զմեղս ամենեցուն”: Յորժամ իմաստնոցն, ասէ, լինիմ շնորհօք գործակից, ապա իշխեմ և նոցին առագաստին ակն ունել. արդ եթէ զայս այժմ ինձ շնորհեսցես ըստ նոցա գործել, հա-ւատամ և այնմ լինել ժառանգակից ՚ի ձեռն քո, որ ոչ թէ զոմանց, այլ զամենեցուն մեղս բարձեր Քրիս-տոս: Իսկ կուսանք ընդ որս փափագէ մտանել, են հա-մադասակից նորա ժառանգաւորք եկեղեցւոյ՝ առա-կեալք ՚ի կուսանս վասն անապական շնորհի պատուոյն որով կնքեցան, և հինգ հինգ չարք յիմարքն, և բա-րիքն իմաստունք: Բայց հինգ թիւ, եպիսկոպոս, քա-հանայ, սարկաւագ, կէս սարկաւագ, դպրակարգաց. իսկ ընդ առաջ փեսային ելանել լապտերօքն՝ պատիւ և իշխանութիւն գործոյն ուրաքանչիւրոցն է՝ զոր ըն-կալան առաջի նորա յայսմ աշխարհի, և ընթանան նովաւ ՚ի հանդերձեալ կեանսն: “Յիմարքն առին

զլապտերսն , և ձէթ ընդ իւրեանս ոչ բարձին „ , այս ինքն՝ զի ոմանք 'ի սոցանէ 'ի հինգ դաստացս զշնորհն զոր ընկալան , և զձէթ իշխանութեանն յայսմ աշխարհի ծախեցին , զի ոչ փութացան նովաւ 'ի փառսն Աստուծոյ՝ ըստ որում և ուխտեցին , այլ եպիսկոպոս փոխանակ գործելոյ զառաքինութիւնն միայն փառաւորէր և պատուէր , և քահանայն զպատիւն ունելով՝ 'ի քահանայագործելն դրժէր , նոյն և այլքն . զի ծախեցին զհանդերձեալ փառսն և զհեշտութիւնն , և գնեցին նովաւ զառժամանակեայս , այսինքն զի 'ի պատիւն որով 'ի հանդերձեալն էր նոցա խոստացեալ փայլել , յաշխարհ փայլեցան . և 'ի պէտս այսր փառաց զնոյն ստացան . վասն այսորիկ տարան ընդ ինքեանս 'ի հանդերձեալն սոսկ զլապտերն առանց ձիթոյ , այսինքն միայն զանունն առանց հոգւոյն . իսկ իմաստունքն տարան ձէթ ընդ ինքեանս , զի 'ի հինգ դաստացս բազումք զշնորհն զոր ընկալան՝ երկիւղիւ և զգուշութեամբ պահեցին , և ոչ 'ի մարդկանէ նորին վասն փառաւորեցան . այլ բազումք որպէս և ծանեաք զորբոցն՝ աքսորեցան և անարգեցան , և զայս ամենայն արհամարհեալ՝ միայն իւղոյն պատկառ կացեալ՝ զնոյն պահեցին . վասն այսորիկ և 'ի հանդերձեալն տարեալ լուցին , և ընդ փեսային սիրելւոյ նովաւ պաճուճեալ 'ի յառագաստն մտին , որպէս ուսուցանէ զայս ընդարձակագոյն հայրն մեր Եփրեմ 'ի ճառ մնանսխին և զատկի , որոց լիցուք իմաստութեան արժանի և մեք 'ի Քրիստոսէ նոցին զօրացուցանողէ , որ է օրհնեալ յաւիտեանս յաւիտենից . ամէն :

## ԶԻՆՉ ՅԱՅՏ ԱՌՆԷ ՅԵՏ ԶԳԵՆԼՈՑՆ ԱՌ ՀՈԳԻՆ ՍՈՒՐԲ ԱՂՕԹԵԼՆ

ՀՈԳԻՆ սուրբ յետ Քրիստոսի տնօրէնութեանն եղև վերակացու մեզ և պաշտպան , ըստ այնմ . “ Առ ձեզ բնակեսցէ , և ընդ ձեզ եղիցի յաւիտեան „ . քանզի 'ի Նմանէ զրկեցաւ առաջին մարդն յանցանօքն , և դարձեալ ընկալաք զնա ' Քրիստոսի շնորհօքն :

1 Մի օրին . Զնոյն :

Սա Հոգիս է որ զօրացուցանէ զդասս հրեշտակացն միջնորդութեամբ իւրեանց առ 'ի գիտութիւն և 'ի փառափագ Աստուծոյ, և 'ի ձեռն նոցին սրբոց՝ զուարթնոցն սպասաւորութեան իջանէ և 'ի մեզ, և կատարէ մեօք զպէսպէս տնօրէնութիւն եկեղեցական գործոց ։ Սան այսորիկ յետ խնդրելոյ 'ի Քրիստոսէ զսրբութիւնն որպէս 'ի հարազատէ և 'ի բնութենակից վշտակցէ, և զգենլոյ մարմնով զմաքուր պատմուճանն, և հաւատալոյ ընդ նմին Հոգւոյն մաքրութեան Քրիստոսիւ, այնուհետև առ Հոգին մատչի աղերսել. զի մի արգելցէ զհեզութիւն իւր, զշնորհս և զգործակցութիւն յառաջիկայ գործոյն. և զայս անկեալ 'ի վերայ երեսաց մատուցանէ, զայն յայտ առնելով, թէ մինչդեռ չև եմ 'ի քէն զօրացեալ, կորագլուխ եմ և անհամարձակ ընդ Աստուած խօսելոյ. իսկ յորժամ դու հաշտ ակամբ հայեսցիս յիմս խոնարհութիւն անձին և յաղերսանս բանից, գաս որպէս և սովոր ես, և զօրացուցանես, ապա է ինձ համարձակելի և քև և 'ի ձեռն քո զպարանոցս բարձրացուցանել, և զբազուկս առ Աստուած խնդրուածովք տարածել. վասն այսորիկ 'ի վերայ երեսաց անկեալ զայս աղաչանք անմռունչ ձայնիւ 'ի սկզբանէ մինչև ցկատար աւարտէ ։ Որ զձայն բարձրացուցանել հարկաւոր է յորժամ առ ժողովուրդն լիցի բանն, որպէս զի միջնորդութեամբ ձայնին տեղեկասցին զնոյնն. իսկ այս աղօթելս առ Աստուած է, որ զծածուկս տեսանէ, և առ Հոգին որ զսիրտն քննէ, վասն այսորիկ ըստ տեառն հրամանին 'ի սենեակ մարմնոյն ամփոփէ զբանական միտսն, և փակէ 'ի վերայ նորա զդրունս շրթանցն, և այսպէս կայ յաղօթս առ նա 'ի ծածուկ. իսկ նա, զի ամենատես է, տեսանէ աստուածաբար զծածուկս մեր, և հատուցանէ զխնդիրսն յայտնապէս ։

1 Մի օրէն · Ս--րէ ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՂՕԹԻՑՆ ՈՐ ԱՌ ՏՕՒՐԲ ՀՈԳԻՆ ԱՍԷ ՔԱՀԱՆԱՅՆ[1]

“ԱՄԵՆԱԿԱԼ Աստուած, բարերար, մարդասէր”։ Ամենակալ է Հոգին սուրբ, վասն զի ընդ Հօր և ընդ Որդւոյ իշխէ[2] երկնաւորացն և երկրաւորաց, և կալեալ ունի զսոսա 'ի ներքոյ զօրութեանն։ Բարերար, զի որոց տիրէ՝ նոցա միշտ զբարին տնօրինէ և մատակարարէ, որպէս առ հրեշտակս զլուսափայլութիւնն Աստուծոյ՝ որում կարօտին, և առ երկրաւորքս զպէսպէս նախախնամութիւնս։ Մարդասէր, զի թէպէտ և վայելեն ամենեքեան 'ի շնորհս նորա, բայց առաւել առ մարդիկ առատացաւ սիրով։

“Աստուած բոլորից՝ յօրինող երևութից և աներևութից”։ Աստուածն արարչական անուն է. վասն այսորիկ ած 'ի վերայ սորին և զարարչութիւն. և սոքա են. երևելի արարածս և զգալիքս, և աներևոյթք դասք հրեշտակաց, և հոգիք մարդկան. զի ընդ Հօր և ընդ Որդւոյ և Հոգւոյն խոստովանիմք զսոսա առեղծեալս։

“Փրկող և հաստատող, խնամող և խաղաղարար”։ Այս է տիրական[3] արարչութիւն, զի ոչ միայն արար, այլ և փրկէ, և զփրկեալսն խնամողն 'ի նոյն էութիւնն հաստատուն պահէ, և միշտ խաղաղութեան լինի միջնորդ Աստուծոյ առ արարածս, և սոցա առ միմեանս։

“Հօր հզօր Հոգի”։ Զի բազումք կոչին հոգիք, որպէս և հրեշտակք, և հոգիք մարդկան, և չար հոգիքն. անջրպետէ զսա 'ի բնութիցս, զի որպէս Որդին Հօր միածին, նոյն և Հոգիս նմին առանձին[4]։

“Հայցեմք բազկատարած մաղթանօք գոչմամբ հեծութեան, յանդիման եղեալ քեզ ահաւորիդ”։ Եկի մտացս ընթացիւք առ քեզ, և հոգւոյս աչօք նկատեմ

1 Երկու առաջիկայ աղօթքս, զորս եպիսկոպոսն մատուցանէ առ մեզ, տեսանելեն 'ի կարգէ աղօթից սրբոյ Նարեկացւոյն։

2 Մի օրին. Իշխան է։

3 Մի օրին. Տէրապէս։

4 Զի թէպէտ և Հոգի Հօր և Որդւոյ ասի և է, և անխտիր ելումն է միոյն և միւսոյն, բայց անզբնապատճառ Ծնանողի Հօրն, և Որդւոյն պատճառակից նմին։

զոհերդ ահաւոր և սքանչելի․ վասն այսորիկ անկեալ մերմնով զսրտիս բազուկս տարածեմ առ քեզ, գոչելով ձայնիւ և հեծեծելով խորհրդովք զօգնականութիւնդ հայցեմ, զամենեցուն կառավարդ։

“ Մատչիմք մեծաւ դողութեամբ սաստիկ երկեղիւ, մատուցանել նախ զբանականս զայս պատարագ քում անզնին տէրութեանդ ”։ Դողումն և երկիւղ՝ մտացն է որ նայի 'ի նա, ուստի և ցուցանէ զկիրսն․ իսկ բանական պատարագ՝ գոհութիւն և փառաբանութիւն, շնորհակալութեանն է, զոր վասն պէսպէս արարչութեանն հանդերձեալ է տալ նմին․ և այս նախ քան զպատարագել միածնին առ նա խօսք, ըստ որում ասաց ինքն առ գործակից և զօրացուցիչ։

“ Իբր աթոռակցի փառակցի և արարչակցի, Հայրենի անկապուտ պատուոյդ ”։ Զի ոչ թէ որպէս առ մի ոք յեղելոցս գործի և սպասաւոր խօսիմք առ քեզ ըստ չարափառացն, այլ նախ աթոռակից և արարչակից Հօր խոստովանիմք, յորմէ ոչ ոք կարէ զքեզ արտաքս որոշել․ թէպէտ և ժպրհեցան անմիտք 'ի մարդկանէ եղկելի յիմարութեամբ, սակայն նոքա ըստ յանցանացն պատժին, և դու 'ի քոյդ միշտ անձողոպրելի ես։

“ Քննող ծածկութեան խորոց ամենակատար կամաց Հօր Էմմանուէլի, զքեզ առաքչի, փրկչի և կենդանատուի և արարչի ամենայնի ”։ Զառաքելոյն առնու ասել․ ոչ ոք գիտէ զԱ՟յն եթէ ոչ Հոգին որ քննէ զխորս նորա․ զի ոչ միայն թէ արարիչ ես, այլ և զկամս և զխորս խորհրդոց Հօր, գալով ընդ նմա անձնաւոր հարազատապէս, քննես, և անտի էառ զքեզ 'ի հայրական գրկացն Որդին, և առաքեաց վերակացու մեզ ողորմութեամբ և փրկչաբար։

“ Ի ձեռն քո ծանուցաւ մեզ երրեակ անձնաւորութիւն միաբանական աստուածութեանդ, յորոց մի և դու ճանաչիս անհաս ”։ Այսոքիկ են բանական պատարագքն զոր խոստացաւ տալ նմա, այսինքն պէսպէս շնորհացն գոհաբանութիւնքս․ և նախ զծայրագոյնն դնէ, թէպէտ և ժամանակաւ անագան քան զայլսն․ այս է գիտութիւն Երրորդութեանն․ զի զայս Հոգին յայտնեաց առաքելոցն և նոքօք աշխարհի, և զՔրիս-

տասն վարդապետութիւնն վերստին յիշողութեամբ արմատացոյց 'ի սիրտս նոցա :

"Իսկ և 'ի ձեռն քո առաջինքն նահապետական տոհմին շառաւեղք, տեսանողք անուանակոչեալք, զանցեալ և զգալոցն, զեղեալսն և զոչ գոյացեալսն անստուերաբար բարբառով բանի վերապատմեցին ,, : Զմարգարէիցն ասէ, որք բուսան 'ի սերմանէ Աբրահամու և իւրոցն. և զօրացեալք հոգւով տեսին զեղեալսն և զլինելոցն որպէս Մովսէս. զի առ 'ի մէջ անհագան ուրեմն, ձառեալ զլինելութիւն, արարածոցս զորս ոչ էր մարմնոյ աչօք տեսեալ կամ ունկամբ լուեալ. նոյնպէս և Եսայի զկործանումն սատանայի 'ի դէմս իշխանին Տիւրայ. սոքա և զառ յապա լինելոցն ուսուցին, զի զոր չև է եղեալ, որպէս զգալուստ նեռին, ուսանիմք 'ի Դանիելէ :

"Հոգի Աստուծոյ քարոզեալ զքեզ Մովսէսի ,, : Զոր գրեաց, "Հոգի Աստուծոյ շրջէր 'ի վերայ ջրոց ,, , բացայայտէ զխորհրդոյն զօրութիւն այսպէս. "Որ 'ի գնալն քո 'ի վերայ ջրոցն՝ անպարագիր զօրութիւն ահեղ շրջափկութեամբ տածողականաւ թեւապարփակ պաշտպանողօրէն զթասիրեալ 'ի ծնունդս նորոգս զաւազանին խորհուրդ ծանուցեր ,, : Զի մի յորժամ լսիցես՝ կարծիցես թէ էութիւնն հոգւոյն շրջէր 'ի վերայ ջուրցն, նախ ուսուցանէ՝ թէ էութիւնն անհաս է և անպարագիր, և զօրութիւնն ըմբռնէր զջուրսն. և այն որ ասէ թէ հոգին շրջէր, ստուգաբանի՝ թէ բարձեալ ունէր զտարերըքս 'ի ներքոյ խնամոց իւրոց զօրութեանն, և այնպէս պաշտպանեալ զօրութեամբ, որպէս թեւօք պահէր զխնկզբանէ արարեալքս 'ի հաստատութեան, մինչև կամեցաւ աստուածութեամբն զգոյքս 'ի նոցանէ ստեղծանել, և յետ գոյութեանն դարձեալ նովին խնամովքն նօթձէ : Իսկ որ [1] ասացաւ շրջել 'ի վերայ ջուրց, նոր խորհրդոյս էր ապացոյց. զի որպէս անդ շրջելով 'ի ջուրսն՝ յառաջ էած 'ի նոցանէ զէքս ամենայն, և աստ նոյն ինքն շրջի յարգանդ եկեղեցւոյ յաւազանն, և ծնանի որդիս Աստուծոյ զմարդիկ :

1 Երկք օրին. Իսկ ասացաւ շրջէր 'ի վերայ ջուրց :

«Յոր կերպարան օրհնակութեան նախ քան զկատուցանել զլոյծ մածուած [1] վերջնումն վարագուրիդ՝ յարինեցեր կարող տիրապէս զառաւանդակ բնութիւն ամենից բնաւից գոյից բոլորից ամենայն եից յանէից »։ Որպէս ասացաք՝ աւազանին խորհուրդ 'ի սկզբանն նկարեցաւ Հոգւոյն, զի մինչ չև էր անջրպետեալ ջուրն, և անուանեալ հաստատութիւն, որ եղև վարագոյր 'ի մէջ երկնի և երկրի, Հոգին խնամէր զտարերքս, և շնորհէր [2] նոցա զօրութիւն, նիւթ ստեղծման լինել ամենայն եից ։

«Եւ ստեղծանելն 'ի նորոգութիւն յարութեան մեր եղեալքս առ 'ի քէն, յայնմ ժամանակի՝ որ է օր վերջին այսմ կենցաղի, և օր առաջին երկրին կենդանեաց »։ Զսա զԴաւթին առնու ասել, թէ « Առաքես զՀոգի քո և ստանաս զնոսա, և նորոգես զերեսս երկրի »․ քանզի նոյն Հոգին՝ որ խնամեաց և ստեղծ և պահեաց և ծածկեաց, նոյն նոքին դարձեալ նորոգէ յօրն՝ որ է վախճան ապականացու ժամանակիս, և սկիզբն անապականին կենաց․ քանզի ապականեալքն վասն այնորիկ նորոգին, որպէս զի 'ի մշտնջենաւորութիւն յարակայեսցին ։

«Քեզ հնազանդեցաւ միութեամբ կամացն՝ որպէս Հօրն իւրում, ազգակիցն քո և էակիցն Հօր անսպառնելին Որդի մերովս կերպիւ »։ Որպէս զայս հնազանդութիւնս ուսանիմք, եթէ ոչ այսպէս․ կամ էր Աստուծոյ Հօր մարդկայինս փրկութիւն՝ ստեղծանելոցս 'ի նմանէ, կամ էր և Հոգւոյն խնամելոցս իւրոց․ Քրիստոս հաւասար նոցին ոչ թէ կամեցաւ միայն, այլ և զփրկագործութենէ եհար բուռն 'ի մարմնանալն, և մահու խաչի փոխանակ սոցա համբերեալ որպէս ըզՀօր կամն կատարեաց փրկելոցն, նոյնպէս և զՀոգւոյն ։

«Զքեզ աւետարանեաց Ճշմարիտ Աստուած հաւասար և համագոյ Հօրն իւրոյ հզօրի »։ Կարծեմ զոր առ կնին Սամարացի ասաց, « Հոգի է Աստուած »։

«Զառ 'ի քեզ հայհոյութիւնն անքաւելի քարոզեաց, և իբր զաստուածամարտից զ'ի քէն հեստելոցն

1 Այլ օրին․ Մանուած ։ 2 Այլ օրին․ Նա փայլ ։

չարաբանական բերանոյն կարկեաց , և զլուրն ընդ-հեաց արդարոյն և անարատն՝ դատիչն ամենայնի ,, : Քանզի այսպէս ասաց տէրն . " Որ ոք ասիցէ բան զՈրդւոյ մարդոյ , թողցի նմա . բայց որ զՀոգւոյն սրբոյ հայհոյեսցէ , մի՛ թողցի նմա ,, . իսկ իւր ոչ եղև վրէժ-խնդիր , և այն զի անմեղ դատապարտիւր[1] . իսկ համազգոյն կարի սաստիկ , որպէս զի հաստատեսցէ առ մեզ զաստուածութիւն Հոգւոյն :

" Որ վասն մեղաց մերոց մատնեցաւ , և յարեաւ վասն զմեզ արդարացուցանելոյ ,, : Ըստ որում գրեաց Եսայի . Նա վասն մեղաց մերոց մատնի : Արար և կատարեաց և յարեաւ , և զմեզ ընդ իւր նորոգեաց :

"Եմն փառք 'ի ձեռն քո , և քեզ բարեբանութիւն ընդ Հօր ամենակալի ,, : Զի Հոգին է որ զօրացուցանէ զլեզուս մեր 'ի փառաբանութիւնն Քրիստոսի , ըստ առաքելոյն . " Ոչ ոք կարէ ասել տէր զՅիսուս , եթէ ոչ Հոգւովն սրբով ,, . վասն այսորիկ ասէ 'ի ձեռն քո , և քեզ ընդ Հօր , որպէս հաւասար նմին Աստուած առ 'ի մէնջ խոստովանելոյ անտարակոյս մտօք՝ այժմ և յաւիտեանս :

" Դարձեալ կրկնեսցի 'ի նոյն կարգ բանի , մինչև վերահայեցութիւն[2] լուսոյն հրաշապէս ազդեալ յայտնեսցի , աւետարանել վերստին զկրկին խաղաղութիւնն ,, :

Նաև աղօթիցս մինչև ցայս վայր ոչ խնդրուածք էր , այլ յիշատակ Հոգւոյն պէսպէս սքանչելեաց , և փառաւորութիւն նմա 'ի վերայ այնոցիկ բարեբանութեամբ . զոր աւարտեալ՝ ասէ . Արդ ոչ է բաւական առ քեզ խօսակցութեանս . այլ թէպէտ և վախճան ածի , սակայն կարօտիմ վերստին զնոյն բանիցս ոճոյ բուռն հարկանել , մինչև կարացից բազմապատիկ թախանձանօքս զլոյս զօրութեանդ՝ որ դեռ ևս 'ի վեր հայիմ իմացականապէս և բացակայ յինէն տեսանեմ , խոնարհեցուցանել , և հրաշալի ազդմամբ առ իս ձգել . որոյ յայտնութիւնդ յանձն իմ այնու ճանաչի , յորժամ խռովեալ խորհրդոցս խաղաղութիւն և հանդարտութիւն աւետարանեսցի . որպէս և գիտեմ զփորձ

1 Յօրինակ ինչ Դատիւր :

2 Մի օրին . Վերահայեցողութիւն :

չնորհացդ՝ մաղթեմ, մինչև դարձեալ վերստին ճաշակեցից 'ի դիմանէ . և ապա սկսանի ասել .

« Ողջաչեմք և աղերսեմք արտասուալից հառաչմամբ յամենայն անձնէ զփառաւորելի արարչութիւնդ՝ անեղծ և անստեղծ անժամանակ Հոգւոյդ գթածի »։ Ոչ մարթ և անկար է ուրուք զաղօթից բան մեկնել . զի նա իւր ըծակից և աղ համեղութեան ունի զիղձ տուփման տոչորման Հոգւոյն աստղին՝ որում քաղցրանայ յաւէտ . իսկ զայն բանիւ մարմնացուցանել չէք հնար , և զայս առանց նորին որոնել ունայն է . արդ որպէս կարողանամք զարտասուալից հառաչումն ամենայն անձինն մեկնել կամ ուսուցանել , բայց թէ փորձիւ ոք ընդ կիրթ նորին անցեալ ծանիցէ . յոր ճաշակ վայելեալ , ամենայն պատրանաց աշխարհիս 'ի ստիպոյ՝ սրտին ողջոյն տուեալ հրաժարէ , և միայն յայն հառաչմանէն միշտ զանձն իւր կերակրէ ։ Հառաչումն այն է՝ որ զբոց սիրոյն Աստուծոյ արծարծէ , և արտասուքն է՝ որ զհոգւոյն աչս միշտ ներգործէ . մարմնական հառաչանք և արտասուքն 'ի հեռանալ սիրոյն և յաճել տրտմական կրիցն զօրէ . իսկ այս հակառակ նմին . զի որչափ զերեսս բաղձալւոյն նկատէ , ևս առաւելապէս բոցով սիրոյն հառաչէ . և որչափ մերձենայ 'ի նա՝ յորդառատ զգետս արտասուացն հեղեղէ , և միշտ զաւուրսն յորս անճաշակ էր 'ի սմանէ՝ ապաշաւէ , և յառաջակայն զնոյն աղօթէ ունել ։ Այս է ուրախութիւն՝ որում բնաւ զղջումն ոչ տիրէ , և տրտմութիւն՝ որ զանապաշաւ ցնծութիւն բխէ . զսա 'ի բան ձգել և պատմել՝ անարգութիւն է շնորհին , և ուսմամբ զսոյն ճանաչել անկարութիւն է լողին . այլ թէ լսես արտասուալից հառաչումն յամենայն անձնէ , մի կարծես գիտել բնաւ կամ ուսանել յօտարաց , մինչ չև 'ի քէն է սորին տեղեկութիւն բղխեալ[2] . և յորժամ ուսանիս , ապա հաստատես յանձն թէ ոչ գիտես ։ Այսպէս կանխէ երանելիս առ Հոգին , և այսու ըղձիւքս , և ոչ թէ սոսկ բանիւքս հաւատայ զմերահայեցութի Հոգւոյն 'ի յանձն տանել ։

1 Մի օրին . Ի սփռելոյ ։
2 Մի օրին . Մինչև 'ի քէն սորին
տեղեկութեանն բերել ։

"Որ բարեխօսդ ես վասն մեր յանմռունչ հեծութիւնս առ ողորմածդ Հայր"։ Զայս յառաջելոյ ուսաք զխորհուրդս, որպէս գրէ. "Զոր կամքն յաղօթս, որպէս արժանն իցէ՝ ոչ գիտեմք, այլ ինքն Հոգին բարեխօս լինի 'ի հեծութիւնս անմռունչս". այսինքն զի ոչ եթէ ձայնք մեր և աղաղակ առ նա ազդեն զիղձս հոգւոցս, այլ միայն մտաւոր թախանձանքս. զի յորժամ արգելուս 'ի ներս զազդեցութիւն հոգւոյդ 'ի զգայարանացդ, և սկսեալ այդրէն 'ի քեզ անմռունչ հեծեծես, թէպէտ և դու տգէտ ես՝ թէ հասանէ այդ առ Աստուած, սակայն շնորհ Հոգւոյն որ է 'ի քեզ՝ տեսանէ զփղձկումն հոգւոյ քո, և ծանուցեալ զնոյն և նիւթ առեալ 'ի քէն՝ ինքն 'ի տեղն ուր ոչ կարացեր բարձրանալ՝ մատանէ, և վասն քո բարեխօսէ, զի հեզ է և մարդասէր։

"Որ զսուրբսն պահես, և զմեղուցեալսն մաքրես, և տաճարս կազմես կենդանիս կեցուցիչ կամաց բարձրեալդ Հօր"։ Որպէս լոյս արեգականն զգալի էիցս է դաստիարակ, զոմանս հասուցանէ 'ի պտղոց, զայլս բուսուցանէ, և ամենեցուն զէութիւնն տնօրինէ, այսպէս և Հոգին սուրբ բխեալ 'ի Հօրէ՝ զիմանալի էութիւնս կառավարէ, նախ առաջին զհրեշտակացն, և յետ նոցա և նոքօք զմարդկան. զսուրբսն պահէ անվթար և օր ըստ օրէ զօրացուցանէ, զմեղուցեալսն ուղղէ, և խղճմտութեամբ յանդիմանեալ կշտամբէ[1], մինչև զղջմամբն մաքրէ. և փոյթ ունի անաշխատ զամենայն հոգիս երկնայնոց և երկրայնոց տաճար Աստուծոյ առնել, ըստ որում գրէ առաքեալ. "Դուք տաճար էք Աստուծոյ, և Հոգի Աստուծոյ բնակեալ է 'ի ձեզ, մի տրտմեցուցանէք զնա"։

"Արդ ազատեա զմեզ յամենայն անմաքուր գործոց, որ ոչ է հաճոյ քում բնակութեանդ"։ Ահաւասիկ սկիզբն արար խնդրուածոց. և այս զի՞նչ, նախ առաջին մաքրելոյ աղերս, զի աղօթաւոր գոլով[2] նախ սրբել կարօտիմք, և ապա զՀոգին սուրբ տանել. վասն որոյ ասէ. արդ զի մինչև ցայս կէտ ժամուս զրա

1 Մի օրին. Եւ խղճմտութեամբն կշտամբեալ յանդիմանէ։

2 Մի օրին. Գործով։

ւեալ եմ ընդ սխալանօք մարմնիս գոլով, յորոց ազատել ժտիմ, և որոշել զիս 'ի շաւղացն՝ ուստի քոյդ շնորհ տրտմի ։

“ Այլ մի՛ շիջցին առ 'ի մէնջ լուսոյդ շնորհաց փայլմունք՝ 'ի տեսականացս աչաց իմանալեաց ”։ Տես, զի ոչ ընդունել նորոգ խնդրէ, այլ զի՞նչ. մի՛ շիջանել. քանզի ընկալաք զնա 'ի մեզ, յորժամ յաւազանէն ծնաք ։ Ապա ընդէ՞ր ոչ ներգործէ ասես. վասն զի շիջուցանեմք զշնորհն. որո՛վք. այնոքիւք յորոց Պօղոս զգուշացոյց ասելով. “ Զհոգին մի՛ շիջուցանէք ”. քանզի ամենայն մեղք մինչև 'ի դատարկաբանութիւնն՝ մարտակից է նմին և հակառակ, վասն այսր թախանձէ զի ես որպէս մարդ զհեղեղս մեղաց յարձակեցի 'ի վերայ մտացս, և շիջուցի զլոյս սորա առ 'ի քեզ նկատելն. այլ դու որպէս Աստուած ողորմած՝ ծագեա վերստին զքաղցր ճառագայթդ՝ զտեսականիս հայեցողութիւն ։

“ Վասն զի զքեզ ուսաք միանալ 'ի մեզ 'ի ձեռն աղօթից և ընտիր վարուց խնկելոց ” ։ Ուսաք ոչ յայլումեքէ, բայց միայն 'ի Քրիստոսէ և յառաքելոց նորին՝ որ ասաց. “ Ի ձեզ բնակեցէ և ընդ ձեզ եղիցի յաւիտեան ” ։ Այլ բնակէ ոչ յամենեսեան, այլ յորս զխունկ անուշութեան[1]՝ վարուց ծխեն նմա. քանզի ասաց տէրն. “ Որ աշխարհս ոչ կարէ ընդունել ”. է՞ր վասն. քանզի ոչ հաճոյանայ նմին. զի շնչէ ինքնիշխանութեամբ ուր կամի, և կամի զայնոսիկ՝ ոյք խնդրեննն զնա ըղձիւք. ըստ այնմ. “ Աղօթս արարէք զի ինձ տացի բան 'ի բանալ բերանոյս ”. արդ զի մեք այսպէս ուսաք զքո քաղցրութիւնդ ասէ, վասն այսորիկ զտէրդ թախանձեմք աղօթիւք՝ միութիւն քո ընդ մեզ փափագել[2] ։

“ Այլ քանզի մինդ յԵրրորդութենէդ պատարագի, և միւսդ ընդունի՝ հաճեալ ընդ մեզ հաշտարար արեամբ անդրանկին իւրոյ ” ։ Միանալ ընդ Հոգին խնդրեաց. այս կարի բարձրագոյն հայցուած՝ Այ ընդ մարդկան խառնել. վն այսորիկ ասէ, ո՛վ տէր, մի՛ կշտամբեցայց վն համարձակաբարբառ քեզ խօսելոյս և միութիւն խնդրել, քանզի քո աստուածութիւնդ յայս զմեզ սովորեցոյց համարձակութիւն, այնու զի միածին Որդիդ ոչ

1 Մի օրին. Անուշահոտութեան ։ 2 Մի օրին. փոխագնել ։

միայն գայ առ մեզ, այլ և մեր փոխանակ մեռանի, և Հայրդ ոչ թէ զնա մեռեալ տեսեալ բարկանայ մարդկան, այլ և այնու վասն ընդ մեզ հաշտի. արդ այս եթէ այսպէս է, ըստ որում և է հաւաստեաւ, "Իսկ և դու որպէս զհամակամ ընկալցիս զմեր պաղատանս, և յարդարեսցես զմեզ օթևանս պատուականս ամենայն պատրաստութեամբ 'ի վայելումն Ճաշակման երկնաւոր գառինն": Յարդարիմք 'ի Հոգւոյն, յորժամ 'ի մեղաց տգեղութենէ որոշէ զմեզ, և զներքինս մարդ՝ իմաստութեամբն լուսաւորէ, յայնժամ կարեմք 'ի սպանդ գառինն զհամեղութիւն անուշութեան Ճաշակել:

"Առանց պատժոց դատապարտութեան ընդունել զայս անմահացուցիչ մանանայս կենաց Նորոյ փրկութեանս": Ո՜վ մեծ երկեղ է 'ի նա անմաքրապէս մերձենալ, ըստ որում գրեաց առաքեալ. "Որ անարժանութեամբ ուտէ, դատաստան անձին իւրոյ Ճաշակէ". վասն այսր յետ զղջութ՟ խնդրելոյ 'ի Հոգւոյն՝ և զայս թախանձէ, զի մի՛ առէ կենաց դեղս՝ վասն անպատրաստութ՟ն ինձ պատժոց լինիցի առիթ. այլ զի անմահ ես՝ անմահացայց, և անմահանալն անկար է՝ եթէ ոչ նախ առաջին դու զմահու խայթոցս յինէն սրբեսցես:

"Եւ հալեսցի 'ի հրոյս յայսմանէ գայթակղութիւնս մեր, որպէս մարգարէին կենդանախարոյկ կայծակամբն 'ի ձեռն ունելեացն մատուցման": Յոյժ համեմատ օրինակաւ վարի առ խորհրդոյս զօրութիւն. զի որպէս մարդիկ սիրելեաց այլ և այլ սեղանովք առատանան, և պէսպէս կերակրոցն համովք զմարմինն պարարեն, այսպէս և Հոգին սուրբ զխնդրողսն զանազան շնորհօք պարարէ, որ կարեն զազդեցութիւնս համեղութեան նոցին պարզութ՟ մտացն Ճաշակել. այլ մարգարէն սուրբ ունէր միտս, վասն այսր և սոսկալի տեսլեանն պատահեաց. բայց 'ի կայծականց սեղանոյն ևս մաքրեցաւ, յայտ է թէ և 'ի շրթանց սխալմանց. այսպէս և սա թէպէտ և Հոգւոյն հաւատայ զանձն մաքրել, և 'ի սպասաւորութիւն աստուածային տեսութեան պատրաստին զօրացուցանել, սակայն կրկին մաքրութիւն նովաւ առնուլ աղերսէ՝ ըստ մարգարէին, և այլ անուշութիւն ցնծութեան յայնր Ճաշակմանէն:

« Զի յայսմ ամենայնի քոյդ քարոզեսցի գթութեն, ըստ որում Որդւովդ Աստուծոյ Հօրդ քաղցրութեն »։ Ք՜ս, ասէ, պէսպէս շնորհօք զՀօրն ողորմութիւն որ 'ի վերայ մարդկան՝ հռչակելի արար. հանգոյն նմին և դու գթալով յաղէրս քանից՝ զանուն քո տէր փառաւորեա 'ի մէջ մեր։

« Որ զանառակ որդին մերձեցոյց 'ի հայրենի ժառանգութիւնն, և զպոռնիկսն յառաջեցոյց յերկնից արքայութիւնն, արդարոցն երանութե »։ Զ՛ Քրիստոսին 'ի մէջ առնու ապացոյց, ցուցանելով զի ոչ ես, ասէ, յիմ բնութենակից մեղաւորացն եմ օտար, և ոչ դու 'ի քո բնութենակցին ողորմութենէն հեռի. այլ որպէս ես հաւասար նոցին յանցաւոր, և դու զոյգ նորին արդարացուցիչ։

« Այն այն, և ես մի եմ 'ի նոցանէ. և զիս ընկալ ընդ նոսին, իբր մարդասիրութեան կարօտեալ մեծի »։ Արկեն թախանձելովն՝ զստուգութիւն աղերսին հաստատէ. մի եմ ասէ 'ի նոցանէ, թէպէտ ոչ գործովք, սակայն կամօք, և կարօտ սիրոյ, եթէ սիրես դու՝ որպէս և սիրեաց Քրիստոս, և թէ ընդունիս Հոգիդ՝ որպէս ընկալաւ Որդին։

« Շնորհօք քո ապրեալ զարեամբ Քրիստոսի ստացեալս, զի յայսմ ամենայնի՝ յամենայնի ծանիցի մարդասիրութիւն քո »։ Քրիստոս արեամբն գնեաց և ստացաւ, և դարձեալ գերեցայ և հիւանդացայ. այսուհետև քոյդ կարօտիմ շնորհաց օգնականութեան[1], յոր աւանդեաց նա զիս պահել. արդ յայտնեա զմարդասիրութիւնդ երկնաւորաց և երկրաւորաց առ իս ողորմութեամբ, և ստացիր այսու փառս յամենեցունց։

Այսքան է զօրութիւն բանից խորհրդական աղօթիցս համառօտեալ, բայց ոչ և ըղձականութիւնն. այլ աշխատիմք տեղեկութեամբ բանից՝ ըղձիցն և փափագմանն, հառաչմանն և արտասուացն ճանապարհ հորդել յանձինս, զի մի լցի լեզուաւ կալ 'ի յաղօթս, և մնաց անպտուղ առ 'ի նմանէ լինել. այլ քրքրելով զվայելչութիւն սորին առաջի տեսութեան մտացն թերևս ըղձասցուք գնել զսոյն մաքրութեամբ մտաց հա-

1 Մի օրին. Մարդասիրութեան ։

ռաչմամբ և արտասուօք ։ Այլ մինչ չև զայս զինս առա-տաբար տուեալ եմք , մի հաւատասցուք մեզ սեփակա-նել զսոյն . այլ զինչ . զոր օրինակ որ 'ի վաճառականս մտանէ , տեսանելով զզանազան համադամս կերա-կրոցն և ըմպելեացն , և ինքն ծարաւի և սովեալ , ոչ ինչ օգտի 'ի տեսութենէն , այսպէս և մեք յեկեղեցի Աստուծոյ ընթեռնլով և լսելով զաստուածաշունչ գիրս՝ միայն 'ի բացուստ տեսանելով զնոսա , և մնամք սո-վեալ ։ Իսկ յառեալ ընդ երկար 'ի գեղ նոցա քննու-թեամբ ցանկամք , և 'ի ցանկութենէն ստիպեալք՝ զինս յառաջ բերեմք զիղձմն և զարտասուսն , և ապա առեալ զայն 'ի մէնջ ստացող նորին Հոգւոյն՝ տայ զնոսին 'ի կերակուր և ըմպելի հոգւոց մերոց 'ի մշտնջենաւոր ուրախութիւն 'ի փառս Աստուծոյ , որ է օրհնեալ յա-ւիտեանս յաւիտենից . ամէն ։

ՉԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ԶԱՌԱՋԱԴՐՈՒԹԻՒՆ ՆՈՒԻՐԱՑՆ
ՅԻՇԱՏԱԿ ԿՈՉԵԼ ՔՐԻՍՏՈՍԻ [1]

ԱՍՏ իւր աստուածեղէն պատուիրանին՝ թէ զայ-սոսիկ արարէք ինձ յիշատակ ։ Բայց խնդրելի է , թէ ո՞ր առաջի յիշողութիւնն լինի , ո՞ւմ ումեք . բայց եթէ Հօրն նորա , որում 'ի յուշ ածեմք զչարչարանս միա-ծնին միջնորդ մեզ ողորմութեան , որպէս և խրատեցաք 'ի Քրիստոսէ առակաւ խնդրելոյ որդւոյն 'ի հօրէն հաց կամ ձուկն . 'ի վերայ որոյ բերէ . եթէ դուք մարդիկ 'ի խնդրելն որդւոցն բարիք՝ զնոյն տայք նոցա , ո՞րչափ ևս առաւել Հայրն ձեր երկնաւոր տացէ բարիս այնոցիկ որ խնդրեն 'ի նմանէ ։ Արդ եթէ մեր սո-վորութիւն է 'ի յիշելն մեղուցելոցն որոց բարկանամք՝ զանունն որդւոց խանդաղատել . և 'ի յիշատակ նոցա , և վասն նոցա , թէ ապառումն ոք է , 'ի վերայ յանցաւո-րին 'ի քաղցրութիւն նուաճել , և վասն նորա ներել սխալանացն չարացս , քանիօն առաւել ամենաբարի բնութիւնն Աստուծոյ զիջանի յարդար պատուհասիցն սպառնալեաց՝ 'ի յիշատակել մարդկան և միջնորդ ու-նել զմահ Որդւոյն սիրելւոյ առաջի նորա որ մեռաւ . ոչ

1 Մի օրին . Ցառաջ յիշատակ կոչել Քրիստոսի .

վայրապար, այլ փոխանակ մեր, և մահ ոչ սոսկ, այլ նաև խաստամանաց և խաչի: Արդ չափեսցուք զի որչափ մեծ է Որդի քան զմարդ, այնչափ և սէրն նորա և գութն առ իւրն Որդի, որ վասն մեր ոչ խնայեաց. և զայս գիտելով Որդւոյն որ զմեզ այնչափ սիրեաց՝ զայս եւս դիւրագոյթ ընտրութեանս փրկութեան հնար, իբր թէ ասելով. զայս արարէք ինձ յիշատակ միշտ առաջի Հօրն, և զմահ իմ որ վասն ձեր՝ պատմեցէք նմա. ես գիտեմ հաստատուն զի զմահ Որդւոյս սիրելւոյ լուեալ, 'ի խանդաղատանաց գթոյն ստիպեալ՝ վասն իմ զամենայն շնորհս արձակէ ձեզ: Զանզի ծոցածին էր, և գիտէր զամենայն կամս Հօրն հաւաստեաւ. յոր հաւատացեալքս առնումք զհացն և զգինին և դնեմք 'ի սպաս սրբութեանն ասելով. այս նուէրք որ տոշեցան և արկան յայս ամանս, ոչ վայրապար՝ այլ որպէս զի շնորհօք սուրբ Հոգւոյն՝ Քրիստոսի մահուան առաջի Հօրն իւրոյ լիցի յիշեցուցիչ. առ 'ի յայտ առնել, թէ որպէս այս հացս և գինիս ճշմարիտ առաջի քո մարմին է, այսպէս և Որդին քո ճշմարտապէս առաջի քո փոխանակ մեր մեռաւ. արդ նայեա 'ի դորա երկք աշխատանացն, և վասն իւր մահուն ներեա մեզ: Բայց այս խնդիրս 'ի վերայ սրբոյ սեղանոյն հանդերձեալ է լինել, իսկ աստ միայն առ յապա խորհրդոյն վասն տոշեալ եղանի:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՂՕԹԻՑՆ ԶՈՐ ՔԱՀԱՆԱՅՆ ԱՍԷ ՑԸՆԾԱՅԱՐԱՆ ՍԵՂԱՆՈՅՆ [1]

“ԱՍՏՈՒԱԾ Աստուած մեր, որ զերկնաւոր հացդ զտէր մեր Յիսուս Քրիստոս զկերակուրդ ամենայն աշխարհի առաքեցեր փրկիչ և կեցուցիչ և բարերար՝ օրհնել և սրբել զմեզ„: Հոգւովն և նորա զօրութեամբ զոր ունիմք, շնորհեցաք[2] յառաջակայ սպասաւորութիւնս, և սպասաւորեմք ոչ այլ ումեք, քան թէ այնմ որ ոչ ամօթ համարեցաւ եղբայր մեր անուանել. այնու՝ զի որ սրբէն և որ սրբին՝ 'ի միոջէ են

1 Մի օրէն. Մեկնութիւն աղօթիցն՝ զոր յընծայարան սեղանոյն վերայ կատարէ քահանայն:

2 Մի օրէն. Շնորհեցաւ:

ամենեքեան , ապա զՔրիստոս եղբայր ունելով , և զՀոգին գործակից , և զՔրիստոս պատարագ , և ըզՀոգին նուիրիչ , յայտ է թէ հաշտելոյ սոքօք ընդ Հայր կարօտիմք , և աղերսակիցք են մեզ սոքա առ Հայրն պաղատանաց ։ Յաղագս որոյ և սկիզբն բանիս առ նա կարգէ ասելով . "Աստուած Աստուած մեր , Հայր սուրբ , որ զերկնաւոր հացդ զայդ ,, որ ինքն ասաց , "Ես եմ հացն որ իջի յերկնից և կեանս տամ աշխարհի ,, ։ Ես զինչ ճաշակէ աշխարհ 'ի նմանէ , ասիցես . զքաղցրութիւն կամացն և զառատութիւն գթոյն . զի որպէս հաց զգալի զմարմինս զօրացուցանէ , այսպէս և նորա երախտեացն յիշատակ զհոգիս . զի օրհնեաց զմեզ յինքն յանիծիցն Ադամայ , սրբեաց 'ի մեղացն տգեղութենէ ։

"Ինքնին դու տէր օրհնեա զառաջադրութիւնս զայս ,, ։ Ինքնին դու որ զմեծ և զանզուգական սէրն առանց խնդրելոյ ետուր՝ նախ քան զմեր թախանձելն . զայս առ քեզ ոչ վայրապար , այլ թախանձանօք խօսիմք . օրհնեա զորս առաջի քո դրոշեցաք զնիւթս , և քեզ հանդերձեալ եմք նուիրել ։ Առաջադրութիւն ասէ , ցուցանելով զի թէպէտ դեռ չև է տուեալ , սակայն քո առաջի եդաւ , որ զամենայն ինչ տեսանես ։

"Ընկալ զսա յերկնային քո սեղանդ ,, ։ Երկնային սեղան՝ զսեղանն սուրբ որ 'ի տաճարին խորան է՝ անուանէ , և այժմ զայն խնդրէ՝ արժանի առնել զսոյն ելանել 'ի վերայ նորին ։

"Յիշեա որպէս բարերար և մարդասէր զմատուցողքս , և վասն որոյ[1] մատուցանի ,, ։ Մեք 'ի մէջ առաք սկիզբն առնել մահու Որդւոյդ քո յիշատակի . սկսիր այսուհետև և դու՝ որ եսդ մարդասէր , յիշել զմարդիկ ողորմութեամբ և գթութեամբ , որք համարձակիմք վասն մեր և վասն համահաւատարակից մեր մարդկան զսա քեզ հաշտութեան նուէր մատուցանել ։

"Ես զմեզ անդատապարտ պահեա 'ի քահանայագործութիւն աստուածային խորհրդոց քոց ,, ։ Զանուն և զզօրութիւն խորհրդոյն նախ ցուցաք ընդար-

1 Մի օրին . Վասն որոց ։

ձակ, արդ ուսիր այնու թէ որպէս սիրելի և համա-
կամ խորհրդակից է Աստուծոյ քահանայս, և քաջ
տեղեակ կամաց նորա, նոյն և գործակից 'ի պէտս
փրկութեան ժողովրդեանն. վասն այսորիկ երկնչի,
մարդ եմ ասէ, և 'ի վեր քան զչափ իմ ձկտիմ քեզ
անհաս բնութեանդ ծածուկ խորհրդով խօսակցելոյ[1].
աղաչեմ մի դատապարտեցայց 'ի ժպրհելս 'ի սոյն
գրաւեալս տկարութեամբ։

«Զի սուրբ ես Աստուած մեր, և քեզ վայել է
փառք»։ Սուրբ ես բնութեամբ, և կամիս զմեզ սրբելն
և ընդ քեզ խառնել ողորմութեամբ, և չիք 'ի քէն
արգելեալ մեզ շնորհ. վասն որոյ քեզ փառք։

ԸՆԴԷՐ ՍԱՐԿԱՒԱԳՆ ԾԱԾԿԷ ԶՍՊԱՍՆ
ԵՒ ՆԱ ԲԵՐԷ Ի ՍԵՂԱՆՆ ԵՒ ՆՈՅՆ ԴԱՐՁԵԱԼ ԲԱՆԱՅ
ՅԵՏ ԿԱՏԱՐՄԱՆՆ ԵՒ ՄԱՔՐԷ

ՍԱՐԿԱՒԱԳՆ պաշտօնեայ թարգմանի և սպասա-
ւոր. և պաշտօնեայ է սա ոչ մարդոյ, այլ Աստուծոյ,
նորին սեղանոյն, և նորին բանին. և են յառաջիկան
Ստեփաննոսի և իւրոցն. քանզի ասէ պատմութիւն
գործոց[2] առաքելոցն. ոչ է պարտ մեզ, ասացին առա-
քեալքն, թողուլ զբանն Այ և պաշտել զսեղանսն[3].
ընտրեցէք եղբարս վկայեալս 'ի ձէնջ, զորս կացուս-
ցուք 'ի վերայ պիտոյիցս այսոցիկ, և մեք աղօթից և
բանին հպատակ լիցուք. և ընտրեցին զՍտեփաննոս և
զիւրսն, և ձեռնադրեցին առաքեալքն զնոսա 'ի պէտս
այսորիկ։ Արդ յորժամ պատարագէրն Պետրոս, Ստե-
փաննոսի հարկ էր բերել զսպասն, և զհացն առաջի
նորա դնել, բանալ և ծածկել, մաքրել և պահել, և նա
միայն զաղօթսն կատարէր 'ի վերայ, որպէս ասացն, և
զնոյնն սրբէր։ Վասն այսորիկ սոքա զնոցա[4] գործն կա-
տարեն՝ զսպասաւորութիւնն. և քահանայքն զՊետ-
րոսին միայն, զաղօթելն և օրհնել։ Երկրորդ՝ քահա-
նայս պատգամ է առ Աստուած 'ի ժողովրդենէն, և
պատարագն նուէր և ընծայս ընդ նմա, 'ի նոցանէ ա-

1 Մի օրին. Խօսակցելով։
2 Մի օրին. Գրոց։
3 Երկու օրին. Զսեղանն։
4 Մի օրին. Զնորա։

ռեալ՝, անմարթ է պատգամին իւրումն ունել զընծայսն, և խօսել զբանն, որպէս և մարդկան այս է սովորութիւն. այլ միայն նա զհրեշտակութիւն բանիցն առնէ, իսկ սա զնուէրսն բերէ մինչև ՚ի նա. և առեալ ինքնին քահանայն դնէ առաջի Աստուծոյ ՚ի սեղանն: Արդ է սարկաւագն պաշտօնեայ տէրունական սեղանոյն և նորին սպասուցն[2]. իսկ կէս սարկաւագն՝ քահանային և նորին[3] զգեստուցն. վասն այսր չէ համարձակելի սմա ՚ի տէրունեան ձկտիլ, և ոչ քահանային որ աղօթիցն է հպատակիչ, պարտ է ՚ի գործ ձեռնարկել, այլ զհպատակութիւն սպասաւորութեան մարմնական նշանակացն կատարէ սարկաւագն՝ առընթեր նորին համարձակաբար, ծածկել և բանալ, ածել և տանել, և զայս ՚ի սոյն յարինն գործք:

## ԶԻՆՉ Է ԽՆԿԵԼՆ ԶԸՆԾԱՅՍՆ[4], ԵՒ ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՆՈՐԻՆ ԱՂՕԹԻՑՆ

ԽՆԿՆ է զգալի անուշահոտութիւն, ըստ որում աղօթքն իմանալի. արդ յետ ծխելոյ զաղօթսն ոչ բաւական համարի, այլ որպէս իմանալի և մարմնաւոր՝ տայ Աստուծոյ և զմարմնական անուշահոտութիւնն. ըստ որում և աղօթիւքն յայտ առնէ. «Խունկ մատուցանեմ առաջի քո Քրիստոս Աստուած բուրումն հոգևորական». այսինքն ընդ զգալի խնկոյս և զհոգւոյս ծուխ արծարծման կայծականց սրտիս աղօթիւք նուիրեմ քեզ:

«Ընկալ ՚ի սուրբ և յերկնային և յիմանալի քո մատուցարանս ՚ի հոտ անուշից»: Ո՛ր երկին կոչէ ըզտաճարս և զերկինս. վասն որոյ ասէ՝ զգալի խունկս ՚ի զգալի մատուցարանս, ուր զգալի մարմին մատուցար, ընկալ և զիմանալի աղօթս յիմանալի սրբարանդ, ուր միշտ կենդանի ես՝ լինել բարեխօս վասն մեր, առ քեզ բուրումն անուշից: «Առաքեա առ մեզ փոխարէն ըզշնորհս և զպարգևս Հոգւոյդ սրբոյ»: Ո՛չ ՚ի այսմ կարօտի այժմ զՀոգւոյն ունել գործակից:

1 Երեք օրին. Սպասուց:
2 Երեք օրին. Զգեստուցն:
3 Մի օրին Իւր:
4 Այլք. Զինչ խնկելն ընծայսն:

## ԶԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ՔԱՀԱՆԱՅԻՆ ՆՈՑՆ ԵՒ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻՆ ՇՈՒՐՋ ԳԱԼՆ ԽՆԿԱՐԿՈՒԹԵԱՄԲ ԶԱՄԵՆԵՔՈՒՄԲՔ ԵՒ ԴԱՌՆԱԼ Ի ԲԵՄՆ Ի ՍՈՒՐԲ ԴԱՌՆԱԼ ԵՒ ՄՏԱՆԵԼ Ի ԽՈՐԱՆՆ

ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԻՆ *սկիզբն առնել խնկարկութեան սեղանոյն, և մինչև ցյետինս ժողովրդոցն զանուշահոտութիւնն չնորհել, և անդրէն 'ի նոյն կոյս դառնալն, այսպիսի խորհրդոյ է նշանակ. քանզի գերագոյն գոլով քան զամենայն աստուածային երանութիւնս, թէպէտ և յառաջ գայ բարերարութեամբն 'ի կցորդութիւն մաքուր բնութեան հրեշտակաց, զօրութեամբ է այս. իսկ ըստ էութեան՝ և ոչ երբէք շարժի յանշարժականէ*[1] *փառաց աթոռոյն՝ տալով զլուսափայլութեան*[2] *ճառագայթս յոր շուրջ զիւրեաւ են դասաւորեալ հրեշտակքն, և յիսկական էութենէն ոչ երբէք տարալի: Ըստ այսմ համեմատութեան տեսցես և զշնորհս սրբոյ պատարագիս կատարման. որոյ սկիզբն գոլով Աստուած բանն, որ թէպէտ և ծածուկ է 'ի մէնջ և անհաս, պարզ և անճառ, սակայն շարժեալ 'ի մարդասիրութենէն՝ տպաւորէ զինքնութիւն փառաց իւրոյ էութեան յառաջադրեալ նշանակ հացիս և բաժակիս, և 'ի ձեռն ճաշակմանն իմացականապէս բնակի ոչ միայն 'ի քահանայից դասուն, այլ և յամենայն լրումն սուրբ գնդի եկեղեցւոյն, և միացուցեալ ընդ ինքեան զօրութեամբ հաղորդակցելոցն, միանգամայն և 'ի սոցա սրբութիւնս, որովք դարձեալ յիւր միութիւնն ժողովէ, փոփոխեալ զամենեսեան 'ի նմանութիւն մաքրութեան և աստուածութեան իւրոյ. և ըստ որում անմարմնապէս փառօք 'ի հրեշտակս մերձենայ յինքեան մնալովն, և վերբերէ զնոսա առ իւր զիտութիւնն, այսպէս և մարմնատեսակ երևմամբ 'ի ձեռն սրբոյ գոհութեանս՝ և մարդկան հաղորդի, և առ իւր միութիւնն զմեզ դարձուցանէ: Աստի և քահանայապետն ըստ սոյն աստուածատեսակ օրինակի խնկարկութեամբն շուրջ գայ զամենեքումբք, ուսուցանելով*

1 Մի օրին. Ցանշարժ կայանէ: 2 Մի օրին. Զընդյաւիտենական էութենէն:

այսու, թէ որպէս Աստուած զլուսափայլութիւն իւր 'ի հրեշտակս տայ և յինքեան մնայ, և տէրն զմարմին իւր մարդկան՝ զորս առ ինքն միացուցանէ, այսպէս և քահանայապետն՝ որ է պատկեր Աստուծոյ, խնկարկութեամբն նշանակէ, թէ և սա զինքեան պարգևսն իջուցանէ մինչև 'ի նուաստագոյնսն. որպէս զբանն վարդապետութեանն, զկնիքն և զձեռնադրութիւնն, զորս միշտ մատակարարէ ամենեցուն ըստ իւրաքանչիւր արժանեաց առատապէս և ազատ կամօք. ըստ յարացուցի խնկոցն՝ զանուշահոտ շնորհսն յամենեսեան իմացականապէս սփռէ, որպէս եղխունկն մարմնապէս, որովք յիւր մաքրութեանն տիպ դարձուցանէ զնոսա, և ինքն յետ այսորիկ որպէս անըմբռնելի 'ի նուաստագունիցն՝ յիշխանական տեղ կայանին իւրոյ աննուազաբար դառնայ. քանզի այս պաշտամունք սպասաւորութեան երկրորդ են պատուոյ նորա։

Արդ կատարեալ զնախախնամութիւնս զայսոսիկ՝ որպէս Աստուած 'ի հրեշտակս, և սա առ եկեղեցին, զոր խնկարկութեամբն նշանակէ, դարձեալ ելանէ 'ի բեմն. և որպէս Աստուած մնայ յիւրում ինքնութեան, յայտ առնելով նշանակութեամբն թէ զայսոսիկ սպասաւորութիւնքս սակս փրկութեան ժողովրդեանն կատարեաց, բայց ոչ 'ի բաց եկաց յինքնիշխան պատուոյն, այլ յառաջին տեղին վերացաւ, այսինքն յաստուածտեսութեան բարձրութիւն բեմին։ [1]Քանզի և զԱստուծոյ ասացաք, թէ միայն լուսափայլութեամբն ծագի 'ի հրեշտակս, և ոչ էութեամբ. զորոյ ճշգրիտ պատկեր բերէ քահանայապետն, և ուսուցանելովն խոնարհեալ և խնկարկութեամբն առ ամենեսեան ընթացեալ, և ապա յետ այսորիկ յինքնական պատիւն վերադարձեալ անշարժ սերտութեամբ՝ մնալով 'ի բեմն սուրբ, յայտնի կացուցեալ նշանակաւն զայս՝ թէ զայսոսիկ յառաջ եկեալ նախախնամութեամբ 'ի յերկրորդն պատուոյ իւրոյ, այսինքն 'ի գործելն և 'ի խնկարկելն՝ ժողովրդեանն փրկութեան աղագաւ արար։ Սակայն ոչ 'ի բաց եկաց 'ի զիւրումն գործելոյ և յիւրումն գոլոյն, այսինքն յաստուածատեսութեանցն բարձրու-

1 Մի օրին. Տեառնեանէ։

Թենէ , այլ յաստուածայնոցն յանձայնման դարձաւ . որպէս թէ մինչ 'ի փրկագործութենէ պաշտմանն ' խընկարկութեանն յաստուածաբնակ տեսութեանն բարձրութիւն դարձեալ, ըստ կամաց Հոգւոյն սրբոյ իջեալ, և անդրէն վերացեալ :

## ԶԻՆՉ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ ԱՌ ՔԱՀԱՆԱՅՆ ԶԱՅՆԵԼՆ ՈՐՊԷՍ ԶԻ ՕՐՀՆԵՍՑԷ ԶՍԿԻԶԲՆ ԱՂՕԹԻՑՆ

Որպէս եցոյց բանս ճշմարիտ[1] խուզողացն՝ քահանայն զսպասաւորութիւն գործոյ տնօրէնութեանն կատարեաց յերկրի առ մարդիկ , այսինքն 'ի տաճարին , և եմուտ յերկինս 'ի խորանն . ըստ որում Քրիստոս յետ տնօրէնութեանն վերացաւ անդր՝ քահանայապետ մեզ և բարեխօս : Արդ թէպէտ և է Քրիստոս մեզ բարեխօս , սակայն պահանջէ և 'ի մէնջ խնդրել աղերսիւ զնորին բարեխօսել . այսպէս և սա 'ի պատկեր Քրիստոսի եմուտ յերկինս իմացականապէս առաջի Աստուծոյ , կալ մեզ բարեխօս արտաքոյ կացեալ ժողովըրդեանն . սակայն անկ է նոցա հայցել զմաղթելն և զբարեխօսելն և զմիջնորդելն . վասն այսորիկ սարկաւագն , որ է վարդապետ ուսուցիչ և դաստիարակ ժողովըրդեանն , 'ի մէջ կացեալ՝ բերան լինի ամենեցուն , և 'ի դիմաց համօրէն եկեղեցւոյն ձայնէ առ նա որպէս յերկրէս առ Քրիստոս , այսպէս և 'ի տաճարէն առ քահանայն . " Օրհնեա տէր " : Այսինքն դու ես տէր մեր փոխանակ Քրիստոսի և յետ նորա . արդ օրհնեա և մատո զաղաչանս մեր առաջի աստուածութեն , որպէս և Քրիստոս միշտ բարեխօսէ վասն մեր առ Հայր . ըստ այնմ, " Ոչ թէ 'ի ձեռագործ սրբութիւնս եմուտ Քրիստոս , այլ 'ի բուն իսկ յերկինս՝ յանդիման լինել առաջի երեսաց Աստուծոյ վասն մեր " . առ որ մատչել ճշմարիտ սրտիւ լրութեամբ հաւատոց առաք հրաման , և մատչիմք ոչ ամենեքեան , այլ սա փոխանակ բնաւիցս , առ որ ձայնեմք թախանձանօք . օրհնեա

1 Երկու օրին . Գաւազանն : 2 Մի օրին . Ճշգրիտ :

և խառնեալ[1] առաջի Աստուծոյ զպատարագս մեր. իսկ նա սկսանի ապա.

«Օրհնեալ թագաւորութիւնն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ»: Որ ի մեծամեծ խնդրուածս համարձեալ է խնդրել, նախ օրհնէ, քանզի օրհնութիւն է՝ յեկից բարեաց մերոց եղեալ Աստուծոյ բարերարութիւն. այսինքն զորոց ունիմք նախ շնորհակալութիւն, և ապա կարգաւորապէս յետ այնր՝ այլոց խնդիր. վասն այսր 'ի սկզբանս օրհնէ՝ շնորհ ունելով տուելոց[2] բարեացն, որ 'ի տէրութենէն Հօր և Որդւոյ և սուրբ Հոգւոյն ընձեռեցաւ մեզ:

«Այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից»: Այժմ զներկայս ցուցանէ, այսինքն զժամանակս որ 'ի մէջ[3] է, իսկ միշտն զապառնին որ գալոցն է, և յաւիտեանս յաւիտենից զանհասն և զանկէտն. քանզի յաւիտեան ոչ ժամանակ, և ոչ ժամանակի մասն ինչ, յորում յամենայնն ասէ օրհնութիւն Աստուծոյ. ոչ միայն 'ի մէնջ որ այժմս եմք և օրհնեմք, այլ և յիւրաքանչիւր եկելոցն[4], յիւրաքանչիւր աւուրս. իսկ ժողովուրդն կցորդ լինի նմին ասելով. Ամէն. այս ինքն թարգմանեալ և է, թէ զոր ինչ ասացեր օրհնութիւն փոխանակ մեր միջնորդ և հրեշտակ առ Աստուած քահանայ, այդպէս է[5] ճշմարիտ, և է միշտ օրհնութեան արժանի սուրբ Երրորդութիւն յամենայն ժամանակս:

## ԸՆԴԷՐ Ի ՄԻԱՅՆ ՍԿՍԱՆԻՆ ՍԱՐԿԱՒԱԳՆ Ի ՄԵՋ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ԶՔԱՐՈԶԵԼՆ ԵՒ ԶՈՅԳ ՆՄԻՆ ՔԱՀԱՆԱՅՆ Ի ԽՈՐԱՆՆ ՍՈՒՐԲ ԶԱՂՕԹԵԼՆ

Ոչ ո՛ք կարծեսցէ վայրապար և կամ երազութեան վասն զսահման զոյգ միմեանց լինելոյ քարոզութեան սարկաւագին և աղօթից քահանային, և կամ իբրաւունս դատեսցի միոյն լռել մինչև յաւարտել միւսոյն, այսինքն քահանային՝ մինչև սարկաւագն լռէ, և ապա սկսանել. այլ պարտ է գիտել, թէ զուգընթաց միմեանց լինել՝ այսր աղագաւ սահմանեցաւ, քանզի նոյն

1 Երկու օրին. Խառնեա:
2 Երկու օրին. Տուեալոց:
3 Երկու օրին. Ի մէջի:
4 Մի օրին. Յեկեղեցւոջ:
5 Մի օրին. Այդ է:

է խորհրդոյն զօրութիւն, զոր ինչ քահանայն խորհրդաբար խնդրէ, և զոր ինչ սարկաւագն ժողովրդեանն բարձրաձայն հրամայէ աղաչել։ Վասն այսորիկ համաձայն նոցա պարտ է լինել միմեանց, որպէս զի ցուցցեն ժողովուրդքն Աստուծոյ՝ ըստ հրամանի դաստիարակին սարկաւագին աղաչելով[1], թէ զոյգ է մեր իղձք կամաց քահանայիդ, որ եմուտ ամենեցուն մեր փոխանակ առաջի քո. և թէպէտ տղայք եմք յիմաստից, և ոչ կարեմք այդպէս հարազատաբար աղաչել զքեզ, սակայն զտէր ողորմեայս ձայնելովս՝ թախանձեմք ողորմած կամօք տալ զխնդիրսդ, զոր խորհրդապէս մաղթէ քահանայդ, և սարկաւագին յորդորէն վարդապետութեամբ քարոզութեանն զնոսա՝ 'ի սոյնս հայի։ Ապա ամենայն իրօք պարտ է գիտել, թէ որպէս ամենայն քարոզից զանազանութիւն առ այս հային խորհուրդ՝ ստիպումն ժողովրդեանն աղօթակից լինել քահանային, զոյգ պարտին միմեանց աղօթել, և 'ի միասին աւարտել, քահանային ծածուկ խօսելով, և նոցա միաձայն և յայտնի։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԱՐՈԶՈՒԹԵԱՆ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ

ԽՈՐԱՆՆ սուրբ է ներքին կողմն վարագուրին, որ է նոյն ինքն աստուածութիւնն՝ ուր եմուտ պատկերն Աստուծոյ քահանայն, անցեալ ընդ երկինս ըստ կարապետին մերոյ Քրիստոսի, յանդիման եղեալ երեսացն Աստուծոյ լինել բարեխօս վասն մեր։ Իսկ եկեղեցիս երկրորդն որ յետ նորա երկինն, ուր մարդիկ հաւասար հրեշտակաց եղեալ՝ կան 'ի պաշտօն փառաւորութեան[2] անջրպետապէս առաջի Աստուծոյ, և սարկաւագն բերէ յինքեան զտիպ իմանալի զուարթնոցն. զի որպէս նոքա երկատեսակաբար առնուն յԱստուծոյ զգիտութիւնն, և տան միմեանց ըստ չափոյ կարողութեան ընդունելոյ խոնարհ դասուցն, այսպէս և սա մտանելովն 'ի վերին տեղն 'ի խորանն սուրբ անընդմիջաբար հայելով յԱստուած, որպէս զքերովբէսն, և 'ի պատկերն Քրիստոսի քահանայն, և ծանեաւ զկամս

1 Մի օրին. Աղօթելով։ 2 Մի օրին. փառաբանութեան։

քահանայն որպէս հրեշտակ զՔրիստոսին՝ թէ մերոյ փրկութեան վասն մաղթէ, որ արտաքոյս եմք, բարեմտութիւն բերէ յինքն հաւասար սուրբ զուարթնոցն. և ըստ որում նոքա զկրեարս, նա և զմեզ զարթուցանէն 'ի սէրն Աստուծոյ, այսպէս և սա եկեալ յեկեղեցին՝ զանձառ գիտութիւն խորհրդոցն զոր ինքն կալաւ թագնաբար, որպէս և սերովբէն [1], ըստ կարի ժողովրդեանս տանելոյ ազդէ նոցա որպէս և հրեշտակաց՝ ասելով. միջնորդն ձեր և կարապետն քահանայն՝ որ անց ընդ երկինս իմանալի մտօք վասն ձեր ամենեցուն յանդիման կայ Աստուծոյ [2], և խնդրէ զփրկութիւն բնաւից թախանձանօք. զարթիք և դուք, ըզգաստացիք, և ըստ կարի հաւասարեցէք նմին աղօթիւք, որպէս զի մի նորայն լիցի 'ի դերև՝ զձերդ օտար ունելով յինքենէ զընթացս կամաց. և թէ զորս և որպիսիս [3] խնդրէք, ձայնակցել նմին ուսուցանեմ [4] ձեզ։

"Եւ ևս խաղաղութեն զտէր աղաչեսցուք": Նախ պարտ է գիտել. զոր խաղաղութիւն և ևս առաւելապէս հրամայէ հայցել ժողովրդեանն, մի արդեօք ըզմարդկայինս՝ որ առ իրեարս 'ի խռովութենէ թշնամութեանն նուաճումն սիրով. և ոչ երբէք. այլ այժմ զայն խաղաղութիւնն մաղթել հրամայէ՝ որոյ վասն և քահանայն ժտի, և նորա մաղթանքն է՝ Աստուծոյ առ մարդիկ ունել խաղաղութիւն, զոր ծանուցեալ սովորեաց ասելով յետ խնդրելոյ սոցին. "Խաղաղութիւն ամենեցուն". այսինքն թէ խաղաղութիւնն զոր խընդրեցիք հրամանաւ սարկաւագիդ՝ տուաւ ձեզ ամենեցուն։ Որդ չև ևս առեալ զայն խաղաղութիւն սարկաւագս յորդորէ զնոսա խնդրել աղաչանօք զխաղաղութիւնս զայս, զոր Քրիստոս հաստատեաց մահուամբըն իւր, և ետ 'ի ձեռն աշակերտաց իւրոց հաւատացելոցս. "Խաղաղութիւն զիմ տամ ձեզ, զխաղաղութիւն զիմ թողում ձեզ". այսինքն զի Աստուած մերձ է առ ամենեսեան, և տեսող բնաւից գործոց և անգործից. բայց մեք խտրոց թշնամութեան արկանեմք զմեզս և զյանցանս 'ի մէջ մեր և նորա, և անտես

1 Մի օրին. Որդեօ սերովբէք ։
2 Մի օրին. Լուսոյն Աստուծոյ ։
3 Մի օրին. Որդւոյ իւրոյ ։
4 Մի օրին. Ուսուցանէք ։

լինիմք մեք և աղաչանք մեր. վասն այսորիկ ասէ, յանցանօք մեր թշնամութիւն եղաւ ընդ մեզ և ընդ տէրն մեր. Նախ զայս աղաչեցէք, և 'ի յիրաւամբք խռովութեննէն 'ի հաշտութիւն գալ ընդ ձեզ[1]. որպէս զի այնուհետև և այլ խնդիրքն զոր հայցեմք՝ նմին քաղցր կամօք լսելի լինիցի. և զայս մի դանդաղելով, կամ որպէս զհարևանցի իրս խնդրեցէք, այլ և ստուե-լապէս. յայտ է ամենայն զօրութեամբ, և ամենայն կամօք թախեցէք նախ՝ և զդրունս սիրոյն բացէք, խաղաղութեամբ և հաշտութեամբ նայել 'ի մեզ. թէ զայս առնուք, հաւատացէք զամենայն խնդիրսն ընդունել, զի առատ և մարդասէր է տէր սիրողացն իւրոց. արդ աղաչեցէք ասէ ստուելապէս զտէր: Իսկ նոքա որպէս դաստիարակի և վարժապետի յօժար կամօք հաւանեալ, և միաձայն[2] ասեն. "Տէր ողորմեա", 'ի փոքր բանս յայս զոր ասացին առ Աստուած՝ պարունակեալ զամենայն թախանձանս կամաց իւրեանց. քանզի յորժամ Աստուած ողորմի, զամենայն ինչ ընդարձակ առնէ այնոցիկ որոց ողորմի, զի կարող է. բայց ախորժեմ փոքր ինչ և զզօրութիւն ողորմածութեանն սահմանել, զի պարզապէս յայտնեսցի բանս՝ միշտ աղաղակել յեկեղեցի: Ողորմութեան հայցումն է՝ բժշկական զօրութեամբ 'ի թշուառութիւնս մեր մերձենալ առ Աստուած, և սիրոյն ստիպումն՝ հայցուածովքս խառնել ընդ մեր կարօտութեանս թշուառութիւն՝ զախտակցութիւն կամացն, լինել և նմա կամօք 'ի տրտմութեանս դժուարութեան լծակից՝ յոր մեք վտանգիմք 'ի հարկէ. և է ողորմութիւն ըստ ճըշմարիտ սահմանի՝ կամաւոր տրտմութեան ստիպումն նմա՝ վասն ծառայիցս վշտաց չարչարակցել[3] տեառն: Այլ և յայտնագոյնս առնելով ասեմք. ողորմութիւն ստուգի[4] դժուարակրացն և վտանգելոցն 'ի բացուստ տեսութիւն և ախտակցութիւն 'ի բնաւորական սիրոյն շարժմանէ խանդաղատեալ, և յողորմելի տեսութենէն՝ որպէս 'ի կրից վշտակցեալ. արդ զայսպիսի ախտակցութիւնս թախանձեմք ունել տեառն մերոյ առ իւրա-

1 Երկու օրին. Գալ ընդ ձեզ:
2 Երեք օրին. Միաձայնեալ:
3 Մի օրին. Զչարչարակցել:
4 Երեք օրին. Ստուգի:

քանզի որ հայցուածս մեր յառնէն, "Տէր ողորմեա"։ Զի թէպէտ և 'ի բացեայ ես՝ առելով 'ի մէնջ, և 'ի մերս աղցաւոր կրից ըստ բնութեան օտար, սակայն անճառաբար տեսանես, և միշտ քննես սկար և վշտացեալ զողորմելիքս, և քո օժանդակութեամբդ առ իւրաքանչիւր հայցուածսդ կարօտեալ։ Արդ աղաչեմք, խառնեա զառատապութ[1] կամօք ընդ նեղութիւնս մեր, և տես ողորմութեամբ զիւրաքանչիւրոց 'ի հայցուածոցդ ախտակցութեամբ, և որպէս ամենակարող[2] արա մեծ այցելութիւն ըստ բազմապատիկ հայցուածոցդ բազում ողորմութեամբ կատարելով զխնդրուածս, զոր համաձայնութեամբ ամենեքեան կցորդեալ դատիւրակիս մեր և առաջնորդիս՝ աղաչեմք, և իբր թէ ասելով. տէր, տեսեալ զմեզ յայսպիսի վտանգս՝ լեր ընդ մեզ, տրտմակից լեր մեզ, կարօտակից լեր. զի այսոքիկ և այսպիսիք են ողորմութեանն պտուղք։

"Վասն 'ի վերուստ խաղաղութեան և փրկութեան անձանց մերոց զտէր աղաչեսցուք"։ Տես, զի զխաղաղութիւն ոչ զոր յերկրէ ասաց վերագոյնն, այլ զերկնայինն, ըստ որում և յաւելուած բանիս զնոյն տեսանէ։ Քանզի Հայր է Աստուած, և հայրաբար գութ ունի առ եկեղեցիս, ո՛ այլ որ արգելու զնոյն, եթէ ոչ մեր ըմբոստանալն, և անհնազանդութիւն օրինաց նորին. սակս որոյ և խռովի, ոչ յինքենէ, այլ 'ի մէնջ զպատճառն ունելով։ Արդ մեք, ասէ, սարկաւագն, եղբարք, զղջացաք յըմբոստանալոյն, և եկաք 'ի միասին առ խնդրել զերեսս Հօրն մերոյ Աստուծոյ, և հայցել 'ի նմանէ զփրկութիւն. նախ աղաչեսցուք լինել իւր ընդ մեզ հաշտութեամբ[3], և ապա առաքել 'ի վերուստ զնախախնամողական զօրութիւնն. և խաղաղացուցանել զմեզ յամենայն խռովարար ներգործութեանց թշնամեոյն, որով ջանայ թշնամութիւն առնել 'ի մէջ մարդկան և Աստուծոյ։ Տալ մեզ աղաչեցէք զվերին խաղաղութիւնն, զայն որ 'ի մէջ հրեշտակացն է և աստուածութեանն. զի մեք այնպէս ունիցիմք ընդ Աստուած համականութիւն. խնդրեսցէք զի

1 Մի օրին · Ջատագովելու ։
2 Մի օրին · Ամենայնը ։
3 Երեք օրին · Հաշտութեան ։

փրկեսցէն անձինք մեր յայսմ խափանողաց արկածից ։ Իսկ նոքա զնոյն բան երկրորդեալ, և ըստ այսմ մասին զվշտակցութիւն յԱստուծոյ պահանջեն ասելով, « Տէր ողորմեա »։

« Վասն խաղաղութեան ամենայն աշխարհի, և հաստատութեան սրբոյ եկեղեցւոյ, և ամենեցուն օրհներգութեան [1], զտէր աղաչեսցուք »։ Յետ զերկնայինն ունելոյ խաղաղութիւն՝ ըստ կարգի եկեալ և ամենայն աշխարհի պահանջեն, այսինքն հաւատացելոց և անհաւատից ։ Ըստ այսմ մասին ոչ թէ միայն 'ի սատանայական խռովութեանց, այլ և 'ի մարդկանէ՝ որք զինեալ 'ի նմանէ [2] ընդ միմեանս 'ի թշնամութիւն պատերազմաւ յառնեն, զմիմեանս գազանաբար սպանանեն, զբնաւորական գութն ունայնացուցանեն, զանբնական ատելութիւնն ներգործեն, ուստի զեղխեալ չարիսն ո՞ կարէ թուել ։ Ինտի սպանումն, 'ի նմանէ գերութիւն, զրկումն, ծառայութիւն, 'ի պէտս այնր աշխատութիւն պարսպաց, պատրաստութիւն զինուց, խրոխտումն երիվարաց. նորին վասն անձաւք բնակութիւն մարդկան, քարակոշտք հանգստարանք, հարթ և գեղեցիկ տեղ՝ աւերի ։ Զի թէ խաղաղութիւնն 'ի մէջ էր, ոչ դժուարինքն բնակութիւնք, և սիրոյ տեղք ամայիք, ոչ ումն ծառայ և այլ ոք բանդեալ. ուստի կարևոր քան զամենայն ինչ զայս խնդրէ աշխարհի ամենայնի. յաւելու և զհաստատութիւն եկեղեցւոյ, քանզի արմատ նորա [3] հաստատութեանն արտաքոյն է խաղաղութիւն ։ Զի յորժամ թշնամեացն յարձակումն կարճի, սուր և գերութիւն խափանի, եկեղեցի պայծառութեամբ հաստատի, և իւրաքանչիւր ոք 'ի բարեպաշտութիւն յորդորի. ընդ որ լծէ ամենեցուն օրհներգութեան. քանզի որպէս 'ի խաղաղութենէն հաստատութիւն գայ յառաջ, այսպէս ըստ կարգի հաստատութեամբն որ ըստ օրէ յամենեցուն բերանն օրհներգութիւն Աստուծոյ առատանայ, զոր պարտական եմք միշտ հատուցանել նմա, ըստ այնմ. « Օրհնեցից զտէր յամենայն ժամ ». և դարձեալ, « Օրհնել միշտ 'ի սիրտս ձեր զԱստուած »։

1 Երկու օրին. Օրհներգութիւն ։

2 Մի օրին. Ի մարդկանէ ։

3 Մի օրին. Սորա ։

“ Վասն սուրբ տանս այսմիկ, և որոց հաւատով ընկալեալ զերկեղ տեառն աղօթեն 'ի սմա, զտէր աղաչեսցուք ,, : Տես դարձեալ թէ որպէս բարեկարգութեամբ տանի զընթացս բանիս . նախ երկնի և երկրի խնդրեալ զխաղաղութիւն, և ապա աշխարհի առ միմեանս · յետ որոյ եղականապէս որոշէ զժողովեալ տաճարս 'ի հանուրցն, և առաւել սորին վասն թախանձել յորդորէ : Բայց աստ մեզ ո՛վ երանելի պաշտօնեայ, զի՞նչ մեզ ոքք 'ի տանս եմք մարդկան հրամայես այնչափ փութով՝ վասն անձանց աղերսել : Այս ասէ ոչ միայն վձեզ գիտեմ աստ, այլ և համաձայն ձեզ զդասս հրեշտակաց · զի եթէ տէրն հրեշտակաց ըստ անսուտ խոստմանն է 'ի մէջ ժողովելոցս[2] յանուն նորա, ընդ նմա են և լեգէոնք իւրոցն սպասաւորաց . և թէ աղօթս մեր տեսանէ զերեսս Հօր մերոյ, յայտ է թէ հրեշտակքն մեր առնուն և բարձրացուցանեն զնոսա, որոց առաւել հրամայեմ աղաչակիցս լինել քան թէ ձեզ, և նոցա մտերմաբար վասն 'ի տանս ժողովելոցս զտէր թախանձել, ըստ որում են մարդասէրք և աստուածասէրք : Բայց թէ զորպէսն այսմ հաւատալ կամիք յինէն պահանջել, ընթացիք 'ի պատմութիւն սրբոյ հօրն Սպիւռիդոնի, և գտանէք զասացելոցս յայտնաբանիչն · քանզի յորժամ սարկաւագակիցն իմ[3] հեղգացաւ ըստ եպիսկոպոսին հրամանի լուցանել զկանթեղսն՝ նայեցեալ 'ի սակաւութիւն ժողովոյն, հրեշտակք պատասխանէին նմա 'ի քարոզութեանն զՏէր ողորմեա, կշտամբեալ[4] զթերահաւատութիւնն : Այն եկեղեցի գոլով և նոյն պաշտօն, հաստատեցէք զհաւատս և ընդ մեզ ունել զնոսին երգակիցս և աղաչանացս առ Աստուած կցորդ :

“ Վասն հայրապետին մերոյ կենաց և փրկութեան զտէր աղաչեսցուք ,, : Որպէս ասացաք, կարգ ունի հետևումն հրամանական աղօթիցս · զի յորժամ զտաճարս Աստուծոյ և զբնակիչս առ համանգամայն, ապա սկսանի յանուանէ յիշել զիւրաքանչիւր ոք՝ ըստ չափոյ պատուոյն նախադասեալ · և ո՛ ունի յեկեղեցին զառա-

1 Երկու օրին · փոխեալ :
2 Երկու օրին · ժողովրդոցս :
3 Մի օրին · Սարկաւագն իմ :
4 Մի օրին · Կշտամբէլ :

ջին տեղն եթէ ոչ եպիսկոպոսն, որ է փոխան Քրիստոսի՝ առաջնորդ հոգւոց, և նորա փրկութեանն և ուղղութեանն շնորհ յամենեսին ազդէ. ուստի նախ նորին վասն աղօթեսցուք¹ նմա ասէ, զի մի երբէք սայթաքեալ հովուին, ընդ նմին հօտքս լիցուք գահավէժ:

"Վասն պատուական քահանայից, և որոց 'ի Քրիստոս սարկաւագաց, և ամենայն ժառանգաւորաց եկեղեցւոյ զտէր աղաչեսցուք": Սոքա զերկրորդ և զերրորդ կարգ պատուոյ յեկեղեցիս ունին յետ եպիսկոպոսին, ըստ իւրաքանչիւր աստիճանի ժառանգակիցք Քրիստոսի և իշխանք հոգւոց. որոց փրկութիւնն ոչ անձանց միայն է օգուտ, այլ և ամենայն ժողովրդեանն, սակս այսր վասն նոցա աղաչէ: Բայց մի եղբարք հպարտասցուք վասն նախադասութեանս, այլ զայն ածցուք զմտաւ, թէ "Որում շատ տուաւ՝ շատ խնդրեսցի 'ի նմանէ", և ոչ թողու Աստուած զպատիւս իւր ընդ վայր, առ 'ի յոչ պահանջել զկշիռ պտղոյ գործոյն՝ որ հաւատացաւ նմա. այսինքն որոց Քրիստոսի ժառանգակիցք են և անուանին, ոչ միայն անձանց լինել լոյս, այլ և զայլս լուսաւորել ըստ իւրաքանչիւր պաշտաման գործոյ. ապա թէ հեղգամ, ունիմ 'ի ձեռին հաստատութեամբ զպատիժ չար և վատ ծառային:

"Վասն բարեպաշտ և աստուածապահ թագաւորին մերոյ, և ամենայն պաղատանն և ամենայն զինուորաց նորա զտէր աղաչեսցուք": Յետ ժառանգաւորացս և հոգւոց առաջնորդաց 'ի հասարակ ժողովուրդն իջանէ, որոց նախապատիւք են թագաւորք. սոցա վասն Պօղոս մեզ առաւելապէս հրամայէ աղօթել քան ամենայն մարդկան. Եր վասն. զի խաղաղութ̃ք, ասէ, զկեանս մեր վարեսցուք, քանզի հոգւոյ և մարմնոյ կենաց ցանկամք. արդ որպէս եպիսկոպոսք 'ի պէտս հոգւոց խաղաղութեան տքնին, և թագաւորք 'ի մարմնոց, և ըստ որում քահանայք և սարկաւագք նորա են գործակիցք, և իշխանք պաղատին զինուորքն՝ սորա. և 'ի մարմնական գործն կանխեալ, և այնու զմեզ խնամեալ՝

1 Երկու օրին. Մաշթէոցաւոց:

պարտական արարին զեկեղեցի հոգւոց նոցա փրկու-թե՜ խնամակալու լինել աղօթիւք. ըստ այնմ, "Նոցա առաւելութիւնն 'ի ձեր պակասութիւնն, և ձեր պակասութիւնն 'ի նոցա առաւելութեանն. զի լիցէք կատարեալք 'ի մի":

"Վասն լինելոյ նորա յաղթող, և խորտակելոյ զամենայն՝ թշնամիս առ ոտս նորա զտէր աղաչեսցուք": Քանզի յաղթութիւն նորա ամբողջ պահէ զմեր խաղաղութիւն, և խորտակելն նորա զթշնամիսն՝ ըզ-մեզ 'ի սրոյ նոցա պարուրէ, կարևոր է 'ի պէտս մեր և զայս աղաչել:

"Վասն ամենայն քաղաքաց և գաւառաց, և որոց հաւատով բնակեալ են 'ի նոսա, զտէր աղաչեսցուք": Զի մի այլոց փրկութեան մախանաց տացուք կարծիս՝ մեր թագաւորիս յաղթութիւն խնդրելով, առնու զաղաչանսն և սփռէ 'ի վերայ տիեզերաց, և առաւելապէս հաւատացելոցն 'ի նոսա, զի այլքն մարմնակիցք են մեր, և հաւատացեալքն ընդ ամենայն աշխարհ անձնակիցք և եղբարք:

"Վասն պտղաբերութեան երկրի և ժամանակաց զտէր աղաչեսցուք": Զպտուղն ոչ միայն երկիրն տայ, այլ և հոլովեալն 'ի վերայ ժամանակք եղանակաց տարւոյն՝ որք խառնեն ընդ նա զբարեխառնութիւն օդոցն. զարունն զխոնաւութիւնն, և ամառն զցամաքութիւն խորշակին. ոմն մնուցանէ, և ոմն կատարէ, և զհարկաւոր կարիս մարմնոյս պատրաստէ, իրաւացի է զշնորհ սոցին խնդրել յԱստուծոյ:

"Վասն ճանապարհորդաց, նաւորդաց, վաստակաւորաց, և վասն գերեաց փրկութեան զտէր աղաչեսցուք": Կարի կարօտ են ձեռնտուութեան Աստուծոյ սոքա յիւրաքանչիւր ընթացս, և դժուարագթելիք հարկաւոր փորձանօքն, կամ նաւաբեկութեամբ, կամ աւազակաց դրժանօք, կամ թէ այլ ինչ վտանգիւք: Զինչ պարտ է և զգերեացն թշուառութիւն երկրորդել՝ որք յոյժ մանաւանդ կարօտին ձեռին Աստուծոյ օգնականութեան. սորին վասն՝ հասարակաց անդամոց անկ է մեզ աղաչելն:

1 Երկու օրին. Սոյն ձայն:

“Վասն փրկելոյ զմեզ 'ի վշտաց և 'ի նեղութեանց զտէր աղաչեսցուք”: Վիշտ և նեղութիւն՝ զոր մարմնոց և հոգւոց պատահի՝ ներգործութեամբ չարին առնու. քանզի փորձութիւն է վարք մարդոյ 'ի վերայ երկրի, ըստ որում ասացաւ, և միշտ կարօտիմք յայսմանէ փրկիլ Աստուծով, զոր խնդրելն իրաւացի է. զի մի՛ տացէ 'ի փորձութիւն առաւել քան զկար մեր, և 'ի տալն՝ արասցէ և զելսն:

“Ընկալ կեցո և ողորմեա, և պահեա զմեզ տէր քոյին շնորհիւդ”: Հայր, և դաստիարակ և ուսուցիչ է ժողովրդեանն սարկաւագն. արդ յորժամ որդիքն հաւանութեամբ զոր ինչ ուսոյց՝ աղաչեցին, առնու զպտուղ աղօթից նոցա, և 'ի ձեռս մնաց և բարբառոյ իւրոյ և ըղձականութեամբ սրտի իւրոյ նուիրէ առաջի Աստուծոյ ասելով, ընկալ. զո. զայս զոր ինչ սոքա հրամանաւ իմով զքեզ թախանձեցին քաղցր և սիրալիր ընկալ 'ի ձեռս քո տէր, որ պատարագ քեզ հաճոյ խնդրեցեր զայս ասելով, “Մատո Աստուծոյ պատարագ օրհնութեան, և կատարեա բարձրելոյն զուխտս քո. կարդասցես դու առ իս յաւուր նեղութեան քո, և ես փրկեցից զքեզ”: Արդ մեք 'ի նեղութենէն ստիպեալ կարդացաք առ քեզ աղաչանօք. դու այսուհետև ըստ քում խոստմանն արասցես զփրկութիւն, այսինքն կեցուցանել զմեզ անվրդով 'ի սահեցմանէ չարին կենցաղոյս, և ողորմեա: Բազմապատկաբար խնդրեաց ժողովուրդս զողորմեան քո, տուր և մի՛ արգելուր մարդասէր, և “Պահեա զմեզ տէր քոյին շնորհիւդ”, զի զաղտամարտ ունիմք թշնամի ընդ խաւար խոցոտող զայնոսիկ որ ուղիղ են սրտիւք: Ի քեզ յուսացաք ես և սոքա, առ որ և կողկողիմք ձայնիւ. պահեա զմեզ տէր շնորհիւդ քո, և մի՛ խնդրեր ըզփոխարէն ծառայական հպատակութեանն[1] առ որ տկարացաք, քանզի բարիք իմ քեզ չեն ինչ պիտոյ, անկարօտ բնութիւն և ամենակալ:

“Զսրբուհի աստուածածինն զօրհնեալ տիրուհին և զմիշտ կոյսն Մարիամ. յիշեսջիք և զամենայն սուրբս, և նոքօք զտէր աղաչեսցուք”: Ո՛վ թէ որքան

1 Մի օրէն. Զհպատակական ծառայութիւնն:

է գութ գործոյս սորա՝ 'ի վերայ եկեղեցւոյս. զի ոչ զայն բաւական համարեցաւ զիւր բնաւիցս վասն մեղ-թել, այլ և զորբոցն ոտից բռնադատէ բուռն հարկանել. զոր օրինակ որ առաջի Թագաւորին մտանեն ,,իշխանացն որ շուրջ են զնովաւ ակնարկեն՝ համարձակութեամբն զոր ունին առ արքայն՝ կցորդել հայցուածոցն, այսպէս ասէ և դուք յետ ամենայնի զտիրամայրն ձեր և զամենայն սուրբս յիշեսջիք առաջի Աստուծոյ: Հաւատամք զի թէպէտ և մեք անարժանս եմք, նոցա ստիպումն աղաչանացն շարժէ զգթածն յողորմութիւն, որպէս ասաց. "Վերակացու եղէց քաղաքիդ այդմիկ վասն իմ և վասն Դաւթի ծառայի իմոյ,,. իսկ սոքա յաւելուն դարձեալ. "Յիշեա տէր և ողորմեա,,: Այսինքն՝ զառաքինութիւն սրբոց քոց և զհաճոյական վարս որ տեառնդ նուիրեցին՝ զմտաւ ածեալ յիշեա, և թէ ոչ վասն մեր՝ յաղագս նոցին սիրոյ ողորմեա մեզ տէր, որպէս և ստիպիս միշտ 'ի նոցանէ՝ ոչ անտես առնել զգործս ձեռաց քոց:

"Եւ ես միաբան վասն ճշմարիտ և սուրբ հաւատոյս զտէր աղաչեսցուք,,: Ճշմարիտ և սուրբ հաւատ ոչ միայն զխոստովանութիւն սուրբ Երրորդութեանն ասէ, այլ և զհաւատալն եկեղեցական բարեկարգ աւանդութեանցս, և զԱստուած առաջի աչաց ունել աստանօր հաւատով յունկնդրութիւն խնդրուածոցս, զի մի թերահաւատութեամբ անյոյս եղեալ հեղգանայցեն յաշխատութենէ աղօթիցն, այլ որպէս զի տացէ Աստուած առաւելապէս զօրութիւն առ իւր գիտութիւնն բարձրանալ:

"Զանձինս մեր և զմիմեանս տեառն Աստուծոյ ամենակալի յանձն արասցուք,,: Որք մինչև ցայժմ հասարակօրէն աղօթեցիք՝ զեղբարցն փրկութիւն նախապատուելով[2] քան զանձանց, այժմ և զձեր անձինս և զմարմինս Աստուծոյ յանձն արարէք[3] նախախնամել յամենայն դրժանաց չարին:

"Ողորմեաց մեզ տէր Աստուած մեր ըստ մեծի ողորմութեան քում,,: Մեծ է ողորմութիւնն Աստու-

1 Մի օրին. Գործողութեան նորա: 3 Մի օրին. Յանձին արարէք:
2 Մի օրին. Նախապատուեցէք:

ծոյ, և առաւել մեծ և բազմապատիկ, ըստ որում ա-
մենայն ուրեք գիրք վկայեն. երբեմն "Ողորմեա ինձ
Աստուած ըստ մեծի ողորմութեան քում,,. երբեմն
"Աստուած որ մեծն է ողորմութեամբ,,. և մեծ վասն
այնր, զի և որոց ոչ խնդրեն յիմարեալ տգիտութեամբ,
նայեցեալ 'ի թշուառութիւնն՝ առանց խնդրելոյ ողոր-
մի և օգնէ գթալով 'ի ստեղծուածն իւր. ըստ որում
յաւելու առաքեալ. "Մինչդեռ մեռեալն էաք 'ի մեղս
մեր՝ կենդանիս արար 'ի Քրիստոս,,. իսկ է և բազում
ըստ սաղմոսերգողին, "Որպէս զի բազում արարեր
զողորմութիւն քո Աստուած,,. զի արդարապէս կշռէ
ըստ իւրաքանչիւր արժանեաց զշնորհն, մեծի հաւա-
տոյն և աշխատութեանն՝ մեծ, և փոքուն փոքր. վրի-
պի և ոչ ոք ընաւ յողորմութենէ որ ապաւինի յԱս-
տուած. վասն այսորիկ ասէ, խնդրեցաք բազում անգամ
զողորմութիւն, և դու հարուստ ես դովաւ տէր ա-
րարիչ մեր. տուր մեզ զդոյն ըստ չափոյ արժանեաց
մեր, և առաւել քան զնոյնն, և մի՛ անտես առնել
զայսքան աղաղակ 'ի քեզ ապաւինելոցս: Յետոյ դար-
ձեալ ստիպէ զաշակերտսն. ասացէք, մի՛ հեղգայք, բա-
խեցէ՛ք և բացցի ձեզ, ժտեցէ՛ք, թախանձեցէ՛ք. թէ ոչ
վասն բարեկամութեան՝ յորմէ յետնեալ գտաք, հա-
ւատասցուք զի վասն ժտութեանս յառնէ տէրն մեր.
և տայ զխնդրեալ ողորմութիւնս. իսկ նոքա սրտառուչ
կամօք, որպէս ընկալան հրաման՝ բազմապատկաբար
զնոյն կրկնեն առ Աստուած:

Արդ եկայք եղբարք որք տգիտանայք զխորհուրդ
Քրիստոսի պատարագելոյս, և 'ի մեռելոց սակս միայն
զնա դնէք, որոց միայն յուսայք գտանել սովաւ օգնու-
թիւն, ուսարուք հաստատութեամբ զխորհրդոյս զօ-
րութիւն. այսինքն զի զոր ինչ սարկաւագս խրատեաց
զեկեղեցին աղաչել բարձրաձայն, զնոյն քահանայն
հանդերձեալ է խնդրել խորհրդաբար՝ պատարագին
միջնորդութեամբ, և սա նորա կամացն զսոսա զուգ-
ընթաց լինել յորդորեաց, զոր բաղդատելով ընդ ի-
րեարս միմեանց գտանես հաւասար: Ասաց սարկա-
ւագն խնդրել քեզ զխաղաղութիւն, զնոյն խնդրէ և
քահանայն ասելով. "Սովաւ շնորհեա զսէր, զխա-
ղաղութիւն աշխարհի,,. ասաց սա խնդրել զեպիսկո-

պտղոց, զթագաւորաց, զաշխարհի, և զոգւոց¹ փրկութիւն. զայսանէ մաղթէ և քահանայն միջնորդութեամբ պատարագին, և չիք ինչ կարծիք զանազանութեան ճշմարիտ քննողաց: Այլ պարտիմք 'ի սկզբանս զխորհրդոյս զօրութիւն ճանաչել՝ ըստ որում ուսաք, որպէս զի քահանայքս այսպիսի մտօք զնոյն մատուսցուք, և ժողովրդականք վասն իւրեանց և վասն ամենեցուն ստուգեսցեն զբանն զսոյն կատարել, առ 'ի յարձանանալ² յուսոյ մեր 'ի շնորհացս առատութիւն անսատերիւր հաստատութեամբ, թէ մին ամենեցուն փոխան մեռանի³. քանզի ամենեքեան մեռեալ էաք, և վասն ամենեցուն մեռանի. էր վասն. որպէս զի կենդանին եղով այսուհետև՝ մի անձանց լիցուք կենդանիք, այլ այնմ որ 'ի վերայ մեր մեռաւ և յարեաւ, որում փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն:

## ԸՆԴԷՐ ՔԱՀԱՆԱՅՆ ԾԱԾՈՒԿ ԽՈՐՀՐԴԱԲԱՐ ԱՍԷ ՋԱՂՕԹՍ

ԺՈՂՈՎՈՒՐԴՆ 'ի ծառայական կարգ են Աստուծոյ, և ոչ յիշխանակցութեան կամ բարեկամապէս խորհրդակցութեան. իսկ քահանայք վասն մտերիմ հաւատարմութեան⁴ Աստուծոյ գործակիցք եղեն, առեալ իշխանութիւն 'ի վերայ սոցա՝ աստուածաբար կապել և արձակել և շնորհս բաշխել. են և յաստուածակոյս կողմն, ըստ որում ասաց առ նոսա տէրն, "Զձեզ ոչ ևս կոչեցից ծառայս, զի ծառայն ոչ գիտէ զինչ գործէ տէրն նորա. այլ զձեզ կոչեցից բարեկամս, զի զամենայն զոր լուայ 'ի Հօրէ իմմէ՝ ծանուցի ձեզ": Այս յայտ է թէ հազարապետք են խորհրդոցն Աստուծոյ, և համարձակ առ նա որպէս զգործակից և զիշխանակից. ուստի և ոչ աղաչեն զնա ծառայաբար աղաղակաւ, այլ 'ի խորհուրդ մտանեն թագնաբար ընդ տեառնն, 'ի ձեռն պարզ դիմացն և համարձակութեանն, իրաւունս դատելով՝ զոր 'ի փառս

1 Մի օրին. Եւ զօգուտ փրկութեան:

2 Մի օրին. Արդ 'ի յարձանանալ:

3 Մի օրին. փոխանակ ամենեցուն մեռանի:

4 Մի օրին. Վասն մտերիմ բարեկամ հաւատարմութեան:

իւր և ըստ հաճոյից կամացն Աստուծոյ խնդրէ կատարել. զի յաղաղակելն՝ ստիպէ զմեզ ծանրալուրն լինել ումեք. և ծանրալուր է Աստուած ժողովրդեանս, որք վասն 'ի Քրիստոս տղայութեանն խառնից արկեն ըզ-մեղսն 'ի մէջ ինքեանց և նորա. ուստի և աղաղակեն՝ իբր բանադատելով առ հայցուածոցն լրումն. իսկ սա որ քահանայ է, հարազատապէս մերձենայ առ նա իբր խորհրդակից Աստուծոյ և վերակացու ժողովրդեանս մաղթել առ Աստուած և մովսէսապէս անմռունչ գոչմամբ աղաղակէ առ նա, որով գիտէ զտէր իւր զիջուցանել 'ի բարկութենէն, խոնարհել 'ի սիրոյն աղերս. իսկ եթէ ասիցես գրաւեալ զքահանայս ընդ տգիտութեամբ կամ ընդ մեղօք՝ որպէս զմի ոք յոտարացն, բանս այսպիսի ելով մեր և ոչ զյաղթելն համարձակէ զքահանայական աղօթսն, զի մի լուիցուք, "Դու ընդէ՞ր պատմես զարդարութի՞ իմ, կամ առնուս զուխտ իմ 'ի բերան քո", մեղաւոր ելով և մերժող, և տգէտ բանից բերանոյ իմոյ: Այս դարձեալ և ոչ ըզ-փառսն բարձրացուցանել 'ի լուր ժողովրդեանն է վայրապար. քանզի յառաքելոյ 'ի սոյնս խրատիմք, յորմէ առ կորնթացիսն վասն ընտրութեան շնորհացն գրեցելոցն, ընդ որս ասէ, "Եթէ դու օրհնեսցես օտար լեզուաւ, զիա՞րդ որ կայցէ 'ի տեղւոջ տգիտին՝ ասիցէ 'ի քում գովութե՞ն զամէնն". որով տայ տարացոյց աղօթիցն տգէտ լինել մերձակայիցն, և փառաւորութեանն հաղորդ՝ զամէնն ասելով, որպէս զի վկայութեամբ ամենեցուն օրհնեսցի անունն Աստուծոյ: Ինքն և ըզ-լռութե՞ աղօթելս ուսոյց մեզ. "Զոր կամքն յաղօթս, ասէ[3], որպէս արժանն է ոչ գիտեմք, այլ ինքն Հոգին բարեխօս լինի 'ի հեծութիւ անմռունչս". տես զի անմռունչ, այսինքն անբարբառ բանիւ գիտէ նա զքահանայական աղօթսն, որ 'ի սրբոյ Հոգւոյն սպասաւորութենէ բարձրանայ առաջի Աստուծոյ, ըստ որում ետես աւետարանիչն. ապա դրժելով սահմանի օրինացն՝ յայտ է թէ յառաքելական շաւղացն մոլորիմք:

1 Երկու օրին. Յաղաղակեն այն: Բնամբ աղօթել:
2 Երեք օրին. Ինքն և լռու-
3 Մի օրին. Ասէ:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌԱՒՕՏԻՆ ԱՂՕԹԻՑ

"Տէր Աստուած մեր, որոյ կարողութիւնդ անքննին է, և փառքդ անհասանելի": Զանուն Հօրն որդիքն և ծառայքն միապէս անուանեն, սակայն նա զանկնդրութիւնն զանազանաբար ձայնից մատուցանէ. արդ տայ և սա զտէրն անուն Աստուծոյ 'ի սկիզբն բանիս հաւասար ժողովրդեանն, սակայն աչք նորա և ականջք 'ի վերայ է աղօթից սորա որպէս առ որդի, և ինքն գիտակցութեամբ մտաց այսմ վկայէ, և իմացականապէս առ իմանալին մտեալ է, առ որ սկսանի ասել մերձաւոր հայմամբ [1], "Կարողութիւնդ անքննին է": Արդարև անքննելի կարողութեամբ այն [2] որ չափէ զերկինս թզաւ, և զերկիրս ամենայն քլաւ, որ կշռէ զլերինս կշռովք և զդաշտս կշռորդովք, որ զանգործն տեսանէ, և զշունչ և զոգի քննութեամբ սրտին բաժանէ. անհասանելի է հաւասար այսմ և փառք նորա, այն որ զերկինս և զերկիր լնու, և 'ի սրովբէից անհաս ամբարձեալ պարուրի:

"Որոյ ողորմութիւնդ անչափ է, և գթութիւնդ անբաւ": Ո՛վ շնորհին առատութեան. զի ըստ մեծութեան փառացն մեծ է և զիջումն ողորմութեանն. ոչ դրի և ոչ պատմի, նա և փորձիւ բազում անգամ այսպէս ճանաչի գոլ, ըստ որում 'ի մարդանալն, յետայնր և 'ի խաչն, ուր զառատութիւն գթութեան տեսին երկինք և երկիր. "Զի մինչ դեռ մեղաւորքն էաք, Քրիստոս 'ի վերայ ամբարշտացս մեռաւ": զորոյ գթոյ առատութիւն այսու ծանուցեալ խորհրդակցս նորին ասէ.

"Դու ըստ առատ մարդասիրութեան քում նայեա 'ի ժողովուրդս քո և 'ի տաճարս յայս": Եւ զինչ է ասելն և խնդրելն՝ նայեա. թերևս է՞ ինչ թաքուն յԱստուծոյ, առ որս ոչ նայի, այն որ զամենայն ինչ դրեալ ունի զանգործս մարդկան. և ոչ երբէք. բայց սակայն այսքան հայեցողս և ննջէ բազում անգամ. ըստ այնմ, "Զարթիր տէր վասն անուան քո. զարթիր վասն

1 Երկու օրին. Համբարձմամբ: զուաթիան այնմ:
2 Երեք օրին. Անքննելի է կարո-

մեծութեան փառաց քոց, և զարթիր տէր և մի մեր-ժեր զմեզ„ ։ Յորոց հայել՝ զխնամելն ուսանիմք և զպա-հելն, և հնչել՝ զանտես առնելն ըստ մեղաց. վասն այսր և ըստ այսմ զհայելն խնդրէ իբր յիւր ժողովուրդ, և յարեան իւրոյ դիմն հարկաւորապէս ։

„Եւ արա ընդ մեզ և ընդ աղօթակիցս մեր առա-տապէս զողորմութիւն քո և զգթութիւն„ ։ Տեսա-նես, զի իւր աղօթակից կոչէ զժողովուրդն՝ յաղագս ընդ մի շաւիղ խնդրոց գնալոյ սմա և նոցա հրամանաւ սարկաւագին. և զի նոքա զտէր ողորմեա ձայնեցին, սա առնել զայն Աստուծոյ իրաւունս դատի 'ի վերայ ժողովրդեանն իւրոյ ։

„Զի սուրբ ես Աստուած մեր, և քեզ փառք յա-ւիտեանս„ ։ Սուրբ ոչ միայն վասն ամենաբաւ պար-զութեանն ասէ, այլ թէ և 'ի մեր պարտեացն ան-կցորդ ես, յաղագս վարժելոյ և միշտ խրատելոյ և խնա-մելոյ. ըստ այնմ, „Ես զանձն իմ սուրբ առնեմ 'ի վերայ սոցա„. արդ որպէս արարեր և ես սուրբ, միշտ ողոր-մելով, ասէ՝, սուրբ լեր 'ի մէջ մեր, և քեզ փառք հա-տուցումն 'ի տկարացելոցս վասն առատութեան 'ի վե-րայ մեր շնորհիդ ։

## ԶԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ՍԱՂՄՈՍԱՑՆ ՔԱՂՑՐԱՁԱՅՆՈՒԹԻՒՆՔ ՆՈՑՆ ԵՒ ԸՆԹԵՐՑՈՒԱԾՔՆ ՅԵՏ ԱՅՆՈՐԻԿ

ՍԱՂՄՈՍՔՍ մի ըստ միոջէ խորհրդոյս զօրու-թեան են նախագուշակք, զորս եղանակելով յայտ առնեմք՝ թէ առ մի դիտաւորութիւն հայի մարգա-րէիցն նախաճառութիւն և եկեղեցականացս խորհր-դոց կատարումն. թէպէտ և ըստ դատման բառից և ժամանակաւ զանազանին 'ի միմեանց, սակայն մի է էու-թեանն զօրութիւն, այսինքն մարդկան փրկութիւն. ուստի և զսաղմոսերգութիւնս և զընթերցմունքս սրբոյ պատարագին՝ եկեղեցւոյ օրէնք սկիզբն արար, նշանա-կելով թէ վասն զի աստուածաշունչ գիրք օրինաց և հրամանացն Աստուծոյ են հանդերձ սքանչելի գոր-ծովքն պատմաբանք, զոր քաղցրացուցանեմք 'ի յունկն լսողացդ եղանակաց վայելչութեամբ սաղմոսիս, և 'ի բաց վարեալ 'ի մտաց ձերոց զարկածս սատանայական խորհրդոց, երաժշտական նուագաւս մաքրեմք զնոյն, և

առ բարձրագոյն տեսութիւն պատրաստեմք ։ Քանզի է այս շնորհ զօրութեան սաղմոսիս՝ յերգելն փախուցանել զխորհուրդս դիւականս, և զջոկս նոցա, որպէս յայտ է 'ի պատմութենէ անտի Թագաւորութեանցն . զի յորժամ երգէր Դաւիթ, դիւրէր Սաւուղի 'ի լուր երգոց 'ի չարչարանաց այսոյն . նոյն լինի և յեկեղեցիս ։ Քանզի ամենեքեան գալով յարտաքին խուճապմանց, ոմն 'ի վաճառուց տուրևառից, ոմն յաշխատութենէ մարմնական գործոյ, այլ ոք 'ի զինուորականն կարգէ, իշխանքն յիշխանականն ատենէ՝ եկեալ մտին յեկեղեցիս, և դեռ ևս ամբոխեալ են 'ի խորհուրդս իւրեանց՝ յիշատակաւ զբաղմանցն . վասն որոյ նախ զհեշտալուր երգս սաղմոսացս երգեալ՝ մաքրեն 'ի մտաց նոցա ըզմարմնական տիպսն, և երգովքս յափշտակեալ զբաղեցուցանեն զմիտս նոցին յաստուածայինսն . և յորժամ բովանդակ երգ սաղմոսացս կատարի 'ի հնոց կտակարանաց ընթերցմունք, և զմտաց մեր ներգործութիւնք առաքինութեանն ունակութիւն [1] փոփոխէ, յետ այսորիկ սրբազան գիրք առաքելականք համաձայնին ընդ մարգարէիցն, որպէս զի ցուցցի մի դիտաւորութիւն սոցա և նոցա ունելոյ . և որպէս միով բանիւ խրատեն զմարդիկ, յաղագս որոյ և առ 'ի միմեանս յարակցին ընթերցմամբ ։ Դարձեալ զի և որ համառօտն և 'ի ծածուկ էր 'ի սաղմոսն, և 'ի տառս մարգարէիցն, 'ի ձեռն հաւատարիմ առաքելական պատմութեանն ընդարձակ և յայտնապէս վերածանին . և թէ ոք 'ի շարադրութեանն խորհուրդ ընթերցուածոցն նայեսցի՝ միատեսակս և համաձայնս գտցէ իրերաց, որպէս միոյ աստուածապետական հոգւոյ շարժեցեալս . յաղագս որոյ վայելչապէս յեկեղեցի սուրբ յետ հնոց կտակարանացն և սաղմոսացն՝ նորոցն ընթերցումն լինի կարգ տուչութեանն, ուսուցանելով մեզ՝ թէ մարգարէքն կանխագուշակութեամբ զառյապայ եղեալ Քրիստոսի փրկագործութիւնս ասացին յառաջագոյն . իսկ առաքեալքն յետ այնորիկ ականատես գոլով նմին՝ զկատարումն իրին պատմեցին մեզ . բայց սակայն գլուխ աստուածաբանութեան հնոյն և նորոյս

1 Երեք օրին . Ըստ աստուածութեանն ունակութեան :

է աստուածագործիլն մեր, որ յետ սրբելոյ և խրատելոյ զմեզ սոցա, հանդերձեալ է խորհրդածութեամբ պատարագին սրբոյ երևիլ։ Բայց այժմ իրաւունս համարիմ և զիւրաքանչիւր ուրուք սաղմոսացն զօրութիւն քննել, առ 'ի հաստատութիւն ասացելոցս աստուածասէր մտաց արկեալ առաջի։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՌԱՋՆՈՒՄ ՍԱՂՄՈՍԻՆ [1]

«ԲԱՐԻ է խոստովան լինել տեառն, սաղմոս ասել անուան քում Բարձրեալ»։ Ո՛չ ոք կարծեսցէ տգէտս զմարգարէսն նորա խորհրդոյս, կամ 'ի բացուստ տեսողս. զի թէ Հոգին էր որ խօսէր 'ի նոսա, և Հոգին զամենայն քննէ և զխորս Աստուծոյ, և Աստուած կոչէ զչգոյն իբրև զգոյ, որ յառաջագոյն սահմանեալ էր զայս 'ի փառս մեր, ապա յայտ է թէ որպէս այժմ՝ նոյն և յայնժամ Հոգին գիտէր զփրկութիւնս նորա, այլ ըստ պատշաճի ժամանակին ձևացուցանէ զբանս իւր 'ի մարգարէսն պատրուակաւ. իսկ եթէ կեղակարծիս մտօք առ 'ի սոյն հաւատ՝ եկ միայն յայս սաղմոս, նախ առընթեր Դաւթի, և ուսիր թէ որպէս պատմէ քեզ առ Աստուած գոհութեամբ զշնորհակալութիւն Քրիստոսի շնորհացս եղելոց, որպէս վայելող 'ի նոյն և ուրախացեալ, և մեզ առ յապա եկելոցս և պայծառացելոցս պարգևօքն ուսուցանէ զնոյն երգել, ըստ որում նշանակէ 'ի վերնագիրս՝ Սաղմոս օրհնութեան յաւուր շաբաթու։ Իսկ ո՞ր է օր շաբաթու եթէ ոչ այսօրս առաջի կացեալս, յորում եբարձ Աստուած զարտօսր յամենայն աչաց, և շաբաթացոյց զմեզ յամենայն աշխատութենէ մեղաց, որպէս ասէ Պօղոս. քանզի 'ի նոցանէն յԱրարչէն նուաճեցաւ շաբաթանալն, վասն այսր այլ օր շաբաթու սահմանէ Դաւիթ, յետ այնչափ ժամանակաց, և 'ի նոյն[2] ինքն ճշգրիտ շաբաթ այս ժամանակ սրբոյ պատարագիս, յորում խոստացեալ 'ի մարմնական աշխատութենէ՝ եկայք 'ի սուրբ եկեղեցիս ճաշակել զՔրիստոսի խորհուրդն և հանգ-

1 Երկու օրին. Առաջին սաղմոսոյն։ Այլ օր. Առաջին սաղմոսին։

2 Երեք օրին. Նոյն։

չել 'ի մեղաց, զոր ծանուցեալ մարգարէիս՝ եկեալ 'ի մէջ ժողովելոցս երգակիցս առնու զմեզ 'ի սաղմոսս, ոչ յաղօթից և ոչ յարտասուաց երգ, որպէս մինչ ասէ. "Տէր մի սրտմտութեամբ քո յանդիմանիր զիս, և մի բարկութեամբ քո խրատեր զիս". կամ "Ողորմեա՛ ինձ Աստուած, զի կոխեաց զիս մարդ զօրհանապազ". այլ զինչ. սաղմոս օրհնութեանց։ Վասնզի գիտէ զայս ժամանակ գոհութեան և ոչ ապաշխարութեան, ուրախութեան և ոչ արտասուաց կամ տրտմութեան. զի որք յուսամք այժմ Որդւոյն Աստուծոյ վասն մեր պատարագիլ՝ փարատեցաք զերկեղ մեղացն, և մոռացաք 'ի մոռաց մերոց, և զօրհնութիւնս զայս շնորհողին անձնցուցանեմք առ նա բարեյուսութեամբ առաջիկայ պարգևին սպասելով. ուստի և առաջնորդէ մեզ երգել, "Բարի է խոստովան լինել տեառնդ"։ Արդարև այս[1] ժամանակ բարի և պատշաճ գոհանալոյ զքէն, ասէ, Աստուած, քան զայլ ընթացս հոլովման աւուրն. Եւ վասն. զի յուսամք զմիածնին Որդիդ տալ փոխանակ մեր 'ի մահ, յաղագս որոյ և մեզ իրաւունս վարկանիմք բարձրաձայն սաղմոսերգութբ խոստովանել զշնորհս քո որ առ մարդիկ 'ի լուր երկնի և երկրի։ Բայց զինչ է անունն սաղմոսին, զի ասէ. "Սաղմոս ասել անուան քում բարձրեալ". սաղմոս առանձինն է յօրհնութենէ, այսպէս և օրհնութիւն որոշի[2] 'ի գովութենէ. քանզի օրհնութիւնն է յեխցս բալեաց մեր եղեալ Աստուծոյ բարեբանութիւն, իբր թէ ասելով. դու արարեր զմեզ քեզ պատկերակից, մեք փոխանակ այդորիկ օրհնեմք զքեզ, և գովեստն վասն հրաշիցն գովասանութիւն. որպէս մինչ ասէ, "Ամենայն հրեշտակք իմ գովեցին զիս յորժամ եղեն աստեղք ցիրք". իսկ սաղմոսս է երաժշտական նուագարանաց գործւոյ յարակցութիւն բարբառոյ, իբր տամնաղւոյ կամ փողոյ կամ այլոց. այսպիսովք բարիոք վարկանի այժմ մարգարէս զԱստուած օրհնել ասելով. "Սաղմոս ասել անուան քում բարձրեալ", յայտ առնելով թէ զիմանալիդ Աստուած ոչ միայն իմանալի մտօք պարտական եմք օրհնել, այլ և զանբան գործիս մարմնոյ ձայ-

1 Մի օրին. Աժժ։ 2 Մի օրին. Որէշ։

նակից նմին տամք, և բանիւ հոգւոյ և ձայնիւ մարմնոյ, որպէս քնարի և եղանակի յարմարութեամբ՝ սաղմոսեմք 'ի բարիոք ժամանակս՝ բարձրացելոյդ մեր Աստուծոյ անուան, և ոչ բնութեան. քանզի էութիւնդ անհաս է 'ի ստեղծուածոցս, միայն առ տէրութեանդ անուն իշխեմք օրհնութեամբքս ձկտիլ։

“Պատմել առաւօտու զողորմութիւն քո, և զճշմարտութիւնս քո 'ի գիշերի„։ Գիշեր միշտ սորա սովորութիւն է 'ի սաղմոսիս զաղջամուղջ մեղացն կոչել, ըստ այնմ, “Ասացի, խաւար ուրեմն արդեօք ծածկեաց զիս„, կամ “Գիշեր փափկութեան՝ զոր ընտրեցի փոխանակ լուսոյ„. իսկ առաւօտ զդարձն 'ի նմանէ, և մերձենալ 'ի լոյս գիտութեան Աստուծոյ. որպէս աստ յայտնապէս յութսներորդ յեւթներորդ սաղմոսին, “Միթէ պատմեսցէ՞ ոք 'ի գերեզմանի զողորմութիւնս քո, կամ զճշմարտութիւնս„ մինչդեռ 'ի գիշերի մեղացն է։ Եւ փոքր ինչ յառաջ ընթացեալ՝ յաւելու. Ես առ քեզ տէր առաւօտուս աղաղակեմ 'ի նորոգ դարձս. Նոյնպէս և այժմ ըստ այնմ խորհրդոյ առնու ասել զներգործութիւն կամացն Աստուծոյ առ իւրաքանչիւր ընթացս մեր պուշակեալ. այսինքն, այժմ միայն է բարի խոստովան լինել առ քեզ տէր, և գովել զանուն քո, բայց և ոչ ամենայն ժամանակ. զի որ 'ի գիշերոյ մեղացն պաշարեալ է, նորա լեզուն անարժան է գովութեամբ խօսել ընդ քեզ, գոլով 'ի գերեզման ախտիցն. այլ զինչ. զճշմարտութիւն քո յիշել, այսինքն զանաչառ դատաստանացդ երկեղն 'ի մտի ունել, և 'ի ճշմարիտ քո իրաւանցն դողալ և սարսափել. իսկ զերծեալքն յայնմանէ, և չև ևս 'ի լոյս մաքրութեան հասեալ՝ այլ է 'ի մէջ երկուցն. յառաւօտն դատիլ՝ 'ի խղճէ մտացն՝ տկարանայ և յայնժամ պարզ դիմօք զքեզ խոստովանել, այլ միայն զառատ ողորմութիւնդ առաջի աչացն կերպարանէ և 'ի նա արձանացեալ 'ի լոյսն դիմէ։ Այլ մեք շնորհօք քո զերծեալ 'ի մեղաց գիշերոյն, և անցեալ ընդ առաւօտ ապաշխարութեանն, ծանեաք 'ի մինն զճշմարտութիւն իրաւանցդ, և յերկրորդն զառատ մեծութիւն ողորմութեանդ, և այժմ 'ի ներ-

1 Մի օրին. Դոփեալ:

քուսա 'ի վեր դիմեալ՝ բարւոք վարկանիմք ձրիցդ փառաբանիչ և խոստովանող լինել։ Ջանալի անցուցեր ընդ ալիս մեղացն, և հասուցեր յեկեղեցւոյս նաւահանգիստ՝ ուր նախ զողորմութիւնն խնդրեաք վտանգեալք, և զօգնութիւն տառապանացն կածեալք, այժմ հանգուցեալ խոստովանիմք և շնորհակալ եմք ունկնդրութեան քո։

"Տամնաղեաւ սաղմոսարանաւ 'ի ձայն օրհնութեան գովել"։ Տամնաղի տիրապէս իմանամք զհոգի և ըզմարմին ըստ վերագրելոցն, իւրաքանչիւրոցն հինգ ըզգայարանօք, որովք յայտ առնէ՝ թէ այնքան առատացաւ շնորհք քո 'ի վերայ մեր՝ որ ոչ թէ միայն հոգւով ստիպիմք գովել զքեզ ըստ նմանութեան հոգեղինացդ, այլ խառնեմք զլարս իմաստից սորա ընդ զգայարանս մարմնոյ, և որպէս զտամնաղի երգարան զոյգս արարեալ զհոգի և զմարմին տասն զգայարանօքս, բարձրացուցանեմք զձայն՝ մարմնոցս ազդեցութեամբ և բանիւ հոգւոյ, և այսպիսի օրհնակաւ իրաւունս համարիմք զքեզ Աստուած՝ օրհնութեամբք գովել։ Այլ ո՞ է որ զքեզ յայսքան ստիպէ շնորհ, ո՛վ երանելի, ազդեմ երգակցացս. թերևս եմքն Եգիպտոսէ տոհմի քո, կամ ժառանգեմքն զերկիրդ. ո՛չ բնաւ. ապա զի՞նչ.

"Ուրախ արարեր զիս տէր յարարածս քո, և 'ի գործս ձեռաց քոց ցնծացայց"։ Արդ զո՞ր իմանաս արարած ուրախացուցիչ մարդկան յԱստուծոյ՝ 'ի սմանէ ասացեալ. մի՞թէ արդեօք զառաջինն. և ահա յայն՝ քըրտանց և տրտմութեանց վիճակեցաք, և ոչ ուրախութեան. այլ ուրախացաք՝ յորժամ ելոյծ զնոյն խաչիւն Քրիստոս, 'ի սոյն հաւասար մեր և սա ուրախացաւ։ Այլ զի՞արդ ասիցես նախ զլինելն. որպէս Աբրահամ ետես զօր նորա, և ուրախ եղև, 'ի տեառնէ վկայեալ. ուրախ եղև 'ի նոյն արարածն նովին Հոգւոյն և Դաւիթ կանխաւ. և ուրախանամք մեք տիրապէս այժմ, տեսեալ զՈրդին Աստուծոյ առաջի Հօր մեր փրկանս պատարագ. զոր ծանուցեալ Պօղոսի՝ խրախոյս տայ առ 'ի նոյն շնորհ. "Ուրախ լերուք 'ի տէր յամենայն ժամ"։ "Այլ 'ի գործս ձեռաց քոց ցնծացայց"։ Գործք ձեռաց է Քրիստոսի այն, զի միանգամ ինքն զինքն մատոյց պատարագ Աստուծոյ, որով զյաւիտենականն

եգիտ մեզ փրկութիւն ։ Արդ եթէ մի անգամ էր ասէ քո շնորհն 'ի վերայ մեր, ցնծացեալքս 'ի նոյն ոչ այլ զուարճանայաք · ապա թէ միշտ և յաւիտեան փրկես պատարագի քո յիշատակաւ, միշտ հանապազ ցնծամք 'ի գործս ձեռաց քոց, այսինքն յոր ըստ օրէ պատարագելդ, և զմեզ 'ի տրտմութենէ մեղացն 'ի զուարճութիւն ցնծութեամբ փոխել ։

"Որպէս զի մեծ են գործք քո տէր, և յոյժ խոր են խորհուրդք քո" ։ Գործք ձեռաց Աստուծոյ ասաց վերագոյնն · զի մի թուեսցի հարևանցի ինչ, յաւելուածովն զառաւելութիւնն ցուցանէ · վասն այսորիկ ցնծայ[1] 'ի դոյն, զի մեծ և անհաս գործ արարեր[2] Աստուծոյ մարդանալ և վասն մարդկան միշտ փրկանք մատչել ։ Իսկ եթէ կարծես մեծ գործ Աստուծոյ զառաջին արարչութիւնն, այսմ ոչ եբեր[3] 'ի վերայ՝ թէ խոր է և թագուն խորհուրդ, և յանզգամացն անծանօթ · զի ահա զայս ամենեքեան տեսանեն՝ որ մեծ է, զերկնի պայծառութիւն, զերկրի լայնութիւն, զարեգական ընթացս, անզգամք և իմաստունք, և ոչ է խոր՝ այլ յայտնի ։ Այլ խոր է ամենայն իրօք յոյժ և անհաս խաչին խորհուրդ՝ որ Հրէից գայթակղութիւն եղև և հեթանոսաց յիմարութիւն, և միայն կոչեցելոցս 'ի նմանէ զօրութիւն և իմաստութիւն · զայն խորհուրդ ասէ՝ զոր շնչաւոր մարդ ոչ ընդունի, քանզի յիմարութիւն է նմա ։

"Այր անզգամ զայս ոչ ծանիցէ, և անմիտն զայս ոչ առնու 'ի միտ" ։ Տեսանե՞ս յաւելուածովս զճշգր-տութիւն ասացելոցդ · զի ահա յայս խորհրդոյս հրաժարեն հաղորդ լինել անզգամք 'ի մարդկանէ և անմիտք · Ե՞ր վասն · զի հաւատովք ճանաչի և ոչ այլ իւիք ։ Ո՛ ի այժմ ոչ եհան զմեզ 'ի մեղաց, որպէս զԻսրայէլն յԵգիպտոսէ, զգալի նշանօք՝ որ ամենեցուն եղև յայտնի հաւատացելոց և անհաւատից · այլ կամելով Աստուծոյ փրկել զմարդիկ, ոչ զիշխանական զօրութիւնն, այլ զիրաւունս և զարդարութիւն առ 'ի ձեռս ։ Վասնզի մարմին առ, և զնոյն անմեղ ծանեաւ · առիթ մեղաց զբանսարկուն յայտնեաց, և զնոյն խաչիւ նշաւակեաց · զմեզ հաւատով որդիս Աստուծոյ ստեղծ, և մարմնով

1 Երկու օրին · Ցնծամ ։
2 Մի օրին · Արարէր ։
3 Մի օրին · Բերէ ·

թշուառական և չարչարեալ. եւ փրկանս զմարմին իւր՝ որով միշտ փրկիմք աստ խորհրդապէս, և զզօրութիւն փրկութեանն երևելաբար 'ի հանդերձեալ աշխարհն իմանամք։ Տես թէ որքան խոր է խորհուրդս՝ զոր անզգամն ոչ կարէ ճանաչել. Էր վասն. զի ոչ կարէ հոգւոյ աչօք քննել, այլ մարմնոյ զգայարանօք, որոյ առաջի ոչինչ արկեալ քո սքանչելի՝ ոչ առնու 'ի միտ զնորա շնորհն. ըստ որում ասէ. « Այր անմիտն զայս ոչ առնու 'ի միտ »։ Ո՛ի յորժամ տեսանէ 'ի քէն զհացն մարմին Աստուծոյ անուանեալ, և զգինին արիւն, և 'ի զգալի աչս իւր ոչ ցոլանայ 'ի նմանէ հուր կամ փայլատակունք, ծիծաղի զասացեալովքն. քանզի թանձրացուցեալ զներքին հայեցուածմն արտաքնոյն եւ ծառայ։ Իսկ որ գիտէ թէ հոգի է Աստուած, և հոգեպէս ըղշնորհս նորա քննէ, իմանայ զամենայն հաւատովք, և 'ի միտ առնու զառաւելութիւնն, գիտելով թէ այս սերմանելոյ ժամանակ է, և ոչ հնձելոյ. զոր օրինակ թէ երկուք ոմանք մարդիկ կենակիցք իրերաց հանդիպեալք, մինն իմաստութեամբ գիտէ զառաւելութիւն շահից յերկրագործութենէն, զամբար ցորենոյ իւրոյ յերկիր սփռէ. իսկ երկրորդն անհմուտ գոլով ծիծաղի զնովաւ որպէս զանմտաւ, և ինքն զիւրն շռայլութեամբ ծախէ. իսկ 'ի ժամ հնձոցն սա ամաչէ, և նա բազմապատիկ ժողովէ։ Նոյնպէս խորհուրդ տեառն զառօրեայ կեանքս սերմանելոյ սահմանեաց ժամանակ, քանզի ձմեռն մահուն՝ ամենեցուն կայ առաջի. իսկ անզգամն և անմիտն՝ անհաւատ գոլով գարնայնոյն, ոչ առնու 'ի միտ զխորութիւն իմաստիցն, այլ միայն զառօրեայս ընտրէ իւր հեշտութիւն։

« Ի բուսանել մեղաւորաց որպէս խոտ, 'ի ծաղկել այնոցիկ ոյք գործեն զանօրէնութիւն »։ Մեղքն սատանայի է ներգործութիւն. քանզի 'ի սկզբանէ, ասաց, սատանայ մեղանչէ, և զնա սատանայ յանձինս մեր բուսուցանէ՝ ինքն ընդ չարիքն իւր զուարճացեալ։ Վասն այսորիկ յորժամ զմեծ և զուրախացուցիչ գործն Տեառն ասաց, և զխորհուրդն կամի ցուցանել մեզ՝ թէ զինչ է նորա պտուղն. յաղագս որոյ և զայս առ 'ի մէջ՝

1 Երկու օրին. Եւ այս էառ 'ի Ղեջ։ Մի օրին. Ըստ 'ի Ղեջ։

'ի բուսուցանել սատանայի յանձինս մեր՝ 'ի մէջ սերմանցն Աստուծոյ՝ զխոտ և զորոմն մեղացն 'ի խորհուրդս. քանզի աստ բուսանի նախ առաջին և ծաղկէ՝ յորժամ մեք զկամս և զյօժարութիւն տամք նմին օգնական, և կցորդ լինիմք չարին սերմանց՝ աճեցուցանելով զնա հեղգութեամբն և հեշտութեամբքն. իսկ պտուղ տայ, յորժամ գործով կատարի մեղքն 'ի մէնջ։ Արդ տէր մեր զայս գիտելով ետ մեզ զճառագայթ մարմնոյ և արեան իւրոյ՝ իբր թէ ասելով, ես գիտեմ փորձիւ զպատերազմակիցն ձեր, զի միշտ բուսուցանէ 'ի սիրտս ձեր զմեղսն, և բազում անգամ և դուք ծաղկեցուցանէք զնա. արդ առէք զայս ջերմութիւն շնորհի, որ ըստ օրէ ճաշակեցէք՝ քաւութիւն բուսելոց մեղացն և ծաղկելոց, և մինչդեռ չև լինի պտուղ բերեալ[1] զկատարումն և զմահն, այսու սպառեցուցեալ սատակեցէք զնա։

"Սատակեսցին յաւիտեանս յաւիտենից, և դու բարձրեալ ես յաւիտեանս տէր"։ Ոչ թէ միայն այսօր սատակին բոյսք մեղացն և անօրէնութեան մշակին 'ի քո ծագմանէդ, այլ յաւիտեանս յաւիտենից, այժմ և առ յապա. զի որքան դու բարձրեալ և զօրաւոր տէր[2], թշնամին նկուն և արհամարհեալ։ Ահա դու բարձրեալ յաւիտեանս. նա յաւիտեան սատակեալ և սատակեսցի 'ի զօրութենէ քումդ շնորհաց։

"Զի ահա թշնամիք քո տէր, զի ահա թշնամիք քո կորիցեն, սատակեսցին ամենեքեան որք գործեն զանօրէնութիւն"։ Ո՛վ թէ որքան խանդաղատանօք առնու զյաւելուած բանիս ընդ նախասացելոցն. և զի ասաց թէ բուսեալ և ծաղկեալ 'ի մեզ մեղք՝ սատակին 'ի բարձրեալ տեառնէդ, զի մի համարիցիս[3] թէ առ յապա ժամանակս այս լինելոց է, կամ անագան ուրեմն, սրտապնդեալ յուսովն ասէ առ Աստուած. ահա տէր, ահա յայսմ ժամու թշնամիք քո կորիցեն բուսեալքն և ծաղկեալքն. զի պատարագի միածնիդ քո, և զտապ ճառագայթի զօրութեան արեան իւրոյ ծագեալ 'ի խիղճ մտաց հաւատացելոցս իւրոց, սատա-

1 Մի օրին. Տուեալ պտուղ։

2 Մի օրին. Բարձրեալ ես զօրաւոր տէր։

3 Երկու օրին. Թէ որ քո ուսեալ և ծաղկեալ... զի մի համարեսջիր։

կէ և կորուսանէ 'ի միջոյ սոցա զամենայն բոյս անօրէնութեան և զծաղիկ մեղաց ։

“Բարձր եղեցի որպէս միեղջերուի եղջիւր իմ, և ծերութիւն իմ 'ի ձէթ պարարտութեան”։ Ո՞ ինչ միեղջերու, կամ զի՞նչ նորա բարձրութիւնն, եթէ պարզ տեսութեամբ հայեսցիմք 'ի բանս. կամ որպէս մարդ բանաւոր եղջիւրաւոր՝ որ անբանիցն տուաւ զէն և ոչ սմա. այլ պարտ է զճշմարտութիւն իրացս խուզել ։ Եղջիւր յորժամ ասեն գիրք, զզօրութիւնն նշանակեն. որպէս և Դանիէլ տեսանէր, և Զաքարիա լսէր. այս եղջիւրք են՝ որ ցրուեցին զՅուդայ և զԻսրայէլ ։ Իսկ միեղջերու ըստ առ Յովբայ ասացելոցն զՔրիստոս իմանամք, որ միով անմատչելի զօրութեամբն յաղթեաց հակառակամարտին ։ Իսկ մի եղջիւր որպէս իբր զնորայն բարձրացի, ասիցէ ոք. այնպէս ըստ որում Պօղոս գրեաց. “Հացն զոր բեկանեմք՝ հաղորդութիւն է մարմնոյն Քրիստոսի. զի մի հաց մի մարմին եմք բազումքս, մեք Քրիստոսի և Քրիստոս մեր”. արդ զայս ասէ և սա, թէ ոչ միայն մեռեալ Որդին Աստուծոյ զթշնամիսն իմ կորուսանէ և սատակէ, այլ և զիս իւր հաղորդ և կցորդ առեալ, զիմ զօրութիւնս որպէս զիւրն զօրացուցանէ մարտնչել ընդդէմ թշնամեացն իմոց սատանայինն. զի ընդ իւր հաղորդեալ՝ և զօրութեանն յայտ է թէ հաւասարիմք ։

“Եւ ծերութիւն իմ 'ի ձէթ պարարտութեան”։ Որք գիտեն զսովորութիւն գրոց, ծերս զկատարեալսն յառաքինութիւն ճանաչեն, որպէս և զկաթնկերս զ'ի նոսին տղայս. արդ իմ առաքինութեանս կատարելութիւնն ճաշակմամբ քո՝ Հոգւոյն սրբոյ շնորհացն հաղորդեալ, պարարտին սովաւ և բերկրին, զոր օրինակ մարմին ուրուք ձիթով. քանզի ձէթ և մեռոն և անուանք սոցին՝ շնորհաց Հոգւոյն են ապացոյց, և նոյն Հոգւոյն զանէրունական խորհուրդս կատարեալ մեզ շնորհէ. որով ասէ պարարտեալ և զօրացեալ իմաստ գիտութեան իմ, ուրախ եմ ։

“Տեսես ակն իմ 'ի թշնամիսն իմ, և որք յարուցեալք են 'ի վերայ իմ չարութեամբ՝ 'ի նոսա լուիցէ ունկն իմ”։ Ո՞չ այլ 'ի վերայ իմ թշնամիք յարուցեալք՝ եթէ ոչ անզեղջ մախանօք պատերազմակիցքն.

'ի նոսա ետես ակն իմ. զինչ. զի խաչիւն կործանեցան, կենարարին կրիւք յիշխանութենէն և 'ի պետութենէն մերկացան, կոխան 'ի ներքոյ ոտից մարդկան տուան, անգործ եղև խայթոց չարեացն որ ըստ օրէ թողութիւն զոր ընդունիմք. զամենայն ետես հոգւոյ ակն իմ 'ի նոսա և հաւատաց, սակս որոյ և ուրախ եմ. "Եւ ոյք յարուցեալք են 'ի վերայ իմ չարութեամբ, 'ի նոսա լուիցէ ունկն իմ": Ո չարութեամբ և զրպարտութբ̃ յառնելն նոցա 'ի վերայ մարդկան՝ թէ կամիս, ամենայն բանք սաղմոսիս ցուցանեն քեզ. որպէս մինչ ասէ. "Յարեան 'ի վերայ իմ վկայք մեղաց, զոր ինչ ոչ գիտէի հարցանէին ցիս. բացին 'ի վերայ իմ զբերանս իւրեանց, և ասացին, այո այո տեսին աչք մեր": Ի նոսա հանդերձէ ունկն իմ լսել զկործանումն և զանկումն: Որպէս. յորժամ ձայնէ որդին Աստուծոյ, "Այս է մարմին իմ բաշխեալ, և արիւն իմ նոր ուխտ ձեզ քաւութեան և թողութեան", յայնժամ իմ սրբութեամբն նա պարտաւորի, և զիմ քաւութիւնն լսելով զնա լսեմ դատապարտեալ մեղացն այնոցիկ՝ զոր 'ի վերայ իմ ասէր տեսանել, և ինձ վկայեր լինել:

"Արդարքն որպէս զարմաւենիս ծաղկեսցին. որպէս մայրքն Լիբանանու բազումք եղիցին": Առ որս թըշնամին մեղաւոր զփուշս բուսուցանէր և զդժնիկ անօրէնութեան ծաղկեցուցանէր, այսուհետև արդարացեալք Քրիստոսի շնորհօքն՝ ծաղկեալ բուսանին, ոչ ժահահոտ մեզօք երկրային խորհրդոց, այլ որպէս զարմաւենիս. զի որպէս նա միշտ աճելովն՝ 'ի վեր ընթանայ, այսպէս և սոքա աղաղակեն. յետ այսորիկ մեռաք, և կեանքն մեր է յերկինս ընդ Քրիստոսի առ Աստուած. անդ է և մեր առաքինութիւնն, ուստի և փրկչին ակն ունիմք. զայն ծաղիկն ծաղկին՝ յոր երկնաւոր Հայրն հոտոտի: "Եւ որպէս մայրքն Լիբանանու բազումք եղիցին": Լիբանան միշտ 'ի գրոց հակառակամարտ Եդեմի դնի, որ է մարդկան ըմբռնելոց 'ի սատանայէ նշանակ. ըստ այնմ, "Փշրեսցէ տէր զմայրսն Լիբանանու". զոր փշրեաց, և շինեաց նոքօք զեկեղեցի իւր յամենայն ազգաց հեթանոսաց: Արդ ասէ, թէ որպէս անհաւատութեամբ ամբարձեալքն և ծառայեալքն սատանայի բազումք էին ըստ մայրիցն

Լիբանանու մայրիք, այսպէս փշրեալք նոքա և խոնարհեալք և արդարացեալք Քրիստոսի շնորհօքն, և ծաղկեալք առաքինութեամբ բազմապատիկ լինիցին։ Այս զի եղև այս, յառաքելոյ ուսիր՝ որ գերեաց զամենայն միտս 'ի Լիբանանէ, և ած յԱյժմ 'ի հնազանդութիւնն Քրիստոսի, և շինեաց զնոսա տաճար հոգևոր, յանարատ քահանայութիւն։

"Տնկեալք եղիցին 'ի տան տեառն, և 'ի գաւիթս Աստուծոյ մերոյ ծաղկեսցին": Յո՞ր տուն. 'ի Լիբանանէ կռապաշտութեանն յեկեղեցի հաւատացելոց ամենայն հեթանոսք տնկեցան և տնկին Քրիստոսի մահուամբն յայս գաւիթս, և ծաղկեսցին նոքա այնուհետև, ոմանք մարտիրոսական արեամբ, այլք խոստովանողական դաւանութեամբ, այլք ճգնաւոր ժուժկալութեամբ. կէսք բանիւ և վարդապետութեամբ, բազումք ունկնդրութեամբ և առաքինութեամբ, զորոց ծաղիկսն նա միայն գիտէ թուել՝ որ հաստատեցաւ և հաստատի յիւրաքանչիւրսն, և ըստ նոցին զհատուցմունսն կշռէ։

"Եւս և բազումք եղիցին 'ի ծերութիւն պարարտութեան": Մի կարծեսցես՝ թէ յերբեմն ժամանակ եղև ծաղկեալ աստուածպաշտութեանն, և 'ի Քրիստոսի շնորհացն 'ի մէջ եկեղեցւոյ և դադարեաց, ուսուցանէ թէ օր ըստ օրէ առաւելապէս բազմանան և ծերքն, այսինքն առաքինիքն և իմաստունքն երբ և լինիցին՝ պարարին հոգւոյն շնորհօք, և միշտ նոյն է Քրիստոս և իւր պարգևքն, որպէս առաքելովքն, և յամենայն ժամ[1] առ իւր սիրելիսն ծաղկեալ։ "Գիրգ և փափուկք եղիցին 'ի պատմել. ուղիղ է տէր Աստուած մեր, և ոչ գոյ 'ի նմա անիրաւութիւն": Դարձեալ ուսիր, զի մարմնապէս բանիւքս զհոգևոր շնորհն ձևացուցանէ. ապա թէ ոչ՝ ըստ մարմնոյ գիրգն և փափուկն՝ ոչ զուղղութիւնն Աստուծոյ ճանաչէ, այլ և զոր ունէր մոռասցի. ըստ այնմ, "Գիրացաւ Յակովբ, սոնքացաւ 'ի պարարտութենէն, և եթող զտէր Աստուած իւր": Արդ որպէս նա որ մարմնովն գրգի՝ մոռանայ, այսպէս որ մարմնով ճնշեալ գրգէ զհոգին,

1 Երկու օրին. Յամենայն ժամանակի։

զԱստուծոյ սիրոյն յիշատակն որ ըստ օրէ առատացուցանէ յանձն իւր ․ վասն այսորիկ ասէ , յորժամ բազմանայ եկեղեցի և յառաջանայ հասակաւ առաքինութեանն , ծեր և կատարեալ լիցի իմաստիցն Աստուծոյ պարարեալ՝ ձկնութեամբն , և պրգեալ ապա փափկանայ առաքինութեամբն , յետ այնորիկ որքան խելամուտ լինի շաւղացն Աստուծոյ , և լսէ պատմել զնորա ուղղութիւնն ․ և զայս թէ կամիս ուսանել , տես զառաքելական օրէնսն առ նորատունկսն , զինչ է 'ի բաց կալ 'ի զոհելոյ կռոց , 'ի պոռնկութենէ և 'ի հեղձուցելոյ ։ Տես թէ յետ այնորիկ 'ի բազմանալն և 'ի պարարիլն և 'ի պատմել ուղղութիւն եկեղեցին Աստուծոյ՝ որքան աճեաց 'ի հետևողաց նոցին զանազան զգուշութիւն առաքինութեան ։ Զայս ամենայն ընթացս և շնորհս եկեղեցւոյ 'ի սկզբանէ մինչև ցկատարած՝ նախ Հոգին Աստուծոյ յայս նուագս սաղմոսի 'ի ձեռն մարգարէիս ուսոյց մեզ , զոր յորդառատ սիրով սկիզբն աստուածայլին խորհրդոյն կարգեցին հարքն , հիմն և արմատ մեծի շնորհին որ հանդերձեալ է կատարել ․ ընդ որ և զխոստովանութիւնն յայտնի ածեն 'ի վերայ ․ " Միածին որդի և բանդ Աստուած ", , որ զայս ամենայն կատարեցեր 'ի փառս անուան քո , որ ես փառաւորեալ յաւիտեանս ․ ամէն ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՂՕԹԻՑՆ ՈՐ ՅԵՏ ԱՌԱՋԻՆ ՍԱՂՄՈՍԻՆ ԱՍԻ [2]

" Տէր Աստուած մեր կեցո զժողովուրդս քո , և օրհնեա զժառանգութիւս քո ", ։ Ժողովուրդք մեք անուանիմք Քրիստոսի սեպհական , գնեալք արեամբ նորա , ըստ որում ասէր Պօղոս առ երիցունս Եփեսացւոց ․ " Զգոյշ լերուք հօտիդ՝ յորում եդ զձեզ Հոգին սուրբ տեսուչս՝ հովուել զժողովուրդ տեառն , զոր գնեաց արեամբն իւրով ", ։ Արդ զի այսպէս զգոյշ կալ հրաման առին , 'ի նոյն ինքն 'ի Քրիստոսէ աղերսեն զպահպանութիւն՝ որոյ և ժառանգութիւն վիճակի հօտս ։

1 Մի օրէն ․ Պարապէտու- սիս տուի ։ Մի օր ․ Առաջին տող-
2 Երկու օրէն ․ Առաջնոյն տողն- ճաշու ։

"Զլրումն եկեղեցւոյ քո պահեա", այսինքն թէ մի՛ զրկեսցուք 'ի սատանայէ, յափշտակել զոք 'ի բազմութենէ մերում ժողովոյս, այլ պահեա անվրդով:

"Սրբեա զնոսա որք ողջունեցին սիրով զվայելչութիւն տան քո": Ի պէտս սրբելոյ ժողովեցան 'աստ' ապաւինեալք յօժարաւ՝ աղօթից մերոց. արդ դու որպէս ամենապարգեւական հատուցող հաւատոց իւրեանց, և առաւել քան զնոյն:

"Դու զմեզ փառաւորեա աստուածային զօրութեամբ քո, և մի թողուր զյուսացեալսն 'ի քեզ": Զի 'ի քեզ սպասեալ յուսամք, և դու ես կարօղ փրկութեան մերոյ. զաղքատացեալքս հարստացո աստուածեղէն առատ կամօքդ, և մի առներ անտես, որպէս բազումողորմ և փառաւորեալ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԿՐՈՐԴ ՍԱՂՄՈՍԻ ԵՐԳՈՑՆ ՈՐ ՑԵՑ ԱՌԱՋՆՈՑՆ

ՏԵՍԵԱԼ զմեկնագիր սաղմոսին՝ բաւական համարիմ առ 'ի զօրութիւն նորին յայտնել իմաստնոց և տգիտաց քննութեան. զի գրեալ է. "Օրհնութիւն երգ Դաւթի՝ յոր միաշաբաթու, յորում երկիր հաստատեցաւ": Քանզի ահա տեսանեմք հաստատութիւն երկրի՝ զոր 'ի Քրիստոսէ ընկալաւ շնորհօք մարդեղութեան. ապա թէ վասն առաջին արարչութեանն էր օրհնութիւնս, ոչ ասէր հաստատութիւն որպէս՝ [1] դղրդուելոյ, այլ ստեղծուած և գոյութիւն. բայց յայտնէ թէ այն ստեղծեալ երկիրն և բնակիչք նորա և ըստ մեղացն Ադամայ անիծեալ և դղրդուեալ, այսօր 'ի Նոր Ադամն Քրիստոս օրհնեցաւ և հաստատեցաւ. սակս որոյ և մարգարէս շնորհակալ և գովասան և ներբողիչ լինի նմա օրհնութեամբ երգոյս ասելով.

"Տէր թագաւորեաց, վայելչութիւն զգեցաւ": Երկուս թագաւորութիւնս գիրք ուսուցանեն մեզ Քրիստոսի. մի զմշտնջենաւորապէսն ըստ Հօր տէ-

1 Մի օրին. Յաճախ: 2 Մի օրին. Իէր:

րութիւնն Սիրելոյ՝ որ նախ քան զամենայն բլուրս ծնաւ 'ի ծոցոյ նորին անդրանիկ. և երկրորդ յորժամ ըստ մարմնոյ եկաց նա Թագաւոր 'ի վերայ Սիոնի լե-րին սրբոյ նորա, յորժամ և խնդրեաց զհեթանոսս 'ի ժառանգութիւն. զայս թագաւորութիւնս ցնէ մար-գարէս եղականն ասելով, "Տէր թագաւորեաց,,. քան-զի 'ի յետին ժամանակս յայտնեցաւ Քրիստոս յան-արգութիւն մեղաց, յորում և վայելչութիւն զգե-ցաւ: Ոչինչ այլ նման վայելչութիւն և փառք, բայց թէ ամենասուրբ մարմինն միացեալ ընդ աստուածու-թեանն զոր զգեցաւ յորժամ կամեցաւ, տիրել 'ի վերայ աշխարհի իրաւամբք, և վայելչացաւ և շքե-ղացաւ, փոքր մի խոնարհեալ քան զհրեշտակս Յիսուս՝ իւրով նուաստանալովն:

"Զգեցաւ տէր զօրութիւն, ընդ մէջ իւր ածաւ,,: Աստուծոյ զգենուլ զոր ոչ ունէր զօրութիւն՝ ոչ ասի, զի նա միշտ է զօրաւոր, այլ յայտ է թէ 'ի մարմնաւո-րութիւնն' ասի այս 'ի վերայ նորա՝ որ զգեցաւ զօ-րութիւն, և ած ընդ մէջ իւր: Զո՞ր զօրութիւն, թերևս հրաշագործութիւն կամ նշան, կամ պատուհաս, որով զօրացաւն. ոչ բնաւ. այլ զի՞նչ. զտկարութիւն. քանզի զտկարութիւնն և զչարչարանս ած ընդ մէջ իւր, և այնու սպառազինեալ՝ մարտեաւ ընդ թշնամին մարդկան, և յաղթեաց նմա: Ո՞րք լուաւ, ո՞րք տեսեւ զէն արքայի որպէս զմերում տեառնս և թագաւորի զօրաւոր, որ 'ի մարտ դիմեալ ինքն անէծք եղև, և զա-նէծսն եղծ. ինքն չարչարեցաւ, և զչարչարանսն խա-փանեաց. ինքն դատեցաւ, և զթշնամին դատապար-տեաց. ինքն արտաքոյ դրանն մեռաւ, և զիշխան աշ-խարհիս յաշխարհէ արտաքս ընկէց: Այս է զօրութի՟ն զոր ետես վայելչապէս ընդ մէջ նորա ածեալ մար-գարէս:

"Հաստատեաց զաշխարհս՝ զի մի սասանեսցի,,: Ո՛վ թէ որքան ըստ կարգի ածէ զվայելչութիւնս՝ շնորհացն Քրիստոսի. քանզի յայնժամ հաստատե-ցաւ աշխարհ, յորժամ նա խարիսխ մեր յերկինս ընդ

1 Երկու օրին. Մարմնաւորու-թեան: Մի օրին. Մարմնաւորութենէն:

2 Մի օրին. Վայելչութեան:

աջմէ Հօր նստաւ. վրդովեալ էր և սասանեալ, իւրաքանչիւր ոք 'ի Ճանապարհս իւր տարակուսեալ՝ թէ զի՞նչ յետ մահու ունի պատահել մեզ. յայսպիսի խռովութենէս հաստատեաց զամենեսեան, յորս և կարապետ մտեալ 'ի ներքին կողմ վարագուրին՝ ուր հրաւիրեաց զամենեսեան հանգուցանել: Արդ որպէս Քրիստոսի չիք կրկին մեռելութիւն, և ոչ աշխարհի 'ի հաստատութենէ յուսոյս սասանումն կամ այլայլութիւն. յաղագս որոյ և ասէ, այնպէս հաստատեաց, զի մի՛ ընաւ սասանեսցի, զոր գիտելով առաքեալ ասէ. “Պինդ կալցուք զխոստովանութիւն անշարժ և հաստատուն յուսոյն. քանզի հաւատարիմ է որ խոստացաւն”:

“Պատրաստ է աթոռ քո, 'ի սկզբանէ յաւիտեանս դու ես”: Աստ առ ինքն թագաւորն շրջէ զբանս՝ զորոյ շնորհին հաստատութիւնն եղև խոստովանն. և դու տես զնրբութիւն ասացելոցս'. քեզ աթոռ պատրաստեցաւ ասէ, որ 'ի սկզբանէ ես և յաւիտեան. և թէ 'ի սկզբանէ թագաւոր, այժմ զաթոռն զիա՞րդ ընդունի որպէս նորոգ օծեալ արքայ, և 'ի պատրաստեալ տեղն բազմեալ: Այլ զանձառ միութիւն մարմնոյն ընդ աստուածութեանն նշանակէ. և ըստ որում էր մի, իբր ընդ մի խօսի ընդ զգալին և ընդ իմանալին՝ թէ որ 'ի սկզբանէ ես 'ի յաւիտեան՝ առեր մարմին, և նովաւ յաթոռդ հայրական նստար, գոլով դու նոյն մի Աստուած՝ որպէս 'ի սկզբանէ, և այժմ մարմնովդ և յաւիտեանս անփոփոխ. ըստ այնմ. “Ասաց տէր ցտէր իմ, նիստ ընդ աջմէ իմմէ”. որ և էր միշտ, բայց յետ մարմնաւորութեանն այս ասացաւ առ նա՝ որով և զանուն ընկալաւ 'ի վեր քան զամենայն անուն: Արդ որպէս անուննն տուաւ նմա յետոյ՝ որ ունէր զնոյն յառաջ, այսպէս և աթոռն պատրաստեցաւ նմա յետ հաստատելոյն զաշխարհս՝ որ 'ի սկզբանէ ունէր զնոյն, ըստ որում և ասաց. “Տուաւ ինձ ամենայն իշխանութիւն յերկինս և յերկրի”:

“Ամբարձան գետք 'ի տէր, և ամբարձին գետք ըզձայնս իւրեանց, և յարիցեն գետք 'ի գնացս իւրեանց”:

1 Մի օրին. Աստուծոյ:

Ամենեքին զարթուցանէ զմեզ ոչ հայել ՚ի պարզ յօդուածս բանիցս. զի զի՞նչ գետք կամ գնացք նոցա, ձայնք կամ ամբառնալ առ տէր առնլի. ապա թէ զզօրութիւնն քննեմք՝ ՚ի բաց առեալ զպատրուակ ապացուցիս, ամբողջ պահէ զընթացս բանից իւրոց. քանզի նախ ասաց թագաւորել նմա, զմարմնանալն, և զօրութեամբ հաստատութիւն երկրի զխաչն. յետ որոյ ՚ի պատրաստականն աթոռն զնստելն, ՚ի համբառնալն: Արդ ըստ կարգի ածէ և զիջումն Հոգւոյն որ յետ այնորիկ եղև, ասելով. " Ամբարձան գետք ՚ի տէր ": Գետոյ և ջրոյ անուամբ միշտ զշնորհս Հոգւոյն է գրոց սովորութիւն առնուլ. ըստ այնմ, " Որ հաւատայ յիս, գետք յորովայնէ նորա բխեսցեն ջրոյ կենդանութեան ". զի ըստ որում ջուր մշտաբուխ է, այնպէս և Հոգին. և որպէս նա զիւրաքանչիւր յորս մերձենայ՝ գտեալ արմատ կենաց և զօրութեան՝ կենսացուցանէ, այսպէս և Հոգին առ հոգիս ներգործէ: Յաղագս որոյ գետոյ անուամբ առնու զնա ասելով. " Ամբարձան գետք ՚ի տէր ". զի Հոգին ամբարձեալ ՚ի Հօրէ ՚ի Քրիստոս՝ տուաւ փոխարէն իւրն աշխատութեան ՚ի տէրն մեր, և նա առեալ զնոյն եհեղ յաշխարհ առատապէս ՚ի վերայ աշակերտաց իւրոց սաստիկ ձայնիւ ըստ ասացելոցս. " Ամբարձին գետք զձայնս իւրեանց ". զդոյգ սմին և պատմութիւնն ասէ, " Եկն հնչիւն իբրև սաստիկ հողմոյ ": Այլ բազմաւորական անուամբ դնէ յաղագս զանազան շնորհացն զոր յաջողէ մի և նոյն Հոգին, զիւրաքանչիւր յաջողուածսն նորին անուամբն գետք առեալ. " Յարիցեն գետք ՚ի գնացս իւրեանց ". զի այսուհետև ասէ յորժամ ձայնիւ գետորէն եկն Հոգին՝ յերկիր, որ պատրաստէ զանձն իւր գնացից նորա ճանապարհ, անդ յառնէ հանգչել, և զանձն նորա գնացիւք իւրովք ոռոգել: Այլ ո՞ լինի նորա գնացիցն ճանապարհ, եթէ ոչ որ նախ ընդ Քրիստոսի մեռանելին մկրտութեամբն, նոքա կարեն զօծութի՞ սրբոյն տանել, և զորդէգրութեան հոգին ընդունել:

" Ի ձայնէ ջուրց բազմաց սքանչելի եղեն զբօսանք ծովու ": Զոր այժմ ծով առակաւ ասէ, յետ փոքու

1 Երկք օրին. Եմ գետ Հոգւոյն :

հանդերձեալ է տուն Աստուծոյ անուանել, որ է եկեղեցի սուրբ. սորա սքանչելի և ուրախարար զբօսանք ունէ զբազմապատիկ ջուրցն ձայնք. և ձայն ջրոյն է ազդումն Հոգւոյն յիւրաքանչիւր ոք 'ի սրբոցն, որով գնացս և ճանապարհ առարեալ յեկեղեցի՝ պէսպէս և բազմաձայնս շնորհաց ժողովեաց առ և ծով արար: Զի որպէս 'ի ծովն ոչ մի գետ, այլ բազումք մտանեն, այսպէս և յեկեղեցի ոչ մի շնորհ Հոգւոյն, այլ բազում և զանազան է ժողովեալ. և որպէս նոքա թէպէտ և գետքն զանազանին, սակայն բնութիւն ջրոյն մի է, այսպէս և սոքա թէպէտ իւրաքանչիւր ոք 'ի սրբոցն որիշ են ժամանակաւ և բանիւ, սակայն ջուր Հոգւոյն՝ որ նոքօք ճանապարհ առար յեկեղեցի, մի է և 'ի Հոգւոյն շարժեալ: Այլ օրինակաւ զձայն մարգարէիցն լուաք, և այլով զառաքելոցն. այլ զՀետեւողացն, և այլ զՀայրապետացն. և այսպէս այս բազմապատիկ ջուրքս եկեալ 'ի մի վայր եկեղեցւոյս՝ ծովացան 'ի սմա, և սքանչելի զբօսանօք ուրախ առնեն և Հեշտացուցեալ զուարճացուցանեն զմիտս Հաւատացելոց Հայեցողաց 'ի նոսին: Զբօսումն և զարթնումն 'ի թմբրութենէ մեղացն, նայեցեալ յայս ծովս, և ըմպեն 'ի սմանէ, և զիւրաքանչիւր ծարաւ զովացուցանեն. ոմն ապաշխարութեան պապակեալ, և եկեալ 'ի ծովս՝ ըմպէ 'ի ջրոյ սորա, և զբօսեալ Հեշտանայ. այլ ոք իմաստութեան, միւսն գինոյ, այլ ոք ջրի, միւսն կաթին, ամենեցուն է բաւական տալ զբօսանս մխիթարութեան: Արդարև սքանչելի է այս ծով Հասարակաց ցնծութեան առիթ:

"Սքանչելի ես դու տէր 'ի բարձունս. վկայութիւնք քո մեք յոյժ Հաւատացաք": Տեսանեմս, զի զանուն գետոյն և ջրոյն այժմ վկայութիւն փոխեալ, յայտնեաց զստուգութիւն բարբառնութեանն. և զինչ ասէ. "Սքանչելի ես դու տէր 'ի բարձունս". որպէս ծով քո և եկեղեցի յերկիրս՝ է սքանչելի զբօսանք մարդկան ըստ ասացելոցս, այսպէս և դու 'ի բարձունս ես սքանչելի տէր, անհաս 'ի Հրեշտակաց և ուրախութի նոցին: Այլ որպէս մեք 'ի ծովէս ըմպեմք, և զանազան

1 Մի օրին. Յերկին.:

շնորհօք մխիթարիմք՝ զորքանն խորութեան եկեղեցականն խորհրդոցս[1] ոչ գտանեմք, այլ յետ ամենայնի սքանչելի և անհաս զսա դնեմք, այսպէս և զորքա 'ի քէն զանազան շնորհօք զօրացեալ և զուարճացեալ՝ յորքանն խորութիւն գիտութեանդ տեսանն ոչ հասանեն, այլ յետ ամենայն հասմանս՝ սքանչելի և անհաս 'ի ծառայից զտէրդ հաւատան: "Վկայութեանց քոց մեք յոյժ հաւատացաք,,. վկայութիւն զշնորհս Հոգւոյն ասէ՝ որ զորովք ամփոփեալ է 'ի մէջ եկեղեցւոյ վկայ աստուածութեանն նորա ճշմարտութեան, և առ մարդիկ բազմապատիկ մարդասիրութեանն. մեք ասէ զգօսանալով 'ի լուր սոցա՝ ոչ կեղակարծ միտօք թերահաւատեմք, այլ յոյժ անսատերիւր աւատալով հաւատամք՝ յորժամ պատմէ ոմն արարիչ զքեզ, ոմն վկայէ ծննդեան քո, այլ ոք խաչին, այլ ոմն աստուածութեանն, միւսն համբառնալոյն, և այլ ոմն կրկնակի գալստեանն: Նոյնքան վկայիցս քո տէր հաւատացաք յոյժ, և սքանչացաք ընդ շնորհս քո, որպէս և հրեշտակքդ 'ի բարձունս:

"Տան քում վայել է սրբութիւն, տէր, ընդ երկայն աւուրս,,: Որպէս զգետն ստուգաբանեաց տիրապէս կոչմանցն վերադրոյն, և վկայութիւնս անուանեաց, այսպէս զծոցն[2] 'ի նոցանէ եղեալ զեկեղեցի՝ տուն տեսանն այժմ կոչէ. "Տան քում, ասէ, վայել է սրբութիւն, տէր,,. այսինքն թէ այս տանս՝ որ յայսքան բազմապատիկ հիմանցս շինեցաւ յառաքելոց և 'ի մարգարէից, 'ի վկայից և 'ի վարդապետաց՝ որք խաղաղանան 'ի մէջ տանս և առաքանեն զսոյն, յամենայն աղտեղութենէ և 'ի պղծութենէ սուրբ և մաքուր լինելն վայելուչ է. քանզի որ զգլուխ անկեանդ ես՝ սուրբ ես, և հիմունքն 'ի քեզ պատկանեալ՝ սուրբ են ամենեքեան որպէս վկայեցեր, վայել է և մեզ 'ի ձեզ յարմարեալ որմոցս սուրբ լինել: Նա ո՞ է այլ ոք որ սրբէ զմեզ, եթէ ոչ քոյդ սուրբ մարմնոյդ և պատուական արեանդ. քանզի նա է քաւութիւն և սրբութիւն մեղաց, և մեք մեղօք տգեղացեալ և աղտեղացեալ: Արդ

1 Մի օրին. Զորքանութիւն եկեղեցական խորհրդոյս: Միւս այլ. Մեք թերեւս զորքան խորութիւն խորհրդոյս ոչ գտանեմք:

2 Մի օրին. Այսպէս տուն ծոցն:

տուր զօձառ սրբութեան զարդարար քո պարգևս, և որպէս վայել է տաճարիս քո և տան եկեղեցւոյս, մաքրեա զսա ընդ երկնաւորս[1]. մի այսօր միայն կամ վաղիւն, այլ զամենայն երկայնութիւն առժամանակեայ կենացս կալցուք զայդ շնորհ և մխիթարութիւն ըստ քում, Աստուած մեր, անսուտ խոստմանն՝ որ ասացեր. “Այս է հեղեալ վասն բազմաց„: Այսքան ետ բան փանաքիմաց մտաց մեր Հոգին Աստուծոյ 'ի պէտս սաղմոսին քննութեանն՝ զոր երգէ եկեղեցի խորհրդապէս, նախ 'ի սկիզբն սրբոյ պատարագին. ընդ որ և շարական յարմարեն պատշաճապէս 'ի փառս Աստուծոյ: Ընկալցուք ապա զհայրենի աւանդութիւնս, ծանուցեալ զզօրութիւն սորա սահմանեալ յԱստուծոյ յառաջագոյն 'ի փառս մեր, և ծանիցուք ապաւինեալքս 'ի Քրիստոս զայս՝ զոր ոչ ոք յիշխանաց աշխարհիս այսորիկ ծանեաւ. իսկ մեզ յայտնեցին Քրիստոսի փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐՐՈՐԴ ԱՂՕԹԻՑՆ

“Որ հասարակաց զայս և միաձայն մեզ ամենեցուն ուսուցեր աղօթել, և զերկուց և զերից միաձայնելոց[2] յանուն քո խոստացար ընձեռել զհայցուածս„: Վարզաբար զհրամանն Քրիստոսի նմին յուշ առնէ[3] զասացեալն. “Եթէ երկու 'ի ձէնջ միաբանեսցին, զոր ինչ խնդրեսցեն՝ եղիցի նոցա. զի ուր իցեն երկու կամ երեք ժողովեալ յանուն իմ, անդ եմ ես 'ի մէջ նոցա„: Արդ զայս ժողովելս, ասէ, և զաղօթելս 'ի քէն ուսաք, և ոչ թէ անձամբ անձին ժպրհիմք մարդիկ ընդ Աստուած խօսել. այլ զի լուաք[4] ասացեալ, զոր ինչ խնդրէք՝ եղիցի ձեզ,

“Դու տէր և այժմ զծառայից քոց զխնդրուածս առ 'ի յօգուտն կատարեա„: Ի քէն խնդրեմք՝ որ զխնդրելս ուսուցեր. վայելուչ է և քեզ զքո խոստումն կատարել ըստ այնմ, որպէս և դու քննես զօգուտն մեր.

1 Այլք. Ընդ երկնային տօնօղս:
2 Երկու օրինն. Մխիթարեանցն:
3 Այլք. Գործեցեալ զհրամանն Քրիստոսի յուշ առնէ:
4 Երկու օրինն. Ուսաք:

“Շնորհելով մեզ յայսմ յաւիտենիս զգիտութիւն քում ճշմարտութեանդ, և յապառնիդ զկեանս յաւիտենականս”։ Ըստ այնմ կարօտիմք, զկամս Աստուծոյ գիտել, և ՚ի ճանապարհս վկայութեանց նորա լինել իմաստունս՝ զոր և խնդրէ. քանզի այսոքիկ են որ առաջնորդեն մեզ ՚ի յաւիտենական կեանսն։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐՐՈՐԴ ՍԱՂՄՈՍԻՆ ՈՐ Ի ՏՕՆՄՆ ԵՐԳԻ [1]

“ԵԿԱՅՔ ցնծասցուք ՚ի տէր, աղաղակեսցուք առ Աստուած փրկիչ մեր”։ Զայս սաղմոսս ճշգրտաբար երանելին առաքեալն առ ՚ի Թուղթն որ առ Եբրայեցիսն. ուր և ցուցանէ նա Պօղոս՝ թէ առ եկեղեցի է ասացեալ. վասն որոյ ոչ եմք կարօտ սորին վասն բանից տալ հաստատութիւն. քանզի ասէ՝ թէ այսու սաղմոսիւս եմք աւետարանեալ ՚ի Դաւթէ լսել ձայնին Քրիստոսի. որպէս և նոքա ՚ի Մովսեսէ ընկալան ըզգուշութիւն առ հրամանս Աստուծոյ. և զի աւետարանութիւն է սաղմոսս և ուրախութեան կարապետ, նորին աղագաւ ՚ի սկիզբն սորա առաքելաբար հրամանաւ ՚ի ցնծութիւն կոչէ զմեզ ասելով.

“Եկայք ցնծասցուք ՚ի տէր”։ Զո՞ աք կոչէ ՚ի ցընծութիւն՝ եթէ ոչ զքեզ եկեղեցի հեթանոսաց. դու ես սեպհական փրկչին քո ժողովուրդ՝ գնեալ արեամբ ամբիծ և անարատ գառինն։ Եկայք ամենեքեան ժողովեսցուք ՚ի միասին, եկեղեցասցուք ՚ի Քրիստոս և ցնծասցուք ՚ի նա, յիշատակեալ զբազմապատիկ շնորհս նորա առ մեզ։ Վասն մեր եհար զԵգիպտոս զծառայեցուցիչն[2] բանսարկուն. մեզ պատառեաց զծովն մեղաց, և անցոյց ընդ նոյնն խաղաղութեամբ. զայս ժողովրդեանս[3] հետևեալ փարաւոնն՝ նշանակեալ ընկղմեաց ՚ի ծով խաչին[4], և մերկացոյց յիշխանութէ և ՚ի պետութենէ. քեզ առաջնորդէ սիւն Հոգւոյն, քեզ առաջնորդէ մշտնջենաբուխ վէմն աւետարանական Քրիստոս. դու ճաշակես զհաց երկնից զճշմա-

1 Այլք. Աւի։
2 Երկու օրին. Ծառայեցուցիչ։
3 Մի օրին. Ժողովրդեանս։
4 Երկու օրին. Նշանակեալ ընկ-ղմեաց ՚ի ծով խաչին։

րիտ, դու ընթանաս յերկիրն պարգևաց յերկնային հանգիստն. նորա քեզ եղեն ամենայնիւ օրինակ. վասն որոյ ճշմարտութեան վայելող եկեղեցի քրիստոնէից, մի հեղգանար, մի դանդաղիր, այլ եկեսցուք 'ի միասին և ցնծասցուք 'ի տէրն՝ յորմէ զայսքան գտաք փըրկութիւն:

« Աղաղակեսցուք առ Աստուած փրկիչ մեր »: Աղաղակն ցնծութեան է ծնունդ. քանզի յորժամ ոք 'ի միտս և 'ի խորհուրդս առատանայ՝ առաւելութեամբ ուրախութեանն[1], ոչ կարէ 'ի ներքս թաքուցանել զնոյնն, այլ արտաքս 'ի զգայարանս ձգէ, յայնժամ իւրաքանչիւր ոք 'ի նոցանէ շարժին 'ի գործակցութիւն ուրախութեանն. հայեցուածք աչացն զուարթանայ, ձեռքն ծափս հարկանէ, բերանն ծիծաղի, լեզուն աղաղակէ, և ամ̃ մարմինն ներգործութեան հոգւոյն կցորդի[2]: Արդ աստ այնպէս սորա մեզ տարփմամբ սիրոյ տեառն մերոյ ցնծասցուք, մինչ զի ոչ հանդուրժեալ առաւելութեանն 'ի զգայարանս զնոյն ձգեսցուք, և յայտնապէս արասցուք Աստուծոյ մերոյ՝ զառ նա ուրախութիւնս աղաղակաւ լեզուացս. « Աղաղակեսցուք ասէ, առ Աստուած փրկիչ մեր »: Որ ստուգաբանի առ Աստուած Յիսուս, զի նա է որ փրկեաց զժողովուրդ իւր 'ի մեղաց իւրեանց:

« Կանխեսցուք առաջի նորա խոստովանութեամբ »: Աղաղակել հրամայեաց ցնծացելոցս՝ զի մի տարակուսեսցուք՝ եթէ զի՞նչ աղաղակեմք, ուսուցանէ և զնոյնն. « Կանխեսցուք ասէ », այսինքն փութասցուք մտցուք՝ որք ժողովեցաք, կացցուք առաջի նորա խոստովանութեամբ. խոստովանել զո՞ այլ, եթէ ոչ զպէսպէս տնօրէնութիւնս նորա 'ի պէտս փրկութեան մարդկան: Կամքս ասէ ուսանել եկեղեցի, եթէ յորժամ եկեալ կանխես ցնծալ առ փրկիչն քո, եթէ զի՞նչ աղաղակես առ նա. ես ցուցից քեզ. խոստովանեաց զերախտիսն զոր առեր 'ի ձեռանէ նորա՝ սաղմոսիւք և եղանակաւոր աղաղակաւ[3] եթէ վասն մեր մարդացար, զմեզ սիրեցեր. 'ի պէտս փրկութեան մեր չարչարեցար, յաղագս

1 Մի օրին. Ցաստատել ուրախութեանն:

2 Մի օրին. Կցորդէ:

3 Մի օրին. Նշանակաւ:

զմարդիկ կենդանացուցանելոյ խաչեցար, մեզ քահանայապետ, յոյս և բարեխօս ընդ աջմէ Հօր նստար. այս ժողովրդեանս զընդ քեզ լինելն աղօթեցեր, և կամիս միշտ։

"Սաղմոսիւք աղաղակեսցուք առ նա"։ Ուռ ո՞. առ փրկիչն մեր. զայսպիսի խոստովանութիւնս յեղանակ սաղմոսերգութեան նուագի խառնեալ¹ միշտ առ նա աղաղակեսցուք։

"Զի Աստուած մեծ է և տէր, թագաւոր մեծ 'ի վերայ ամենայն երկրի"։ Այս է՝ որ զմեզ փրկեաց երկրորդ արարչութեամբն. ոչ եթէ յայնժամ արար ըղպէսպէս աքանչելիս զոր խոստովանիմքս, և այժմ տկարացաւ, կամ ոչ եթէ յայնժամ կամեցաւ զփրկութի՟ն մարդկան և արդ ոչ. այլ նոյն մեծն է և ամենազօրն և թագաւոր բարձրաբազուկ 'ի վերայ ամենայն երկրի. զոր ինչ կամի իշխանական ուժգնութեամբն և այսօր կատարէ 'ի սոյն։

"Ի ձեռն նորա են ամենայն տիեզերք երկրի, և բարձրութիւնք լերանց նորա են"։ Եթէ տիեզերք 'ի ձեռս նորա են, զի՞նչ պարտ էր² զլերինս երկրորդել որք 'ի յեզերաց են պարփակեալ. այլ ուսցուք, զի սմա մարգարէիս սովորութիւն է անուամբ լերանց միշտ ըղհրեշտակս առնուլ, որպէս մինչ ասէ, "Լերինք շուրջ են զնովաւ". "Որ յուսայ 'ի տէր որպէս լեառն". 'Ի սոյն միտս առնլի է և զասացեալս, զի փրկիչն մեր, ասէ, և թագաւորն ոչ թէ սոսկ մեծ է որպէս զմի ոք 'ի մարդկանէ, այլ զեզերս աշխարհի 'ի ներքոյ զօրութե՟ ձեռինն ունի գրաւեալ, և զերկիր զամենայն չափէ քլաւ իշխանութեամբն. նորա են և բարձրութիւնք լերանց, հրեշտակացն յաւիտենական լերինքն, առ որս և զձեզ մերձ կացոյց շնորհօք, և զնոսա պահապանս զձեզ։

"Նորա է ծով, և նա արար զնա, և զցամաք ձեռք նորա ստեղծին"։ Ընդարձակէ զիշխանութի՟ փրկչին մերոյ ընդ երկինս և ընդ երկիր, 'ի ծով և 'ի ցամաք, որպէս զի յայսմ ամենայն 'ի մեծութենէ նորին և 'ի փառաց նիւթ առցուք փրկեալքս նորա գովասանութե՟, խոստովանութե՟ և փառաւորութե՟. զի մի միայն մեք, այլ

1 Երկու օրին. խոստովանեալ։  2 Մի օրին. Պարտ է՝։

և զծով և զցամաք կոչեսցուք 'ի կցորդութիւն օրհնութեան նորա ։ Այլ թէ 'ի միտս՝ որ առնու զայն, և ոչ այնպէս վրիպէ 'ի ճշմարտութենէն ․ ծով զխմաստութիւն մտաց, և ցամաք առօգեալ 'ի նմանէ զստեղծեալս ձեռամբն Աստուծոյ մարմինս, որոց թագաւորեալ տիրէ ընդ հրեշտակաց և ընդ երկրի ․ քանզի նորա առաջի ամենայն ծունր կրկնեսցի, երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց, և ամենայն լեզու խոստովան լինի տէր զՅիսուս Քրիստոս 'ի փառս Աստուծոյ Հօր ։ "Եկայք երկիրպագցուք նմա, անկցուք և լացցուք առաջի տեառն արարչին մերոյ" ։ Արդ, ասացի արդարև այս կոչումն և վայելուչ՝ նմա երկիրպագանել, որ յերկնաւորաց և յերկրաւորաց զնոյն պահանջէ ․ ապա թէ այս պատշաճ պատիւ է նմա, և արժանաւոր է երկրպագութեան յերկնաւորաց և յերկրաւորաց, մեք Քրիստոսի եկեղեցի՝ մի միայն սոսկ տացուք փրկչին մերոյ և Աստուծոյ զերկրպագութիւն, այլ յառաւելութենէ սիրոյն և յողձութենէ սրտին և 'ի փղձկելոյ գթոյն՝ զառուս արտասուաց արձակեսցուք, և անկեալ առաջի տեառն արարչին մերոյ՝ լացցուք ուժգնակի, և եղիցի լալն մեր՝ ոչ վասն գործոյ մեղաց այժմ, և ոչ վասն ապաշխարութեան յանցանաց, այլ զինչ ․ պտուղ սիրոյն տեառն 'ի սիրոյ պարտականացս ։ Յիշատակեալ զերախտիս նորա առաջի նորա, և խոստովանել զպարտութիւն ասէ, խոստովանեսցուք ․ քանզի զինչ մեք, կամ զինչ բնութիւն մեր ․ զի նա որոյ է ծով և ցամաք, լերինք և երկիր, փրկել կամելով ընդմարդիկ՝ ոչ միայն մարդացաւ վասն մեր, այլ և չարչարեցաւ ․ և ոչ թէ չարչարեցաւ միայն, այլ և մեռաւ ։ Ո՛վ ապառաժ սիրտ, ո՛ր յիմարեալ միտք, ո՛ր թանձրացեալ խորհուրդք, որ 'ի յիշատակելն զայս ոչ երկրպագէ առաջի նորա, և անկեալ արտասուօք զշնորհսն խոստովանի ։ Այլ տես ինձ զգեղեցկութիւն ընթացից սաղմոսիս ․ զի նախ 'ի ցնծութիւն կոչեաց զմեզ, և 'ի խոստովանել զշնորհսն Աստուծոյ մերոյ՝ յորժամ խոստովանեցաք թէ նա որ մեծն էր Աստուած տէր թագաւոր՝ զայսքանս կրեաց փոխանակ մեր չարչարանս և

1 Ա. յոփնջն յայլ միտս, խորհրդաբար ։

տնօրէնութիւն. ապա գիտէ զի այլ ոչ ժուժամք 'ի խոստովանելոյ զշնորհսն 'ի խաղաղութիւն, այլ առատացեալ նովաւ փղձկիմք ընդ արտասուս. վասն այսորիկ և ասէ. ոչ ունիմք այլ ինչ, եղբարք, այս բազմապատիկ երախտեացս փոխարէն. միայն զայս կարեմք հատուցանել, զսէրն և զարտասուս: Արդ եկայք երկիր պագցուք շնորհակալութեամբ մեծամեծ շնորհացն, անկցուք առաջի տեառն արարչին մերոյ և նորոգողի:

"Զի նա ինքն է տէր Աստուած մեր, մեք ժողովուրդք 'ի ձեռին նորա, և խաշն արօտի նորա": Զի. ո՞. որոյ ծով է և ցամաք, երկինք և երկիր. նոյն է տէր մեր և փրկիչ, նա մեծ թագաւորն, ոչ զհրեշտակաց բուռն եհար, այլ զմարդկայինս բնութենէ. սոցա եղև եղբայր և ողորմած քահանայապետ յաստուածակոյս կողմանց. ապա թէ նա քահանայապետ է մեր, յայտ է թէ մեք ժողովուրդք նորա եմք. եթէ նա հովիւ քաջ է, որ եդ' զանձն 'ի վերայ հօտիս, մեք հօտ եմք և խաշն արօտի նորա: Բայց զի՞նչ է ասելն, մեք ժողովուրդք նորա. ոչ վայրապար, այլ և խաշն արօտի նորա. արօտ մեզ ոչ է զաստուածաշունչ բանս գրոց սրբոց, որովք միշտ կերակրեն զոգիս մեր հարքն սուրբք. ըստ որում և այլուր ասէ սա. "Ի վայրի դալարոջ բնակեցոյց զիս, և առ ջուրս հանգստեան սնոյց զիս". զի այս խաշինս բանական բնութեանս չիք այլ ինչ սեպհական արօտ քան համաբուն նորին բանն և իմաստութիւնն. ուստի և յաւելուածով բանիս զնոյն տնտեսէ:

"Այսօր եթէ ձայնի նորա լուիջէք, մի խստացուցանէք զսիրտս ձեր որպէս 'ի դառնութեն": Որք արածիք խաշինք 'ի մարգս և յարօտս բանից հովուին ձերոյ և առաջնորդին, այժմ յայսմ կենցաղոյս օր' թէ կամիք յայտ առնել թէ լուեալ ունիկն ունէք' և կամիք կատարել զձայնդ և զհրամանսդ որով կերակրիք, մի խստացուցանէք զսիրտս ձեր անհաւատութեամբ, թերութ՟ք և կեղակարծութ՟ք, որպէս և Իսրայէլացիքն 'ի դառնացուցանելն զԱստուած յանապատն: Յորժամ լսէք զԱս-

1 Մի օրին. Որ տնէ: այլ օրին. Թէ լուէլ ոսնին տնէք:
2 Մի օրին. Թէ լուէք ոսնին տնէք: միւս այլն, Թէ լուէալ ոսնին տնէք:

տուած մարդ, զտէրն 'ի կերպարանս ծառայի, զնա որ կարութեամբ խաչեալ, զերկինս ձեզ խոստացեալ, մի խոստացուցանէք զխիղճս ձեր [1], և յայսմանէ երկմտիք, 'ի քննութիւն ձգեալ զողորմութիւն խորհրդոյս, և կամեցեալ հասանել իմաստիցն Աստուծոյ. այլ զհաւատս տուք ամենայնի նեցուկ, և սովաւ զամբոխեալ դառնութիւն խորհրդոց հանդարտացուցէք 'ի խաղաղութիւն։

"Յաւուրն փորձութեան յանապատին՝ ուր փորձեցին զիս հարքն ձեր, քննեցին զիս, և տեսին ըզգործս իմ զքառասուն ամ"։ Ով որպէս փորձեցին զԱստուած Իսրայելացիքն, կամ որպէս տկարութիւն տուեալ զօրութեան նորա պատժեցան, երկայն կարօտանամք բանից ասել. բայց այս միայն ցուցցի, զի նոքա որք փորձեցին զԱստուած և ասացին, ո՞րպէս կարէ ածել զմեզ յերկիրն պարգևաց, որոյ բնակիչքն այնքան զօրաւորք են ըստ պատմութեան լրտեսացս, յանապատն սատակեցան, և ոչ եղեն արժանի անդ մտանել։ Որդ ասէ մարգարէս, նոյն և առաքեալն Պօղոս 'ի դիմաց Աստուծոյ առ մեզ. ո՛վ նոր ժողովուրդ իմ որդի Աւհանի եկեղեցի հեթանոսաց, առանց քննելոյ զպատուիրանս իմ և զձայնն զոր լսես, կատարեա [2] 'ի մարմնական կենացդ օր. և թէ տկարանաս յուսովն առ իս [3], և շնորհօք իմովք զօրացիր, և քննեա զգործսն իմ, կամ զիմ խոստումն. քանզի ես հաւատարիմ եմ յամենայն բանս իմ, և արդար յամենայն գործս իմ ապա թէ խստանայ սիրտ քո և յորդորէ փորձել զԱստուած, հայեաց յօրինակն քո յԻսրայէլ, թէ որք փորձեցին և քննեցին զզօրութիւն Աստուծոյ, որպէս զնա դառնացուցին 'ի վերայ ինքեանց. զքառասուն ամ՝ շրջեալ ընդ անապատն՝ անդ սատակեցան, և մնացին արտաքոյ երկրին պարգևաց. այսպէս և դու թէ քննես՝ յորժամ լսես զձայն նորա, և զորպէսն պահանջես փորձիւ ուսանել, յերկրի աստ տագնապեալ սատակիս, և ոչ մտանես 'ի հանգիստն երկնից։

"Պանացայ ընդ ազգին այնմիկ և ասացի, միշտ մոլորեալ են սրտիւք, և նոքա ոչ ծանեան զճանապարհս

1 Երեք օրին. Զխորհուրդ չէր։ Մի օրին. Զխորհուրդս չէր։
2 Մի օրին. Կարօտէա։
3 Մի օրին. Յառաջն առ իս։

իմ»։ Այն ազգն որ քո օրինակ էր, տաղտկացոյց զիս անհաւատութեամբն և միշտ մոլորութեամբն. իսկ ես զքառասուն ամ պէսպէս նշանօք և սքանչելի գործովք ջանացի ածել զնոսա 'ի հաւատս և 'ի գիտութիւն զօրութեան իմոյ, և նոքա բնաւ ոչ կամեցան ճանաչել զճանապարհս իմ. «Որպէս երդուայ 'ի բարկութեան իմում, թէ մտցեն 'ի հանգիստ իմ»։ Ով թէ որքան տժգոհ լինի զնոցանէ Աստուած. այնքան ասէ տաղտկացուցին զիս, և այնքան ձանձրացուցին 'ի խնդրելն զսքանչելիս և 'ի փորձելն զզօրութիւն իմ նշանօք, մինչ զի բարկացուցին զիս 'ի վերայ նոքեանց՝ երդմամբ հաստատել զոչ մտանելն նոցա յերկիրն պարգևաց։

Արդ մեք ասէ, որք ցնծացաք յԱստուած, և ուրախացաք 'ի փրկութիւն նորա, ընդ քաղցրութեանն և զանաչառութիւն զմտաւ ածցուք, և օրինակաւ Իսրայէլացւոցն զգաստացեալ 'ի հաւատոյն արձանացուք, և այնպէս փութասցուք մտանել յերկնից արքայութեանն հանգիստ, զոր խոստացաւ մեզ տէր մեր Յիսուս Քրիստոս, որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ԸՆԴԷՐ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՆ ՅԵՏՈՅ ԳԱՅ Ի ՄԷՋ ԺՈՂՈՎՐԴԵԱՆՆ ԿԱՄ ԶԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ՆՈՐԱ Ի ԴՐՈՒՆՍՆ ԿԱՆԳՆԵԼ Ի ՅԵՏԻՆ ՏԵՂԻՆ ԵՒ ԱՊԱ Ի ԽՈՐԱՆՆ ՍՈՒՐԲ ՄՏԱՆԵԼ. ԵՒ ՅԱՌԱՋԻՆ ԱԹՈՌՆ ԲԱԶՄԵԼ.

ԲԱԶՈՒՄ անգամ եցոյց բանս զքահանայապետն պատկեր և նման Քրիստոսի, նոյն և յաջորդ աթոռոյ նորա 'ի յերկրի. հաստատեցաք և զսրբութիւն սրբոց զխորանն անջրպետեալ երկնից երկին և տեղի Աստուծոյ. իսկ զտաճարս երկնից հաւասար, և զմարդիկ հաւասար հրեշտակաց ըստ իւրաքանչիւր դասու յօրհնութիւն 'ի սմա պարապեալ։ Զայս ամենայն, որպէս կարծեմ, ընդարձակագոյն ցուցի 'ի բազում տեղիս, և այժմ ոկարանամ երկրորդել։

Արդ գայ քահանայապետն՝ որ է պատկեր Քրիստոսի, հանդերձ համապատիւ քահանայիւքն և դասուք

պաշտօնէիցն, մինչ դեռ եկեղեցիս 'ի սաղմոսերգութե
են և 'ի փառատրութիւն Աստուծոյ, և կայ ոչ յեկե֊
ղեցիս և 'ի տաճարս, և ոչ 'ի խորանն սուրբ և 'ի բեմն,
այլ 'ի յետին տեղին 'ի դրունս տաճարին, Քրիստոսի
եղեալ այսու ապացոյց՝ որ 'ի կերպարանս Աստուծոյ և
Հօր գոլով հաւասար, նմին և փառակից, տեղի ընա֊
կութեան ունելով զծոցն հայրենի՝ վերագոյն հրեշտա֊
կաց և հրեշտակապետաց և ամենայն անուան անուա֊
նելոյ. և յայսպիսի փառաց սակս փրկութեան մերոյ
ինքնակամութեամբ զանձն խոնարհեցոյց, և 'ի յե֊
տին տեղին քան զամենայն դասս հրեշտակաց եկն և
եկաց, այսինքն յերկիր, որ է դրունք երկնից, և եր֊
կրորդ յետ նորա. այսպէս և քահանայապետն՝ նորա
պատկեր, և նման յամենայն ժողովրդեանէս փրկչին
մերոյ Քրիստոսի՝ միայն նա է, և տեղի իւր սեպ֊
հական ունի զներքին տեղ սրբոյ խորանին, և անդ
հանգչէր միայն 'ի քահանայապետականն աթոռ՝ վե֊
հագոյն քահանայից և սարկաւագաց և ամենայն լրման
եկեղեցւոյս: Այսպէս նմանեալ Քրիստոսի խոնար֊
հութեանն, որպէս նա 'ի մարդեղութեանն փոքր մի
խոնարհեցաւ քան զհրեշտակս, այսպէս և սա յայս
սակաւ ժամանակս. յետոյ և 'ի խոնարհ կանգնի քան
զամենայն լրումն եկեղեցւոյս՝ ուր 'ի կերպարանս
հրեշտակաց փառաբանեն զԱստուած 'ի տաճարս որ
է յարացոյց երկնից: Որ եկեալ կանգնի ոչ 'ի տա֊
ճարն, այլ 'ի դրունսն որ է օրինակ երկրի՝ ուր երևե֊
ցաւ Քրիստոս. որպէս նա մարդացեալ ոչ խոնարհ
միայն քան զսերովբէս և քերովբէս, այլ և քան զհր֊
րեշտակս. այսպէս և սա ոչ միայն քան զքահանայսն
յետոյ, այլ և քան զսարկաւագունսն և զկէս սարկա֊
ւագունսն: Եւ Քրիստոս յորժամ մարմին զգեցաւ,
ասէ Պօղոս՝ թէ աղօթս և պաղատանս առ Աստուած
մատուցանէր 'ի վերայ երկրիս. և աւետարանիչքն բա֊
զում անգամ նշանակեն վասն աղօթելոյ նորա. աղօ֊
թէր ոչ եթէ վասն իւր որ ամենասուրբն է, այլ վասն
մեր. որպէս և ուսանիմք յաղօթից անտի. “ Հայր,
վասն յիս հաւատացելոցս աղաչեմ„. այսպէս և քա֊
հանայապետն մինչ դեռ է 'ի յետին տեղն եկեղեցւոյն,
հանգոյն Քրիստոսի զաղօթսն մատուցանէ փրկութե

տոցս վասն, և խնդրէ յԱստուծոյ կեցուցանել զժողովուրդն, և ընդունել զօրհնութիւն նորա՝ զոր երգեն ՚ի գովեստ փառաց նորա և անուան ։ Ըստ որում Քրիստոս յետ կատարելոյ զամենայն խոնարհութիւն տնօրէնութեանն յերկրի՝ ապա յերկինս եմուտ, և ոչ եկաց միայն անդանօր, այլ անց ընդ երկինս, որպէս ասէ Պօղոս. «Ունիմք մեք քահանայապետ մեծ անցեալ ընդ երկինս», և դարձեալ ասէ. «Զատեալ ՚ի մեղաւորաց, և բարձրացեալ քան զերկինս Քրիստոս՝ էանց ընդ այն, և եմուտ ՚ի ներքին կողմն վարագուրին վեհագոյն իշխանութեանց և պետութեանց, և նստաւ ընդ աջմէ Հօրն յիւրն սեպհական տեղի ժառանգութեան». այսպէս և քահանայապետս յառաջ գայ ՚ի պատշաճ ժամու ՚ի խոնարհ տեղւոյս՝ ուր տնօրէնութեամբ խոնարհութեանն կանգնեցաւ, և անցանէ ընդ մէջ ժողովրդեանս, որպէս և Քրիստոս ընդ հրեշտակացն. և ոչ կայ և մնայ ՚ի միում ՚ի սոցանէ ՚ի դասակարգութիւն, որպէս և ոչ Քրիստոս յերկնայնոցն, այլ սլացեալ ՚ի միջոյ սոցա՝ ինքնիշխանութեամբ մտանէ ՚ի խորանն վեհագոյն, որպէս և Քրիստոս ՚ի ներքին կողմն վարագուրին ՚ի ծոցն հայրենի. և ըստ որում Քրիստոս յիւր սեպհական և ՚ի ծանօթ տեղին եմուտ, այսպէս և սա յիւր սեպհական կայարանն ՚ի տեղին և յաթոռն բարձրացաւ ։ Եւ Քրիստոս յետ մտանելոյ յերկինս իւր նախ և առաջին, ապա կարապետ եղև ամենեցուն գնալ յայն տեղին, և հորդեաց մեզ ճանապարհ նորոգ և կենդանի ելանել յերկինս, որոյ հետևեցան նախ առաքեալքն, և յետ այնորիկ սուրբքն ըստ իւրաքանչիւր կարգի. այսպէս և սա նախ ինքն եմուտ ՚ի խորանն սուրբ յօրինակ Քրիստոսի, և հորդեաց ճանապարհ գնալ ՚ի սոյն եկեղեցական դասուց, որոյ հետևին նախ քահանայքն ըստ նմանութեան առաքելոցն, և ապա իւրաքանչիւրքն դասք պաշտօնէիցն ըստ պատուոյ և աստիճանի ։ Եւ ըստ որում Քրիստոս և սուրբքն իւր յերկրի գոլով խոնարհք էին և հաւասարք բնաւեիցս, իսկ յերկինս ելեալ նա զիւրն տեղ ընդ աջմէ Հօր առեալ բազմեցաւ, և սուրբքն զիւրաքանչիւր կարգ որպէս պատուեցան յԱստուծոյ, այսպէս և սոքա արտաքոյ խորանին կալով անընտիր էին զանա

զանութեամբ դասու և կայանի, քահանայապետն յետոյ և յետինքն յառաջոյ։ Բայց յորժամ մտին 'ի պատկերն երկնից խորանն, յիւրաքանչիւր տեղ ժառանգութեան արժանապէս որոշմամբ բազմեցան, քահանայապետն 'ի վեհագոյն աթոռն առաջոյ Քրիստոսի, և քահանայքն ընդ նմա պատկեր առաքելոցն, և այլ պաշտօնեայքն ըստ պատուոյ ընդ նոսա զետեղին։ Եւ որպէս Քրիստոս միշտ բարեխօսէ վասն մեր՝ ըստ հրամանին առաքելոյ՝ առ Աստուած, քանզի գրէ․ «Միշտ կենդանի է լինել բարեխօս վասն մեր, և ըզփորձ առեալ՝ օգնական լինի փորձանաւորացս»․ այսպէս և սոքա յետ այսր զան առընթեր սրբոյ սեղանոյն, և ըստ նմանութեան Քրիստոսի նուիրօք մարմնոյ նորա և խորհրդական աղօթիւքն մաղթեն առ Աստուած և Հայր՝ վշտակցութեամբ վասն ամենայն ժողովրդեանս, ուստի և ընդունին զհայցուածս որ խնդրենն․ «Քանզի զամենեսեան կամի զի կեցցեն և 'ի գիտութիւն ճշմարտութեան եկեսցեն»։

## ԶԻՆՉ ՍՐԲԵՐԳԵՆՈՒԹԻՒՆՆ ՅԵՏ ՄՏԱՆԵԼՈՑ Ի ԽՈՐԱՆՆ

ԱՌԱՔԵԱԼՆ Պօղոս 'ի խոնարհութիւն կամելով կրթել զՓիլիպեցիսն՝ զՔրիստոս առնու ապացոյց 'ի մէջ, ասելով․ «Զայս խորհեսցի իւրաքանչիւր ոք 'ի ձենջ որ և 'ի Քրիստոս Յիսուս․ 'ի կերպարանս Աստուծոյ գոլով նորա՝ զանձն ունայնացոյց, հնազանդեալ Հօր մահու չափ և մահու խաչի․ վասն որոյ Աստուած զնա առաւել բարձրացոյց, շնորհեալ նմա անուն որ 'ի վեր է քան զամենայն անուն․ զի յանուն Յիսուսի Քրիստոսի ամենայն ծունր կրկնեսցի (յայտ է թէ խաչելոյն), և ամենայն լեզու խոստովան լիցի տէր ըզՅիսուս Քրիստոս 'ի փառս Աստուծոյ Հօր»։ Արդ այսմ զօր ասաց առաքեալ բանիւ վասն Քրիստոսի, քահանայապետս գործով պատկերացաւ՝ 'ի կերպարանս Քրիստոսի գոլով, և փոխան նորա վեհագոյն ամենայն ժողովրդեանն, ոչ անարգութիւն համարեցաւ իւր զանփառութիւնն և զիջանել 'ի բարձրագոյն վայրէ խորանին, այլ նուաստացոյց զանձն ըստ Քրիստոսի նմանութեանն, և իջեալ յիշխանական աթո-

ռայն, մի՛ ի հասարակաց ժողովրդեանէն երեւեցաւ 'ի մէջ նոցա. մանաւանդ թէ ընդ բուն յետինն առ դրունս հնազանդեալ եկաց, որպէս և Քրիստոս 'ի բուն իսկ անարգանաց մահն, և ապա ըստ նմանութե նորա ազդեցութեամբ Հոգւոյն Աստուծոյ բարձրացաւ առաւել քան զամենեսեան, և անցեալ ընդ մէջ երկնանման եկեղեցւոյն՝ եմուտ 'ի ներքին կողմն վարագուրին, յանդիման եղեալ երեսացն Աստուծոյ, այսինքն սեղանոյն: Յաղագս որոյ յետ այնորիկ բարձեալ զձայն ամենայն լռման եկեղեցւոյս, երախայից, հաւատացելոց և կղերիկոսաց, 'ի նմանութիւն երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց, աղաղակաւ խոստովանին տէր զՅիսուս Քրիստոս 'ի փառս Աստուծոյ Հօր, ասելով, «Սուրբ Աստուած, սուրբ և հզօր, սուրբ և անմահ որ մարմնացար և խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ՛»: Այսինքն դու Աստուած, որոյ պատկեր ձեւացաւ քահանայապետս. զի ըստ որում սա վեհ քան զամենեսս, դու Աստուած մեծ և հզօր, և անմահ էութիւն, և ոչ յափշտակութիւն համարեցար քեզ զնոյն. այլ որպէս սա զյետին տեղին կալաւ յեկեղեցիս, նոյնպէս և դու զյետին մահն խաչիւ մեռար վասն մեր, և որպէս սա եմուտ յետ այնր 'ի յիւր սեպհական տեղն 'ի խորանն սուրբ, նոյնպէս և դու մերով բնութեամբս որով մեռար՝ մտեր յերկինս մեզ քաւութե միջնորդ և կենաց կարապետ: Արդ որ խոնարհեցար վասն մարդկան այնչափ, և բարձրացար յայս նոցին անհաս, զքեզ աղաչեմք, ողորմեա մեզ: Այսպէս և այսքան եկեղեցին աղաղակեն առ Քրիստոս մինչ դեռ քահանայապետն աղօթէ: Իսկ եթէ Հոռոմք այսու երգով զանազանեն 'ի մէնջ, ոչ է պարտ հակառակել. քանզի 'ի խաղաղութիւն կոչեաց զմեզ Աստուած, և նա ոչ է Աստուած խռովութեան՝ այլ խաղաղութեան. քանզի և նոքա յառաջ այսպէս երգէին[2], սակայն յաղագս ծեքելոյ[3] զօրհնութիւնս հերձուածողացն, և սուկ աստուածութեանն զխաչն համարելոյ, այլափո-

1 Ըստ վերաբերելոյ զսուրբ Աստուածն 'ի դէմս Քրիստոսի, ըստ նմին և զմարմնացարն և զխաչեցարն է իմանալ:

2 Իմա ըստ սովորութեան տեղեաց տեղեաց՝ միշտ ողջմտութե:

3 Այլք. Ծեփելոյ:

խնցլին 'ի դէմս Երրորդութեանն : Եւ ոչ նոցա արժան է սորին վասն առարկու մեզ յառնել, և զխռովութիւն անվրդովետ սիրոյն ձգել. զի մեր աղաղակս և սրբասացութիւնս առ Քրիստոս է՝ որ խաչեցաւ վասն մեր, դեռ ևս քահանայապետ է նովին մարմնովն ժողովրդեանս իւրոյ ընդ աջմէ Հօր, որպէս ուսաք և հաւատամք՝ առնեմք և պատկերամամբ. զի թէ Իսրայէլ հինն՝ առակաւ և օրինակաւ երկնաւորացն պաշտէր, որպէս գրէ առաքեալ, քանի առաւել եղելոցս նովաւ երկնաւոր՝ պարտ է երկնայնոցն սրբասացութեամբ պաշտել, և փառաբանել զտէրն մեր Յիսուս սեպհական իւր ժողովրդեանս :

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍՐՈՎԲԷԱՍԱՑՈՒԹԵԱՆՆ ԱՂՕԹԻՑ

“ԱՍՏՈՒԱԾ սուրբ՝ որ 'ի սուրբս բնակեալ[1] ես, և երեքսրբեան ձայնիւ 'ի սրովբէից գովիս, և 'ի քրովբէից փառաբանիս, և յամենայն երկնայնոց զօրացդ երկրպագիս,, : Ացորդի քահանայս ժողովրդեանն սրբասացութեան խորհրդական աղօթիւքս, և վկայէ զնախասացութիւն մարգարէիցն՝ որք տեսին զնա 'ի սրովբէիցն սրբաբանեալ, և 'ի քրովբէից փառաբանեալ, Եսայի և Եզեկիել, 'ի ձեռն որոց և մեք, ասէ, ուսաք զայս երգել քեզ:

“Որ 'ի չգոյէ 'ի գոյ ածեր զարարածս ամենայն, որ ստեղծեր զմարդն ըստ պատկերի քում և նմանութէ, և ամենայն շնորհիւ քո զարդարեցեր զնա, և ուսուցեր խնդրել զիմաստութիւն և զգօնութիւն,, : Յետ հրեշտակացն գոյացութեան՝ արարածս զգալի ստեղծանս, և ապա մարդն իշխան նոցա, ըստ որում ուսուցանէ զայս մեզ Դաւիթ. “Արար զհրեշտակս իւր 'ի հոգիս,,. և ապա յաւելու. “Հաստատեաց զերկիր 'ի վերայ հաստատութեան իւրոյ,, : Զսոյն 'ի մէջ առնու և քահանայս. յետ հրեշտակաց զարարածոց լինելութիւն դնէ, և ապա զմարդոյն ստեղծանելն, որոյ ասէ ուսուցեր խնդրել զիմաստութիւն. քանզի դրախտ ամենապատիկ ծառովք՝ զիմաստութիւն առակէ,

1 Մի օրին. հանգուցեալ:

և գործել մարդոյն և պահել՝ զխնդրելն և պահել անդրժելի զնոյն օրինակէ ։

“Եւ ոչ անտես արարեր զմեղուցեալն, այլ եդեր 'ի վերայ նորա ապաշխարութիւն փրկութեան”։ Մեծ շնորհ եղև այս Ադամայ յԱստուծոյ, գիտելն զապաշխարութիւն յետ յանցանացն սակս մարմնոյն, որում ոչ գտաւ արժանի բանսարկուն. քանզի որդիք աշխարհիս այսորիկ իմաստնացան քան զնոսա ։

“Որ արժանի արարեր զմեզ զնուաստացեալ և զանարժան ծառայքս քո 'ի յայսմ ժամու կալ առաջի փառաց սրբութեան սեղանոյ քո, և զօրինաւոր երկրպագութիւն և զփառաբանութիւն մատուցանել քեզ”։ Ի քէն, ասէ, տուաւ մեզ այս զգաստութիւն աղօթից խօսակցութեան ընդ Աստուծոյ, որ զնախապատմեալ շնորհս արարեր մարդկան. ապա թէ ոչ, մեք ո՞ւր գօրէաք 'ի թանձրութենէ մարմնոյ ելանել, և իմացականապէս 'ի յերկրէ 'ի յերկինս խօսել։ Եւ տես, առաջի սեղանոյս այժմ սկսաւ ասել թէ կամք. քանզի մինչև ցայժմ 'ի մէջ ժողովրդեանն և առ դուրսն աղօթէր։

“Դու տէր ընկալ 'ի բերանոյ մեղաւորացս և զերեքսրբեան օրհնութիւնս, և պահեա զմեզ քոյին քաղցրութեամբդ”։ Դու որ կցորդս զմեզ հրեշտակաց արարեր, և նոցին երգոցն երգակից, ընկալ 'ի բերանոյ մեր զհրեշտակական երգս ։

“Թող մեզ զամենայն յանցանս մեր՝ զկամայ և զակամայ, զգիտութեան և զանգիտութեան. սրբեա զհոգի և զմիտս մեր, և շնորհեա 'ի սրբութեան պաշտել զքեզ զամենայն աւուրս կենաց մերոց”։ Նախ վասն զփառաբանութիւնն ընդունել աղօթեաց, և ապա յետ այնր փոխարէն երգողացս, և շնորհել թողութի մեղաց և զսրբութիւն մտաց. զի զայս կարօտանամք, ասէ, ունել, և ապա զքեզ արժանապէս պաշտել։

“Բարեխօսութեամբ սրբուհւոյ աստուածածնին, և ամենայն սրբոց որք յաւիտենից քեզ բարեհաճոյացան, զի սուրբ ես Աստուած մեր”։ Աջակից են մեզ և բարեխօս առ Քրիստոս սուրբք ամենայն, և մանաւանդ օրհնեալ տիրամայրն, զորս 'ի մէջ առնու միջնորդ և խնդրող առ 'ի յընդունակ լինելոյ աղօթիցն՝ որ 'ի փառս Աստուծոյ, որ է օրհնեալ յաւիտեանս ։

## ԶԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ՅԵՏ ԱՅՍՈՐԻԿ Ի ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏԱԿԱՆ ԱԹՈՌՆ ԶԵՏԵՂՈՒՄՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

Ամբողջ պահելով զսահման խորհրդածութեանն՝ ունիմք և զայս ևս ըստ նմին ճանապարհի. քանզի պատկեր Քրիստոսի մտեալ առաջի սրբոյ սեղանոյս, որպէս և նա առաջի Հօր, պարտ էր զի նախ աղօթեսցէ առընթեր սմա, և ապա յաթոռ իշխանութեան իւրոյ և պատուոյ հանգչիցի։ Ուստի և զայս մատուցեալ աղօթս զոյգ ընդ սրբասացութեանն, և համբուրեալ զսեղանն ըստ նմանութեան աստուածութեանն կարգաւոր օրինօք, յետ այնր 'ի տեղի իշխանութե՛ և պատուոյն երթեալ զետեղի՝ յինքն ունելով զաւետարանն սուրբ, իբր թէ ասելով, թէ այս պատիւս և աստուածայնաբար փառքս և իշխանութիւնս և նստելս վեհագոյն բնաւից՝ ոչ է իմ, այլ Քրիստոսի, որ ստացաւ զձեզ արեամբն իւրով ժողովուրդ. իսկ ես միայն ապացոյց նորին և պաշտօնեայ կերպարանեալ առաջի զգալի աչաց ձերոց. որք տեսանելով զպատգամս Քրիստոսի 'ի վերայ լանջաց իմոց, զնոյն ինքն զտէրն ձեր սովանայեցարուք բազմեալ 'ի յաթոռ իւր, և մի զիս զծառայ նորա և սպասաւոր։ Քանզի նա որպէս 'ի մէջ երկնայնոցն իմացականապէս առնու զպաշտօնն և զփառաբանութիւն, այսպէս և 'ի մէջ ձեր երկրաւորացդ ժողովելոց յանուն նորա՝ երևի վեհագոյն բազմեալ յանդիման երկրպագուացդ ընդ սրբոյ աւետարանիս իւրոյ, և ես թանձր և մարմնական աչաց ձերոց այնր իմանալի խորհրդոյն՝ թանձր յարացոյց կերպացայ։ Նմին հաստատութիւն ունիմք զսրբոյ հայրապետին Աղեքսանդրոյ զՊետրոսի բանն. քանզի նա մաքուր ունելով զհայեցուածսն՝ յայտնի տեսանէր 'ի յաթոռն զՔրիստոս. ուստի և ինքն զ'ի պատուանդանն հանգչելն ժպրհութիւն համարէր։ Զայն յայտնեաց Աստուած երանելոյն, որպէս զի ուսցուք յընդհանրական եկեղեցիս հաւատացելոց զնոյն շնորհ հանգուցեալ 'ի մէջ ժողովրդեանն իւրոյ։ Քանզի հաւատովք է այժմ ամենայն գիտութիւն ազգիս քրիստոնէից, այսինքն

մտաց աչաց տեսութեամբ և հաւատալով, և ոչ մար-
մնոց աչաց. «Ո ի մեք այսուհետև ոչ զոք գիտեմք մար-
մնով», ասաց Պօղոս։

## ԶԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ՄԻԱՑՆԱԿ ԱՍԵԼ ՍԱՂՄՈՍԵՐԳՈՂԻՆ ԶՄԵՍԵԴԻ ԱՌԱՔԵԼՈՑՆ ԵՒ ԶԱԼԷԼՈՒԻՆ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

Ի ՉԱՓ և 'ի սահման[1] երկնաւորացն դասուց ցուցաք բազում անգամ զորոշումն աստիճանաց եկեղեցւոյ. նա և ոչ թէ մերս միայն՝ որք ճշմարտութեանն աշակերտեցաք, այլ և ստուեր հանդերձելոց բարեացն՝ Իսրայէլի քահանայագործութիւնն. որպէս և գրէ Պօղոս վասն նոցա՝ որք առակաւ և օրինակաւ երկնաւորացն պաշտէին, որպէս և ասացաւ Մովսէսի. «Տեսջիր, ասէ, արասցես զամենայն ըստ օրինակին ցուցեալ քեզ 'ի սուրբ լերինն»։ Ապա յայտ է թէ առ մեզ ևս գերազանց հաստատեցաւ նոցին ճշմարտութիւն՝ որք առնուն զգիտութիւնն Աստուծոյ երկատեսակութեամբ 'ի միմեանց, և իջուցանեն առ իրեարս. այսպէս և աստ քահանայն տայ զգիտութիւնն Աստուծոյ առ սարկաւագն. իսկ նա ընկալեալ զնոյն՝ հրամայէ ուրաքանչիւր կարգի ժառանգաւորացն, և նոքա հրամայեն եկեղեցւոյն։ Արդ որպէս սարկաւագն վարդապետութեամբ քարոզութեանն զիւրն աստիճանի առանձնաւորութիւն եցոյց, նոյնպէս սաղմոսերգուն զիւրն կատարէ գործ՝ երգելովն, և ընթերցողն ընթեռնլովն. ապա թէ ամենեքեան զուգակցին նմա յերգելն, անկարգութիւն տիրէ, և ոչ որոշի առանձնաւորութիւն պատուոյն. այլ պարտ է, զի որպէս սարկաւագն միայն տայ զքարոզութիւն ժողովրդեանն, և ընթերցողն զընթերցողութիւնն, այսպէս և սա զսաղմոսողութիւնն[2] և զալէլուսն, և ապա 'ի նմանէ հրամանաւ և առաջնորդութեամբ նորին սփռեսցի քաղցրութիւն եղանակին յամենայն լսումն եկեղեցւոյն, զի կարասցուք պահել ըզհրամանսն. «Ամենայն ինչ ձեր, ասէ, բարեձևութ̃բ և ըստ կարգի լինիցի, նա և ըստ եկեղեցեացն Ա̃յ»։

1 Երկու օրին. Որչափ և 'ի սահմանս։ 2 Մի օրին. Զսաղմոս ողջու-նինն։

## Ո՛Ր ՎԱՍՆ ԱՍՏՈՒԱԾԱՅՆՈՑ ԳՐՈՑ ՎԵՐԾԱՆՈՒԹԻՒՆՔ

Իսկ աստուածային գրոց ընթերցողութիւնք՝ զաստուածային կամսն և զխորհուրդսն վարդապետեն եկեղեցւոյն, առ 'ի գործով կատարել զնոսին ըստ չափոյ և ըստ զօրութեան իւրաքանչիւր ումեք. և որպէս զի զորոցն երանելեաց ճգնութեանն ճանապարհս ուսցուք, թէ որպէս աշխատութեամբ և երկօք արժանի գտան քրիստոսեան պսակացն 'ի հանդերձեալ կեանսն՝ մարմնով վշտացեալքն :

## ԸՆԴԷՐ ՆԱԽ ՔԱՆ ԶԱՒԵՏԱՐԱՆՆ ՔԱՀԱՆԱՅՑՆ ԽԱՂԱՂՈՒԹԻՒՆ ՏԱՑ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ Ի ՆԵՐՔՈՒՍՏ Ի ԲԵՄԷՆ

ՔՐԻՍՏՈՍ ասաց 'ի դէմս առաքելոցն 'րց. « Զխաղաղութիւն զիմ տամ ձեզ, զխաղաղութիւն զիմ թողում ձեզ ». տամ ասելով զայն յայտ առնէ՝ թէ միշտ տամ և հանապազ. և խաղաղութիւն աստ զԱստուծոյ և զմարդկան հաշտելն նշանակէ [1] : Արդ յայս բարի յոյս ապաւինեալ որ 'ի տեառնէ իւրեանց, միշտ և նախ քան զամենայն խնդիրս՝ եկեղեցիս զայս աղաչեաց հրամանաւ սարկաւագին, և եւս առաւելապէս ունել զխաղաղութիւն՝ զոր ետ Քրիստոս իւրոց հաւատացելոց : Իսկ քահանայս իշխանութեամբն զոր ունի, և աստուածայնապէս պատուոյն տայ զայն հայցուածս նոցա 'ի ներքուստ 'ի խորանէն՝ 'ի դիմաց Քրիստոսի, որով ուսուցանէ թէ ընդ զգալի ձայնիս իմոյ խառնեալ է և իմանալի զօրութիւն Հոգւոյն, որ աւետարանէ 'ի դիմաց Քրիստոսի. « Խաղաղութիւն ձեզ հեռաւորաց և խաղաղութիւն ձեզ մերձաւորաց » : Ամենեցուն խաղաղութիւն է ընդ Աստուած, որք հաշտեցան ընդ նմա մահուամբ Որդւոյ նորա Յիսուսի Քրիստոսի յետ զխաղաղութիւնն տալոյ, ապա և

1 Մի օրին. Հայր. լինելի նշանակելոց :

համարձակելի արարանացս ընդ Աստուած խօսակցելն , զի միջնորդն մեղաց որ որոշէր 'ի մէջ մեր և Աստուծոյ՝ քակտեցաւ :

## ՁԻՆՉ ՈՒՍԱՆԻՄՔ Ի ՍՐԲՈՑ ԱՒԵՏԱՐԱՆԻ ԸՆԹԵՌՆՈՒԼՆ

ՀՐԵՇՏԱԿՔ յորժամ երևեցան 'ի ծննդեանն Քնի , զայս բարձեալ ձայն աղաղակէին . « Փառք 'ի բարձունս Աստուծոյ , և յերկիր խաղաղութիւն , ընդ մարդիկ հաճութիւն » . և յետ այնորիկ Քրիստոս սկսաւ քարոզել զաւետարանն արքայութեան երկնից աշխարհի և զկերպարանս հաշտութեանն ցուցանել : Արդ ըստ այսմ նմանութեան լինի հանապազ յեկեղեցիս . նախ խոստովանեալքս ընդ Աստուծոյ մեղօքն՝ զխաղաղութիւնն մաղթեցաք ունել . իսկ յորժամ զայն շնորհեաց մեզ քահանայն , ապա գայ սարկաւագն 'ի մէջ եկեղեցւոյն , և ընթեռնլով զաւետարանն՝ ուսուցանէ նոցա , թէ որքան է առատութիւն սիրոյն Աստուծոյ և խաղաղութեանն ընդ մարդիկ , որ ետ սոցա ոչ ըզխաղաղութիւնն , այլ և զմիածին Որդին իւրով պէս պէս տնօրէնութեամբն , վարդապետութեամբն և սքանչելեօքն , զորս պատմէ աւետարանն :

## ՁԻՆՉ ԵՒ ԱՅԼ ԱԶԳԱՑ ՔՐԻՍՏՈՆԷԻՑ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ ՅԵՏ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ

ՊԱՐՏ է դիտել զգեղեցիկ օրինացն սովորութիւն , որովք վարին զանազան բարեկարգութեամբ ազգք քրիստոնէից . քանզի Հռոմք ոչ եթէ յետ աւետարանին վաղվաղակի զնիկիականն դաւանեն հաւատ . այլ զի՞նչ . եթէ հանդիսական օր լինի կամ տօնախմբութիւն և ժողովրդոց բազմութիւն , եպիսկոպոսն մինչ դեռ է 'ի քահանայապետական յաթոռն՝ անդուստ խօսեալ արտաքոյ ուսուցանէ ժողովրդեանն զօրէնսն Աստուծոյ բացայայտ վարդապետութեամբ որչափ և կամի . այսպէս առնեն և Փռանկք . ըստ այսմ ծանեաք զառաջին սրբոցն սովորութի : Քանզի սուրբն Գրիգոր Աստուածաբանն զյարութեան աւուր Ճառն կարճառօտ բանիւ յայս ժամն է ասացեալ , և երանե-

լին Նարսեղ՝ զհայրիւր և տասնևչորս սաղմոսին մեկ-
նութիւն 'ի վկայիցն տօն յորժամ տարաժամեալ էր
օրն, և եկեալ յեկեղեցին առ 'ի զպատարագն մատու-
ցանել, և այժմ ասաց, վաղ ժամանեալ ձեր 'ի քահա-
նայականս յայս տեղ ուր մեք մնացան եկաք. և զսաղ-
մոսն որ 'ի պատարագն ասացաւ առաքելոյն ըստ խոր-
հրդեան աւուրն մեկնեաց։

Յետ որոյ գայ ապա յաթոռն, առաջի սրբոյ սեղա-
նոյն աղօթէ 'ի վերայ երախայից, և արձակեալ զնո-
սա, սկիզբն առնէ սրբոյ խորհրդոյն. այս Հռոմոց է
սովորութիւն։ Նայց եկ դու և զՓռանգացն ուսցուք
բարեպաշտութիւն. քանզի և նոքա որպէս զմեզ՝ ըղ-
հաւատոն յետ աւետարանին խոստովանին. բայց թէ
տէրունական օր լինի կամ հանդիսական, ասեն վաղ-
վաղակի զայն, և ապա զինչ. 'ի քաղաքական եկեղե-
ցիս և 'ի ժողովարանս ասեն զհաւատամքն յետ աւե-
տարանին. և ապա ոփրանթ առնեն ժողովուրդքն։
Այլ զինչ ոփրանթն. գեղեցիկ և աստուածահաճոյ
օրէնք 'ի Պօղոսէ հրամայեալ եկեղեցւոյ քրիստոնէից,
ըստ որում գրէ առ Կորընթացիսն. "Վասն հաշուին որ
'ի սուրբսն է, որպէս պատուէր ետու եկեղեցեացն
Գաղատացւոց, նոյնպէս առնիջիք և դուք. ըստ իւրա-
քանչիւր միաշաբաթուց իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ ան-
ձին իւրում գանձեսցէ որ ինչ և յաջողեսցի"։ Այս
հրամանաւս վարին Փռանկք մինչև ցայսօր և մինչև
յաւիտեան. քանզի յամենայն կիւրակէ, նա և յա-
մենայն օր՝ յետ աւետարանին դառնայ քահանայն 'ի
ժողովուրդն, և սարկաւագն առընթեր նմին. իսկ նո-
քա յառաջ եկեալ՝ համբուրեն զաջ նորա, այնպէս
ջերմն հաւատով որպէս զԱստուծոյն. և տեսեալ էք ա-
մենեքեան. և զոր ինչ կամի և ունի ըստ կարի պտուղ
հաւատոց իւրեանց դնեն 'ի ձեռս նորա. այսպէս առ-
նեն յամենայն օր և 'ի կիւրակէ և 'ի տօն, ամենայն
ժողովուրդն արք և կանայք գանձեն 'ի ձեռսն նորա՝ որ-
պէս հրամայեաց Պօղոս, անձանց և ոչ քահանային.
քանզի տան զմամոնայն անիրաւ, և առնուն զերկնից
արքայութիւն. տան տուրս զուարթառատս, որպէս և
սիրէ Աստուած. տան իբրև զօրհնութիւն և ոչ որպէս
զագահութիւն. սերմանեն առատութեամբ, զի յա-

սան և առատութեամբ հնձել․ Քրիստոսի շնորհացն տան նուէր, ծանուցեալ զի վասն նոցա աղքատացաւ նա՝ որ մեծատունն էր․ հաւատան՝ զի և ինքեանք նորա աղքատութեամբն մեծացին։ Վասն այսորիկ ոչ գոյ 'ի մէջ նոցա տուրևառ, ոչ գին և ոչ վաճառ, ոչ թիւ աւուրց և ոչ վաճառաշահութիւն, ոչ փայտ ծակոտեալ և թուոց բաժնութիւն, ոչ մեռելոց միայն յոյս փրկութեան Քրիստոսիւ, ոչ 'ի մի հոգի հասարակաց փրկութեանն քանակութիւն, այլ գիտեն թէ մեզ ամենեցուն փրկութիւն պատարագի Քրիստոս․ վասն այսորիկ հասարակաց ամենեքեան տան նմա Քրիստոսի զնուէրսն պատարագին 'ի ձեռս քահանային համարձակ պանծանօք, և ոչ գաղտագողի և թագնաբար, որպէս և քոյդ սովորութիւն է հայաստան ազգ՝ յիմարեալ առ սէրն Աստուծոյ և թշուառական[1], որ 'ի տալն՝ զիս գող առնես, արծաթասէր և վաճառական, և զքեզ ցուցանես անհաւատ, մարդոյ տուող և ոչ Աստուծոյ՝ յորմէ և զսակ համարոյ հատուցմանն ճշգիւ պահանջես։ Այլ անհաւան, եկ թշուառական, եկ և նայեցեալ ընդ քրիստոսասէր ազգն, ուսիր զաստուածսիրութեան ճանապարհ, և նմանեալ նոցա՝ զԱստուած արա քեզ հաշուընկեր, և մի զմարդ․ Աստուծոյ տուր զպտուղ քո և մի մարդոյ, պարծանօք և մի 'ի ծածուկ․ նա կարէ թողուլ զմեղս 'ի ձեռն իմ, և ոչ ես։ Այլ նա ոչ կարօտանայ բազմաթիւ աւուրց և ժամանակաց 'ի ձեռս առեալ 'ի քէն զուղիղ հաւատս․ ծանիր 'ի բարեբարոյ ազգէն, զի բազմացդ, և ոչ թէ միոյ բաշխի շնորհս։ Է՞ր յամառիս, է՞ր սնոտիս, է՞ր խափանիս նուէր մատուցանել[2] Աստուծոյ, և զփոքրն որ տաս՝ էր տաս անհաւատութեամբ, ոչ 'ի քո պէտս, այլ միայն 'ի մեռելոց[3]։ Մինչև յե՞րբ սնոտեաց ծառայք, մինչև յե՞րբ յիմարութեան գինովն թմբրեալ, մինչև

1 Սաստկութիւն բանիցս կարգեալ է ընդդէմ անկարգութեան ոմանց 'ի ժամանակին, որ ոչն պակասեաց երբեմն և յայլ ազգս․ որպէս և ամենայն վարդապետք զառանձին անկարգութիւնս ազգի իւրեանց հայրաբար և սիրաբար կշտամբեն 'ի զգուշութիւն ընկե- ղածաց։

2 Մի օրէն․ Ընծայել։

3 Այսպէս վարին տխմարք յամենայն ազգս քրիստոնէից, որպէս թէ վասն ննջեցելոց միայն պէտ տալ զպատարագիս, 'ի մոռացումն արկեալ զկենդանիս կամ զանձինս։

յերբ կռոցն զարշութեան նմանիմք [1], աչս ունելով և ոչ տեսանել նովաւ, ականջս են և ոչ լսեմք, սիրտ և ոչ իմանամք. յայտնի ակներև տեսանեմք զքրիստո֊նէից բարեկարգութիւն և գովեմք, և մեք խորհեմք նմին հաղորդել և կամ նմանել. արդ եթէ էաք յայսմ մասին պարծանաց, բարիոք էր զմերն ամբողջ պա֊հել. իսկ եթէ նոքա ուղիղ և մեք թիւր, 'ի գրոց սրբոց և 'ի գիտակցութենէ մտաց յանդիմանեալ՝ է՞ր վասն հեղգամք դառնալ, և ընդ ուղիղն գնալ պողո֊տայ. ո՞չ տեսանեմք, ո՞չ գովեմք զնոցա սոսկալի դող֊մամբ գնալ յոփրանթն, և զքահանային աջն որպէս զԱստուած ողջունեն, իբր թէ ասելով, այս սուրբ ձեռնս է՝ որ վասն իմ հանդերձեալ է զՔրիստոս Աս֊տուծոյ որ պատարագ մատուցանել. այս աջ է՝ որ ընդ իմ հանդերձեալ է առաջի Աստուծոյ համարս տալ. այս բազուկ է՝ որ զբարկութիւնն Աստուծոյ ամբառ֊նալոյն իւրով արգելու լինէն. այս մատունք է՝ որ շօ֊շափէ զԱստուածն կենաց համարձակութեամբ: Զսա ող֊ջունեմ սիրով և համբուրեմ հաւատով, և տամ 'ի քեզ համբուրիւ շրթամբս զմեղս իմ, ո՛վ աստուածաբաշխ. բարձ զնա 'ի ձեռս քո, և քաւեա Քրիստոսիւ՝ որպէս հաւատամ. 'ի քո ձեռաց գանձեմ և 'ի գանձանակն Աստուծոյ զպտուղ հաւատոց իմոց զմարմնական նը֊ւէրսդ, քաւիչ իմ քահանայ և միջնորդ. տուր զփոքրդ լինէն Աստուծոյ, և առ 'ի նմանէ զմեծն իւր զողորմու֊թիւն: Սորին վասն ընդ երկար պիտոյ էր բան՝ մերս օտար և թիւր ճանապարհիս 'ի դարովանք, և նոցա ու֊ղիղ և ճշմարիտ հաւատոցն 'ի գովութիւն. սակայն ըզ֊փոքրս տուեալ պատճառ զարթուցաք զիմաստնոցն գի֊տակցութիւն մտաց՝ որք կարող են ընդ սակաւս և այլ բազում ինչ 'ի պէտս այսորիկ իմանալ, և գիտել թէ վասն այսր վտարեաց զմեզ Աստուած 'ի հայրենի աշ֊խարհէն, որպէս զի պանդխտելովս 'ի մէջ այլ ազգաց քրիստոնէից՝ ուսցուք 'ի նոցանէ զբարեպաշտութիւնս: Իսկ մեք ուսաք 'ի նոցանէ միայն զընդարձակ կեանս և զքաղաքավարութիւնս. և զհաւատս և զկրօնս զոր նոքա թերութեանն լրումն ունին՝ բնաւ ոչ կամեցաք

1 Երկու օրէն . նմանէաւ:

ողջունել. ոչ ժողովրդական ըստ իւրն ճանապարհի, և ոչ քահանայ ըստ իւրումն, այլ եղաք եպիսկոպոսքս փափուկք և պաճուճեալ զգեստուք, ձիովք և ջորովք յօրացեալք ¹ որպէս զՓռանգս, և զբարեպաշտութիւնն, զողորմածութիւնն, զեկեղեցւոյ օրինաց վրէժխնդրութիւնն, զպաշտամանն Աստուծոյ հպատակութիւնն, բնաւ և ոչ ուսաք 'ի նոցանէ. նա և ոչ ծանեաք թէ նոքա յաշխարհական քահանայից ձեռնադրին եպիսկոպոսք՝ որոց համարձակ է մետաքսէիւք պաճուճել, և ոչ 'ի կրօնաւորաց. զի թէ յաբեղայից լիցի առ նոսա եպիսկոպոս, որպէս և մերս է սովորութիւն, չունի իշխանութիւն արտաքոյ կրօնաւորական կերպին պերճանալ: Դարձեալ և աշխարհականք ուսան 'ի նոցանէ զանխտրութիւն կերակրոց և զպոռնկութեան անխտիր շաղախումն. և հաւատոյն և յուսոյն և հնազանդութեան առաջնորդի, և նուիրաց եկեղեցւոյ, հանդարտութեանն և պարկեշտախօսութեանն ², որովք նոքա զայն մեղմն քաւեն, բնաւ և ոչ եառուն տեղի յանձինս: Այլ սա Հայս՝ որ զգեստուքն Փռանգ է ձևացեալ, մտեալ ընդ Փռանգին յեկեղեցին, նա ջերմն արտասուօքն խօսի հանդարտ աղօթիւքն առ Աստուած, և սա որպէս զանբան անասուն կայ առընթեր նմին ³: Ո՛վ իմոյ թշուառութեանս և անմարդութեանս, որ հակառակ վարժեցի զանձն հրամանացն Պօղոսի. նա ասաց թէ "Զամենայն ինչ փորձեցէք և զբարին ընկալարուք". մեք փորձեցաք զանձինս, և 'ի չարն կրթեցաք, և 'ի բարեկարգութենէ քրիստոնէից ամենևին տեղի տուեալ խուսեցաք: Աստուծոյ միայն կարելի զմերս մահու չափ հիւանդութիւն առողջացուցանել՝ որ կենդանի առնէ զմեռեալս. նմա փառք յաւիտեանս, ամէն:

1 Մի օրին. Յափրացեալք: Այլ օրին. Յարացեալք:

2 Մի օրին. Պարկեշտութեանն:

3 Սովորաբար չկամի ցուցանել, թէ յայլ ազգս ևս չկայցեն վատթարք, այլ զլաւս 'ի նոցանէ նշանակէ, զի բարւոյն նմանողք լիցուք, և ոչ չարի:

## ԸՆԴԵՐ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՆ ՅԵՏ ԱՒԵՏԱՐԱՆԻՆ ՀԱՆԴԵՐՁԵԱԼ
## ԻՋԱՆԷ ՅԱԹՈՌՈՑՆ ԱՌԱՋԻ ՍՐԲՈՑ ՍԵՂԱՆՈՅՆ
## ՆԱԽ Ի ԲԱՑ ՀԱՆԷ ԶՊԱՏՈՒԱԿԱՆ ԵՄԻՓՈՐՈՆՆ
## ԵՒ ԱՊԱ ԵԿԵԱԼ ԱՂՕԹԷ ԶԽՈՐՀՈՒՐԴ ՊԱՏՄԱԳԻՆ

Օ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՆ *բազում անգամ էառ բանս պատկեր Քրիստոսի, բացափայլեալ ՚ի մէջ ժողովրդեանս, որ ունի ՚ի վերայ իւր զպատուական եմիփորոնն ՚ի փառս, որպէս և Քրիստոս զխաչն. քանզի զայս նմա աւետարանիչն անուանէ փառք, զխաչն, որով և սա է զարդարեալ խաչանկար եմիփորոնովս, զպատկեր Քրիստոսի յանձն ձևացուցեալ. վասն որոյ և ըստ նմանութեան նորա խոնարհեցաւ տնօրինապէս առ դղրունսն, և յետ այնր համբարձաւ հաւասար նմա, և յիշխանական աթոռն զետեղեցաւ: Արդ այսուհետև վախճան էառ լինել սորա ապացոյց Քրիստոսի. քանզի հանդերձեալ է իւրն ճշմարտութեան խորհուրդ երևել, այսինքն սուրբ և աստուածային մարմնոյ նորին և արեան յիշատակ, զի կատարեսցի: Վասն այսորիկ ՚ի բաց հանէ զեմիփորոնն՝ որով ինքն պատկեր Քրիստոսի ձևացաւ, և գայ առաջի սրբոյ սեղանոյս՝ ճշմարտութեան խորհրդոյ նորին լինել սպասաւոր, յայտ առնելով թէ իմն ձև պատկերի մինչև ցայժմ զօրացեալ առաջի ժողովրդեանդ մարմնական աչաց զտէրն ձեր կերպարանեալ. որ ըստ որում տեսէքդ զիս, խոնարհեցաւ յերկիր, և բարձրացաւ ՚ի յերկինս, և նստաւ ընդ աջմէ Աստուծոյ՝ վեհագոյն իշխանութեց և պետութեանց, որպէս և եւս վեհագոյն ամենայն եկեղեցականացս դասուց: Արդ այսուհետև պատրաստեցէք զիմանալի աչս ձեր ՚ի հայեցողութիւն՝ զնա ըղտէրն իմանալի հաւատովք տեսանել ՚ի մէջ մեր, որոյ առաջի ես իջեալ հպատակութեամբ պաշտեմ իբրև զծառայ և զսպասաւոր. վասն այսորիկ և ՚ի բաց հանեմ զարքունական նմանութիւն, զի ծառայիս տէրութիւնն այլ ոչ զօրէ ՚ի գալ տեառն, այլ որ նախ քան զնա տէր, այժմ յերևել տեառն՝ ծառայ: Օ այս նշանակելով ՚ի բաց հանէ զպատուական եմիփորոնն, որով ձևացաւ պատկեր Քրիստոսի, և գայ այնուհետև*

առաջի սրբոյ սեղանոյն սպասաւոր նմին՝ կատարել ըզմեծն խորհրդածութի։ Այս թէ կամիք և 'ի հնումն ուսանիմք նախագուշակեալ[1]․ քանզի հրամայեաց Աստուած Ահարոնի զպաշտօնեայ պատմուճանն 'ի պատիւ և 'ի փառս զգենուլ միայն 'ի սուրբ խորանն առաջի ժողովրդեանն․ իսկ յորժամ 'ի սուրբ սրբոցն մտանէր նա՝ քահանայապետն, զայն 'ի բաց հանէր, և միայն կտաւեայ պատմուճանաւն անզարդ մտեալ աղօթէր․ այն ստուերն, այս ճշմարտութեանս նախագաղափար յարացոյց ասացաւ 'ի Պօղոսէ։ Վասն այնորիկ որպէս նա զպաշտօնեայն ակամբք զարդարեալ զգենոյր առաջի ժողովրդեանն 'ի պատիւ և 'ի փառս և 'ի նմանութիւն Աստուծոյ, սա զեմիփորոնն ունի խաչիւք զարդարեալ, որով Քրիստոս փառաւորեցաւ, և զբնութիւնս մեր պատուեալ մեծարեաց․ և որպէս նա 'ի մտանելն 'ի սուրբ սրբոցն առաջի Աստուծոյ զնմանութիւնն Աստուծոյ հանէր, և սպասաւորի պատկերաւ կերպանայր, այսպէս և սա 'ի քահանայագործելն զՔրիստոս՝ ըզնմանութիւն նորին ստուերապէս պատկառէ առաջի ճշմարտութեանն բերել․ այլ սպասաւորի և պաշտօնէի կերպարանօք կացեալ առաջի նորա աղօթէ, և զճշմարիտն Աստուած փոխանակ մեր՝ Հօրն իւրում նուիրէ։

ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՂՕԹԻՑՆ
ԶՈՐ ԱՌԱՋԻ ՍՐԲՈՑ ՍԵՂԱՆՈՅՆ ԱՍԷ

ԸՍՏ իւրաքանչիւր աղօթից է և քարոզութիւն սարկաւագին, սակայն ամենեքեան զմի զօրութիւն ունին, որպէս և ցուցաք 'ի սկզբանն, և տաղտկութիւն է լսողաց կրկնաբանութիւնն․ այլ միայն գիտել է արժան՝ թէ որչափ քահանայս աղօթէ, նա քարոզութեամբն կցորդ կամի ունել զժողովուրդն կամաց սորա, որ վասն ինքեանց խնդրէ․ վասն այսորիկ և ստիպէ զտէր աղաչել։ Իսկ քահանայն կացեալ առաջի սեղանոյն՝ աղօթէ առ Քրիստոս․ քանզի ամենայն քահանայական աղօթք որ նախ քան զայս, և այս՝ առ Քրիստոս է և ոչ առ Հայր․ և ապա յորժամ զնո մար-

1 Այլ օրին․ նախագուշակել։

մնոյ և արեանն Նշանակքն[1] բերեալ ընէն առաջի, փոխարկէ զխոստակցութիւն աղօթիցն առ Հայր, և զնա փոխանակ մեր Նմին Նուիրէ: Արդ չև ևս բերեալ զնուէր պատարագին սարկաւագացն, և դեռ ևս առ Քրիստոս է աղօթիցս բան, որպէս և այլն ամենայն. "Տէր մեր և փրկիչ Յիսուս Քրիստոս, որ մեծդ ես ողորմութեամբ, և առատ պարգևօք բարերարութեան քո": Զմեծութիւն ողորմութեան Նորա առ մեզ 'ի պտղոյ սիրոյն կարող եմք ճանաչել, ըստ որում ասէրն. այսպիսի սէր ոչ ոք ունիցի, որպէս և ես ցուցանեմ, զի զանձն իմ դնեմ 'ի վերայ բարեկամաց իմոց. ուստի և զայնպիսի առատութիւն բարերարութեան Նմին յուշ ածէ ասելով.

"Որ դու քոյին կամաւ համբերեցեր 'ի ժամու յայսմիկ չարչարանաց խաչի և մահու յաղագս մեղաց մերոց": Զսէրդ այսու ծանեաք անչափ, և զողորմութիւնդ առատ, զի Նախ վկայեցեր՝ թէ մարմնոյ տկար է՝ հաւասար ամենայն մարմնոյ չարչարելի, և ապա զնոյնդ 'ի ցաւս չարչարանաց և 'ի մահ խաչի մատնեցեր փոխանակ մեր, և ընդ մեր մեղացն Նուէր հաշտութեան Հօր քում Աստուծոյ. ով առատ շնորհիդ անչափութեան, ուր և ոչ միտք զօրէ հասանել:

"Եւ պարգևեցեր առատապէս զպարգևս և զշնորհս Հոգւոյդ սրբոյ երանելի առաքելոցն": Քանզի յորժամ Քրիստոս զգրաւ մեղաց մեր պատառեաց, ապա զձիր Հոգւոյն առ 'ի Հօրէ յառաքեալսն արձակեաց, զորոյ զառատութեան բխումն ցանկայրն զանէ ընդ աղօտ տեսանել հրեշտակք, որպէս գրեաց Պետրոս:

"Հաղորդս արա զմեզ տէր, աղաչեմք զքեզ, աստուածային պարգևացս այսոցիկ, թողութեան մեղաց, ընդունելութեան Հոգւոյդ սրբոյ": Նոյն ես, տաւ[2] Յիսուս Քրիստոս երեկ և այսօր, և նոյնպէս անփոփոխ քո սէրդ՝ որպէս յառաջինսն և առ յետինս. վասն այսորիկ և մաղթանքս առ քեզ հաւատով մատչի. առ զմեզ կցորդ քո չարչարանացդ, և սրբեա 'ի մեղաց՝

1 Մի օրին. Ցիշտփակին: կու օրին. Նոյնպէս տօէ:
2 Մի օրին. Նոյնը է տօէ: Եր.

որպէս կամեցար, և տուր զՀոգիդ առաջիկայ գործոյս գործակից, որպէս և առաքելոցն սրբոց։ Յետ զամէնն ասելոյ՝ խաղաղութիւն տայ ժողովրդեանն, զորոյ զօրութիւնն նախ ազդեցաք. և սարկաւագն հրամայէ նոցին երկիրպագանել, «Աստուծոյ, ասէ, երկրպագեսցուք». իբր թէ ասելով, խաղաղութեան վասն աղաչեցաք զտէր, և նա ետ զայն ձեզ[1] 'ի ձեռն քահանայիս. արդ երկրպագութեամբ շնորհակալ լերուք տուողին պարգևացն։

Յետ որոյ դարձեալ յաւելու յաղօթս իւր քահանայն. «Խաղաղութեամբ քո Քրիստոս փրկիչ մեր, որ 'ի վեր է քան զմիտս և զբանս»։ Արդարև 'ի վեր և անհաս է նորա խաղաղութեանն նախախնամութի՝ որով կառավարէ աշխարհի, և զիւրաքանչիւր ոք յեկից ըստ իւրում ընթացիցն ուղղէ։ Թող զէքս ապա, և 'ի մարդիկ դարձիր. զոմն աստ պատժէ, և անդ պսակէ. այլումն զփոքր բարեացն հատուցումն աստէն շնորհէ, զզօրաւորն փորձութեամբքն երևելի առնէ, և զանզօրն խնամովքն պարսպէ, և ոչ ոք 'ի թևս թեթևս նորա իմաստիցն հասանէ։

«Ամրացո զմեզ, և աներկիւղ պահեա յամենայն չարէ»։ Զի նորա խնամոցն կարօտիմք յամենայն ժամ, ընթերակայ ունելով թշնամի, և պատրաստ է միշտ 'ի չարչարելն և 'ի վիրաւորել։

«Հաւասարեցո ընդ ճշմարիտ երկրպագուս քո, որք հոգւով և ճշմարտութբ քեզ երկիրպագանեն»։ Ասաց սարկաւագն ժողովրդեանն՝ Այ երկիրպագանել, և նոքա պագին. արդ զսոսա, ասէ քահանայն, որք երկրպագեցին՝ քո սիրելեացն և ճշմարիտ երկրպագուացն կցորդս արա. զի ոչ թէ մարմնովք միայն խոնարհեցաք, այլ զհոգի և զկամս ճշմարտութեան մտաց ընդ մարմնոյս պարանոցի առաջի քո կորացուցաք, ըստ որում և 'ի տեառնէդ մերմէ պատուէր ընկալաք, որ ասացեր. «Հոգի է Աստուած, և երկրպագուաց նորա հոգւով և ճշմարտութեամբ պարտ է երկիրպագանել». արդ մեք այսպիսի երկրպագութեամբ սուրբ զԵրրորդութիւնդ յաւիտեանս փառաւորեմք։ Զայս ասացեալ օրհնէ ըզ-

1 Մի օրին. Մեզ։

ժողովուրդն, որպէս զի արտաքս գնասցեն երախայքն։ Բայց պարտ է գիտել, զի սուրբն Յոհան յեկեղեցիս Հռոմոց և քարոզութիւն և աղօթս է սահմանեալ առնել այժմ 'ի վերայ երախայիցն, և ապա արտաքս զգնալն հրամայէ սարկաւագին. այլ իմ երկուցեալ 'ի տկարամիտ մարդկանէ՝ ոչ եդի զնոյն 'ի սահման օրինացս։ Յորժամ այս հաստատի, հաւատամ այլ ումեք գալ յետ մեր հզօրագունի, և զլրումն թերութեանս լնուլ։

## ԸՆԴԷՐ ԶՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՑ ԱՍՏ ՄԻԱՅՆ ԲԱՆԻ ՊԱՀԵՄՔ ԱՍԵԼՈՎ ՄԻ ՈՔ ՅԵՐԱԽԱՅՑ ԵՒ ՈՉ ԶՈՔ ԱՐՏԱՔՍ ԱՌԱՔԵՄՔ ՅԵՏ ԱՅՆՐ Ի ՏԱՃԱՐԷՍ ՍՐԲՈՑ ՅԱՆԱՐԺԱՆԻՑՆ

ՅԱՅՍՄ ժամանակի երախայ ոչ գոյ 'ի մէջ քրիստոնէից, որպէս և յառաջնումն՝ յորժամ աւանդութիւնս հաստատեցաւ յառաքելոցն. քանզի երանելիքն Բարսեղ և Գրիգոր Աստուածաբան լուծին զսովորութիւնս, տեսեալ զի այսու Ճանապարհաւ խոտորէին բազումք 'ի հեշտութիւնս մեղաց. այլ զի ապաշխարողացն և անմաքրիցն հրամայէ սուրբն Դիոնեսիոս ընդ երախայիցն արտաքս գնալ, մեք ոչ հանեմք. Է՞ր վասն. զի մի՛ զրկեսցուք 'ի սատանայէ։ Որպէս. քանզի նուաղեցաւ ջերմութիւն հաւատոյ քրիստոնէից, և սէրն որ առ Աստուած. և որք յայնժամ արտաքս գնալովն զամօթի հարկանէին, և վասն անարժանութեանն տրտմէին և սգային, այժմ սառնացեալ 'ի սիրոյն Աստուծոյ՝ չառնեն ինչ փոյթ զայսմանէ. այլ մեծաւ թախանձանօք թէ աստանօր կարեմք ածել զնոսա, որ ոչ ընդ մնալն ուրախանան, և ոչ ընդ ելանելն տրտմին, այլ մանաւանդ թեթևութիւն ինքեանց համարին զարտաքս գնալն յիւրաքանչիւր գործ և յաշխատութիւն։ Ո՜ այսպիսի տարտամութի՜ տեսեալ իմաստուն առաջնորդաց եկեղեցւոյ, եթէ 'ի բարւոք աւանդութիւնն չարն զմեքենայ իւր թագոյց, տեղի ետուն 'ի սմանէ, և զմիւսն ապաշխարողացն յեկեղեցիս հրամայեցին, զիջեալ ըստ մերում տկարութեանս, և զյուսահատութեանն կոթող ողորմած

կամօք տապալեալ, որպէս և նախ զերեմնամեայ մկըր-
տութիւնն 'ի բարւոք պէտս լուծին, այսպէս և զայս. քանզի զզէնն արդարութեան ունէին 'ի ձեռս յաջ և յահեակ ընդ հակառակամարտն մրցել: Օ ի թէ այս էր յայսմ ժամանակի, ապառումն մարդիկ զյանցա-ւորն բանի արտաքս մղել յեկեղեցւոյ, և ոչ բնաւ այլ յանձն առնոյր զմտանելն 'ի նոյն. այլ թեկեալ զսանձս հնազանդութեանն՝ որպէս զխստերախ ձի՝ արտաքոյ ասպարիզին ընթանայր. սակս որոյ բարւոք համարե-ցան մեղաւոր զայնպիսին յիւրեանց պահել գաւիթ, քան թէ յանհնազանդութեան խորխորատն ընկղմել և զրկել 'ի սատանայէ, զի տեղեակ էին և սոքա որ-պէս զնա չարին խորհրդոց:

## ԶԻՆՉ ՑՈՅՑ ԱՌՆԷ ԱՅԺՄ ՎԵՐԱԲԵՐԵԼ ՍԱՐԿԱՒԱԳԱՑՆ ՅԸՆԾԱՅԱՆՈՅ ՍԵՂԱՆՈՅՆ ԶՆՈՒԷՐՍ ՊԱՏԱՐԱԳԻՆ Ի ՍԵՂԱՆՆ ՍՈՒՐԲ

ԱՍՏՈՒԱԾԱՎԱՅԵԼՈՒՉ և ամենապայծառ տեսա-նեմք զայս խորհրդոյ յայտնութիւն, այսինքն սարկա-ւագացն վերաբերել զնուէր հացին և բաժակին, և դնել առաջի քահանային. զոր փոքր ինչ պարտ է՝ քննել ապաւինելով 'ի Հոգին Աստուծոյ: Արդ զինչ ուսաք զսարկաւագն մինչև ցայժմ, ասա ինձ. յայտ է թէ դայեակ, դաստիարակ, ուսուցիչ և վերա-կացու ժողովրդեանն. քանզի սա հայր նոցա և խրա-տիչ, որ միշտ զկամսն Աստուծոյ քարոզութեամբն վարդապետէ նոցա, և ինքն խորհրդազգած լինելով օրինացն Աստուծոյ՝ 'ի նոյն զարթուցանէ զընթերակայ մանկունսն: Արդ սա որչափ տեսանէր զքահանայա-պետն պատուական եմիփորոնիւն պատկեր Քրիստոսի 'ի մէջ ժողովրդեանն և 'ի քահանայապետականն ա-թոռ, յորդորէր զամենեսեան առ Քրիստոս աղօթել, և զնա վասն պէսպէս ողորմութեանն իշխել աղաչել տեղեակ և գիտուն ունելով՝, թէ և նա եպիսկոպոսն զնոյն թախանձէ, և զժողովուրդն նմա կցորդ և հա-

1 Մի օրին. Զոր ինչ խօսք 'ի շա-փէ պարտ է:

2 Մի օրին. Եղև: Նորկու օրին. Եւ գիր ունելով:

միաձայն ստիպէր լինել ։ Եւ յորժամ ետես, եթէ ե-
պիսկոպոսն զձև նմանութեանն Քրիստոսի 'ի բաց եդ,
և 'ի սպասաւորի և 'ի պաշտօնէի կերպարանս՝ եկն
եկաց առաջի սեղանոյն, նա և տիրապէս ասել՝ 'ի
հրեշտակի և պատգամաւորի. քանզի քահանայն հրեշ-
տակ է յԱստուծոյ առ ժողովուրդն՝ որում սա ձևով
զգեստուցն հաւասարեցաւ. ծանուցեալ զայս սարկա-
ւագն՝ գիտաց եթէ խորհրդոյ է այսուհետև ժամա-
նակ, զողջամիտ երեխայն զոր մնուցանէր՝ արտաքս
վարեաց 'ի խորհրդակցութենէն ։ Եւ ապա ինքն ա-
ռեալ զդասակից պաշտօնէայսն՝ զգուշական պատուով
երթեալ բերեն զընծայսն, և տան 'ի ձեռս քահա-
նայապետին 'ի դիմաց ժողովրդեանն, իբր թէ ասելով.
դու եկիր առաջի սրբոյ սեղանոյդ խօսել ընդ Աստու-
ծոյ, և խորհուրդ առնուլ ընդ նմա սակս փրկութեան
ժողովրդեանս, պարտ է զի նուէր ընծայից և պատա-
րագաց ունիցիս 'ի մէնջ դնել առաջի նորա, և մեք
չունիմք այլ ինչ նախապատիւ և պատուական քան ըզ-
նշանակս գլխոյն մերոյ Քրիստոսի և զյիշատակ նո-
րին ։ Զայս ածեալ տամք 'ի ձեռս քո՝ հրեշտակ և
պատգամաւորդ 'ի մէնջ, զի փրկանք փոխանակ ամե-
նայն ժողովրդեանս տայցես Աստուծոյ Հօր, և մեք ա-
մենեքեան մարմին սորա և ոսկերք՝ ընդ գլխոյդ եմք
նմին հնազանդ. զի որպէս զդա 'ի ձեռս քո դնեմք 'ի
սեղանդ առաջի Աստուծոյ, այսպէս զկամս և զխոստո-
վանութիւն ժողովրդեանս մեք վերակացուք նոցին
դնեմք առաջի Աստուծոյ ։

Նոյնքան և այսպիսի խորհրդով, որպէս 'ի ժողովը-
դենէն առնուն սարկաւագքն զնուէր պատարագին՝ որ
փոխանակ նոցին մատչի, և շքեղ հպատակութեամբ,
բուրմամբ խնկոց և օրհնութեամբ յարտաքին վայրէն՝
որպէս 'ի միջոյ նոցա ածեն 'ի ներքին վայր սրբոյ խո-
րանին, և տան 'ի ձեռս պատգամաւոր քահանային,
փոխանակ ամենեցուն նուիրել Աստուծոյ, այսպէս տե-
սանեմք զտնօրէնութիւնն Քրիստոսի ։ Քանզի 'ի մի-
ջոյ աշխարհի, և որպէս թէ 'ի մէնջ նուիրեցաւ 'ի
սպանդ խաչին փոխանակ ամենեցուն պատարագ հաշ-
տութեան Հօր, և սրբեաց զտիեզերս 'ի մեղաց, իբր
թէ ածեալ զնա յայն սեղան մարգարէիցն՝ որք նախա-

գուշակեցին զայս խորհուրդ․ այսպէս և ըստ այսմ խորհուրդ մարմնոյ և արեան նորա 'ի ժողովրդենէն և 'ի վերակացուաց նոցին նուէրք 'ի ձեռս քահանայապետին 'ի սպանդ սեղանոյն սրբոյ՝ պատարագ հաշտութեան Աստուծոյ Հօր։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑՆ ԶՈՐ ԴՊԻՐՔՆ ԱՅԺՄ ԵՂԱՆԱԿԵՆ

"Որք զքրովբէիցն խորհրդաբար կերպարանիմք"։ Տես, թէ որպէս նախապատմեալ խորհրդոյդ երգդպրացս համաձայնի․ քանզի ոչ ասէ թէ քահանայքն կամ սարկաւագունքն միայն, այլ և մեք ամենեքեան ժողովուրդքս ընդ սարկաւագացն քրովբէապէս ձևանամք, և զԱստուած թարձեալ բերեմք 'ի միջոյ մեր և տամք 'ի ձեռս նուիրակատար քահանային։ Բայց զի՞նչ էր քրովբէիցն կերպարան, որո՞յ պատկեր ձևանան․ այն, զի կառք չորեքդիմի երևեցան Աստուծոյ զոր քրովբէքն մարգարէին Եզեկիէլի, և թարձեալ բերէին զնա 'ի հիւսիսոյ 'ի հարաւ։ Արդ մեք, ասէ, զայն խորհուրդ այժմ կերպարանեցաք, և վերածեմք զխորհըրդածութիւնն Քրիստոսի 'ի մեղք սառնացեալ վայրէս 'ի միջոյ մեր 'ի լուսաստեսակ կողմն հարաւոյ աստուածային խորանին և սեղանոյն․ և որպէս անդ յայնժամ շուրջ զփառօքն Աստուծոյ ետես մարգարէն ծիածան լուսոյ և ամպ լուսաւոր, այսպէս և մեք խորհըրդապէս կերպարանիմք, զլուցեալ ջահս շուրջ զսովաւ որպէս զծիածանն և զփայլատակունսն, զլուրումն խնկոցս իբրև զամպն ածեալ ընդ նմին, և զպաշտօնեայսն թարձողս հաւասարեմք չորեքկերպեան կենդանեաց աթոռոյն Աստուծոյ, և ամենայնիւ զգալի իրօք իմանալի խորհրդոյն հաւասարեմք։

"Եւ կենդանարար Երրորդութեանն զերեքսըրբեան օրհնութիւնս մատուցանեմք"։ Զերեքսրբեան օրհնութիւնն ոչ եթէ Եզեկիէլ լուաւ՝ ոչ զքրովբէսն ետես, այլ Եսայի 'ի սրովբէիցն․ սակայն մեք հաւասարեալք հրեշտակաց՝ զտէր նոցին ունելով 'ի մէջ մեր, որպէս զքրովբէսն և որպէս զսրովբէսն սրբաբանեմք, ոչ թէ ձեռներէց համարձակութեամբ, այլ զի նա որ աննիւթաբար յաննիւթիցն պաշտեցաւ՝ նիւթակա-

նայս հաղորդեալ՝ զմեզ աննիւթիցն փառաւորութեան կցորդեաց. վասն որոյ և մեք 'ի ձեռն Քրիստոսի յԵր-րորդութիւնն հպեալ՝ սրբաբանեմք որպէս զսրովբէսն ։

"Զամենայն կենցաղականս 'ի բաց դնելով զգործ"։ Զգուշութիւն հպատակութեանն ցուցանէ՝ թէ ոչ վայրապար եկաք 'ի խորհուրդ կցորդութեան անմարմնին հրեշտակաց, այլ նախ զամենայն մարմնական գործ 'ի մէնջ 'ի բաց ձգեալ՝ մաքրեցաք զմիտս և զխորհուրդս, և եմք ըստ չափոյ մարմնաւորաց հոգեղէն 'ի հոգևորս գործառնութիւն ։ Ո՞յր վասն, յաջորդ բանս ցուցանէ ։

"Որպէս զի զԹագաւորն ամենեցուն ընդունիցիմք"։ Զի այսմ ամենայնի դիտաւորութիւն, քրովբէ կերպարանել և ընդ սրովբէսն երգել, և զմիտս մաքրել, ոչ է վայրապար. այլ զի ճշմարիտ յուսով հաւատամք զնա որ ամենեցուն Թագաւորէ, և զհրեշտակս իմացականապէս միջնորդութեամբ միմեանց մաքրէ և 'ի նոսին բնակէ, յանձինս մեր զգալի նշանակօքս ընդունել, և իմանալի և զգալի բնութեանս մեր 'ի ձեռն աստուածեղէն լուսափայլութեան սրբել ։

"Եւ զհրեշտակացն հանդիսապէս ընծայեալ բերեմք զկարգ"։ Այս է ասէ վայրապար դասակարգութիւն եկեղեցւոյս՝ որք բերանաբաց յուսով սպասեմք ընդունելութեան արքային մերոյ. այլ առակաւ և օրինակաւ երկնաւորացն պաշտեմք, և կարգեալ զետեղիմք հաւասար սերովբէիցն, և անընդմիջաբար հուպ գոլով առ Աստուած քահանայիցն, և 'ի նոցանէ իջանէ գիտութիւնն և լուսափայլութիւնն առ սարկաւագսն, և սարկաւագօքն յայլ պաշտօնեայս, և ապա նոքօք 'ի ժողովուրդն. այսպէս հանդէսս մեր երկնայնոցն դասուց համեմատի հրեշտակաց ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՂՕԹԻՑՆ ԶՈՐ ԱՑԺՄ ԽՈՆԱՐՀԵԱԼ ԱՍԷ ՔԱՀԱՆԱՅՆ

ԶԱՂՕԹՍ զայս ոչ եթէ 'ի պէտս ժողովրդեանն մատուցանէ, որպէս և զայլսն զամենեսեան, այլ միայն իւր վասն խօսի ընդ Քրիստոսի, առ որ մինչև ցայժմ աղօթէր, զի միջնորդ և բարեխօս լիցի և զօրացուսցէ զնա խօսել ընդ Հօրն իւրում զշնորհս տնօրէնութեան

իւրոյ , և նուիրել զինքն 'ի դիմաց մեր , որպէս և ըն֊կալաք հրաման . ուստի և զմտաւ ածեալ ինքն առ ին֊քեան զսոսկալի խորհրդոյս անհասութիւն՝ սարսափէ[1] ։ մանաւանդ և լուեալ զըղձալի եղանակ դպրացն , և տեսեալ զպարկեշտ հպատակութի՟ սարկաւագացն , և յայսմ ժամու զայլափոխել՟ամ ժողովրդեանն յերկիւղ և 'ի դողումն , սքանչացեալ ամփոփէ զմիտսն 'ի զգայա֊րանայն ցնդմանէ , և խոնարհեցուցեալ զպարանոցն՝ 'ի վեր ուղերձէ զաչս մտացն , առ այն քահանայապետն՝ որ միշտ կենդանի է ընդ աջմէ Աստուծոյ լինել բարեխօս վասն մեր ։ Խօսի ընդ նա համարձակութեամբ զանձին իւրոյ զտկարութի՟ , որպէս առ փորձ և չարչարակից բնու֊թեանս տկարութե՟ առանց մեղաց . առ որ և ասէ իսկ .

"Ոչ ոք արժանի է յըմբռնելոցս մարմնաւոր ախ֊տիւք կամ ցանկութեամբ մատչել 'ի սեղան քո , կամ սպասաւորել արքունական փառաց քոց . զի պաշտել զքեզ մեծ և ահաւոր երկնաւոր զօրութեանց իսկ է ,, ։ Արդարապէս խոստովանի զայս 'ի սկզբանս , որ֊պէս և Աբրահամն զի ասէր , "Սկիզըն կալայ խօ֊սել ընդ տեառն , այլ ես հող եմ և մոխիր ,, . և չիք ոք մաքուր 'ի յաղտոյ մարդ , թէ և միօրեայ իցէ կեանք նորա 'ի վերայ երկրի , և առաջի Աստուծոյ և ոչ հրեշտակք չարդարանան , որպէս և ասէ Յոբ , թող թէ մեղի ոք ։ Վասն այսորիկ ասէ սա . ես ոչ յանձին արժանաւորութի՟ն ապաստանեալ կամ առաջի Հօր քո՝ պատարագել զքեզ , որ անմաքուրս եմ և ըմբռ֊նեալ յախտից մեղաց մարմնոյս բնաւորականաց , և ծառայաբար հետևեալ մտացս չարաչար ցանկութե՟ց . քանզի մեզ որ այսօքիւք միշտ վարանիմք՝ անմարթ էր ընդ քեզ խօսել , կամ երկնաւորացդ պաշտաման խոր֊հրրդաբար՝ որպէս և երգեն դպիրքն հաւասարել . ապա թէ անմարթ էր , և անարժան եմք ըմբռնեալք մեղօք և անհամարձակելի , էր վասն ժպրհեցաք յայս գործ . դու համարձակեցուցեր տէր . որպէս ։

"Սակայն վասն անչափ բարերարութեանդ քո ան֊պարագրելի բանդ Հօր եղեր մարդ , և քահանայապետ մեր երևեցար , և իբր տէր ամենեցուն այսմ սպասաւո֊

1 Մի օրին . Սոսկացեալ սարսափէ ։

րութեան և անարիւն զենման զքահանայութիւն աւանդեցեր մեզ »: Որչափ շնորհօք ասէ առատացար առ մարդիկ. ոչ զհրեշտակաց որք սրբապէս զքեզ պաշտեն` հարեր բուռն, այլ զմերմէ բնութենէս ամենայն կրիւք եղբարցս նմանեցեր բարերար. վասն ուսուցանելոյ զմեզ` թէ ողորմած ես և հաւատարիմ, սրբիչ և մաքրիչ` մարդկան, որք ՚ի քեզ յուսան յաստուածակոյս կողմ այդր: Ո՜վ առատ շնորհիդ և զեղուն սիրոյդ. վասն որոյ ոչ դու միայն զքեզ հաշտութեան մեր նուէր մատուցեր, այլ որպէս մարդասէր տէր` և մեզ զքո սպասաւորութիւնդ ուսուցեր, և ընդ Հայր քո ՚ի ձեռն փրկչիդ մերոյ համարձակութեամբ խօսել. քանզի և մեր տէր ես, որպէս և հրեշտակաց. զի թէ օտար էաք ՚ի քէն, անհաւատալի էր մարդկան յայս պատիւ վերանալ. ապա թէ ամենեցուն տիրես, ոչ է զարմանալի` որպէս զնոսա հրեղէնս և զմեզ նիւթեղէնս քեզ սպասաւոր կարգել, զի ՚ի հոգեղինաց և ՚ի նիւթեղինաց փառաւորեսցիս[2] Աստուածդ երկնի և երկրի:

« Վասն զի դու ես տէր Աստուած մեր, որ տիրես երկնաւորաց և երկրաւորաց, որ ՚ի վերայ քերովբէական աթոռոյ բազմիս` սերովբէից տէր և թագաւոր Իսրայելի, որ միայն սուրբ ես, և ՚ի սուրբս հանգուցեալ »: Յաղագս այնր կամք ՚ի պաշտօն առաջի քո տէր, զի ոչ միայն երկնաւորացդ տիրես, այլ և երկրաւորաց. ոչ միայն ՚ի քերովբէս նստիս, այլ և ՚ի մարդկանէ ժողովրդեան քում թագաւորես. ոչ միայն սերովբէից սուրբդ տիրես, այլ և ՚ի սուրբս և ՚ի հեզս և ՚ի խոնարհս ուսաք զքեզ զի հանգչիս: Եւ յոյս համարձակեցոյց զմեզ ըմբռնեալքս յախտից` կալ առաջի քո, և ոչ թէ մեր ինչ սրբութիւն սրտի, որք ընաւ և ոչ պարծիմք զայս ունել:

« Աղաչեմք զքեզ այժմ միայն բարերար և հեշտալուր, նայեա յիս ՚ի մեղուցեալ և յանպիտան ծառայս քո »: Ոչ թէ վայրապար խնդրէ. զհայեցն Քրիստոսի, առ որ այսքան գոհաբանեաց, այլ գիտէ զի յունենն զհայեցուածս նորա ուղիղ առ մեզ` ամենակատար սրբութեամբ սրբիմք. և ո՞ է որ ուսուցանէ զիս` թէ ոչ

1 Մի օրին. Քաւել:

2 Մի օրին. Փառաւորեսցի:

հայր յիս Քրիստոս․ ներքին խիղճ մտացս այս՝ որ անամօթ սոսկանէ, սա և ճանաչէ միշտ աղօթիւքն ըզներողութիւնն Քրիստոսի, զզգաստանալն 'ի խռովութէն և զհայեն։ Այլ մինչև սա ոչ վկայէ՝ թէ հայր նա, և այլ իմն տեսութիւն տեսանէ քաղցրութեան տեսիլ և զուարճութեան, մի՛ հաւատասցուք թէ հայր․ անօսր է խորհուրդս և անմարմին, մարմնաւոր բանիւ ոչ յայտնի․ փորձով և առաջնորդութեամբ գրոց՝ որ աշխատի ուսանի։ Այսինքն, զի այժմ յորժամ հայիմ 'ի խիղճ մտացս իմոց, և 'ի գիտակցութիւն սրտին, և տեսանեմ զսա ցնծեալ ընդ աշխարհ, հարցեալ թէ հայրիս դու 'ի Քրիստոս, կամ նա 'ի քեզ․ և յիմարեալ՝ ոչ վկայէ զհայեն․ վասն այսր պարտական եմ դառնալ 'ի ցնդմանէն, և հանդարտել 'ի խռովութենէն, և ամփոփել զիս յամենայնէ, և յետ այնորիկ այնչափ հայել աղօթիւք, և մտացս աչօք 'ի Քրիստոս, մինչև սա ինձ վկայէ՝ թէ այսուհետև յիս հայր․ և երբ զիս տեսանեմ և զնա սակաւ մի, կամ բնաւ իսկ ոչ, ապա ճանաչեմ զմեղսն յորոց սրբել կարօտիմ․ իսկ մինչ դեռ չև յայս որոշումն ընտրողութեան եկեալ, այլ յաշխարհական ցնորս ամբոխեալ, ոչ զնայեն կարող եմ ճանաչել և ոչ զսրբելն։

«Այլ սրբեա զհոգի և զմիտս իմ յամենայն պղծութենէ չարին»։ Տես զի ոչ մարմնոյ որ նախ սուրբ, այլ դիւրագթելեացն խնդրէ զսրբութիւն՝ հոգւոյ և մտաց և խորհրդոց․ քանզի ծանրացեալն մարմնոյ պղծութեամբ՝ ոչ կարէ յայս թեթևութիւն խորհրդոյ համբառնալ։

«Այլ բաւականացո զիս զօրութեամբ սուրբ Հոգւոյդ, որ զգեցեալս եմ զքահանայական շնորհ, կալ առաջի սրբոյ սեղանոյս, և քահանայագործել զքո անարատ մարմինդ և զպատուական արիւնդ»։ Ներևս ասիցես զայս լուեալ․ և ո՞չ նախ էառ զհոգին յառ նա աղօթելն․ այո, առ ճշմարտապէս․ ապա ընդէ՞ր վերստին խնդրէ․ քանզի զայն՝ այնմ խորհրդոյ առ օժանդակ, և զայս այսմ․ քանզի զՀոգին ոչ չափով Աստուած Քրիստոսի ետ․ իսկ մեք ընդունիմք զնա 'ի ձեռն նորա չափով ըստ խնդրոյն և կարողութեան։ Այլ զայս օրինակաւ պարտ է ուսանել․ զոր օրի-

նակ աշակերտ ընթերակայ վարդապետին գործ կա-
տարէ, կարօտի նախ ուսանիլ 'ի նմանէ, թէ որպէս
արկից զհիմունս. յետ զայն խրատտուութեամբ վար-
դապետին առնլոյ, ապա և զտեսակ որմոցն խնդրէ ու-
սանել և զձեղունս յարկայն. այսպէս առաք զՀոգին
վարդապետ և ուսուցիչ. կարօտիմք յիշեցուցանելոյ
նորա մեզ հանապազ զզօրութիւն խորհրդոցն Քրիս-
տոսի: Ուստի և միշտ հարցեալ խնդրեմք աշակեր-
տեալքս 'ի նմանէ, զի մի իւիք սխալեսցուք. և նա տայ
մեզ չափով զգիտութիւն իւրաքանչիւրոյն յիւրում
ժամանակի, որպէս և տէրն ասէր առաքելոցն. "Հո-
գին սուրբ 'ի նմին ժամու տացէ ձեզ և ուսուսցէ զինչ
պարտ իցէ խօսել": Սակայն տանել ոչ կարեմք զնա
աղտեղեալ մտօք. ուստի նախ զսրբութիւն սրտին խն-
դրեաց, և ապա զՀոգւոյն զօրութիւն. և այս մր ա-
ղագաւ:

"Քահանայագործել, ասէ, զքո անարատ մարմինդ
և զպատուական արիւնդ": Արդարև կարօտիմք զայս
խորհրդոց զօրութիւն ուսանել 'ի Հոգւոյն, թէ մար-
մին և արիւնն Քրիստոսի՝ զոր նախ նուիրեմք Հօր,
այս է յիշատակ նորա մարմին լինելոյն և մարմնաւո-
րացս կրից հաղորդ, և այս է որ զմիտս մեր 'ի պատ-
մելն կերակրէ, և զԱստուծոյ Հօր կամն քաղցրա-
ցուցանէ, յորժամ պատմեմք նմա, թէ Թագաւորդ
վասն աղքատացս աղքատ, անմահդ վասն մեղաւորացս
մեռեալ, անմեղդ վասն անիծելոցս՝ անէծք. անկարօտդ
վասն սխալանացս միշտ առաջի քո բարեխօս. և զի
այս այսպէս է շնորհօք դորա, սուրբ մեք լիցուք 'ի ձեռն
դորին, այս է մարմնոյն Քրիստոսի՝ նախաճաշակ մա-
տուցողին և քաղցրութիւն, և Հօր Աստուծոյ նուէր
և հաշտութիւն: Նա ապա յետ այսորիկ և վասն այս-
պիսի պատմութեանս զկամս իւր խանդաղատելոյ 'ի
քաղցրութիւն՝ առաքէ զՀոգին յառաջադրեալ նշա-
նակս, և տայ զսա մեզ 'ի սրբութիւն. յաղագս որոյ
այնքան թախանձանօք խնդրէ 'ի սոյն գործ իւր քահա-
նայն 'ի քահանայապետէն Քրիստոսէ զօրութիւն:

"Քեզ խոնարհեցուցեալ զպարանոցս իմ, և մաղ-

1 Մի օրին. Մեղուշեղոյս:

թեմ, մի՛ մերժեր զիս և մի՛ դարձուցաներ զերեսս քո յինէն ,, ։ Դարձեալ թախանձանք առ ինքն ունի ըզհայեցուածս աչաց ամենատեսին. զայս և մարգարէն Դաւիթ համարձակ յաղօթեւն իւրում խնդրէր. «Մինչև յե՞րբ, ասէ, դարձուցանես զերեսս քո յինէն, նայեա՛ց և լո՛ւր ինձ տէր Աստուած իմ ,, ։ Ա՛յ ինձ, մեք և ոչ զորպիսութիւն հայելոյն՝ բազում անգամ զհայելն խնդրելոյն՝ գիտեմք, թո՛ղ թէ զհայեցուածսն ճանաչել. բայց մի՛ դանդաղեսցուք. ունիմք 'ի բնութիւնս զօրութիւն գիտելոյ զասին, միայն թէ զջան տասցուք՝ կցորդ զօրութեանն, և հաւանեսցուք մտացս խղճի դատապարտութեանն ։

«Ո՞չ արժանի արա մատուցանել քեզ զընծայս զայս յինէն 'ի մեղուցեալ և յանարժան ծառայէս քումմէ ,, ։ Որպէս մատուցանէ Քրիստոսի զինքն. այժ, նախ մատուցանէ, և նուէր և 'ի ձեռն նորա Հօր. Թերևս դու ո՞չ մատուցեր սիրելոյ քո բազում անգամ զսէր իւր, և այնու 'ի հաշտութիւն նուաճեցեր 'ի խռովութենէն. քանզի յորժամ կարօտիմք խնդրել պարգև 'ի թագաւորէ, նախածանօթ և բարեկամ համարեաց թէ ունիցիս զորդի նորա. նախ առ որդին մատուցեալ ասես, յիշեա՛ զքո առաջին սէրն առ իս և զիմ վերայ աշխատելն, և ընդ իմ վասն իմ մինչև ծառայէի՝ ըզտառապելն. և այն սիրոյն յիշատակաւ մեա բարեխօս սակս խնդրոյ առ հայրն քո արքայն ։ Եհա որ այսպիսի օրինակաւ մատուցանեմք զՔրիստոս իւր հաշտութեան մեզ նուէր, այսինքն զնախ սէրն իւր յիշատակել, և 'ի պէտս փրկութեան մեր վերստին ընծայել ։

«Վասն զի դու ես, որ մատուցանես և մատչիս, և ընդունիս և տաս Քրիստոս Աստուած մեր ,, ։ Նախ իւր ընդունի, և ապա Հօր մատուցանէ. որպէս և որդի թագաւորին զյիշատակ սիրոյն իւրոյ նախ ինքն ընկալաւ, և ապա առ հայր իւր 'ի պէտս օգնութեան մերոյ զնոյն մատեալ պատմէ, թէ զորս ես այնքան սիրեցի և այնչափ 'ի վերայ նոցին աշխատեցայ, մի՛ յորժամ զանս առաջի քո՝ անտես առնես ։ Եհաւատիկ յետ ընդ-

1 Մի օրին . Զանազանք ։

ունելոյ յինքն զընծայեալն 'ի մէնջ յիշատակ սիրոյ իւրոյ՝ ինքն զինքն մատոյց Հօր, ինքն հանդերձեալ յետ այսորիկ զՀոգին սուրբ ընդունել և տպաւորել յառաջիկայ նշանակս մարմնոյ և արեան իւրոյ, և ինքն զնոյն սովաւ տայ մեզ. վասն այսորիկ ասէ. յետ մատուցանելոյն զքեզ Հօր՝ մեր աղօթիւք և քո կամօք ընդունիս և տաս. ընդունիս, այսինքն է զՀոգին 'ի նշանակս մարմնոյ և արեան քո, և տաս զնոյն մեզ 'ի թողութիւն և 'ի սրբութիւն 'ի ձեռն քո Քրիստոս Ա՟ծ մեր, և քեզ փառք: Որպէս զխորհրդոյն զօրութիւն աղօթիւք զմտաւ ածէ քահանայն՝ մինչ դեռ պաշտօնեայքն զնուէրսն վերաբերեն, և այսպիսի թախանձանօք խօսի նախ ընդ միջնորդն իւր ընդ Քրիստոս, մատուցեալ առաջի աթոռոյ շնորհաց իւրոց, որպէս զի ըստ որում էն մարդասէր՝ նախ ինքն մտցէ առաջի Հօր, և գալըստեամբն մերոյ առ նա և խօսակցութեան անմիջապէս. և միջնորդ լիցի, զի մի ձեռներէց համարձակութեամբ իբրև զանծանօթ արտաքս ելցուք յերեսաց նորա. այլ զի Քրիստոս՝ որ որդիածին է և հաւատարիմ յաստուածակայս կողմանէն Աստուած և 'ի մարմնաւորացն եղև մարդ, մտցէ նախ 'ի մէնջ առ Աստուած և յուսոյ մեր, և աղօթից ճանապարհ հորդեսցէ կարապետն Յիսուս 'ի ներքին կողմն վարագուրին նախ, և ապա զմեզ խօսակցութ՟բ աղօթիցն մատուցանէ առաջի նորա:

## ԶԻՆՉ ՅԵՏ ԱՅՍՈՐԻԿ ԼՈՒԱՆԱԼ ԶՁԵՌՆ ԱՌԱՋԻ ՍՐԲՈՑ ՍԵՂԱՆՈՅՆ ԱԶԴԷ ԽՈՐՀՈՒՐԴՆ. Ի ԴԻՈՆԵՍԻՈՍԷ

Յետ կատարման աղօթիցն, և վերաբերելոյ սարկաւագացն զնուէրսն 'ի սեղանն սուրբ, ապա առաջի սրբոյ սեղանոյն զձեռն իւր լուանայ քահանայապետն հանդերձ պարկեշտ կարգօքն քահանայիցն: Բայց առ ինչ հայի այժմ սոցա մաքրութիւն ձեռացն՝ եթէ ոչ ըստ տեառն առ Պետրոս ասելոյն. Լուացելոյն չէ ինչ պիտոյ, բայց միայն ծայրիցն, զի դուք սուրբ էք: Ծայրն նշանակէ զչնչին իրս բնութեան և խորհրդոյ՝

զոր մաքրեաց տէրն յաշակերտացն ընդ լուանալոյ ոտիցն, և ապա ամենասրբապէս զնոսա 'ի հաղորդութիւն մարմնոյ և արեանն իւր կոչեաց. քանզի լուաց զոտս նոցա, և ապա զխորհուրդ պատարագին բաշխեաց 'ի նոսա. և լուաց ոչ միայն զաներևոյթ միտսն, այլ և զմարմինսն, և ընդ մարմնոյն և զմիտսն. ըստ այսմ ապացուցի և սոքա թէպէտ և ունէին սրբութի՟ քահանայապետ ելով և քահանայք, սակայն աղօթիւքն զոր մատուցին առ Քրիստոս հաւատով, և խորհրդովք և մտօք սրբեցան. ընդ որս և զմարմնոյ ծայրսն նշանակ հաւատարիմ սրբութեան մտացն մաքրեն: Իսկ զի առաջի սրբոյ սեղանոյն և տէրունի նշանակացն լուանան զձեռս, զայն յայտ առնեն այսու՝ թէ ոչ կերպարանօք միայն որպէս զսուրբս ձևացեալք յաչս ժողովրդեանն, այլ առաջի Քրիստոսի տեսողին զգաղտնիս սրտից՝ մերոց ցուցանեմք և զծայրագոյն սրբութիւն հոգւոց, որպէս և ձեռան ակներև զծայր մատանց մարմնոց: Եւ ընկալեալք զայս նախ աղօթական աղերսիւն 'ի շնորհաց Հոգւոյն, որպէս և մարմինս յառոգմանէ ջրոյս. այսպէս մտօք և մարմնով միաւորի քահանայապետն յաստուածայինսն, և յետ այնորիկ սուրբ և անախտ հայեցուածովք իմանալի մտացն վերանայ առ Աստուած Հայր, և սկսանի զգոհաբանութիւն աղօթիցս ակներև տեսութեամբ մտաց ընդ նմա բարբառել. յետ որոյ և այլոց հաւատացելոց յաստուածակոյս կողմն միջնորդէ որք ոչ կարացին ժամանել 'ի տիրապէս նորա սրբութիւնն, որպէս զի 'ի ձեռն նոցա բոլոր լրութիւն եկեղեցւոյն յաստուածատեսակութիւն մերձակեսցի: Յաղագս որոյ ապա պարտ է սոցա՝ որք 'ի տեառնն մարմնոյ և արեան սրբազնագործութիւն գան, հանել յանձանց և զսուտ երևոյթս մեղաց, և Յիսուսի նմանութեամբ ըստ կարողութե՟ մարդկան սպասաւորել նմա, զի կարող լինիցին տանել յանձինս զնորա աստուածային գիտութեանն ճառագայթս. և ոչ միայն առ ինքեանս ամփոփել, այլ 'ի բոլոր լրումն եկեղեցւոյն թափանցիկ փայլեցուցանել: Սմին էր նախագուշակութիւն և լուացարանն՝ որ ըստ

1 Մի օրին. Մ[illegible]:

քահանայապետուցն, ուր նախ սրբեալք՝ ապա մտանէին 'ի սրբութիւնն. բայց նոքա մարմնաւորք՝ զբովանդակ մարմինսն վասն այնորիկ և մաքրէին. մեք հոգևորք՝ զծայրս մարմնոցն, և զապառուած նորին զհոգիս և զմիտս մաքրեմք, նախ մեռեալ ունելով զմարմինս վասն մեղաց, որպէս և առաք հրամանն 'ի Պօղոսէ:

## ԸՆԴԷՐ ԱՅՍՈՒՀԵՏԵՒ ԱՌ ՀԱՅՐ ՄԱՏՉԻ ԱՂՕԹՈՒՔՆ ԵՋԱԿԱՆԱՊԷՍ ԵՒ ՈՉ ԱՌ ՈՐԴԻ ԿԱՄ ԱՌ ՀՈԳԻ

ԵՐՐՈՐԴՈՒԹԻՒՆՆ սուրբ համաբուն է[1] և հաւասար, պարզ և անձառ, անհաս յեղելոցս և անքննակ, անտես ըստ որքանութեն և անմերձ՝ ոչ միայն 'ի մեզ, այլ և 'ի վերհագունիցն քան զմեզ հրեշտակաց. ապա թէ առ մարդիկ իջանես, տեսանես բազում անգամ զտեսողան նորին՝ կարօտ առաւելապէս նորին գթութեանն. ըստ այնմ զոր՝ ասէրն Մովսէս յետ խօսակցութեանն ընդ Աստուծոյ, "Եթէ գտի շնորհս առաջի քո, ցոյց ինձ զդէմս քո": Նաև երևմունք զի առ Աստուծոյ 'ի դրոց բազում անգամ, ոչ ըստ բնութեանն չափոյ, այլ 'ի զօրութենէն և 'ի գիտութենէ կամացն 'ի ձեռն սպասաւորի հոգւոցն[2] հաստատեալ, որպէս ունի խորհրդական աւանդութիւնս մեր, ըստ այնմ. "Մեք առէք զօրէնս 'ի հրամանս հրեշտակաց, և ոչ պահեցէք". և Պօղոս գրէ, եթէ "Որ 'ի ձեռն հրեշտակաց խօսեցաւ բանն հաստատուն եղև, և ամ յանցաւորութիւն և անհնազանդութի ընկալաւ զպատիժ պատուհասի". ապա պարտ է գիտել թէ յորժամ լըսեմք յԱստուծոյ, "Աստուած մերձաւոր եմ ես". և "Մերձեցարուք առ իս, և ես մերձեցայց առ ձեզ", ոչ ըստ բնութեան է ասացեալ մերձաւորութիւնն, այլ ըստ քաղցրութեան կամացն: Դարձեալ և յորժամ ասէ մարգարէն առ նա. "Թէ ելանեմ յերկինս, դու անդ ես. եթէ իջանեմ 'ի դժոխս, և անդ 'ի մօտ ես. և եթէ թռչիմ յեզերս ծովու, և անդ ձեռն քո սիրէ

1 Մի օրին. Համաբնան բան է: 2 Մի օրին. Սպասաւոր հոգւոյն:

ինձ ,, . ոչ ըստ բնութեանն , այլ ըստ զօրութեանն և ամենահայեաց գիտութեանն . զոր և մարմնական օրինակաւ ուսանիմք փոքր ինչ , թէպէտ և ոչ տիրապէս ։ Թագաւորն յիւր գահոյս է յարքունական քաղաքն՝ բնութեամբ անատես և 'ի քաղաքականացն 'ի բազմաց , բայց զօրութիւնն տեսանի և յես հեռաւորացն , և 'ի մէջ նոցա ներգործէ զոր ինչ կամի , և ինքն տեսանէ զհեռաւորսն , և խօսի ընդ նոսա 'ի ձեռն միջնորդ սպասաւորացն ։ Այսքան է օրինակիս զօրութիւն , զոր ժպրհեցայ ածել 'ի մէջ . սակայն ճշմարտութիւնն ան՝ բաւութ̃բ գերադասի . զի Ած՝ ընդ որ միջնորդօքն խօսի , և ինքն ամենահայեաց գիտութեամբն առ նա մերձ է , ըստ յարացուցի արեգականդ ճառագայթից . զի որպէս սա զարտաքին էքս լուսափայլութեամբն պարփակէ , նա զորոշումն ընչից և ոգւոյ քննութեամբն որոնէ , որպէս գրէ առաքեալ ։ Արդ այսքան իմանամք փանաքապէս յաղագս Աստուծոյ նախ քան զմարմնանալն Որդւոյ . իսկ յորժամ զխորհուրդն որ ծածկեալ էր յաւիտեանց և յազգաց՝ կամեցաւ երկրաւորացս և երկնաւորացն յայտնել , ոչ զօրութիւն , այլ իսկութիւնն Որդւոյ զզաւակէն Աբրահամու բուռն եհար , զի լցցի սըրբողն յայնցանէ որ սրբքն , և անամօթ կոչեսցէ զնոսա եղբարս իւր՝ ըստ առաքելոյ . զի ըստ արեան մարդկան և մարմնոյ ճշմարտապէս կցորդեցաւ սոցա՝ իսկութ̃ն իւրով Բանն Աստուած , անճառ և անհաս խառնմամբ ։ Եւ այս ո՞ր աղագաւ . ինքն առաքեալ յայտնէ մեզ զխորհրդոյս զօրութիւն . զի ողորմած լիցի և հաւատարիմ քահանայապետ յաստուածակոյս կողմ անդր՝ առ 'ի քաւելոյ զմեղս ժողովրդեանն , և քահանայագործիցէ . զո՞ր ասիցես արդեօք . զչարչարանսն՝ որ մերով բնութեամբս ընկալաւ . քանզի զայն մատուցանէ Աստուծոյ Հօր բարեխօս , և այն փրկիւն միշտ 'ի փորձանս մատնելոցս օգնական լինի ։ Վասն այսորիկ մեք մարդիկ եղբայր ունելով զՔրիստոս , բնութենակից և չարչարակից , ոչ անձամբ յանձին , այլ նովաւ համդերձ մատչիմք առաջի Հօր . ուստի և ոչ ընդ նմա , այլ ընդ Հօրն իւրում խօսիմք՝ զնա վշտակից ունելով 'ի մերս կողմանէ և քահանայապետ մեզ յաստուածակոյս կողմն և բարեխօս , իսկ զՀոգին մատուցող աղօ-

թեցս մեր առ Քրիստոս, ըստ այնմ. «Ինքն Հոգին բարեխօսէ 'ի հեծութիւնս անմռունչս»[1]: Այս ասելով ոչ եթէ համարուն Երրորդութեանն կամաց տամք ինչ զանազանութիւն, զոր մի լիցի ածել զմտաւ, այլ այսպէս իմանամք զնա 'ի պէտս մերոյ փրկութեան տնօրինեալ՝ զներգործութիւն խորհրդոյս:

Յաղագս որոյ յետ ըստ Քրիստոսի կերպարանելոյ քահանայապետին, ապա առաջի եդեալ զնշանակս մարմնոյ նորին և արեան՝ սկսանի պատարագաւն Որդւոյ և բարեխօսութեամբ Հոգւոյն զՀայրն 'ի հաշտութիւն թախանձել, և առաջի նորա զանօրէնութիւն սիրելի Որդւոյն հաշտութեան պատարագ և նուէր ընծայել, և այնպէս 'ի գթութիւն ստիպել. զոր ոչ[2] դանդաղելի է մարմնական յարացուցիւ երևելի առնել: Արդ դիցի առաջի մտաց մեր այր թագաւոր հզօր և աշխարհակալ, յորոյ բազմութենէ մասանց աշխարհին դաւաճանեցաւ կողմն մի 'ի թշնամեաց, և պատրանօք նոցին և խաբէութեամբ բանից՝ իջեալ յամուր աշտարակէ բնակութեանն անձնամատն եղեն 'ի ձեռս նոցա, զոր առեալ թշնամեացն մախանօքն որ ընդ թագաւորն՝ չարաչար ծառայեցուցանեն. իսկ որդի թագաւորին տեսեալ զնոցա տարադէպ փորձանսն 'ի թըշնամեացն, և զհօրն անտես առնելն զգաւառն յաղագս անձնամատն լինելոյ յանցանացն, փրկիչ նոցա կարողապէս լինի, զհօրն կամաց լրումն այսու տիրապէս աւարտեալ՝ զհետ ընթանայ, զթշնամիսն խորտակէ, և զգերելոյն տառապանս՝ ականատես լինելովն ճանաչէ, և զնոսա 'ի ձեռաց նեղչացն զերծուցեալ՝ զառաջին աշխարհն նոցա 'ի հօրէն առնուլ ուխտ դնէ, և նոցա մինչև 'ի կրկին իւր դարձն զգուշանալն 'ի գերիչ և 'ի նախանձաբեկ թշնամեացն ուսուցանէ: Իսկ եթէ իւրք դրժեն ձեզ, ասէ, զիս որ փորձեցի զթոյնս նոցա դառնութեանն, 'ի խօսելն ընդ հօր իմում զնեղութիւնն՝ միջնորդ 'ի ձերդ կողմանէ առաքէ[3], և ես 'ի ճշմարիտ տեղեկութենէ ծանուցանեմ նմա զողքանութիւն չարեաց թշնամւոյն, և զձերդ պարզմտութեամբ խարդա-

1 Մի օրին. Ցնօրինէ:
2 Մի օրին. Զօր ըմբռ:
3 Մի օրին. Ընդ հօր իմ:

ւանութեն 'ի նմանէ ։ Նաև նոցա զայս յոյս առեալ՝ յորժամ տագնապէին 'ի նեղչացն, որդւոյն յանդիման ըզհայրն թախանձէին, 'ի դմանէ առելով լուր զմերս նեղութիւն՝ որ ետես զայնպիսի դառն թշնամիսն ։ Պարձեալ և զնա առաջի հօրն արկանելով՝ ասեն ․ մի անտես առներ զայդքան սիրեցեալդ որդւոյդ քո զդառնապատիկ աշխատանքն 'ի վերայ ծառայիցս ․ վասն մեր եկն անմեղդ և մեռաւ, աննիւթդ մարդացաւ, մեծդ աղքատացաւ ․ և մինչ նոքա զայս ասեն, որդին վշտակցի սոցա կամօք[1]՝ յիշելով զառաջին իւր զաշխատանսն, և զհայրն թախանձէ այսպիսի յիշատակաւս օգնական եղեալ սոցա ։ Նա հայրն նայեցեալ յորդւոյն իւրոյ սէրն 'ի վերայ ծառայիցս, և յաշխատանսն մեծամեծս 'ի վերայ սոցին, 'ի ձեռն նորա անտես առնէ զյանցանսն, և ներէ խեթկելոցն 'ի նեղչացն ։ Այսպէս արիւնն Քրիստոսի սրբէ զմեզ յամենայն մեղաց՝ 'ի Հօրն տեսանելն զնշանակս[2] նորին, և զխանդաղատելն 'ի վերայ աշխարհի ․ այսպէս ունիմք բարեխօս առ Աստուած ըզՅիսուս Քրիստոս զարդարն և զանարատն՝ որ է քաւութիւն մեղաց մերոց, զի քաւիմք մեղուցեալքս զնորա անմեղ չարչարանսն որ վասն մեր՝ առաջի Հօրն նովաւ հանդերձ բարեխօս արկեալ ։ Այսպէս ունիմք համարձակութիւն, 'ի մուտս սրբութեանցն, զարիւնն Յիսուսի ունելով նախաշաւիղ և առաջնորդ, և զմարմինն նորա վարագոյր և կարապետ ․ յայս հացէս[3], այսինքն 'ի յուսոյս 'ի քաղցրութենէս և 'ի հաւատոյս, ասաց ինքն զուտողսն ոչ մեռանել 'ի յաւիտեան ։ Ոչ ի զխարդ մեռանի՝ զկենաց դեղն անհատ ունելով որչափ է 'ի մարմնի ․ այլ թէպէտ և հիւանդանայ ըստ տկարու բնութեան, զնմանէ բուռն հարեալ ճաշակէ և առողջանայ ․ և ճաշակումն և քաղցրութիւն ճաշակմանն յորժամ լսես, մի միայն 'ի մարմնոյն նշանակս յենուս, այլ որպէս զսա մարմնոյդ բերանով հանդերձեալ ես ճաշակել և սրբիլ, այսպէս պարտիս նախ բերանով մտացդ զքաղցրութիւն խորհրդոյ մարմնոյ նորին ու-

1 Մի օրին ․ Որդին վշտակից նոցա կամօք ։

2 Նշանակէ ասին այնու մաքք, սրովասարուած արանք զսուրբ խորհուրդն սովորեցին ասել՝ ըստ դետոնօք հացի և գինւոյ ։

3 Մի օրին ․ Յայս հանդէս ։

տել, և այնպէս անստերիւր հաւատոյ համարձակու-
թեամբ զնոյն ընդ Հայրն խօսել. զի այնպէս ասա կա-
րես հաւատալ սիրոյն զանձն քո, և զՀոգին խոնար-
հեցուցանել, և խօսիս զբանան աղօթիցն: Ասես, որ-
պէս. ըստ որում զօրինակդ ուսար, այնպէս կերպա-
րանէ զճշմարտութիւն խորհրդոյն՝ իմանալի աչացս ա-
ռաջի[1]. Թագաւոր զՀայրն Աստուած. որդի նորա ըղ-
միածինն Որդի. մասն աշխարհի գերեալ 'ի թշնա-
մեաց՝ զմարդկային բնութիւնս 'ի հարիւրորդ թուէն
մոլորեալ, զորոյ տեսեալ զտառապանս գթաց Որդին
Աստուծոյ 'ի վերայ նոցա, եկն և նկուն արարեալ ըղ-
թշնամին՝ փրկեաց 'ի ձեռաց նոցա, և ածեալ յե-
կեղեցի իւր՝ ինքն դարձաւ առ Հայրն 'ի յերկինս, և
զառաջին փառսն խոստացաւ սոցա ժառանգել: Իսկ
մարդիկ դեռ ևս ընթերակայ ունելով զթշնամին և
զրժող, յորժամ դաւաճանեն 'ի նոցանէն՝ առ արդարա-
դատն Աստուած ձեռնտուութեամբ փրկչի Որդւոյն
մտանեն, և տուեալ 'ի ձեռս քահանային զհացն և ըղ-
գինին նշանակ մարմնոյ նորա և արեան, նովաւ համ-
դերձ ամենայն եկեղեցիւ՝ հրեշտակ առ Աստուած
Հայր զնա առաքեն, խնդրել 'ի նմանէ զներումն և զո-
ղորմութիւն: Որ եդեալ առաջի Աստուծոյ 'ի վերայ
սրբոյ սեղանոյն՝ համբառնայ զիմանալի աչս մտացն ա-
ռաջի Հօր և Որդւոյ առաջնորդութեամբ Հոգւոյն
սրբոյ, և սկսեալ պատմէ Հօրն զպէսպէս տնօրէնու-
թիւն Որդւոյն 'ի ներմարդութեանն սակս փրկութեան
մերոյ, և հաստատէ զասացեալն առաջի եդեալ նշա-
նակաւն: Այլ ինքն որպէս հացս ճշմարիտ մարմին եր-
կնային է նիւթ, այսպէս և քո Որդի ճշմարտութ[ի]
մերս նիւթական մարմնոյ հաղորդեալ՝ զայսոսիկ զխոր-
հուրդս կատարեաց, և սա քահանայս որպէս մարմնոյ
աչօք զգալի նիւթս կատարէ, այսպէս և մտացն աչօք
'ի խօսելն՝ զքահանայապետն իւր Քրիստոս վկայ ա-
սացելոցն, և բարեխօս ընդ ամէն Հօր տեսանէ. զորոյ
մեծամեծ շնորհան առ բնութիւնս ոչ անտես առնել
Հօրն թախանձէ, այլ միշտ սրբել զմեզ՝ նորա հեղ-
մամբ արեանն յիշատակաւ: Իսկ Հայրն նայեցեալ

1 Մի գիրն. Աչաց առաջի:

յՈրդւոյն անձառելի շնորհն, և 'ի պատմութենէ բա-նիցն լուեալ զաստուածապատիկ 'ի վերայ մարդկան զաշ-խատութիւնն՝ տայ զխնդրուածսն, որպէս ուսոյց մեզ. "Զամենայն զոր ինչ խնդրէք 'ի Հօրէ յանուն իմ, առնուցուք. զի և ինքն իսկ Հայր սիրէ զձեզ չափով որով դուք զիս սիրեցիք": Եւ տայ զինչ. նախ զթո-ղութիւն մեղացն, և զհաշտութիւն 'ի խռովութենէն՝ որ-պէս 'ի սկզբանն, և ապա զՀոգւոյն շնորհ բաշխէ յամե-նեսեան 'ի ձեռն սուրբ հաղորդութեան: Նոյնքան և այսպիսի է աւանդութիւն եկեղեցւոյ, զխորհրդականս խոստակցութի առ Աստուած Հայր առնել[1], և միջնոր-դութիւն Որդւոյն զնա թախանձել, ըստ մերս փանաքի տեսութեան. իսկ 'ի բազմաց հզօրագոյն իմաստնոց իմանալի է և այլ բազում ինչ 'ի սոյն խորհուրդ ազդե-ցութիւն բանից՝ յօգուտ մեզ և ամենայն լսողաց որք ցանկան զսէրն և զգիտութիւն Աստուծոյ ածեցուցա-նել 'ի յանձինս:

Զայս գիտելով տէր մեր ասէր. "Ես եմ ճանա-պարհ և ճշմարտութիւն և կեանք. ոչ ոք գայ առ Հայր եթէ ոչ ինև". զի մինչ չև եմք զնորա մարմնաւորու-թեան խորհուրդ և զսէր յիմանալիս մեր կոկորդ ծա-քեալ, և հոգւոյ կերակուր և զօրութիւն զնոյն ընձե-ռեալ, ոչ կարէ նորա հայեցողութիւնն առ Հայր նայ-ել. քանզի զիարդ այս լինի առանց ազգակցին Աս-տուծոյ[2], զորոյ քաղցրութիւն սիրոյն մարմնապէս ճա-շակեցաք, առ իմանալին մտանել Հայր՝ ընդ որ չառաք զայսպիսի համարձակութիւն: Եւ նովաւ հանդերձ դիւր և հեշտ է առ նոյն մարդկան ճանապարհ. մի-ամենայն ուրեք ծանուցեալ զկամս Հօրն և Որդւոյն, զի "Նոյն եմ, ասէ, կամք Հօր իմոյ, զի զամենայն զոր ետ ինձ Հայր՝ ոչ կորուսից 'ի նոցանէ". և զի Հայր այսպէս կամէր զկեալն հօտին, Որդին քաջ հովիւն 'ի պէտս կեցուցանելոյ զնոսին մեռաւ 'ի վերայ նոցա: Տե-սանես անձառ միութեանն[3] հաւասար կամս. բայց սակայն կարապետ մեզ Հօրն գիտութեան եղև Որդին միածին, տնօրինական ներգործութեամբ, ըստ այնմ.

1 Մի օրին. Ունել:
2 Մի օրին. Ազգակիցն Աստուծոյ:
3 Մի օրին. Անձառ միութիւն:

եթէ զիս գիտէիք, այսինքն՝ ոչ զբնութիւնն, զոր և ոչ հրեշտակք ոչ գիտեն, այլ զառատութիւն քաղցրութեան սիրոյն, և զՀայրն իմ, ասէ, թերևս այնու կարող լինէիք ճանաչել. զի ձեզ դիւրահաւատալի է մարմնաւոր աչաց հայեցուած, որով զիս նկատէք քան իմանալի մտաց՝ որով առ նա համբառնայք ևս, ապա թերևս այսուհետև կարէք զնա ճանաչել. յորժամ յիս խորհրդոց լինիք վերահասու, զնա գիտասջիք։ Աւասիկ և զնորա խորհրդոյն մարմնապէս կերպարանեալ քահանայն, և եդեալ առաջի աչաց իւրոց և Հօրն առ 'ի ստոյգ և անստերիւր գիտութիւն Որդւոյն, նորա ճանապարհաւն, նորա գիտութեամբն, միջնորդութեամբն և առաջնորդութեամբն մատանէ առաջի Հօրն, ըստ որում և առ հրամանն. «Ոչ ոք ասէ գայ առ Հայր, եթէ ոչ ինև»։ Եւ խնդրէ 'ի Հօրէ զհայցուածն միջնորդութեամբ Որդւոյն, զորս նոյն ինքն Որդին տայ, ըստ որում ասաց. «Եւ առ Հայր երթամ, և զոր ինչ խնդրեցէք 'ի Հօրէ իմմէ յանուն իմ արարից զայն, զի փառաւորեսցի Հայր յՈրդի»։ Ո՛վ տէր իմ, և թէ դու ես խնդրոյն կատարողն առ Հայր քո յիշատակաւս և անուամբս, ո՞ր աղագաւ առաքես ըզմեզ 'ի հայցուածս։ Զի յիս և ինև հանդերձ Հայրն իմ փառաւորեսցի 'ի ձէնջ. քանզի վասն այնորիկ արարի զպատուիրանս նորա և մեռանիմ, որպէս զի զձեզ նորա փառաբանիչս հաստատեցից։ Արդ թէպէտ և ես եմ խնդրոյն կատարիչ, սակայն հօտդ իմ և անդամք՝ ինև հանդերձ Հօրն իմ լինիջիք պատուամատոյց, և զանուն իմ և զօրհնութիւն նմին պատարագեալ՝ 'ի նմանէ հայցեցէք զխնդիրսն, զորս կատարեմ հաճակամս նորին ձեզ։ Զայսպիսի պատուիրանս ընկալեալ՝ դնեմք առաջի զմարմնոյ նորին նշանակ Հօրն ըզգայապէս, և զխորհուրդն թանաւորապէս, և այնպէս բուռն հարեալ զյուսոյն մերմէ՝ զհաստատուն խարըսխէն, զյաւիտենական քահանայապետէն՝ զկարապետէն զՔրիստոսէ, նովաւ հանդերձ մատանեմք 'ի ներքին կողմն վարագուրին իմանալի հայեցողութեամբ առաջի Հօրն, առ որ և խօսիմք՝ ընտանեբար, իբրև հաղորդք

1 Մի օրին. Հայեմ.։

*նորին՝ Որդւով իւրով Յիսուսիւ Քրիստոսիւ, ասելով այսպէս.*

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՒԱԳԻՆ ԱՂՕԹԻՑ ՊԱՏԱՐԱԳԻՆ ԱԹԱՆԱՍԻ

*« Տէր Աստուած զօրութեանց, և արարիչ ամենայն լինելութեանց, որ յանէութենէ զամենայն 'ի ցուցակութիւն ածեալ գոյացուցեր »: Որպէս բազում անգամ, առաւելապէս աստ զպարտութիւն խոստովանիմք, առ 'ի յոչ կարել մեկնութիւն աստուածային և երկրպագելի աղօթիցս առնել. քանզի անհնար է, այսինքն՝ զի սա ունի զիղձս և զտռփումն հոգւոյ՝ իւր ընծայից մտացն բերանոյ ընդ զգալի բանիւ՝ առ իմանալի Աստուած առաձայնեալ, զոր տիրապէս քանակել 'ի գիր անկար է. և թէ ջանամք, բազմաբանութեան կարօտիմք. իսկ առանց այնր զնոյն քննել ժպրհութիւն է և անպատուութիւն խորհրդոյս. զոր օրինակ եթէ ոք կին առաջի ունելով զմեռեալ որդի, աղեխարշ գորովոյն տապնապեալ զնա՝ բանս տայ բարբառել 'ի զովացումն հրատապ ջերմութեան սրտին՝ հառաչմամբ և արտասուօք. իսկ որք ոչ յախտակցութեան սրտին ընծայցին, զբանքն՝ որ նորա արտասուացն են առատացուցիչ, ծաղու և կատականաց առնուն նիւթ. այսպէսի տոչորումն սիրոյ և տռփումն գթոյ և բաղձանք սրտի է տեսանել սարսափելի բանից աղօթիցս բուրիչ. եթէ առանց այսր լիցի քննութիւն իմաստիցս, յայպանումն երդիծանելոյ տացի անմտաց: Արդ զիջանել առ տկարութիւնս աղաչեմ, որ յոյժ հեռի յարժանաւորութենէն՝ զարհեստ քննութեանս իմաստասիրեմ, և ոչ ձգել ընդ մեղադրանօք զժպրհութիւնս, որ նիւթ իւր՝ զսէրն եղբարց և զօգուտ նոցին ունի առաջի:*

*Սակայն առ քեզ բան իմ դարձցի, երկրպագելի և համաբուն Հօր սուրբ Հոգի, որ մատակարար և ճարտարապետ եղեր ինձ յարհեստ բանի. ցայտեա այժմ, աղաչեմ զքեզ, կրկին շնորհ լուսափայլութե՛ 'ի խռովեալս հոգւոյ: Ո՛վ տէր և դաստիարակ, հեզ և խնամող Աստուած իմ Հոգի, շնչեա 'ի մրրկեալ ծովս խորհրդոյս*

զսիւք շնորհիդ՝ որով խաղաղի . և որպէս միշտ երախտիւք քո ստացայր զիս քեզ պարտական գոլեստի, կից և այժմ զբերան իմ օրհնութեամբ քո, տէր ցնծալի ։ Թէպէտ և ես անարժան՝ տաճար լինել քումդ հանգստի, այլ դու տուաւ, ա՛ռ միայն զիս գործի հնչման քո ձայնի, և զանձաւ խորհրդոյ քո հանձար տարփալի բացեալ փայլեցո խնդրողաց նորին առաջի, 'ի փառս պատուոյ մեծի քո անուան սուրբդ սիրելի, և ինձ կշտամբանս բարբառ բերանոյս ժխտողս ծառայի ։

Արդ պարտ է գիտել, թէ նախախնամութիւնն Աստուծոյ 'ի վերայ մարդկան և ամենայն էից՝ ոչ տիրապէս պատմի արարածոցս բանիւ . զի է բազում ինչ՝ որում եղաք մեք խորհրդոց նորին խորհրդագզածս, և է ևս առաւելապէս՝ որ անհաս մնաց 'ի մէնջ և անծառ ։ Սակայն յորս վայելեցաք, և որոց եղաքս տեղեակ, ոչ է պարտ անքանաքար ընդունել և անշնորհակալ կամօք, այլ հատուցանել այնմ ամենայնի փոխարէն զգոհութիւնն և զօրհնութիւն, ըստ այնմ. “Ո՞ինչ տաց տրիտուր տեառն ընդ ամենայնի զոր և՛ետ ինձ . բայց թէ զաղօթս իմ առաջի ամենայն ժողովրդեանն նորա, 'ի գաւիթս տան տեառն և 'ի մէջ քո Երուսաղէմ”: Ըստ այսմ խորհրդոյ քահանայապետն 'ի դիմաց ամենայն ժողովրդեանն մըտեալ առաջի Աստուծոյ, զպէսպէս նախախնամութիւն և զերախտիսն որ առ մարդիկ եղեալ՝ յիշէ, և շնորհակալութեամբ փոխարէն զգոհութիւնն մատուցանէ ընդ ամենեցուն . քանզի գիտէ զնա ընդ այսպիսի պատարագս հաճեալ, ըստ այնմ. “Մատո Աստուծոյ պատարագ օրհնութեան, կամ կատարեա բարձրելոյն ուխտ քեզ”: Եղաչէ և Պօղոս զխօսիւք պատարագս և պաշտօնս մատուցանել . պահանջէ և տէրն յերկրըպագուաց զհոգևորն փառատրութիւն ։ Յաղագս այսորիկ սկսանի ըստ կարգի զշնորհն Աստուծոյ գոհաբանութեամբ նմին յուշ ածել, գիտելով զայս միայն նմին ընծայլի ։

“Տէր Աստուած, ասէ, զօրութեանց, և արարիչ ամենայն լինելութեանց”: Նախ զանունն Աստուծոյ զորս գտին մարդիկ՝ նմին անուանէ . անուն ասեմ, ոչ բնութեան՝ որ է աքանչելի և անհաս, այլ փառացն և

նորոգործութեանն. քանզի ստեղծիչ արարածոցս գիտացեալ միայն զնա, այսր աղագաւ յորդորեանց իւրոցն կոչեցաք զարարիչն Աստուած, այսինքն աստ ածող, զոչ էսն յէութիւն և ՚ի գոյութիւն զերկնաւորսն և զերկրաւորս։ Նաև զի ոչ ստեղծ միայն, այլ և նախախնամութեամբն պահէ անվթար, և տիրէ ՚ի վերայ սոցին զօրեղապէս, կոչեմք զնա տէր եղելոցս. և տիրէ նա առաւել քան զամենեցուն հրեշտակացն դասուց. այսինքն զի նոքա ոչ թէ միայն ծառայաբար ակամայ կամօք զրաւեալ են ընդ իշխանութեամբ նորա, այլ և ինքեանք անձնիշխանութեամբ և նախայօժար կամօք սիրեն և տափան ծառայել նմին, ըստ այնմ. «Օրհնեցէք զտէր ամենայն զօրութիւնք նորա, պաշտօնեայք նորա և արարողք կամաց նորա»։ Գիտէ և ինքն Աստուած՝ ՚ի բազմացն միայն զիւր սիրելիսն կոչել ծառայ, ըստ այնմ. «Մովսէս ծառայ իմ վախճանեցաւ»։ Արդ առ այս հայելով, իբր սեփհական և ընտանի ծառայիցս ՚ի սկիզբն բանից, տէր և Աստուած զնա հրեշտակացն զօրաց կոչէ, որոց առնեն զբանն նորա, և լսեն ձայնի պատգամաց նորա. զի երկրաւորքս բազում անգամ յայսպիսի հպատակութենէ ծընկեցս լինիմք՝ որք արարաք ՚ի նմանէ։ Դարձեալ և են բազումք զրկեալք յիմաստութենէ տէրութեանն գիտութեան, վասն այսորիկ սոցա արարիչ կոչէ, և արարիչ ամենայն լինելութեանց։ Փակեաց ընդ բանիւս զերկինս և զերկիր և զորս ՚ի նոսա, զի որք եղեն, ասէ, ամենայնս միայն յանեղէդ արարան։

«Որ յանէութենէ զբնաւս ՚ի գոյութիւն ածեալ գոյացուցեր»։ Մարդիկ ստեղծանեն բազում ինչ, սակայն ոչ յանէութենէ, այլ զէն յայլ իմն էութիւն յեղաշրջեն կցորդակից տարերաւն, որպէս ըզփայտ ՚ի հուր, և զքարն ՚ի հող. իսկ Աստուած ոչ այսպէս, այլ մինչ չև եղեալ էին էքս՝ էացոյց զնոսա. նախ զերկինս և զերկիր հիւթովքն, և ապա զցուցակութիւն բարեվայելչութեան սոցին տարերովքն։

«Որ և զմեր հողեղէն բնութիւնս պատուեալ մարդասիրապէս՝ այսպիսի ահաւոր և անպատում խորհրդոյս կարգեցեր սպասաւորս»։ Իրաւի ասաց՝ որ և զմերս, քանզի ՚ի հողեղինաց այլ և ոչ ոք է Աստու-

ծոյ խորհրդոցն խորհրդազգած, բայց միայն մարդն ։ Նաև գիտեն զխորհուրդս նորա հոգեղէնքն, ըստ իւրաքանչիւր դասու և աստիճանի արժանաւորութեան, որպէս ցուցեալ է բազում անգամ. իսկ հողեղէնքս ամենայն եղեն 'ի զարդ երկրի, և ոչ յիմաստութեանն Աստուծոյ տեղեկութիւն, ըստ որում են իսկ գազանք և անասունք, սողունք և թռչունք. այլ որոշեցաւ 'ի սացանէ մարդն միայն, և մարմնովն ընդ իմանալի բնութեան խառնեցաւ, ըստ այնմ. " Փոքր ինչ խոնարհ արարեր զնա քան զհրեշտակս քո ",։ Վասն այսորիկ այսմ պատուի լինին գոհաբան, որ յառատութենէ շնորհացն Աստուծոյ տուաւ մարդկան, բանական և իմաստուն լինել, և այսու գեր 'ի վերոյ ամենայն մարմնաւորաց նստել, զԱստուծոյ խորհուրդսն գիտել, և զնա արարիչ 'ի ձեռն բնաւորական բանին ճանաչել ։ Յետ այսորիկ և վերստին նորոգմամբ որ 'ի ձեռն Քրիստոսի յանզուգական շնորհս վայելել, և զանպատում խորհուրդն գիտել թէ Քրիստոսիւ և կամօք Հօր մարմինս ընդ աստուածութիւնն խառնեցաւ, և մեր ամենեցուն յոյս անդ՝ ուր հիմն է արձանացաւ ։ Տես թէ որքան ահաւոր խորհրդոյս զօրութիւն, և անպատմելի շնորհ, հաւատոյ միայն տեսանելի, և 'ի մարմնական աչաց խորհուրդ ծածուկ և անմատչելի ։ Որոց սպասաւորեմք բանականքս մարդիկ, և նորին վասն Աստուծոյ պաշտօն և երկրպագութիւն մատուցանեմք. զի այս խորհրդական մեծս յուսով առեալ զներքինս աշխարհ խաչեցաք ընդ Քրիստոսի, և սպասեմք Աստուծոյ ։

" Դու տէր, որում պատարագեմք զպատարագիս, ընկալ առ 'ի մէնջ զառաջադրութիւնս զայս ",։ Պատարագիս և պատարագել՝ քանիցս անգամ լուեալ մեր, մի միայն 'ի նուէր նշանակաց հացիս և գինոյս զաչս յառեալ իմասցուք, այլ պատարագէ սովաւ հանդերձ պատարագիս Աստուծոյ Հօր զՔրիստոսի խորհուրդսըն, որում և սոքա եղան ընթերակայ 'ի հաստատութիւն. և զայն իմանալի հայեցողութեամբ և խորհրդական բանաւորութեամբ, որում և սպասաւոր զինքն խոստովանեցաւ կարգեալ ։ Արդ եդեալ առաջի Աստուծոյ Հօր զմարմնական նշանակս, և եդ առաջի նորա զՔրիստոսի մարմնով անօրէնութիւնն պէսպէս և զա

նազանս, որք եղեն 'ի պէտս մեր փրկութեան, և զնո-
սա նուէր հաշտութեան, մաղթէ 'ի մէնջ` Աստուծոյ
Հօր ընդունել, որպէս և ընկալաւ, և միշտ ընկալցի:

“Եւ աւարտեա զսա 'ի խորհրդականութիւն մարմնոյ
և արեան միածնի քո”: Քանզի դեռ ևս ոչ է բանիւ
և աղօթիւք տուեալ նմա նուէր զխորհուրդ չարչարա-
նացն Քրիստոսի, զոր հանդերձեալ է տալ, որով ծր-
գեալ 'ի մեզ զկամս Հօրն` 'ի ձեռն Հոգւոյն կնքեմք
զսոսա մարմին և արիւն Քրիստոսի. վասն այսորիկ
զկատարումն առաջիկայ խորհրդոյն որում սպասաւո-
րէ` թախանձէ, աւարտեա ասէ զսա, այսինքն կատա-
րեա Հոգւովդ: Բայց ընդէր ոչ ասէ պարզ, կատարեա
զսա մարմին և արիւն Քրիստոսի քո, այլ 'ի խորհըր-
դականութիւն մարմնոյ և արեան: Քանզի խորհրդա-
կանապէս լինի սա մարմին և արիւն Քրիստոսի և ոչ
երևելապէս. հաւատոյն աչաց առաջի, և ոչ մարմնոյն:
Այսպէս, որպէս. եկ և մաղթեսցուք Հոգւոյն Աստու-
ծոյ[1] զխորհուրդս յայտնել: Քրիստոս բան անմարմին
'ի Հօրէ առաքեցաւ, և 'ի պէտս փրկութեան մարդ-
կան ընդ մարմին երկրային միացաւ, և ծնեալ նովաւ
'ի կուսէն` մնաց անհաս 'ի գիտութենէ երկնաւորացն
և երկրաւորացս, այլ միայն երևեալ որպէս զմարդ` ա-
զատ 'ի կրից մեղաց` որով մարդիկ ըմբռնեին, ընկալեալ
զօծումն Հոգւոյն ըստ մարմնոյ, զոր կորոյս Ադամ 'ի
սկզբանն, և պայծառացուցեալ նովաւ զբնութիւնս,
անուանեցաւ յարդեանցն խորհրդոյ` Քրիստոս. զի
որպէս վասն մեր մարդ, այսպէս և ըստ մարդկան օ-
ծեալ, անցոյց 'ի մարդիկ զօծութեան Հոգւոյն շնորհս.
զի օծ աստուածաբար իւրով Հոգւովն զ'ի նա հաւա-
տացեալս, և անուանեաց քրիստոնեայս, որպէս ան-
դամք և համանուն գլխոյն Քրիստոսի: Արդ անուանի
եկեղեցի` մարմին Քրիստոսի և արիւն յոսկերաց նո-
րա ըստ առաքելոյ, 'ի ձեռն յօդակապութեան սրբոյ
Հոգւոյն, որով կնքեալ ընդ նա խառնեցաք և մեք, ըստ
էութեան մարմնոյ այլ 'ի նմանէ, բայց զմի Հոգի ընկա-
լեալ` մարմին նորա անուանիմք. այսպէս առցես ինձ և
զառաջիկայ նշանակս խորհրդապէս կատարեալ. քան-

1 Երկու օրին. Ի Հոգւոյն Աստուծոյ:

զի յորժամ տամք զսա Հօր, և սմա զպէսպէս անօրէնութիւն սիրոյ առ մարդիկ միածնին իւր Որդւոյ, կնքեալ օրհնէ և կենդանացուցանէ զսոյն Հոգւովն Քրիստոսի իւրոյ, և առնէ զսա մարմին նորա և արիւն, ոչ Համանմանս[1], այլ Համազօր, զի Թողու և այժմ 'ի մարմինս նորա զմեղս աստուածաբար, ընդ մի Հոգւին Աստուծոյ անճառ խառնմամբ միացեալ, որպէս գրեցաւ. «Արիւնն Յիսուսի սրբէ զմեզ յամ մեղաց». և դարձեալ, «Որչափ ևս առաւել արիւնն Քրիստոսի՝ որ 'ի ձեռն Հոգւոյն յաւիտենականի սրբեսցէ զխիղճ մտաց ձերոց 'ի մեռելոտի գործոցն». վասն այսորիկ և ասէ.

«Զմեղ Թողութեան մեղաց պարգևեա ճաշակողացս զհացս զայս և զգինիս»: Զմեղ ասէ, քանզի հիւանդացաք 'ի կենդանութենէն զոր 'ի միութեանն առաջնացաք, հոսանսուտ վիճակեալ բնութեան. վասն այսորիկ տամ քեզ նուէր նախ զհացս և զգինիս խորհրդով միածնիդ քո չարչարանաց, որպէս զի դու ընկալեալ զսա 'ի մէնջ հաշտ ակամբ՝ Թողութեան մեզ դեղ Հոգւովդ զայն ընձեռեսցես: Եւ որպէս ընկալցի ասիցես՝ սա Թողութեան դեղ: Սա որում և Քրիստոս եղև. զի նա հաւատովք զմեզ սրբեաց յորժամ ընդ իւր Թաղեցաք. այսպէս նոյն նկքն դարձեալ այժմ լինի հաւատացելոցս իւր դեղ Թողութեան և սրբութեան, յուսով և հաւատով, և ոչ մարմնապէս աչաց առաջի, որպէս և նշանօքն Իսրայելի. զի նշանն ոչ հաւատացելոց, այլ անհաւատից. իսկ զի մեք հաւատացաք զԱստուած անենակար, և զայս զրաւ ընկալաք 'ի նմանէ օճառ Թողութեան. զինչ կարօտանամք 'ի մարմնոյ զխոտութիւն նշանաց ազդեցութեան. այլ միայն սրտապնդ լիցուք 'ի ճաշակելն հաւատով, զմտաւ ածեալ, զի Թէ մինչ Թշնամիքն էաք՝ հաշտեցաք ընդ Աստուծոյ մահուամբ Որդւոյ նորա, որչափ ևս առաւել 'ի հաշտելս մերում ապրեսցուք կենօք նորա 'ի բարկութենէ անտի. որում փառք յաւիտեանս:

1 Ոչ համանմանական զօրինակաւ և վասն որոյ և համազօր: զգալի, այլ նովին գոյացութեամբ.

## ԶԻՆՉ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ ՅԵՏ ԱՅՍՈՐԻԿ ՀՐԱՄԱՆ ՏԱԼ ՈՂՋՈՒՆԻՑՆ ԵՒ ՈՂՋՈՒՆԵԼՆ ԶՄԻՄԵԱՆՍ

*Որպէս ամենայն բարեձեւութիւն եկեղեցւոյս հոգեւոր է և մարմնաւոր, և մարմնականքն ապացոյցք և յայտնաբանք հոգեւորացն, այսպէս և զայսոսիկ է տեսանել զխորհուրդս. քանզի հայեալ 'ի միմեանս մարմնով և շաղկապեալ բազմութիւն 'ի միութիւն մարմնոյն համբուրիւ, զմիութիւն հոգեպէս խառնմանն և զհաւասարութիւնն այսու յայտ առնեն, ըստ այնմ. "Էր բազմութեան հաւատացելոցն սիրտ և անձն մի": Եւ միանայ ո՞ր աղագաւ, եթէ ոչ առ 'ի ցուցանել զայն՝ թէ առ շնորհ պարգեւաց քոց որ հանդերձեալ է բաշխել՝ միով յուսով և հաւատով սպասեմք, և որպէս զմի անձն համականութեամբ և սիրով բազմութիւնս լինիմք, զի մի լիցի ինչ երկպառակութեան կարծիք կամ անջատումն յուսոյ յառաջիկայս խորհուրդ. ուստի և նախ հրամանաւն զանկատարսն և զանջատողականս մերոյ բաժանեալս արտաքս եհան, և ապա կատարելոցս և միով տափմամբ լցելոցս տայ զհրաման ողջունին և սիրոյն միութեան:*

## ԶԻՆՉ ԴՐԱՆՑՆ ՅԵՏ ՈՂՋՈՒՆԻՆ ՀՐԱՄԱՆ ՏԱԼՆ ԱՍԵԼՈՎ, ԶԴՐՈՒՆՍ ԻՄԱՍՏՈՒԹԵԱՄԲ ԵՒ ԶԳՈՒՇՈՒԹԵԱՄԲ

*Զգուշութիւնն դրանցն յայտ առնէ՝ թէ 'ի խորհուրդ եմք ժողովեալ, առ որ ոչ է համարձակելի օտարացն հայել, այլ միայն մեզ որ համբուրիւս զհամականութիւնն հաշտեցաք. արդ եթէ ոք յայս կցորդութենէս օտար է, մի՛ հաղորդեսցի խորհրդոյս, այլ զգուշութեամբ դրանցդ անկցորդ սմին լինիցի: Արդ թէպէտ և այս մարմնապէս ըստ այսմ կատարի, սակայն հաւասար այլոցն ունի ընդ ինքեան խորհրդոց զօրութիւն. այսինքն զի դրունք և պատուհանք է առ մեզ զգայարանք մարմնոյս, որ ածեն զանազանապէս համբաւս խռովութեան ընդ ինքեանս ներքինս մարդոյ, որպէս ասաց Երեմիա. "Պատուհանքն՝ ընդ որ*

եմուտ մահ ,,. և Դաւիթ, "Դիր տէր կնիք դրանց բերանոյ իմոյ,,. և տէրն, "Մուտ 'ի սենեակ քո և փակեա զդրունս քո,,: Այսա տայ ձայնիւն զգուշութիւն սարկաւագն՝ թէ այսուհետև իմաստութեամբ զգուշացիք դրանց մարմնոյ ձերոց, աչից և լսելեաց, բերանոյ և շօշափելեաց, զի մի ոք 'ի դոցանէ 'ի սոսկալիս ժամու զբաղեալ՝ խռովութիւն և մոլորումն մըտացն ընդ իւր արասցէ. այլ փակեցէք, ամրացուցէք, պարսպեցէք, ասէ, իմաստութեամբ և զգուշութեամբ: Ու տե՛ս զկարևոր պահանջումն, զի ոչ միանգամ, այլ երկիցս յաւելու՝ առ 'ի հաստատութիւն ասացելոցն. գիտելով զի թէ սոքա ոչ պարսպին, հարկաւորապէս իւրեանց 'ի ծառայութիւն զմիտսն ձգեն. և յորժամ միտքն ընդ սոքօք զբաղին, և ոչ ընաւ յիմանալի խորհրդոցն օգտի. արդ զի մի զայս աղէտիցս կրեսցուք զկիրս՝ աղաղակէ. զդրունս, զդրունս իմաստութեամբ և գիտութեամբ պարսպեցէք:

## ԸՆԴԻՐ ՀԱՒԱՏՈՑՆ ԴՒԱՃՆ ՅԵՏ ԱՅՍՈՐԻԿ ՆԵՐԳԻ ՅԵԿԵՂԵՑԻՈՑՆ [1]

ՅՈՐԺԱՄ դրանցն զգուշացան և տաճարի մարմնոցն, ապա միաբան զդաւանութի՛ հաւատոցն խոստովանին, որով ցուցանեն թէ ոյք կամօք 'ի ձեռն նշանակի համբուրին մի եմք, այսպէս և ուղղափառ դաւանութեամբ հաւատոց, և չիք ոք յայնցանէ ոյք ոչ այսմ հաղորդին 'ի մերս կցորդութիւն: Դարձեալ և նուիրեն Աստուծոյ զհաւատս և զխոստովանութիւնն, յայտ առնելով թէ այսպիսի յուսով խառնեալ միացաք ընդ քեզ՝ ոչ ինչ ունելով թերութիւն Երրորդութեանդ գիտութենէ, այլ զի և ակն ունիմք մեծամեծ բարեաց յընթերակայ ժամանակս գտանել. և Քրիստոս առհաւատչեայ որոցն 'ի մէնջ զհաւատսն պահանջեաց՝ ասելով առ իւրաքանչիւր բժշկեալսն. "Հաւատայք, եթէ կարող եմ առնել ձեզ զայդ,,. վասն այսորիկ և սոքա նախ զտնօրէնութեան նորա շնորհս և զաստուածութեան փառս միաձայն բարբառով հնչակեն, և խոստովանին

1 Մի օրին · Նրգէ էկէղէջի :

հաւատալ ամենայնիւ բոլորով սրտիւ, և տուր զնոյն խորհուրդ որում ամենեքեան հաւատացին՝ քահանայն առնու, և 'ի դիմաց ամենայն ժողովրդեանն նուիրէ Աստուծոյ Հօր: Եւ զոր օրինակ զՀացն 'ի նոցանէ և նոցա փրկանք 'ի սեղանն ածին ' սարկաւագքն, այսպէս և զՀաւատս Քրիստոսի մարմնոյն խորհրդոցն 'ի նոցանէ և վասն նոցա փրկութեան քահանայն առնու և նուիրէ Աստուծոյ Հօր մնացն ձեռօք. յայտ առնելով՝ թէ յոր սոքա հաւատացին զՅիսուս Քրիստոս զՈրդին Աստուծոյ վասն մեր փրկութե մարմնացեալ, խաչեալ, չարչարեալ, թաղեալ, յերրորդ յաւուր յարուցեալ, ելեալ յերկինս և նստեալ ընդ աջմէ Հօր, զայն՝ զնոյն ինքն և զնորին խորհուրդն որ վասն սոցա փրկութեան եղև՝ ունիմ ես 'ի ձեռս առաջի քո Աստուած Հայր, պատարագ և նուէր հաշտութեան կամաց քոց, 'ի վերայ ամենայն արեամբ նորա ստացեալ ժողովրդոցս, և գթութեամբ քաջ հովուիդ փրկելոցս:

## ԶԻՆՉ ԶԳՈՒՇՈՒԹԵԱՄԲ ԿԱԼՈՑ ՎԵՐԱՁԱՑՆՈՒԹԻՒՆ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ, ԱՅՍԻՆՔՆ ԲԱՐԻՈՔ ԿԱՑՑՈՒՔ

Ի ՁԵՌՍ հրեշտակին իւրեանց զոր առաքեցին առ Աստուած, այսինքն քահանային, ետ բազմութիւն սրբոյ ժողովրդեանն զաւ 'ի Քրիստոս խոստովանութիւնն մարմնոյ նորին և աստուածութեանն, զմարմնոյն հաւատ հաստատեալ նշանակաւ հացին և գինոյն, զոր վերածին 'ի սեղանն սուրբ 'ի միջոյ սոցա սարկաւագքն, հաստատեալ թէ որպէս այս տարր ըզգալի և շօշափելի, այսպէս և Որդին Աստուծոյ վասն մեր զգալի մարմին զգեցաւ, և զաստուածութեանն հաւատ ետուն 'ի նա բարձրաձայն և խոստովանողական դաւանութեամբ: Արդ առեալ ըստ իմանալի և ըստ զգալի էութեանն 'ի սոցանէ 'ի ձեռս իւր պատարագ զՔրիստոս քահանայն՝ հանդերձեալ է տալ Աստուծոյ Հօր, և սովաւ զնա յաղթութիւն աղերսել, և հատուցանել զփոխարէն նուիրացս, այսինքն զՀո-

1 Մի օրին. Աստուածային:

զինն սուրբ, որպէս և 'ի սկզբանն։ Իսկ այս խորհրդոյ զօրութիւն ազդեցաւ սարկաւագին, որ համարձակապէս մտանէ 'ի խորանն սուրբ, և առնու զգիտութիւն լուսափայլութեանն Աստուծոյ՝ միջնորդութեամբ քահանայիցն. ուստի և բարւոք մտածութեամբ ախորժէ ըղ-նոյն լուսափայլութիւնս սփռել 'ի խոնարհ դասս ժողովրդեանն՝ ըստ կարողութեանն իւրեանց ընդունելոյ, որպէս և միշտ սովոր էր զայս առնել. յաղագս որոյ եկեալ 'ի մէջ նոցա՝ վերաձայնէ 'ի լուր ամենեցուն ոչ զխորհրդոյն զօրութիւն, այլ զինչ. միայն զգուշութի։

"Հիւ, ասէ, կացցուք, երկիւղիւ կացցուք, բարւոք կացցուք և նայեցարուք զգուշութեամբ"։ Այսինքն՝ մեծ խորհուրդ ազդեցաւ ինձ, ով եղբարք, որ համդերձեալ է 'ի մէջ ձեր կատարել. սոսկալի և զուարճախառն երկեղի պատահեցի՝ յորժամ 'ի մէջ քահանայիցն 'ի սրբութիւն սրբոցն մտի, հրաշափառ ազդումն և խորհրդոյ կատարումն 'ի ներքին վայր սրբոյ խորանին ես տեսի. արդ աղաչեմ զամենեսեան, որպէս միշտ զգուշական բանից իմոց լուարուք. Քրիստոսասէր ժողովուրդք, այժմ առաւելապէս զահն և զերկեղն Աստուծոյ յանձինս բերեալ՝ ընթերակայ սրբոյ խորհրդոյս կացէք. առ որ և զգուշապէս մտաւորական աչօք նայեցեալ տեսէք՝ թէ զինչ և որքան հրաշակերտ և սարսափելի համդերձեալ է ձեզ ազդել խորհուրդ. նայեցարուք յիմանալին՝ ոչ մարմնական աչօք, այլ իմացող և վերահայեաց մտօք զնա նկատեալ տեսէք։ Եւ նորա պատասխանեն, ոչ սմա՝ այլ Աստուծոյ, որպէս և միշտ սովոր են. քանզի և նախ քան զայս սա հրամայէր աղաչել, և նորա ասեալք 'ի սմանէ՝ 'ի տեառնէ զողորմութիւնն հայցէին. այսպէս և այժմ ասաց և հրամայեաց նոցա նայել զգուշութբ յետ երկեղիւ կալոյն. իսկ հաւատացելոցն ամփոփեալ զինքեանս երկեղիւ և ուղերձեալ զանեսութի մտացն 'ի նպատակն Աստուած, վկայեն կամաց՝ մտացն բերանովք՝ և ասեն. Նայիմք՝ որպէս և հրամանն տուաք՝ զգուշաբար առ քեզ Աստուած, առ որ և հաւատացաք մի սրտիւք։

1 Երկու օրին. Ղ.Ճա։

## ԶԻՆՉ ԴԱՐՁԵԱԼ ՅԱՒԵԼՈՒԱԾ ԱԶԴՈՂԱԿԱՆ ՀՐԱՄԱՆԻ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ

ՅՈՐԺԱՄ մեծահրաշ ձայնիւ արկ[1] զերկեղ և զսարսափումն 'ի վերայ ամենեցուն սրբազանն պաշտօնեայ, և պարապեաց 'ի խարդախութենէ չարին զհանուր ժողովուրդս, նովաւ ուղղեաց և զզգուշութիւն ուշութե նոցա առ Աստուած, յետ այնորիկ խրախուսանս վարկանի զխորհրդոյն զօրութիւն հաւանօտ բանիւ ազդել նոցա, զի մի մնասցեն անձնաշահ և պակասեալ 'ի քաջայութենէն՝ որ 'ի ներքին վայրս սրբոյ խորանին խորհրդածի. ուստի և յաւելու. Ո՛վ եղբարք և որդիք, ո՛վ մանկունք սիրեցեալք, և զառաջինս վարդապետութեան խնոյ միշտ 'ի ճաշակումն ձգողք, ոչ թէ վայրապար առիթ ձեզ զահն և զերկեղն, ոչ թէ ընդ վայր պահանջեցի 'ի ձէնջ զպարկեշտ կեալն, ոչ թէ նանիր աղաչեցի ըզձեզ զզգուշութեամբ նայել. այլ զի մեծ և անտանելի ազդումն ընկալայ, զի 'ի նախակարգեալ դասէ քահանայիցն սքանչելի էջ առ իս լուսաւորութիւն գիտութե, և թէ զինչ է՝ ոչ կարէիք վաղվաղակի տանել կամ հաւանեցի ուսանել։ Այլ այժմ տեսեալ զամենեսեան 'ի զգուշութեան՝ փափաքեմ զնոյն ազդումն և 'ի սիրեցեալդ իմ հօտ սփռել և տարածել. ծաներուք եղբարք, անճառ մարդասիրութիւն, ծաներուք մեզ բարձրագոյն շնորհ, լուարուք և կայթեցէք հոգւով, անզղջական գոհութեամբ։

«Պատարագ. Քրիստոս մատչի զառն Աստուծոյ»։ Որդին Աստուծոյ հօրն իւր 'ի պէտս հաշտելոյ ընդ ձեզ նուէր պատարագի մատչի. զառն Աստուծոյ մեծ և անզուգական զթոյն զմեղս ձեր 'ի յինքն բառնայ, և փոխանակ ամենեցուն մեր որ պարտական եմք՝ մահու մեռանի. խռովութեան մեր ընդ Աստուծոյ յանցանօքն և թշնամութեամբն՝ նուէր հաշտութեան զանձն իւր դնէ. աստ առաջի աչաց ձերոց այս ամենայն կատարի, խրախ լերուք 'ի սէր նորա, և պատրաստեցէք ընդունել զշնորհս նորա։ Արդ զայս լուեալ, և ընդ ա-

[1] Մի օրին. Ած։

ռաջին ահն և երկեղն զցնծութիւն խառնեալ, և ըստ բնաւորական կրից յարտասուս հարեալ, քանզի սովոր է երկեղն և ցնծութիւն շարժել զբնութիւնս յարտասուս և յուրախութիւն, վասն յանկարծակի փոփոխմանն 'ի տրտմականացն յուրախականն, ուստի և պատասխանեն այսպիսի աւետեացս կարապետի սարկաւագին 'ի սրտաձմլեալ սրտէ զբանս. " Ողորմութիւն և խաղաղութիւն և պատարագ օրհնութեան ": Այսինքն, ո՛վ աստուածային խորհրդոյն պաշտօնեայ սրբազանդ սարկաւագ, լուր աւետեացդ՝ զոր հնչեցեր Քրիստոսի վասն մեր պատարագել, ոչ է ըստ արժանեաց տուր մարդկան կամ ըստ պարտեաց հատուցումն, այլ գերազանց յուսոյ շնորհ, և 'ի վեր քան զակնկալութիւն պարգև՝ յողորմածն տեառնէ մեր ողորմութի մեզ. քանզի բազում անգամ 'ի սաղմերգս քո խնդրեցաք աղաղակաւ, " Տէր ողորմեա ". իսկ նա զի՞նչ այլ մեծ ողորմութիւն կարօտելոցս իւրոց ծառայից շնորհէր քան զինքն. զի՞նչ այլ քաղցելոցս կերակուր և կարօտելոցս փարթամութիւն քան զմարմին իւր: Դարձեալ զի և խաղաղութիւն յԱստուծոյ մեր ըստ հրամանի քո խնդրեցաք բազում անգամ, գոհանամք զհեշտալուր տեառնէն՝ յորմէ վաղվաղակի ընկալաք զլուրն աւետիցն՝ 'ի վեր քան զոր իմանայաք և խնդրէաք. զի մեք սոսկ խաղաղութեան վասն աղաչեցաք զնա, իսկ նա 'ի պէտս այսորիկ զանձն իւր տայ պատարագ Հօրն իւրոյ. ուստի և ծանեաք ահա ճշմարտապէս, թէ այս պատարագ է որ օրհնէ զմեզ յամենայն անիծադրութենէ մեղաց. զլուխն մեր Քրիստոս փոխանակ ամենեցուն մեր պատարագի, որպէս զի յամենայն յանդամքս զհոգևորն օրհնութիւն սփռեալ տարածեսցէ. երկրպագութի իւրում ողորմութեանն:

## ԸՆԴԻՐ ԱՅԺՄ ՔԱՀԱՆԱՅՆ ԴԱՌՆԱՅ ԵՒ ՇՆՈՐՀՍ ԲԱՇԽԷ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ

ՕԾԱԾՈՒԿ խորհրդոյն զօրութիւն սարկաւագն նոցին ազդեալ, ետես զամենեցուն հաւատով և միաձայն զգոհաբանութիւնն. այսուհետև կարօտին զհաստատութիւն նորին 'ի պատգամաւոր հրեշտակէն 'ի քա-

համայէն ընդունել, զի անստգիւտ լիցի ուրախութիւն. ուստի և սա զատնայ 'ի ժողովուրդն ասելով. մի կարծէք հարևանցի զբարբառ սարկաւագին՝ որ աւետարանեաց զՔրիստոսի պատարագելն 'ի լսելիս ձեր, այլ հաստատուն մտօք հաւատացէք. զի ահա ես հանդերձեալ եմ մատուցանել զնա վասն մեր Աստուծոյ Հօր, և ընդ զգալի նշանակացս նուիրեմ նմա պատարագ զտեառն մերոյ Յիսուսի վասն մեր մարդեղութեանն[1] անօրէնութիւն. արդ զգոյշ կացէք, ամփոփեցէք զանձինս, պարապեցէք զգայարանս, կցորդ և համաձայն ինձ յառաջիկայ խորհուրդս լինել՝ որոյ սակս և բաշխեմ ձեզ զօրութիւն:

“Շնորհ սէր և աստուածային սրբարար զօրութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ եղիցի ընդ ձեզ ամենեսեան „: Որք մեծ այս խորհրդոյս կցորդ էք և ընթերակից, շնորհն և սէրն Աստուծոյ սփռեսցի 'ի վերայ ամենեցուն ձեր անձանց և մտաց, որպէս զի նորա զօրութեամբն պարապեալ՝ կարողապէս նկատիցէք տեսանել՝ թէ զինչ և որքան բարձրագոյն է այս խորհուրդ, որ 'ի ձեռն իմ 'ի պէտս փրկութեան ամենեցուն կատարի. քանզի զՈրդին Աստուծոյ զՔրիստոս և զմահ նորա անմեղ փոխանակ մեր Հօրն իւրում տամ, և յուսամ առնուլ 'ի նմանէ ըստ այսմանէ[2] պարգև, ոչ միայն զմեղաց թողութիւն, այլ և զբաշխումն Հոգւոյն առատապէս:

Արդ զօրացիք շնորհօք, առատացէք սիրով, սրբեցարուք մտօք, և այնպէս զօրութեամբ Երրորդութեանն կարողացեալք՝ հաղորդք լիջիք խորհրդոյս: Իսկ նոքա պատասխանեն քահանային. “Եւ ընդ հոգւոյդ քում „. այսինքն, զոր դու աստուածայնապէս միջնորդութեամբդ սփռեցեր 'ի վերայ ամենեցուն շնորհ և զօրութիւն, մաղթեմք զի և ընդ հոգւոյդ քում լինիցի մինչև 'ի սպառ կնիք և պահապան:

1 Այլք, Ներմարդութեանն:    2 Մի օրին. Ընդ այսմանէ:

## ԶԻՆՉ ՑԵՑ ԱՅՍՈՐԻԿ ԴԱՐՁԵԱԼ ԶԳՈՒՇԱԿԱՆ ՀՐԱՄԱՆՆ Ի ՍԱՐԿԱՒԱԳԷՆ ԱՌ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ

ԸՆԿԱԼԱՆ ամենեքեան հաւատով զգուշութիւն 'ի քահանայական որհնութենէ և շնորհաբաշխութենէ. յետ այսորիկ որ դաստիարակն է նոցա սարկաւագն՝ ըստ կարգի ևս յառաջ մատչել յորդորէ 'ի շնորհաբաշխութենէ ։ Որպէս . քանզի յառաջագոյն ասացեալ էր նոցա թէ համբարձէք զմիտս , անկարելի էր այսմ լինել. նախ զի ցնդեալ էին խորհրդովք . երկրորդ՝ զի ոչ գիտէին՝ թէ առ ո կամ յինչ խորհուրդ զմիտս համբարձցեն . երրորդ՝ զի ոչ ունէին այսմ օժանդակ զզօրութիւնն Աստուծոյ ։ Իսկ յորժամ եղեն այսոքիկ , ապա հրամայէ նոցին զմիտս 'ի վեր ամբառնալ. քանզի նախ ահիւ և երկեղիւն պարապեցան , և ապա արկան 'ի զարհուրեալ միտսն ուրախութիւն գիտութեանն պատարագելոյն Քրիստոսի . յետ այնր ընկալան 'ի համարձակոյ նորին զշնորհ զօրութեանն 'ի քահանայէն ։ Արդ այսքան արհեստիւք որբեալ և ուղղեալ մտաց նոցա , ասէ ապա . զմիտս զօր բարիոք երկեղիւ ամփոփեցաք , և ուրախական գիտութեամբ զուարճացուցաք , և քահանայական որհնութեամբ զօրացուցաք , այսուհետև եղբարք՝ կամիմ զի 'ի վեր առ Աստուած բարձրացուսցուք , և զիմանալի և զանհաս նորա էութիւն իմացող մտօք՝ որքան կարող եմք տեսցուք . քանզի անդ է և քահանայիցն միտք որ 'ի ներքին վայրս սրբոյ խորանին կան . արդ որպէս մարմնով եմք ընդ նոսա , և մտօք վերացաք , զի մի լիցի մարմնոցս միայն հաղորդութեամբ կցորդութիւնս , այլ և հոգւոյ 'ի վերին տեղն ընթացակցութիւն ։ Իսկ նոքա զինչ առ այս . վկայեն բերանովք մտացն վերահայեցողութե՝ ասելով առ Քրիստոս . "Ունիմք առ քեզ տէր ամենակալ". յայտ արարեալ այսու՝ թէ զքեզ ունիմք առաջի աչաց մերոց 'ի ժամս այս . և որպէս մարմնոյ աչօք՝ զգալի քո նշանակս նկրտիմք , տեսանեմք և փափաքեմք ողջունել , այսպէս և զաչս մտաց անդր 'ի

*ներքին կողմն վարագուրին համարձակապէս անցաք ընդ ճանապարհն զոր նորոգեցեր մեզ Յիսուս մարմնոյ քո վարագուրաւ. և տեսանեմք որպէս առ դէմ մարմնով 'ի սպանդ սրբոյ սեղանոյս պատարագ հաշտութեան մեր, այսպէս և այժմ զմարմինն քո 'ի վերայ սեղանոյ աստուածութեանդ՝ կենդանի և բարեխօս վասն մեր. և բարեխօս ոչ վայրապար, այլ փորձիւ տկարութեանս փորձանաւորացս օգնական:*

## ԶԻՆՉ ՀՐԱՄԱՆՆ ԴԱՐՁԵԱԼ ԳՈՀԱՆԱԼՈՅ ԶՏԵԱՌՆԷ ԲՈԼՈՐՈՎ ՍՐՏԻՒ

ՈՐՊԷՍ *վերագոյն ցուցաւ՝ կարգաւորապէս բերէ զհրաման վարդապետութեան իւրոյ սարկաւագն. քանզի որպէս յետ զօրանալոյն զզօրացեալ միտսն համբառնալ հրամայեաց 'ի վեր, այսպէս և յետ համբառնալոյն գոհանալ օրհնաբերէ զտեառնէ բոլորով սրտիւ: Քանզի խոստովան եղեն՝ թէ ունիմք զհայեցուածս աչաց մտաց առ անմահական տէրն. վասն այսորիկ ասէ, ով եղբարք, յորժամ համբարձայք և հայել յԱստուած արժանի գտայք, մի վայրապար և անքննապէս նայիք յանճառ սիրոյն տեսութիւն և յամենապայծառ փառացն վայելչութիւն, այլ գոհացարուք զնմանէ բոլորով սրտիւ. զի մեծ արար տէր զառնել իւր ընդ մեզ. զի լցոյց զբերանս մեր խնդութեամբ և զլեզուս մեր ցնծութեամբ, և գոհացարուք զնմանէ, զի զանձն իւր ետ փոխանակ անձնեցուն մեր բոլորով սրտիւ. զի տեսանէք զնա մարմնաւոր բնութեամբս անշարժ խարիսխ յուսոյ մեր ընդ աջմէ Հօր նստեալ: Գոհացարուք զտեառնէ, զի քահանայագործէ զչարչարանս իւր ընդ մեզ Հօրն իւրոյ սրբութեան պատարագ. չիք այսպիսի գոհութեան արժանի տէր որպէս զսա՝ որ փոխանակ ծառայիցս մեռանի. վասն այսորիկ կամիմ զի բոլորով սրտիւք բացեալ զբերանս՝ շնորհակալ՝ լիցուք նմին գոհութեամբ: Որում պատասխանեն. “Արժան և իրաւ„: Հրաման գոհանալոյդ զոր ընկալաք 'ի քէն,*

1 Այլք, Շնորհընկալ.

հայր մեր և առաջնորդ, ամենավայելչապէս արժան է զի կատարեսցի 'ի մէջ մեր, և իրաւացի է և արդար՝ զայնպիսի քաղցր և ողորմած տեառնէ գոհանալ ամենեցուն: Բայց պարտ է քննել թէ ընդէր այժմ ոչ գոհանան և կատարեն զհրամանս վարդապետին, այլ միայն իրաւունս զգոհութիւնն վարկանին, և լռեալ դադարեն: Քանզի յայլում ամենայն ոչ վարեցան այսպիսի օրինակաւ, այլ ընդ հրամանին և առնէին զոր ինչ լսէին. քանզի յորժամ ասէր. «Ո տէր աղաչեսցուք», աղաչէին. և յորժամ ասաց զմիտս համբառնալ, համբարձին. իսկ այժմ ասացեալ՝ գոհացարուք զտեառնէ, ոչ գոհացան, այլ իրաւունս դատեալ զգոհանալն՝ լռեցին:

Ո՛վ աստուածավայելուչ և ամենապայծառ վայելչութեանս եկեղեցական խորհրդածութեանս. արդարև ոչ մարդ՝ այլ քննիչ խորոցն Աստուծոյ սուրբ Հոգին զսա մեզ աւանդեաց, որպէս հաւատամք: Արդ զինչ ուսանիմք 'ի նմանէ՝ արկեալ տարակուսանացս լուծումն: Քահանայն առաքեցաւ հրեշտակ 'ի ժողովրդենէս առ Աստուած, և 'ի ձեռս նորա ետուն ամենեքեան զխոստովանութիւն հաւատոյ տնօրէնութեանն Քրիստոսի, և զմարմնոյն նորին նշանակս, և զարեանն ուխտ կտակի առ 'ի նուիրել Աստուծոյ Հօր. քանզի անկար էր ամենեցուն սոցա տեսանել զնա անընդմիջաբար՝ որ ոչ անձնաւորապէս հաղորդեցաւ բնութեա՛ս, այլ միայն կամօք և ողորմութեամբ 'ի ձեռն համափառն Որդւոյ: Իսկ քահանային առեալ 'ի ձեռս և զդաշն ուղղափառ հաւատոյն, և զնշանակ նորին մարմնաւոր, առաջնորդութեամբն Քրիստոսի և նովաւ եմուտ 'ի ներքին կողմն վարագուրին՝ առաջի Աստուծոյ Հօր հրեշտակ ժողովրդեանն և պատարագիչ Քրիստոսի. և մինչդեռ չև ևս նա տուեալ էր 'ի ձեռս Հօր Աստուծոյ զպատարագն բանաւոր, այսինքն զխորհուրդ փրկագործ տնօրէնութեանն Որդւոյ, սարկաւագն երագեալ փութացաւ, և պէսպէս զգուշութիւն ետ ժողովրդեանն գթական սիրով՝. մինչև զնոսա ըստ կարի իւրեանց ընդ քահանային վերացոյց, ոչ առաջի Աստուծոյ Հօր,

1 Մ՚ի օրին. Սիրական գթով:

զի և ոչ կարէին զնորա հայեցողութիւն լուսոյն տեսանել, այլ առ քահանայապետն իւրեանց Քրիստոս՝ որ մարմնաւորութեամբն մշտակից է տկարութեանն մեղաց. առ որ և հայեցան, զորոյ և զողորմութիւնն 'ի պատարագելն ծանեան, յոր և զաչս մտաց ամբարձին: Իսկ հրաման գոհանալոյ առեալ՝ չև ևս գոհանան, մինչ դեռ ոչ է քահանային գոհացեալ, և ապա ըստ կարգի սոքա յետինքս յետ առաջնոցն գոհանալոյ գոհասցին, որպէս և յետ նորա մտացն համբառնալոյ ապա զմիտս բարձրացուցին: Բայց սակայն և գոհութիւնն ոչ ընդ մի գնայ շաւիղ, զի քահանայքն հանդերձ Քրիստոսի պատարագաւն՝ զոր բարձեալ ունին 'ի ձեռս մտաց և մարմնոյ, առաջի Աստուծոյ Հօր մտանեն, և զնմանէ գոհանան յաղագս միածնին շնորհաց: Իսկ ժողովուրդս անջրպետութեամբ քահանայիցն և Քրիստոսի՝ բացակայ գոլով 'ի Հօրէ՝ ոչ կարեն առ նա ձկտել. այլ զՔրիստոսէ գոհանան, որում և ընթերակայ են յարտաքին վայր սրբոյ տաճարին: Արդ այժմ չև ևս քահանայիցն գոհացեալ՝ ժողովուրդն իրաւացի վարկանին միայն զգոհութիւնն, և նման համբերութեամբ մինչև քահանայքն զպէսպէս տնօրէնութիւնն Քրիստոսի գոհութեամբ Հօր նուիրեսցեն, և ապա ինքեանք զնմանէ որ զայսքան շնորհս արար իւրեանց՝ գոհասցին. ուստի և այժմ ասեն առ սարկաւագն. գոհանալ զտեառնէ մեր հրամայեցեր մեզ, և այս արժան է և արդար. բայց մնամք մինչև խորհրդածեն քահանայքն զպատճառս գոհութեանն, և ապա բացեալ զբերանս՝ ի սրտէ օրհնեսցուք զնա, և գոհասցուք վասն ամենայնին:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ ԱՂՕԹԻՑՆ ԶՈՐ ԱՍԷ ՔԱՀԱՆԱՅՆ

“ԱրժԱՆ է ստուգապէս և իրաւ՝ ամենայորդոր փութով միշտ երկիր պագանելով փառաւորել զքեզ Հայր ամենակալ”: Ժողովրդեանն բանի համաձայնի 'ի սկզբանս, և 'ի նոցանէ առնու և այժմ զնիւթս աղօ-

1 Մի օրէն. Տ--էւ:

Թիցս որ վասն նոցին մատուցանէ Աստուծոյ Հօր . որժամոր , ասէ , զքեզ դատեցան գոհանալոյ , և արդարապէս զմտաւ ածեալ խորհեցան զայս . զի իրաւացի՛ է ոչ միայն գոհանալ զքէն Հայր սուրբ , այլ և յորդորել 'ի սոյն նպատակ աղօթից զմիմեանս փութով , և ընկից տալ զկորացումն պարանոցի երկրպագութեան ընդ գոհութեամբքն փառատրութեան . Ե՛ր վասն . յաջորդ բանիւս ցուցանէ :

“ Որ քոյին անքննելի և արարչակից բանիւդ զանիծիցն բարձեր զկրճիմն ” : Մեղաւ , ասէ , մարդն առաջին խորհրդակցութ՟ չարին , և ըստ արժանի իւրում անիծիւք դատապարտեալ՝ մահուամբ մեղացն մեռաւ , և փշովք ախտից մարմնոյն միշտ խոցոտեցաւ , և փոխանակ աստուածային գիտութեանդ հացի զվայրի բանջար չար խորհրդոց և երկրային հեշտութեանցն կերակուր ընկալաւ : Իսկ դու ամենազօրութ տէր , ոչ 'ի սպառ թողեր զպատժեալն ընդ դատապարտութեամբ , նաև ոչ 'ի փրկելն զիշխանականդ արկեր 'ի գործ զօրութիւն . այլ զի՞նչ . զանքննին և անհաս բանդ քո՝ զննելի ' և խոնարհ բնութեամբ մարմնացուցեր . և ըղմեղանչական մարմնոյ յատարին նետից՝ 'ի ձեռն նորա բնաւորական կրիւքն արդար ծանուցեալ զխոցեր , և տուեալ զանմեղն փոխանակ մեր 'ի մահ՝ զկրճիմն անիծից դատապարտութեանն մեր՝ նորա մահուամբն պատառեցեր . ուստի և արժան է այդքան երախտեացդ շնորհէ գոհանալ :

“ Որ ժողովուրդ՝ ինքեան առնել զեկեղեցի սեփհականեաց զհաւատացեալս 'ի քեզ ” : Զանոք , ասէ , որ զանէծս մեր եբարձ , ոչ միայն զայս կատարեաց յաշխարհի և գնաց 'ի միջոյ մեր , այլ իւր ժողովուրդ ընտրեաց յամ՟ ազգաց զմի եկեղեցի քրիստոնէից՝ միով հաւատով առ քեզ Աստուած զսա ձօնացուցեալ , և իւր անուամբն սեփհական յամենայն ազգաց զսա պսակեալ :

“ Իւ զննելի բնութեամբ քո 'ի կուսէն անտեսութեան հաճեցաւ բնակիլ 'ի մեզ ” : Նախ անզննելի դաւանեաց զնա և բան , որպէս և ժողովուրդն 'ի դաշն հաւատոյն խոստովանեցան . ապա զեղանակ մարդանա-

1 [illegible]

2 [illegible] Նոր ժողովուրդ :

լոյն 'ի մէջ առնու , առ 'ի ցուցանել՝ թէ որպէս ստացաւ զեկեղեցի հաւատացելոց . անզննելին ասէ՝ զննելի բնութիւն ընկալաւ 'ի սպասաւորութենէ կուսական արգանդին , և այնպէս ընդ մարմնին անճառ միութեամբ խառնեցաւ : Բայց տես զասելս , "Հաճեցաւ բնակել 'ի մեզ" . քանզի նուրբ է խորհուրդս , այսինքն զի Քրիստոս ոչ եթէ հաճութեամբ բնակեցաւ 'ի մարմնին իւր , այլ բնութեամբ խառնեցաւ . ապա ընդէր ասէ , հաճեցաւ բնակել 'ի մեզ : Զնախ քան զմարմնանալն դնէ զկամս Որդւոյ . քանզի որպէս և Հայր՝ նոյնպէս և նա ինքնահաճոյ կամօք 'ի պէտս փրկութեան մեր ախորժեաց զմարմնանալն . իսկ յորժամ մարմնացաւ՝ ոչ հաճութեամբ 'ի մարմնին բնակեցաւ , այլ բնութեամբ ընդ նա խառնեցաւ . քանզի այս զիարդ լինէր ըստ չար կարծեացն Նեստորի , ուր յառաջ աստուածութիւն հանգեաւ 'ի կոյսն , և ապա բնութիւն մարմնոյն նովաւ և ընդ նմին խառնեալ կերպացաւ :

"Եւ նորագործ աստուածապէս ճարտարապետեալ զերկիրս երկին արար" : Արդարև աստուածային ճարտարութիւն , և գերազանց ամենայն եղականացս՝ նորա հնարագործութիւնն սքանչելի , և միայն որպէս և վայել էր Աստուծոյ գործ . զի արկեալ զբազմապատիկ իմաստութիւնն 'ի վար՝ զերկիրս երկին յեղաշրջեալ դարձոյց : Ասիցես , որպէս . զի զմարմինս աստուածացոյց : Արդ յորժամ երկրային տարրն աստուածացաւ 'ի մէջ մեր , երկիրս երկին եղև , և երկրաւորքս երկնաւորք . զի ուր Թագաւորն է՝ նոյն վայր և Թագաւորութիւնն : Քանզի ոչ թէ երկին վասն այնորիկ է երկին և փառաւոր , զի անօսր է , այլ զի իսկութեամբ՝ արարչին տեղի հանգստեան է . ապա նոյն 'ի յերկիր էութիւնն էացոյց լինել երկին և սմա , և եղև յերկիր որպէս կարգ քանիս տնտեսէ :

"Վասն զի որում ոչն հանդուրժէին առաջի կալ զուարթնոցն Ջոկքն , զարհուրեալ 'ի փայլակնացայտ և յանմատոյց լուսոյ աստուածութեանն , եղեալ այդպիսիդ մարդ յաղագս մերոյ փրկութեան" : Ուսաք զանհանդուրժելի երկեղ նոցա յաստուածութենէն՝ 'ի թևաքօղելոյ դիմաց սերովբէիցն , որպէս պատմեաց մարգարէն Եսայի . արդ նոյն որ այնպէս սոսկալի 'ի

մէջ նոցա, վասն մերոյ փրկութեան մարդասիրեալ 'ի վերայ երկրի տեսաւ հողանիւթ մարմնով համարձակելի և դիւրամերձենալի երկրաւորացս քան երկնաւորացն ։

„Շնորհեաց մեզ ընդ երկնայինսն պարել զհոգեղէն զպարս. և ընդ սերովբէս և ընդ քերովբէս միաձայն սրբասացութեամբ յօրինել նուագս, և համարձակապէս՝ գոչելով աղաղակել ընդ նոսին, և ասել„ ։ Ոչ թէ վայրապար ժպրհիմք ասէ 'ի սրբաբանութիս, այլ զի շնորհընկալք եղաք 'ի մարմնաւորութեան միածնիդ բարձրագոյն այս շնորհաց սերովբէիցդ սրբերգենութեանն համաձայնեալ. քանզի մինդ է Աստուած՝ որ երկնաւոր նոյն և երկրաւոր, 'ի միաձայնութիւն փառաց իւրոյ զսոսա ածեալ ժողովեաց, երգել զսրբասացութիւնս և ասել ։

## ԸՆԴԷՐ ԱՅԺՄ ԶՍՐՈՎԲԷԱԿԱՆ ԵՐԳՆ ԱՂԱՂԱԿԷ ԵԿԵՂԵՑԻ

ՅՈՒՑԱՔ յառաջագոյն 'ի խորհրդածութեան ըղքահանային հօր խօսակից, և զժողովուրդն Որդւոյ. զնոյն է և այժմ տեսանել. քանզի պատմեալ նորա խորհրդաբար զտնօրէնութիւն ներմարդութեան Քրիստոսի հօր, չև ևս դեռ զխաչին ձառ և զչարչարանացն որով փրկեցաք՝ 'ի մէջ առեալ, այլ միայն զմարմնով երևել Բանին 'ի յերկրի յիշատակեալ, սկսանին ժողովուրդն ազդեցութեամբ քահանային, որ կցորդ է խորհրդոյս, ասել առ Քրիստոս. "Սուրբ սուրբ սուրբ, տէր զօրութեանց„ ։ Վկայ լինին և հաստատեն ըղբանս քահանային՝ որ խոստովանեցան զերկիրս երկին լինել, և սկսանին համաձայն սերովբէիցն զերգս 'ի մէջ իւրեանց՝ հաւատով տեսեալ զփառսն Աստուծոյ. քանզի էութեանն հասումն ոչ նոցա է յայտնի յերկինս, և ոչ մեզ յերկիրս. իսկ փառացն առաւելութեամբն և նախախնամութեանն ազդմամբ, որպէս երկինքն է լի և երկիրս եղև Քրիստոսիւ. վասն այսորիկ և ասեն երկրաւորքս.

1 Մի օրին. Համարձակաձայն ։

"Լի են երկինք և երկիր փառօք քո": Այսպէս է Աստուած մեծաւոր, զի որպէս ճառագայթ արեգականն զգալի տարերքս լնու, այսպէս և իմանալի լուսաւորութիւն. փառաց նորա զիմացող էութիւն երկնաւորացն և երկրաւորացս։

"Օրհնութիւն ՚ի բարձունս": Քեզ ասէ Քրիստոսի մեր փրկութեանդ պատարագի՝ ոչ միայն ՚ի մէնջ օրհնութիւն ՚ի յերկիրս, այլ և ՚ի բարձունս երկնից ՚ի հրեշտակացդ։

"Օրհնեալ որ եկիր և գալոց ես անուամբ տեառն. ովսաննա ՚ի բարձունս": Օրհնեալ ասէ, որ եկիր նախ, և զերկիրս երկնի արարեր, և զմեզ փրկեցեր անուամբ և կամօք Հօր, և գալոց ես դարձեալ, և զստացեալ ժողովուրդս վերստին նորոգել. քեզ, ասէ, առաւելապէս օրհնութիւն ՚ի բարձունս երկնից, ուր ելեալ աստուածապէս՝ զմեզ ընդ քեզ վերածեր։ Զայսուսիկ ազդեցութեամբ սարկաւագին եղանակեն ժողովուրդքն առ Քրիստոս սրբասացութիւն՝ որ ՚ի մէջ նոցա պատարագի փրկութիւն, կեանք և նորոգութիւն. իսկ քահանայն և ըստ այսմ նոցին համաձայնի առ Հայր աղօթիւքն։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ԱՂՕԹԻՑՆ

"ՍՈՒՐԲ սուրբ սուրբ ես ճշմարտապէս և ամենասուրբ": Տեսանե՞ս, զերեք սուրբն՝ զոր ժողովուրդքն Որդւոյ ետուն, քահանայն Հօր դնէ. իսկ Պօղոս ՚ի գործս առաքելոցն՝ սուրբ Հոգւոյն, ոչ ինչ այսու յատուկ անձնաւորութեանն Երրորդութեան շփոթումն խորհեալ, այլ կրկնաբանութեամբն զևս հաստատութիւնն ասացելոյ սրբութեանն արձանացուցեալ։

"Եւ ո՛վ ոք պանծասցի բովանդակել բանիւ զքո ՚ի մեզ զանբաւ բարեգործութեանդ՝ զեղմունս": Որպէս ցուցեալ է յառաջագոյն, զայն այժմ երկրորդէ՝ թէ ոչ եմք կարող եղականքս զարարչիդ ՚ի վերայ մեր նախախնամութեան ճանապարհս կատարելապէս նկա-

1 Մի օրէն . Բարէգործ[illegible]։

տել. ո՞վ որ ասէ պանծայ զքո գործոյդ առատապէս զեղումն ողորմութեանն զրել. արդարև ոչ որ, ըստ այնմ. « Ո՞ գիտաց զմիտս տեառն, կամ ո՞ եղև նմա խորհրդակից »:

« Որ և անուղէն իսկ 'ի նախնումն զանկեալսն ընդ մեղօք զանազան եղանակօք խնամեալ սփոփեցեր »: Տես, թէ որպէս մեծաւոր հաղորդութեամբ սկսաւ խորհրդակցել Աստուծոյ քահանայս, անուանս 'ի վերուստ զերախտեացն յիշատակաց սկիզբն արարեալ՝ որ առ մարդիկ: Զանազան, ասէ, յեղանակօք զվիճակեալ տրտմութեան և մեղաց զմնութիւնս սփոփեցեր. և թէ որքան են յեղանակքս, համառօտ բանիւն նշանակէ.

« Մարգարէիւք, օրինացն տուչութեամբ, քահանայութեամբ, և ստուերակերպ երնջոցն մատուցմամբ »: Մարգարէս այժմ տիրապէս զՄովսէս և զիւրսն խնամաւքն՝ որք ընկալան զօրէնսն նեցուկ անկութեան տատանեալս բնութեան. սա յարոյց զքահանայութիւնն՝ օրինակ ճշմարիտ քահանայութեան, և զզոհսն անջակիզաց՝ ապացոյց ճշմարիտ պատարագի, ըստ որում և առաքեալ 'ի թուղթն որ առ Եբրայեցիսն կարգաւորապէս առնէ սոցին բաղդատութիւն. որ ոք կամի վերահասու սոցին լինել, զառաքելականն մատենի ծանիցէ զզօրութիւն:

« Իսկ 'ի վախճան աւուրցս այսոցիկ զամենողակ իսկ զպարտեացն մերոց խզեալ զգատակնիք »: Այնոքիկ տուան յառաջագոյն, բայց տկարացան զոք արդարացուցանել, զի փակեաց օրէնքն զամենեսեան ընդ անիծիւք և ամենեքեան գտան նմա յանցաւորք. վասն այսորիկ 'ի վախճան յաւիտեանցն յանարգութիւն մեղաց Քրիստոս կամօք Հօր՝ իւրով պատարագաւն քաւիչ աշխարհի յայտնեցաւ, և ըստ որում ասէ, « Զամենողակ պարտեացն խզեալ զգատակնիք ». այսինքն զի արդարացոյց զմարդիկ, ոչ 'ի ձեռն գործոց, այլ 'ի ձեռն հաւատոց, 'ի մեղացն զոր ըստ նախահօրն յանցանաց պարտէաք, և զոր ըստ օրինացն, և յորմէ ըստ իւրաքանչիւր մոլորութեան:

« Ետուր մեզ զՈրդիդ քո միածին՝ պարտապան և պարտս, զենումն և օծեալ, գառն և երկնաւոր հաց »:

Մեծ և առատ մարդասիրութեամն[1] լինի յիշատակիչ առ Աստուած խորհրդովս. զի տեսեալ զմեզ ասէ յայսքան վտանգս՝ ոչ անտես արարեր ըստ մեղացն, այլ եղեր մեզ փրկիչ, ոչ զպատգամաւոր ոք և ոչ զհրեշտակ, այլ զՈրդիդ քո զմինդ և զմիածինդ, և զուարճացուցեր սիրելեաւդ զթշուառացեալքս. այն զի եղև պարտապան քեզ ընդ մեր, և պարտս փոխանակ մեր: Եւ այս որպէս. քանզի անմեղ գոլով Քրիստոսի, որպէս զպարտական անիծիցն Ադամայ դատապարտեցաւ 'ի վերայ խաչին. վասն այսորիկ ասէ պարտապան, զի ինքն հատոյց զպարտս մահուն զոր մեք պարտէաք. իսկ եղև պարտս, զի մեք ամենեքեան որ ըստ օրէ զնա տամք նուէր հաշտութեան փոխանակ պարտուց մեղաց մերոց. և նա յորժամ ասեմ, զխորհուրդ չարչարանաց նորին ծանիր առաջի քո եղեալ նշանակօքս պատարագեալ:

«Զենումն և օծեալ»: Այսինքն զի զենաւ որպէս զպատարագ, և նուիրեաց զզենումն իւր Աստուծոյ Հօր որպէս զօծեալ և զքահանայ:

«Գառն, և երկնաւոր հաց»: Գառն ըստ մարմնոյն ամբծութէ, և հաց երկնային ըստ անճառ միացելոյն ընդ նմին աստուածութէն. քանզի այսպէս երևեցաւ 'ի մէջ մեր. մարմնոյն չարչարանօք որպէս գառն զմեղս մեր եբարձ, և զաստուածութեանն սէր որպէս զհաց ետ մեզ կերակուր և մխիթարութիւն, ըստ այնմ. «Որ ուտէ 'ի հացէս որ էջն 'ի յերկնից, մի՛ մեռցի», այսինքն 'ի դիտութենէ սիրոյս զոր ես ձեզ բերի:

«Քահանայապետ և պատարագ»: Զի պատարագ քահանայագործեաց վասն մեղաց մեր ոչ զօտար արիւն, այլ զիւրն անարատ և անապական:

«Վասն զի ինքդ է բաշխող, և նոյն ինքդ բաշխի 'ի միջի մերում միշտ անծախապէս..»: Յետ ասելոյն քահանայապետ, ապա և բաշխիչ պատարագին զնոյն նշանակէ. և զայս որպէս իմասցուք. այսինքն զի ոչ թէ այնու բաւականացաւ տալ միայն Հօր զմահն իւր նուէր հաշտութեան աշխարհի, և ոչ թէ միայն համապատիւ ծնողին զանճառ սիրոյն խորհուրդ առ փրկեալքս

1 Երկու գրին. Մարդասիրութեան:

յայտնեաց. այլ զի՞նչ. և մեզ զնորին գիտութիւնն բաշխեաց յասելն, այսպիսի սէր ոչ ոք կալցի իբրև զիմն՝ որ զանձն իմ եդի ՚ի վերայ բարեկամաց իմոց, և հովիւ քաջ զանձն իւր դնէ ՚ի վերայ ոչխարաց։ Տեսանե՞ս թէ որպէս առատապէս բաշխէ զգիտութի՛ սիրոյ իւրոյ ամենեցուն։ Վասն այսորիկ ասէ. «Ինքդ է բաշխող». ինքն միածի՛ն քո Որդիդ բաշխեաց մեզ զայսքան աստուածական խորհրդոյ գիտութիւն։ «Այլ նոյն ինքդ բաշխի ՚ի միջի մերում միշտ անծախապէս»։ Նոյն ինքդ է ասէ այդքան առատութիւն խորհրդական սիրոյդ և գթութեանդ, զոր ՚ի մարմնաւորութեն իւրում ետ իշխանական մնաց մերոց Ճաշակել, միշտ բաշխի ՚ի մեզ յիւրաքանչիւր ժամանակս, և զմայլեալ յագեցուցանէ զամենայն կերողս՝ ծախեալ և ոչ բնաւ. զի զիա՞րդ իմանալի կերակրոյ ծախումն։ Զսա կերան առաքեալքն և անմահացան, վկայքն և յօժարութեամբ մեռան, Ճգնաւորքն և աշխատեցան։ Այլ որ զայսքան բազմութիւնն կերակրեաց ՚ի սեղանոյ մարմնոյ և արեան իւրոյ, բաշխի և այսօր նոյն, և ոչ ծախի. քանզի ուտեմք զգալի նշանակօքս զիմանալի խորհուրդ սիրոյ մարմնացելոյն, և իմացականապէս՝ յորմէ միշտ ծասկելովն քաղցնումք, և նա ՚ի յաւէտ կերակրելն մնայ անծախելի[1]։ Իսկ եթէ ո՞ է կերակուրն մեր, կամ Աստուծոյ Հօր պատարագն, արդ ևս կարգաւորապէս ուսանիս։

«Վասն զի եղև հաւատովս և առանց ցնորից մարդ, և անշփոթ միութեամբ մարմնացեալ ՚ի սուրբ և յաստուածածին կուսէն Մարիամայ»։ Զայս ասէ քեզ պատարագեմք, Աստուած և Հայր, զսոյն և մեք քաղցելաբար Ճաշակեմք, զի Որդին քո հաւատապէս մեզ հաւասար մարդ երևեցաւ, և անշփոթ խառնմամբ ընդ մարդկայինս բնութիւն միացաւ. արդ զայս առ քեզ նուէր, այս սիրոյս յիշատակաւ ընդ մեզ հաշտեաց։

«Հանապարհորդեաց ընդ ամենայն կիրս մարդկային կենցաղոյս առանց մեղաց»։ Տես պատարագ, տես կաշառս գօրաւոր, զարդար սաստն ՚ի քաղցրու-

1 Այլք, Անծախողն։

թիւն յեղաշրջող. զոյ, ասէ, Ճանապարհ հորդեաց ընդ կիրս մեր և ոչ մեղաւ, մեք կրեցաք զնոյն, և 'ի կրելն բնաւորապէս արտաքոյ բնութեանս Ճանապարհի՝ խաբէութբ թշնամւոյն որոգայթեալ կորացաք. արդ հայեաց տէր 'ի դորա Ճանապարհն և 'ի մերն. զի թէ ոչ էր թշնամին պատրեալ, անմեղ էաք ըստ բնութենս կրից, որպէս և տէրդ մեր եղև. ապա ուրեմն պատիժ յանցանացն ոչ մեզ, այլ թշնամւոյն փորձողի, 'ի ձեռն փորձանաւորիդ օգնականութեանն համարեսցի, և 'ի մեր վերայ տեառնդ անմեղութիւնն սփռեալ հանգի-ցէ: Ահա անճառ խորհուրդ և արդար իրաւանց բաց-երևութիւն, զի անմեղիդ ասէ կրիւքն՝ մեր մեղան-չականս կիրքն 'ի յանցուցանողին գլուխն դարձցի, ըստ այնմ. “Իշխան աշխարհիս այսորիկ դատապարտեալ է”. և զի դատաստան մեղաց մարդկան իմն անմեղ մար-մնով 'ի գլուխ նորին կուտեցաւ, վասն այսորիկ և դա-տաստանի պարտական միայն նա գտաւ:

“Իս յաշխարհակեցոյց և յառիթն փրկութեան մերոյ եկեալ կամաւ 'ի խաչն”: Ո՜ ինչ է խորհուրդ խաչին՝ որ զաշխարհս կեցոյց, զի ասէ, յաշխարհակե-ցոյցն եկն 'ի խաչն: Քրիստոս երևեցաւ մարմնով, Ճա-նապարհորդեաց նովաւ ընդ անմեղութեանն շաւիղ, և ինքն միայն երևեցաւ արդար. իսկ աշխարհս ամենայն 'ի խորս դատապարտութեանն անիծիցն Ադամայ էին կործանեալ, և հնար փրկութեանն ըստ արդար իրա-ւանցն Աստուծոյ էր փակեալ. վասն այնորիկ նա ըզ-բազմապատիկ իմաստութիւնն արկեալ 'ի գործ՝ ետ զմահ իւր 'ի խաչն փոխանակ ամենայն աշխարհի՝ Աս-տուծոյ Հօր: Իսկ նա առեալ 'ի ձեռս զԱրդւոյն ան-մեղ մեռանելն, որպէս վասն միոյն Ադամայ զամենեսին զանմեղսն ըստ նորա յանցանացն մահուամբ կործա-նեաց, այսպէս և վասն միոյ անմեղին Քրիստոսի մա-հուն՝ զամենեսեան զմեղանչականս վերածեալ 'ի մա-հուանէ 'ի կեանս՝ կեցոյց: Յաղագս այսորիկ զխաչն վայելչապէս առիթ փրկութեան մերոյ կոչէ. զի 'ի նա մեռաւ Քրիստոս և փրկեաց, մահ կամաւորապէս և ոչ 'ի հարկէ. զի “Իշխանութիւն ունիմ, ասէ, դնել զանձն իմ, և իշխանութիւն ունիմ միւսանգամ առ-նուլ զնա”:

"Առեալ զհացն 'ի սուրբ, յաստուածայինն, յանմահ, յանարատ, յարարչագործ 'ի ձեռսն ՚ իւր, օրհնեաց, գոհացաւ, ողբեաց,,։ Առաքեալն Պօղոս գրէ, "Ամենայն արարածք Աստուծոյ բարի են 'ի բարի արարչէն ստեղծեալ,,. իսկ եթէ բարի են, որպէս և ենն ճշմարտապէս, զի՞նչ նշանակէր տեառնն ըզհացն օրհնել յայնժամ, զոր այժմ 'ի խորհրդեանս Հօր պատմէ քահանայս։ Արդարև էր բարի հացն, իսկ օրհնելով տեառնն՝ տպաւորեաց 'ի նա զզօրութի՟ աստուածայինն մարմնոյ իւրոյ, զի օրհնելով զոք՝ շնորհ կատարմանն ըստ այնմ իրի աւանդեսցէ նմա՝ առ որ կերպացեալն է, որպէս ուսեմք 'ի քահանայութիւնն, և այլումն յառաջնորդութիւնն օրհնեալ տամք շնորհս. այսպէս և նա զհացն էառ յաստուածայինն ձեռսն. սոսկ հաց միայն կերակուր մարմնոյ, իսկ օրհնելովն՝ աւանդեաց 'ի նա որպէս տէր և արարիչ զՀոգին շընորհաց, ունել զզօրութիւն ներգործութեան կատու-թեան մարմնոյ իւրոյ, առ 'ի կերակրելոյ ընդ զգալիս և զիմանալի հոգիս քաղցրաճաշակ իւրն խորհրդոց գիտութեամբ. իսկ գոհացաւ զՀօրէ որպէս զմի ոք 'ի մէնջ, և 'ի դիմաց մեր շնորհակալ եղեալ նմա՝ վասն տալոյ զՈրդին իւր 'ի փրկութիւն մեզ կամօք իւրովք և գթութեամբ, և ուսոյց իւրոցս զխորհրդոց իւրոց կատարումն 'ի փառս և 'ի գոհութիւն Հօրն նուիրել։

"Եբեկ,,։ Ստոյգ մահն իւր 'ի վերայ աշխարհի յայտ արարեալ, որպէս զի մի վարկցուք հարևանցի ինչ խորհուրդ, այլ որպէս ճշմարիտ զհացն եբեկ, այսպէս և զմարմինն իւր սպան 'ի պէտս մերոյն կենդանութեան. և ապա յետ այնորիկ ետ աշակերտացն, և ընդ նոսին ամենայն աշխարհի։

"Ետ իւրոց սուրբ և բազմեալ աշակերտացն՝ ասելով. առէք կերայք 'ի սմանէ ամենեքեան, այս է մարմին իմ որ վասն ձեր և բազմաց բաշխի 'ի քաւութի՟ մեղաց,,։ Պարտ է մեզ ըստ կարի զօրութեամբ սուրբ Հոգւոյն պարզել զխորհրդոյս զօրութիւնս. քանզի արդարև խորհուրդ է պատրուակեալ ընդ բանիւ քօղով բազում. և նախ զայն քննել, էր վասն հուպ առ մահն

1 Մի օրին. Զէտն ։

տրար զայս Քրիստոս, և ուսոյց մեզ. յետ այնորիկ թէ որպէս եղև աւանդեալ նշանակքն մարմնին իւր և արիւն. երրորդ՝ թէ որպէս մեք կատարմամբ խորհրդ-դոյս նմանիմք նմա, որպէս և հրամայեաց. և չորրորդ՝ թէ որպէս, և զինչ է մարմնոյ նորին և արեան էութիւն և բնութիւն խորհրդոյն: Արդ քանզի մախանօք չարութեան նախանձուն սրեալ էր Հրէիցն սպանանել զնա, զի մի կործեսցեն աշակերտքն և աշխարհ՝ թէ ըստ տարապէպ պատահման եղև այն նմա, առ զհացն 'ի ձեռս և ետ նոցա յետ օրհնելոյն և գոհանալոյն, յայտ արարեալ՝ թէ որպէս զայս հացս կամօք իմովք նուիրեցի Հօր գոհութ̃ և բաշխեմ ձեզ, այսպէս և զմահն իմ կամօք իմովք տամ նմա պատարագ փոխանակ աշխարհի թողութեան, և բաշխեմ՝ յետ ընդունելոյ նորա և ողորմելոյն ձեզ 'ի ձեզ. զի որ ոք ճաշակէ զայն խորհրդոյն զօրութիւն հաւատալով և սիրով՝ սրբի 'ի մեղաց: Նաև եղև այն մարմնին իւր և արիւն՝ օրհնելովն. զի որպէս ինքն օրհնեաց զիւրն զմարմին միութեամբ աստուածութեանն, այսպէս և ինքն օրհնեաց զմարմնոյն[1] իւրոյ նշանակ ըստ իւրում զօրութ̃ն, և ապա ետ զնա գոհութեամբն Հօր, որպէս զանձն իւր 'ի վերայ խաչին, և յետ այնորիկ բաշխեաց աշակերտացն, ըստ որում յետ մահուն փրկանք զնա էառ ամենայն աշխարհ: Այլն նման է և մերս խորհրդոյ կատարումն. քանզի դնեմք զհացն սոսկ[2] 'ի վերայ ապացուցին Քրիստոսի սեղանոյն, որպէս 'ի վերայ ձեռաց նորին, և օրհնեմք զնա այս խորհրդոցս պատմութեամբ ըստ նմանութեան մարմնոյն Քրիստոսի, և ապա յառաջ ածեալ գոհութեամբ նուիրեմք Աստուծոյ՝ որպէս 'ի խաչն Հօր, ըստ ասելոյն. “Այս արդ մեք տէր յառաջ բերեալ զայս խորհուրդ”. որովք գոհանամք զքէն և փառաւորեմք, և յետ այնորիկ 'ի մեզ բաշխեալ ճաշակեմք: Այլ թէ զինչ է բնութիւն խորհրդոյ նորին և արեան՝ ասելի է: Ոչ թէ սոսկ հացս և գինիս, այլ զի հացս քարոզէ մեզ և ունի յինքեան հաստատեալ, թէ որպէս ես ճշմարիտ բեկանիմ, այսպէս և Քրիստոս ճշմարտապէս վասն ձեր մեռաւ, և մեք 'ի

1 Մի օրին. Զմարմինն:　　2 Երկու օրին. Ասէ:

հայելն 'ի նա նկատեմք ընդ ինքեան զՔրիստոսի նեղ-
մարդութեանն տնօրէնութիւն մտացս հայեցողութք ,
որ միացեալ է հզօրապէս ' ընդ հացին , ըստ որում և
ասացն . " Առէք կերայք ' 'ի սմանէ , այս է մարմին
իմ , որ վասն ձեր և բազմաց բաշխի " : Արդ զո՞ իմա-
ցուք հրամանաւն ուտել մեզ , զի ասէ , " Առէք կե-
րայք " . եթէ սոսկ հաց լցուցիչ մարմնոյս , ո՞ր դիցուք
զբանականն հոգւոյս մաքրութիւն՝ որ բանիւ և ոչ հա-
ցիւ կերակրի . և զի՞արդ նա որ զամենայն շնորհս հո-
գւոց և ոչ մարմնոց կատարեաց , այժմ զգալի կերակրովս
'ի զգալի մարմնոյս միայն պարապեաց սրբութիւն . ապա
թէ և հոգւոյ սա տուաւ քաւութիւն , զի՞արդ առանց
բանին որով կերակրի նա . ուրեմն և ոչ բնաւ . վասն
այսր և մեզ բանաւորապէս պարտ է 'ի խորհուրդս յա-
ռել , այսինքն՝ զի ասաց , առէք կերայք ընդ հացիդ
և զգիտութիւն իմոյ մարմնի և արեանն լինելոյս , և 'ի
վերայ երկրի հաւատար ձեզ մարդ երևելոյս , զի այն
ճաշակ է որ քաղցրացուցանէ զքիմս ձերոց մտաց 'ի
յուտելն , նա և զօրացուցեալ պարարէ զիշխանական
ձեր հոգի , որպէս և հաց զմարմին . առէք կերայք մտօք
միշտ զայս կերակուր , զի Աստուած մարդ եղև և վասն
ձեր մեռաւ : Եթէ զայս արար , զի՞նչ է զոր ոչ շնոր-
հեսցէ ձեզ . վասն այսորիկ ասէր . " Հացն զոր ես
տաց , մարմին իմ է , զոր ես տաց վասն կենաց աշխար-
հի " . այսինքն զոր ես դնեմ 'ի մահ վասն յաշխարհի
յուսոյ և մարդասիրութեան իմոյ գիտութեան . զայս
հաց ասաց և 'ի յերկնից իջեալ՝ առ 'ի կեանս տալ աշ-
խարհի : " Որ վասն ձեր , ասէ , բաշխի 'ի քաւութի և 'ի
թողութի մեղաց " : Եւ ո՞րպէս բաշխեցաւ վասն մեր .
կամ զի՞նչ էր որ բաշխեցաւ : Պէսպէս չարչարանքն ,
այն էր որ բաշխեցաւ մեզ կերակուր թողութեան ,
ապտակն , թուքն , եղէգն , նախատանքն , խաչն , և որ
ըստ նմին : Օ՜ այս ամենայն մարդասիրութեան ցոյցս 'ի
մարմնոյ իւրոյ բաշխեաց աշխարհի . որպէս զի մեք կե-
րիցուք զնոսին մտաց բերանով , և քաղցրացեալ 'ի յի-
շատակս նորին՝ նուիրեսցուք Աստուծոյ Հօր , և ընկալ-
ցուք այնու յուսով զթողութիւն մեղաց , որ և կարող

1 Այլք . Զօրացէ :    2 Մի օրին . կերէք :

է զճաշակողսն իւր հաւատարմացուցանել առ ՚ի սոյն շնորհ ։ Ապա թէ ոք առանց ճաշակման ՚ի բացուստ ՚ի սոյն յառի խորհուրդս , յիմարութիւն նմին երևի . վասն այսորիկ պատարագողքն նախ ուտել զսա կարօտին , և ապա վասն այլոց նուէր հաշտութե ընծայել, զի մի լիցի ասել , խիստ է բանդ , ո՞ կարէ լսել զնա . այլ զի ծանիցեն խոնարհականապէս[1] , թէ բանք և խորհուրդք Քրիստոսի հոգի են և կեանք ձեռնտուութե մարմնական նշանակաց[2] , և հոգւոյն կենդանարար զհոգիս կերակրեալ կենդանացուցանէ ՚ի մեղացն մահուանէ , և ապա նովաւ և ընդ նմին զմարմինն ։ Ապա թէ հոգւով զսա ոչ ուտեմք , և զօրութեամբ խորհրդոյս զհոգիս ոչ պարարեմք , ասաց տէրն՝ թէ մարմնական նշանակք առանց հոգւոյն ինչ ոչ օգնէ . այսպէս իմանամք և մի պատարագ զսա ՚ի սկզբանէ մինչև ցկատարած լոյս առաքելոյ , զի զմի բանաւոր խորհուրդ նորա մահուան ամենեքեան նուիրեմք , և միոյն կերակրով հոգիք մեր սրբին ։ Ո՞վ է որ քաղցնու սիրոյն Աստուծոյ , և ոչ վաղվաղակի ՚ի բաշխել կերակրոյն յագենայ , ծարաւեալ զխաչն և զչարչարանսն . ո՞վ է որ ծարաւի թողութեան մեղաց , և ոչ պոռնկին խորհրդով , և աւազակին ողորմութեամբ , և խաչահանուացն ներողութեամբ սրբի . ո՞վ է որ փափագէ հանդերձեալ կենացն , և ոչ ՚ի խարիսխն Քրիստոս յեցեալ հաստատի ։ Զայսքանս[3] կերակուրս քաւութեան բաշխեաց նա մեզ ՚ի մարմնոյն իւրոյ՝ զոր տամք Աստուծոյ և հաշտիմք , ուտեմք և մեք և մխիթարիմք ։

‘‘ Այնպէս և զբաժակն առեալ՝ օրհնեաց , գոհացաւ , էարբ , ետ իւրոց ընտրեալ սուրբ և բազմեալ աշակերտացն ասելով . առէք արբէք ՚ի սմանէ ամենեքեան , այս է արիւն իմ նորոյ ուխտի՝ որ յաղագս ձեր հեղու ՚ի քաւութիւն և ՚ի թողութիւն մեղաց „ ։ Զօրհնելն և զգոհանալն նոյնպէս և աստ է առնուլ , որպէս ասացաւ . իսկ զի արբ , յայտ արարեալ՝ թէ այսպէս ախորժելով ընդունիմ յաղագս ձեր զմահ . արդ առէք արբէք և դուք յիմս մահուանէ , զի և ընդ-

1 Մի օրին . Խորհրդականապէս ։
2 Երկու օրին . Նշանաց ։
3 Երկու օրին . Զայսքան ։

իս կենդանատուիչք, ըստ որում ասաց առ որդիսն [1] Զեբեդեայ, և առաքեալ գրէ. «Եթէ մեռաք ընդ նմին, ընդ նմին և կենդանանամք»: Նա և իւր արիւն կոչէ դարձեալ զայն, զհեղումն արեանն կամեցաւ նշանակօքն մարմնականօք անաղօտ արձանացուցանել 'ի սիրտս' մեր, զի միշտ բացեալ զբերանս հոգւոց' զնոյն տացուք պատքեալ սրտից մերոց յարբումն. մի երբէք 'ի յուսահատութեան խորշակին չորանալ, այլ ցօղով արեան նորա միշտ զբոյս առոգանելով ծաղկեցուցանել, այսինքն յուսովն և սիրովն. զոր օրինակ և 'ի միմեանց բարեգործութենէ ճաշակեալ՝ այնու գտանեմք առ իրեարս համարձակութիւն. ապա որչափ ևս առաւել ընկալաք առ Աստուած առատութիւն սիրոյ, զարիւն նորա 'ի պէտս մերն փրկութեան՝ բերանով մտացս ընկալեալ, արբեալ և զմայլեալ. յորմէ ճաշակողն աղաղակէր, ոչ ոք կարէ մեկնել 'ի սիրոյն Քրիստոսի՝ յաստեացս կամ 'ի հանդերձելոցն: Իսկ զի ասէ, Նոր ուխտի, քանզի գոյր և հին ուխտ Աստուծոյ ընդ մարդիկ, այսինքն կտակարանացն որ սրբեցաւ և հաստատեցաւ 'ի Մովսեսէ արեամբ երնջոցն, զոր սրսկեալ զամենեքումբք՝ ասէր. «Այս է արիւն կտակին՝ զոր ետ ձեզ Աստուած». և այս ուխտիւս մնաց անջինջ խաղաղութիւնն ընդ Աստուած և ընդ Իսրայէլ ըստ մարմնաւոր ժառանգութեանն նախախնամութեան, և յերկիրն ածեալ պարգևաց ուխտիս հաստատութեամբ, որպէս և խոստացաւ: Բայց քանզի մարմնաւոր նոքա ժառանգութեան ակն ունէին, մարմնաւոր արեամբ և զաշինս կռեցին. իսկ զմեզ զի Քրիստոս 'ի մարմնաւոր աշխարհէս յերկինս հրաւիրեաց, պարտ էր զի երկնային լիցի մեզ ուխտ և դաշինք առհաւատչէի. վասն այսորիկ ասէ. «Այս է արիւն իմ նորոյ ուխտի»: Իմ երկնաւորիս որ յերկնից եկի, և անդր երթալոց եմ, իմ արիւն առ ձեզ ուխտ և գրաւական յուսոյ հանդերձեալն կենաց՝ զոր ձեր ասէ վասն հեղում, և զաղտեղեալսդ 'ի յանցանացն անմեղ[2] օճառաւս մաքրեմ: Արդ դաշնակից արար զմեզ այսու իւր՝ միշտ յուխտ արեանս հայել մեզ և նորա, և ոչ մեզ զինքն մոռանալ և զերկնից ժա-

1 Երկու օրին. Ի Դրս:

2 Երկու օրին. Համեղ:

ռանգութիւնն, և ոչ նորա զմեղ և զմեղացն մերոց թողութիւն. վասն այսորիկ և ասաց. «Զայս արարէք առ իմոյ յիշատակի»: Նոյնպէս ՚ի հացս հայելով՝ զխորհրդականացս երախտիքն յիշեցէք, և ՚ի գինիս՝ զարեամբ խաչի վասն ձեր մեռանելն:

«Եւ զայն միշտ իւր յիշատակ առնել պատուիրան աւանդեաց մեզ բարերար Որդիդ քո միածին»: Եւ Աստուած Հայր զայս ասէ քահանայս, թէ ոչ յանձանց շարժեցաք ՚ի գործառնութիւնս, այլ ՚ի դիմանէ ընկալաք հրաման զհացս և զգինիս դնել առաջի, և ընդ մարմնոյ և արեան խորհուրդ որ ըստ օրէ յիշատակաւ ՚ի միտս մեր նորոգել. զի ասաց, զայս առեալ ՚ի ձեռս՝ զիս յիշատակեցէք և զանօրէնութիւն իմ պատմեցէք, որ մարմնովս[1] իմով իբրև հացիւ կերակրեցի զատարակուսեալ քաղց ոգւոց ձերոց, և արեամբս հեղմամբ իբր գինւով զուարճացուցի զսիրտս ձեր քաւութեամբ մեղաց, և հանդերձեալ կենացն յուսով: Դարձեալ ընդ սոյն պատուիրեաց մեզ իւր յիշատակ առնել բարերար Որդիդ քո, առ քեզ Հայր և քո առաջի. ո՞ր աղագաւ. որպէս զի ձմլեցուցեալ խանդաղատեցուցուք զաստուածային կամացդ սաստն ՚ի զիջումն և յողորմութիւն. ո՞րպէս. ըստ այնմ զոր ասաց Աստուած մարգարէիւն. «Վերակացու եղէց քաղաքիդ այդմիկ, (ոչ ըստ ձեր արժանեաց,) այլ վասն իմ և վասն Դաւթի ծառայի իմոյ»: Բազում անգամ յԱբրահամու և յԻսահակայ սիրոյն յիշատակ՝ Աստուած զարժան պատուհասն ՚ի նոցանէ անցուցանէր. արդ չափէ ՚ի Դաւթէ մինչև ՚ի Քրիստոս զառաւելութիւնն, և ՚ի միածին Որդւոյն սիրոյն մինչև յԱբրահամուն. վասն այսր զայս իւր յիշատակ առնել առաջի Աստուծոյ Հօր աւանդեաց Քրիստոս, որպէս զի նորա տալով զՈրդւոյն առ մեզ սիրոյ պատմութիւն՝ հաւատացուք սրտիւ, «Զի թէ յիւր Որդին ոչ խնայեաց, այլ վասն մեր ամենեցուն մատնեաց զնա, զիա՞րդ ոչ նովաւ զամենայն շնորհեսցէ մեզ»: Եւ և Քրիստոս Աստուծոյ զօրութիւնն և իմաստութիւնն՝ գիտելով զանձառ խորս Հօր իւրոյ, ընդարձակութեամբ գթոյն որ առ մարդիկ՝

1 Երկու օրին. Մորճանալովն :

յայտնեաց զնոյնն սոցա. այսինքն թէ իմ մահուս յիշատակաւն՝ որպէս պարտական բանեցէք ձեզ զՀայրն իմ, և ծանուցէք նմա սիրով, զի թէ զՈրդիդ քո 'ի պէտս մեր փրկութեան որպէս զհացս զայս և զգինիս ճշմարիտ մարմին և արիւն արարեր, հարկաւոր և իրաւացի է այդպիսի մեծ սիրոյդ և վասն սորա՝ զգթեսն մեզ 'ի պատուիրանաց քոց սրբոց՝ ներողութեամբ թողուլ, և զայս մեր ուսեալ՝ այսպիսի յուսով և հաւատով յիշեմք զՈրդին բարերար առաջի Հօրն:

"Եւ իջեալ 'ի ստորին վայրս մահու մարմնովն զոր 'ի մերմէս ընկալաւ յազգակցութենէ, և զնիգս դժոխոցն աղարսեալ հզօրեղապէս, զքեզ միայն ծանոյց մեզ ճշմարտապէս Աստուած կենդանեաց և մեռելոց": Այսու հաստատէ 'ի միտս մեր բանս զառաքելականն գրութիւն 'ի Պետրոսէ զասացեալն, "Ոգւոցն որ 'ի բանդին էին, յետ չարչարանացն Քրիստոս 'ի մահուն երթեալ քարոզեաց". զի ասէ, զքեզ ծանոյց և 'ի դըժոխսն Աստուած մեռելոցն՝ որպէս և կենդանեացն 'ի յերկրիս. ուսանիմք զայս և 'ի նոյն ինքն 'ի տեառնէն խորհրդաբար ասացեալ. "Գայ իշխան աշխարհիս այսորիկ, և յիս ինչ ոչ գտանէ յիւրոցն". որպէս թէ ոչ վասն այնորիկ մեռանիմ իբր զդատակնքին Ադամայ պարտական. քանզի ես ոչ մեղայ, այլ մեռանիմ որպէս պատուէր ետ ինձ Հայր, այսինքն փոխանակ ամենայն աշխարհի փրկութեան. զոր թէպէտ և յայնժամ ոչ ծանեան, սակայն ուսմամբ և յիշողութեամբ Հոգւոյն յետոյ հաստատեցին: Վասն այսորիկ և գրեաց Պետրոս. որովք ուսանիմք՝ ճարցն մերոց հետևելով, թէ յետ կամաւոր մահուն՝ Հօր աւանդեաց Քրիստոս ըզհոգին. "Հայր, ասէ, 'ի ձեռս քո աւանդեմ զհոգի իմ". և եղեալ մարմնական հոգին անճառ միութեամբ աստուածութեանն, ըստ հրամանին առ Հայրն ընթանայր. իսկ իշխան օդոյս այսորիկ եկն ընդ առաջ նորա որպէս և ամենայն հոգւոց, և զի անհաս էր 'ի նմանէ աստուածութեանն միութիւն, պահանջէր 'ի մարմնական հոգւոյն պարտս, և քննեալ որոնէր, և գտանէր և ոչ ինչ, ըստ նախ հրամանին[1], "Գայ իշխան աշխար-

1 Մի օրին. Նախահրամանին:

հիս այսորիկ, և յիս ինչ ոչ գտանէ»։ յայնժամ ծանեաւ չարն՝ թէ անմեղն ըստ սիրոյ և ըստ պատուիրանի Հօրն արար զմեռանելն, և ոչ եթէ ըստ պարտեաց. իսկ Հայրն որ վայելեաց յՈրդւոյն սէրն, և 'ի մահու խաչի հնազանդութիւնն, ետ նմա իշխանութի յերկինս և յերկրի փոխանակ այնորիկ, այսինքն նմա ըստ մարմնոյ՝ որ միշտ ունէր ըստ աստուածութեանն։ Սակս զի արդար լիցի Աստուծոյ դատաստանն, և մարդոյ արդարութեամբ՝ մարդկան յանցանացն թողութիւն, ուստի և առեալ Քրիստոս զիշխանութիւնն՝ յետ ամաչեցուցանելոյն զսատանայ, էջ 'ի ստորին վայրս մահու, առ կապեալ հոգիս արդարոցն, և քարոզեալ ծանոյց ամենեցուն զաստուածութիւնն, և զշնորհսն Հօր, և ազատեալ զամենեսեան յիշխանութենէ սատանայի՝ աղարտեաց զնիգս դժոխոցն հզօրեղապէս, և եթող մնալ 'ի ներքոյ խնամոցն Աստուծոյ ' մինչև յարդարն դատաստան. իսկ զարդարսն՝ որ ըստ պարտեացն Ադամայ, և ոչ ըստ ինքեանց էին ըմբռնեալ, ընդ իւր վերածեաց՝ ասելով, օն արիք գնասցուք աստի, այսինքն առ Հայր. վասն որոյ և ասէ. «Զքեզ ծանոյց Աստուած կենդանեաց և մեռելոց»։ Զի որպէս յաշխարհի զամենայն շնորհս գործոյ առ Հայր վերածէր յաղագս համակամութեանն, այսպէս և առ մեռեալսն եցոյց 'ի դժոխս զնոյն տնօրէնութիւնն Հօրն հնազանդութիւն՝ մարդկան և դիւաց, ըստ ասացելումն. «Սակս զի ծանիցէ աշխարհ, եթէ սիրեմ զՀայր, և որպէս ետ ինձ իշխանութիւն և պատուէր այնպէս առնեմ»։ Զայս ամենայն ընդ զգալի պատարագին նշանակաց՝ որ 'ի վերայ զգալի սեղանոյն եդ ձեռօքն առաջի Աստուծոյ, քահանայն բանաւոր և իմանալի պատարագ եդ 'ի վերայ իմանալի սեղանոյն առաջի Աստուծոյ Հօր՝ մտացն տարփմամբ, և ըղձից և փափագմանն ձեռօք, և մտացն վճիտ և մաքուր հայեցողութեամբ՝ որ տեսանէ զիւրն լոյս, որպէս պարտ է տեսանել աւատալոյն հաստատութեամբ, և ներքին իւր մարդոյն վկայութեամբ։

1 Սովիմք ունայնացուցանէ ըղկարծիս ոմանց 'ի տխմարաց, որք համարէին այցելութիւն ինչ լինել և մեղաւորաց 'ի դժոխս։ իսկ զայլն ամենայն իմանալի է յաղագս բոլորական հասուցմանն ըստ այժմու պայծառ և աներկբայելի վարդապետութեան սուրբ եկեղեցւոյ, որ երբեմն մթինն էր առ նախնի հարս ոմանս։

Այս զհաւատալն որպէս պահանջէ բանս. այնպէս հաս-
տատուն՝ իբր թէ զգալի աչօք տեսանեմք զխօսակիցն,
և զգալի պատարագաւ զնա թախանձեմք. զի այնպէս
իմանալիս միտք յառեսցի յԱստուած՝ որպէս աչքս ըզ-
գալի 'ի թագաւոր համարձակութեամբ. արդ քանզի
ցուցաք 'ի սկզբան բանիս մարմնական օրինակաւ ըզ-
հաստատութիւն իմանալի խորհրդոյս ըստ կարի մեր՝
եթէ զՏէրն և զերախտիս նորա 'ի պէտս փրկութե̃
մեր առաջի Հօրն ածեմք, և զմեր վիշտս նովաւ ուսա-
նել թախանձեմք, զայս մինչև ցայս կէտ բանի իմա-
ցականապէս կատարեաց քահանայս: Ո ի առեալ 'ի
ժողովրդենէն զմարմնոյն Քրիստոսի նշանակս, և ըզ-
խորհուրդ նորին հաւատոյն, որպէս համարձակ ծառայ
և անամօթ, գործովք հրեշտակ եղև 'ի սոցանէ առ Աստուած,
և եղեալ առաջի զնուէրն՝ պատմեաց զպատգամաւորու-
թիւնն 'ի դիմաց ամենեցուն կարգաւորապէս, այսինքն
զպէսպէս վերոյ եղեալ երախտիքդ՝ զորս 'ի ձեռս Որ-
դւոյն գտին 'ի նմանէ մարդիկ: Ապա յորժամ զայս ա-
մենայն ասաց, և բարձրացոյց զնուէրն Աստուծոյ և
զսէրն, մանաւանդ և պարտական ողորմելոյ զնա դա-
տեցաւ, բուռն հարկանէ ձեռամբն զնշանակաց խոր-
հրդոյն, և մտացն իմացականութեամբ, որ է յեր-
կինսն առաջի Աստուծոյ զՔրիստոսէ և զնորին խոր-
հրդոցն. և զայն որ մինչև ցայժմ առաջի էր եղեալ,
և խօսէր համարձակապէս աւատալեօքն, այժմ 'ի ձեռս
Հօրն դնէ ասելով. արդ յետ ծանուցանելոյ զխոր-
հուրդ մեր պատարագ առաջի քո գալոյս, թէ ըստ
որում հրամանի, կամ ո՞ր աղագաւ եղև, ժամ է զի
զնոյնս զոր առաջի եդաք և խօսեցաք՝ զի 'ի ձեռս քո
դիցուք: Քանզի որպէս գիտասցես զողորմութիւն մե-
ծութեան սորա՝ եթէ ոչ առեալ 'ի ձեռս շօշափեսցես,
և քննեալ ծանիցես. վասն այսորիկ ըստ հրամանի պա-
տուիրանաց՝ տեառնդ մեր 'ի ձեռն քո յառաջ բերեմք
և դնեմք զդա և զխորհուրդս դորա. առ 'ի քեզ և որո-
նեա, և տես 'ի քո միածնէդ, 'ի քո սիրելոյդ, 'ի քո
ծոցածնէդ վասն մեր զպէսպէս սպիտ չարչարանացն.
նայեա 'ի դէմս դորա, և 'ի նոյն տես և ընդ իմ վասն

1 Երկու օրին. Գափափրան:

իմ զապտակն և զԹուքն ․ յառեաց 'ի ձեռան և յատան , և տես զխոցուածս բևեռացն 'ի պէտս ներելոյ քո իմ 'ի ծառն ձեռացս ձգմանն ։ Որոնեա զկողսն , և տես անդր բերանացեալ զխոցուածս տիգին յանողորմ Թըշնամւոյն ընկալեալ ․ դիր զձեռս 'ի վերայ քոյ սիրեցեալ Որդւոյդ գլխոյ , զոր ետու այժմ 'ի քեզ , և տես 'ի դմա զփշանիւԹ պսակին նախատինս՝ զոր վասն իմ այպանեցաւ անպարտական ։ ԵԹէ զգուելով քո զդա ըստ անճառաղ սիրոյ , և 'ի Թիկունսն յառիս տէր , տեսանես անդր զողորածեծն առնելոյ դառն խոցուածսն ․ զայն ամենայն կրեաց նա անմռունչ խոնարհուԹեամբ , այսքան անմեղ այպանեցաւ և ոչ ինչ բարբառեցաւ , որպէս զի իմում ամբարտաւանութեանն դու հայր ներեսցես ․ այսքան չարչարեցաւ և ոչ գժգմնեցաւ , զի զիմ հեշտուԹիւն մեղացն Թողցես ․ վասն այսորիկ և ետու 'ի ձեռս քո այժմ, զի զփրկեալ դովաւ ժողովուրդս ընկալցիս ։ ԵԹէ եղբարցս տենչումն և բարեկամացս գեղձումն՝ այսքան փղձկի 'ի դորա ողորմելիդ որ վասն իմ կերպարանք , դու Աստուած գԹոյ աղբեւր որքան յՈրդիդ նայեցեալ, և 'ի դորա կիրսն վասն մարդկան Թշուառացեալ մեղօք ժողովրդեանս՝ լցցես ողորմած ։ Այսքան և այսպիսի բերանով մտացն 'ի տեսանել հոգւոյ աչացն՝ ընդ տալ 'ի ձեռս Աստուծոյ ըզնուէր խորհրդոյս , բարբառի հրեշտակն և պատարագիչ քահանայն ասելով ․

“Եւ արդ մեք տէր ըստ այսմ հրամանատրուԹեան յառաջ բերեալ զայս խորհուրդ փրկական մարմնոյ և արեան միածնի քո ”[1] ։ Ոյն յայտ առնէ Թէ ինքն որ գիտէր զխորս կամաց քոց , որպէս սիրեցեալ ծառայից զայս յայտնեաց , և մեք յառաջ բերեալ զսոյն տամք 'ի ձեռս քո ․ զո՞ ․ զխորհուրդն փրկական՝ մարմնոյ և արեան միածնի քո ․ և խորհուրդն զի՞նչ է ․ կիրքդ չարչարանաց նորա զոր ասացաք և հանդերձեալ եմք ուսանել ։ Եւ սա խորհուրդ ո՞ր միղագաւ կոչի ․ այսինքն զի ըստ պարզ և սոսկ տեսուԹեան մարդկան և դիւաց կրէր զնոյն իբրև զմի ոք 'ի մարդկանէ չարչարանք ակամայ , և ինքն ծածուկ և խորհրդական Թաք-

1 Մի օրին ․ Փրկչականութեան ։

նութեամբ զմի մի 'ի նոցանէ դնէր 'ի ձեռս խորհրդակիցն Հօր փոխանակ պարտեացն Ադամայ և ծննդոցս նորա որովք և փրկեցաք իսկ և զօրացաք և կցորդեցաք յիմաստ խորհրդոցն Աստուծոյ գիտութեամբ ։ Նայց որք ոչ գիտացին Հրեայք և հեթանոսք 'ի Ճառ խաչին իմաստութիւն և նշանս հայցեն, և յիմարին 'ի քննելն՝ ոչ տեղեկացեալ. իսկ առ որ նոքա յիմարին, մեք խորհրդապէս և անհաս յանհաւատիցն զփրկութիւն մեր ընդգրկեմք. որպէս. զի յիշեմք առաջի Հօր, և սովաւ միշտ հաշտիմք ընդ նմա. ըստ որում ասէ.

"Յիշեմք զդորա որ վասն մեր զփրկագործ զչարչարանսն, զկենդանատու զխաչելութիւնն, զերեքօրեայ թաղումն, զերանելի յարութիւնն, զաստուածապէս համբարձումնն"։ Այս ամենայն կիրքս Քսի ոչ թէ միայն յայնժամ, այլ մինչև ցկատարած աշխարհի յիշատակեալ՝ զփրկութիւն մարդկան տնօրինէ. զի թէ յայնժամ միայն էր, և առ այն ժամանակի մարդիկ, անիրաւութեան տայ այս կարծիք արդար իրաւանցն Աստուծոյ. և ուր դիցուք զառաքելոյ ասելն, "Յիսուս Քրիստոս երէկ և այսօր, նոյն և յաւիտեանս". ուրեմն միշտ է փրկութիւնս 'ի Քրիստոսէ ։ Որպէս. 'ի ձեռն հաւատոցն, որպէս զի մի լինաւ կասեսցուք 'ի մեղանչելն յուսահատութեամբ, այլ ըզփրկագործ միջնորդէս բուռն հարցուք տկարացեալք՝ և առողջանամք. և բուռն հարկանելն է այս, Աստուծոյ Հօր տալ զնուէր հաշտութեան փրկագործն չարչարանօք, որպէս ասէ այժմ. "Յիշեմք զդորա որ վասն մեր զփրկագործ զչարչարանսն"։ Եւ յորժամ յիշեմք, զինչ. ամենայն իրօք մերումն ներումն լինի ըստ հաւատոցն. զի վասն այնորիկ նա անմեղ չարչարեալ, որպէս զի մեք նովաւ՝ որ մեղուցեալքս եմք, լիցուք արդարացեալ ։ "Զկենդանատու զխաչելութիւնն"։ Քանզի մահ նորա մարմնով 'ի խաչին՝ զկեանս հոգւոց եբեր հոգւով մեռելոցս և բերէ միշտ. քանզի այս զիարդ լինիցի, եթէ առաջի Աստուծոյ խորհուրդ շնորհաց իւրոց հնանայ կամ աղօտանայ. այլ թէ կարծեմք աղօտ մեր մտացս հնութեամբ ախտիւն վարակելոց. սակայն թէ մաքրիմք յայնցանէ, ոչ թէ միայն Աստուծոյ կարծեմք զայս խորհուրդ յայտնի, այլ և մեք զօ-

բանամք երևելապէս հաւատովք զնոյն ճանաչել : " Զե-
րեքօրեայ թաղումն , զերանելի յարութիւնն „ : Ազ-
թաղմանս ճառ և զյարութեանն , ոչ եթէ վայրապար
առնու 'ի մէջ , այլ որպէս զի ցուցցէ՝ թէ չէր դա այսմ
ամենայնի կարօտ . զի զի՞նչ էր թաղելն նմա հարկա-
ւոր՝ որ յապականութենէ ոչ ըմբռնի ըստ մեղաց . սա-
կայն կրեաց ՝ որպէս ամենեցուն վասն մեր . նոյնպէս և
զայս՝ առաջի քո և քեզ նուէր հաշտութեան տուեալ
զանօրէնութեանն խոնարհութիւն :

" Զաստուածապէս համբարձումն , զնստելն ընդ աջ-
մէ քո , Հայր , զահաւոր և զփառաւորեալ գալուստն խոս-
տովանիմք և օրհնեմք „ : Այն որ մինչև ցայժմ ասա-
ցաւ՝ անօրէնաբար խոնարհութիւնն էր , զորս կրեաց
Քրիստոս ըստ պարտեաց մերոց և ընդ ամենեցուն .
իսկ յարութիւնն և համբարձումն , ընդ աջմէ Հօր նըս-
տելն և դատելն , շնորհն և փառքն է՝ զոր փոխանակ
այնորիկ 'ի յիւրն մարմինն ընկալաւ մեզ . արդ որպէս
զչարչարանսն ոչ վասն իւր , այլ վասն մեր ընկալաւ ,
այսպէս և զփառսն ոչ որպէս կարօտ , այլ մեզ 'ի նոյնն
գրաւական և առհաւատչեայ երևեցաւ . ապա թէ ոչ՝
նա որ յառաջ քան զարուսեակ ծնեալ՝ էր ընդ աջ-
մէ , որպէս նորոգապէս նստէր՝ եթէ ոչ առ 'ի հաս-
տատութիւն իմն պատուոյ առաւելութեանն : Ուստի
և զայսորիկ զշնորհս պատարագէ Աստուծոյ Հօր սո-
վաւ քահանայն , թէ յանգուգական պատիւ հաստա-
տեաց զայս մարդկան Որդիդ քո և տէր մեր :

" Զքոյս 'ի քոյոցս քեզ մատուցանեմք , ըստ ամե-
նայնի և յաղագս ամենեցուն „ : Յորժամ ետ 'ի ձեռս
զխորհուրդն , և առ 'ի նմանէ յինքն զբանաւորս պա-
տարագ Աստուածն իւր և թագաւոր , ապա յաւելու
թէ նուէրդ զոր իբրև զմեր մարմնակից և 'ի մէնջ մարդ-
ետու տեառնդ , քո է անճառաբար ծնունդ և Որդի .
և մեք որ ծառայք եմք քո , թէպէտ իբրև զմեր և 'ի
մէնջ մատուցանեմք , ոչ իբրև 'ի մէնջ զդա ունիմք ,
այլ Աստուած հաւասար քեզ դաւանեմք , որ տնօրի-
նեաց զայս ամենայն՝ ոչ վայրապար , այլ ըստ մեր ամե-
նայնի կարօտութեան , և յաղագս ամենեցուն մեր

1 Մի օրին . Կափարեաց :

*փրկութեան. և մեք այժմ որպէս զքո Որդի և 'ի քէն մեզ տուեալ, դարձեալ 'ի մէնջ տամք զդա քեզ նուէր փոխանակ ամենայնի, և ընծայ հաշտութեան փոխանակ ամենայն աշխարհի 'ի ձեռս Հօրդ առանդեալ:*

## ԸՆԴԷՐ ԱՅԺՄ ԱՊԱ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ ԳՈՀԱՑԱՆԵՆ ՈՐՔ ՆԱԽ ԱՐԺԱՆ ԶՆՈՑՆ ԴԱՏԵՑԱՆ

ՅՈՐԺԱՄ *հրեշտակ նոցա քահանայն զնուէր ընծայիցն զոր ետուն 'ի ձեռս նորա համաբուն հաւատովն և երևելի նշանակօքն[1] մատոյց առաջի Աստուծոյ Հօր, և գոհացաւ 'ի դիմաց ամենեցուն պէսպէս և զանազան շնորհակալութեամբ. և յետ այնորիկ ետ 'ի ձեռս Աստուծոյ զնոյն հաւատոցն և մտացն աչօք, և նա առեալ ընդգրկեաց սիրական ողջունիւ զՈրդւոյն ծոցածին մարդկայնոյս էութեամբ, 'ի վերայ որոյ հաստատեաց հրեշտակս եթէ ետու զդա 'ի քեզ ոչ վայրապար, այլ ըստ ամենայնի և փոխանակ[2] ամենեցուն, սարկաւագս որ հայր է ժողովրդեանն և դաստիարակ, ընթերակայ քահանայիս և խորհրդագգած, տեղեկացաւ այժմ 'ի ներքին վայր սրբոյ խորանիս այսմ ամենայնի, որպէս և երկրորդ դաս յետ քրովբէիցն սրովբէիցն գիտութէ, որք անընդմիջաբար են շուրջ զԱստուծով. արդ քահանայս որպէս զսրովբէ անընդմիջաբար խօսեցաւ ընդ Այ, և սարկաւագն որպէս զդասապետութեանցն[3] առնէն 'ի սոցա երկատեսակութենէն զգիտութիւն խորհրդոյն ըստ չափոյ կարողութեան իւրեանց. վասն այնորիկ որպէս նոքա ոչ պահեն, այլ իջուցանեն 'ի հրեշտակացն դաս, այսպէս և սա՝ զոր ուսաւ ոչ թաքուցանէ, այլ բարկոք սիրով յայտնէ ժողովրդեանն, թէ զնուէրն զոր տուաք եղբարք 'ի ձեռն քահանայիս, մատոյց Աստուծոյ. և ծանեայ զի նա սիրով և հաշտութեամբ ընկալաւ զնոյնն: Բանզի քահանայքն ձայն ոչ իջանէ մինչև 'ի ժողովուրդն, այլ 'ի սարկաւագն, և նորայն ապա 'ի նոսա. որպէս զի բարկոք պահեսցուք զհամանմանութիւն հրեշտակական կարգաւորութեանցն.*

1 Մի օրին. Նշանօքն:
2 Երկու օրին. Ցողոգս:
3 Մի օրին. Զդասապետութեանն. այլ օրին. Զդասս պետութեանցն:

Երգ զոր տեղեկացաւ սարկաւագն անմռունչ ազդմամբ, յայտնէ ժողովրդեանն, այսինքն թէ գոհութեանն զոր իրաւունս դատեցայք՝ եկն ժամանակն, և ահա ընկալաւ Աստուած զպատարագ հաշտութեանն ձեր։ Զոր ծանուցեալ միաձայն աղաղակեն.

«Ամենայնի օրհնեալ ես տէր, օրհնեմք զքեզ, գովեմք զքեզ, գոհանամք զքէն, աղաչեմք զքեզ»։ Որպէս ասացաք 'ի սերովբէական երգն, ժողովրդեանս օրհնութիւնն ոչ է առ Հայր, այլ առ Որդին, այսինքն զի թէ սոցա ամենեցուն կարելի էր բանն դատել զառ Հայր ձգտելն, և ընդ նմա խօսելն, զինչ կարօտանային միջնորդութեանն քահանային, զոր 'ի դիմաց իւրեանց առ Աստուած առաքեցին. ապա յայտ է թէ նոքա առ նա հասանել ոչ կարեն, այլ միայն մերձ են 'ի Քրիստոս, ուստի զօրհնութիւնսն նմա տան ասելով. «Ամենայնի օրհնեմք զքեզ»։ այսինքն մեծ և բազմապատիկ է քո երախտիքդ և շնորհդ առ մեզ, տէր մեր Յիսուս, զոր տուաք 'ի ձեռս քահանայիցդ, և դոքա մատուցին վասն մեր զնոյնն պատարագ Հօր քում Աստուծոյ՝ մեր անհամարձակելի առ նա մտանել. այլ միայն զքեզ վասն ամենայնի զոր կրեցեր, և դոքա Հօր քում զնոյն մատուցին։ Օրհնեմք զքեզ վասն ամենայնին՝ որով Հայր քո ընդ մեզ հաշտեցաւ. գովեմք զմիջնորդդ խաղաղութեան յաղագս ամենայն չարչարանաց քոց՝ որովք մեք յուսամք այժմ ողորմութիւն գտանել։ Գոհանամք զպարգևրար մեր տեառնէդ, և աղաչեմք տէր Յիսուս, Աստուած մեր դու ես, և ստեղծումն և նորոգութիւն 'ի քէն ընկալաք. մի անտես առներ, այլ վշտակցեա և օժանդակ լեր քահանայիցդ պաղատանաց՝ զոր քև 'ի ձեռն քո Հօր և Աստուծոյ մերոյ նուիրեն։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ ԱՂՕԹԻՑՆ ԶՈՐ ԱՅԺՄ ԱՍԷ ՔԱՀԱՆԱՅՆ

«ԶՔԵԶ արդարև տէր Աստուած մեր գովեմք, և զքէն գոհանամք հանապազ»։ Տեսանես այսուհետև, զի այլ ոչ պատարագէ, այլ գոհանայ, վասն սիրով ընդունելոյ Աստուծոյ զպատարագն որ մատոյց. քանզի

այժմ իմանալի հայեցողութեամբ տեսանէ զնուէրն մատուցեալ՝ խանդակաթ[1] սիրով 'ի Հօրէն իւրմէ ողջունեալ. յաղագս որոյ որ նախ տայր զնոյն և զհաճութեամբ զառնուլն աղերսէր, այժմ յետ առնլոյն Աստուծոյ սիրով զխորհուրդ յիշատակի Որդւոյն և ողջագուրելոյն գթով համակամութեն զնորայն որ վասն մեր տնօրէնութիւն 'ի ներմարդութեանն[2], գոհանայ զնմանէ մատուցողս: "Ո՜ քեզ արդարև տէր Աստուած մեր գովեմք, և զքէն գոհանամք": Ժողովուրդս, ասէ, որ նախ իրաւունս դատեցաւ զգոհանալն, այժմ նայեցեալ 'ի շնորհ միածնիդ քո գոհացան. և արդարև վայելչապէս է մեզ միշտ Հայր զքէն գոհանալ, որ զայս քան տնօրէնութիւնս փրկագործութեան[3] սիրելի Որդւովդ ուղևորեցեր մեզ անարժանիցս և անմաքրիցս:

"Քանզի զանց արարեր զմերովք չար գործովքն, այսպիսի ահաւոր և անպատում խորհրդոյս կարգեցեր սպասաւորս": Ոչ է որքան էր մարդկան չար գործք, յառաջագոյն գիտեմք ամենայն իրօք, և Աստուած որ մեծն է ողորմութեամբ ըստ Պօղոսի, զայնմ ամենայնիւ զանց արարեալ, մինչդեռ մեռեալն էաք 'ի մեղս մեր՝ կենդանիս արար զմեզ 'ի Քրիստոս: Եւ կենդանութեն շնորհ որքան. ինքն առաքեալ պատմէ. "Ընդ նմին յարոյց և ընդ նմին նստոյց յերկնաւորս 'ի վերայ ամենայն իշխանութեան և պետութեան և զօրութեան և տէրութեան և ամենայն անուան անուանելոյ": Ո՜. զմարդիկ, զգերեալն և զկոխեալն 'ի սատանայէ. քանզի նոքա այժմ ընդ Քրիստոսի են յուսով վեհագոյն հրեշտակաց՝ ըստ նորին աղօթելոյ. "Հայր, կամիմ զի ուր եսն իցեմ, և սոքա ընդ իս լինիցին". ապա արդարև ահաւոր խորհուրդ, որոց տնօրէն և կըցորդ կարգեցաք՝ ընդ Աստուած խառնեալ զմեզ հաւատացեալ, և վեհագոյն հրեշտակաց վերացեալ, մանաւանդ և յաստի կեանս, մինչ նորա յերկինս քահանայագործելովն՝ մեր 'ի յերկիրս հաւատովքն մաքրեալ. առ որ նայեցեալ քահանայիս ասէ. այս ամենայն շնորհս, տէր,

1 Երկու օրին. խանդաղակաթ:
2 Երկու օրին. ներմարդկութեանն.
3 Երեք օրին. փրկութեան:

"Եւ յաղագս մերոյ ինչ արժանաւորութեան, յորոց յոյժ թափուր եմք, և միշտ ունայն գտանիմք հանապազ": Արդարև ճշմարիտ խոստովանի զմարդկայինս զանգուածոյ կիրս. այսինքն զի ոչ կարէ սեփական պահել զբարին, այլ միշտ զստացեալն վերստին մեղանչելովն աղաւաղէ, և յար և հանապազ կրէ ընդ ինքեան՝ ոչ զբարին զոր աշխատութեամբ ստանայ, այլ զմեղսն առ որ ինքնայօժար կամօքն մտանէ. զոր զմըտաւ ածեալ՝ զպարտութիւն խոստովանի առաջի Աստուծոյ, այսինքն ընդ քո ծայրագոյն շնորհացդ կըշռեմք ասէ և զմերս բնութեան յետին անարգութիւն նուաստութիւն, և ունայն 'ի բարեգործութենէ միշտ զերևելն. յաղագս որոյ գտանեմք զտուրս քո ըստ շնորհացն, և ոչ ըստ պարտեաց. ձիր, և ոչ պարգև. ողորմութիւն, և ոչ հատուցումն:

"Այլ 'ի քո բազմազեղ ներողութենէդ ցանդ ապաւինելով՝ համարձակիմք մերձենալ՝ 'ի սպասաւորութիւն մարմնոյ և արեան միածնի քո": Օրինակաւ ասէ համարձակիմք 'ի շնորհս քո, զմտաւ ածեալ" Օի թէ մինչ թշնամիքն էաք, հաշտեցաք ընդ Աստուծոյ մահուամբ Որդւոյ նորա, ո՞րչափ ևս առաւել 'ի հաշտելս մերում ապրեսցուք կենօքն նորա". վասն այսորիկ և պարծիմք 'ի քեզ Աստուած 'ի ձեռն տեառնս, որով զհաշտութիւնս ընդ քեզ ընկալաք. և այսպէս զատս յուսոյ 'ի բազմազեղ ներողութենէդ արձանացուցեալ՝ համարձակիմք սպասաւորել մարմնոյ և արեան միածնի քո: Սպասաւոր զանձն իւր կոչէ և համարձակող, իսկ սպասաւորութիւն զպատարագելն զՔրիստոս փոխանակ ամենեցուն հօր. քանզի այս գործ պաշտաման և սպասաւորութեանն է, միջնորդութիւն առնել 'ի մէջ Աստուծոյ և մարդկան. իսկ ասելն մարմնոյ և արեան միածնի քո սպասաւորեցի, այսինքն թէ զխորհուրդ մարմնանալոյ նորա և զգործս փրկութեան այժմ նուիրեցի. և զի ընկալար սիրով զոհանամ, ոչ որպէս զարժանաւոր, այլ իբրև 'ի վեր և առաւել քան զարժանս իմ 'ի քո շնորհդ վայելող:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՂՕԹԻՑՆ ԶՈՐ ԽՈՆԱՐՀԻ ՔԱՀԱՆԱՅՑՆ ԵՒ ԱՅԼ

"ԵՐԿԻՐ պագանեմք և աղաչեմք և խնդրեմք 'ի քէն բարերար Աստուած": Պարտ է գիտել, թէպէտ ամենայն բանք աղօթից որ մինչև ցայժմ պատմեցան՝ պատմութիւն էր շնորհացն Քրիստոսի, և յիշատակ առաջի Հօր, ըստ նմին և գոհաբանութիւն. և այս ոչ վայրապար, այլ բարիոք և ամենավայելուչ կարգաւորութեամբ՝ զոր իրաւունս վարկանիմ գնել համառօտ. այսինքն զի նախ մարդ երևեցաւ Քրիստոս և Աստուած 'ի մէջ երկրի, վասն որոյ և եղեն երկրաւորքս երկնայնոցն՝ կցորդ. զայսր խորհուրդ ունէր առաջին աղօթքն և զյիշատակ, ուստի և շարժեաց սարկաւագն զամենայն եկեղեցին 'ի սրբասացութի: Յետ այնորիկ զանօրէնութիւն փրկագործ չարչարանացն և զխաչին կատարեաց, զոր պարունակեաց երկրորդ աղօթիցն յիշատակ խորհրդածութեան՝ տալով զնոյն նուէր Աստուծոյ Հօր քահանային. յաղագս որոյ և ըստ ամենայնի այնորիկ գոհացան, և օրհնեցին ազդմամբ սարկաւագին ժողովուրդն զՔրիստոս: Ապա զի յետ խաչին և յարութեանն՝ առ նա զմխիթարիչ Հոգին փոխարէն իւրոյն աշխատութեանց, և բաշխեաց 'ի յաշխարհս. վասն այսորիկ և քահանայս՝ յետ տալոյ զայս խորհրդոյս յիշատակ նուէր Աստուծոյ Հօր, և նորա սիրով ընդունելոյն, և սմին 'ի վերայ ամենայնին գոհանալոյն, ապա կարգաւորապէս համարձակի խնդրել զշնորհս Հոգւոյն. զի մինչ չև էր մեռեալ Քս, ոչ ումեք ետ Հայր զՀոգին, ըստ այնմ. "Չև էր Հոգի, քանզի Յիսուս չև էր փառաւորեալ": Արդ սա այժմ որպէս թէ այսօր եղև մարդանալն և խաչն և յարութիւնն, ետ զնոսին ըստ կարգի Հօր նուէր, և ապա փոխարէն Քրիստոսի մահուն և չարչարանացն զոր ետ՝ խնդրէ 'ի Հօրէ երկրպագութեամբ զՀոգին սուրբ. որպէս և յայնժամ, զի հեղ յառաքեալսն: Եւ դու տես, զի նոքա որ 'ի Քրիստոսի առաւ վար-

1 Մի օրին. Նշխարաւորացն:

դաւանութիւնն ոչ բնաւ զղջացան, գալստեամբ Հոգւոյն 'ի մի ձայնէն [1] Պետրոսի երեք հազարքն հաւատացին : Ապա յայտ է՝ թէ մահն Որդւոյ վասն զշնորհըս Հոգւոյն առնլոյ մեզ եղև. բայց քանզի մեք որ այսօր եմք յաշխարհի մարդիկ, չէաք յայն ժամանակս, թէ նոքա միայն էին վայելեալ 'ի շնորհս խաչին կամ 'ի պարգեւաց Հոգւոյն, Աստուծոյ դատաստանն աչառանօք էր, և մեք առանց մեղադրութեան : Վասն այնորիկ նոյն խաչին յիշատակն զոր ուսաք 'ի տեառնէ՝ այսօր կատարեալ, զայն զառաջին մահուան ունի զզօրութիւն. և որպէս յայնժամ յետ խաչելութեանն տուաւ մարդկան Հոգին 'ի Հօրէ, նոյնպէս և այսօր կատարեալ յետ յիշատակի խաչին խորհրդոյ զնոյն ընդունիմք. զի լիցի Աստուած անաչառ 'ի պարգեւս իւր, և մարդիկ հասարակաբար 'ի նոյն վայելող. ուստի և յետ խաչին երկրպագեալ՝ զՀոգին խնդրեմք 'ի Հօրէ միջնորդութեամբ և աղերսանօք Որդւոյս իւր մահու : Դարձեալ կամիմ և այլ տարակուսանաց զլուծումն պահանջել. քանզի կարծեն ոմանք թէ որպէս հոգին ներգործէ զհացս Որդւոյն մարմին, այսինքն Քրիստոսի. քանզի իջանէ Հոգին 'ի վերայ սորին, և լինի սոյն՝ ոչ Հոգւոյն, այլ Քրիստոսի մարմին. որ զայս զմտաւ ածէ 'ի վերայ եկեղեցական խորհրդածութեան և ոչ բնաւ ուսաւ զկեալն [2], ոչ ծանուցեալ եթէ Որդւոյ միայն մարմնանալն էր և փրկելն. իսկ յետ այնորիկ Հոգւոյն տուաք մատակարարութիւն [3], և ամենայն շնորհ առ մեզ 'ի նմանէ ներգործի : Դարձեալ և զայս մի ոք տրգիտացի՝ թէ նոյն ինքն զՔրիստոսն անուն տէրն մեր Հոգւոյն սեփականեաց ներգործութեամբն, որ եկացն 'ի վերայ նորին մարմնոյ 'ի Յորդանան, որպէս և ուսանիմք 'ի մեկնութենէ անուանի սրբոյն Կիւրղի. և Հոգւոյն զօրութեամբ սկիզբն արար նշանացն, ոչ եթէ իբր զկարօտ կամ զտկար ընկալեալ, զոր մի լիցի կարծել, այլ զի մարդն զՀոգւոյն փչումն ունէր յԱստուծոյ 'ի սկզբանն և կորոյս ընդ յանցանացն, զնոյն տէրն վերըստին յիւր մարմինն առ ըստ ամենապայծառ անմե-

1 Մի օրին. ի մի ձայն այն :

2 Մի օրին. խորհրդածութեանն, և ոչ բնաւ ուսաւ զկեալն. այլ օրին. խորհրդածութեանց :

3 Այլք, Մատակարարութեանն :

ղութեանն . և ըստ որում կրճիմն եղեալ Ադամայ արգել զնա յամենայն ծննդոցս , մեռեալ Քրիստոս՝ սփռեաց զնա 'ի վերայ ամենայն եկեղեցւոյ . և զսա զեկեղեցի մարմին անուանէ Քրիստոսի Պօղոս , և յոսկերաց նորա որ տարրանայ 'ի գլուխն Քրիստոս , ոչ այլ ինչ՝ բայց յօղակապութեամբ Հոգւոյն : Նոյն պարտ է գիտել՝ եթէ զՀոգին սուրբ Քրիստոս տնօրինապէս նախ 'ի յինքն ընկալաւ , և նովաւ և 'ի նմանէ 'ի մեզ հեղաւ , ըստ այնմ . « Եթէ որ զՀոգին Քրիստոսի ոչ ունի՝ սա չէ նորա » . և ոչ չափով տայ Հայր Որդւոյ զՀոգին . և մեք յորժամ խնդրեմք զնոյնն 'ի Հօրէ , 'ի գլուխն Քրիստոս իջանէ , և նովաւ և 'ի նմանէ յանկերս տարածի և կենդանախարուկէ . ուստի և ասէ .

« Երկիր պագանեմք և աղաչեմք և խնդրեմք 'ի քէն բարերար Տէր , առաքեա 'ի մեզ և յառաջի եդեալ յընծայս յայս զմշտնջենաւորակից քո[1] և զէակից սբ Հոգիդ » : Ընծայքս , որպէս բազում անգամ ասացաք , նշանակ տուաւ 'ի ձեռս սորա 'ի ժողովրդենէն մարմնոյն Քրիստոսի , և խոստովանութիւն հաւատոյն հաստատութիւն սորին ճշմարտութեանն . զայս առեալ մատոյց քահանայն գոհացողական պատմութեամբն փոխանակ ամենեցունց . և յորժամ զայս առ Հայր 'ի ձեռաց սորա հաշտութեամբ , և եթող սոսկալի յիշատակաւ խորհրդոյս զմեղս եկեղեցւոյս , որպէս 'ի խաչելութեանն պատառեաց զձեռագիր սոցա յանցանացն , ապա խոնարհեալ շնորհակալ լինի թողութեն և հաշտութեանն քահանայս , և զՀոգին խնդրէ . ըստ որում և առ մարդիկ է տեսանել . քանզի յորժամ պատարագաւ զնամք զումեք բարկութիւն անցուցանել 'ի մէնջ , նախ զկաշառսն առնու յօժարիւք , որոյ վասն և աղաչեմք զնա . իսկ առնուլն յետ այնր խռովելոյն զպատարագն 'ի ձեռաց մեր՝ նշանակ հաշտութեան տայ . և մեր տեսեալ զնա 'ի հաշտութիւնն , նախ գոհանամք և շնորհ ունիմք զիջանելոյն դարձեալ 'ի մերն , և ապա առնումք համարձակութիւն խնդրել ինչ 'ի նմանէ . այսպէս արար սա առ Աստուած՝ զոր խռովեցուցեալ էաք ըստ մեղաց մերոց , հրեշտակ առա-

1 Երեք օրին . Զմշտնջենաւոր :

քեալ խաղաղարար պատարագաւն՝ նախ զպատարագս եւ 'ի ձեռս Աստուծոյ Թագաւորին մերոյ, այսինքն զյիշատակ չարչարանացն վասն մեր միածինն Որդւոյ. և յորժամ նա ընկալաւ սիրով և հաշտեցաւ ողորմութեամբ, սա երագեաց և վաղվաղակի գոհացաւ ըզհաշտութենէն՝ ասելով. «Օ քեզ արդարև տէր Աստուած մեր գովեմք և զքեն գոհանամք»: Իսկ յետ գոհութեանն յառաջ գայ ապա 'ի խնդրուածսն օգտի մատուցողաց պատարագիս. և նախ ծայրագոյն խնդիր է Հոգւոյն սուրբ, որ տնօրէնն է մեր և մատակարար. «Առաքեա 'ի մեզ՝ ասէ», այսինքն 'ի դասս քահանայիցն և սարկաւագացն որք են 'ի պաշտօն խորհրդոյն. և ընդէր նախ յինքեանս խնդրէ. ցուցանելով թէ մեք 'ի ծայրագոյնն ժամանեցաք մաքրութիւն, և կարող եմք զփայլումն նշուլից շնորհաց Հոգւոյդ առանց միջնորդի յանձինս պարփակել. իսկ ժողովուրդքս յայսպիսի կատարելութիւնս ոչ ժամանեալք, կարօտ են միջնորդութեամբ նշանակացս զնոյն ընդունել. որպէս և առաքեալքն յանկատարութեանն՝ նախ քան ըզհամբարձումն միջնորդութեամբ Քրիստոսի. քանզի փչեաց 'ի նոսա և ասէ. «Առէք Հոգի սուրբ», առ 'ի յիւրմէ իջուցեալ զզօրութիւն Հոգւոյն 'ի նոսա: Նոյպէս և այժմ. «Առաքեա ասէ զՀոգիդ սուրբ 'ի մեզ, և յառաջի եդեալ յընծայս յայս»: Որպէս զի տպաւորելով Հոգւոյն 'ի սա, ըստ որում 'ի մարմինն Քրիստոսի հանգիցէ. առ որ մերձենալով ժողովրդեանս ընդ զգայական ճաշակման սորա՝ և զիմանալի զօրութիւն Հոգւոյն ընկալցին հոգւոց շնորհ և զօրութիւն:

«Որով զհացս օրհնեալ՝ մարմին ճշմարտապէս արասցես[2] տեառն մերոյ Յնի Քնի. և զգինիս օրհնեալ՝

1 Մի օրէն. Ցանկարօփոռեէան:

2 Չիք ամենևին երկբայութիւն զի և ըստ հայաստանեայցս եկեղեցւոյ դաւանութեան՝ բանիւն եւեթ Քրիստոսի Առէք կերայք, և որ 'ի կարգին, կատարի փոխարկութիւն հացին և գինւոյ 'ի մարմին և յարիւն տեառն, որպէս և 'ի յետագայ աղօթիցն Եւ ուրդ ձե+ փէր այլովքն հանդերձ լինել յայտ է: Բայց քանզի 'ի պատճառս ապառնի ժամանակի որոշելու բայից, և վասն աղօտ վարդապետութեան ոմանց 'ի սրբոց հարց, որպէս Յուստինոսի, Երանոսի, Կիւրղի և այլոց, որպէս և մերոյս այսորիկ վարդապետի, չփոթք բազումք ծագեցին երբեմն յուղղափառս յունադաւանս և հայադաւանս, և առ մեզ իսկ առ յու-

արիւն աստուածապէս արարցես տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի»: Զինչ ասեմք առ այս. և մինչև ցայժմ ոչ էր սա մարմին և արիւն Քրիստոսի. եթէ ոչ էր, ապա ընդէ՞ր դու յառաջ բերէր, և որպէս զնոյն ետուր զսա 'ի ձեռս Տեառն ասելով, այժմ մեք տէր յառաջ բերեմք զմիածին քո և ըստ նորին հրամանի տամք 'ի քեզ մեր փոխան պատարագ: Այո, ասէ, արարի ես զայս ամենայն, եդի առաջի Աստուծոյ, և ետու յետ այնորիկ 'ի ձեռս նորա: Բայց ուսիր, եղբայր, զմայելուչ խորհրդոյս զզօրութիւն, զի զայս մարմնաւոր նշանակս ես հաստատութիւն ունէի առընթեր իմն բանաւոր պատարագի՝ զոր մատուցանէի. որովք վըկայութիւն դնէի առաջի Տեառն՝ թէ զայս հացս ձու 'ի ձեռս միածնիդ քո, և օրհնեաց և մարմին իւր կատարեաց, և զայս գինիս սրբեաց և արեամբ ուխտ նոր ընդ մարդիկ կռեաց, և որպէս զհաց և զգինի ետ մեզ զյիշատակ տնօրէնութեան իւրոյ կերակուր և ըմպելի, և ըստ որում այս ճշմարիտ մարմին զգալի, այսպէս և դա հաստատապէս մարմնովս իմով մեռանի: Իսկ յորժամ զայս ամենայն բանաւոր նուէր, և պատարագ օրհնութեան հաստատութեամբ նշանակացս մատուցի, և զԱստուած հաւատով ընդ արարածս այս նուիրացս յիշատակօք հաշտեցուցի, ապա զնոյն որ յինէն նշանակ մարմնոյն Քրիստոսի և ապացոյց մատուցաւ, իջմամբ Հոգւոյն՝ նմին մարմին ճշմարտապէս փոխարկել յօրինակէ և կատարել թախանձեմ. քանզի ասեմ զհացս՝ զոր ես օրինակ մարմնոյն Քրիստոսի եդի առաջի, և տուաւ զճշմարիտ նորին խորհրդոյն ցուցի, դու այսուհետև օծ Հոգւովդ, և յօրինակէն 'ի ճըշմարտութիւն վերափոխեա: Եւ որպէս լինիցի սա յօրինակէն 'ի ճշմարտութիւն, օրինակաւ հաստատեա-

Ուղղադաւանս Ընտիրքբայ եկեղեցւոյն ընդ կատարումն խորհրդոյն բանիւն Քրիստոսի, Պիոս Է սրբազան քահանայապետ առ 'ի խափանել զամենեսեան՝ եհան կոնդակ յամին 1822, յորում զուգաձայն մերոյ մատենագրիս բացածանոյց այսպէս. «Բանք Քրիստոսի միայն են սրբագործիչք խորհրդոյ սեղա-նոյն»: Ի սոյն հայրն ամենայնիւ և բանք մեծին Խոսրովու 'ի մեկն. պատարագի, զի ասէ. «Զքո մի և սիրելի Որդիդ ետուր մեզ փրկանք և փոխանակ. և զնոյն ինքն 'ի սեղան դնեմ, և կերակրեմ զմեզ գովիմք. վասն որոյ ապաւինեալ յանձառ քո բարերարութիւնդ ընդ Հոգիդ քո առաքել խնդրեմք 'ի

ցուք[1] . այսինքն զի մարդ մարմին գոլով առանց հո-
գւոյ՝ օրինակ մարդոյ ասի, և ոչ տիրապէս մարդ . իսկ
յորժամ կամօքն Աստուծոյ՝ ընդ մեռեալ մարմինն հո-
գի բանաւոր խառնի, ասի սա ճշմարիտ մարդ և կեն-
դանի, և հոգին որ միացաւ ընդ սմա՝ ոչ եթէ զգալի
աչաց մեր երևեցաւ, կամ տեսանելի եղև 'ի նոյն մար-
մինս առաւելութի, այլ միայն զնոյն տեսանեմք զմար-
մինն նովաւ կենդանի : Այսպէս և նշանակս մարմնոյն
և արեանն Քրիստոսի մինչև ցայժմ ապացոյց էր առա-
ջի Աստուծոյ եդեալ 'ի քահանայէս, և բանաւորն
պատարագի նշանակ հաստատութեան . իսկ առեալ
Աստուծոյ հօր ընդ բանաւորն պատարագի և զօրի-
նակս նորին, և իբր զԱստուած կարող՝ տիրապէս շըն-
չեաց զկենդանարարն հոգի յանշունչս մարմին, և արար
զսա որ նախ զգալի մարմին, այժմ հոգւովն սրբով
Քրիստոսի մարմին, և միութեամբ ընդ գինիս հո-
գւոյն՝ Քրիստոսի զսա արիւն նմին էացուցեալ[2] կատա-
րեաց . և որպէս 'ի մեռեալ մարմինն խառնեալ հոգին՝
յէութիւն մարմնոյն ոչ լինի նիւթականին՝ առաւե-
լութիւն, այլ միայն զի նիւթն նովաւ զօրանայ և ներ-
գործէ որպէս կենդանի, ըստ այսմ և 'ի սմա միացեալ
հոգւոյն Այ, և արարեալ մարմին Քնի, նիւթոյս ոչ
ինչ լինի այլայլութիւն կամ առաւելութի, այլ միայն
զի իմանալի զօրութի ընկալաւ, և 'ի ճաշակողսն զիւրն
կատարէ ներգործութիւն : Այս զինչ է ներգործութի
սորին տեառն կենդանւոյ . քաւութիւն և թողութիւն
մեղաց, ըստ որում և յաջորդ բանիւս ցուցանէ :

մեզ և 'ի պատարագս, զի և զմեզ Հոգւոյդ քո սրբեսցէ" : Վասն որոյ զմեկնութիւն ապառնւոյ բայիս յաստուածաբանս ապաստան առնեմք, որք ընդ կատարումն խորհրդոյ պատարագին և ընդ լրումն փոխարկութեանն խորհին ինչ իմանան, զորմէ տես 'ի Լէպրէօն և 'ի Փուլգենտիոս : Բայց թէպէտև Յունացն և այլոց արևելեան ազգաց ապառնի եղանակ բանին կարօտ իցեն մեկնութեանցն այնոցիկ աստուածաբանից, սակայն զմեզ և առանց իսկ այնոցիկ մարթ է քաջ ուղղափառապէս իմանալ ըստ յաջորդ մեկնութեան վարդապետիս, յարելով զարտացեան 'ի բանն, Որդէս ղի Եղէջի . իբր ասել . « Աղօթեցէք, զի մարմինս այս և արիւն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի եղիցի ամենեցուն մեզ յանդատապարտութի" այլովքն հանդերձ :

1 Մի օրին . Կատարեցաւ :

2 Մի օրին . Նմանեցուցեալ . այլ օրին . Նմին ցուցեալ . միւս այլ նմին էացեալ :

3 Մի օրին . Նէ-Բոյան :

"Որպէս զի եղիցի սա ամենեցուն մեզ մերձեցելոցս յանդատապարտութիւն, 'ի քաւութիւն և 'ի թողութիւն մեղաց ,,: Տես եղբայր, թէպէտ և արտաքոյ է բանիս, զի մերձեցելոցն է սա թողութիւն, որպէս և խնդրեմքն, և ոչ մեռելոցն' [1] ըստ որում կարծեմք. բայց զինչ է ասելն՝ անդատապարտութիւն. այսինքն զի մի լիցուք վասն սորին՝ դատաստանի պարտական. և պարտական եմք յորժամ ոչ փորձեմք ըզչափ անձանց, ըստ խրատուն Պօղոսի, նախ քան զճաշակելն. զի ասէ. "Որ ուտէ և ըմպէ անարժանութեամբ, դատաստան անձին իւրում ուտէ և ըմպէ ,,. Էր վասն. "Զի ոչ խտրէ զմարմինն տեառն: Եւ զինչ է ոչ խտրելն. այսինքն ոչ պատուելն. և ոչ պատուելն է ոչ հաւատալն: Յայսպիսի մեղաւորացս արգելու ըզշնորհս Պօղոս, և 'ի թերահաւատիցն, և ոչ թէ յայնցանէ որք օճառ սրբութեան մեղաց զայն ընդունին հաւատով յուսացեալք, եթէ արիւնն Քրիստոսի սրբէ զմեզ յամենայն մեղաց: Եւ ո՞յք են որք ոչ փորձեցին զանձինս և ոչ խտրեցին զմարմինն տեառն. ինձ թուին նոքա՝ որք զխորհրդոյս զօրութիւն նախ հաւատով ոչ ճաշակեցին. յաղագս որոյ և ստուերք թուի յաչս այնպիսւոյն ամենայն զգուշութիւնքս: Եւ տեսեալ զի հացս յետ բազմապատիկ օրհնութեանցն մնաց և այնպէս 'ի բնութիւն իւր [2], մերձենայ 'ի սոյն անփորձ խորհրդով և անարժան անձամբ իբր 'ի լոկ հաց. յաղագս որոյ և ըստ անխտրութեանն դատապարտի, այսինքն զի ոչ խտրեաց զսա հաւատովք մըտացն 'ի հասարակական սեղանոյ: Դարձեալ և ոչ փորձեաց զանձն իւր՝ որ կատարեաց զսա 'ի պէտս համարոց և պարտուց մեռելոց: Ինձ մի ոք մեղադրեսցէ, քանզի ոչ եթէ զոք դատապարտեմ, այլ աղէխարշ գըթով 'ի դատապարտութենէ գործոց կոչել յօժարեմ. զի այն է դատապարտող՝ ուր 'ի թիւրն խրատէ այժմ, և Աստուծոյ ատենին մատնէ աստի [3] խաղաղութեամբս, քան այն՝ որ այժմ յանդիմանեալ խռովեցուցանէ խարանօք և խոցուածով բանին, և 'ի Քրի

1 Իմա, և ոչ մեռելոցն միայն որպէս ոմանք 'ի տխմարաց կարծէին, և ոնց յընթերցման բացատրէ:

2 Այսինքն ըստ արտաքին տեսակաց՝ նովին ձևով և համով:

3 Մի օրին. Մնաֆէ:

անաչառ ատենէն յուսայ զերծուցանել։ Արդ տես թէ որպէս ոչ փորձեաց զանձն իւր՝ որ զպարտս մեռելոց եդ առաջի խորհրդոյս կատարումն. զի փորձելն՝ որ ասաց Պօղոս, քննելն է անձին, և քննէ զհաւատն և զգիտութիւնն։ Որպէս զի գիտասցէ իմասցի և իմաստնասցի և զգաստացեալ ծանիցէ, ո՞ր աղագաւ այս խորհուրդս, կամ զինչ դիտաւորութիւն սորա. փորձէ և որոնէ, որպէս հացս և գինիս մարմին և արիւն Քրիստոսի, և կամ զինչ շնորհ 'ի նմանէ առ մեզ իջանէ։ Արդ որ զայս փորձութեամբ անձին իւրոյ ուսուցանէ, նա խտրեալ պատուէ զմարմինն տեառն. և արդարև որպէս յաստուածային սեղան 'ի սոյն մերձենայ. իսկ որ միայն 'ի մեռելոց պէտս և 'ի լրումն թուոց զնոյն կատարեաց, ե՞րբ փորձեաց, ե՞րբ քննեաց, ե՞րբ որոնեաց և ուսոյց անձին իւրոյ զխորհրդոյս զօրութիւն։ Ե՞րբ ծանեաւ զայսքան և զբիւրապատիկ սորա առաւելութիւն. այլ դեռ ևս կաթնկեր է, դեռ ևս տգէտ է բանին արդարութե՟, դեռ ևս ոչ է կրթեալ զճաշակելիսն յընտրութիւն բարւոյ և չարի։ Իսկ եթէ իւր ճաշակելիքն չկարէ տանել զկատարելոցն կերակուր, մանրէ որպէս զնոյն, և տղայոցն առնէ ախորժելի։ Ահաւասիկ տեսանես, զի ոչ խտրեմք այսպիսի մօք զմարմինն տեառն. քանզի որպէս ոմն արհամարհեաց զսա իբր զմարմնական սեղան, և այնպէս կերաւ անարժանաբար, ես արհամարհեմ զնոյն իբրև զտուրևառութիւն վաճառոց և մեռելոց սակ[1] համարոյ հատուցման մերձենամ 'ի սա, և նուիրեմ 'ի պէտս վաճառուց անխտիր համարձակութեամբ՝ անփորձ և անարժան կամօք, և ոչ որպէս 'ի տեառն իմոյ յիշատակ՝ աշխարհի հաշտութիւն և ճաշակողացն քաւութիւն. վասն այսորիկ որպէս զանփորձ անխտիր և զաստուածավաճառ դատապարտիմ, անզեղջ մնալով 'ի մոլորութիւնն. իսկ եթէ զղջանամ, դիւրաւ քաւիմ. որպէս. ըստ առակողին ասելոյ, "Ճանաչելն զքեզ բովանդակ արդարութի՟ է, և իմանալն զքեզ՝ արմատ անմահութե՟": Քանզի յորժամ ճանաչեմք փորձիւ անձանց զհաւատացեալ մեզ խորհրդոյս զօրութիւն, և որպէս

1 Մի օրին. Սահ.։

պարտն է զսա կատարեսցուք, վաղվաղակի առանց միջնորդի, սովաւ և 'ի սորին ձեռն քաւիմք, զի տուաւ սա մեզ ըստ ինքնոյս' անդառնապարտութիւն, 'ի քաւութիւն, և 'ի մեղաց թողութիւն ։ Այլ ո՛րպէս քաւէ զմեղսն ․ յորժամ անստգիւտ հաւատովք զայն ճաշակեմք ․ յորժամ մեզ փրկանք, և ապա օտարաց նուիրեմք ․ յորժամ գիտութեամբ և իմանալով զայսն 'ի զօրութիւն խորհրդոյս արժանացուցանեմք ․ յորժամ ոչ կարծեսցուք զՅիսուս Քրիստոս' որ նոյն է, հնացեալ յամենամերձն զօրութենէ ․ յորժամ ոչ քննութեամբ, այլ հաւատով հաղորդիմք չարչարանաց նորա խորհրդածութեանս ․ յորժամ ներքին մարդն առաջի աչաց իւրոց ունիցի զՔրիստոս, և սիրով զուն գործէ զնոյն արմատացուցանել ․ յորժամ ոչ պարզ հաւատով, այլ իմացականաւն առ նա զսէրն վերացուսցուք, յայնժամ կարողապէս ճաշակեմք, որպէս լինի սա մեզ քաւութիւն կամ մեղացն մերոց թողութիւն ։ Ապա մինչ ոչ ընդ այսպիսի ճանապարհս հաւատոց իմաստութե՛ և առաքինութեամբ[1] հետևեալ եմք, և 'ի նպատակ աստուածգիտութեանն ժամանեալ, թէպէտ և բանս աղաղակէ զորպէսն լինել քաւութիւն, գիտակցութի մտաց մերոց ոչ կարէ հաւատալ, ոչ անցեալ դեռ ընդ կիրթ տեսութեան որպիսութեանն ․ զի հոգևոր խորհուրդ է ․ և ոչ մարմնաւոր ։ Ո՛ հոգւոյն կամս պարտ է սորին հաւատոց հաւանեցուցանել, և ոչ զբարբառ բերանոյ ․ և հոգին ոչ հաւատայ առանց հոգեպէս տեսութեան, և հոգևոր տեսութիւնն ոչ լինի առանց իմաստութեանն, և իմաստութիւնն ոչ հաստատի առանց բանաւորապէս առաքինութեանն, և բանաւորն առաքինութիւն ոչ ուղղի առանց մարմնոյս հանգստեան և փառաց արհամարհութեանն ․ ուրեմն արդարանայ 'ի բանս իւր տէր մեր ․ “Որ ոչ առնու զխաչ իւր և գայ զհետ իմ, ոչ է ինձ արժանի„ ․ զի մինչ դեռ կենդանիս եմ աշխարհի, անկար եմ արժանապէս որպէս պարտն է իմանալ ։ Իսկ ապա ոչ միայն կենդանի լինել, այլ և զնոյն 'ի պէտս աշխարհական շահից և փառաց վաճառել, քանի՞ ողբոց յերկնաւորաց և 'ի սրբոց հրեշ-

1 Երկու օրէն ․ իմաստութեան և առաքինութեան ։

տակացն տեսանողացն զնախատինս իմ զտանիմ արժա-
նի . մանաւանդ թէ ոչ ողբոց՝ այլ նախատելոյ տիրա-
պէս , որ կամաւորութեամբս իմով զտեառն իմոյ անուն
նախատեցի . 'ի մէջ դիւացն գնդից ։ Այ ինձ . ոչ գի-
տեմք՝ թէ այս ամենայն յանդիմանապէս կոչոց է ա-
ռաջի աչաց մեր յաւուրն յետնում 'ի չարաչար դա-
տողաց թշնամեացն , և 'ի չարեաց մերոց վկայիցն , որք
ոչ միայն թէ զոր գիտեմքս մեղք , այլ և զորս ոչ գի-
տեմք խորամանգ մեքենայիւքն յիշեն . յորմէ զգու-
շանալն է վայելուչ եղբարք , որքան 'ի սեաւ և 'ի մուր
կեանքս պանդխտիմք ։ Այլ խառնել ընդ մեզ , և մի
անձամբ անձին դրժողս՝ լինել . այլ իմանալ՝ թէ ունիմք
հանապազորդ թշնամի , յորմէ փրկեսցուք տերամբ մե-
րով Յիսուսիւ Քրիստոսիւ , որ է օրհնեալ յաւիտեանս ։

## ԸՆԴԷՐ ԱՅՍՈՒՀԵՏԵՒ ՈՉ ԲԱՆԱԿԱՆ ՊԱՏԱՐԱԳ , ԱՅԼ ԵՐԵՒԵԼԻ ՆՈՒԻՐՕՔՍ ԱՂԱՉԷ

ԲԱՆԱՒՈՐԱԿԱՆ պատարագին նուիրագործութիւն
'ի քահանայէս լրումն էառ , այսինքն խորհուրդ և յի-
շատակ չարչարանացն Քրիստոսի . զոր նշանակացս
հաստատութեամբ եա 'ի ձեռս Աստուծոյ Հօր՝ վերա-
հայեցողութեամբ իմացողականն աչաց . որոյ և ընկա-
լաւ փոխարէն զիջումն ազդման և զօրութեան Հոգւոյն
Քրիստոսի 'ի վերայ ընծայիցն . որով մեռեալ նիւթն
կենդանացաւ , և անշունչն հոգիացաւ , և ապացոյցն
ճշմարտեցաւ , և նշանակ մարմնոյն Քրիստոսի աներա-
գիւտ հաստատութեամբ մարմին Քրիստոսի կատա-
րեցաւ[1] ։ Իսկ մարմին Քրիստոսի յորժամ լսես , բա-
նաւորապէս իմա զխորհրդոյս զօրութիւն , և մի տարա-
կուսանօք յանքան հաւատն յեննուր , ըստ արտաքին
բարբառոյ հաւատալ , և իմացողական մտաց հաւատով
մնաս անհաւան , տեսեալ զի զոր մարմին և արիւն ա-
նուանես՝ ոչ է միս և արիւն , այլ հաց և գինի . այլ գի-
տեա զի մարմին Քրիստոսի հաւատամք զսա՝ յաղագս
Հոգւոյն Քրիստոսի 'ի նոյն բնակելոյ , և զՀոգին Քրիստոսի

1 Մի օրին . Մէտոր ։
2 Մի օրին . [illegible] . երկու օրին . [illegible] ։
3 Տես որ ինչ զայսմանէ 'ի վեր անդր ասացաք . էջ 391 .

ասեմք, ոչ թէ իբրև 'ի նմանէ՝ յառաջ սկիզբն առեալ և բղխեալ՝ որ է անձնաւոր հաւասար նմին, և համափառ բղխումն, այլ 'ի Հօրէ ։ Բայց զի Քրիստոս զնա նախ ընկալաւ յինքն ըստ մարմնոյ նորին Ադամ՝ պայծառացեալ փչմամբն, զոր կորոյս առաջինն Ադամ, և 'ի մեզ շնորհն 'ի ձեռն Քրիստոսի նովաւ և 'ի նմանէ տարածեցաւ. վասն այսորիկ և Հոգի Քրիստոսի ասեմք[2]. ըստ այսմ և առաքեալ զանդամս Քրիստոսի տաճար անուանէ Հոգւոյն Աստուծոյ. այսպէս և տէրն առ առաքեալսն եդ, "Մխիթարիչ Հոգին սուրբ զոր առաքեսցէ Հայր յանուն իմ", այսինքն թէ իմոյս լինի անուան առ ձեզ հաստատիչ ։ Բայց ըստ կարի մերում այսպէս երևելի առնեմք զխորհրդոյս զօրութի. Հայր և Որդի և սուրբ Հոգին մի են ըստ կամաց աստուածութեան բնութեան և փառաց, և որիշ ըստ անձնաւորութեան և դիմաց. իսկ գիտութիւն բաշխէ և շընորհս իջուցանէ 'ի հրեշտակս և 'ի մարդիկ կամօք Հօր և Որդւոյ Հոգին Աստուծոյ ։ Զնա ընդունէր և առաջին մարդն՝ հաւասար հրեշտակաց իմանալի լուսաւորութիւն. իսկ յետ յանցանացն բարձաւ 'ի նմանէ շնորհքն. զոր յորժամ կամեցաւ Աստուած յառաջին փառսըն հանել, ոչ Հոգւովն՝ այլ Որդւովն տնօրինեաց ըդխորհուրդն. և զայս ոչ յայտնի, այլ անհաս 'ի հրեշտակաց և 'ի մարդկանէ և 'ի դիւաց ։ Քանզի եկն Որդին Աստուծոյ, անճառ խառնմամբ՝ յօդեաց իւր մարմին 'ի կուսէն, և ծնաւ նովաւ. և սատանայ ոչ ծանեաւ՝ թէ աստուածութիւնն Որդւոյ խառնեալ էր ընդ մարմինն, այլ 'ի կարծիս մնաց. էր վասն. զի մի զառաքինութիւն մարմնոյն՝ զօրութեանն Աստուծոյ տացէ, և զարդարութեամբ փրկութիւն մարդկան՝ իշխանութեամբ դատեսցի. վասն այսորիկ լոյս աստուածութեանն 'ի խաւար մարմնոյն լուսաւորէր, և խաւա

1 Դարձեալ և աստանօր զարօտաբար ասացեալքս 'ի վարդապետէս՝ իմա ըստ պայծառ վարդապետութեան սուրբ եկեղեցւոյ. այսինքն զի ոչ թէ իբրև յաղբերէ և 'ի սկզբնական պատճառէ բղխեալ է Հոգին 'ի յՈրդւոյ, այլ 'ի Հօրէ նախսկզբնաբար, և յՈրդւոյ միանգամայն ։

2 Քանզի Հոգի Քրիստոսի ասի՝ նախ ըստ ներքին բղխման, և երկրորդ՝ ըստ ծաւալման յանդամս Քրիստոսի ։

րին արարիչ և մեղացն՝ նմա ոչ եղև հասանելի, և ոչ իշխան աշխարհի զնա ծանեաւ. այլ զի՞նչ. անհաս էր 'ի նմանէ աստուածութիւնն որ 'ի մարմնին[1], և զմարմինն մատնեաց 'ի ձեռս նորա բնաւորականն կրիւք: Իսկ նա ոչ ինչ կարաց ընդ կրից մարմնոյն յիւրոցն ներգործութեանց խառնել. քանզի լոյսն որ 'ի նմա էր ճըշմարտապէս՝ որոշէր զբնաւորապէս մարմնոյն խաւար, և զարտաքինն՝ զոր չարն ընդ նմին խառնել մեքենայէր. ուստի և զիւրն կրէր ստուգութեամբ, իսկ 'ի նորայն և ոչ բնաւ հպել արժանի առնէր, այլ միայն տեսանէր: Իսկ սատանայ զայս ոչ կարէր տեսանել՝ թէ զայս արկածքս զոր ես ջանամ 'ի մարմինս Աստուծոյ արկանել, աստուածութիւնն որ 'ի սմա է՝ իմանայ, և ըզմարմինն իւր 'ի բնաւորական ասպարէզն անսայթաք կառավարէ, ըստ այնմ. "Եթէ էր ծանուցեալ, ոչ արդեօք զտէր փառացն 'ի խաչ հանէին". այլ որքան պարտ էր՝ նա առաւել ջանիւ զպատերազմական հնարս ժողովէր, և ոչ ինչ բնաւ կարաց ներգործել 'ի տէրն մեր, ոչ թէ ըստ մարմնոյ միայն, այլ և ոչ ըստ խորհրդոց. քանզի աստուածութիւնն քննիչ խորհրդոց ընդ անմարմնական հոգւին միացեալ՝ զնա կառավարէր, և նովաւ զմարմինն. յաղագս այնորիկ և նա միայն արդար 'ի մարդկանէ, զի զխորհուրդս կառավարեաց արդարութեամբ և անմեղութեամբ, որ այլ ումեք անհաս էր. ապա թէ ոչ՝ մարմնով բազումք եղեն արդարք, բայց ոչ փրկեցաք նոքօք, զի 'ի հոգիս մնեցաւ չար արկածիցն նետք 'ի բնաւիցս, բայց 'ի նմանէ՝ որ զամենայն մերկ տեսանէր և զգուշաբար պարսպէր: Իսկ յորժամ կատարեցաւ մարմնական հասակաւն, եկն առ Յովհաննէս 'ի մկրտութիւն. ո՞յր աղագաւ. զի նա վըկայ լիցի եթէ ելից նա մարմնով զամենայն արդարութիւն, և ոչ մեղաւ: Եւ վկայեաց որպէս. քանզի որք մկրտէին իջեալ 'ի ջուրսն՝ խոստովանէին Յովհաննու զմեղս իւրեանց, և ապա ելանէին. իսկ տէր մեր վաղվաղակի էջ 'ի ջուրն և ել, ոչինչ գիտելով զանձին խիղճ մարմնովն Ադամայ, այն մարմնովն որ մինչև 'ի նա խաղալիկ էր դիւաց, որք միայն 'ի նմանէ պարտե-

1 Երկու օրին. Որ 'ի մարմնի:

ցան, վասն այսորիկ և բացան նմա երկինքն, և էջ Հոգին Աստուծոյ, այն որ հեռացեալ էր յԱդամայ, վերըստին դարձեալ 'ի վերայ մարմնոյն Ադամայ. ոչ չափով և ոչ զօրութիւն տալով, այլ անօրինաբար, զի զիւրն շնորհ ընկալցի դարձեալ մարդկութիւնս յԱստուծոյ, այսինքն Որդւոյն զՀոգին, որով և վարեցաւ 'ի փորձութիւնն, և յետ յաղթութեանն դարձաւ 'ի նշանագործութիւնն՝ նորին զօրութեամբ, զոր ծանեաւ սատանայ արժանապէս ընկալեալ ըստ ամենապայծառ մաքրութեանն զՀոգին: Բայց զՈրդւոյ աստուածութիւնն միացեալ ընդ մարմինն և ոչ այժմ իմացաւ, այլ գործէր[1] զնշանսն որպէս զմի ոք 'ի մարգարէիցն անօրինաբար զօրութեամբ Հոգւոյն, ոչ թէ իբր զսկար, այլ խորհրդոյ արդարութեանն իւրոյ ուղղիչ առ մերն փրկութիւն. ապա թէ ոչ, ըստ որում գրեաց Աստուածաբան, ոչ տայ Հայր Որդւոյ զՀոգին և ոչ չափէ, սակայն անօրինաբար ետ նա, և սա ընկալաւ: Յետ այնորիկ և արդարն 'ի վերայ անարդարոցս[2] մեռաւ. էր վասն. զի ինքն միայն եղև արդար առաջի Աստուծոյ, և զմարմնոյս եցոյց մաքրութիւն: Պարտ էր զի և մեք նովաւ փրկեսցուք, և փրկեցաք՝ ոչ ձրի, այլ զարեան Որդւոյն ընկալեալ գինս Հօրն. և անմեղին մահուամբն՝ հայր մեղաց մարդկան նշաւակեալ խայտառակեցաւ և դատապարտեցաւ, այսինքն բանսարկուն. և պատառեալ Հօր վասն մահուան Որդւոյն զձեռագիր մերոյ հակառակութեանն՝ ետ դարձեալ նովաւ և 'ի նմանէ մարդկան զշնորհ օծութեանն Հոգւոյն: Որ համբարձեալ Քրիստոսի յերկինս, և յինքն ընկալեալ 'ի Հօրէ վարձ իւրոյ աշխատութեանն՝ սփռեաց յարարածս. այսպէս Հոգին տարրացուցանէ զմեզ 'ի Քրիստոս, իբր զկենդանութիւն սփռեալ 'ի գլխոյն 'ի յանդամս: Ըստ այսմ օրինակի և այժմ եղև. քանզի տալով քահանային զՈրդին 'ի դիմաց մարդկութեանս Հօրն, ընկալաւ սիրով, և ետ 'ի նա 'ի Քրիստոսի միջնորդն զփոխարէն հատուցմն պատարագին զՀոգին, այսինքն՝ զի աղաչանօք նորա և բարեխօսութեամբ առաքեաց զնա յանուն նորա, ըստ այնմ. « Հոգին Ճշմար-

1 Երկու օրին. Ներփորձէր:　　2 Մի օրին. Անարդարոյս:

տութեան՝ զոր առաքեսցէ Հայր յանուն իմ,,, իսկ նա եկեալ յանուն Քրիստոսի և նովաւ և 'ի նմանէ, զհացս արար մարմին Քրիստոսի[1]. այսինքն ոչ ըստ որակութեան փոփոխեալ 'ի միս և յարիւն, այլ զինչ. համանունաբար անուանին և են մարմինք 'ի չորից տարերց բաղկացեալք, որպէս միսն և հացն, և որպէս գինին և արիւնն. և չէ 'ի նոսա բնութեանց զանազանութիւն, այլ որակութեանց միայն[2]: Արդ նոյն Հոգին, որ էջ եկաց 'ի վերայ մարմնոյն Քրիստոսի անօրինաբար, և օծ զնա Քրիստոս ըստ մարմնոյ զմիշտ օծեալն անճառ միութեամբն Որդւոյ, նոյն ինքն և այժմ էջ յառաջի եդեալ նշանակս մարմնոյ և արեան 'ի հացս և 'ի գինիս, և օծ զօրութեամբ զհամէութիւս մարմնոյն Քրիստոսի, հոգին Քրիստոսի, մարմին Քրի: Հոգի Քրիստոսի առեալ, իբր անօրինաբար առեալ 'ի Հօրէ և ոչ եթէ 'ի նմանէ բղխեալ[3], յաղագս որոյ և զայն մարմին Քրիստոսի կատարեալ՝ ըստ բնութեան մարմնոյ և ըստ հոգւոյ և զօրութեան եդեալ մարմին Քրիստոսի, և ոչ ըստ գունոյ կամ որակութեան. այլ զի հոգին Քրիստոսի 'ի նոյն ճշմարտապէս մարմին Քրիստոսի, որպէս և լոյս արեգական 'ի յօդ խառնեալ՝ օդն 'ի լոյս փոփոխի. և զի մի հոգի է՝ որ զամենայն տիեզերաց պատարագս ճոխ և կենդանացուցանէ, մի մարմին Քրիստոսի առին ամենայնքն. ուստի և աղօթք նոցա որ սովաւ՝ հանգչին 'ի վերայ երերաց, յաժամ հաւատան 'ի միմեանս սիրով. Արդ այժմ աստուածացեալ հոգւովն նշանակս, և ճշմարիտ մարմին և արիւն Քրիստոսի եղեալ օրինակս, և միջնորդութեամբ մահուն Քրիստոսի յիշատակաւն հաշխացեալ պատարագս, և աստուածութեանն վերահայեցողութիւն 'ի սոսկինս ցուցեալ, այսուհետև յառաջ բերէ

1 Իմա՛, ներգործելով 'ի պահուանդ քահանայագործութեան յԱռէք կերէքն: Տե՛ս որ ինչ 'ի վեր անդր զայսմանէ ասացաւ 391:

2 Այսինքն ոչ զանազանութիւն ըստ երևութին, այլ ըստ ներքին իսկութեան միայն:

3 Ոչ ինչ են զարմանք ընդ խղճել Լատինացւոց հայրապետս 'ի սահմանել յայտնապէս զբղխումն Հոգւոյն սրբոյ և 'ի յՈրդւոյ. քանզի երիցագոյն է նա ժամանակաւ քան զժողովն Փլորենտեան, յորում պարզաբար սահմանեցաւ վարդապետութիւնս այս:

քահանային ըստ կարգի զխնդիրս հայցուածոց իւրոց , որոց աղագաւ և զբանաւոր պատարագն ընծայեաց ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ ԱՂՕԹԻՑՆ

" ՍՈՎԱՒ շնորհեա զաէր , զհաստատութիւն և զըղձալի զխաղաղութիւն ամենայն աշխարհի " ։ Սովաւ ասէ , այս ինքն մարմնովս Քրիստոսի , զոր ընկալաք 'ի քէն շնորհ և պարգև՝ փոխանակ մեր զնոյն պատարագելոյն ։ Նայց զսովաւ ասելն մի կարծեսցուք միջնորդութեամբ ասել կամ աղաչանօք . այլ զի՞նչ . յայտ է թէ սոյն լցցէ մեզ զայսոսիկ զխնդիրս՝ որ է 'ի միջի մերում . քանզի միջնորդ նախ եա զխորհրդածութիւն բանաւոր պատարագի չարչարանացն Քրիստոսի , յետ որոյ մաղթեաց երկրպագութեամբ և աղաչանօք , եթէ վասն այդ մեծ պատարագիդ՝ զոր առեր 'ի ձեռանէ մերմէ ՝ հաշտութեամբ՝ առաքեա 'ի մեզ և 'ի նշանակ ընծայիցս զհոգիդ սուրբ ։ Իսկ եկեալ հոգւոյն ըստ աղաչանացն , և կատարեալ զմարմին և զարիւնն Քրիստոսի , ասէ , թէ այսուհետև այն պարգևք՝ որ էջ 'ի քէն 'ի մէջ մեր , կամօք քո լիցի խաղաղութիւն և սէր աշխարհի ։ Օր օրինակ թէ ոք ունեք կենդանարար դեղ տայ և անդեղայ մահարար դեղոց՝ փոխանակ իւրոն խնդրոյ և աղաչանաց , իսկ նա բարեմիտ ոք զոլով ասէ , կամօք քո տացի սա 'ի պէտս կենդանութեան և այլոց բազմաց , և ոչ ինձ միայն . այսպէս և սա առնէ յասելս , սովաւ շնորհեա զսէր . իբրև թէ ասելով , ինքնս որ առաջի կայ՝ ունի զօրութիւն զամենայն ինչ անձնիշխան կամօք կատարել , բայց յանձնէ ինչ ոչ առնէ , այլ զոր ինչ 'ի կամս հօրդ տեսանէ զնոյն համանման զօրութեամբդ [1] 'ի մէջ մեր գործէ , և քո կամքդ է հասարակաց աշխարհի փրկութիւն ։ Որդ աղաչեմք զքեզ , զանօրէնութիւն կամացդ ներգործեա 'ի մեզ՝ մարմնով քո Որդւոյս , և զօրութեամբ որ 'ի սմա հոգւոյս , և շնորհեա 'ի ձեռն սորա զսէր , զհաստատութիւն և զըղձալի զխաղաղութիւն ամենայն

1 Այլք խնդ ։ 2 Մի օրին . Զօրութիւնդ ։

աշխարհի ։ Մեր ոչ թէ զմարդկան առ իրեարս խընդրէ առաստացուցանել, կամ նոցա ընդ միմեանս խաղաղել, այլ զի՞նչ ․ զԱստուծոյն առ մարդիկ իջանել, քանզի այսմ եղև յայտնաբան և միջնորդ Քրիստոս , և 'ի նորա ձեռն զհօրն սէր 'ի վերայ աշխարհի ծանեաք ․ ըստ այնմ, " Յայտնեաց Աստուած զսէրն իւր 'ի մեզ մահուամբ Որդւոյն , և Քրիստոս է խաղաղութիւնն մեր և Աստուծոյ , որ զմիջնորմ ցանգոյն քակեաց , և զթշնամութիւնն 'ի մարմնին իւր նահանջեաց " ։ Զայս սէր և զխաղաղութիւն զոր յառաջին ծանեաք, միջնորդութեամբ նորա ընդ քեզ և ընդ աշխարհ , ուղղեալ վերստին' ասէ , սովաւ հաստատեա ։ Նա էր վասն միանգամ ուղղեալն կարօտի դարձեալ հաստատութեան ․ քանզի երդուեալ խափտեմք զնա միշտ յանցանացն թշնամութեամբ , ըստ այնմ․ " Մեղք ձեր որոշեն 'ի մէջ ձեր և 'ի մէջ Աստուծոյ " ։ Արդ զի մի 'ի սպառ մնասցէ թշնամութին, ընկալաք միջնորդնաւոր զայս խորհուրդ սիրոյ և խաղաղութեան' 'ի պէտս որ ըստ օրէ թշնամութեանն լուծման ․ ըստ այնմ զոր գրէ առաքեալ առ Կողոսացիսն ․ " Զձեզ որ երբեմն օտարացեալն էիք , և թըշնամիք խորհրդովք 'ի գործսն չարութեան , այժմ առադիկ հաշտեցոյց անդամօք մարմնոյ իւրոյ , յանդիման կացուցանել զձեզ սուրբս և անբիծս և անարատս առաջի նորա " ։ Ահա մեզ ով երանելի Պօղոս , և զի՞նչ է որ ուսուցանէ մեզ' եթէ այժմ առադիկ 'ի ձեռն յիշատակի մահուանն Քրիստոսի , և ճաշակմամբ անդամոց մարմնոյն նորա հաշտեցաք ընդ Աստուծոյ ։ Կամ ո՞ է որ հաւատարիմ առնէ' թէ թշնամութիւնն զոր ունէաք ընդ նմա խորհրդովք և չար գործովքն' լուծաւ սովիւ ․ կամ ո՞ է որ հաստատէ այսուհետև զմիտս մեր , թէ այսուհետև սուրբ և անբիծ է առաջի Աստուծոյ , զի ահա նոյն մարդիկն եմք , ոչինչ բնաւորական փոփոխումն ընկալեալ մարմնոյս հաղորդութեբ' շնորհիս , զի հաւանեսցուք որպէս երկաթ հրով հրանայ , կամ օդ լուսով պայծառանայ , այլ եմք նոյնն' որպէս նախ քան զհաշտութիւնն և յետ հաշտութեն ։

1 Մի օրին․ հաղորդութեան ։

Պատասխանէ առաքեալ ըստ կարգի առաջելոցս, բնութեամբ ոչ փոփոխիք, այլ հաւատով որդիք. քանզի ասէ յետ այսորիկ, «Եթէ կայցէք 'ի նոյն հաւատս արմատացեալք, հաստատեալք և անշարժ 'ի յուսոյ աւետարանին' զոր լուարուք»: Եւ նոյն հաւատ զո՞ր ասէ, այսինքն զմկրտութեանն. զի 'ի մկրտելն բնութեամբ ոչ փոփոխեցար, բայց հաւատով հաւատացեր' թէ ընդ զգալի մարմնոյս լուանալդ' և հոգիս մաքրեցաւ: Զայս յոյս, ասէ, թէ արմատացեալ ես և հաստատեալ, հաւատա անշարժ մտօք թէ և այժմ անդամօք մարմնոյս Քրիստոսի և մահուամբ նորա պատարագաւ' հաշտեցար ընդ նմա հաղորդութեամբն 'ի թշնամութենէն' զոր 'ի չար գործոցն գտար, և ես այսուհետև 'ի ձեռն Քրիստոսի յանդիման կացեալ Աստուծոյ սուրբ և անբիծ: Այս թէ ոչ հաւատաս, գիտեա զի մեր ամենայն ինչ հաւատովք է, և ոչ նշանօք, խորհուրդ' իբր բարեկամաց, և ոչ նշան' բանի ձգող թշնամեաց. իսկ որ 'ի խորհուրդս նայելով' ոչ հաւատայ' մեղանչէ, զի «Ամենայն ինչ որ ոչ 'ի հաւատոց են' մեղք են»: Այս ուրեմն որոց հաւատան' շնորհի սէր և խաղաղութիւն' զորս աշխարհի խնդրեաց. քանզի ասէ, «Շնորհեա զսէր, զհաստատութիւն, և զըղձալի զխաղաղութիւն ամենայն աշխարհի»: Եւ արդարև ամենայն աշխարհի շնորհեաց, և ոչ որպէս 'ի հնումն Իսրայէլի միայն. իսկ որք ոչ ընկալան, կամաւ զաչս կափուցին. ապա թէ ոչ՝ յաստուածակցս կոչմանէն ամենայն ինչ ուղղեցաւ և միշտ ուղղի:

[1] «Սրբոյ եկեղեցւոյ և ամենայն ուղղափառ եպիսկոպոսաց, քահանայից, թագաւորաց աշխարհի, իշխանաց, ժողովրդոց, ճանապարհորդելոց, վտանգելոց, աշխատելոց 'ի պատերազմունս բարբարոսաց»: Յորժամ խնդրեաց զհասարակաց շնորհն' որոշէ զեկեղեցի քրիստոնէից, իբր զսեպհական հօտ տեառն իւրոյ 'ի համօր աշխարհէ, և ըստ կարգի պատուոյ դասեալ ամենեցուն զայցելութիւնն մաղթէ, քանզի սոքա զորս թուեաց, ըստ իւրաքանչիւր ընթացից կարօտին ձեռնտուութեանն Աստուծոյ առաջիկայ գործոյն հանդէս:

1 Մի օրին. հայելով:

Այս տնօրէնի ամենայն կամօք Հօր, և քահանայապետութեամբ Աստուծոյ 'ի ձեռն խնամոցն և շնորհաց Հոգւոյն՝ եպիսկոպոսաց իմաստութեամբ առաջնորդեն, քահանայից արժանապէս հովուեն, Թագաւորաց ըղխաղաղութիւն տնօրինել, աշխարհի իշխանաց երկեղիւ բարեգործելն, ժողովրդոցն օրինաց հնազանդելն, Ճանապարհորդաց 'ի վտանգիցն փրկել: Իսկ առաջեա՝ եթէ զայս մաղթէ միշտ, ընդէ՞ր առ բազումս 'ի դերևերանեն աղօթքն սորա: Վասնզի ինքեանք ոչ կամեցան անձնիշխան կամօք զնոյնն խնդրել, վասն այսորիկ և զրկին. այսինքն զի սա յաստուածակոյս կողմանէն աղօթիւքս ուղղէ զխաղաղութիւնն, այլա սորին և մարդիկ առ Աստուած լինել խաղաղ, և առաջ յերկոցունցս կամաց ուղղի շնորհն: Վասնզի սա զԹագաւորի կամքն հաճոյ է 'ի խաղաղութիւն. որպէս զի թէ և 'ի պատժապարտ և 'ի թիւր ծառայից իցեմք, միջնորդութեամբ սորա յորժամ դառնամք յուղղութիւն, ներէ մեզ սիրովն, ապա թէ ոչ դառնամք ոչ խնդրեմք կրկին վասն խաղաղութիւն ունելոյ 'ի նորա կոչմանէն[1], և ոչ առ նոյն փութայոյ՝ դատապարտիմք: "Սոյնպէս և օրոց շնորհեա զչարեխափանութիւն, և անդորր զպտղաբերութիւն, և ախտացելոց 'ի պէսպէս ցաւս զփութապէս առողջութիւն": Մինչդեռ քննեալ զսոյնս ասելն՝ բաւական համարիմ, որով և զօրոց զչարախափանութիւնն մաղթէ՝ որք փոփոխին բազում անգամ 'ի սաստ մեզ և 'ի բարկութիւն Աստուծոյ, ըստ այնմ զոր Յովէլն ասէ մարգարէ. "Հարի զձեզ անպտղութեամբ, և ածի 'ի վերայ ձեր կարկուտ, ջորեակ և թրթուր, սակայն և ոչ այնպէս դարձարուք 'ի յիս, ասէ տէր":

"Սոյնպէս հանգո զամենեսեան զյառաջագոյն զ'ի Քրիստոս ննջեցեալսն, զսուրբ հարս, զհայրապետս, զառաքեալս, զմարգարէս, զվկայեալս, զեպիսկոպոսունս, զերիցունս, զսարկաւագունս, և զանուն ուխտ եկեղեցւոյ քում սրբոյ, և զամենեսեան յաշխարհական կարգէ զարս և զկանայս հաւատով վախճանեալս: Ընդ որս և մեզ այց արասցես բարերար տէր, աղաչեմք": Ի Քրիստոս ասէ, զննջեցեալսն հանգո,

1 Երկու օրին. կողմանէն:

որոշելով զեկեղեցի հեթանոսաց՝ որք անուամբն Քրիստոսի են կնքեալ յանհաւատից. և ընդէ՞ր զխաղաղութիւնն ամենայն աշխարհի խնդրեաց, իսկ զհանգիստն միայն քրիստոնէից յետ մահու։ Ուսուցանելով բանաւորապէս՝ եթէ որչափ էին անհաւատքն 'ի կեանս աշխարհիս, կայր նոցա յոյս փրկութեան 'ի ձեռն դարձին և հաւատոյն, իսկ մեռեալք՝ խափանեցան այն յուսոյն, և Աստուծոյ մատնեցան արդար դատաստանին և պատուհասից. իսկ եկեղեցի հաւատացելոց՝ որք 'ի Քրիստոս յուսովն ննջեցին, նոցա միայն պատշաճապէս ըղհանգիստն խնդրէ՝ ըստ անսուտ խոստմանն, "Հայր կամիմ զի ուր եմ ես իցեմ, և սոքա ընդ իս իցեն, ոչ սոքա միայն, այլ և ամենայն հաւատացեալքն բանիւ սոցա յիս"։ Բայց ընդէ՞ր առաքելոց և մարգարէից հանգիստ աղերսէ՝ զորս յետ այսորիկ ընդ Քրիստոսի 'ի պէտս փրկութեան մերոյ է յիշատակելոց. թէպէտ և ընթելոց է զանդամսն ընդ գլխոյն Քրիստոսի վասն մեր յիշատակաւն, բայց սակայն նախ առաջին սովաւ, այսինքն Քրիստոսիւ նոցա խնդրէ զողորմութիւն և ըղհանգիստ. վասն զի թէպէտ և փառաւորեցան և հանգեան, սակայն և ոչ ընաւ 'ի լրումն փառացն հասին [1], այլ օրըստօրէ քաղցնուն և զաւելութիւնն խընդրեն, ըստ որում և հրեշտակք. քանզի գիտութիւն է որ բաշխի նոցա և լուսափայլութիւն յԱստուծոյ, և այսոքիւք հոգի և ոչ ընաւ յագենայ, ըստ այնմ "Ոչ յագի ակն տեսանելով, և ոչ ունկն լսելով", ուրեմն ապա 'ի խնդրելս մեր զնոյն սրբոցն 'ի ձեռն Քրիստոսի՝ կարօտին նոքա, որպէս և մեք նոցին բարեխօսութեան. զի որպէս և մեք ըստ մերումն չափոյ եմք անհաս յԱստուծոյ, այսպէս և նոքա ըստ իւրեանցն։ Քանզի թէպէտ և բազում ունին տեղեկութիւն՝ յառքանն ոչ ընաւ հասին, այլ մշտ փափագեն նորոգտուփեանն շնորհացն Ս. Հ. զի Հայր միայն Որդւոյ զամենայն իւր ցուցանէ, ապա յայտ է թէ 'ի ձեռն խըն-

1 Լրումն փառաց սրբոց է յարութիւն մարմնոց, որում բնաւորական կարօտով փափագեալ մնան. թէպէտ հոգիքն նոցա ամենայն փառօք պերճացեալ իցեն։ Բայց զայստահական կոչեցեալ փառսն, կամ զաճումն այլևայլ փառացն ձրից։

դիոյս սովաւ և առ սուրբսն առաւելութիւն ողորմութեան և շնորհաց իջանէ, մանաւանդ և իսկն սովաւ պարգևաց նոցին ընձեռի, ըստ որում և գտան արժանի. իսկ մեզ ըստ մերում տարտամութեանս բանալոյ զգերանս և ձգելոյ զշնորհսն :

Բայց տես, զի նախ և առաջին կենդանիքս դասեցան 'ի հայցուածս, և ապա ննջեցեալքն, և այն սուրբքն և արդարքն, որով ճշգրտապէս հաստատի ճշմարտութիւն և յամօթ լինի ունայնաձայնութիւն այնոցիկ՝ որք զայս բարձրագոյն շնորհս 'ի պէտս մեռելոց միայն համարին և բաշխեն, ընդ որով տեսանեմք մոլորութեամբ այսօր զբազումս զրաւեալ, այսինքն զի չիք ումեք յոյս. 'ի ժամանակիս յայսմիկ չարի 'ի մէջ մեր՝ վասն իւր փրկութեան ընծայաբեր լինելոյ յեկեղեցի, կամ յայս փրկանաց՝ թէ շնորհ ընդունի հաւանել. այլ զինչ, կամ տայ զուխտ և զճիշտ տուրսն 'ի պէտս մեռելոց, և զսակ համարոյն վաճառողն 'ի շնորհավաճառացս 'ի մէնջ ճշգիւ պահանջէ. և կամ տայ կենօք, և 'ի կեանսն անյոյս է ամենևին յԱստուծոյ. վասն այնորիկ գտանել ողորմութիւն, այլ գրով և հաստատութեամբ յետ մահու անստերիւր զթիւսն ունել աղերսէ : Ով թըշուառ և անբան իմաստութեանս. որքան տեսանեմք թիւր ընթացք թերահաւատութեան 'ի մէջ աշխարհի, քանզի զոր պարսաւեմս՝ եպերանօք, և ես բազում անգամ արարի զտուրևառութիւնս, ոչ տգիտութեամբ որպէս զոմանս, այլ զի գիտէի և յայնժամ զուղիղն և զթիւրն, բայց ոչ երբէք կարացի զմիտս ուրուք ընդ ճշմարտութեանն ճով համոզել. այլ թէպէտ և զուղիղն ցուցանէի, նոքա զպիտակ զգոյն թախանձէին ունել : Բայց զի ահա գտի տեղի՝ հաստատել զճշմարտութիւնն 'ի նոյն ինքն 'ի խորհրդական բանիցդ՝ որով զորբիլն յուսամք, պայծառ է ինձ այսօր վարդապետութիւնս քան զանցեալ աւուրց քննութիւնն. ձեռն ձգեալ կոչեմ և զքեզ՝ տուրևառութեան իմոյ, կամ ճշմարտապէս ասել, յանցանաց իմ ընկերակց. եկեալ ձգեա փոքր ինչ և 'ի քո մտաց աչաց 'ի լուսաւորութենէս, և հասարակաբար լիցուք կցատացեալք 'ի

1 Երեք օրին. Գափըծն :

խելագարութեան, եւ 'ի վաճառելոյն զԱստուած, եւ
դու 'ի գնելոյն ։ Քանզի զուգահաւասար է չար՝ Յու-
դայի եւ քահանայիցն հրէից գործոց հաղորդել. յետ
այսորիկ ուսցուք եւ ընդ շաւիղ ստացուածպաշտութեանն
ըստ ճշմարտութեանն գնալ, եւ մի թիւր եւ մոլար հետոց
անխիմաստոիցն կոխել, եւ մի յաջակողմն զգեթեւն ախոր-
ժել, որ առաջի ունիմք արքունական պողոտայ ։ Եւ ո՞,
ասես, ինձ զճշմարտութեան վարդապետէ ։ Ոչ ես եւ ոչ այլ
ոք 'ի մարդկանէ՝ մեծ կամ փոքր, այլ նոյն Տէրն խոր-
հրդոյ առաջիկայ առ որ զյուսոյ աչսդ յառեցեր, նոյն
Տէրն բանք պատուիրագիրս՝ զոր փրկանս ունիս հաւա-
տալ. Թէ զիս ինչ բան ասէր, կերպակարծ հաւանու-
թեանց ընկալջիր, իսկ եթէ զայս՝ որով շնորհս բաշ-
խի զնեմ առանց յանեղուածոյ առաջի՝ մի այլ յարդա-
ղեր զալ առ ստուգութիւն ։

Եւ զինչ ասեմ զոր լուար յառաջագոյն ։ Ո՞ր մե-
ռեալ խաղաղութեան աշխարհի կարօտի, զոր նախ եւ
առաջին բանս մաղթեաց ։ Ո՞ր մեռեալ Թագաւորու-
թեանց տիրէ ։ Ո՞ր մեռեալ իշխանութիւն վարէ ։
Ե՞րբ է նոցա ժողովումն ։ Ե՞րբ ճանապարհորդու-
թիւն ։ Ե՞րբ նաւաստութիւն ։ Ե՞րբ աշխատութիւն ։
Ե՞րբ ընդդէմ բարբարոսաց մարտակցութիւն ։ Ո՞ր ինչ
օգուտ է նոցին օդոց բարեխառնութիւն, կամ ո՞ր
շահ՝ յանդորր պտղաբերութենէ, կամ երբ գոյ նո-
ցին ախտից առողջութիւն ։ Ոչ այս ամենայն քո վասն՝
որ կենդանին ես՝ Թախանձէ քահանայս ։ Ողորքան
բազմօրինակ՝ ժամանս՝ քո աղագաւ նուիրէ, առանց
գնոյ տայ քեզ զայսքան օգնականութիւն աղօթից, եւ
ոչ վաճառէ. ոչ գինս պահանջէ, զի եւ ոչ Տէրն գնով
ընկալաւ. ձրի առ եւ միշտ ձրի տայ, թէ խնդրես՝ եւ
թէ ոչ ։ Դու 'ի ճանապարհորդութիւն, եւ սա ընդ
քեզ ։ Դու 'ի նաւավարութիւն, եւ սա քեզ ուղեկից ։
Դու յիշխանութիւն, եւ սա քեզ ձեռնտու ։ Դու 'ի
պատերազմ, եւ սա քեզ մարտակից ։ Դու յաշխատու-
թիւն երկրագործութեան, եւ սա օդոցն անօրէն աղօ-
թիւք ։ Եւ յայսքան շնորհս Քրիստոսի վայելեալ 'ի
ձեռն նորա, ոչ միայն անշնորհակալ լինիս, այլ եւ 'ի

1 Երկու օրին. Շնորհ ։ 2 Երկու օրին. Բազմօրինակ ։

փոքր և 'ի չնչին տուրսն զնա ընդ աստուածավայելչա-ւութեան յանցանօքն ձգես, և դու որպէս Ճշդագոյնդ՝ շնորհացն՝ համարս պահանջես, և որ այսքան և այս-պիսի օրինակաւ զՔրիստոսի պատարագս ուղեկից քեզ ունիս յամենայն ընթացս և զօրավիգն, մինչ անհա-ւատ և անյոյս մնաս կենօք 'ի սմանէ, և յետ մահու 'ի գերեզմանն ունել բաղբաղես։ Եւ զինչ առաւելու-թիւն աղօթից մեռելոց քան կենդանեաց, ցոյց և յանօթ արա զՃշմարտութիւնն. ապա թէ հաստա-կաց բաշխի շնորհս, և առաւել և նախադասութեամբ՝ կենդանեաց քան մեռելոց, ունայնահաւան՝ զառանց զնոյ ձիրս մի աղագաւ 'ի զինս ձգել յօժարես, տաս Աստուծոյ և ոչ հաւատաս՝ թէ զբաժակ ջուրն աշա-կերտաց արբուցեալ 'ի քէն՝ ոչ թողու առանց վար-ձու, այլ յինէն հաւատարմութիւն պահանջես, մա-նաւանդ թէ և զիս Աստուած կարծես, զի առացից ինչ և ծառայական, քանզի տրոցն զոր Աստուծոյ տասս տալ, յինէն՝ որ մարդ եմ համար և հատուցումն խնդրես։ Եւ զինչ, մոռացար Աստուած զանուն քո, և յիմ բազմապատկելոյն կարօտ 'ի վերստին յիշել, թերևս ոչ խոստացաւ յառաջագոյն քան զիմ յիշելն հատու-ցանել. " Որչափ արարէք, ասէ, միում 'ի փոքրկանցս յայսցանէ, ինձ արարէք. և թէ արբուցանէք աշա-կերտի խոյլ ջուր, ոչ կորուսջիք զվարձն ". Տեսանես զի նախ քան զտալդ՝ առեր զհատուցումն 'ի Քրիստոսէ։ Քննեա զի նախ քան զքո տալդ ետ նա զվարձս տրոց քոց, զոր դու այսօր պահանջես։ Բարձրացո զաչսդ, և յայն խոստմանն հայեաց՝ զոր նախ կանխեաց ետ քո առաջի, և մի 'ի համարս իմ՛ յորոյ անուն դու զդրամդ տաս, և կեղակարծես 'ի յուսոյ հատուցմանն։ Գի-տեա, զի նա և զբաժակ ջրոյն զոր արբուցեր ինձ վասն նորա՝ խոստացաւ ոչ տանել անտես, նախ քան զիմ յի-շելն յիշեաց, մի թերահաւատիր, ամենատես ունի աչս՝ երիկամանց և սրտից քննող, յանգործոն հայե-ցող, զգործեալսն ճշգրիտ գրող. եթէ այսպիսւոյ տեառն զպտուղ հաւատոց քոց տաս, մարդկան յիշե-ցուցանելոյ՝ նմա մի աղագաւ կարօտիս։ Մա՞րթ է որ Աստուծոյ ուսուցանէ՝ թէ դու նմա պատարագ բերեր, և հատուցումն խնդրես, մանաւանդ թէ և դու ո՞չ

լուար[1] թէ նախ քան զքո տալդ հատոյց. «Որ արբուցանէ, ձայնեաց առ աշակերտսն, ձեզ բաժակ մի ջուր ցուրտ յանուն յայս՝ թէ դուք Քրիստոսի էք, ոչ կորուսցէ զվարձս իւր»: Արդ ես յաշակերտութեանն եմ կարգ, և դու յարբուցանողին. և զոր ինչ առնես ինձ, վասն տեառն խոստմանն արա, և մի վասն առ իս յուսոյս: Այլ կարօտիմ, ասէ, ես և մեռեալն իմ օգնականութեան աղօթից քահանային առաջի պատարագին. բարիոք. և նա զկարօտութիւն քո միշտ լցուցանել կարգեցաւ յԱստուծոյ, 'ի կեանս և յետ մահու, 'ի ճանապարհորդութեան և յաշխատութեան, 'ի նստել և յառնել. ամենեցուն վասն ժտի՝ որպէս լուար, և վասն ամենեցուն մաղթէ, իշխանի և քաղաքացւոյ, ժողովրդականի և շինականի, ձրիավարժի և տոկականի, և ոչ խնդրէ վարձս: Ոչ երախտէ քեզ, ոչ պահանջէ հատուցումն. թէ տաս՝ աղօթէ, և թէ ոչ տաս՝ աղօթէ, Աստուծոյ բարեգործութեանն առ Աստուած աղօթիւքն նմանէ, զամենեցուն զփրկութիւն 'ի պատարագէն հայցէ, և 'ի պէտս հասարակաց օգտի զմահ հասարակաց փրկչին նուիրէ: Արդ թէ նա այսպէս աւատացեալ է յիւր պաշտօն սպասաւորութեանն՝ միշտ և յամենայն ընթացս քո աղօթիւքն օգնելով, դու զայն սակաւ պտուղն զոր ունիս աղօթիւք նորին, և պաշտպան լինիս մարմնական պիտոյիցն, անհաւատութեամբ վաճառես նմին, և համարս պահանջես, և զպատարագն Քրիստոսի որ զտիեզերս փրկէ՝ քեզ միայն տաս գրել և համարիս: Նա վասն կարօտութեան մարմնոյն յանցանէ և զիջանի զկնի քում մոլորութեանդ, և դու մեծարանես, ունչ առնես, երախտես, և հալես զնուէրսն Աստուծոյ երախտիքն, և անվարձ արտաքս գնաս. զի յորժամ ինձ ետուր և երախտեցեր, և յինէն շնորհակալութիւն պահանջեցեր և ընկալար, յայտ է թէ ես վճարեցի զվարձն քո, և յԱստուծոյ ոչ ինչ ունիս: Վասն այսորիկ եկեալ յանձինս զգաստասցուք 'ի մոլորութենէս, ծանուցեալ թէ միշտ վայելեմք 'ի շնորհն Աստուծոյ և 'ի քահանայական աղօթս. և յորժամ կամիմք ինչ տալ նոցա իբրև

1 Երկու օրին. Ո[illegible]ր:

պարտականք տացուք, և ոչ որպէս պարտական առնելով. զի նախ զնոցայն ունիմք և հանապազ, և յետ այնորիկ զմերն տամք յերբեմն երբեմն ժամանակս. այսինքն զի պատարագն յամ որ լինի քեզ, և դու պատարագին ոչ տաս յամենայն օր հատուցումն: Սակայն այսորիկ և երբ տաս, մի հաշուիր[1], այլ Աստուծոյ տուր, և անձինդ զանձէ լսել խրատուն Պօղոսի: Որ ինչ և յաջողեսցի յԱստուծոյ 'ի մեր վերայ՝ անմարթ է համարել, ես քեզ զայս ետու, և դու ինձ զայն հատո: Այլ թէ չէր անունն Աստուծոյ 'ի վերայ իմ, և առ 'ի նմանէ իշխանութիւնն՝ ոչ տայիր զստացուածս քո յիս; ապա յայտ է՝ թէ Աստուծոյ տաս. մի երախտեր, մի գիր պահանջեր, այլ հաւատայ թէ յօրն որ ետուր, 'ի նմանէ զհատուցումնն առեր, ինքն գրէ յանջնջելի կտակն և 'ի մշտնջենաւորն: Այլ թէ զմեղս հաւատամք զի առանց յիշեցուցանելոյ գիտէ, և զպատիժն հատուցանէ, զբարեգործութիւնն 'ի բարւոյ տեառնէն էր վասն վարկանիմք մոռացեալ, և 'ի մարդկանէ պահանջեմք յիշել. և այն զի սոքա առանց տալոյ զմեզ յիշեն հակառակապէս: Դարձեալ և այլ խորհուրդ քեզ յայտնեմ, զոր ոչ գիտես. եկ եղբայր, և լուր սիրով, զի մի դու վասն մեղացդ դատապարտեսցիս, և ես վասն ոչ զգուշացուցանելոյս: Ի Քրիստոս պաշտեմք ամենայն քրիստոնէից ազգք 'ի զանազան լեզուս, և մի Քրիստոսի եկեղեցի անուանիմք ամենայն քրիստոնեայք, և մի սովորութիւն ունիմք ամենեքեան զՔրիստոս պատարագելով, և միապէս խնդրեմք ամենեքեան պատարագաւս զփրկութիւն ամենեցուն. այսինքն զի որպէս Հայս յիւր լեզուն խնդրէ զխաղաղութիւն աշխարհի, զխնամս եկեղեցւոյ, զառաջնորդութիւն ամենեցուն, զբարեխառնութիւն օդոց և զհանգիստ ննջեցելոց, նոյնպէս և զնոյնօրինակն և Փռանգն յիւրն խնդրէ, և Հոռոմն յիւրն՝ 'ի միոյ Քրիստոսէ զմի թախանձանք. և յայտ է այսու թէ դու որ յուսով և հաւատով յայս եկեղեցիս պտուղ ընծայեցեր, ընդհանրական եկեղեցւոյ որ ընդ տիեզերս՝ աղօթիցն հաղորդ գտար: Քանզի ոչ եթէ մեք առեմք եթէ ողոր-

1 Մի օրին. հաշուէ.

մեա և օգնեա ձայ իշխանին կամ ձայ ճանապար-հորդին և կամ ձայ մեռելոյն, որպէս զի քեզ միայն պարփակեսցի աղօթքս, կամ թէ նոքա Փաւանգին միայն աղօթեն, այլ քրիստոնէից գոլով առաջնորդք՝ վասն ամենայն քրիստոնէից եկեղեցւոյ մերոյ աղօթեմք, և քո քրիստոնեայ գոլով կենդանի կամ մեռեալ, գրաւեցար ՚ի ներքոյ իմոյ աղօթիցս և նորա, և ամենայն եկեղեցւոյ յորժամ հաւատաս, և որ ՚ի Սպանիա աղօթք քրիստոնէից լինին՝ իմ է, զի եմ իբրև զնոսա քրիստոնեայ. և որ ՚ի Կիւլիկիա իմն՝ նոցա, զի և նոքա որպէս զիս հաւատան։

Արդ զայս գեղեցիկ իմաստս ՚ի քո բազմապատիկ ներելոյդ և թիւ պաշտանջելոյդ գտի. զի՞նչ այլ բազմապատիկ՝ թիւք ուզես՝ քան զամենայն տիեզերաց եկեղեցւոյ աղօթք, որ զշնչին տրեցդ պարտան հատուցանեն՝ յորժամ հաւատաս. ապա թէ չհաւատաս այսմ, և միայն զքոյդ պէտդ ունիս զմոլորութիւն, ոչ ինչ բնաւ ոչ օգտիս, զի և ոչ ինքն Քրիստոս է կարող օգնել քեզ առանց քոյդ հաւատոց. ըստ այնմ, "Ոչ կարէր առնել անդ զօրութիւնս վասն անհաւատութեան նոցա"։ Թէ հաւատաս՝ զամենայն տիեզերաց աղօթս ունիս ընդ իմոյս. և թէ առանց հաւատոց գնել ախորժես, և յիմոյս իսկ վրիպիս։ Զայս և առաքեալ հաւատէ կանխաւ՝ գրելով առ Կորնթացիսն ՚ի սկզբան թղթին ասելով. "Եկեղեցւոյդ Աստուծոյ որ ՚ի Կորնթոս, ամենեքումբք հանդերձ որ կարդան զանուն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ յամենայն տիեզերս նոցա և մեր"։ Այսինքն թէ յամենայն տեղի՝ ուր զանունն Քրիստոսի կարդան՝ մեր տեղի է, և աղօթք նոցա մեր, և մեր տեղիս ուր զանունն Քրիստոսի անուանեմք՝ նոցա է, և աղօթք մեր նոցա. և այսպէս շաղկապութեամբ պատկանեալ են առ իրեարս անդամքս Քրիստոսի, միմեանց մշտակից գոլով, և միմեանց օգնական, և զթերութիւն իրերաց լցուցանողք սիրով։ Դու մի ինձ այժմ զյաչաղանս ամանց ՚ի մէջ բերեր, և զհերձուածողական իրերաց անուանադրութիւն. քանզի գիտեմ և ես զամենայնն, բայց մարդկան զի-

1 Մի օրին. Բ[illegible] ։

տեսմք զայն կամք , և ոչ Աստուծոյ ։ Հերձեալ 'ի մէնջ զայն համարիմ և է ճշմարիտ , որ չէ քրիստոնեայ ։ Իսկ որ զՔրիստոսի անուամն թագ պարծանաց ունի 'ի վերայ գլխոյ իւրոյ¹ , ես 'ի նա եմ խառնեալ իմով ասա-գութեամբս , և նա յիս իւրովք ընթացիւքն , և ամենեքեան 'ի գլուխն Քրիստոս . և "Ոչ կարէ ասել ոտն ցձեռն՝ թէ չես ինձ պիտոյ , կամ ոտն ցակն " . քանզի ամենեքեան եմք պիտանի գլխոյն , և ամենայն 'ի Քրիստոս , և յամենայնի Քրիստոս , և չիք 'ի մէջ մեր Պօղոս կամ Ապօղոս , Հայկն կամ Սամէլոս , այլ զարշիմք անդամքս Քրիստոսի 'ի նոցա անուանցն և 'ի գործոցն , և պարծիմք 'ի Քրիստոս և 'ի քրիստոնեայ անուն , որով ամենեքեան եմք պայծառացեալք ։ Արդ եթէ այս այսպէս է ասեն , և զամենեցուն աղօթս ունիմք , զի՞նչ հարկ է մեզ պտուղ տալ քահանայից , կամ նուէր պատարագի՝ յորժամ առանց այնորիկ վայելեմք 'ի խնամս աղօթից նոցին ։ Եթէ այսպէս է , ահա ունար 'ի նոյն ինքն 'ի խորհրդական բանից . զի վասն ամենեցուն մատուցանի . այլ թէ զի՞նչ հարկ է քեզ պաշտապանեալն քահանայիցն² , փող եկեղեցւոյ առաքեալն Պօղոս ուսուցանէ . "Ունկնդիր լերուք առաջնորդաց ձերոց և հպատակ կացէք նոցա , զի նոքա տքնին վասն ոգւոց ձերոց որպէս թէ համար տալոց իցեն ընդ ձեր . զի խնդութեամբ արասցեն զայն , և մի՛ յոգւոց հանելով " ։ Տես՝ , զի նա որ զհաւատս ուսոյց մեզ , յորդորեաց և առաջնորդաց հպատակել , և ոչ թէ նոր է կամ եկամուտ օրէնք . և հպատակութիւն է օժանդակ լինել պատապելոցն 'ի գործն Աստուծոյ մարմնական պիտոյիցն³ ։ Ո՞ր վասն . զի նոքա տքնին ասէ վասն ոգւոց ձերոց . տես , զի ոչ ասէ , թէ տուր որ քեզ ժամ առնէ , այլ թէ նախ քան զքո տալն է տքնութիւն , յառաջ քան զքո հպատակելն մարմնոյ նորա՝ նա միշտ և հանապազ հոգւոյ քում հպատակէ , զի հանապազ աղօթէ , յամենայն աւուր պատարագէ , առանց ասելոյ՝ զհամար մեղաց

1 Որ է ասել , Ճշմարիտ և ողջամիտ կամ ուղղափառ քրիստոնեայ , թէ և իցէ տմոլորութեամբ իւիք տարբերեալ կամ ազգային աւանդութեամբ ։

2 Մի օրին . Քահանայիցն ։

3 Այսինքն օգնել նմա 'ի պէտս մարմնաւորս , և որպէս հարազատ զաւակ՝ ձեռն տալ հօրն հոգևորի՝ ոչ ինչ ընդհատ 'ի մարմնաւորէ ։

քոց 'ի ձեռս ունի, և առաջի Աստուծոյ զներումն խնդրէ։ Այդ եթէ տաս, եթէ օգնես մարմնոյն, եթէ կցորդ լինիս տրիւքն աղօթիցն, խնդութեամբ առնէ ըզվասն քո աղաչանսն. ապա թէ ոչ՝ յոգւոց հանելով։ Ուրեմն ապա աւելն արծաթասէր է, զի յորժամ տամք՝ խնդայ, և յորժամ ոչ տամք տրտմի և յոգւոց հանէ։ Ոչ է արծաթասէր որպէս դատես անհաւանդ, այլ մարմնաւոր, կարօտ հարկաւոր պիտոյից մարմնոյս. և Աստուած՝ հոգի, և ոչ մարմին. և սա ըստ Աստուած խօսելոյն՝ կարօտի զմաքուր հոգի ըստ աննիւթ խորհուրդն համեմատել։ Յորժամ դու ոչ հպատակես, կարօտի սա վասն հարկաւոր պիտոյից մարմնոյն գործել, աշխատել, տուրևառ առնել, գնել վաճառել, 'ի ճանապարհ գնալ, և յայսպիսի զբաղմունքս խառնեալ՝ մաքրութիւն մտացն աղտեղանայ, և եկեալ 'ի պատարագելն և յաղօթելն՝ ծանրացեալ 'ի հոգոցն և յաշխատութենէն՝ ոչ խնդայ. ըստ Աստուած խօսելոյն, այլ տրտմի և յոգւոց հանէ, խթեալ 'ի խղճէ մտացն՝ որ դատէ զնա անարժան աստուածխօսութեանն վասն զբաղմանացն։ Յայնժամ և վասն քո խնդրելոյն և աղօթելոյն, քեզ դատապարտութիւն է աղօթքն, որ ոչ հպատակեցեր նմա, և ոչ փրկութիւն՝ կայծակունք հրոյ կուտեալ 'ի գլուխդ՝ և ոչ 'ի հրոյ զերծումն, ըստ այնմ. “Եթէ քաղցեալ է թշնամին քո՝ հաց տուր նմա, և թէ ծարաւի՝ ջուր տուր, զայս արարեալ՝ կայծակունս հրոյ կուտեսցես 'ի գլուխ նորա„։ Արդ նա զհաց աղօթիցն և զջուր տքնութեանն՝ թէ միշտ անդանդաղ ջամբէ քեզ, և դու ոչ իւիք նմին հպատակես, նա զիւր հատուցումն մեծապէս ընդունի յԱստուծոյ, և դու զկրկին դատապարտութիւնն։ Ապա թէ ծուլանայ, հեղգանայ [1], և ոչ աղօթէ վասն մարմնական հարկաւոր զբաղմանացն, դու պտանիս մեղաց նորա պարսական, որ ըստ օրինացն Աստուծոյ ոչ լցեր զպաշտօն հըպատակութեանն, որպէս և հրամանն ընկալար. ուստի և նա հարկեալ անկաւ ընդ զբաղմօքն, զի որպէս նա դատի՝ թէ ոչ աղօթէ վասն քո և ոչ զգուշացուցանէ, դու դատիս՝ թէ ոչ հպատակ կաս նմին և պաշտպան

1 Այլ օրինակք. ծուլոյ, հեղգոյ։

լինիս մարմնոյն ։ Որպէս 'ի նորա ոչ զգուշացուցանե-
լոյն՝ քո կործանեալ զարիւն կործանելոյդ Աստուած
'ի ձեռաց դիտողին խնդրէ ․ այսպէս 'ի քո ոչ հպատակե-
լոյն , և նորա 'ի զբաղումն կործանելոյն , զարիւն նորա
Աստուած 'ի քո ձեռացդ 'ի ժողովրդականէդ խնդրէ ,
զի արդար է դատաւորն և ոչ աչառող ։ Որպէս զնա
հոգւոյ քո կարգեաց պաշտօնեայ հոգևոր գործոյն , ըզ-
քեզ մարմնոյ նորին կարգեաց՝ մարմնական [1] գործովդ ․
Ե՞ր վասն ․ Պօղոս յայտ առնէ ․ " Զի լիցի քո առաւե-
լութիւնդ 'ի նորա պակասութեանն , և նորա առաւե-
լութիւնն 'ի քում պակասութեանդ , և հաւասարու-
թիւն 'ի մի ,, ։ Աղքատ եմ ասէ , և վասն այնորիկ ոչ
կարեմ տալ , և ոչ եթէ անհաւատութեամբ ։ Գեղե-
ցիկ , և տուր յաղքատութենէդ Աստուծոյ զմեծն ․ ու-
նիս և դու քեզ օրինակ 'ի տեառնէն , այրին այն ասէ
շատ արկ 'ի գանձանակն զերկու խերեւէշն քան զամե-
նեսեան ։ Ո՞չ գիտես թէ աղքատութիւնդ քեզ յԱս-
տուծոյ պատահեաց , հան նմա պտուղ 'ի չքաւորու-
թենէդ , և առ 'ի նմանէ զբազումն , որպէս յառատէ ․
մի կարծեր թէ և սատ ոչ հատուցանէ քեզ ․ թէ այն-
պէս աղքատամիտ ես , և զատոխս խնդրես , կան առաջի
աչաց զկինն այրի , որ պակասեցոյց յորդեկացն , և կե-
րակրեաց զԵղիա , և այն զի ոչ գիտէր զնա կինն թէ
մարգարէն էր , այլ իբրև զմի 'ի հասարակաց մարդկա-
նէ ․ բայց զի հաւատով ետ 'ի ձեռս նորա՝ Աստուծոյ ,
վաղվաղակի ընկալաւ զփոխարէնն ։ Տուր և դու այն-
պէս 'ի ձեռս սորա՝ Աստուծոյ և ոչ մարդոյ , և հա-
տուցանէ քեզ ․ ապա թէ յամառիս , ոչ գիտես թէ
աղքատ վասն այնորիկ ես , զի ոչ տաս Աստուծոյ տուա-
ղին քեզ ։ Ածեմ և այլ օրինակ 'ի մէջ՝ դժուարալուր
ունկանդ , թերևս կարացից հաւատարիմ առնել քեզ
թէ Աստուած կայ , և արդարադատ է ․ քանզի զԱ-
ղիայլին գիտեմ , զի որպէս զհին ժամանակի բան կեղա-
կարծաբար ընդունիս ։ Հայեաց յամենայն ազգս քրիս-
տոնէից , հայեաց 'ի քեզ և 'ի քոյդ ազգ ․ Ե՞ր վասն
նոքա 'ի միշտ պատարագելն Աստուծոյ ոչ աղքատանան ,
և դու հանապազորդ ոժդութեամբդ՝ մնաս և այնպէս

1 Մի զիրն ․ Մարմնաւոր ։

ազգաս : Տես, և որպէս ես տեսի բազում անգամ, զի Նոքա ուր և բնակեն՝ ունին զփարթամութիւնն, և մեք ընդ ամենայն աշխարհս սփռեալս ունիմք ընդ աղքատութեան և զաղքատութիւնն : Ո՛չ այլ այսմ պատճառ, բայց թէ զի Նոքա հաւան են օրինացն Աստուծոյ, և մեք անհաւանք · Նոքա Աստուծոյ տան, և 'ի Նմանէ առնուն զհատուցումն առատ և առ յաւէտ, մեք մարդկան վաճառեմք, և զթիւս խնդրեմք փոխարէն : Փութան զըն զաջ քահանայիցն ողջունել, և 'ի Նոսա ամբառնայ ըն-պատարագն, և զխնդիրս տանել առաջի Աստուծոյ · Հայն 'ի մութն տուն ղօղէ [1], և որպէս յաւազակ 'ի Նոսա զտուրսն աւանդէ, մեծարանութեամբ և երախտամեօք · և յորժամ զայս քննեմք, բամբասեն թէ զազգս առնէ · բամբասէ առա և զածիշկն, որ զվէր հիւանդին խարէ · առա թէ ոչ ծանիր, զի զազգս կարի քաջ սիրեմ, և զվէրն՝ որով ազգս տառապի՝ թշնամանեմ, ոչ միայն զարմատն, այլ և զճարակումն չար ախտիս տեսեալ, զի այսպիսի անհաւատութիւն ժողովրդականաց և անպտղութիւն՝ արար զեպիսկոպոսս անօրինաց մաքսաւորս, զքահանայս երկրագործս, զկրօնաւորս այգէգործս : Այս է այսքան չարեացս արմատ, յաղագս այսպիսի անհաւատութեան՝ բարձաւ 'ի քաղաքաց մերոց այցելութիւն եպիսկոպոսաց, եկեղեցւոյ պայծառութիւն, ժառանգաւորաց բազմութիւն, աստուածպաշտութեանն հաստատութիւն, որոյ խափանեալ՝ շարժեաց ընդ իւր և զմարմնական իշխանութի · և Նոքա որք անարգեցին զլինելն ընդ տէրութեամբն Աստուծոյ, և 'ի Ներքոյ հոգևոր իշխանութեանն, անկան 'ի մարմնական տէրութեանց, և ծառայք եղեն տերանց չարաց : Արդ թէ զղջացեալ էաք այժմ, կամ ծանուցեալ զվէրն և 'ի բժշկութիւնն փութացեալ, անմարթ էր քննել · իսկ թէ դեռ ևս վտանգիմք Նովաւ, մի ոք առողջարար դեղոյս ընդդէմ պատասխանեսցէ, որ վկայութեամբ մտաց և տեսութեամբ աչաց զպատմութիւն բանիցս գիտէ, այլ ծանիցուք, զի անկարգութեամբն քակտեցաք և քակտիմք : Զարթի-

1 Այս անկարգութիւնք էին 'ի Նանկի · այլ խրատ Յամլբրոնեցւոյն մանաւանդ տեղիս յայնմ ժամու յուղղութիւն ած զհասարակաւյսն :

ցուք և զգուշասցուք, զշաւիղս ոտից մերոց ուղղեսցուք, աստի ուղղութեամբս 'ի հանդերձեալ կեանսն ժամանել հաւատասցուք. 'ի պէտս այսորիկ բաւականապէս տուաւ բանս, փառք Աստուծոյ և տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի՝ որ է օրհնեալ յաւիտեանս յաւիտենից, ամէն:

## ԶԻ՞ՆՉ ՑՈՅՑ ԱՌՆԷ ԱՅԺՄ ԶՍՐԲՈՑՆ ԱՆՈՒԱՆՑ ԶՅԻՇԱՏԱԿՍ ԱՌԸՆԹԵՐ ՍԵՂԱՆՈՅՆ ՎԵՐԱԾԱՌԻՍԼ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ Ի ԼՈՒՐ ԺՈՂՈՎՐԴԵԱՆՆ:

ՀԱՅՐՆ մեր երանելին Գերմանոսիոս, բացայայտապէս տայ մեզ զայսր խորհրդոյ հաստատութիւն. ուստի ընկալեալ զօրութիւն, զառաջակայ բանս պատկանեմք 'ի նախագրելոցդ յարմարութիւն՝ թէ ո՞ր աղագաւ սրբոց յիշատակ այժմ ձայնի. և էր վասն սարկաւագն որ զամենայն քարոզութիւնսն յարտաքին վայրս տաճարին 'ի մէջ ժողովրդեանն առնէր, զայս ոչ անդ՝ այլ 'ի խորանն սուրբ առընթեր սրբոյ սեղանոյն, և որ 'ի վերայ նորա աստուածային պատարագի: Արդ ցուցեալ է բազում անգամ զեկեղեցիս 'ի գծագրութիւն դասակարգութեան հրեշտակաց, և նախագրութիւնդ կրկնաբանութեամբ բաւականապէս տայ զիմաստ այսորիկ. բայց զի ամենայնարմար ըստ նոցա կերպարանացն ընթանայ ամենայն կարգաւորութիւն եկեղեցւոյ, կարօտիմք խիտ առ խիտ զապացուցէ ճշմարտութեանն բուռն հարկանել: Այլ քանզի սերովբէքն և քերովբէքն և աթոռք են անընդմիջաբար շուրջ զԱստուածով, և անմիջապետապէս հաղորդք նորին լուսաւորութեանն՝ որք իջուցանեն յերկրորդ պարունակն զկնի իւրեանց զնոյնն, և նոքա յերրորդն. այսպէս քահանայապետն և քահանայիցն պարունակ հաղորդեալք Աստուծոյ սրովբէաբար՝ տան յառընթերակայ պարունակ սարկաւագացն զգիտութիւնն, և նոքա ժողովրդեանն: Այս մինչև ցայժմ արար սարկաւագն, և իջոյց զամենայն իմաստ 'ի ներքին վայրէս զոր ուսաւ առ ժողովուրդն: Ապա և նոքին իսկ սոքա իբրև զհարս նոցա և զառաջնորդս բերին, և 'ի դիմաց ժողովրդեանն ետուն

զխոստովանութիւն հաւատոյն և զնշանակ նորին ըղնուէրս 'ի ձեռս մատուցող քահանայիցս[1], զոր առեալ տուաւ՝ մատուցին փոխանակ ամենայն ժողովրդեանն ըղբանական պատարագն հաստատութ֊ե նշանակացն[2]. յետ որոյ և նշանակքն էանց և կատարեցաւ մարմինն և արիւն Քրիստոսի, որով խնդրեաց քահանայն իջանել պէսպէս շնորհս 'ի վերայ մատուցողաց ժողովըրդեանն: Իսկ յորժամ Քրիստոսի պատարագելն կատարեցաւ, և որ նովաւ հայցուածքն էր քահանայիցն՝ 'ի գլուխ ել և աւարտեցաւ, դայ սարկաւագն և դարձեալ 'ի դիմաց ժողովրդեանն աղօթեր Քրիստոսի՝ մատուցանէ Աստուծոյ Հօր պատարագ և նուէր զսուրբըս ամենայն և զնոցա ճգնութիւնս և զառաքինութիւնս: Այլ ե՞ր վասն աղօթեր Քրիստոսի. քանզի սա գլուխ է, և նոքա անդամք, պարտ է զի ընդ պատարագել գլխոյն՝ և անդամքն 'ի պէտս հաշտութեան մեր նուիրեսցին: Այլ քանզի ասաց Քրիստոս, “Կամիմ Հայր, զի ուր եսն եմ, և սոքա ընդ իս լինիցին”. և անդ ուր է Քրիստոս յերկինս՝ հաւատամք զի և նոքա ըստ կամելոյն իւր առ նմա են. արդ որպէս զնորա յիշատակն տուաք Աստուծոյ Հօր վասն մեր հաշտութեան, նոյնպէս և զսրբոցն իւրոց որ առ իւր են. քանզի բաւական են և սոցա առաքինութեանն յիշատակքն զիջուցանել զնա 'ի վերայ մեր յողորմութիւն, ըստ այնմ. “Վերակացու եղէց քաղաքիդ այդմիկ վասն իմ և վասն Դաւթի ծառայի իմոյ”: Այլ ո՞ր աղագաւ ոչ 'ի սկզբանն, այլ յետ կատարման պատարագին յիշատակին. քանզի նախ և առաջին Քրիստոսի առաքինութիւնն և մահն[3] եղև մեզ հաշտութ֊ե ընդ Աստուած միջնորդ, և ապա սրբոց նորին՝ ըստ իւրումն շաւղաց. յաղագս որոյ նախ զՔրիստոսին դնեմք, և ապա ըստ կարգի զսրբոցն յիշատակ առ նմա և ընդ նմին. քանզի նոցա աշխատութիւնն՝ Աստուծոյ Հօր՝ Քրիստոսիւ և նորա միջնորդ լինելովն եղև սիրելի, վասն այսորիկ նովաւ սուրբքն 'ի պէտս փրկութեան մեր նուիրին: Դարձեալ տեսս զբարեվայելչութիւնս,

1 Մի օրին. Քահանայիս:
2 Երեք օրին. Նշանացն:
3 Մի օրին. ի մահն:

զի զՔրիստոսի յիշատակն քահանայն կատարեալ պատարագեաց, և զսրբոցն սարկաւագս առընթեր նմին, ուսուցանելով զառաւելութիւն պատուոյն՝ թէ նմա որ թագաւորին յիշատակին է պաշտօնեայ և սպասաւոր՝ ոչ է պարտ ծառայակցացն զնոյն կատարել, այլ պաշտին և յիշատակին նոքա 'ի խոնարհագոյն դասէ սարկաւագացն՝ նուիրեալ ընդ Քրիստոսի Աստուծոյ Հօր: Այլ զինչ էր նուէրն և պատարագն Քրիստոսի, բայց եթէ յիշատակ չարչարանացն նորա որ վասն մեր, հաստատութեամբ զգալի նշանակացն. այսպէս նուիրէ՝ և ըզսրբոցն չարչարանք և զաշխատութիւն ընդ Քրիստոսի պատարագ վասն ժողովրդեանն և բարեխօս, հաստատութեամբ նշանակի խնկարկութէ, քանզի խունկ արկանէ շուրջ զսեղանովն ընդ բանիցն, յայտ առնելով թէ որպէս զայս զգալի անուշահոտութիւն շուրջ արկանեմ զնշանակաւ աստուածութեանդ զսեղանովս, այսպէս և զդոցա բազմապատիկ առաքինութիւնն ծըխեմք բարբառով բանական բերանոյս քեզ բուրումն հաշտութեան 'ի յերկինս. և որպէս շուրջ զսեղանովս է խունկս՝ և ոչ 'ի վերայ նորին, և իմ յիշատակելս զանուն սրբոցն՝ առընթեր պատարագիս Քրիստոսի, և ոչ ընդ նմին. այսպէս և զսուրբսն հաւատամք շուրջ զաստուածութեամբդ կարգեալս, և ոչ 'ի ծոց քո ընդ միածնիդ առընթեր Քրիստոսի, և ոչ 'ի փառս նորին հաւասարս և համապատիւս: Այլ մեք յուսամք թէ որպէս գլուխդ Քրիստոս իշխանական համարձակութեամբ զփրկութիւն մեր քահանայագործէ, այսպէս և սուրբքն որք գործով և աշխատութեամբ ցուցին մեզ զշաւիղս աստուածպաշտութեան, ըստ իւրաքանչիւր համարձակութեան կացեալք առաջի աստուածութեանն՝ միշտ մաղթեն վասն եկեղեցւոյ քրիստոնէից: Իսկ թէ ընդէր բարձրաձայն կոչէ զանուանս նոցա սարկաւագն 'ի լուր ժողովրդեանն, և ոչ խորհրդաբար որպէս քահանայն. ասելի է: Խորհուրդ միայն Քրիստոսին է[2] մահն՝ Աստուծոյ վասն մարդկան մեռանել, զոր բարեկամապէս Հօրն իւրում նուիրէ քահանայն. իսկ սուրբքն՝ որպէս պարտն էր վասն սիրոյն տեառն

1 Մի օրին. Սարկաւագն:   2 Երկու օրին. Էր:

իւրեանց Քրիստոսի մեռան, զորոց զանուանսն յիշե-լովն բարձր՝ ապացոյց տայ զնոսին և օրինակ ժողովըր-դեանն, տեսանել թէ որքան շնորհաց արժանիք գտան, վասն սակաւ աշխատութեան ընդ Քրիստոսի քննել կենօք, և ընդ նմին յիշատակիլ անուամբ։ Դարձեալ զի և ժողովուրդդ 'ի Քրիստոսի մահուան խորհուրդն և 'ի պատարագելոյն Հօր տկարք էին, և ոչ կարացին հաղորդել թէ որպէս տայ զնա քահանայն Հօր, կամ զիարդ առնու փոխանակ այնորիկ զՀոգին. վասն որոյ միայն առ պատարագեալն Քրիստոս էր սոցա օրհնու-թիւնն և գոհութիւնն, և ոչ եթէ առ ընդունող պա-տարագին Հայրն։ Իսկ սուրբքս համազգիք են ժողո-վրդեանն և բնութենակիցք, սոցին վշտացն կցորդք և հաղորդք, կարող է ժողովուրդս զսոցանէ բուռն հար-կանել իբր զգործակցաց ընտանեաց և մերձաւորաց. վասն այսորիկ և 'ի լսել նոցին նուիրէ զնոսա Աստուծոյ Հօր՝ առաքինութեամբք իւրեանց ընդ Քրիստոսի վասն մեր պատարագ և բարեխօս սարկաւագն։ Այլ մի ոք կարծեսցէ թէ յիշեն այժմ իբր զօգնականութեան կարօտ. քանզի արդարև են կարօտ շնորհի սրբոյ՝ խոր-հրրդոյս, բայց զայս նախ քահանայն եւ նոցին խոր-հրրդական աղօթիւքն ասելով, "Սովաւ հանգո ըզ-սուրբս առաքեալսն, զմարգարէս, զհարս և զհայրա-պետս"։ Իսկ այժմ 'ի սարկաւագէն նուիրի անուան-քըն; և ոչ թէ 'ի քահանայէն 'ի պէտս փրկութեան ժողովրդեանն, և ոչ թէ ինքեանց. քանզի ասէ,

"Աստուածածնի սրբոյ կուսին Մարիամու, և Յով-հաննու մկրտչին, սրբոյն Ստեփանոսի, և ամենայն սըր-բոց եղիցի յիշատակ 'ի սուրբ պատարագս, աղաչեմք"։ Այսինքն թէ սրբով պատարագաւս և ընդ սմին յիշա-տակեսցի և ամենայն սրբոց առաքինութիւն 'ի պէտս փրկութեան մեր բարեխօսութեան, և որ Քրիստոսիւ հաշտեցար ընդ մեզ և ողորմեցար աշխարհի, նոյնպէս ողորմեաց և 'ի ձեռն նորին անդամոց և սրբոց, աղա-չեմք։ Աղաչեմք ասելով՝ զայն յայտ առնէ, թէ ընդ իս և ամենայն ժողովուրդն՝ որոց փոխան բերան ա-ռեալ խօսիմ, աղաչեն զայս. զինչ. այսինքն միջնորդու-

1 Տե՛ս որ ինչ զայսմանէ 'ի վեր անդր ասացաւ. յէջ 379։

Թեամբ Քրիստոսի, և զորբոցն որ վասն մեր մատչին յերկնիս աղաչանք՝ յիշել քեզ և ընդունել. իսկ ժողովուրդն որպէս միշտ. և այժմ կցորդլին առաջնորդին իւրեանց՝ ասելով, "Յիշեա Տէր և ողորմեա": Յայս առնելով թէ զդոսա՝ զոր սարկաւագդ հայր մեր և վարդապետ առաջի քո անուանեաց, յիշեա տէր, և նոքօք վասն սոցին ձգնութեան և բարեխօսութեան ողորմեա մեզ. այսպէս ըստ կարգի բերէ զիւրաքանչիւրսն 'ի սրբոցն, և նոքօք աղաչէ կցորդութեամբ ժողովրդեանն. յիշէ և զսուրբսն, որոց յիշատակն և տօնախմբութիւնն լինի, զի նոցա՝ առաւել տուեալ յայնմ աւուր համարձակութիւն առաջի Աստուծոյ և Քրիստոսի նորա. քանզի զայս ուսուցանէ մեզ և տօնելն յօր վկայութեան իւրեանց և ունելն բարեխօս:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ԱՂՕԹԻՑՆ ԶՈՐ ԸՆԴ ԱՅՍՐ ՄԱՏՈՒՑԱՆԷ ԽՈՐՀՐԴԱԲԱՐ:

"ՅԻՇԵԱ տէր և ողորմեա և օրհնեա զսուրբ կաթողիկէ առաքելական եկեղեցի քո՝ զոր փրկեցեր պատուական արեամբ միածնի քո և ազատեցեր խաչիւն սրբով, շնորհեա սմա զանշարժ զխաղաղութիւն": Զայս ոմանս ասէ յիշել այսուհետև և ողորմել. զՔն և զսուրբսն իւր. զՔրիստոս իւրով գործովքն զոր նախ ինքն յիշատակեաց, և զսուրբսն զոր առընթեր նմին սարկաւագն վերաձայնեաց: Իսկ տես ինձ զվայելչութի խորհրդոյս, քանզի մինչդեռ զՔրիստոս միայն ունէր առաջի, ոչ ասէր՝ թէ յիշեա և ողորմեա. այլ իբրև ամենակարող տէրամբ, նովաւ և 'ի ձեռն նորա զհայցուածսն կատարել թախանձէր՝ ասելով, սովաւ շնորհեա զայս ինչ և զայս, որ կարէ զամենայն ինչ զօրեղապէս[2] տնօրինել: Իսկ այսուհետև կցորդ առեալ Քրիստոսի զսուրբսն, և պատկանեալ ընդ գլխոյն զանդամսն, վայելչապէս կրկնաբանէ զաղօթսն. և զոր Քրիստոսիւ միայն խնդրեաց, երկրորդէ վերստին նովաւ և սրբովք նորին թախանձէ՝ ասելով, յիշեա տէր

1 Մի օրին. Նորա:

2 Մի օրին. Կարողապէս:

և ողորմեա․ այսինքն՝ յիշեա տէր վասն Քրիստոսի զտուրս իւր, և վասն նորա զմեզ, և ողորմեա մեզ․ յայտ է ողորմեա՝ թէ ախտակցաբար օգնեա մեզ։ Բայց խնդրելի է․ զի՞նչ է ասելս, յիշեա տէր․ և թերևս ախտ մոռացմա՞ն տիրէ ամենահայեաց բնութեանն զի զյի-շելն խնդրէ, մանաւանդ և զտուրքսն իւր զորոց վկայէ բանն, "Ծանեաւ տէր զայնոսիկ որ իւրն են"։ Ոչ բնաւ, այլ յիշել խնդրեմք յԱստուծոյ 'ի պէտս մերոյ փրկութեան․ իբր թէ ասելով, մեք ոչ եմք արժանի, բայց նորա արժանաւորութեանն[1] յիշատակն՝ որք են առաջի քո անջնջելի, շարժեսցէ զտէրդ յողորմութիւն 'ի վերայ ծառայիս։ Օրհնեա, ասէ, զկաթողիկէ եկե-ղեցի առաքելական, այսինքն զժողովուրդս հաւատա-ցելոց՝ որք ընդ տիեզերս ամենայն 'ի յառաքելոցն աշա-կերտեցան։ Օրհնեա, օրհնութիւն է առատութեան Աստուծոյ բարերարութեանն խնդրուածք 'ի վերայ նո-ցա։ Տես դարձեալ և ասա, զի դու վասն ամենայն քրիստոնէից աղաչես, և ամենայն քրիստոնէից եկե-ղեցիք՝ վասն քո․ և հաղորդիմք միմեանց ըստ Քրիս-տոսի։

"Որ փրկեցեր պատուական արեամբ միածնի քո, և ազատեցեր խաչիւն սրբով"։ Իբր զպարտական բուռն հարկանէ հարազատ սիրոյն զտերցն Աստուծոյ․ փրկեցեր ասէ, վասն այնորիկ և նախախնամիլ փրկելոցս 'ի քէն իրաւացի էր։ Բայց ուստի՞ փրկեցաք․ 'ի ձե-ռացն սատանայի որ չարածական մոլորութեամբն ծա-ռայեցուցանէր զմեզ, և մեք սակս նորա հետևելոյն անձնիշխան կամօք՝ արտաքոյ էաք օգնականութեան Այ և շնորհաց Հոգւոյն․ եւ զիւր արիւնն Քս Հօր փո-խանակ ամենեցուն նուէր հաշտութեան, և այնպէս փրկեցաք Աստուծով 'ի ձեռաց չարին։ Իսկ ազատեցաք և խաչիւն․ ուստի՞․ 'ի դատակնքէն Ադամայ, քանզի նորա մեղօքն ամենեքեան դատապարտեցաք մահու․ վասն զի անմեղ մեռաւ՝ զամենեսեան ազատեաց խաչիւն։ Բայց տես թէ ո՞րպէս զամենայն շնորհս Որդւոյն առ Հայրն վերածեալ՝ զհամակամութիւն ցուցանէ, և ըստ Քրիստոսի խրատուն՝ Որդւոյն անուամբն 'ի Հօրէն

1 Մի օրին․ Արժանաւորութեամբն։

զխնդիրսն մաղթէ, քանզի ասաց, “Զոր ինչ խնդրէք յանուն իմ 'ի Հօրէ իմմէ՝, առնուցուք ”:

“Շնորհեա սմա զանշարժ զխաղաղութիւն ”: Չայտ առնէ թէ խաղաղութիւնն ընդ քեզ և ընդ մեզ անապական ուրեմն հաստատեցաւ. բայց մեք նիզ եղեալ զզանազան տեսակս մեղաց և յանցանաց՝ շարժեալ խախտեմք զնոյնն, և 'ի թշնամեացն դրդեալ 'ի թշնամութիւն՝ նոքօք սիրելւոյդ ընդդէմ յառնեմք. այլ դու որպէս բարերար տէր անտես արա, և մի երբէք յանարգութիւն մեր ընթացից շարժեր զարեամբ և խաչիւ սիրեցեալ Որդւոյ հաստատեալ զխաղաղութիւնն 'ի մէջ մարդկան և քո, Աստուած մեր:

“Յիշեա տէր և ողորմեա և օրհնեա զամենայն ուղղափառ եպիսկոպոսունս՝ որք ուղիղ վարդապետութ՟ համառօտեն մեզ զբանն ճշմարտութեան, եւ առաւել զեպիսկոպոսապետն մեր՝ շնորհելով մեզ ընդ երկայն աւուրս ”: Զյիշելն բաւականապէս եղեալ յառաջագոյն և զպատճառ նորին, կարօտիմք վերստին զնոյն հաստատել՝ թէ ոչ է անվայելուչ ընդ մարմնոյս Քրիստոսի՝ մարմնակցաց իւրոց սրբոցն կցորդութ՟ ճակցել. և այսմ ուսումն մեզ տացի նիւթ, բայց եթէ 'ի նոյն ինքն 'ի տեառն բանից. “Ես 'ի Հօր իմում, ասէ, և դուք 'ի յիս, և ես 'ի ձեզ ”: Տեսանես շաղկապութիւն անդամոց. և դարձեալ զտեղ կայանի սոցին խնդրէ ուսանել. “Ուր եմն եմ, ասէ, և դուք անդ իցէք. և ուր երթամն գիտիցէք ”: Եւ Պօղոս ասէ, “Մինչև հասցուք ամենեքեան 'ի մի միաբանութիւն յուսոյ և սիրոյ՝ յայր կատարեալ, 'ի չափ հասակի կատարմանն Քրիստոսի ”: Ապա ուսար հասակ գլխոյն Քրիստոսի սոքա իցեն՝ որք առ նա ժամանեցին. և զիարդ ունիցիմք առանց հասակին զգլուխն միջնորդ՝ որք հասին առ նա և յօղեցան յոսկերս նորա և խառնեցան յանդամս նորին. ուրեմն վայելչապէս ապա նուիրեցաւ գլուխն 'ի գլխաւոր դասէ քահանայիցն, և հասակն՝ յերկրորդ կարգէ սարկաւագացն. և այժմ յիշեալ զլի կատարեալ մարմինն Քրիստոսի, խնդրէ սա և վասն նորին ողորմել: Բայց զինչ պտուղ ողորմութեէն. օրհնեա, ասէ, զեպիսկոպոսս. և ոչ նախ խնդրե-

ցեր Քրիստոսիւ վասն նոցին. այո, ասէ, բայց զայն Քրիստոսիւ միայն խնդրեցի շնորհել, իսկ այժմ դասեալ՝ սարկաւագին ընդ նմա և ընդ տուրքսն իւր, և որպէս երբեմն ետ 'ի ձեռս իմ զպատարագն Քրիստոսի նշանակօք նուիրայն և դաշամբք հաւատոցն մատուցանել, այսպէս և այժմ ետ զսրբոցն ամենից նուէրն վերաճառութեամբ անուանցն, և խնկարկութեանն նշանակաւ. վասն այսորիկ կարօտիմ ընդ Քրիստոսի, և նոքօք դարձեալ զխորհուրդ աղօթիցս երկրորդել։ Այլ է՞ր վասն նախադասելին միշտ եպիսկոպոսքն. զի այնլուք և գլուխ են ժողովրդոցն, հովիւ և առաջնորդք. եթէ նոքա ուղիղ գնան, ամենեքեան հետևեալքն անխոտոր ճանապարհորդեն. ապա թէ թիւրեն, կուրացն հետևող տգէտքն 'ի խորխորատ մոլորութեան ընդ նոսին կործանին. “Կոյր կուրի, ասէ, յորժամ առաջնորդէ՝ սխալէ, և երկոքեան 'ի խորխորատ անկանին”։

“Յիշեա տէր և ողորմեա և օրհնեա զքո առաջի կացեալ ժողովուրդս և զպատարագիս մատուցօղքս, և պարգևեա իւրաքանչիւրոց սոցա զպիտոյսն և զօգտակարսն”։ Ըստ կարգի բերէ յետ եպիսկոպոսացն և զառընթեր ժողովրդեանն հայցուածք՝ որ 'ի նոցանէ հովուէն։ Զքո առաջի կացեալ ասէ. քանզի առաջի Աստուծոյ կան յեկեղեցին առընթեր նորին խօսակցացն քահանայիցն։ Օրհնեա ասէ, քանզի և նորին վասն դեգերին, օրհնութիւն ընդունել յԱստուծոյ ըստ իւրաքանչիւր օգտի և արժանաւորութեան. իսկ մատուցողք պատարագին կոչէ, զորս ընդ ինքեան քահանայքն և սարկաւագունքն են 'ի պաշտամանն և կէս սարկաւագունք. քանզի ամենեքեան նոքա ըստ իւրաքանչիւր գործոյ մատուցման պատարագին հպատակեն, որպէս ցուցեալ է։ Արդ ուսանելին իմացողքն թէ մինչչև չար ախտից շնորհավաճառութեան տիրեալ էր, այսպէս մատչէր պատարագն բազմութ̅ք քահանայիցն՝ հաղորդութեամբ, և զանազան պաշտօնէից հպատակութեամբ. ըստ որում և ունին զօրէնս անփոփոխ ամ̅ քրիստոնեայք. մանաւանդ զի և ժողովուրդքն լինէին առընթեր քահանային և առաջի Աստուծոյ. զոր

1 Երկու օրին. Ընդ նմա և զտուրքան իւր։

այսօր ոչ ունիմք այսպէս մօտ ընթացողքս 'ի հայրականն շաւղաց ։

“ Սարկաւագս իւրաքանչիւրոյն զպիտոյսն և զօգտակարսն ”։ Այսինքն ժողովրդեանն զիւրեանց պիտոյսն, և քահանայիցն զիւրեանցն ։

“ Յիշեա տէր և ողորմեա զուխտաւորս և զպտղաբերիչս եկեղեցւոյ քում սրբոյ, և որք յիշեն զաղքատս ողորմածութեամբ, և հատո նոցա զպարտս նոցին հարիւրապատիկ, ըստ ընդաբոյս առատութե̄ քում աստ և 'ի հանդերձելումն ”։ Հաւասիկ փակեաց 'ի ներքոյ բանիս զամենեսեան, որք յանուն Քրիստոսի յեկեղեցիս և 'ի քահանայս ընծայաբերք լինին, և հատոյց թերահաւատութեամբ վաճառողաց աստ զպարտսըն ընդհանրական եկեղեցւոյ պատարագ. քանզի ոչ ասէ, յիշեա զնոսա՝ որք առ իս լինին պտղաբերք, այլ զորս ընդ տիեզերս ամենայն նուիրեն 'ի գոյից իւրեանց Աստուծոյ ։ Տեսանես թէ որպէս վճարեն զվաճառողդ քահանայք եկեղեցւոյ, միմեանց ձեռնտուութեամբ ։ Բայց ո՞ր ուխտաւորն, կամ ո՞յք պտղաբերիչք. ուխտաւորս կարծեմ զայնոսիկ լինել՝ որք դաշամբք վասն փրկութեան իւրեանց ընծայաբերք լինին Աստուծոյ. կամ վասն յանցանաց իրիք տան 'ի ձեռս Աստուծոյ պատարագ, ըստ այնմ. “ Ուխտս դիք և կատարեցէք տեառն Աստուծոյ մերոյ. մատուցէք պատարագ ահաւորին ”։ Իսկ պտղաբերիչք են հասարակաց ժողովուրդ՝ որք զպտուղ վաստակոց իւրեանց գանձեն աստ որ ինչ և յաջողի անձանց իւրեանց, ըստ հրամանին Պօղոսի. “ Յամենայն միաշաբաթս, ասէ, իւրաքանչիւր ոք անձին իւրում գանձեսցէ որ ինչ և յաջողեսցէ ”։ Բայց առ ինչ հայեցեալ՝ կոչէ պտղաբերիչս. քանզի զոր օրինակ այգէգործն մշակէ զայգին, յօտէ և բրէ, առոգանէ և ստածէ, թէպէտ և զվարձ աշխատութեանն ակն ունի 'ի տեառնէ այգոյն գտանել, բայց սակայն և ինքն զչափաւոր պէտս մարմնոյն ոչ խորշէ ընուլ 'ի պտղոյ այգւոյն, այսպէս և առաջնորդք զհաւատացեալ տունկս բանաւոր, զեկեղեցւոյս բազմութիւն՝ մշակագործեն, և վարձուց հատուցման ակն 'ի տեառնէ իւրեանց ունին՝ որ կոչէ ասելով. “ Եկ ծառայ բարի և հաւատարիմ ”. բայց սակայն և զհարկաւոր պիտոյս մար-

մնոյն՝ հարկաւորապէս ընուն ՚ի ժողովրդեանն անդր, ըստ այնմ. «Ո՛ տնկիցէ այգի, և ՚ի պտղոյ նորա ոչ ուտիցէ: Նոյնպէս և տէր հրամանն ետ որոց զաւետարանն աւետարանեն՝ յաւետարանէ անտի կեալ»: Իսկ զի կեան ՚ի նուիրաց սոցա, հարկաւորապէս առաջի Աստուծոյ յիշեն. զի նա հատուսցէ որում տան սոքա՝ և յորոյ անունն տան, քանզի Տ՟ն տան, և ոչ մարդոյ. և սոքա ծառայք գոլով Աստուծոյ՝ ՚ի նմանէ առնուն, և ոչ ՚ի տուողացն. ըստ որում յարքունիսն է տեսանել, զի ոմանք երկրագործք են ընդ ձեռամբ թագաւորին, և ոմանք զինուորք. զինուորքն ընդդիմամարտութեամբ թշնամեացն ՚ի խաղաղութեան պահեն զաշխարհն, և սոքա գործեն. բայց ոչ աշխարհն զինուորացն հպատակեն, այլ ՚ի ձեռս արքային տան զհարկսն, և նա ՚ի գօրականսն իւր մատակարարէ, և աշխատութեամբ սոցա և մարտիւ զաշխարհն ՚ի խաղաղութեան պահէ. այսպէս և Աստուած առնէ, ինքն հրամայեաց աւետարանչացն յաւետարանէ անտի կեալ, և տուողացն ըզբաժակի ջրոյն խոստացաւ զհատուցումն. վասն այնորիկ ասէ, հատո նոցա զպարտսն իւր զկանխաւ անսուտ քո խոստումն:

«Իսկ որք յիշեն զաղքատսն ողորմածութեամբ, հատո նոցա զպարտս նոցա հարիւրապատիկ ըստ ընդաբոյս առատութեան քում աստ և ՚ի հանդերձելումն»: Արդարև ընդաբոյս է Աստուծոյ առատութիւնն, և յաստիս վայելեմք ՚ի շնորհս նորա առատապէս, և ՚ի հանդերձեալսն՝ անձառ բարեացն ակն ունիմք: Ապա թէ այսպէս է ասէ, ընդէ՞ր ոչ ամենեքեան փարթամք, այլ աղքատք՝ կարօտ մեծատանց: Ոչ ՚ի նուազութենէ կարողութե՟ն Աստուծոյ այս տնօրինեալ՝ որ զկարևորսն ետ առատ, զլոյս, զօդ և զջուր. այլ յառատութենէ նախախնամութե՟ն, զի միմեանց հաղորդականք լիցուք սիրով վասն պիտոյիցն, և այնպէս Աստուծոյ նմանք լիցուք, ոմն Հօրն՝ ողորմութեամբքն, և ոմն Որդւոյ՝ աղքատութեամբքն, և ապա ՚ի հանդերձեալն իւրաքանչիւր ոք զիւր վարձսն առնու ըստ իւրում վաստակոցն՝ որպէս խոստացաւ Քրիստոս:

1 Մի օրին. ի հանդերձելումն:

"Յիշեա տէր և ողորմեա և գթա 'ի հոգիս հանգուցելոցն. հանգո զամենեսեան և լուսաւորեա և դասաւորեա ընդ սուրբս քո՝ յարքայութեան երկնից, և արժանի արա ողորմութեան քում,,: Յետ կենդանեացս ըստ կարգի դասէ և վասն մեռելոցն զմաղթանս, որոց հանգիստ և գթութիւն աղերսէ ունել յԱյ. քանզի նախամեծար և հաւատարիմ սոցայն է փրկութիւն՝ որոց դեռ ևս այս որ առժամանակեայ կենացս առաջի կայ, որք են 'ի ժամանակս ընդունելի և յօր փրկութեան. իսկ վասն ննջեցելոցն ասէ սոյն առաքեալ. "Իւրաքանչիւր ոք ժառանգէ՝ զոր ինչ 'ի կեանսն իւրով մարմնովն գործեաց, եթէ բարի և եթէ չար,,: Բայց սակայն ունիմք յոյս հայրենի աւանդութեամբ՝ գտանել և յետ մահու ողորմութիւն և ներողութիւն 'ի մարդասիրութենէն Աստուծոյ, բայց սակաւ՝ և ոչ տիրապէս որպէս 'ի կեանս, զի այն հատուցման վայր, և այս շնորհաց և ողորմութեան. ուստի և հանգիստ խնդրէ նոցա 'ի բարերարէն Աստուծոյ ընդ սուրբսն: Քանզի որպէս ցուցեալ է բազում անգամ, որոշ 'ի միմեանց է կայարան հոգւոց մեռելոցն[1], և ևս յայտնի է 'ի մեծատանն և 'ի Ղազարու առակէ, արդ ասէ թէ զհոգիսն՝ զորս այժմ ըմբռնեաց սատանայ իշխան օդոյս ըստ պարտեաց իւրեանց, և ոչ եթող 'ի տեղ սրբոցն ժամանել՝ ըստ որում ետեսն Անտոն. գթա 'ի վերայ նոցա և 'ի միւսանգամ գալստեանդ արդար դատաստանաւդ, զերծո յիշխանութենէ չարին և դասաւորեա ընդ սուրբսդ, որք այժմ են զերծեալք յարքայութեանդ երկնից: Զայս խորհուրդ ընդարձակագոյն ցուցեալ է յառաջին Ճառսն, յորում զորչափն օգուտ յետ մահու յաղօթից յայտնեալ եմք. բայց են ոմանք՝ որ յայսմ վայրի անմտաբար յաւելուած առնեն աղօթիցս՝ կարծելով առաւել շնորհ իջուցանել 'ի վերայ ուրուք մեռելոյ՝ որոց պարտական զանձինս վարկանին. քանզի ասեն, և մանաւանդ՝ յորոյ անունն[2] զսուրբ և զանմահ պատարագս մատուցանեմք. անգիտացեալ՝ թէ այս զօրութիւն բա-

1 Այս ինքն, Արքայութիւն, գժոխք և քաւարան:

2 Քանզի յԱստուծոյ անունն միայն մատչի պատարագ, ոչ ուղիղ է ասելն յանունն այսր կամ այնր ննջեցելոյ, փոխանակ ասելոյ 'ի յիշատակ և 'ի նպաստ ուրուք, որպէս տակաւ պարզաբանէ:

նի, ոչ և առ մի ոք 'ի նզովեցելոց սահմանի, այլ առ Աստուած Հայր. քանզի պատարագս 'ի նորա յանուն մատչի, և նմին նուէր 'ի մէնջ 'ի մարդկանէ Քրիստոս' 'ի պէտս փրկութեանն ամենեցուն նախ կենդանեաց և 'ի ձեռն նոցին մեռելոց: Արդ ասելով թէ յորոց անուն զսուրբ պատարագս մատուցանեմք, ընդ նոցին ասես ընդ Աստուած, թէ զքեզ համոզ: Այսպիսի է անխրատութեանն մոլորութիւն, ապա թէ կեղակարծես', զօրինակէ բուռն հար և զպարզ բանն. փոյթ հարկանելով, գիր գրելով, այլ ինչ գործ կատարելով, ոչ սովորաբար ասես' յանունն Աստուծոյ, յայտ արարեալ թէ 'ի նորա յանուն և 'ի փառս զգործս կատարեմ. նա և Պօղոս ոչ խրատէ. "Եթէ ուտիցէք, եթէ ըմպիցէք, եթէ զինչ և գործիցէք, յանուն և 'ի փառս Աստուծոյ արասջիք": Արդ որ հրաման առաք զուտելն հասարակաց սեղանոյ' Աստուծոյ անուանն նուիրել, զխորհրդական սեղանս' մարդոյ անուանն տալով, որքան ողբոց չգտանիմք արժանի. մանաւանդ թէ' և ոչ ասէ ինքն Ած, յորոյ անուն մատուցանես զդա, նա թող շնորհէ դմին հոգի: Արդարև յաղթիմ յամօթոյ անկարգութեանս, սակայն պարտ է գիտել' թէ զայս յետոյ մուծին յայս ոճ' ախտացեալքն 'ի համարս պատարագացն: Քանզի իմ մանուկ գոլով մտավարժ, քննեցի սորին վասն զպատարագամատոյց աղօթս 'ի կաթողիկոսարանն և 'ի բազում տեղիս 'ի հին օրինակսն, և ոչ գտի բնաւ զբանս զայս, նա և ոչ յայլ ազգաց ապայցս' յորոց և մերս է թարգմանեալ. այլ պարտ է ախորժողացն յիշել առանձինն զկենդանի ոք կամ զմեռեալ, յաւելուլ առանձինն բան աստ և յառաջնումն աղօթսն:

"Յիշեա տէր և զծառայս քո' զայս անուն, թէ կենդանի է' փրկեա, և թէ մեռեալ է' հանգո": Եւ որչափ սէր նորա և հաւատ ուսուցանէ քեզ զվասն նորին աղօթելն, յառաջ բեր բանս և ասա առաջի Աստուծոյ, և մի մոլորութեամբ զտէրս իմ, որ յանուն Հօր իւրոյ եկն, ըստ այնմ. "Ես եկի յանուն Հօր իմոյ". նոյն և որ զնորին պատուիրանն կատարեալ մեռաւ, ասելով, "Ո՞ւ ի ծանիցէ աշխարհ, եթէ սի-

1 Մի օրին. Կեղծաւորէ:

րեմ զհայր, և որպէս ետ ինձ պատուէր, այնպէս առնեմ». այսինքն զի մեռանիմ: Ո՛չ եք 'ի մարդոյ անուն պատարագեալ՝ պարտական պատասխանի գտցուք. այլ ես ասէ, ոչ եթէ 'ի մարդոյ անուն առնեմ, այլ յիշատակեմ. ապա եղբայր, թէ յիշատակես, մի այդպէս թիւր բանիւք զԱստուած բարկացուցանես, այլ ըստ որում զայլս յիշել նմա յանձն արարեր և ողորմել, ասելով, «Յիշեա տէր զեպիսկոպոսս, զժողովուրդս, և ողորմեա սոցին և օրհնեա». այսպէս յիշել Աստուծոյ աղաչեա զայն այր, թէ կենդանի կամ մեռեալ, և ողորմել նմին պատարագաւս որ 'յիւր անուն մատչի. քանզի թէ ես այսպէս տաղտկանամ ընդ այդր բանի թիւրութիւն, քանիօ՞ն առաւել Աստուած: Ա՛ն ոմանք՝ որք այլ ինչ յաւելուն՝ ստերիւրեալ և թիւր մտօք ասելով, և ողորմեա ամենայն անյիշատակաց: Ո՛վ քո զօրութեանդ, զի զարթուցից թերևս և այպանելովս. 'ի ծայրն հասեր իմաստիցն, փրկեցեր զոգի քո՝ զայս ասելով. ասա ինձ, ո՞վ է անյիշատակն՝ զոր դու յիշատակես, աղքատն, տառապեալն, վասն Քրիստոսի կենցաղոյս արհամարհողն, որք 'ի լերինս և 'ի ծերպս վիմաց մեռան անհաղորդք 'ի մարդկանէ: Իսկ յիշատակաւորք. որք արծաթ ժողովեցին, և ոչ կալուցեալ զկնի յետ մահու տանել, 'ի մեզ ետուն, զորոց զանունսոյն վարձկանքս հռչակեմք յաղօթս մեր: Ո՛վ անբերելի յիմարութեանս. ապա թէ նոքա Քրիստոսի խաչակիցքն և կենցաղոյս թշնամիքն՝ անյիշատակք են, յիշելն ոչ է Աստուծոյ, այլ մեր. և սուտ ասացաք, թէ յիշեա զայս անուն և զայն. զի թէ նա յիշողութիւն ունէր, զնոսա նախ յիշէր՝ որ զինքն սիրեցին, և ոչ զորս դու անուանես, և նա ըստ գործոց իւրոց տաղտկանայ յանուանցն լուր: Ապա թէ յիշելն Աստուծոյ է, և ոչ մեր, և նմա մաղթեմք յիշել և ողորմել, ո՞յք են՝ զորս արտաքոյ ամենատես յիշողութեանն համարիմք և անյիշատակս կոչեմք, ցո՛յց ինձ:

Ա՛յ որ չունէր ինչ յաշխարհէս, և չետ 'ի ձեռս իմ զանձ: Ապա թէ այդ այդպէս է, մի ձայնակցեր Քրիստոսի և գովեր զաղքատութիւնն. քարոզեսցուք ամենեցուն ոսկւոյ և արծաթոյ փոյթ տանել, և նոքօք մեծայիշատակ լինել առաջի Աստուծոյ. և ո՞ւր ապա

դնեմք զիմոյն Քրիստոսի աղքատութիւնն, ուր և զնորա վարդապետութիւնն: «Որ բարձր է, ասէ, առաջի մարդկան, պիղծ է առաջի Աստուծոյ»· յայտ է թէ որ ցած է առաջի մարդկան, որչափ աստ ցած է, այնչափ առաջի Աստուծոյ բարձր է· և թէ բարձր է և յիշեալ է, անյիշատակն ապա ո՞ է· զի զմեծատունսն յանձնեմք Աստուծոյ՝ յիշել վասն ոսկւոյն, և զաղքատըն ինքն յիշէ վասն 'ի յերկինս գանձելոյն· գտցուք զայն՝ որ արտաքոյ մնաց յիշմանն և հայեցողութեանն Աստուծոյ· յայտ է թէ՝ և ոչ ոք: Ուրեմն թիւր է և այս կարծիք յաւելուածոյ ընդ սուրբ բանս խառնեալ, զի պատարագս տիեզերաց է հաշտութեան նուէր՝ Քրիստոսի յիշատակաւս· լոյս իմանալի սփռեալ յաշխարհըս, որ զաչս հոգւոյն մաքուր ունի՝ ըստ չափոյ մաքրութեանն ձգէ յինքն զպայծառութիւնն: Դարձեալ զինչ պարտ է ասել և զերրորդն՝ որ ընդ սոքօք անմտութիւն, զի հարցանեն ոմանք ցիմաստունս մեր· կենդանւոյն լինի՞ պատարագ, թէ ոչ· իսկ որ բուն կատարեալքն են, պատասխանեն, ոչ բնաւ· այլ ասեն, թէ սուրբ կենայ այնուհետև, և որպէս զմեռեալ լինի: Օ այս և 'ի կանոնս մեր գտի գրով հարցեալ, և ասեմ ծիծաղելով, աշխարհեցէք սուրբ հրեշտակք զայպանելի իմաստութիւնս մեր, և զմնաց թշուառական կուրութիւն· զի ինքն որ զայս հարցանէ կամ պատասխանէ, զիա՞րդ վարկանի զանձն հաղորդ շնորհացս Քրիստոսի կամ պատարագող· զի թէ պատարագեալ էր, գոնէ սակաւիկ ինչ իմացեալ էր, թէ 'ի սկզբանէ մինչև ցվախճան խորհուրդ պատարագիս վասն կենդանեացս կատարի· զի կենդանիքս՝ են եպիսկոպոսք, որոց զձեռն և զշնորհն խնդրեաց, կենդանիքս և քահանայք, թագաւորք, ճանապարհորդք, նաւորդք, վաստակաւորք, առընթերակայ ժողովուրդք պտղատուք և ուխտաւորք, ողորմածք և հաւատացեալք· ապա այս ամենայն՝ կամ ընդ վայր եղան աստ, կամ ինքն ոչ կարաց 'ի սոսա հայել՝ խուլ և կոյր գոլով: Նա և ինքն դիտաւորութիւն պատարագիս 'ի սկզբանէ մինչև ցկատարած առ ո՞ հայի, բայց թէ առ կենդանիքս: Սա ինձ արդ, քո այն մին բանն՝ զոր խօսեցար վասն մեռելոյն, յաղթեա՞ց բովանդակ պատարագիս խորհրդոյ, և շնորհքս

'ի նա 'ի մի հոգին զգրաւեցաւ սեփական, և միացին տիեզերք ամենայն թափուր 'ի սմանէ[1]. ապա և Քրիստոսի մահն՝ որոյ սա յիշատակ է, ոչ կենդանեաց, այլ մեռելոց եղև փրկանք: Ո՛վ անքերելի յիմարութեան. զտարակուսական հարցումնս 'ի հակառակն են փոխեալ. զօրօրինակ թէ ոք 'ի տան բնակեալ՝ ընդ ծերպ ինչ ձգէ զլոյս արեգական, իսկ որ 'ի ներքս կայ՝ հարցանէ յիմարաբար, թէ այս լոյս է՞ արտաքոյ տանս, թէ առ մեզ միայն, և նա ևս խելագար գոլով, ասէ. ոչ, մեզ միայն է: Նոյնպէս է և այս հարցումնս ընդ հակառակն պատասխանեաւն շրջմոլիկ, զոր պարտ էր ուղիղ շրջել, հարցանել թէ պատարագս՝ որ վասն կենդանեաց մատչի, լինի՞ մեռելոցն ինչ օգուտ, թէ ոչ. և գտնել զնոյն պատասխանին՝ կամ զոչն, և կամ ներողութեամբ թէ յորժամ բարի գործովք վախճանին: Նա պարտ է ամենայն իրօք զհարցումնս այսպէս շրջել, և ոչ զգլուխն 'ի վայր դնել և զոտսն 'ի վեր, և հարցանել թէ գլուխն կարէ՞ լոյս տեսանել թէ ոչ: Այլ պարտ է զոտսն՝ դնել 'ի խոնարհ և զգլուխն 'ի վեր. և հարցանել, թէ ոտքն կարէ՞ լոյս տեսանել՝ թէ ոչ: Եւ որ պատասխանեմք. 'ի ձեռն ազդողութեան գլխոյն, ներարդից և ջլաց կարող է զգալ, այսինքն՝ զի մեռեալքն ոտք են, և կենդանիքս գլուխ. որպէս 'ի գլխոյն յոտսն իջանէ լոյսն, և զխտութիւնն և զօրութիւնն՝ զոր ինքն առատապէս ունի, և նախադասութեամբ վայելէ, և ապա տայ 'ի խոնարհ, այսպէս և կենդանիք առատապէս ունին զշնորհս ինքեանց սեփական, և ինքեանք վայելեն, սորին զօրութեամբ, թէ կամին այնուհետև իջուցանեն զնոյն զօրութիւն 'ի ձեռն ինքեանց հաւատոցն և աղօթիցն և առ մեռեալսն ըստ արժանեաց իւրեանց, որչափ և կարեն տանել. զի թէ յետ մահու յոյս կայր փրկութեան կենօք, և ոչ բնաւ աշխատէաք, այլ պտուղ գործոց մեր[2] այս է, զոր կենօք մերովք պատրաստեմք՝ աստուածաշունչ գրովք հաստատեալ, և պատարագս Քրիստոսի որ ընդ տիեզերս կատարի, միշտ և հանապազօր վասն կենդանեաց ամենեցուն մատչի, և 'ի ձեռս սոցա առ մեռեալսն սփռի, 'ի գլխոյն

1 Մի օրին. ի նմանէ:

2 Այլք. Գործոյ մերոյ:

յոտս իջեալ զօրութիւնն ։ Այլ ասէ , և որպէս որ կենդանիս եմ ես , տամ առնել վասն իմ պատարագ ։ Ըստ որում վասն մեռելոյն տաս առնել , եղբայր ․ զի պատարագս՝ թէ տաս դու նուէր , թէ ոչ , ըստ Քրիստոսի հրամանացն վասն ամենայն աշխարհի փրկութեան կատարի ։ Այլ թէ լինիս ընծայաբեր վասն մեղաց քոց քաւութեան , կամ վասն ճանապարհի աջողութեան , կամ վասն 'ի բանդէ ազատութեան , կամ վասն ցաւոց առողջութեան , կամ վասն մեռելոց հանգստեան , Աստուած առեալ զպտուղ հաւատոց քոց 'ի ձեռն տրից , որպէս յուսաս և հաւատաս , հատուցանէ քեզ սովաւ ։ Եթէ չունիս իրք և չտաս , այլ միայն հաւատաս և աղօթես , եւս առաւել առնես ողորմութիւն ․ զի թէ այս ոչ էր այսպէս , ապա հասարակաց շնորհս 'ի մեծատունս փակեցաւ¹ , զոր մի լիցի բնաւ զմտաւ ածել , և արդարութեանն Աստուծոյ անիրաւութիւն տալ , որ զգալի լոյս հասարակաց ետ , թէ զիմանալի լոյսն 'ի վաճառս նիւթոց ձգէր ․ այլ վաճառի նա արդարև՝ ոչ արծաթոյ² , այլ հաւատոց և սիրոյ , որպէս արեգակնս՝ մաքուր աչաց ։ Հաւատոց գնոյն է յայտնաբան նուէրն քո Աստուծոյ , որպէս և Աբրահամուն պատարագելն Իսահակայ ․ ապա թէ առանց սիրոյ և հաւատոց նուիրես , յոսկւոյն ելանես , և 'ի շնորհացս և ոչ բնաւ շահիս ․ և այլ ոք թէ զայդ արհամարհեաց վասն Քրիստոսի , և զսէրն և զհաւատն նուիրէ նմին , նա ընդգրկեալ ամփոփէ զշնորհս որչափ և կամի ։

“ Յիշեա տէր և զայնոսիկ՝ որք յանձն արարին մեզ յիշատակել յաղօթս զկենդանիս և զհանգուցեալս , կառավարեա զկամս հայցմանց նոցին՝ և ըզմերս ընդ ուղղորդն և որ լին է փրկութեամբ , և վարձատրեա բոլորեցունցս զանանց և զերանելի բարութիւնսդ ,, ։ Այսպիսապէս առնու 'ի մէջ համառօտ բանիւս զամենեսեան՝ որք աղօթից նորա կարօտեալ ըզնոյն խնդրեցին օգնական ․ քանզի գիտէին ամենեքեան զսա միջնորդ ընդ Աստուած , և զինքեանս կարօտ շնորհացն զոր բաշխէ , վասն այսորիկ և յանձն արարին ։ Նաև զիւր յանձն արարեալսն , Աստուծոյ յիշմանն յա-

1 Մի օրին ․ Փոխեցաւ ։

2 Երկու օրին ․ Ոսկւոյ ։

ռաջ բերեալ ուսանողէ ։ Այլ զինչ հայցէ լինել նոցին . " Կատարեա, ասէ, զկամս հայցմանց նոցա ըստ ուղղորդին ". այսինքն զի բազում ինչ է զոր մեք ուղիղ կարծեմք, և ոչ է այնպէս համարեալ առաջի Աստուծոյ, այլ ձգեալ 'ի կամաց ըղձից խնդրեմք հաւատովք զանօգուտն մեր . զայս ասէ, թէ նոքա խնդրեցին 'ի քէն ընթացք հայցուածոյ՝ զոր ինչ և իցէ . այլ դու որ զերեսանակ կամաց ամենեցուն 'ի ձեռին ունիս, մի որպէս մեք կամիմք՝ որ ոչինչ գիտեմք, այլ որպէս դու և զուղիղն տեսանես, ըստ այնմ և զհայցուածսն կատարեա ։ " Այլ որ լին է փրկութեամբ ". այս ինքն զի Աստուած զամենեսեան կամի զի կեցցեն և փրկեսցին ։ Այլ մեք բազում անգամ զհակառակն փրկութեանն համարիմք փրկութիւն՝ և առնեմք, զսկիզբն գործոյն բարի տեսեալ՝ որ բազում անգամ 'ի հակառակն աւարտի . դու ասէ, որ ընդ սկզբանն և զվախճանն տեսանես, զկամս ամենեցուն 'ի ճանապարհ փրկութեան իւրեանց ուղղեա ։ " Այլ վարձատրեա բոլորեցունցս զանանց և զերանելի բարութիւնսդ ". ։ Ո՛վ գեղեցիկ և ամենաշնորհ հայցուածոյս, զի զանազան են ընթացք բարեգործութեան մարդկան . ոմն ողորմած է՝ զի ունի, այլ ոմն ոչ ունի՝ աղքատութեն համբերէ . միւսն ճանապարհ ընթանայ վասն Այ, այլ ոմն կրօնաւորի . ոմն զկուսութիւն ընտրեաց, իսկ ոմն զպտղաբերութիւնն . մին 'ի ծովն օգնէ աղքատին, այլ ոմն 'ի ցամաքն ։ Այլ ո՞ կարէ զընթացս զանազան բարեգործութեանն թուել . և զի անթիւք են, վասն այսորիկ համառօտ բանիւս պարունակէ՝ թէ որոց վասն առ քեզ յուսոյդ զինչ և և իցէ բարեգործութեամբ աշխատին, մի առներ անտես, այլ ընկալ քաղցրութեամբ, և զանանց բարութիւնսդ հատո ամենեցունց աշխատութեանն փոխարէն . այսինքն զի մի ումեք մարմնական կենաց պանդխտութիւն առանց վարձուց հատուցմանն լինիցի, այլ ամենեքեան 'ի ձեռն Քրիստոսի 'ի հանդերձեալ կեանսն մտցեն վայելել ։ Այլ է սրբեն քահանային, և վասն այսորիկ թարգմանի անուն նորա մաքրող, քանզի առնու զամենեցուն զգործս, լուանայ յաղտոյ արեամբս Քրիստոսի, և նուիրէ Հօր . ըստ այնմ . " Խոնարհեցուցի զսիրտ իմ առնել զարդարութիւնս քո վասն հա-

տուցման ,, ։ Արդ առնէն իւրաքանչիւր ոք զարդարու-
թիւն, բայց սատանայ խառնէ ընդ բարեգործութիւնս զիւրն ներգործութիւն [1]. ընդ ուսմանն սրբութեան զնախատութիւն, ընդ պղծում ողորմածութեան ըզմարդահաճութիւն, ընդ միւսումն աշխատութեան ըզհեղգութիւն ։ Իսկ իբրև իմաստուն մաքրող՝ առնու զբարեգործութիւն ժողովրդեանն, և ձգեալ 'ի հրաշէկ հալոց Քրիստոսի պատարագիս, մաքրէ արտաշիկագոյն արեամբս յաղտոյն, և պայծառ նուիրէ Աստուծոյ Հօր վասն հատուցմանն մաղթելով. « Վարձատրեա, ասէ, բոլորեցունցս զանանց և զերանելի զբարութիւնսդ ,, ։ Արդարև մեծ շնորհ երախտեաց դնէ 'ի վերայ մեր՝ հարկաւորապէս պահանջեալ յԱստուծոյ զվարձ աշխատութեան մերոյ, որում չեմք տիրապէս արժանի, քանզի նորա արարածք եմք ասէ Պօղոս, հաստատեալ 'ի գործս բարութեանն ։ Իսկ երբ ժպրհի ծառայն վասն հարկաւոր պաշտամանն 'ի ստացող տեառնէն հատուցումն պահանջել։ Արդ թէպէտ և մեք ոչ, սակայն սա հայրենի գթովն որ առ մեզ, և հարազատ համարձակութեամբն որ առ Աստուած, պահանջէ զնոյնն ։

« Իսկ զտեալ զխորհուրդս մեր՝ տաճարացս յընդունակութիւն մարմնոյ և արեան միածնի քո տեառն մերոյ և փրկչիս Յիսուսի Քրիստոսի ,, ։ Որպէս զամենայն խնդրուածս իւր վասն ժողովրդեանն արար, նոյնպէս և զայս խնդրէ նոցա, այսինքն զուտ և մաքուր լինել խորհրդոցն յընդունակութիւն առաջադրեալ պարգևին, որով զտիրապէսն են առնլոյ մաքրութիւն. բայց տես թէ որքան մաքրութիւն պիտոյ է յայս սեղան համարձակելոցն. քանզի սրբեա զխորհուրդս ասէ, յայտ արարեալ թէ 'ի մարմնական աղտոց շաղախմանց նախակատար սրբութեամբ են բնաւքս ուղղեալք, և կարօտին միայն դիւրապղծելի մտացն 'ի չարին արկածից զուտ լինելոյ, որպէս զի արժանապէս ընդ իմանալի խորհուրդ մարմնոյն և արեանն Քրիստոսի խառնեսցին ։ Քանզի թէ մարմնոյն միայն ճաշակելի էր զգալիս հաց, բաւական էր մարմնոյն սրբու-

1 Այլ օրին. ներգործութեան գործ ։

թիւն տանել զսա տիրապէս. բայց յայտ է թէ ընդ զգալւոյն և զիմանալի խորհուրդ սորին [1] պարտ է հաւատոց մտացն ճաշակել, այսինքն գիտել թէ վասն եբախտեացն Քրիստոսի յիշատակին՝ զիս Աստուած Հայր օր ըստ օրէ այս խորհրդոյս հաղորդութեամբն մաքրէ. և յառաջակայ հանդէսս ընդդէմ սատանայի զօրացուցանէ, հաւատալ և գիտել թէ որպէս մարմինս զզգալի մարմինն հացիս ուտէ, և զարիւն գինւոյս ըմպէ և ուրախանայ, զօրանայ, այսպէս և իմացողս միտք՝ ընդ սմին ճաշակեալ զխորհուրդ որ վասն իմ քաւութեան մահուանն Քրիստոսի՝ զօրասցի, և զարբումն հոգւոյ նորա արբեալ՝ ընդ բաժակի արեանս զուարճասցի: Այս թէպէտ և փոքր բանիւ ճառեցաւ, սակայն երկոց և մեծաց հաւատոց կարօտիմք ստացողքըս զգիտութիւն սորին՝ որպէս պարտն է, զորոյ ճանապարհն ուսուցանել երկայն կարօտիմք բանից, մանաւանդ թէ և չէ ինչ հարկաւոր. քանզի ամենայն աստուածաշունչ գիրք առ 'ի նոյն հետս առաջնորդեն, հաւատ ուսուցանելով մեզ և գործոց ուղղութիւն. և նախ է հաւատն քան զգործսն, այսինքն գործն ծնունդ է հաւատոցն, և հարկաւոր է 'ի գործն այսպէս շարժել առաջնորդութեամբ հաւատոցն. ապա թէ այսպէս ոչ լիցի, անբան են գործք առաքինութեանն, ոչ կարեն տալ զպտուղ սիրոյն Աստուծոյ, և ոչ զմեզ 'ի յառաջադիմութիւնն ուղղել. զի բան իմացութեան պարտ է ընդ ամենայն ընթացս մեր խառնել, այսինքն միշտ քննել խոհականութեամբ մտաց և որոնել՝ զինչ է այս գործ, ե՞ր վասն աւանդեցաւ, կամ ո՞ւր յանգի կատարումն սորա, որ և միով դիմառութեամբ յայտնեսցի: Զինչ է կուսութիւնն, և ե՞ր վասն. քանզի ամուսնութիւնն վասն բնական հեշտութեան խառնէ զմեզ 'ի պատաղումն և 'ի սէր աշխարհի՝ կնոջ և որդւոց, և ձգեալ 'ի նոսա սիրոյն՝ ոչ կարէ որպէս պարտըն է առ Աստուած դառնալ: Վասն այսորիկ սահմանեցաւ կուսութիւն, զի անզբաղ միտք կանխեսցուք 'ի սէրն Աստուծոյ: Այլ եթէ թողեալ զսէր ամուսնութեան՝ այլ ինչ գրաւեսցէ զմիտս մեր 'ի ներքոյ իւր,

1 Մի օրին. Որ ունին:

ագահութիւն կամ փառասիրութիւն , յայտ է թէ մոլորեցայք 'ի ճանապարհէ կուսութեանն , և ոչ կարեմք տալ զպտուղ նորա զսէրն Աստուծոյ . ուստի քարոզք էր մեզ ամուսնութիւնն և ընդ օրինաւոր հեշտութեամբ կապիլ , քան կոյս անուամբս լինել և 'ի նախապատիւ առնելոյ զսէրն Աստուծոյ վրիպիլ : Դարձեալ զի՞նչ է աղօթք . խօսակցութիւն Աստուծոյ . և որ խօսի ընդ ումեք՝ վասն այնորիկ խօսի , զի զունկնդիր խօսակցին առաջի աչաց ունի , և ինքն գիտէ զի՛նչ ընդ նմա բարբառի . ապա թէ զայս ոչ ունիցի , ոչ ըզխօսակցին առաջի և ոչ զտեղեկութիւն իւրոց խօսիցն , ունայն և սնոտի աշխատի , զայն ինչ ասելով զոր ոչ գիտէ , և ընդ այն խօսելով զոր ոչ տեսանէ : Ուստի հարկաւոր է խօսակցացն Աստուծոյ պատրաստս՝ այնչափ աշխատել և ամփոփել զմիտս 'ի հայեցուածոց աշխարհիս , մինչև զԱստուած իմանալի աչօք մտացն տեսանել , և տեսութիւն այնպիսի , որպէս զի յորժամ հարցանիցէ ընդ դիտակցութիւն մտաց իւրոց , թէ ես առ Աստուած , զայսն պատասխանէ . յետ այնորիկ և իւր գիտել զոր ինչ ընդ նմա բարբառի , և կամ որոյ վասն խօսի , և ապա զպտուղ աղօթիցն ճաշակեալ օր ըստ օրէ՝ 'ի հասակ կատարմանն առաքինութեանն զուարճացեալ զարգանայ : Իսկ այժմ զայս այսպէս հաւատացեալ , զիա՞րդ կարեմք հաւանել թէ նոքա գիտացին[1] զոր ինչ խօսէին , որք 'ի կենդանեաց հանեալ զփրկանս պատարագին՝ առ մեռեալս պարփակեցին , և թերևս ո՛չ որպէս զանշունչ ձայն տայր միշտ ասելովն , “ Յիշեա տէր զոգս յանձն արարին ինձ յիշել յաղօթըս՝ նախ զկենդանիս և ապա զհանգուցեալս ” : Կամ ո՞վ իմանայր զկառավարութիւն կամաց նորին ուղղութիւն , զտուածն խորհրդոց՝ մարմնոյն Քրիստոսի ընդունելութիւն[2] . մեռելո՞ց եթէ կենդանեաց : Արդարև այսպիսի իմացողս ոչ զխօսակիցն կարեմ հաւանել թէ տեսանէր , և ոչ զոր ինչ խօսէրն գիտէր ճշմարտապէս . որպէս զանշունչ բարբառէր . և չէ ինչ մեղադրելի զայս այսպէս խորհողացն , կամ վասն կրպակք խորանացն բազմութեան , կամ յաղագս զքահանայս նորին վա-

1 Երկու օրին . Գիտէին :

2 Երկու օրին . Ընդունելութեան :

ճառիչս՝ յաճախութեան, կամ վասն պաշտօնէից խոր-հրդդոյս նուազութեան. զի յորժամ զպատարագս մե-ռելոց և ոչ կենդանեաց գիտէր փրկանք, անկար է ՚ի նմանէ սորին սպասահարկութեան պահանջել ուղղու-թիւն. այլ պարտ է նախ զմիտսն յայս կարծեացս սըր-բել, և ապա ըստ կարգի զխրատ պաշտամանն վարդա-պետել: Եւ արդ ուստի բերցուք քեզ բան հաւանա-կան, դժուարուղղելի եղեալք և անհաւան, ուստի ած-ցուք դատաւոր՝ կշտամբել զառ օրէնսն Աստուծոյ անի-րաւութիւնդ: Ոչ յերկնէ և ոչ յերկրէ, ոչ օրինա-կաւ վարիմք և ոչ բաղդատութեամբ այլոց ուղղու-թեամբն պախարակեմք. այլ ՚ի նոյն ինքն ՚ի բերանոյ քո դատեսցուք զքեզ, ոչ իբրև զծառայ չար, այլ իբրև զստահակ եղեալք հարազատ, զի չար նմա է զիս կամ զքեզ կոչել՝ որ իշխէ մեզ տիրապէս. բարբառ քո եկեալ ՚ի մէջ՝ լիցի քեզ ոսոխ, աղօթքդ զոր օտա-րաց համարիս տալ՝ եկեալ յարիցէ առարկու[2], թէ ոչ նոցա, այլ մերձակայիցս է սեպհական: Ո՞ ետ ՚ի ձեռս քո զհացն, ո՞չ ապաքէն կենդանիքս. ո՞ զհաւատսն, ո՞չ սոքա: Յորո՞ց առաքեցար առ Աստուած հրեշտակ, եթէ ոչ ՚ի կենդանեացս. լուայ զի սոցա հրամայեցեր ահիւ կալ ընդ քեզ, և ոչ մեռելոցն. սոցա և զշնորհն և զզօ-րութիւնն բաշխեցեր՝ ՚ի կցորդութիւն աղօթիցդ զօ-րանալ. սրովբէիցն կցորդ ո՞չ սոքա եղեն, զմիտս ՚ի վեր ո՞չ սոքա ընծայեցին ըստ հրամանի քում. յամենայնի մեռեա՞լքն օրհնեցին, թէ սոքա: Այլ թերևս ասես, սոքա զայս ամենայն վասն մեռելոցն երգեն և ասեն: Ի-բաց տար զչարաչար կարծիսդ. զի նախ ինքեանց շնոր-հըս՝ որ վայելեն ՚ի սոյն, և ապա ՚ի ձեռն սոցա մեռե-լոցն. նոցայն զկեղակարծ շնորհս, և սոցայն ճշմարիտ. այլ և դու զքոյն քննեա աղօթից զօրութիւն: Սէր սո-վաւ ո՞ւմ խնդրեցեր. հաստատութիւն խաղաղութեան Աստուծոյ առ ո՞րս լինել հայցեցեր. զորս բարեխօսն վասն զերեզմանականացն մաղթեցեր[3]: Ո յանձն առ-նելն քո Աստուծոյ յիշողութեանն զեպիսկոպոսս, ըզ-ժողովուրդն, զպտղաբերիչսն, զողորմածսն՝ առ ոչինչ

1 Մի օրին. Ի ճառաճէլս:
2 Մի օրին. Առարկութիւն:
3 Մի օրին. Խնդրեցեր:

համարիս , և միայն 'ի մին ես փակեալ բան զշնորհս զոր վասն մեռելոցն խնդրեցեր . և զայս ոչ հասարակաց՝ այլ միոյ հոգւոյ , որում և զնշան կետիցն բազմացուցանես : Ո՜ր ինչ է այսքան խաւար՝ տգիտութեանս որ մածեալ է զմեօք : Ընդէ՞ր աչս ունելով և ականջս՝ ոչ տեսանեմք և ոչ լսեմք : Բանն ասպարեզ է 'ի բեբանոյ մինչև ցունկն , զի զբարբառ սորին ոչ ներեմք ունկանն լսել և տեղի տալ . այսքան էր խաւարեցուցաք զպայծառութիւն եկեղեցւոյ վասն մնոտի յուսոյ : Ի պէտս այսորիկ մի հացն 'ի Պօղոսէ աւանդեալ մեզ ամենեցուն 'ի վայելումն՝ 'ի բազում սեղանս բաժանեցաւ : " Հացն , ասէ առաքեալ , զոր բեկանեմք , ո՞չ ապաքէն հաղորդութիւն է մարմնոյն Քրիստոսի , զի ամենեքին 'ի միոջէ հացէ անտի վայելեմք " : Իսկ այսօր Պօղոս՝ ոչ մի հաց , որպէս դու ուսուցեր աստուածընկալ հոգի , այլ բազումս . և ոչ կենօք նմին հաղորդութիւն , կամ վայելումն ըստ քումդ հրամանի , այլ յետ մահու : Արդ դու աղաչեմ զիմս թշուառութիւն և զժողովրդեան իմոյ : Ո՞րքան զարտուղի գնամք 'ի ճշմարտութեան առաջնորդիդ հետոց : Քանզի գնաց 'ի մէնջ աւանդեալն 'ի քէն բարեկարգութիւն . և թէպէտ դու համարձակութիւն ետուր արեամբն Յիսուսի 'ի մուտս սրբութեանցն , մեք ոչ հաւատամք , ոչ ճշմարտեմք զսիրտս , և ոչ առ 'ի նոյնն մատչիմք , այլ արարաք զտունս սրբութեան վաճառարան . մեք խորշիմք 'ի նոյնն մտանել , և զմանկունս անիմաստս ածեմք , ոչ բաշխել մեզ զգիտութիւն մարմնոյն Քրիստոսի , այլ օտարացն զնոյն վաճառել : Քրիստոսն քո , Պօղոս , զոր դու այնքան փառաւորեցեր , և մեզ զնոյն ուսուցեր , չունի 'ի մէնջ ոչ սարկաւագ պաշտօնեայ , ոչ կէս սարկաւագ դռնապան , ոչ դպիր երգեցող , ոչ ընթերցող վերծանող[2] , ոչ ջահս լապտերաց , ոչ բուրմունս խնկոց , ոչ ժողովուրդ սիրալիր : Այլ զի՞նչ . զտունս 'ի բազում անկիւնս բաժանեցաք , և զմի հացն 'ի բազում սեղանս պառակտեցաք . ածեմք զմանկունսն 'ի տունն՝ վաճառել զնոյն մեռելոցն , և մեք զգրունսն փակեալ անցեալ գնամք յիւրաքանչիւր գործս և յաշխատու-

1 Երկու գրին . խօս :

2 Այլք վերծանող :

թիւն . և պատճառ այսմ ոչ զհեղգութիւնն մեր
դնեմք , և կամ զանհաւատութիւն , այլ զերկեղա-
ծութիւնն . 'ի վաճառելն զՅիսուս աներկիւղ եմք ,
և 'ի մերձենալ 'ի նոյն կամ առընթեր լինել՝ երկիւ-
ղածք : Այլ այն քո սիրուն Քրիստոսն այսպիսի մեռե-
լոտի հաւատով առ 'ի մէնջ պաշտի . չգիտեմք զիւր
սէրն . ծերանամք , մեռանիմք , և ոչ բնաւ զնորին գը-
թոյ ճաշակն առնումք . նա և ո՛ւր ճաշակեմք , երբ ըղ-
ղուռն ճաշակմանն այդպիսի փակովք պնդեմք . մի՛ թէ
ոչ մերձենալ 'ի խորհուրդ Քրիստոսի քո , այլ և ոչ 'ի
բացուստ ներեմք տեսանել : Արդ լո՛յց զմեզ , որպէս
երբեմն զԳաղատացիսն . անէծ չարաչար և զմերն խռո-
վեցուցիչս , ըստ որում երբեմն զնոցայն . զի մեզ ո՛չ թէ
հրեշտակ կամ մարդ անուանի աւանդեաց աւելի քան
զոր 'ի քէնն ընկալաք , այլ մարդք զորոց և ոչ զանուան-
սըն գիտեմք՝ եկին զազատութիւնս մեր ծառայեցու-
ցին , զբարեկարգութիւս մեր քակտեցին , և այնչափ մո-
լորեցուցին՝ մինչ զի ոչ հաւանիմք առ քեզ 'ի տեղդ կա-
պանաց նայել , կամ յաշակերտաց քոց զճշմարտութին
ուսանել . վասն այսորիկ և անյոյս եմք 'ի փրկութենէ .
մոլորութեանս որպէս ճշմարտութեան լինել վրէժխնդ-
դիր յօժարիմք : Բարի վշտակից , վշտակցեա մեզ քաղ-
ցըր արտասուօքդ՝ որպէս և Կորնթացւոցն :

Վկայք եղբարք զոհեայ անագան և մեք զանձինս
աշխարհեցուք . անէծս ցաւագինս 'ի վերայ մերոց խռո-
վեցուցողացն հանցուք , որք այնչափ ունայնացուցին
յաչս մեր զՔրիստոսի մարմնաւորութիւնն , որք այն-
չափ ծանր և դժուարագտանելի ուսուցին մեզ զվշտա-
կից փրկչին զողորմածութիւն , որք այսքան երկիւղ
խուսափման արկին մեզ 'ի նորա հարազատն սիրելու-
թենէ : Ո՜ինչ պարտ է ասել . ո՛ր բան բաւական է
զմերս թշուառութի աշխարել : Ո եկեղեցիս՝ Քնի
անդամոցս ընդդէմ փակեցին , և անօրինաց մաքսա-
տուն արարին : Ո պատարագիս հաղորդութիւն 'ի կեն-
դանեացս հանին , և 'ի մեռելոց վաճառեցին : Ո պաշ-
տօնէից բազմութիւն բարձին , և 'ի քահանայութիւն
զամենեսեան վերածին , քահանայանալ՝ ոչ Աստու-
ծոյ , այլ թուոցն համարոյ . ուստի և վաղվաղակի քա-
հանայացեալ , ոչ բնաւ գիտեմք զինչ դպրութիւն

կամ գործ նորին, զի՛նչ սարկաւագութիւն կամ պաշտօն նորին. այլ միայն մտեալ գաղտագողի 'ի ծերպս խորանացն ծակուց՝ ամբափակեմք զշրթունս, և անդ շուտափոյթ երագմամբ զյաւիտեանն ասեմք և զամէնն։ Հրամայեմք և առնեմք, և փութապէս արտաքս ելանեմք. իսկ յորժամ արտաքս գամք, ժողովրդեանն որոց պէսպէս աղօթէաք՝ և ոչ զմի ոք առընթեր մեզ գտանեմք, այլ այսր անդր 'ի գործս իւրեանց ընթացեալ. քանզի ոչ ինքեանց հաւատան զփրկանքս՝ այլ մեռելոցն, վասն այսորիկ և ոչ մնան. Թէ տօն լինի, մինչև 'ի պատարագն է խրախութիւնն, և պատարագն 'ի խաւարի. և թէ ոչ տօն՝ նոյնպէս նորին գործառնութիւնն այպանելի։ Նաւասուն տարւոյ պատարագողն դեռ ևս տկարանայ գիտել, թէ որ է 'ի պատարագս սարկաւագին բան, և որ ժողովրդեանն. քանզի և ոչ բնաւ կացեալ է նմա առընթեր կամ սարկաւագ պաշտել կամ ժողովուրդ աղօթել, այլ ինքն միայն 'ի ներքոյ փակեալ դրանցն է զգործն կատարեալ. մարմնով ճաշակեալ, և մնօք անհաղորդ 'ի խորհրդոյն մնացեալ. և թէ ոք առընթեր կացցէ, թէպէտ և կատարեալ ոք է, զի անսովոր է՝ զայթէ և տկարանայ յաղօթելն։ Ո՛վ թշուառութեանս. պակասեա՞ց թերևս ուստին 'ի Պաղայաղէ, լինել առողջութի բեկմանն ժողովրդեանս իմոյ. ոչ երբէք, զի զեղու առատապէս, բայց մեք ոչ խոնարհիմք առ առողջարար դեղն. այլ մոլորեալ համարիմք զտիեզերս որք ընդ ուղիղն գնան, և մեք հաճեալ եմք ընդ անձանց թիւր ընթացս. բամբասեմք և յաչաղեմք զեկեղեցիս քրիստոնէից վասն ընդարձակ գործոցն, և զանձինս ոչ բնաւ կշռեմք, և ոչ ճանաչեմք թէ նոքա ընդ օրինօքն մեղաւոր լինելին առաջի Աստուծոյ, իսկ մեք օրինացն կոխիչք և անօրէնք. նոքա պոռնկին և յիւրեանց մարմինն մեղանչեն, մեք զօրէնսն լուծեալ՝ զհասարակաց ազգս կործանեցաք։ Ունկամբ եմ լուեալ 'ի հաւատարիմ մարդոց, և ոչ աչօք տեսեալ, թէ որքան չարիք գործի այսօր յարևելս 'ի հաւատ և 'ի կարգս եկեղեցւոյ, մինչ զի և անօրինաց եղաք նախատինս և իրաւամբք զարշելիս։ Թուրքն չառնու կալեալ, և եպիսկոպոսքն վաճառեալ զշնորհն Քրիստոսի՝ բռնութեամբ զնոյն

յաճախեն ։ Յո՛ր Հռոմ կամ ՚ի Փռանգ տեսաք զայս անմտութիւնս. են և նոցա եկեղեցիքն ՚ի բազում տեղիս ըստ անօրէնօք, այլ ազատք և ՚ի խաղաղութեան. զԱսորւոցն զի՞նչ պարտ է ասել զփոքունցն և զիմաստնոցն ։ Ի Սմիռնիա քրիստոնէայքն ազատք են եկեղեցեօք, և մեք ՚ի Հայաստանս հարկաց ծառայք. ապա նախ զմերս քննեսցուք ախտ, թէպէտ և ելաւ ըստ բժշկութիւնն. ծանիցուք թէ մեք միայն ՚ի քրիստոնէից անօրէնք, իսկ այլք ՚ի ներքոյ օրինացն մեղաւորք ։ Ո՞ր քրիստոնէի աթոռ եպիսկոպոսութեանն ժառանգութիւն. որ այսօր ՚ի մէնջ իբր զբարեգործութիւն՝ անհնարին յանցանքս պաշտի ։ Ո՞ր քրիստոնէից վանք յետ մահու առաջնորդին՝ քուերորդւոյն ախմարի աւանդի ։ Ո՞ր եկեղեցի յետ մահու քահանային՝ կնոջ նորին պարգևի ։ Յայսքան մեծամեծ յանցանացս ոչ տեսանեմք առ այլ քրիստոնեայս. իսկ զպոռնկութիւն որովք զնոսին բամբասեմք՝ բազում անգամ ՚ի մէջ մեր գտանեմք ։ Արդ ընդէ՞ր մեր յանցանացն զորս կարեմք բժշկել թէ կամիմք՝ հեղգալուր լինիմք, և նոցայոցն որոց ոչ ինչ կարեմք օգտել, արագախօս և արագալուր. յայտ է, որպէս զի մեք զնոսա այպանելովն՝ արդար երևեսցուք, շահ օգտի ունելով և ոչ ինչ ։ Այլ ես զիմս քննեմ վէր, որպէս զի մի՛ թուեցայց բամբասել, այլ ՚ի բժշկութիւնն յօժարել, զի զիւր անձինն ոք ոչ կամու, այլ ակամայ բամբասէ առ բժիշկս՝ որպէս զի առողջութիւնն հնարեսցի. անձն իմ, ազգս իմ, բամբասելովս ոչ այպանեմ, այլ բժշկացդ զվէրս ցուցանեմ. փութացիք, եղբարք, վասն սիրոյն Քրիստոսի ՚ի բժըշկել զվէրս իմ. դուք բուռն հարէք, և Աստուած լիցի գործակից, զի մի՛ ՚ի սպառ կորիցուք ։ Գնաց բարձաւ ամենայն բարեկարգութի՟ հանուր ՚ի յազգէս, և տեսանէ և ոչ ոք. բացցուք զաչս մտաց և տեսցուք. մանաւանդ հարկաւոր է մեզ բանալ, զի անձամբ զանձինս տէրունի գործոյն մատակարար կարգեցաք. առաջի աչաց կալցուք զանաչառն ատեան, և զմեր պատասխանատրութեանն ճանապարհ՝ մինչդեռ ժամանակս ՚ի ձեռս է՝ հորդեսցուք. մի՛ կեղակարծ լիցուք առ գիտութիւնն Աստուծոյ, որովք դիւրաւ ուղղի մեղանչեն ։ Ի ճշմարիտ Աստուած, վկայեն երկինք և երկիր. թէ

է Աստուած, է և նորին դատաստան. մինչ որք ըստ մարմնոյ հարկաւոր հեշտութեան մեղան, ներելիք են քան զմեզ՝ որ զօրէնս նորա առ ոտն հարեալ կոխեցաք ։ Որ մեղանչէ՝ օրինազանց է, իսկ որ զօրէնսն լուծանէ՝ զինչ է անուն նորա. ես պատկառեմ ասել, մանաւանդ թէ երկնչիմ, զի մի՛ աղէկէզ բժշկութեամբս վասն 'ի խոր հարմանս զդեղ քանիս՝ երևեցայց թշնամի. այլ տէր մեր զսոյն առ բժշկելն արասցէ պիտանի, ըստ որում հաւատամ, և ոչ նիւթ խռովութեան, որպէս չարն 'ի միտս յաչաղկոտացն ազդէ. այլ պարտիմք խոնարհել նայել, թէ որքան 'ի շնորհաց հոգւոյն լուսաւորեցաւ 'ի դիտութիւն մեր՝ պատարագիս փրկագործութիւն, և ոչ ունայն և թեթև յաչս մեր զմեծս կարծել շնորհ փրկութեանն, և ջանալ կարճել զչար սովորութիւնն սորին արհամարհութեան՝ որք այժմ ուծացեալ՝ եմք 'ի սիրոյ սորին խորհրդոյ, որպէս և յառդեանցն ցուցանի. քանզի յորժամ քահանայն զայսչափ վշտակցութիւս աղօթիւք ժողովրդեանն կատարէ, ոչ ոք 'ի նոցանէ համդիպի նմին մերձակայ, որոյ վասն և աղաւաղի ողորմելի կերպարանօք պայծառութիւն խորհրդոյս ։ Զի ոչ սահման հրեշտակական բարեկարգութեն 'ի յերկրի՝ որպէս առաք հրամանն՝ կատարի. ոչ սարկաւագացն դաս, որպէս զպետութիւնսն և զիշխանութիւնս 'ի սրովբէատիպ դասէ քահանայիցն զդիտութիւնն ընդունի, և ոչ առ մեզ մարդասիրապէս քարոզութեամբն որպէս յերրորդ պարունակ զնոյն իջուցանէ. այլ հաղորդի գիտութեանն քահանայն միայն, և մեր գոլով 'ի կարգ երախայիցն և անհաւատիցն՝ նմին անհաղորդք. և այս օրէնք ընդդէմ պատարագիս խորհրդոյս զինի ։ Զի թէ քահանայն միայն անկ էր զնոյն կատարել, ոչ առաջին սուրբքն զայս այսպէս էին սահմանեալ՝ որոյ հակառակն այսօր 'ի մէջ մեր լինի. զի տայ իւր միայն զխաղաղութիւնն, և ինքն իւր պատասխանէ ասելով, "Ընդ հոգւոյդ քում". և ժողովուրդըն որոց անկ էր առնուլ զնոյն և պատասխանել, արտաքոյ 'ի շատխօսութիւն զբաղեալ ։ Արդ ո՞ւմ աշակերտեցուք. չարաչա՞ր աւանդութեանս զոր յետոյ ընկա

1 Երկու գրին. Այժմու ծանուցեալ ։

լոյք, թէ սահմանի պատարագիս զոր 'ի սկզբանէ ու-
նիմք ։ Պարտ էր անմիտ առնն, ես զանունն ոչ գիտեմ,
որ զմեզ արտաքոյ եկեղեցւոյ եհան, և զկարգն առա-
ջին եղծեաց, և զաստիճան սարկաւագութեան ելոյծ,
փոխել զբանս և զսահման պատարագիս, միայն քա-
հանային լինել հարկաւոր, և ոչ այլոց ընդ նմին լինել
գործակից ։ Պարտ էր փոխել և զանունն, և ոչ կոչել
հաղորդութիւն, այլ բաժանողութիւն, ըստ որում և
լինի ․ քանզի որ, յայլ յաղօթս հաղորդիմք իրերաց,
յայնժամ քակտիմք և բաժանիմք 'ի միմեանց, ոմանք
արտաքոյ և ոմանք 'ի ներքոյ ․ և 'ի ներքոյ դարձեալ
բաժանեալ, ոմն յայս ծակ և ոմն յայն ․ ապա թէ
անունն նոյն է որպէս 'ի սրբոցն, և սահման աղօթիցն
նոյն՝ ըստ որում յառաջնոցն, մեք ծիծաղելի և ա-
խարհելի կամօք ընդ հակառակս նոցին մեր աղագաւ բե-
րիմք, խաղաղութիւն տալով ամենեցուն, և զխաղաղ-
արար հրամանսն ոչ ոք է որ լսէ յամենեցունց ․ քանզի
նոքա արտաքոյ են, և դրունքս փակեալ ․ այլ ես ինձէն
պատասխանեմ, "Ընդ հոգւոյդ քում" ․ հրամայեմ
այլոց ընդ իս Աստուծոյ երկրպագել, և ես միայն երկր-
պագեմ ․ դպրացն սաղմոսելոյ տամ հրաման, և ես
սաղմոսեմ ։ Այնչափ վատթարացաք, մինչ զի անյոյս
գոլով յառողջութենէ՝ գարշիմ և ամաչեմ 'ի վերայս
քննութիւն ։ Ո՞ ոք է որ հրեշտակ և միջնորդ առ
թագաւորն առաքէ, և ինքն ոչ առընթեր նմին կացեալ
ընդ բարեխօսին թախանձէ, և զբանսն բարիս լուեալ՝
խնդամտութեամբն հրճուի ․ այլ մեք զսա առ երկնա-
ւորն առաքեմք թագաւոր հրեշտակ, և փակեալ ըզ-
դրունս տաճարին՝ յիւրաքանչիւր երագեմք 'ի գործ, և
յայնչափ քաղցրութենէ պայծառութեան պաշտամանն
անհաղորդ մնամք՝ զանարժանութիւնն բաղբաղելով,
և զհին սովորութիւնն կարծել պահելով ։ Ինքն զան-
հաւատան հանէին, որպէս զի մի տգէտ մնօքն այպա-
նեսցեն զքրիստոնէից խորհրդածութիւնն ․ Ես կամ
դու երբ եմք սորին այպանողք, կամ երբ տանէիր նա-
խատանացն՝ թէ ասէի, անհաւատ ես 'ի տեղ անհա-
ւատիցդ կացեալ ։ Դարձեալ թէ ոչ սուտ, այլ զօրա-
ւոր զայս փրկանք[1] համարէիր, երբ զքո վերիպէն հան-

1 Այլք Փրկանս ։

դուրժէիր. երկնչէին 'ի քէն և դևք և սարսէին. զերկիւղդ միայն մի քեզ պարծանս համարիր, այլ խառնեա ընդ երկիւղդ և սէր առ նա, զի մի լուիցես, "Եթէ Ջամբիցեմ զամենայն ինչս իմ աղքատաց, և մատնեցեմ զմարմինս իմ յայրումն, և սէր ոչ ունիցիմ, ոչ ինչ օգտիմ". զի մի ասասցէ առ քեզ Աստուածաբանն, "Երկնչելովդ՝ ոչ ես կատարեալ 'ի սէրն": Սէրն և տափումն վերածէ զմեզ առ Քրիստոս, որպէս և զնա առ մեզ էած. միշտ ընդ երկիւղիւդ կացեալ՝ ոչ ձրկտիս առ նա. բայց սէրն և ընդ լանջովքն ածել ձեռնարկէ[1]. ոչ ունիս սէր, վասն այսորիկ արժանաւորութեամբ և հեզգութեամբ մնաս 'ի ներքոյ երկիւղին արտաքոյ. թէ ունէիր զհուր սիրոյն, պոռնկիդ ձեռնարկել 'ի գլուխն յօժարէր. երկիւղին ես ծառայ, և ոչ յետ բազում ապաշխարութեանդ թողութեան հաւատաս թէ սիրովն տոչորէիր, և մի արտասուքն սփոփեալ մխիթարէր և 'ի խաղաղութիւն զքեզ արձակէր: Յետ մահու 'ի շնորհս լինիս ապաստան՝ ունել թողութիւն. վասն այնորիկ կենօք զայն լքեալ թողեալ ելանես, և մոռացեալ ես թէ 'ի տէր տէր ձայնելն՝ զոչ գիտելն զքեզ պատասխանէ. Ե՞ր վասն. զի 'ի հրապարակս քո ուսոյց, և ոչ 'ի գուբ տափմանդ[2] հանգեաւ: Նոյն ինձ այն որ ընդ հակառակս առեալ ըզքանս այպանեսցէ. քանզի որպէս դու 'ի սիրոյն զարհամարհութիւնն գիտես ծնեալ, և ես յերկիւղէն զանհաւատութիւնն գիտեմ յառաջեալ[3]: Դժնդակ է ընդ մի որ բերիլ 'ի չարեացդ, և բարիոք՝ զուղիղ ճանապարհս ողջունել ուղղութեամբ: Մի որ զիս և յանձնապաստան դատեսցէ՝ յայսպէս բարբառելն, որ և կշտամբելոց եմ ոչ յօտարաց, այլ 'ի բերանոյ իմոյ, իբրև զչար և զվատ ծառայ անպիտան. քանզի որով դատեմ զընկերն՝ զանձն իմ դատապարտեմ, գործող զնոյն՝ որով դատիմ. այլ յօժարիմ յասելս, զի ծանիցուք թէ չեմք ապրելոց 'ի սաստիկ դատաստանացն Աստուծոյ, և զխստութիւն սրտից մերոց կակղացուս-

1 Մի օրին. Ածեալ ձեռնարկէ:
2 Մի օրին. Տափանաց: Երկու օրին. Տարփմանդ:
3 Մի օրին. Յաջողեալ: Այլ օր. Յառաջ բերեալ:

ցուք, և զանզղջական երկեղածութիւնս 'ի զղջումն և 'ի սէր փոխեսցուք, Թերևս լիցի գանձել անձանց ըղփրկութիւն և մի զպարկութիւն՝ յաւուր դատաստանին Աստուծոյ, յորժամ հատուցանէ ըստ գործս մեր, որպէս հաւատամք: Ողջունեմ զամենեսեան, և զոտս եղբարցդ որոց արտասուօք սիրոյն համբուրեմ. Ներեցէք ինձ անզգամութեանս, և իբրև վշտակից ծառայակից ընկալարուք զիս, և զձեզ ընկալցի Քրիստոս Յիսուս տէր մեր, որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ԸՆԴԷՐ ՑԵՏ ԱՅՍՈՐԻԿ ԴԱՐՁԵԱԼ ՔԱՐՈԶՈՒԹԵԱՆ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ ԵՀԱՍ ԺԱՄԱՆԱԿ

Պարտ է գիտել, թէ այսուհետև վախճան էառ խորհուրդ պատարագիս՝ հանդերձ պէսպէս աղերսանօք 'ի քահանայէն. և մինչդեռ ոչ էր այս կատարեալ, ոչ ինչ առնէր համարձակութիւն սարկաւագն ազդել ժողովրդեանն. վասն այնորիկ լռեալ դադարեաց: Այլ սորա քահանայքս ետուն խորհրդաբար զՔրիստոս Հօր, առին 'ի նմանէ և զՀոգին, հայցեցին զպէսպէս ողորմութիւն. իսկ յորժամ 'ի լռումն զխորհուրդս ածեալ յանգեցին, սարկաւագն ազդէ նոցա քարոզութեամբն ժողովրդեան, եթէ ձեր փրկութեան նուէրն զոր ետուք 'ի քահանայսն՝ մատեաւ առաջի Տն, և նա ընկալաւ հաշտ և քաղցր կամօք. արդ պատրաստ լերուք, զի 'ի պատարագին ձեր փոխարէն՝ 'ի շնորհսն Հոգւոյ՝ զոր քահանայքն առին յԱստուծոյ՝ վայելեցէք. և այսպէս զգուշութիւն տայ նոցա զի պատրաստեսցին առ հանդերձեալ շնորհն որ իջանելոց է 'ի մէջ նոցա. այսինքն զի ընդ Աստուած Հայր դեռ ևս ոչ համարձակեալ են ժողովուրդս խօսել. նա և ոչ զՀոգւոյն իջումն 'ի վերայ պատարագին իմացեալ, զի այս ամենայն ծածուկ և խորհրդաբար 'ի ներքին վայր սրբոյ խորանին կատարեցաւ 'ի մէջ քահանայիցն, և ժողովուրդն միայն Քրիստոսի լինէր խօսակից, զսրովբէական երգն և զամենայնի գոհութիւնն երգելով[1], որպէս և անդր է

1 Երկու օրին. Այս զամենայն 'ի գոհաբանութեանն երգելով:

յայտնեալ։ Արդ այսուհետև հանդերձեալ եմ զՀո-
գին տէրունական մարմնոյն ընդունել, և պարտ է զի
որպէս քահանայքն նախ ընդ Հայր խօսեցան և ապա
զՀոգին 'ի ձեռն Քրիստոսի 'ի նմանէ ընկալան, զի
այսպէս լիցի և սոցա նախ համարձակել և առ Աստուած
Հայր աղօթել, և ապա զպարգև շնորհին 'ի նմանէ
ընդունել. արդ զի այսմ, ըստ որում ասացաւ, պատրաստ
լինիցին, դաստիարակ նոցին սարկաւագն նախ զգուշու-
թիւն տայ քարոզութեամբն [1] ։

## Լ. ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ ԱՂՕԹԻՑՆ ԶՈՐ ԸՆԴ ՔԱՐՈԶՈՒԹԵԱՆՆ ՔԱՀԱՆԱՅՑՆ ՄԱՏՈՒՑԱՆԷ

« ԱՍՏՈՒԱԾ ճշմարտութեան և Հայր ողորմութեան, գոհանամք զքէն »։ Սերտին դարձեալ սկիզբն դնէ ընդ Աստուած խօսելոյ. Նո՛ր վասն. քանզի յայլ հայցուածոց խորհուրդ զբանսիս փոխէ զընթացս. այսինքն զի մինչև ցայժմ զպատարագն եւ, և զպէսպէս նուէրս անել մաղթեաց զխնդիրս. իսկ այսուհետև կամի զի Աստուծոյ, առ որ ինքն միայն պատարագաւն խօսէր, ընդհանուր ժողովուրդն յետ հաշտութեանն լինիցին խօսակից։ Այսր ապացոյց և զմարդկան է գտանել սովորութիւն. քանզի յորժամ խէթ ատելութեան լինիցի 'ի մէջ ծառայից և տեառնն, ոչ վաղվաղակի ժպրհին ընդ նա խօսակցել, այլ նախ զոք 'ի հաւատարիմ ծառայիցն կաշառօք պատարագին հրեշտակ խաղաղութեան առ թագաւորն առաքեն. իսկ յորժամ նա պատարագաւն և իւրով թախանձելովն նուաճէ զկամս տեառնն, և ուղղէ զառաջին սէրն, յետ այնորիկ ազդէ սոցա գալ, և խօսել խաղաղութեամբ ընդ տեառն իւրեանց. յայտ արարեալ թէ 'ի ձեռն նուէրացն առաջինն սէր հաստատեցաւ ընդ ձեզ և ընդ թագաւորն՝ իմոյս թախանձելի միջնորդութեամբ։ Այսպէս արար և քահանայս. նախ եմուտ պատարագաւն ինքն միայն առաջի Աստուծոյ՝ վասն ամենայն ժողովրդեանն. իսկ նա բարեհաճոյ կամօքն ընկալաւ, և զհաշտութիւն խաղաղութեանն ընդ ժողովուրդս ուղ-

1 Մի օրին. Քարոզելուէ ։

զեայ. այժմ կարօտի միջնորդս վերստին թախանձել՝ թէ որոց ներեցեր ողորմութեամբ և հաշտեցար ընդ նոսին քաղցրութեամբ, տուր բարերար կամօքդ համարձակութիւն այսուհետև գալ առաջի քո, և ընդ քեզ խօսակցել. յաղագս որոյ և նորոգ սկիզբն կարգէ աղօթիցս ասելով. „Աստուած ճշմարտութե՛ և Հայր ողորմութեան, գոհանամք զքէն„: Այսպէս և մարգարէն օրհնէ զԱստուած յողորմութիւն և յիրաւունս. զոսին վկայէ և առաջի երեսացն Աստուծոյ ընթացեալ՝ ասելով, „Արդարութիւն և յիրաւունս հաստատեալ է աթոռ քո. ողորմութիւն և ճշմարտութիւն գնասցեն առաջի երեսաց քոյ„: Այլ կարօտիմք ուսանել զբացատրութիւնս սոցա 'ի միմեանց՝ առ առաջիկայ խորհրդոցս հաստատութիւն. և գիտեմք այսպէս. Ճշմարիտ է Աստուած և արդար, զի ոչ ումեք ողորմի առանց անձնիշխան կամօք հայցելոյն. և փակեալ է ողորմութիւն նորա 'ի ճշմարտութենէն, մինչ չև է մեր զզղջումն բախեալ: Իսկ յորժամ մեք զբանալի հաւատոցն և աղօթիցն 'ի վերայ ձգեմք ճշմարտութեանն, վաղվաղակի 'ի բաց փեռեկէ զնա, և հեղեալ զեղու զողորմութիւնն 'ի վերայ խնդրողին՝ առաւել քան զոր խնդրեմքն և իմանամք: Այսպէս է առ Աստուած ճշմարտութիւնն և ողորմութիւնն, զորոց գոհանայ սա, ըստ կարգի դասեալ նախ զճշմարտութիւնն և ապա զողորմութիւնն, որպէս ասացաւ. իսկ թէ ո՞ր աղագաւ եդ զայս սկիզբն բանիս՝ ուսցուք:

„Որ 'ի վեր քան զերանելի նահապետացն զմեր ըզպարտաւորելոցս մեծարեցեր զանութիւնս. վասն զի նոցա Աստուած կոչեցար, իսկ մեզ Հայր հաճեցար անուանիլ գթալով„: Ո՛վ երանելի նուիրող աղօթիցս, ըստ մեզ զտարակուսանս բանիցս. և զի՞արդ կալասցուք այսպէս ճշմարիտ և արդար զԱստուած իմանալ, և ոչ ողորմած միայն՝ զրկեալ յարդարութենէ. քանզի նոցա որ երանելիքն էին և սուրբք՝ նահապետացն, միայն Աստուած արժանի արար կոչել. իսկ մեզ որ պարտաւորք և յանցուցեալք, զընտանի անունն շնորհեաց, և հայր հաճեցաւ կոչիլ. թերևս արդարութեա՞ն այս գործ. այո՛ ճշմարտապէս, և թէ զի՞արդ՝ ես ցուցից: Աբրահամ ծառայ էր Աստուծոյ և արարած. հաւա-

տայ միայն յԱստուած, վասն այնորիկ պատուեաց Աստուած զամենայն տոհմ նորա, և իւր ժողովուրդ անուանեաց, և ինքն Աստուած նոցին կոչեցաւ. որպէս և հօր նոցին Աբրահամու, որոյ հաւատով բարգաւաճեալ ճոխացան: Իսկ Քրիստոս բնութենակից էր և Որդի էր Աստուծոյ, եկն և ընդ մերս բնութիւն անճառ խառնմամբ միացաւ, և մի Որդի մարմնովն իւրով 'ի Հօրէն իւր դաւանեցաւ. վասն այսորիկ և որք ծնան ընդ նմին հաւատովք, որդիք Աստուծոյ կոչեցան, որպէս Որդիք ծառային՝ ծառայք, որդիք Որդւոյն՝ որդիք Աստուծոյ: Տեսանես զճշմարտութեանն Աստուծոյ պայծառազարդութիւն. իմա և հայեաց, զի ոչ վայրապար որդիութեանն արար զքեզ անուան արժանի, այլ զի մարմնակից ես Որդւոյն, հարկաւորապէս ձայնես և զանունն Աստուծոյ Հայր. հաճեցաւ նա Հայր քո անուանիլ, զի և Որդին իւր մարմնովն վասն քո մեռաւ: Ոչ սոսկ գործ, այլ մահն Աստուծոյ արար զքեզ որդի Աստուծոյ. նախ զմահն իւր Քրիստոս նուիրեաց Հօր, և ապա մեզ աւետարանեաց, Հայրն իմ է Հայր ձեր, և Աստուածն իմ Աստուած ձեր: Ուստի և ես նախ զայնր ետու Հօրն զյիշատակ հաշտութեանն, և ապա ժողովրդեանս զանուն Հօր համարձակեալ խնդրեմ անուանել: Այս յայտ է թէ ըստ ճշմարտութեանն եղև այս մեզ շնորհ 'ի յողորմածէն. զի որպէս Աբրահամ հաւատովն իւր բաշխեաց զճշմարտութիւնն, և զԱստուած անունն ընկալաւ տոհմին իւր յողորմածէն, Քրիստոս բաշխեաց ոչ հաւատով միայն, այլ մահուամբ, և մահուամբ խաչի, և զՀայրն անուն Աստուծոյ իւրոյ՝ հաւատացելոց սեպհականեաց. փառք նմին յերկինս և յերկրի. սորին վասն և Հոգին վկայէ Հոգւոյս մերում, եթէ եմք որդիք Աստուծոյ:

“ Ու այժմ տէր, աղաչեմք զքեզ, զայսպիսի առ 'ի քէն պատուական և զնորոգ անուանադրութեան շնորհ որ ըստ օրէ պայծառացուցեալ ծաղկեցո 'ի մէջ սուրբ եկեղեցւոյ քո: Ու տուր մեզ համարձակաձայն բարբառով բանալ զբերանս մեր, երգել և ասել”: Հաւասիկ յայտ արար թէ այս աղօթքս սակս այսր խորհրդոյ է, որպէս զի ժողովուրդն առցեն համարձակութիւն առ Աստուած կարդալ. զի այժմ ասէ, ոչ վասն

այլ էնչ խորհրդոյ, այլ վասն սորին աղաչեմ, տալ մեզ համարձակութիւն զպատուական և զսուրբ հայրենի անունդ 'ի վերայ մեր կոչել: Արդարև մեծ խնդիրք, զպաշտեցեալ անունն 'ի հրեշտակաց դողութեամբ՝ մարդկան հպաւոր մերձաւորութեամբ Հայր իւրեանց կոչել: Այս բարիոք խորհի յասելս, դու տուր առ այս մեզ համարձակութիւն՝ զբերանս բանալ. քանզի զի-ա̊րդ ումեք համարձակելի՝ անձամբ անձին 'ի նոյն ժպրհել. յաղագս որոյ որպէս ամենաբարի տէր՝ տալ զխնդիրս հաւատարիմ իւրոյ ծառային:

## ԸՆԴԻՐ ԱՊԱ ԺՈՂՈՎՈՒՐԴՍ ԶՏԵՐՈՒՆԱԿԱՆ ԱՂՕԹՍ ՀՕՐ ՆՈՒԻՐԵՆ

ՔՐԻՍՏՈՍ. յորժամ զկտակն հաստատուն հաւր 'ի չարչարանաց իւրոց աշակերտացն շնորհէր, յաւել առ նոսին ասել. “Ուր եսն եմ, և դուք լիցէք. և ուր երթամն գիտիցէք, և զճանապարհն գիտիցէք”: Ասէ ցնա Թովմաս. “Տէր ոչ գիտեմք յո երթաս, և զիա̊րդ զճանապարհն կարասցուք գիտել”: Ասէ ցնա տէրն. “Ես եմ ճանապարհ և ճշմարտութիւն և կեանք. ոչ ոք գայ առ Հայրն եթէ ոչ ինև. եթէ զիս գիտէիք, ապա և զՀայրն իմ թերևս գիտէիք, և այսուհետև գիտասջիք զնա”: Արդ զայս եդաք առ 'ի ցուցանել թէ ոչ միայն զօրութեամբ, այլ և բարեկարգութեամբ ընթանայ խորհրդածութիւնս. քանզի առ Հօր գիտութիւն նա ինքն տէր մեր եղև ճանապարհ աշխարհի, որպէս և ասաց. “Եթէ զիս գիտէիք, ապա և զՀայրն իմ թերևս կարող լինէիք գիտել”. այսինքն զի ես մարմնով երևեցայ 'ի մէջ ձեր, դիւրահասանելի ամենեցուն. յորժամ զիս և զիմ սէրն ճանաչէք, ապա իմ ճշմարիտ սէրս զոր ցուցի առ ձեզ, ճանապարհ լինի և ածէ զմիտս ձեր առ Հօր սէրն, որ առաքեաց զիս յաշխարհ. քանզի գիտել էութիւն սիրոյն իւր և Հօրն[1] ասէ, և ոչ որպիսութիւն բնութեանն. և զի զայն դեռ ոչ գիտէին առաքեալքն[2], թէ սա որ խօ-

1 Այլք, էութիւնն և սիրոյն իւր և Հօրն:

2 Այսինքն ոչ որպէս և պայծառ ճանաչէին, թէպէտ և դաւանեցան ընդ Պետրոսի:

սիս՝ Աստուած է մարմնացեալ, վասն այնորիկ ասաց ; եթէ զիս այժմ գիտէիք, թերեւս կարէիք ևս զՀայրն ճանաչել ։ Յետ որոյ և յաւելու, և այսուհետև գիտասջիք զնա · յայտ է թէ յետ իմ փոխանակ ձեր մեկնելոյն, և զՀոգին յերկիր առաքելոյ՝ զոր նախ քան զմահն թերեւս դժուարաւ կարէիք ճանաչել, այսուհետև յետ մահուս՝ զօրութեամբ Հոգւոյն դիւրաւ գիտասջիք զնա ։ Զայսպիսի սահման անստերիւր տարաւ եկեղեցիս, նախ զՔրիստոս ծանուցեալ որհներգութեամբքն, և ապա յետ նորա մահուն յիշատակի ճանապարհ լինելոյ և Հոգւոյն իջանելոյ՝ առ Հօրն գիտութիւն վերանան · որովք ուսանիմք թէ բովանդակ տնօրէնութիւնն 'ի խորհրդածութիւնս կատարի ։ Զայս և յառաջագոյն ցուցաք բազում անգամ, բայց ոչ դանդաղիմ զնոյն 'ի վերստին երկրորդել ։ Նախ քահանայքս զմարդկութիւնն նորա խորհրդաբար աղօթիւքն Հօր նուիրեցին, և ժողովուրդն տեսեալ զնա հաւատոյն աչօք՝ մարդ զսերովբէիցն Աստուած հաւասար մեզ 'ի մէջ մեր, ուստի և զսրբերգէնութիւնն ձայնակցեալ երկնայնոցն աղաղակեցին ։ Յետ մարդն լինելոյն խաչեցաւ և չարչարեցաւ Քրիստոս · զայն քահանայքն աղօթիւքն 'ի կիր առեալ ցուցին Հօր · յաղագս որոյ տեսեալ ժողովուրդն հաւատոյն աչօք ըզտէրն իւրեանց վասն իւրեանց 'ի չարչարանս, սկսան միաձայն աղաղակել · " Յամենայնի օրհնեմք զքեզ " ։ Որդի չարչարեալ և յարուցեալ առ Հայրն վերացաւ, և եղև սոցա ճշմարտապէս առ Հայրն ՝ ճանապարհ · և ծանեան հաւատարմապէս թէ ուր մեր մարմնակիցն է, և մեք անդ եմք յուսով և հաւատով · գիտացին թէ սա որ վասն մեր չարչարեցաւ, առ Հայր վերացաւ, ըստ ասելոյն · " Ուր երթամն գիտիցէք " ։ Վասն այսորիկ առաջնորդութեամբն Քրիստոսի ճանապարհ արարին առ Հայր, և այնուհետև գիտացին զնա, այսինքն յետ զխաչն և զչարչարանսն, զյարութիւնն և զհամբարձումն Քրիստոսի օրհնաբանելոյն, և վերացեալ ընդ մարմնակից իւրեանց Աստուծոյն առ Հայրն, այսօր սոքա որպէս յայնժամ առաքեալքն՝

1 Այլք · Աստ նա ։

սկսանի աղօթել առ նա, և զՀոգւոյն խոստումն խընդրել՝ ասելով, զհաց մեր տուր մեզ, և եկեսցէ Հոգին սուրբ, որ է մարմին և արիւն Քրիստոսի Հոգւովն իւրով կենդանացեալ¹, զոր ունին դեռ ևս առ իւրեանս խորհրդաբար քահանայքն՝ անմատչելի 'ի ժողովրդենէն։ Ապա յորժամ սոքա աղաղակեն առ Հայրն, և զնոյն զհացն կենաց 'ի նմանէ խնդրեն, զորդեգրութեանն պայման յիշեցուցանեն, և զթողութիւն պարտուցն հայցեն, յետ այսորիկ լինի համարձակութիւն քահանայիցն՝ զծածուկ խորհուրդն երևելի սոցին առնել բարձրացուցանելովն, և յետ տեսութեանն 'ի կցորդութիւն կոչել նմին հաղորդութեամբն։ Արդ չև ևս այսոցիկ խորհրդոց տնօրինեալ, նախ առ Հայրն աղօթելոյ սոցին էառ հրաման. և սոքա ըստ նախանշանակեալ կարգաւորութեան այժմ սկսանին զաղօթս տէրունական բազկատարած աղօթել։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ԱՂՕԹԻՑՆ ԶՈՐ ԱՂՕԹԵՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՔՆ

“ՀԱՅՐ մեր որ յերկինսդ”։ Զաստուածային աղօթս 'ի փրկչէն մեր աւանդեալ իւրոց ժառանգակցաց, բազումք 'ի հոգեկրացն ընդարձակ քննութեամբ եղին առաջի խնդրողաց՝ որ զմեզ միշտ օգտեցուցանէ, և զամենեսեան որք յընթերցումն աշխատասիրաբար դեգերին, յաղագս որոյ չէ ինչ հարկաւոր զայն որոնել նոցայն առաջի կացեալ մեզ, այլ սուղ ինչ ընթացիւք զկարգ բանիս միայն պահեսցուք ամբողջ։

“Հայր մեր, որ յերկինս”։ Որ հայր դաւանէ, զինքն 'ի ներքոյ որդիութեանն սահմանին գրաւէ. 'ի սոցա մէջն ոխք թշնամութեան ոչ արմատանայ, այլ թէ լինի ստահակութիւն որդւոյն՝ հայրն բնական գթովն և իմաստութեամբն ներէ, և ներողութեամբն զնա ընդ իւրև միշտ նահանջեալ պահէ։ Այսմ հայրենի կամացս ընդարձակութեան ծանօթ է² որդիս.

1 Առ 'ի բացատրել զգործակցութիւն Հոգւոյն սրբոյ 'ի սուրբ խորհրդեանս՝ ասէին ձևով խնաղայի անուսեց առնէ զբանն։ Տե՛ս զատացեալքս զայսմանէ յէջ 391։

2 Երկու օրին․ Ծանէա։

վասն այսորիկ ոչ զսիրոյն կապ ընդ ստամբակելոյն և յուսահատութեամբն խզէ, այլ զի՞նչ. որպէս մանուկ մեղանչէ, և դարձեալ դէմ եդեալ զհայրն անուն զաւանէ, և նա ներողութեամբն 'ի ներքոյ թևոցն ընդգրկեալ պարուրէ: Նաև 'ի վերայ ծառայի ոչ պահէ զայս սահման սովորութեանս. քանզի ոչ ունելով տեառն և ծառայի զբնական գթոյն շաղկապ, 'ի միանգամ մեղանչելն՝ սա զարհուրի, և նա պատուհասէ: Բայց եկեղեցիս Քրիստոսի Աստուծոյ Հօր՝ ոչ են 'ի կարգ ծառայութեան, այլ յորդեգրութեան, զի Հայր իմ ասէ և Հայր ձեր. ուստի և ոչ 'ի յապստամբելոյն մեղօք զարհուրի, այլ զբնական գութն յիշեալ՝ աներկիւղ սպատկառանօք առ հայրն դիմեալ ասէ, "Հայր մեր որ յերկինս": Այս ինքն զի թէպէտ փառօքդ և զօրութբդ լի է երկին և երկիր, սակայն ինքնութիւն անհաս յէութեան 'ի սեպհական քո աթոռ 'ի յերկինսդ բազմի: Այդանօր լուր զիմս հառաչանս յերկինսդ, ուր և մարմնակից մեր քո Որդիդ նստի վասն մեր քահանայ և բարեխօս. լուր զդորայդ վասն իմ, և զիմն որ վասն դորա առաջնորդ լինելոյդ առ քեզ կանխեալ խօսակցիմ: Այլ զի՞նչ է խնդիրսդ, զոր հայցես յամենաբաւական կամացն Աստուծոյ, զոր և Հայր դաւանեցեր, ո՛վ մարդ, յայտ արա. եթէ զստակալից հրեշտակաց ընդանի անուամբ 'ի վերայ քո արժանի գտար անուանել, առ խնդրուածսդ մի՛ լինիր կեղակարծ, այլ սիրեա առաջի նորա համարձակապէս:

"Սուրբ եղիցի անուն քո": Այս ոչ միայն դասի է առաջին 'ի հայցուածս, այլ և զօրութեամբ. այս ինքն զի կարգ ընթացից ունի ամենայն բանք աղօթիցս, որպէս և հանդերձեալ եմք ուսանել. քանզի աղբիւրն բարեկարգութեան զիա՞րդ ասա յիւրն սովորութենէն վրիպէր. ուստի և զայս նախ առաջին ուսոյց խնդրել 'ի Հօրէն. "Սուրբ եղիցի անուն քո": Այլ լուծումն բանիս և գիտութիւն խորհրդոյս ոչ կարեմք ածել այլուստ, բայց եթէ զնորին տեառն բանն հարցուք այլուր զվարդապետութենէ, թերևս ընդ միմեանս բախելով զնորին՝ զկայծակն իմաստիցս կարող լիցուք առ մեզ փայլեցուցանել: Յորժամ աղօթէր Քրիստոս առ Հայր վասն առաքելոցն և ընդ նոքօք աշխար-

հի, յաւելլ և զայս ասել առ Հայրն իւր. «Որպէս զիս առաքեցեր յաշխարհ, և ես զնոսա առաքեցի, և 'ի վերայ նոցա ես սուրբ առնեմ զանձն իմ, զի եղիցին և նոքա սրբեալք ճշմարտութեամբ»: Եւ Պօղոս վասն իւր ասէր առ Երիցունսն Եփեսացւոց. «Սուրբ եմ ես այսուհետև յարենէ ձեր, զի ոչ խորշեցայ 'ի պատմելոյ զօգտակարսն»: Եւ ահաւասիկ յայտ եղև յառաքելոց՝ տեառնն սուրբ լինելն 'ի վերայ աշակերտացն, և 'ի տեառնէ մեր խնդրուածս 'ի Հօրէ. զի սուրբ լինելն Քրիստոսի 'ի վերայ աշակերտացն այն էր, զի ուսոյց և վարժեաց զնոսա ամենայն իմաստութեամբ, յետ որոյ և աղօթեաց նոցին. թէ այնուհետև յանցանէին, անձամբ զանձինս դատապարտէին: Նոյնպէս և Պօղոս քարոզ առաքեցաւ. թէ չէր զԵփեսացիսն ուսուցեալ, ոչ էր սուրբ յարենէ նոցա. քանզի դէտ էր[1], յոչ զգուշացուցանելն զնոսա՝ զարիւն նոցա 'ի ձեռաց իւրոց խնդրէր Աստուած. իսկ յետ զգուշացուցանելոյն սրբեցաւ: Նոյնպէս և տէր մեր ուսոյց մեզ առ Հայր ասել, թէ որպէս քահանային հրամայեցեր միշտ զգուշացուցանել զմեղաւորսն 'ի չար ճանապարհէն բանիւն և իմաստութեամբն զոր ունի, և սրբել զինքն յարենէ, այսպէս և դու դէտ ես[2] 'ի վերայ մեր, և միշտ տեսանես զարկածս չարին ամենահայեաց աչօքդ՝ զոր սերմանէ 'ի տկարս բնութիւն, զիտես և վասն այնորիկ զքո պատուհասիցդ ողորմութիւն: Իսկ մեք խաւարեալքս 'ի զբաղումն մարմնոյ՝ ոչ զիմանալի թշնամւոյն տեսանեմք զարկածս նետից, և ոչ զքո պատուհասիցդ զչափ: Վասն որոյ աղաչեմք, ողորմեա սրբեա զքո անուն[3] 'ի ժողովրդեան քում յարենէ՝ միշտ զարթուցանելով զմեզ նախախնամութեամբդ առ քո փառացդ սէր, և պատուհասիդ երկիւղ. իսկ առ թշնամւոյն զաղտնի նետիցն՝ զխտութիւն և պատերազմին տալով զօրութիւն: Եթէ զայսոսիկ ունիցիմք հայցուածով մերով յԱստուծոյ, սուրբ է անուն նորա յարենէ մեր 'ի պատուհասելն, յորժամ վայելողքս 'ի նոյն մեղանչեմք. որպէս և Քրիստոսին յիւրն յան-

1 Երկու օրին. Գիտէր:
2 Մի օրին. Գիտես:
3 Մի օրին. Սրբեալ քո անունդ:

ցուցեալ աշակերտին վերայ սրբեցաւ 'ի Յուդայի ։ Բայց և ունելով զսոյն հաւատարիմ խնդրողաց՝ դժուարաւ պատահէ մեղանչելն, որպէս և անձամբ զանձն 'ի հուր արկանել ։

«Սուրբ եղիցի անուն քո», Հայր, 'ի մեր պարտեացն զգուշացուցանելովն և նախախնամելովն. և տես զյարակայութիւն՝ խորհրդոյս. զի եղիցի ասէ, այսինքն թէ ոչ այսօր կամ վաղիւն, այլ միշտ և հանապազ ։ Զայս և որդւոյ սովորութիւն է առ հայր ասել. քո խնամքդ հայրաբար լիցի 'ի վերայ իմ միշտ. այնուհետև թէ սխալեմ՝ արժանապէս դատապարտեա ։ Արդ զայս ուսոյց տէրն իբրև զբանալիս ձգել աղօթիւքս 'ի վերայ արդարութեանն Աստուծոյ, և պարտական զնա ողորմութեան և խնամոցն դատել. թէպէտ և մեք անարժան նմին գտանիմք, զի նա զկուրն առանց խնդրելոյ հանապազորդ սփռեսցէ զշնորհս ։

«Եկեսցէ արքայութիւն քո» ։ Տես խնձ զբարեկարգութիւնս. քանզի յետ 'ի ներքոյ խնամոցն առանց հրաժարելոյ պահելոյ, ևս 'ի բարձրագոյն մատչի խնդրուածս, այսինքն 'ի վերայ որոյ սրբեցեր զանուն քո ուսուցանելովն՝ տիրեա և դու հանապազորդ ։ Եւ նա տէր 'ի վերայ ամենայնի նախ՝ քան զմեր խնդրելն, ըստ այնմ. «Տէր թագաւոր մեծ 'ի վերայ ամենայն երկրի» ։ Բայց աղերսանօք զնոյն խնդրելն՝ ոչ է վայրապար, այլ զինչ. Աստուած գիտէ զինքն տէր ամենայնի, բայց բազումք 'ի մարդկանէ տգիտանան զԱստուծոյ տիրելն կամ զինքեանս տեսանելն. վասն այնորիկ կամ բնաւ ոչ անուանեն զանուն նորա, կամ 'ի գիտելն՝ գործովք ուրանան զնոյն. սա ասէ, եկեսցէ հոգիդ իմաստութեան և հանճարոյ յանձն իմ, և ուսուսցէ զիս գիտել զահարկութիւն քում թագաւորութեանդ, և զխրոյդ առ իս զառաստութիւն ։ Զի եկեսցէ ասէ, այսինքն յիմ միտս, արքայութիւն քո, գիտել Հոգւովդ սրբով զտէրութիւն քո՝ որպէս պարտն է գիտութեամբ, այսինքն որպէս մարմնական աչաց հայեցուածոց առաջի՝ ունել հանապազ առաջի իմանալի մտացս հայեցողութեան նպատակ՝ զիմանալիդ

1 Մի օրէն․ Յարախայտնին ։ 2 Մի օրէն․ Յառաջ ։

թագաւոր ։ Զայս թէ այսպէս ունիցիմք , որպէս և հայցեմքս , անհնար է կամակար մտօք մեզ գթելն ․ որպէս և ոչ առաջի թագաւորի և հանդիսական նորա հրապարակի խայտառակ մերկանալն ։ Բայց և զայս իմասցուք 'ի նոյն կարգս , զի վայելչապէս նախ զսուրբ լինել անուանն՝ խնդրեաց ․ քանզի որոգայթադիր բանսարկուն բազում անգամ մեզ և յաջակողմն տայ գթել , այսինքն զմեղսն՝ որպէս զկամս Աստուծոյ կերպարանէ ․ և այնպէս իբրև առ ճշմարտութիւն 'ի նոյն պատրեալ՝ զմարդիկ արկանէ ։ Իսկ մեք եթէ զԱստուած առաջի աչաց ունիմք՝ 'ի ներքին մարդս մեր բնակեալ , զօրութեամբ նորա կարողանամք ընտրող որոշմամբ առ մեքենայիցն գիտութիւն ․ վասն այսորիկ ասէ , "Սուրբ եղիցի անուն քո " ։ Եւ ո՞րպէս ասէ Ած ցիս՝ սուրբ եղիցի՝ անուն իմ ․ պատասխանեմ ․ յորժամ գիտութի քում թագաւորութեանդ եկեալ բնակեսցէ յիս , և միշտ ահարկու արքայութիւնդ առաջի մտացս աչաց լիցի կերպացեալ ․ ըստ այնմ ․ "Յառաջագոյն տեսանէի զտէր առաջի իմ յամենայն ժամ , զի մի սասանեցայց " ։ Ուրեմն ապա զկերպարանս սուրբ լինելոյ անուանն Աստուծոյ , զոր յառաջագոյն խնդրեաց , ինքն ուսուցանէ նմին ըստ կարգի բանիւքս , և նախ զայս թէ եկեսցէ արքայութիւն քո , գիտութիւն քում տէրութեանդ յանձն իմ ։ Իսկ երկրորդ՝

"Եղիցին , տէր , կամք քո որպէս յերկինս և յերկրի " ։ Ո՛վ թէ ընդ որ սքանչացայց երկուց խորհրդոցս՝ զհայեցուած մտացս յինքեանս բաժանելով ․ այսինքն վայելչական կարգ բանիցս , և մեծանձնութիւն առաջիկայ խորհրդոյս ։ Զի յետ թագաւորելոյն և զկամսն խնդրէ , որպէս և 'ի մարդկան մէջ պահի այս սահման ․ քանզի նախ տիրէ ոք ումեք , և ապա զկամսն 'ի վերայ նորին 'ի գործ արկանէ ։ Եթէ քաղաք է՝ շինէ , եթէ ծառայ՝ կերակրէ , եթէ աշակերտ՝ ուսուցանէ ․ այսպէս և սա նախ ընդ արքունական տէրութն Աստուծոյ արկ զանձն լինել , և ապա որպէս 'ի սեպհական տեառնէ զհոգարկելն զինքն տնօրէնութեամբ

1 Մի օրին ․ Անուանն ։
2 Մի օրին ․ Գործեալ ։
3 Երեք օրին ․ Լինի սուրբ ։

կամացն պահանջէ ։ Եւ զայս որքան․ որպէս յերկինս,
ասէ, է կամք քո, եղիցի և յերկիրս ։ Ա՛վ մարդ, և դու
ելե՞ր յերկինս, և անդր զանօրէնութիւն կամացն Աս-
տուծոյ գիտացե՞ր, զի այնպէս ունել զնոյն պահանջես ։
Ո՞ինչ են կամք նորա յերկինս ։ Ա՞յք և զո՞ր կամքն
կառավարէ, ո՞րպէս և առ նոսա անօրէնութիւն կա-
մացն ։ Եւ ոչ գիտեմ, ասէ, բայց որ էջն յերկնից՝ նա
ուսոյց ինձ զնոյն աղերսել ։ Եւ ո՞րպէս ուսոյց․ քանզի
մատեան աշակերտքն առ տէրն, և ուսո՛ մեզ, ասեն,
քո աշակերտացդ՝ աղօթել, որպէս և Յովհաննէս ու-
սոյց իւրոցն․ իսկ նա ուսոյց նոցա որպէս ինքն գիտէր
աղօթել, և ոչ ըստ որում նոքա խնդրեցին ։ Ո՞ր օրի-
նակ եթէ ոմանք 'ի գուեհիկ արանց գոլով 'ի հեռա-
ւոր աշխարհէ՝ անկիրթ Հռովմայեցւոցն բարբառոյ
ազգի և սովորութեան, ոչ և ընաւ տեսեալ կամ տե-
ղեկացեալ զարքունական պաղատանն բարեկարգու-
թիւն, երթան 'ի դրունս թագաւորին ողորմութիւն
աղերսել, և ապա հասեալ անդր տարակուսին յան-
ձինս իւրեանց, ոչ գիտելով զորպէսն մտանել առաջի
թագաւորին, կամ թէ զինչ իւրեանց վայելչական
խնդիրքն 'ի նմանէ լինիցին․ և մինչ նոքա յայս տա-
րակոյս կան վարանեալ, պատահէ նոցին ոդլի թա-
գաւորին՝ որպէս զմի 'ի հասարակաց զինուորաց, զոր
տեսեալ՝ երագեալ յընթացս առ նա հասանեն ասելով․
Ա՛վ եղբայր, ուսո մեզ, թէ ո՞րպ մտցուք առաջի արքային ։
Իսկ նորա բարեմիտ գոլով ոչ անգոսնէ կամ այպանէ
զտմարդութիւնն, այլ սիրով ողորմեալ նոցա՝ պատաս-
խանէ․ ես ուսուցանեմ զձեզ․ յորժամ մտանէք ա-
ռաջի արքային, երկիր պագէք վաղվաղակի, և ասացէք
նմա[1]․ տէր մեզ զպատիւ սինկղիտոսացն՝ որք առա-
ջին են 'ի պաղատ քո․ և նոքա ոչ զսինկղիտոսացն ա-
նուն գիտեն և ոչ զզօրութիւն նորա, ոչ զպաղատն և
ոչ զդասակարգութիւն նորին․ այլ մտեալ առաջի թա-
գաւորին՝ վաղվաղակի զոր ուսանին բան՝ աղաղակեն ։
Իսկ դասակարգութեն ամենայն արքունական պաղատա-
նիցն նայեցեալ 'ի բարբառ նոցա զի օտար է, և 'ի ձեռն
զի շինական է, 'ի դէմսն զի գուեհիկ է, 'ի կերպարանս

1 Ամէ, Յն ։

հանդերձիցն զի անպաճոյճ է, սքանչանան յինքեանս։ Աստի գիտեմն սորա կամ յումմէ ուսան զանուն սինկղիտոսութեան և զպատիւ, այսպէս օտար գոլով յարքունական ապարանիցս։ Այսպէս և տէր մեր՝ անհաս 'ի հրեշտակաց և 'ի մարդկանէ արար զմարմնաւորութեանն խորհուրդ, որպէս ասէ Պօղոս. առ որ մատեան աշակերտքն, ոչ իբրև յԱստուծոյ՝ այլ որպէս 'ի Յովհաննէ ուսանել զսահման աղօթից։ Իսկ նա գթացեալ 'ի նոսա ամենագութն սիրով, ոչ որպէս տանէին՝ ուսոյց նոցին, այլ զերկնայինն անճառ և անհաս խոր խաղաղութիւնն ուսոյց նոցա աղօթիւքն 'ի Հօրէն հայցել. "Եղիցին կամք քո, որպէս յերկինս և յերկրի"։ Արդ զայս խնդրելով մեր յԱստուծոյ, արդարև ոչ գիտեմք տիրապէս զզօրութիւն հայցուածոյս, սակայն զերկնայինսն զարհուրեցուցանեմք մեծաքանութեամբ՝ աղօթիցս. զի զոր ոչ գիտէաք զպատիւ նոցա՝ տեղեկացեալ, մեզ Քրիստոսիւ խնդրեմք ունել սեպհական. քանզի կամն ասելով՝ զամենայն իջումն շնորհացն Աստուծոյ ընդ բանիւս պարունակեաց ունել հաւատար նոցա, այսինքն զի կամացն այլայլութիւն արգելու 'ի մէնջ զփառս նոցա։ Քանզի առ նոսա ունի զկամս իբրև առ կամարարս քաղցր և առատ, և առ մեզ իբրև առ յանցաւորս. ըստ այնմ. "Որդեակ, դու հանապազ ընդ իս ես, և ամենայն որ ինչ իմ է՝ քո է"։ Արդ եղեալ այսպէս կամացն և 'ի վերայ երկրիս, եղև և մարդկան նորա ամենայն ինչ՝ որպէս և հրեշտակացն։ Զինչ տացուք տրիտուր տեառն, ո՛վ եղբարք, զայսպիսի փրկական բաժակ աղօթիցս մեզ արբուցանողի. զոր տամք հանապազ առաջի Աստուծոյ Հօր, առաջի բազմութեան ժողովոց հրեշտակացն 'ի դաւիթս վերինն Երուսաղեմի. զինչ այլ, բայց եթէ զմածումն երեսաց 'ի վերայ երկրի գոհութեամբ։ Արդարև սուտ տեսանեմ զամենայն կարծիս մտաց զբաղանացս մարդկան, յորժամ առ որ խօսիմ նայեցեալ մտացս աչօք՝ հաւատամ զԱստուած ունել 'ի վերայ իմ քաղցր որպէս 'ի հրեշտակաց, և զիս որպէս զնոսին նմին խօսակից, և աղօթքս ամենաբարի կամացն ախորժակ։ Այս ինձ,

1 Երկու օրին. Մեծափառաաաաբնեանէ ։

դուրժէիր․ Երկնչէին 'ի քէն և դևք և սարսէին․ զերկիւղդ միայն մի քեզ պարծանս համարիր, այլ խառնեա ընդ երկիւղդ և սէր առ նա, զի մի լուիցես, «Եթէ ջամբիցեմ զամենայն ինչս իմ աղքատաց, և մատնիցեմ զմարմինս իմ յայրումն, և սէր ոչ ունիցիմ, ոչ ինչ օգտիմ»․ զի մի ասասցէ առ քեզ Աստուածաբանն, «Երկնչելովդ՝ ոչ ես կատարեալ 'ի սէրն»։ Սէրն և տռփումն վերածէ զմեզ առ Քրիստոս, որպէս և զնա առ մեզ էած․ միշտ ընդ երկիւղիւդ կացեալ՝ ոչ ձգտիս առ նա․ բայց սէրն և ընդ լանջօքն ածել ձեռնարկէ[1]․ ոչ ունիս սէր, վասն այսորիկ արժանաւորութեամբ և հեղգութեամբ մնաս 'ի ներքոյ երկիւղին արտաքոյ․ Թէ ունէիր զհուր սիրոյն, պոռնկիդ ձեռնարկել 'ի գլուխն յօժարէր․ երկիւղին ես ծառայ, և ոչ յետ բազում ապաշխարութեանդ թողութեան հաւատաս թէ սիրովն տոչորէիր, և մի արտասուքն սփոփեալ մխիթարէր և 'ի խաղաղութիւն զքեզ արձակէր։ Յետ մահու 'ի շնորհս լինիս ապաստան՝ ունել թողութիւն․ վասն այնորիկ կենօք զսոյն լքեալ թողեալ ելանես, և մոռացեալ ես թէ 'ի տէր տէր ձայնելն՝ զոչ գիտելն զքեզ պատասխանէ․ Էր վասն․ զի 'ի հրապարակս քո ուսոյց, և ոչ 'ի գութ տռփմանդ[2] հանգեաւ։ Այլ ինձ այն որք ընդ հակառակս առեալ ըղբանս այպանեսցէ․ քանզի որպէս դու 'ի սիրոյն զարհամարհութիւնն գիտես ծնեալ, և ես յերկիւղէն զանհաւատութիւնն գիտեմ յառաջեալ[3]։ Դժնդակ է ընդ մի որք բերիլ 'ի չարեացդ, և բարիօք՝ զուղիղ ճանապարհս ողջունել ուղղութեամբ։ Մի որք զիս և յանձնապաստան դատեսցէ՝ յայտպէս բարբառելն, որ և կշտամբելոց եմ ոչ յօտարաց, այլ 'ի բերանոյ իմոյ, իբրև զչար և զվատ ծառայ անպիտան․ քանզի որով դատեմ զընկերն՝ զանձն իմ դատապարտեմ, գործող զնոյն՝ որով դատիմ․ այլ յօժարիմ յանել, զի ծանիցուք թէ չեմք ապրելոց 'ի սաստիկ դատաստանացն Աստուծոյ, և զխստութիւն սրտից մերոց կակղացու-

1 Մի օրին․ Ածել ձեռնարկի։
2 Մի օրին․ Տափմանդ։ Երկու օրին․ Տարփմանդ։
3 Մի օրին․ Յաջողեալ։ Այլ օր․ Յառաջ բերեալ։

ցուք, և զանզղջական երկեղածութիւնս 'ի զղջումն և 'ի սէր փոխեսցուք, թերևս լիցի գանձել անձանց ըղփրկութիւն և մի զպարկութիւն՝ յաւուր դատաստանին Աստուծոյ, յորժամ հատուցանէ ըստ գործս մեր, որպէս հաւատամք: Աղաչեմ զամենեսեան, և զոտս եղբարցդ սրբոց արտասուօք սրբոյն համբուրեմ. ներեցէք իմոյ անզգամութեանս, և իբրև վշտակից ծառայակից ընկալարուք զիս, և զձեզ ընկալցի Քրիստոս Յիսուս տէր մեր, որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ԸՆԴԷՐ ՅԵՏ ԱՅՍՈՐԻԿ ԴԱՐՁԵԱԼ ՔԱՐՈԶՈՒԹԵԱՆ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ ԵՀԱՍ ԺԱՄԱՆԱԿ

ՊԱՐՏ է գիտել, թէ այսուհետև վախճան էառ խորհուրդ պատարագիս՝ հանդերձ պէսպէս աղերսանօք 'ի քահանայէն. և մինչդեռ ոչ էր այս կատարեալ, ոչ ինչ ունէր համարձակութիւն սարկաւագն ազդել ժողովրդեանն. վասն այնորիկ լռեալ դադարեաց: Այլ սոքա քահանայքս ետուն խորհրդապէս զՔրիստոս Հօր, առին 'ի Նմանէ և զՀոգին, հայցեցին զպէսպէս ողորմութիւն. իսկ յորժամ 'ի լռումն զխորհուրդս ածեալ յանգեցին, սարկաւագն ազդէ Նոցա քարոզութիւն ժողովրդեանն, եթէ ձեր փրկութեան Նուէրն զոր ետուք 'ի քահանայսն՝ մատեաւ առաջի Աստուծոյ, և Նա ընկալաւ հաշտ և քաղցր կամօք. արդ պատրաստ լերուք, զի 'ի պատարագին ձեր փոխարէն՝ 'ի շնորհսն Հոգւոյ՝ զոր քահանայքն առին յԱստուծոյ՝ վայելեցէք. և այսպէս զգուշութիւն տայ Նոցա զի պատրաստեսցին առ հանդերձեալ շնորհսն որ իջանելոց է 'ի մէջ Նոցա. այսինքն զի ընդ Աստուած Հայր դեռ ևս ոչ համարձակեալ են ժողովուրդս խօսել. Նա և ոչ զՀոգւոյն իջումն 'ի վերայ պատարագին իմացեալ, զի այս ամենայն ծածուկ և խորհրդաբար 'ի Ներքին վայր սրբոյ խորանին կատարեցաւ 'ի մէջ քահանայիցն, և ժողովուրդն միայն Քրիստոսի լինէր խօսակից, զսերովբէական երգն և զամենայնի գոհութիւնն երգելով[1], որպէս և անդր է

1 Երկու օրին. Այս զամենայն 'ի գոհաբանութեանն երգելով:

յայտնեալ ։ Արդ այսուհետև հանդերձեալ են զՀո-գին տէրունական մարմնոյն ընդունել, և պարտ է զի որպէս քահանայքն նախ ընդ Հայր խօսեցան և ապա զՀոգին 'ի ձեռն Քրիստոսի 'ի նմանէ ընկալան, զի այսպէս լիցի և սոցա նախ համարձակել և առ Աստուած Հայր աղօթել, և ապա զպարգև շնորհին 'ի նմանէ ընդունել. արդ զի այսմ, ըստ որում ասացաւ, պատրաստ լինիցին, դաստիարակ նոցին սարկաւագն նախ զգուշութիւն տայ քարոզութեամբն [1] ։

## Լ. ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԽՈՐՀՐԴԱԿԱՆ ԱՂՕԹԻՑՆ ԶՈՐ ԸՆԴ ՔԱՐՈԶՈՒԹԵԱՆՆ ՔԱՀԱՆԱՅՆ ՄԱՏՈՒՑԱՆԷ

«ԱՍՏՈՒԱԾ ճշմարտութեան և Հայր ողորմութեան, գոհանամք զքէն»։ Վերստին դարձեալ սկիզբն դնէ ընդ Աստուած խօսելոյ. Ե՞ր վասն. քանզի յայլ հայցուածոց խորհուրդ զամենայն փոխէ զընթացս. այսինքն զի մինչև ցայժմ զպատարագն էր, և զպէսպէս նուէր անել մաղթեաց զխնդիրս. իսկ այսուհետև կամի զի Աստուծոյ, առ որ ինքն միայն պատարագաւն խօսէր, ընդհանուր ժողովուրդն յետ հաշտութեանն լինիցին խօսակից։ Այսր ապացոյց և զմարդկան է գտանել սովորութիւն. քանզի յորժամ խէթ ատելութեան լինիցի 'ի մէջ ծառայից և տեառնն, ոչ վաղվաղակի ժպրհին ընդ նա խօսակցել, այլ նախ զոք 'ի հաւատարիմ ծառայիցն կաշառօք պատարագին հրեշտակ խաղաղութեան առ թագաւորն առաքեն. իսկ յորժամ նա պատարագաւն և իւրով թախանձելովն նուաճէ զկամս տեառնն, և ուղղէ զառաջին սէրն, յետ այնորիկ ազդէ սոցա գալ, և խօսել խաղաղութեամբ ընդ տեառն իւրեանց. յայտ արարեալ թէ 'ի ձեռն նուիրացն առաջինն սէր հաստատեցաւ ընդ ձեզ և ընդ թագաւորն՝ իմովս թախանձելի միջնորդութեամբ։ Այսպէս արար և քահանայս. նախ եմուտ պատարագաւն ինքն միայն առաջի Աստուծոյ՝ վասն ամենայն ժողովրդեանն. իսկ նա բարեհաճոյ կամօքն ընկալաւ, և զհաշտութիւն խաղաղութեանն ընդ ժողովրդս ուղ-

1 Մի օրին. Քարոզնելուն ։

ղեաց. այժմ կարօտի միջնորդս վերստին թախանձել՝
թէ որոց ներեցեր ողորմութեամբ և հաշտեցար ընդ
նոսին քաղցրութեամբ, տուր բարերար կամօքդ համ-
արձակութիւն այսուհետև գալ առաջի քո, և ընդ
քեզ խօսակցել. յաղագս որոյ և նորոգ սկիզբն կարգէ
աղօթիցս ասելով. «Աստուած ճշմարտութեան և Հայր
ողորմութեան, գոհանամք զքէն»: Այսպէս և մար-
գարէն օրհնէ զԱստուած յողորմութիւն և յիրա-
ւունս. զսոսին վկայէ և առաջի երեսացն Աստուծոյ
ընթացեալ՝ ասելով, «Արդարութիւն և յիրաւունս
հաստատեալ է աթոռ քո. ողորմութիւն և ճշմար-
տութիւն գնասցեն առաջի երեսաց քոց»: Այլ կարո-
տիմք ուսանել զբացատրութիւնս սոցա 'ի միմեանց՝ առ
առաջիկայ խորհրդոցս հաստատութիւն. և գիտեմք
այսպէս: Ճշմարիտ է Աստուած և արդար, զի ոչ ու-
մեք ողորմի առանց անձնիշխան կամօք հայցելոյն. և
փակեալ է ողորմութիւն նորա 'ի ճշմարտութենէն,
մինչ չև է մեր զդրունսն բախեալ: Իսկ յորժամ մեք
զբանալի հաւատոցն և աղօթիցն 'ի վերայ ձգեմք ճըշ-
մարտութեանն, վաղվաղակի 'ի բաց փեռեկէ զնա, և
հեղեալ զեղու զողորմութիւնն 'ի վերայ խնդրողին՝
առաւել քան զոր խնդրեմքն և իմանամք: Այսպէս է
առ Աստուած ճշմարտութիւնն և ողորմութիւնն, զո-
րոց գոհանայ սա, ըստ կարգի դասեալ նախ զճշմար-
տութիւնն և ապա զողորմութիւնն, որպէս ասացաւ.
իսկ թէ ո՞ր աղագաւ եդ զայս սկիզբն բանիս՝ ուսցուք:

«Որ 'ի վեր քան զերանելի նահապետացն զմեր ըղ-
պարտաւորելոցս մեծարեցեր զբնութիւնս. վասն զի
նոցա Ա՟ծ կոչեցար, իսկ մեզ Հայր հաճեցար անուա-
նիլ գթալով»: Ո՜վ երանելի նուիրող աղօթիցս, լոյծ
մեզ զտարակուսանս բանիցս. և զիա՞րդ կարասցուք
այսպէս ճշմարիտ և արդար զԱստուած իմանալ, և ոչ
ողորմած միայն՝ զրկեալ յարդարութենէ. քանզի նո-
ցա որ երանելիք էին և սուրբք՝ նահապետացն, միայն
Աստուած արժանի արար կոչել. իսկ մեզ որ պարտա-
ւորք և յանցուցեալք, զընտանի անունն շնորհեաց, և
Հայր հաճեցաւ կոչիլ. թերևս արդարութեա՞ն այս
գործ. այո՛ ճշմարտապէս, և թէ զիա՞րդ՝ ես ցուցից:
Աբրահամ ծառայ էր Աստուծոյ և արարած. հաւա-

տաց միայն յԱստուած, վասն այնորիկ պատուեաց Աստուած զանձնայն տոհմ նորա, և իւր ժողովուրդ անուանեաց, և ինքն Աստուած նոցին կոչեցաւ. որպէս և հօր նոցին Աբրահամու, որոյ հաւատով բարգաւաճեալ ճոխացան: Նաև Քրիստոս բնութենակից էր և Որդի էր Աստուծոյ, եկն և ընդ մերս բնութիւն անճառ խառնմամբ միացաւ, և մի Որդի մարմնովն իւրով 'ի հօրէն իւր դաւանեցաւ. վասն այսորիկ և որք ծնան ընդ նմա հաւատովք, որդիք Աստուծոյ կոչեցան, որպէս Որդիք ծառային՝ ծառայք, որդիք Որդւոյն՝ որդիք Աստուծոյ: Տեսանես զճշմարտութեանն Աստուծոյ պայծառազարդութիւն. իմա և հայեաց, զի ոչ վայրապար որդիութեանն արար զքեզ անուան արժանի, այլ զի մարմնակից ես Որդւոյն, հարկաւորապէս ձայնես և զանունն Աստուծոյ Հայր. հաճեցաւ նա Հայր քո անուանիլ, զի և Որդին իւր մարմնովն վասն քո մեռաւ: Ոչ սուկ գործ, այլ մահն Աստուծոյ արար զքեզ որդի Աստուծոյ. նախ զմահն իւր Քրիստոս նուիրեաց Հօր, և ապա մեզ աւետարանեաց, Հայրն իմ է Հայր ձեր, և Աստուածն իմ Աստուած ձեր: Աստի և ես նախ զայնր ետու Հօրն զյիշատակ հաշտութեանն, և ապա ժողովրդեանս զանունն Հօր համարձակեալ խնդրեմ անուանել: Ապա յայտ է թէ ըստ ճշմարտութեանն եղև այս մեզ շնորհ 'ի յողորմածէն. զի որպէս Աբրահամ հաւատովն իւր բաշխեաց զճշմարտութիւնն, և զԱստուած անունն ընկալաւ տոհմին իւր յողորմածէն, Քրիստոս բաշխեաց ոչ հաւատով միայն, այլ մահուամբ, և մահուամբ խաչի, և զՀայրն անուն Աստուծոյ իւրոյ՝ հաւատացելոց սեպհականեաց. փառք նմին յերկնէ և յերկրէ. սորին վասն և Հոգին վկայէ հոգւոյս մերում, եթէ եմք որդիք Աստուծոյ:

«Եւ այժմ տէր, աղաչեմք զքեզ, զայսպիսի առ 'ի քէն պատուական և զնորոգ անուանադրութեան շնորհ որ ըստ օրէ պայծառացուցեալ ծաղկեցո 'ի մէջ սուրբ եկեղեցւոյ քո: Եւ տուր մեզ համարձակաձայն բարբառով բանալ զբերանս մեր, երգել և ասել»: Հաւասիկ յայտ արար թէ այս աղօթքս սակս այսր խորհրդոյ է, որպէս զի ժողովուրդն առցեն համարձակութիւն առ Աստուած կարդալ. զի այժմ ասէ, ոչ վասն

այլ Ենոք խորհրդոյ, այլ վասն սորին աղաչեմ, տալ մեզ համարձակութիւն զպատուական և զսուրբ հայրենի անունդ 'ի վերայ մեր կոչել: Արդարև մեծ խնդիրք, զպաշտեցեալ անունն 'ի հրեշտակաց դողութեամբ՝ մարդկան հպաւոր մերձաւորութեամբ Հայր իւրեանց կոչել: Այս բարիոք խորհի յանելս, դու տուր առ այս մեզ համարձակութիւն՝ զերկրաւոր բառնալ. քանզի զի-արդ ումեք համարձակելի՝ անձամբ անձին 'ի նոյն ժպրհել. յաղագս որոյ որպէս ամենաբարի տէր՝ տայ զխնդիրս հաւատարիմ իւրոյ ծառային:

## ԸՆԴԻՐ ԱՊԱ ԺՈՂՈՎՈՒՐԴՍ ԶՏԷՐՈՒՆԱԿԱՆ ԱՂՕԹՍ ՀՕՐ ՆՈՒԻՐԵՆ

ՔՐԻՍՏՈՍ յորժամ զկտակն հաստատուն հուպ 'ի չարչարանան իւրոց աշակերտացն շնորհէր, յաւել առ նոյին ասել. "Ուր եսն եմ, և դուք իցէք. և ուր եր-թամն գիտիցէք, և զճանապարհն գիտիցէք": Ասէ ցնա Թովմաս. "Տէր ոչ գիտեմք յո՛ երթաս, և զիա̂րդ զճանապարհն կարասցուք գիտել": Ասէ ցնա տէրն. "Ես եմ ճանապարհ և ճշմարտութիւն և կեանք. ոչ ոք գայ առ Հայրն եթէ ոչ ինև. եթէ զիս գիտէիք, ապա և զՀայրն իմ թերևս գիտէիք, և այսուհետև գիտասջիք զնա": Արդ զայս եդաք առ 'ի ցուցանել թէ ոչ միայն զօրութեամբ, այլ և բարեկարգութեամբ ընթանայ խորհրդածութիւնս. քանզի առ Հօր գի-տութիւն նա ինքն տէր մեր եղև ճանապարհ աշխար-հի, որպէս և ասաց. "Եթէ զիս գիտէիք, ապա և զՀայրն իմ թերևս կարող լինէիք գիտել". այսինքն զի ես մարմնով երևեցայ 'ի մէջ ձեր, դիւրահասանելի ա-մենեցուն. յորժամ զիս և զիմ սէրն ճանաչէք, ապա իմ ճշմարիտ սէրս զոր ցուցի առ ձեզ, ճանապարհ լի-նի և ածէ զմիտս ձեր առ Հօր սէրն, որ առաքեաց զիս յաշխարհ. քանզի գիտել էութիւն սիրոյն իւր և Հօրն[1] ասէ, և ոչ որպիսութիւն բնութեանն. և զի զայն դեռ ոչ գիտէին առաքեալքն[2], թէ սա որ խօ-

1 Այլք, էութեանն և սիրոյն իւր և Հօրն:

2 Այսինքն ոչ տիրապէս և պայ-ծառ ճանաչէին, թէպէտ և դաւա-նեցան ընդ Պետրոսի:

սիս՝ Աստուած է մարմնացեալ, վասն այնորիկ ասաց ; եթէ զիս այժմ գիտէիք, թերեւս կարէիք նոյն զՀայրն ճանաչել։ Յետ որոյ և յաւելու, և այսուհետև գիտասջիք զնա . յայտ է թէ յետ իմ փոխանակ ձեր մեռանելոյն, և զՀոգին յերկիր առաքելոյ՝ զոր նախ քան զմահն թերեւս դժուարաւ կարէիք ճանաչել, այսուհետև յետ մահուս՝ զօրութեամբ Հոգւոյն դիւրաւ գիտասջիք զնա։ Զայսպիսի սահման անստերիւր տարաւ եկեղեցիս, նախ զՔրիստոս ծանուցեալ օրհներգութեամբքն, և ապա յետ նորա մահուն յիշատակի ճանապարհ լինելոյ և Հոգւոյն իջանելոյ՝ առ Հօրն գիտութիւն վերանան . որովք ուսանիմք թէ բովանդակ տնօրէնութիւնն 'ի խորհրդածութիւնս կատարի։ Զայս և յառաջագոյն ցուցաք բազում անգամ, բայց ոչ դանդաղիմ զնոյն 'ի վերստին երկրորդելս։ Նախ քահանայքս զմարդկութիւնն նորա խորհրդաբար աղօթիւքն Հօր նուիրեցին, և ժողովուրդն տեսեալ զնա հաւատոցն աչօք՝ մարդ զսերովբէիցն Աստուած հաւասար մեզ 'ի մէջ մեր, ուստի և զօրհներգէնութիւնն ձայնակցեալ երկնայնոցն աղաղակեցին։ Յետ մարդն լինելոյն խաչեցաւ և չարչարեցաւ Քրիստոս . զայն քահանայքն աղօթիւքն 'ի կիր առեալ ցուցին Հօր . յաղագս որոյ տեսեալ ժողովուրդն հաւատոցն աչօք ըզտէրն իւրեանց վասն ինքեանց 'ի չարչարանս, սկսան միաձայն աղաղակել . “Յամենայնի օրհնեմք զքեզ„։ Որդ չարչարեալ և յարուցեալ առ Հայրն վերացաւ, և եղև սոցա ճշմարտապէս առ Հայրն՝ ճանապարհ . և ծանեան հաւատարմապէս թէ ուր մեր մարմնակիցն է, և մեք անդ եմք յուսով և հաւատով . գիտացին թէ սա որ վասն մեր չարչարեցաւ, առ Հայր վերացաւ, ըստ ասելոյն . “Ուր երթամն գիտիցէք„։ Վասն այսորիկ առաջնորդութեամբն Քրիստոսի ճանապարհ արարին առ Հայր, և այնուհետև գիտացին զնա, այսինքն յետ զխաչն և զչարչարանսն, զյարութիւնն և զհամբարձումն Քրիստոսի օրհնաբանելոյն, և վերացեալ ընդ մարմնակից իւրեանց Աստուծոյն առ Հայրն, այսօր սոքա որպէս յայնժամ առաքեալքն՝

1 Այլք . Աւ—նա :

սկսանի աղօթել առ նա , և զՀոգւոյն խոստումն խըն-դրել՝ ասելով , զՀաց մեր տուր մեզ , և եկեսցէ Հո-գին սուրբ , որ է մարմին և արիւն Քրիստոսի հո-գւովն իւրով կենդանացեալ¹ , զոր ունին դեռ ևս առ իւրեանս խորհրդաբար քահանայքն՝ անմատչելի 'ի ժո-ղովրդենէն : Ապա յորժամ սոքա աղաղակեն առ Հայրն, և զնոյն զՀացն կենաց 'ի նմանէ խնդրեն , զորդեգրու-թեանն պայման յիշեցուցանեն , և զթողութիւն պար-տուցն հայցեն , յետ այսորիկ լինի համարձակութիւն քահանայիցն՝ զծածուկ խորհուրդն երևելի սոցին առ-նել բարձրացուցանելովն , և յետ տեսութեանն 'ի կցորդութիւն կոչել նմին հաղորդութեամբն : Որդ-չև ևս այսոցիկ խորհրդոց տնօրինեալ , նախ առ Հայրն աղօթելոյ սոցին էառ հրաման . և սոքա ըստ նախա-նշանակեալ կարգաւորութեան այժմ սկսանին զաղօթս տէրունական բազկատարած աղօթել :

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ԱՂՕԹԻՑՆ ԶՈՐ ԱՂՕԹԵՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՔՆ

“ ՀԱՅՐ մեր որ յերկինսդ ” : Զաստուածային ա-ղօթս 'ի փրկչէն մեր աւանդեալ իւրոց ժառանգա-կցաց , բազումք 'ի հոգեկրացն ընդարձակ քննութեամբ եղին առաջի խնդրողաց՝ որ զմեզ միշտ օգտեցուցանէ , և զամենեսեան որք յընթերցումն աշխատասիրաբար դեգերին , յաղագս որոյ չէ ինչ հարկաւոր զսոյն որո-նել նոցայն առաջի կացեալ մեզ , այլ սուղ ինչ ընթա-ցիւք զկարգ բանիս միայն պահեսցուք ամբողջ :

“ Հայր մեր , որ յերկինս ” : Որ Հայր դաւանէ , զինքն 'ի ներքոյ որդիութեանն սահմանին գրաւէ . 'ի սոցա մէջն ոխք թշնամութեան ոչ արմատանայ , այլ թէ լինի ստահակութիւն որդւոյն՝ հայրն բնական գթովն և իմաստութեամբն ներէ , և ներողութեամբն զնա ընդ իւրև միշտ նահանջեալ պահէ : Այժմ հայ-րենի կամացս ընդարձակութեան ծանօթ է² որդիս .

1 Առ 'ի բացատրել զգործա-կցութիւն Հոգւոյն սրբոյ 'ի սուրբ խորհրդեանն՝ սովին ձևով խնա-ղալի անուսից առնէ զբանն : Տե՛ս զասացեալքս զայսմանէ յէջ 391 :

2 Երկու օրէն . Ծանէա :

վասն այսորիկ ոչ զսիրոյն կապ ընդ ստամբակելոցն և յուսահատութեամբն խզէ, այլ զինչ. որպէս մանուկ մեղանչէ, և դարձեալ դէմ եդեալ զհայրն անուն դաւանէ, և նա ներողութեամբն 'ի ներքոյ թևոցն ընդգրկեալ պարուրէ: Իսկ 'ի վերայ ծառայի ոչ պահէ զայս սահման սովորութեանս. քանզի ոչ ունելով տեառն և ծառայի զբնական գթոյն շաղկապ, 'ի միանգամ մեղանչելն' սա զարհուրի, և նա պատուհասէ: Բայց եկեղեցիս Քրիստոսի Աստուծոյ Հօր' ոչ են 'ի կարգ ծառայութեան, այլ յորդեգրութեան, զի Հայր իմ ասէ և Հայր ձեր. ուստի և ոչ 'ի յապստամբելոյն մեղօք զարհուրի, այլ զբնական գութն յիշեալ' աներկիւղ պատկառանօք առ հայրն դիմեալ ասէ, "Հայր մեր որ յերկինս": Այս ինքն զի թէպէտ փառօք և զօրութ͞բ լի է երկին և երկիր, սակայն ինքնութիւն անհաս յէութեան 'ի սեպհական քո աթոռ 'ի յերկինս բազմի: Այդանօր լուր զիմ հառաչանք յերկինսդ, ուր և մարմնակից մեր քո Որդիդ եմուտ վասն մեր քահանայ և բարեխօս. լուր զդորայդ վասն իմ, և զիմն որ վասն դորա առաջնորդ լինելոյդ առ քեզ կանխեալ խօսակցիմ: Այլ զինչ է խնդիրդ, զոր հայցես յամենաբաւական կամացն Աստուծոյ, զոր և Հայր դաւանեցեր, ո՛վ մարդ, յայտ արա. եթէ զսակալդ հրեշտակաց ընդանի անուամբ 'ի վերայ քո արժանի գտար անուանել, առ խնդրուածսդ մի լինիր կեղակարծ, այլ սփռեա առաջի նորա համարձակապէս:

"Սուրբ եղիցի անուն քո": Այս ոչ միայն դասիւ է առաջին 'ի հայցուածս, այլ և զօրութեամբ. այս ինքն զի կարգ ընթացից ունի ամենայն բանք աղօթիցս, որպէս և հանդերձեալ եմք ուսանել. քանզի աղբիւրն բարեկարգութեան զիա՞րդ աստ յիւրն սովորութենէն վրիպէր. ուստի և զայս նախ առաջին ուսոյց խնդրել 'ի Հօրէն. "Սուրբ եղիցի անուն քո": Այլ լուծումն բանիս և զխորութիւն խորհրդոյս ոչ կարեմք ածել այլուստ, բայց եթէ զնորին տեառն բուռն հարցուք այլուր զվարդապետութենէ, թերևս ընդ միմեանս բախելով զնորին' զկայծակն իմաստից կարող լիցուք առ մեզ փայլեցուցանել: Յորժամ աղօթէր Քրիստոս առ Հայր վասն առաքելոցն և ընդ նոքօք աշխար-

հի, յաւելլ և զայս ասել առ Հայրն իւր. «Որպէս զիս առաքեցեր յաշխարհ, և ես զնոսա առաքեցի, և 'ի վերայ նոցա ես սուրբ առնեմ զանձն իմ, զի եղիցին և նոքա սրբեալք ճշմարտութեամբ»։ Եւ Պօղոս վասն իւր ասէր առ երիցունսն Եփեսացւոց. «Սուրբ եմ ես այսուհետև յարենէ ձեր, զի ոչ խորշեցայ 'ի պատմելոյ զօգտակարսն»։ Եւ ահաւասիկ յայտ եղև յառաքելոց՝ տեառնն սուրբ լինելն 'ի վերայ աշակերտացն, և 'ի տեառնէ մեր խնդրուածս 'ի Հօրէ. զի սուրբ լինելն Քրիստոսի 'ի վերայ աշակերտացն այն էր, զի ուսոյց և վարժեաց զնոսա ամենայն իմաստութեամբ, յետ որոյ և աղօթեաց նոցին. թէ այնուհետև յանցանէին, անձամբ զանձինս պատապարտէին։ Այսպէս և Պօղոս քարոզ առաքեցաւ. թէ չէր զԵփեսացիսն ուսուցեալ, ոչ էր սուրբ յարենէ նոցա. քանզի դէտ էր[1], յոչ զգուշացուցանելն զնոսա՝ զարիւն նոցա 'ի ձեռաց իւրոց խնդրէր Աստուած. իսկ յետ զգուշացուցանելոյն սրբեցաւ։ Այսպէս և տէր մեր ուսոյց մեզ առ Հայր ասել, թէ որպէս քահանայքն հրամայեցեր միշտ զգուշացուցանել զմեղաւորսն 'ի չար ճանապարհէն բանիւն և իմաստութեամբն զոր ունի, և սրբել զինքն յարենէ, այսպէս և դու դէտ ես[2] 'ի վերայ մեր, և միշտ տեսանես զարկածս չարին ամենահայեաց աչօքդ՝ զոր սերմանէ 'ի տկարս բնութիւն, գիտես և վասն այնորիկ զքո պատուհասիցդ որքանութն։ Իսկ մեք խաւարեալքս 'ի զբաղմունս մարմնոյ՝ ոչ զիմանալի Թշնամւոյն տեսանեմք զարկածս նետից, և ոչ զքո պատուհասիցդ զչափ։ Վասն որոյ աղաչեմք, ողորմեա սրբեա զքո անուն[3] 'ի ժողովրդեան քում յարենէ՝ միշտ զարթուցանելով զմեզ նախախնամութեամբդ առ քո փառացդ սէր, և պատուհասիդ երկիւղ. իսկ առ Թշնամւոյն գաղտնի նետիցն՝ գիտութիւն և պատերազմին տալով զօրութիւն։ Եթէ զայսոսիկ ունիցիմք հայցուածով մերով յԱստուծոյ, սուրբ է անուն նորա յարենէ մեր 'ի պատուհասելն, յորժամ վայելողքս 'ի նոյն մեղանչեմք. որպէս և Քրիստոսին յիւրն յան-

1 Երկու օրին. Գիտէր։
2 Մի օրին. Գիտես։
3 Մի օրին. Սրբեալ քո անունդ։

ցուցեալ աշակերտին վերայ սրբեցաւ 'ի Յուդայի : Բայց և ունելով զսոյն հաւատարիմ խնդրողաց՝ դժուարաւ պատահէ մեղանչելն, որպէս և անձամբ զանձն 'ի հուր արկանել :

"Սուրբ եղիցի անուն քո,,, Հայր, 'ի մեր պարտեացն զգուշացուցանելովն և նախախնամելովն. և տես զյարակայութիւն¹ խորհրդոյս. զի եղիցի ասէ, այսինքն թէ ոչ այսօր կամ վաղիւն, այլ միշտ և հանապազ : Զայս և որդւոյ սովորութիւն է առ հայր ասել. քո խնամքդ հայրաբար լիցի 'ի վերայ իմ միշտ. յանուհետև թէ սխալեմ՝ արժանապէս դատապարտեա : Բրդ զայս ուսոյց տէրն իբրև զբանալիս ձգել աղօթիւքս 'ի վերայ արդարութեանն Աստուծոյ, և պարտական գնա ողորմութեան և խնամոցն դատել. թէպէտ և մեք անարժան նմին գտանիմք, զի նա զիւրն առանց խնայելոյ հանապազորդ սփռեսցէ զշնորհս :

"Եկեսցէ արքայութիւն քո,, : Տե՛ս ինձ զբարեկարգութիւնս. քանզի յետ 'ի ներքոյ խնամոցն առանց հրաժարելոյ պահելոյ, ևս 'ի բարձրագոյն մատչի խընդրուածս, այսինքն 'ի վերայ որոյ սրբեցեր զանուն քո ուսուցանելովն՝ տիրեա և դու հանապազորդ : Եւ նա տէր 'ի վերայ ամենայնի նախ² քան զմեր խնդրելս, ըստ այնմ. "Տէր թագաւոր մեծ 'ի վերայ ամենայն երկրի,, : Բայց աղերսանօք զնոյն խնդրելս՝ ոչ է վայրապար, այլ զինչ. Աստուած գիտէ զինքն տէր ամենայնի, բայց բազումք 'ի մարդկանէ տգիտանան զԱստուծոյ տիրելն կամ զինքեանս տեսանելն. վասն այնորիկ կամ բնաւ ոչ անուանեն զանուն նորա, կամ 'ի գիտելն՝ գործովք ուրանան զնոյն. սա ասէ, եկեսցէ հոգիդ իմաստութեան և հանճարոյ յանձն իմ, և ուսուսցէ զիս գիտել զահարկութիւն քում թագաւորութեանդ, և զսիրոյդ առ իս զառատութիւն : Զի եկեսցէ ասէ, այսինքն յիմ միտս, արքայութիւն քո, գիտել Հոգւովդ սրբով զտէրութիւն քո՝ որպէս պարտն է գիտութեամբ, այսինքն որպէս մարմնական աչաց հայեցուածոց առաջի՝ ունել հանապազ առաջի իմանալի մտացս հայեցողութեան նպատակ՝ զիմանալիդ

1 Մի օրին. Յարակայութիւն :　　2 Մի օրին. Յառաջ :

թագաւոր ։ Զայս թէ այսպէս ունիցիմք , որպէս և հայցեմքս , անհնար է կամակար մտօք մեզ գթելն ․ որպէս և ոչ առաջի թագաւորի և հանդիսական նորա հրապարակի խայտառակ մերկանալն ։ Բայց և զայս իմասցուք 'ի նոյն կարգս , զի վայելչապէս նախ զսուրբ լինել անուանն՝ խնդրեաց ․ քանզի որոգայթադիր բանսարկուն բազում անգամ մեզ և յաջակողմն տայ գթել , այսինքն զմեղսն՝ որպէս զկամս Աստուծոյ կերպարանէ ․ և այնպէս իբրև առ ճշմարտութիւն 'ի նոյն պատրեալ՝ զմարդիկ արկանէ ։ Իսկ մեք եթէ զԱստուած առաջի աչաց ունիմք՝ 'ի ներքին մարդս մեր բնակեալ , զօրութեամբ նորա կարողանամք ընտրող որոշմամբ առ մեքենայիցն գիտութիւն ․ վասն այսորիկ ասէ , “ Սուրբ եղիցի անուն քո ” ։ Եւ որպէս ասէ Տէր ցիս՝ սուրբ եղիցի՝ անուն իմ ․ պատասխանեմ ․ յորժամ գիտութին քում թագաւորութեանդ եկեալ բնակեսցէ յիս , և միշտ ահարկու արքայութիւնդ առաջի մտացս աչաց լիցի կերպացեալ ․ ըստ այնմ ․ “ Յառաջագոյն տեսանէի զտէր առաջի իմ յամենայն ժամ , զի մի սասանեցայց ” ։ Ուրեմն ապա զկերպարանս սուրբ լինելոյ անուանն Աստուծոյ , զոր յառաջագոյն խնդրեաց , ինքն ուսուցանէ նմին ըստ կարգի բանիւքս , և նախ զայս թէ եկեսցէ արքայութիւն քո , գիտութիւն քում տէրութեանդ յանձն իմ ։ Իսկ երկրորդ՝

“ Եղիցին , տէր , կամք քո որպէս յերկինս և յերկրի ” ։ Ո՛չ թէ ընդ ո՛ր սքանչացայց երկուց խորհրդոցս՝ զհայեցուած մտացս յինքեանս բաժանելով ․ այսինքն վայելչական կարգ բանիցս , և մեծանձնութիւն առաջիկայ խորհրդոյս ։ Զի յետ թագաւորելոյն և զկամսն խնդրէ , որպէս և 'ի մարդկան մէջ պահի այս սահման ․ քանզի նախ տիրէ ոք ումեք , և ապա զկամսն 'ի վերայ նորին 'ի գործ արկանէ ։ Եթէ քաղաք է՝ շինէ , եթէ ծառայ՝ կերակրէ , եթէ աշակերտ՝ ուսուցանէ ․ այսպէս և սա նախ ընդ արքունական տէրութեամբն Աստուծոյ արկ զանձն լինել , և ապա որպէս 'ի սեպհական տեառնէ զհոգարկելն զինքն տնօրէնութեամբ

1 Մի օրէն ․ Անուանն ։
2 Մի օրէն ․ Գուրփէու ։
3 Երեք օրէն ․ Լինի սուրբ ։

կամացն պահանջէ ։ Եւ զայս որքան․ որպէս յերկինս, ասէ, է կամք քո, եղիցի և յերկիր ։ Ո՛վ մարդ, և դու ելեր յերկինս, և անդր զանօրէնութիւն կամացն Աստուծոյ գիտացեր, զի այնպէս ունել զնոյն պահանջես ։ Զի՞նչ են կամք նորա յերկինս ։ Ո՞չ և զոր կամօքն կառավարէ, որպէս և առ նոսա անօրէնութիւն կամացն ։ Ես ոչ գիտեմ, ասէ, բայց որ էջն յերկնից՝ նա ուսոյց ինձ զոյն աղերսել ։ Եւ որպէս ուսոյց․ քանզի մատեան աշակերտքն առ տէրն, և ուսո մեզ, ասեն, քո աշակերտացս՝ աղօթել, որպէս և Յովհաննէս ուսոյց իւրոցն․ իսկ նա ուսոյց նոցա որպէս ինքն գիտէր աղօթել, և ոչ ըստ որում նոքա խնդրեցին ։ Զոր օրինակ եթէ ոմանք 'ի գուեհիկ արանց գոլով 'ի հեռաւոր աշխարհէ՝ անկիրթ Հռովմայեցւոցն բարբառոյ ազգի և սովորութեան, ոչ և ընաւ տեսեալ կամ տեղեկացեալ զարքունական պաղատանն բարեկարգութիւն, երթան 'ի դրունս թագաւորին ողորմութիւն աղերսել, և ապա հասեալ անդր տարակուսին յանձինս իւրեանց, ոչ գիտելով զորպէսն մտանել առաջի թագաւորին, կամ թէ զինչ իւրեանց վայելչական խնդիրքն 'ի նմանէ լինիցին․ և մինչ նոքա յայս տարակոյս կան վարանեալ, պատահէ նոցին որդի թագաւորին՝ որպէս զմի 'ի հասարակաց զինուորաց, զոր տեսեալ՝ երագեալ յընթացս առ նա հասանեն ասելով․ Ո՛վ եղբայր, ուսո մեզ, թէ ո՞րպ մտցուք առաջի արքային ։ Իսկ նորա բարեմիտ գոլով՝ ոչ անգոսնէ կամ այպանէ զտմարդութիւնն, այլ սիրով ողորմեալ նոցա՝ պատասխանէ․ Ես ուսուցանեմ զձեզ․ յորժամ մտանէք առաջի արքային, երկիր պագէք վաղվաղակի, և ասացէք նմա[1]․ տուր մեզ զպատիւ սենեկապետացն՝ որք առաջին են 'ի պաղատ քո․ և նոքա ոչ զսենեկապետացն անուն գիտեն և ոչ զզօրութիւն նորա, ոչ զպաղատն և ոչ զդասակարգութիւն նորին․ այլ մտեալ առաջի թագաւորին՝ վաղվաղակի զոր ուսանն բան՝ աղաղակեն ։ Իսկ դասակարգութեն ամենայն արքունական ապարանիցն նայեցեալ 'ի բարբառ նոցա զի օտար է, և 'ի ձեն զի շինական է, 'ի դէմսն զի գուեհիկ է, 'ի կերպարանս

1 Ամէ․ Ցն․ ։

հանդերձիցն զի անպաճոյճ է, սքանչանան յինքեանս։ Ուստի գիտեն սոքա կամ յումմէ՞ ուսան զանուն սինկղիտոսութեան և զպատիւ, այսպէս օտար գոլով յարքունական ապարանիցս։ Այսպէս և տէր մեր՝ անհաս 'ի հրեշտակաց և 'ի մարդկանէ արար զմարմնաւորութեանն խորհուրդ, որպէս ասէ Պօղոս. առ որ մատեան աշակերտքն, ոչ իբրև յԱստուծոյ՝ այլ որպէս 'ի Յովհաննէ ուսանել զպահման աղօթից։ Իսկ նա գթացեալ 'ի նոսա ամենագութն սիրով, ոչ որպէս տանէին՝ ուսոյց նոցին, այլ զերկնային անճառ և անհաս խոր խաղաղութիւնն ուսոյց նոցա աղօթիւքն 'ի Հօրէն հայցել. « Եղիցին կամք քո, որպէս յերկինս և յերկրի »։ Արդ զայս խնդրելով մեր յԱստուծոյ, արդարև ոչ գիտեմք տիրապէս զզօրութիւն հայցուածոյս, սակայն զերկնայինսն զարհուրեցուցանեմք մեծաբանութեամբ[1] աղօթիցս. զի զոր ոչ գիտէաք զպատիւ նոցա՝ տեղեկացեալ, մեզ Քրիստոսիւ խնդրեմք ունել սեպհական. քանզի կամն ասելով՝ զամենայն իղձումն շնորհացն Աստուծոյ ընդ բանիւս պարունակեաց ունել հաւասար նոցա, այսինքն զի կամացն այլայլութիւն արգելու 'ի մէնջ զփառս նոցա։ Քանզի առ նոսա ունի զկամն իւրև առ կամարարս քաղցր և առատ, և առ մեզ իբրև առ յանցաւորս. ըստ այնմ. « Որդեակ, դու հանապազ ընդ իս ես, և ամենայն որ ինչ իմ է՝ քո է »։ Արդ եղեալ այսպէս կամացն և 'ի վերայ երկրիս, եղև և մարդկան նորա ամենայն ինչ՝ որպէս և հրեշտակացն։ Ո՜ ինչ տացուք տրիտուր տեառն, ո՛վ եղբարք, զայսպիսի փրկական բաժակ աղօթիցս մեզ արքունացանողի. զոր տամք հանապազ առաջի Աստուծոյ Հօր, առաջի բազմութեան ժողովոց հրեշտակացն 'ի զուարթս վերինն Երուսաղեմի. զինչ այլ, բայց եթէ զմածումն երեսաց 'ի վերայ երկրի գոհութեամբ։ Արդարև սուտ տեսանեմ զամենայն կարծիս մնոտի զբաղանացս մարդկան, յորժամ առ որ խօսիմ նայեցեալ մտացս աչօք՝ հաւատամ զԱստուած ունել 'ի վերայ իմ քաղցր որպէս 'ի հրեշտակաց, և զիս որպէս զնոսին նմին խօսակից, և աղօթքս ամենաբարի կամացն արժանի։ Այ ինձ,

1 Երկու օրին. Մեծաբանութեամբ։

և ես թողեալ զայս՝ յանկայուն կենցաղս զբաղնում. որ և թէ կայուն էր, պարտ էր ըստ բնական սովորութեանն ագահել, և զփոքրս ընդ մեծն փոխանակել. այլ յայտ է թէ խաբիմ, ոչ ունելով զուշ իմաստիցս առ իս ամփոփեալ:

“ Զհաց մեր հանապազորդ տուր մեզ այսօր ”: Ով մարդ, եթէ որպէս 'ի վերայ հրեշտակացն խնդրեցեր զկամսն քեզ լինել յԱստուծոյ, անուն հացի վաղվաղակի ընդէ՞ր սմին յարմարես, որ ոչ 'ի մէջ նոցա իմանի. քանզի նոքա իմանալի են բնութիւն[1], և գիտութեան կերակրոյն միշտ քաղցեալ փափագեն, առ որս չիք տեսանել[2] սերմանել կամ հնձել, խահարարութիւն կամ մարմնական ճաշակումն, այլ ուտեն զսէրն Աստուծոյ և յագենան. ըմպեն զհեղումն բըխմանն Հոգւոյն և զմխլեալ զուարճանան: Ապա, ասէ, զիմ կարգ աղօթիցս ամբողջ պահեմ. քանզի հաց ոչ զդիւրածախելին խնդրեմ, այլ զհանապազորդն. ըզկամսն վասն այնորիկ խնդրեցի ունել որպէս 'ի վերայ երկնաւորացն, զի և զերկնաւորացն հաց 'ի նմանէ առից յայս օր կենցաղոյս: Ոչ լուար զհաց հրեշտակաց կերեալ մարդկան. զայն կերակուրն ունել աղօթեմ, որ հանապազորդ 'ի յուտելն ոչ ծախի, և յըմպելն ոչ նուազի. զկերողն յագեցուցանէ, և ինքն յինքնութե ամբողջ մնայ: “ Զհաց մեր զհանապազորդն տուր մեզ այսօր ”: Այլ ընդէ՞ր ասէ մեր. քանզի էր երբեմն և մեր՝ հրեշտակական իմաստիցն կերակուր, յայնժամ մինչ 'ի դրախտին փափկութեան զնոյն կթէաք. խանդացաւ չարն, և զրկեաց 'ի տէրութենէ կամացն Աստուծոյ և 'ի հացէն, զբանջար վայրենի պատրաստեալ մեզ կերակուր. այս է մարմնոյս զգայարանացն 'ի յատար աշխարհիս հեշտութիւն. իսկ զհացն Աստուծոյ թերևս կարացին ոմանք քրտամբք երեսաց և բխմամբ արտասուաց իւրեանց ճաշակել: Արդ այժմ Հայր եղեալ մեր Աստուած դարձեալ և թագաւոր քաղցր կամօքն, ունել զմեր առաջին հացն աղերսեմք 'ի նմանէ, մինչդեռ յայս օր կենցաղոյս պանդխտիմք: Այլ հացն զի՞նչ է, բայց եթէ գիտութիւն և սէր նորին՝ որով

1 Մի օրին. Բնութեամբ:

2 Մի օրին. Տեսեալ:

փափագ հոգւոյս կերակրի . այն սեղանն՝ ուր տէրն զիւր աշակերտսն հրաւիրեաց . «Ուտիջիք , ասէ , 'ի սեղան իմ յարքայութեան իմում» ։ Այլ որոց 'ի մարմնոյս պարարումն է կամքն մոլորեալ՝ առանց փափագելոյ թուի այս կերակուր , և անհաւատալի 'ի հանապազ ուտելն ոչ լինելն ծախելի . զորս զարթուցանել օրինակաւ հարկաւորիմք ։

Ո՞չ հաւաստաս[1] անծախ լինել կերակուր . զիրք սուրբք ո՞չ հանապազ զմեզ կերակրեալ պէսպէս գիտութեամբ , 'ի նոյնութեան մնան ։ Պարծեալ և ո՞չ թուի քեզ հեշտ լինել զգիտութիւնն . յանկիանձոյլ ապարանիցն , 'ի յանկէթել կերպասուցն , յականակապ բազմականացն զի՞նչ օգտի մարմինս , ընդէ՞ր հեշտանայ 'ի տեսութիւն՝ նոցին քան 'ի կերակուր առնուլ . երգք և եղանակք ընդէ՞ր զուարճացուցանեն զսա առաւել քան զըմպելի . տեսութիւն և յիշատակ եղբարց և որդւոց ո՞չ քաղցրանայ կարօտելոցն որպէս զգինի . և զի ես 'ի թանձրագոյնն մտեցից , զպակշոտեալն տռփմամբ զի՞նչ օգտեցուցանէ համբոյր ողջունին ։ Այլ պէս չեն հաց կամ գինի , որովք մարմնոյս ընու թերութիւն . այլ զհոգեկան իղձ քաղցրոյն լցուցեալ զմայլեցուցանեն զմեզ գիտութեամբն ։ Այսպէս տկար մտաց մերոց առաջի թանձրացուսցուք զյիշատակ սիրոյն Աստուծոյ , և ծանիցուք զի անտեղեակ եմք նմին , վասն այնորիկ և ոչ ըղձանամք . ապա թէ տեղեկանայաք , որքան պայծառ է փառքն Աստուծոյ քան զոսկւոյն՝ այնքան ըղձականութիւն նորին առաւել է քան զնիւթոյ . վասն այնորիկ 'ի նմանէ մաղթէ ունել զնոյն՝ ասելով . «Զհաց մեր , զանծախն և զհանապազորդն տուր մեզ» ։ Եւ ընդէ՞ր ասէ այսօր . այսօր զբովանդակ մարմնոյս զկեանս դնէ , յոր պանդխտելով բազում ունիմք բնութեամբ և արտաքուստ ներհակ հոգևոր կերակրոյն . թէ յայսմանէ արտաքս գնամք՝ անաշխատ 'ի նոյն վայելեմք ։ Իսկ ապա մինչդեռ 'ի պանդխտութեան եմք կեանս , քրտամբք արտասուաց[2] և աշխատութեամբ աղօթից հարկաւոր է զնոյն ճաշակել , որպէս և հրա-

1 Մի օրին . յաւելու Ո՞չ կարես հաւատալ ։ 2 Այլք , Երեսաց ։

ման ընկալաք. բազումք որք առին զսոյն կերակուր, զհամեղութիւնն աղաղակեն. որպէս այն որ ասէ. «Քաղցր են 'ի քիմս իմ բանք քո՝ քան զմեղր բերանոյ իմոյ». և դարձեալ. «Ցանկալի է քան զոսկի և քան զականս պատուականս բազումս, և քաղցր է քան զխորիսխ մեղու»: Եւ Եսայի ասէ. «Դիմեցէք և յագեսջիք, և կշտապինդ վայելեցէք 'ի ստեանց մխիթարութեան սորա»: Զայնէ և Իմաստութիւնն. «Եկայք կերայք 'ի հացէ աստի իմմէ, և արբէք զգինիս զոր խառնեցի. ուստի զօրանայք ատել զանզգամութիւն և կեալ, խնդրել զիմաստութիւն և ապրել»:

«Թող մեզ զպարտս մեր, որպէս և մեք թողումք մերոց պարտապանաց»: Տիրապէս խնդրեաց Աստուծոյ զամենայն ինչ նախակարգեալ համառօտ բանիւք. այսուհետև յառաջ գայ զանձին կրից խոստովանութիւն սրբել նորին առաջի: Բայց դու տես ինձ զամենաբարի ընդարձակութիւն կանոնաց աղօթիցս ուսուցանողի. զի ոչ նախ զմեղսն թողուլ ուսոյց խնդրել, և ապա ընդ Աստուած խօսել, որպէս և մարդկան է սովորութիւն. քանզի նախ ներումն խնդրեմք 'ի թագաւորէ, և ապա զհայցուածս ընդ նմա բարբառիմք: Այլ սա ոչ այսպէս, այլ զհակառակն սորին. նախ ըզպարգևսն խնդրեաց, և ապա զներումնն. ուսուցանելով բաւականապէս, զի թէպէտ և 'ի խորս չարեաց հասանեմք, երկրորդ են յանցանք մեր խաղաղութեան և գթութեանն զոր ունի Աստուած 'ի վերայ մարդկային բնութեան. վասն որոյ նախ զկարևորն և ըզմեծն ունել աղօթեաց, և ապա յետ զայն ունելոյ՝ դիւրաւ գտցուք 'ի բարերար կամացն մարդկապէս գըթելոյն զներումն:

«Թող մեզ, ասէ, զպարտիս մեր». արդարև պարտք. քանզի յայսքան շնորհս նորա վայելեալ մարմնով և հոգւով, զիա՞րդ ոչ գտանիմք պարտական հրամանին տեառն կալ հպատակ. ուստի և 'ի յանցանելն զնովաւ, վայելչապէս և ուղիղ խոստովանութեամբ պարտական զանձինս դատեալ՝ զներումն խնդրեմք ասելով. Թոյլ արա պարտուցն զոր ընդ սխալեն ամենատես գիտութեամբդ համբարեալ ամփոփես և թողուս: Ո՞ր վասն. զի մարմնաւոր եմք, զի դիւրապատիր կա-

մօքս խաբիմք, զի 'ի խաւար կենցաղոյս շրջիմք, զի օրէնս ունիմք բնականս հակառակ օրինացս մտաց, և գերող զիս ակամայ 'ի յօրէնս մեղացն. վասն այսորիկ և ներելի է քեզ վայելչական, որպէս բարերար տկարի, որպէս ողորմած ողորմելոյ, որպէս գթած կարօտի, որպէս և ես ներեմ իմումս պարտաւորի: Բայց թերևս ասիցէ ոք ընդդէմ ասացելոցս. ես հողեղէն մարդ զիա՞րդ կարացից նմանել Աստուծոյ, և ոչ միայն նմանել, այլ և զանձն ապացոյց նմին ընծայել, յասելն՝ որպէս ես այլոց, և դու ինձ արասցես. սակայն պարտ է գիտել թէ վարդապետն մեր և օրէնսուսոյցն Քրիստոս՝ ոչ արտաքոյ բնութեանս զոր ստեղծ, կամ սորին հակառակ խրատու զմեզ վարժեալ կրթէր. ապա թէ և օրէնքս անտրժելի բնութեանս, ամենայն իրօք հարկաւոր է և կատարելն զնոյն. և արդ ո՞ է 'ի մարդկանէ որ ոչ զսէրն կամի, ո՞ է որ ընդ թշնամութիւնն ոչ դըժուարի.՛ են այլ տեսակք մեղաց, որ յանցանելոյն՝ մարմնոյս հեշտութիւն ընձեռեն, որպէս զպոռնկութիւնն և որկրամոլութիւն. բայց այս ախտ թշնամութեան և ոչ բնաւ. զի 'ի տիրելն և 'ի վերայ մեր՝ 'ի հոգս և 'ի ծուփս արկանէ, յերկիւղ և 'ի տարակուսանս: Արդ ընդէ՞ր ոչ զիջանելովն[1] յանդուգանեմք զանձինս, և շահիմք զեղբարսն. քանզի յամբարտաւանութենէն ըմբռնիմք, ոչ զիջանելով առ յանցաւորսն սիրով. իսկ ամբարտաւանութիւնն հակառակ զինի Աստուծոյ, և ոչ թէ 'ի նմանէ զներումն խնդրէ: Աստի տիրեաց ամենայն անկարգութիւն 'ի յաշխարհըս, զորս ոչ ներէ բանս թուել, 'ի զպարտսն ունելոյ և ոչ թողլոյ. սա արար զանձաւս բնակութիւն, զքաղաքս ամրութիւն, զգէնս 'ի սպանութիւն: Վասն այսորիկ ասէ. դու թող, քանզի ես ոչ կարեմ թողուլ ըզթշնամութիւնդ, զոր դու անձնիշխան կամօք ըմբռնեալ պահես: Արդ լո՛յծ զամբարտաւանութիւնն որ հակառակ է Աստուծոյ, և զթշնամութիւն որ ընդդէմ է բնութեանդ, և թող ընկերին զպարտսն. արա դու զքո կարելին, որպէս և յԱստուծոյ պահանջես առնել զիւրն կարելի. թո՛ղ դու եղբօրն, և թողցէ

1 Երկու գրին. Զ.իջուցանելովն:

քեզ Հայրն քո երկնաւոր ։ Կամայդ է աշխատութիւնդ 'ի թողուլն, և ոչ եթէ մարմնոյդ. իսկ եթէ զայս ոչ կամիս, զիա՞րդ զԱստուած յայն ինչ բռնադատես, զոր դու ոչ թէ տկարանաս, այլ ոչ կամիս կատարել ։ Արդ ծանիցուք զերկոսեանս 'ի մեր օգուտն լինել. մեր թողուլն՝ խաղաղութեան մեզ կենաց լինի տնօրէն. և Աստուծոյն զոր վասն մեր թողլոյն թողու, անվախճան կենաց կարապետ. եթէ 'ի սոցանէ վրիպիմք սակս մնոտի ոխակալութեանն, անձամբ զանձինս դրժեմք ։

„Եւ մի տանիր զմեզ 'ի փորձութիւն, այլ փրկեա զմեզ 'ի չարէն„ ։ Փորձութիւն աստ զներգործութիւն չարին իմանամք՝ որ հանապազ ընդ մեզ մարտնչի ։ Բայց ընդէ՞ր ոչ ասաց՝ մարտ կամ պատերազմ, այլ փորձութիւն. յայտ արարեալ թէ ոչ ունի իշխանութիւն անձամբ անձին ընդ մեզ մարտնչել. այլ զի՞նչ. 'ի մերոց կամացս և 'ի խորհրդոյս առնու զնիւթ պատերազմին. ըստ այնմ. „Որում պատրաստէք զանձինս ձեր 'ի հնազանդութիւն, ծառայ էք որում հնազանդիքն, եթէ մեղաց, և եթէ 'ի հնազանդութիւն արդարութեան„ ։ Եւ Յակովբոս գրէ. „Իւրաքանչիւր ոք 'ի ձէնջ փորձի յիւրոյն ցանկութեանցն ձգեալ և պատրեալ„. ապա յայտ է թէ 'ի մէնջ առնու զնիւթ փորձելոյն ։ Որպէս. քանզի 'ի ցանկութիւն կերակրոյն խորհրդակցի, և սերմանէ զորկրամոլութիւն. 'ի ցանկութիւն փառացն Աստուծոյ կցորդի, և սերմանէ ըղ-սնափառութիւն. և այսպէս յամենայն կիրս մեք զսկիզբն խորհրդոյն բարւոք դնեմք, իսկ նա ընդ նմին զչարն նիւթէ. և մինչև է առեալ 'ի մէնջ զնիւթն, իւր մեքենայքն անգործ մնայ. որպէս յայտ է յաւետարանէն, զի յորժամ զկերպարանս քաղցոյն եցոյց տէրն, ապա մատեաւ առ նա փորձիչն ։

Բայց ընդէ՞ր ասի փորձութիւն. քանզի ցուցեալ մեր զհարկաւորն կարօտութիւն, գայ նա, և ըստ այնմ մասին շարժեալ՝ փորձէ զմեզ թէ եմք հաստատուն 'ի սէրն Աստուծոյ թէ ոչ. և խառնէ ընդ բնաւորական կրիցն զաւելորդացն ցանկութիւն ։ Որ օրինակ վէմ ինչ ունելով առաջի, որչափ հաստատուն է՝ անյոյս

1 Մի օրէն. Հաւրծակ ։ Նոյնու օրէն. Հաւրծնեաւ ։

եմք 'ի շարժմանէն. իսկ եթէ դրդուի յայսկոյս յայնկոյս շրջեալ, նայիմք տեսանել և փորձել թէ կարեմք զշարժեալն կործանել: Արդ շարժումն է մեզ ցանկութիւն կերակրոց, ցանկութի̃ հարկաւոր պիտոյից, ցանկութիւն փառացն Այ. իսկ նա յորժամ տեսանէ 'ի մի ոք 'ի սոցանէ շարժեալ, գայ փորձէ, և ընդ բարի խորհուրդն զիւրն խառնէ մեքենայս. թէ կարեմք ընտրութի̃ առնել օտարին և բնականին, շնորհօքն Այ փրկիմք. ապա թէ ոչ կարեմք, և փորձութեան խորհրդոցն իբր բարւոյ հաւանիմք, 'ի գործոյն կործանէ կատարումն. կերակրոցն ցանկութեամբ 'ի պոռնկութիւն, հարկաւոր պիտոյիւքն յարծաթսիրութիւն, ցանկութեամբ փառացն Աստուծոյ 'ի մնափառութիւն: Եւ մեք ըստ մերոց ցանկութեանցն խաբեալ պատրեցաք, որպէս գրեալ Յակովբոս, ձգեալ զանձինս 'ի խորխորատ մեղացն, և փորձելոցն անփորձ գտաք 'ի մարտս թշնամւոյն: Ուստի զգուշացեալ հարկաւորապէս՝ զայս ուսոյց տէր մեզ աղօթել. “Մի՛ տանիր զմեզ 'ի փորձութիւն„: Ոչ իբր թէ Աստուած տանի, քանզի “Աստուած անփորձ է, ասէ, 'ի չարեաց„. այլ թէ յոր մեք գնամք խորդաւանութեամբ դաւաճանողին ընդ չարն իբրև ընդ բարի, դու որ տեսանես զկերպարանացն բնութիւն՝ որ չար է, և մեզ թուի բարի՝ և ոչ է տիրապէս, մի թողուր զմեզ ակամայ կամօք զանձինս 'ի նոյն կործանել: Որ օրինակ թէ ոք երկնչի յոմանց, թէ ընդ բարւոք կերակուր խառնեալ զմահաբեր դեղ արբուցանեն նմին 'ի սպանումն, ասէ ցոք 'ի բժշկաց. դու որ ճանաչես՝ միշտ ընդ իս լինիցիս, զի մի վասն հարկաւոր պիտոյիցն պատրեալ սպանցիմ. այսպէս և սա ասէ. 'ի հարկաւորսն զոր կարօտութիւն մարմնոյս պահանջէ, դու ամենահայեաց՝ մի թողուր զիս փորձել, և արտաքոյ նորին սասանեցուցանել: Ընդ այս կիրս անցանելով Յովբ գրէր. “Փորձութիւն են վարք մարդկան 'ի վերայ երկրի„: Եւ տէրն ասէ. “Հարկ է գալ գայթագղութեան„: Որ վասն. զի զգայթագղեցուցիչն ընթացակից ունիմք յամենայն կեանս. բայց ոչ իբր զամենախնամ աջն Աստուծոյ, յորժամ խնդրեմք 'ի նմանէ ոչ տալ զմեզ 'ի փորձութիւն. ըստ այնմ. “Անկցին 'ի կողմանէ քումմէ հազարք„. բայց մի երկնչիր, ոչ

մերձեցի՛ն առ քեզ, քանզի " Ավիւղք են ընդ յաջմէ քումմէ "։

" Այլ փրկեա զմեզ ՚ի չարէն "։ Զփրկութիւնս ասելով ՚ի չարէն, ոչ եթէ տակ ՚ի փորձութենէ, այլ համանգամայն առեալ՝ յամենայն մեքենայից նորա խնդրէ զերծանել։ Վասնզի պատահէ բազում անգամ, զի ոչ ունելով նիւթ զկամս մեր՝ յարուցանէ ՚ի վերայ մարդկան զարկածս վտանգից. ըստ որում առ Յոբն է տեսանել, և առ վկայսն զորս ՚ի ձեռս թագաւորացն մատնէր։ Նոյն և առ Երանելին հարան. զի Երբ ունէր զկամսն նիւթ Սատանի՝ ՚ի չարաչարսն զնա հարկանէր։ Ներգործէ և այժմ զչարութիւնն իւր առ բազումս այսպէս, յորս մատնիմք ըստ ներողութեանն Աստուծոյ. կամ զի առաքինութիւնք սորանց նորին յաղթանակ լիցին՝ անձանց ՚ի փառս և թշնամւոյն յամօթ, և կամ զի փորձանօք նորա զղջացեալք ընդ պատուհասելն Աստուծոյ, ՚ի չար սովորութենէ ՚ի բարի փոխեսցուք։ Արդ յայտացանէ[1], ասէ, փրկեա զմեզ. Ե՞ր վասն. զի եթէ մեղաւորք եմք, դու պատուհասեալ ուղղեա, և մի ՚ի ձեռս թշնամւոյն. և եթէ արդարք, որպէս կամիս ընկալ, և մի փորձեր. մի գուցէ ըստ տկար բնութեանս անփորձ գտեալ՝ կորիցուք. զի ոչ ամենայն ինչ որ ոսկի՝ անփորձ ՚ի բով մտեալ ելանէ, այլ բազում անգամ փորձելովն, և յառաջին գունոյն[2] դժգունի։ Զայս գիտելով առաքեալ՝ գրէր առ Կորնթացիսն. " Հաւատարիմ է Աստուած որ ոչ տայ զձեզ ՚ի փորձութիւն առնուլ քան զկար ձեր, այլ արասցէ ընդ փորձութեանն և զելսն, զի համբերել մարթասջիք "։ Արդ զայս հաւատարմութիւնս պահանջէ յԱստուծոյ ունել, ՚ի փորձողէն զփրկութիւն[3] մաղթելով. " Փրկեա զմեզ ասէ ՚ի չարէն ". յայտ արարեալ, զի թէպէտ և դու զօգուտն մեր տնօրինես փորձանօքն, և զպսակն բազմացուցանես ՚ի մարտին յաղթութեամբն, այլ իմ տկար և դիւրապարտիր մարմնոյ վիճակեալ՝ ոչ անձամբ անձին զնոյն պահանջեմ, այլ միշտ զփրկութիւնն ունել աղօթեմ։ Արդարև էառ

1 Մի օրին. Յայտացանէայ։
2 Երկու օրին. Դեղոյն։
3 Մի օրին. Զփրկութիւն։

զփորձ տկար մարդկութեանս¹ ամենայնիւ տէր մեր ըստ նմանութեան մեր առանց մեղաց. եւ ճշմարտապէս չարչարակից, զփորձ առեալ փորձանաւորացս. և զի այսմ հաւատամք տիրապէս 'ի նախակարգեալ աղօթիցս վշտակցութենէ, վասն այսորիկ և զօգնականութիւնն առեալ 'ի ձեռս հաւատոցս, միշտ ճաշակ տկարութեան հոգւոցս շնորհեմք՝ որպէս գրեաց առաքեալ. "Հաւատարիմ է Աստուած ոչ տալ զձեզ 'ի փորձութիւն „: Այսինքն աւատալի է այս թէ չտայ. ունոհ. յիւրոցն կրից չարչարանաց. զի թէ լոյսն 'ի խաւարէն հալածեցաւ, խաւարն զինչ կրեսցէ. իւր ոչ եհաս, զի լոյս էր, այլ զմեզ ծանեաւ, զի հասանէ. քանզի դիւրապայթ եմք: Նա ոչ մոլորեցաւ, զի Աստուած էր, այլ զմերն իմացաւ մոլորութիւն, զի² մարդիկ եմք. եղբարցս նմանեաց, զի ողորմած լինիցի. և հաւատարիմ է յողորմութիւնն, զի չարչարակից է. փորձեաց, զի փորձանակից³ լինիցի, և կարողապէս օգնեաց, զի զփրկեսն մեզ ուսոյց աղօթել:

Փրկութիւն դու ես Քրիստոս, և առ ո՞ այլ յենուցումք. փորձանակից դու ես, և առ ո՞ այլ ապաւինեսցուք. ոչ տալն քո է, առ ո՞ այլ ապաստանեսցուք. ողորմած դու ես, և զո՞ւմ այլ ուրեք նմին կարօտեալքս բուռն հարցուք: Նայեաց տէր 'ի փորձեալքս և կործանեալքս, 'ի մատնեալքս և չարչարեալքս, 'ի խոցեալքս և գիշատեալքս, 'ի յարբեալքս և յիմարեալքս: Փրկիչ, որ զփրկութիւն ուսուցեր խնդրել, քոյովս զքեզ թախանձեմք, փրկեա զմեզ յորսողէն. որ ես օրհնեալ յաւիտեանս, ամէն:

## ԸՆԴԷՐ ԶԱՒԱՐՏՈՒՄՆ ՏԷՐՈՒՆԱԿԱՆ ԱՂՕԹԻՑՍ ՔԱՀԱՆԱՅՆ ԱՍԷ, ԵՒ ՈՉ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ ՈՐՔ ԱՂՕԹԵՑԻՆ

Ի ՎԱԽՃԱՆ ածեալ զաղօթս տէրունականս համագումար եկեղեցւոյն՝ լռեալ դադարէն, զաւարտումն փառաւորութեանն 'ի քահանայն ապաստան արարեալ: Ը՞ր վասն. որպէս զի նա՝ որ 'ի պաշտօն ապաստաւորու-

1 Մի օրին. Տէրունականս:
2 Երկու օրին. Ոչ:
3 Մի օրին. Փորձակից:
4 Երկու օրին. Զի նորա:

թեամն կայ՝ փոխանակ ամենեցուն գոհասցի, իբրեւ հայր զառ որդիս երախտեացն շնորհակալութիւն՝ ինքեան փառաւորութեամբն հատուցանել. զի նախ[1]՝ ինքն խնդրեաց յԱստուծոյ յայս՝ զտոցա բերանս բանալ եւ աղօթել: Որդ յորժամ ետ[2], եւ սոքա միաձայն բարբառով վայելեցին 'ի պարգեւս, ինքն դարձեալ գոհանայ յաղագս զհայցուած աղօթիցն առ ժողովուրդն կատարելոյ, եւ ասէ. "Տէր տերանց, Աստուած աստուածոց, Թագաւոր յաւիտենից, Հայր տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի": Ո՜վ աստուածընկալ եւ շնորհազարդ հոգւոյ աղօթողս[3] բանից, թէ որքան զլուսաւոր պայծառութիւնս 'ի քննութիւնս փայլէ: Ո՜վ տէր իմ քահանայ, եւ ո՞չ նախ զհայր անունն խոստովանեցար առեալ յԱստուծոյ, ո՞չ եւ ժողովրդեանս զնոյն եւ համարձակ ձայնիւ ետուր անուանել. արդ զիա՞րդ այժմ ըզկարգ բանիցդ փոխես, եւ զհայրն ոչ միայն տէր, այլ եւ տերանց տէր վերաձայնես. եւ ոչ սոսկ Աստուած, այլ եւ աստուածոց, Հայր ոչ մեր այլ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի: Աքանչացաւ ասէ, յիս գիտութիւնս, որդեակ, զօրացաւ, եւ ոչ կարեմ հանդարտել. զիա՞րդ յայսքան պատիւս վերացաք հող գոլով, ո՞րպէս բարիոք եւ անճառ շնորհիս վիճակեցաք՝ երկրաւորք եղեալ. ուստի եւ առատացեալ զեղմամբ պարգեւացս՝ զպարտաթիւն խոստովանիմ, ստիպեալ 'ի յըղձից մթերեալ սրտի իմոյ սիրոյ: Ո՞վ մեք, ո՞վ բնութիւն մեր, զի դու մեր հայր. ո՞ր գործոց փոխարէն զայս շնորհ ընկալաք, զի տէրդ տէրութեանդ հրեշտակաց, եւ Աստուածդ աստուածոցդ երկնայնոց՝ մեզ հայր, եւ ոչ տէր կամ Աստուած միայն. յաղագս որոյ եւ զճշմարիտն նորա բերեալ անուանս յառաջ, մեծացուցանեմ զառ մեզ տուրս շնորհի. դաւանեմ զնա Հայր տեառն մերոյ տիրապէս, թէպէտ եւ մեզ շնորհօք: Այսպիսի եւ զօրինակն ամենայն հեզութեան զԴաւիթ ուսանեմք երբեմն արարեալ. քանզի յածելն զտապանակն յԵրուսաղէմ, շուրջ հայեցեալ 'ի բազմութիւն ժողովրդեանն, 'ի խընջոյսն եւ 'ի պարսն եւ յիւր փառաւորութիւնն 'ի հան-

1 Մի օրին. Նա:
2 Մի օրին. Եւ:
3 Մի օրին. Աղօթիցս:

դիսխին, աղաղակեաց առ Աստուած. «Ո՞վ ես, տէր, կամ ո՞վ տուն հօր իմոյ, զի մեծայուցեր զիս այսքան»։ Այս օրինակ գոհութեան առնէ և քահանայս, 'ի լսելն զհամաձայնաբար ժողովրդեանն հայր անուանելն զԱստուած, հրձուեալ' խոնարհութեամբ. դու ասէ' զոր հայր գտաք արժանի կոչել, տէր ես տերանց, Աստուած աստուծոց, հայր ճշմարիտ տեառն Յիսուսի Քրիստոսի, և զմեզ վասն նորա տեսանեմք 'ի յայս շնորհ բարձրացեալ։

«Մի տանիր զմեզ 'ի փորձութիւն, և մի 'ի դատապարտութիւն, այլ փրկեա 'ի չարէն, և ապրեցո 'ի փորձութենէն»։ Մի ասէ վասն փորձութեան մեղաց դատապարտեր զմեզ բարերար, և յայսմ 'ի մեծ շնորհիս պայմանէ' յորդեգրութեանս անուանէ զրկեր։

«Զի քո է արքայութիւն և զօրութիւն, և փառք յաւիտեանս»։ Տէր, ասէ, դու ես 'ի վերայ մեր. 'ի ներքոյ քումդ թագաւորութեան եմք գրաւեալ. մի տար իշխանութիւն չարին զծառայս քում թագաւորութեանդ վտանգել։ Նայց տես, թէ որպէս յարմարի ընդ բանք աղօթիցն և նորին կատարումնս. զի յետ ասելոյն մի տար 'ի փորձութիւն, այլ փրկեա 'ի չարէն, յաւելու. «Զի քո է արքայութիւն և զօրութիւն». այսինքն թէ փորձէ և վտանգէ զոք այն' որ իշխանութիւն ունիցի 'ի վերայ նորին, և չարչարէ այն' որ զօրութիւն ունի չարչարելոյ. մեք քո եմք ստացուածք և արարածք. 'ի ներքոյ քում տէրութեանդ, և ոչ չարին. զօրութիւն ամենայն քո է, և ոչ չարին[1]. Թէ փորձելոյ գտանիմք արժանի, մատնեսցուք 'ի ձեռս տեառն, և մի 'ի ձեռս թշնամւոյն. զի թէ Դաւիթ զմարդկան փորձանսն թողեալ' հրաժարեաց 'ի նմանէ, և աղաղակեաց, «Մատնեցայց 'ի ձեռս տեառն, և մի 'ի ձեռս մարդկան», մեզ քանիօն առաւել հրաժարելի է մախացող թշնամւոյն անզեղջ փորձանայն մարտրն։ Քո է զօրութիւն և տէրութիւն 'ի վերայ մեր. որպէս խնամես միշտ, յորժամ կամիս' դու պատուհասեա տէրդ զծառայս. և քեզ փառք այժմ և առյապա յաւիտեանս յաւիտենից, ամէն։

1 Մի օրին. Հրճուէլ։ 2 Այլք. Նորա։

## ՈՐՊԷՍ ԷԱՌ ԱՌ ՀԱՅՐ ԱՂՕԹԵԼՍ ԶՎԱԽՃԱՆ

**ԽՈՐՀՐԴԱԿՑՈՒԹԻՒՆ** որ առ Հայր աղօթից քահանայիս՝ աստանօր աւարտեցաւ, և զլրումն էառ առնա հրեշտակ մտանելն սորա 'ի ժողովրդեանս. իսկ եթէ որպէս՝ յարդեանց անտի ծանիցուք: Զպատարագն զոր ետուն 'ի ձեռս նորա դաշամբք հաւատոյն՝ և նշանակացն, հաստատութեամբ մտեալ առաջի Աստուծոյ նուիրեաց, զՈրդին փոխանակ ամենեցուն ընծայ 'ի ձեռս Հօրն աւանդեաց, զՀոգին փոխարէն նմին՝ 'ի կենդանութիւն նշանակացն ստորինջաց, նովաւ ապա զսէրն Աստուծոյ և զխաղաղութիւնն առ մարդիկ ուղղեաց, ընթերակայ եկեղեցւոյ զպէսպէս շնորհս պարգևաց ունել նովաւ աղօթեաց: Յետ այնորիկ և զորբոյ հասակին Քրիստոսի՝ այսինքն զյիշատակ անուանց սրբոցն առեալ 'ի նոցանէ, ընդ գլխոյն Քրիստոսի զմարմինն յօդեաց. և վերստին դարձեալ մարմնոյն կատարեալ Քրիստոսի զպէսպէս հայցուածս աղօթիցն երկրորդեաց. յետ այնորիկ և Հայր ունել եկեղեցւոյն զԱստուած առ ձեռն պատրաստ թախանձեաց: Արդ յորժամ այս տուաւ, և ամենեքեան հաւտեալք 'ի խոստովութենէն՝ արժանի գտան ընդ Հայրն խօսել, գոհացաւ 'ի վերայ այսր շնորհիս տրից մեծապէս. և այնուհետև ախորժէ, զպարգևն զոր առ յԱստուծոյ՝ պատարագին իւրոյ զոր մատոյց փոխարէն՝ հասարակաց՝ ժողովրդեանս բաշխել, որք հայր արժանի գտան զնա անուանել. զի սոքա որք ետուն զՔրիստոս պատարագ՝ առցեն զՀոգին Քրիստոսի մարմնոյն իւրով ինքեանց կերակուր. և մի միայն 'ի քահանայիցն դաս մնասցէ շնորհին զօրութիւն, այլ և զսոսա իջեալ սրբեսցէ: Զի որպէս քահանայքն՝ Աստուծոյ հաղորդեցան միջնորդութեամբն Քրիստոսի, սոքա միջնորդութեամբ քահանայիցն հաղորդեալք Քրիստոսի՝ առ Աստուած հաղորդեսցին յօդակապութեամբ Հոգւոյն. զի այսպէս զուգահաւասար սրբոց հրեշտակացն

1 Մի օրին. Հաւատոյն:

2 Մի օրին. Ի հասարակաց:

առ Աստուած մերձեցին․ ըստ այնմ զոր Յովհաննէս գրեաց․ «Ձեռք մեր շօշափեցին 'ի վերայ բանին կենաց․ և տեսաք և լուաք և պատմեմք ձեզ, զի և դուք հաղորդութիւն ունիցիք ընդ մեզ, և մեր հաղորդութիւնն է ընդ Հօր և ընդ Որդւոյ իւրում Յիսուսի Քրիստոսի»․ այսպէս և սոքա տեսին զԱստուած՝ դասք քահանայիցս իմանալի հայեցողութեամբ հաւատոյ․ շօշափեցին և զբանն կենաց իմացողութեամբն ձեռաց։ Արդ զոր տեսին և շօշափեցին, կամին պատմել և ցուցանել բազմութեան եկեղեցւոյն, զի և սոքա հաղորդք լինիցին նոքեանց՝ գիտութեամբ խորհրդոյս, որք են հաղորդք Հօր և Որդւոյ իւրում Յիսուսի Քրիստոսի․ և որպէս զի տիրապէս հաւատասցեն ասացելոցն 'ի Քրիստոսէ․ «Ես 'ի Հօր իմում, և դուք 'ի յիս, և ես 'ի ձեզ»․ քանզի լինի այս միշտ և օր ըստ օրէ 'ի մէջ հաւատացելոց ըստ այսմ խորհրդոյ։ Որպէս․ զի նա Հօր՝ իւրում տուաւ 'ի մէնջ մարմնովն ըստ աստուածութեանն 'ի ձեռն քահանայիցն․ և մեք մինչև ցայժմ եմք 'ի նա ամենայն եկեղեցիս ըստ հայեցողութեան մտաց և փառաւորութեան․ արդ այսուհետև նոքին գայ և լինի 'ի մեզ հաղորդութեամբ մարմնոյ իւրոյ և արեան, և կատարի յայսմ աւուր ասացեալն․ «Յայնմ աւուր գիտասջիք, եթէ ես 'ի Հօր իմում, և դուք 'ի յիս, և ես 'ի ձեզ»։

## ԸՆԴԻՐ ԱՅԺՄ ԽՈՆԱՐՀԵԱԼ ՔԱՀԱՆԱՅՆ ԱՂՕԹԷ ԱՌ ՀՈԳԻՆ ՍՈՒՐԲ, ԵՒ ԱՄԵՆԱՅՆ ԺՈՂՈՎՈՒՐԴՆ ԸՆԴ ՆՄԻՆ ՀՐԱՄԱՆԱՒ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ

ՅԱՐՄԱՐՈՒՄՆ խորհրդոյս անստերիւր ուղղութե̃ ընթանայ․ 'ի վերայ որոյ որք կացուցանեն զմիտս՝ կարող են բաւականապէս 'ի նախակարգեալն բանից ուսանել, թէ զիարդ եղև տուեալ 'ի մէնջ խորհուրդ մահուն Քրիստոսի պատարագ՝ հաստատութեամբ նշանակացն, և որպէս փոխանակ այնորիկ առաքեաց Հայր

1 Երկու գրին․ Ի Հօր։

զՀոգին, և զհացս և զգինիս նովաւ մարմին և արիւն Քրիստոսի կատարեաց ։ Արդ զայս հաւանական քննութեամբ յիւրում տեղւոջն եդաք ընդարձակ բանիւ ․ իսկ այժմ՝ որպէս ասացաք, զառ Հայր աղօթելն աւարտեաց, և կամի զշնորհ մարմնոյ և արեան Քրիստոսի ցուցանել ամենայն ժողովրդեանն՝ զոր եբեր նոցին 'ի վերուստ միջնորդութեամբն իւրով քահանայս ․ ուստի նախ առաջին խաղաղութիւն տայ նոցա, և սարկաւագն հրամայէ՝ Աստուծոյ երկրպագել ամենեցուն ։ Գիտելով սորա զազդումն շնորհիս որ հանդերձեալ է երևել նոցա, պահանջէ նախ զերկրպագութիւն, որպէս զի մի հարևանցի յանկարծադէպ հայեցմամբ զտէրն իւրեանց տեսցեն, այլ զի նախ երկրպագութեամբ թախանձեալ՝ զերևումն երեսաց նորին հայցեսցեն ։ Դարձեալ զի թէ յորժամ տեսցեն՝ երկրպագեն, վրիպին 'ի տեսութենէն, վասն այսորիկ նախ երկրպագել հրամայէ, և ապա 'ի տեսութիւնն մատչել ․ իսկ քահանայն զի խոնարհի ընդ նոսին և առ Հոգին աղօթէ, բազում անգամ ցուցեալ է թէ ամենայն մատակարարութիւն շնորհաց որ բաշխի յեկեղեցի Աստուծոյ՝ Հոգւոյն ներգործութեամն՝ է հաւատացեալ ։ Առ գլոյն միայն էր մարմնանալն, և յերկինս միշտ մեզ քահանայագործելն ․ իսկ այժմ զպարգևս իւր յերկրի աստ տնօրինեալ կատարէ Հոգւովն՝ որ 'ի Հօրէ ելանէ և 'ի Քրիստոսէ առ մեզ իջանէ ․ ըստ որում ասացն, "Յորժամ եկեսցէ մխիթարիչն՝ զոր ես առաքեցից ձեզ յանուն Հօր իմոյ, զՀոգին ճշմարտութեան՝ որ 'ի Հօրէ ելանէ,, ։ Սա և զնշանակս՝ մարմին և արիւն Քրիստոսի կատարեաց ․ սոյն և ընդ զգալույս մարմնոյ իմացականապէս 'ի մեզ բաշխեալ՝ հաղորդ զեկեղեցիս[2] Քրիստոսի և միմեանց կատարէ ․ վասն այսորիկ մինչ դեռ խոնարհեալ ժողովուրդն շնորհաց նորին սպասեն, խոնարհի քահանայն, և առ նա վասն նոցին զաղօթս խօսի ։

1 Մի օրին. Նորոգութենէ ։ 2 Մի օրին. Եկեղեցւոյ ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ Ա՛ՂՕԹԻՑՆ ՈՐՈՎ ԽՈՆԱՐՀԵԱԼ ՔԱՀԱՆԱՅՆ ԸՆԴ ՍՐԲՈՅ ՀՈԳՒՈՅՆ ԽՕՍԱԿՑԻ

“Որ աղբեւրդ ես կենաց և բխումն ողորմութեան, ողորմեա ժողովրդեանս՝ որք խոնարհեալ երկրպագանեն առաջի աստուածութեանդ քո”։ Ջրեւր կենաց միշտ զՀոգին սուրբ գիրք սուրբք անուանեն. ըստ որում ասէր տէր վասն նորին. “Որ հաւատայ յիս, գետք յորովայնէ նորա բխեսցեն ջրոց կենդանութե”. և մարգարէքն ՚ի բազում տեղիս. սակայն մեզ առաջի կայ քննել զպատճառն, որոյ աղագաւ նա աղբեւր և գետ ՚ի գրոց կոչեցաւ։ Օ Ա̃ բնութիւնն որ ՚ի յարարածոցս ոչ բնաւ[1] կարաց ճանաչել. ոչ զէութի, ոչ զանունն նորին տիրապէս. այլ անուանեմք զնա բազմապատիկ անուամբք ըստ ներգործութեան կամացն։ Ջ̃ր է և Հոգին սուրբ, հաւասար Հօր անճառաւոր, և նմին համագոյ. զանունն ոչ գիտեմք, այլ անուանեմք զնա ըստ ներգործութեանն աղբեւր։ Որպէս զՀայր հուր՝ վասն կիզողական զօրութեանն, զՈրդի գառն՝ վասն անմեղութեանն, այսպէս և զՀոգին աղբեւր՝ վասն զանազան շնորհաբաշխութեանն զոր բաշխէ տիրապէս, և ոչ բաշխի յայլոց էութեանն ծախմամբ իբր զջուր. քանզի աղբեւր ասէ զնա, և առ ՚ի յինքենէ զաղխումն։ Որդ զոր օրինակ աղբեւրն որ առօգանէ զդրախտ՝ զիւրաքանչիւր ծառ ըստ իւրում որակութեանն արբուցեալ պայծառացուցանէ, և մի ջուր գոլով ՚ի մուրտն այլ հոտոյ զօրութի տայ, ՚ի մանիշակն այլ. ՚ի թզենին զիւր պտուղն գոյացուցանէ, և յարմաւենին զիւրն, այսպէս և Հոգին սուրբ ներգործէ իմանալի առօգմամբն ՚ի զանազան հասակս մարդկան և ՚ի գործ նոցին. մի գոլով զօրութիւն, բայց սակայն զզօրացեալսն յինքենէ՝ ոչ միով օրինակաւ զօրացուցանէ, այլ ըստ բանալոյ զբերան հաւատոցն, և օգտի իւր և գործոյ. այսինքն զի ոչ կարէ տանել զնա միով օրինակաւ քահանայն և ժողովուրդն, որպէս և ոչ զջուրն ծառքն զանազանք. վասն այսորիկ ներգործէ ՚ի նոսա ըստ իւրաքանչիւր չափոյ։ Նաւ ոչ մի է ամենայն

1 Մի օրէն. Ո՛ւ Նըրէէ։

ընդունողացս ներգործութիւն, որպէս և ոչ ծառոցն պտուղք. յաղագս որոյ զիւրաքանչիւր ոք ըստ իւրում որակութեան արդիւնացանելովն՝ առնէ պտղատու. զքահանայն 'ի քահանայագործելն, զիշխանն 'ի դատելն, ըզփարթամն յողորմելն, զաղքատն 'ի համբերելն, զկրօնաւորն յաղօթելն, զկոյսն 'ի ժուժկալելն. և ո՞ կարէ թուել կամ զշնորհս նորին զանազանս, և կամ զընդունողացն բազմութիւնն։ Արդ սա աղբեւրս կենաց՝ որ զայս ամենայն կատարէ, հանդերձեալ է տեսութեամբ և հաղորդութեամբ մարմնոյ և արեան Քրիստոսի առգանել զժողովուրդս, ըստ որում ասացաւ. վասն այսորիկ նախ խոնարհեալ խնդրէ զշնորհս զայսոսիկ քահանայս ժողովրդեանն որք երկրպագեալ նմին սպասեն, ասելով. “Ողորմեա ժողովրդեանս որք խոնարհեալ երկիր պագանեն առաջի աստուածութեանդ քո„։ Ողորմութիւն վայելչապէս 'ի նմանէ, զի բղխումն է, ոչ արդար իրաւանց միայն՝ այլ տիրապէս ողորմութեան. քանզի ոչ գարշի յումեքէ, այլ առ ամենեսեան խոնարհի ըստ իւրաքանչիւր չափոյ և աստիճանի։ Իսկ այժմ, ասէ, ժողովուրդս վասն այնորիկ խոնարհեցան առաջի աստուածութեանդ քո, զի զշնորհ մխիթարութեանդ կարօտին ընդունել. տուր նոցա որպէս բարերար Աստուած։

“Պահպանեա զսոսա ամբողջս, տպաւորեա յոգւոյ սոցա զձև մարմնոյ ցուցակի„։ Յիրաւի ասէ, պահպանեա. քանզի նորա նախախնամութեանն Քրիստոս զմեզ հաւատայ. “Ի ձեզ, ասէ, բնակեսցէ, ընդ ձեզ եղիցի 'ի յաւիտեան„։ Իսկ ձևն զմարմնոցն զերկրպագելն նշանակէ. զի Աստուած զհոգւոց երկրպագութիւնն խնդրէ, և ոչ զմարմնոց, ըստ տեառն բանի. “Հոգի է Աստուած, և երկրպագուաց նորա պարտ է հոգւով և ճշմարտութեամբ երկիր պագանել„։ Աւստի մարմնոյս պարանոցի կորացումն՝ ներգործութեան Հոգւոյն պարտ է զի լիցի բացայայտիչ։ Արդ, ասէ, յայս զօրացո զսոսին. զի որպէս մարմնով կան առաջի աստուածութեանդ քո, և մտօք լինիցին. և որպէս այժմ զպարանոցսն խոնարհեցուցին, և զանձնիշխան հոգին ընդ կամօք հրամանի քո նուաճեսցեն. և այս ոչ վայրապար կամ մնոտի աշխատութիւն, այլ զի՞նչ. “Ոչ 'ի ժառանգութիւն և 'ի վիճակ հանդերձեալ բարեացդ„։

Պարձեալ, "Տպաւորեա յոգւոջ սոցա զձև մարմնոյ ցուցակի", որպէս իմանամք յաղագս հաղորդութեան ասացեալ. քանզի սոքա, ասէ, կենցաղոյս զբաղմանց ծառայք, և աշխարհական հոգովք խաւարեալք, տկար են իմացողական հայեցողութեամբ զքեզ տեսանել, որպէս և զգաստ քահանայից որք ընկալան զքեզ յանձինս և 'ի պատարագս: Արդ աղաչեմ ներել ողորմութք ժողովրդեանս, և յընդունելն 'ի բերանս իւրեանց զանճառելի մարմնոյ ճաշակումն՝ հաւաստարարեալ սորին լինել զհոգիս նոցա հոգևորական քո շնորհիւ. և որպէս մարմինքն զձև մարմնոյ Քրիստոսի ցուցակ՝ ճաշակեն և ըմպեն, հոգիքն ընդ սմին զհոգին Քրիստոսի ճաշակեալ և արբեալ զմայլեալ խրախասցին: "Ընդ 'ի ժառանգութիւն և 'ի վիճակ հանդերձեալն բարեաց Քրիստոսի Յիսուսի Տեառն մերոյ, ընդ որում քեզ փառք": Այսինքն թէ ժառանգութեան հանդերձեալ բարեացդ՝ վիճակի՝ այս տուաւ մեզ առհաւատչեայ և գրաւական, քո 'ի յանձինս մեր բնակութիւն 'ի ձեռն Քրիստոսի. ըստ այնմ. "Որ յաջողեացն մեզ 'ի սոյն, Աստուած է, որ ետ զառհաւատչեայ Հոգւոյն 'ի սիրտս մեր":

## ԶԻՆՉ Է ՅԵՏ ԱՅՍՐ ԶԱՅՆԵԼ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ ՊՌՕՍԽՈՒՄԷՆ, ԵՒ ՈՐ ՅԵՏ ԱՅՆՈՐԻԿ ԿԱՏԱՐԻ

ՅԱՅ բարբառոյս 'ի յանձնականն է լեզու. վասն հնազանդութեան աթոռոյն եղեալ է 'ի մերս անյեղաշրջելի. այլ զԹարգմանութի սորին ոմն ասէ՝ նայեսցուք, և այլք՝ զգուշութեամբ. որք 'ի մի հայլին զիտաւորութիւն ասացեալքս, քանզի զմի ունին զօրութի: Այց խնդրելի է, էր վասն այժմ զայս ձայնէ սարկաւագն. այսինքն քանզի ժողովուրդն որպէս առին 'ի նմանէ հրաման երկրպագել, դեռ ևս խոնարհեալ կան. և քահանայն հանդերձեալ է այժմ զանճառնական մարմինն որում սպասեալ յուսամ՝ նոցին ցուցանել, սարկաւագն նախ զգուշութիւն տայ ժողովրդեանն, որպէս և սովոր է, ասելով. "Պռօսխումէն": Այսինքն երկիւղիւ, եղբարք,

1 Երկու օրին. փառացդ:

սիրալիր որդեակք, հաւատով ժողովուրդք, զգուշութեամբ եկեղեցի, բարձրացուցեալ զպարանոց ձեր, նայեցարուք, տեսէք և գոհացարուք, հայեցարուք և փառս մատուցէք: Իսկ նոցա զոսկեալն բարբառ աւետեացս լուեալ, վաղվաղակի զկորացեալ պարանոցսն բարձրացուցանեն, զարտօսրալից աչսն մաքրեն, զխոնարհեալ սիրտսն հաստատեն, զտարակուսեալ միտսն զուարթացուցանեն, և թէ ուր հայեսցին ոչ գիտեն. քանզի սարկաւագն միայն զնայելն նոցին աւետարանեաց. զբարբառն ծննեան զի աւետեաց էր, այլ զխորհուրդ աւետեացն ոչ ծննեան 'ի նմանէ, զի միայն զգուշութի էր. ըստ զգուշութեանն պատրաստեցին զհայեցուածսն, զի կարօտեալք էին[1], և թէ զփափագելին արժանի լինիցին տեսանել կամ ոչ՝ դեռ ևս յերկբայս են: Ո՝ի ձայնս զբազմութի ժողովրդեանն ոչ զմի անձն յակձիռս արար առ դասս քահանայիցն. և թէ զփափագելին լիցին տեսանել կամ ոչ, դեռ ևս սրտակտուր թօթափին. 'ի յուսոյն յուշ ձգեաց զաչս ամ̃ցն սարկաւագն, և զլրումն յուսոյն ոչ ազդեաց նոցին իմանալ: Զգուշացիք լուեալ՝ ծննեան զի ուրախութեանն եհաս ժամանակ. իսկ զառիթ ուրախութեանն դեռ ևս սրտաթափ ակն ունէին տեսանել. նայեսցուք ձայնեալ զամենեցուն հայեցուածս զարթոյց, և զնայելին սիրելի ոչ ազդեաց նոցին ըստ բանին. ինքն իւրում հօտին զաւետիսն կարապետեաց, և զտէրն 'ի մտերիմ[2] ծառայիցն տեղի տայ նոցին ցուցանել: Ուստի և քահանայն վերացուցեալ զփրկական մարմինն, ասէ բարձրաբարբառ. "Ի սրբութիւնս սրբոց": Որք զգուշացայք ասէ, զծնս Աստուած ընկալարուք. որք նայեցայք, աչօք զսա տեսեալ ցնծացէք. ցանկայիք, տեսէք զփափագելիս. զԱստուած ձեր 'ի մարմնի ախորժելիք տեսանել, ահաւասիկ յանդիման ձեր փայլեցուցանեմ. հրեշտակ առաքեցիք զիս խաղաղութեան, և ես զնոյն ինքն զխաղաղարարն ահաւասիկ ցուցանեմ: Ճանաչել զսէրն Աստուծոյ կամեցայք, և ահաւասիկ զՈրդին սիրելի զրաւական առեալ ձեզ բերեմ 'ի նմանէ. մեղաց թողութիւն 'ի ձեռն իմ խնդրեցէք, արդ զուրբս սրբոց առեալ ձեզ

1 Այլք. են:

2 Երկու օրին. Ես՝ զտէրն իմ, տէր իմ:

բաշխեմ։ Ի սրբութիւնս սրբոց նայեցարուք որք արժանի գտայք սմին հաղորդել. սուրբ է բնութբ, բայց ոչ ամենեցուն սրբարար, այլ որոց հաւատով զսոյն տեսանեն. սուրբ է ոչ ամենեցուն, այլ իւրոց անդամոց առաքեալ սրբութիւն. սուրբ է՝ բայց ո՛չ զարտաքինսն, այլ զսրբեալս բանիւն սրբէ։ Իսկ նոքա առ այս զնոյն պատասխանեն նմա.

“ Միայն սուրբ, միայն տէր, Յիսուս Քրիստոս 'ի փառս Աստուծոյ Հօր։ Զպարտութիւն խոստովանին բանիւս յառատութենէ ուրախութեանն, որ 'ի սոկալի տեսլենէն առ նոսա զեղաւ։ Քանզի այս է մարդկան սովորութիւն. յորժամ անյուսալի ուրախութեան ոք վաղվաղակի պատահէ, յառաւել սիրոյն ''ի կարծիսն միտէ, այսպէս ընդ հրաշալի տեսութեանն, ընդ սքանչելի բանին՝ եկեղեցւոյս պատահեաց։ Ըստ որում և իմաստուն կուսանքն ասէին. 'տէր երբ մեք զայդոսիկ արարաք որում դուն վկայես, կերակրեալ զքեզ կամ ըզզեցուցեալ, ժողովեալ կամ մխիթարեալ. այսպէս և սոցա լուեալ 'ի քահանայէն թէ առ սուրբս Աստուած ձեզ սրբոցդ՝ սրբութեան շնորհ ընձեռեցաւ 'ի Հօրէ, պատասխանեն նմին. ո՛վ տէր մեր քահանայ, մեզ ուստի՞ սրբութիւն ՝ հողածնելոցս. մեք զիա՞րդ վկայիմք սուրբք ախտից վիճակեալքս. մեզ անկար է սրբութի ընդ մարմին կապելոցս, այլ սուրբ միդ, մաքուր միայնակդ, անախտ մարմնով միդ միայն 'ի մարմնաւորացս, պարծանք մեր յերկինս երկնից դա միայն վերացաւ՝ զոր բարձեալ կրես 'ի ձեռին. առ որ կարօտեալքս նայեցեալ ցնծացաք, յոր հայեցուածովքս միայն սրբեցաք, ընդ որ 'ի պշնուլս երբէք ոչ յագենամք. միայն սուրբ դա է մարմնով, միայն դոյն մեզ տիրէ, Յիսուս Քրիստոս Աստուածդ մեր և փրկիչ որ 'ի փառս Աստուծոյ Հօր միշտ հանգուցեալ և յաւէտ է։ Դովաւ հաւատամք զսրբութիւն քում սպասաւորութեան ընդունել, այդ սրբութեանդ յուսով առընթեր կացեալ դեգերիմք, նորին տեառնդ ակն կալեալ այսքան ժամանակս ասուէն տաւաղիմք, 'ի տէրդ ապաւինեալ՝ սրովբէապէս ասուէն խարուկիմք. զդա սպասեմք ունելեօք ձեռինդ սրբոյ՝

1 Մի օրին. Հաստափոյն։ 2 Մի օրին. Որոս 'ի ուշէոսբենն։

մաքրութիւն անձանց մերոց ճաշակել։ Այդ կայծակն է որ զմերս պղծեալ միղօք զշրթունս կիզէ. իբր զայր մի տառապեալ կամք բազմութիւնս ընդ սոսկալի տեսիլդ, որ առաջի աչաց մերոց փայլեաց. հիացեալ սքանչանամք ամենեքեան, զիա՞րդ զտէր զօրաց երկնից՝ ՚ի կառս հիւթեղէն ձեռացդ տեսանեմք բազմեալ. փա՜ռք դորին անճառ սիրոյ։ Նոյն քահանայն զի՞նչ յետ այսորիկ. ոչ հանդուրժէ, այլ զգոհացողական օրհնութիւնն ՚ի սենեակ սրտին մթերեալ՝ հեղու զխորհրդական աղօթսն առաջի բազմութեան. եթէ զընդունողս աղօթիցս, ասէ, տեսանել արժանաւորեցան, ընդէ՞ր ես այսուհետև զաղօթս ՚ի սոցանէ ծածկեալ պատրուակեմ. մինչև ցայժմ խորհրդապէս խօսէի, զի ես միայն զԱստուած տեսանէի. իսկ եթէ ծածուկ տեսութիւնն յամենայն հրապարակս փայլեցաւ, յայտնեսցի և խնդք պաղատանաց իմոց ընդ սմին. եթէ ինձ միայն էր շնորհիս պիտութիւն, պարտ էր ինձ միայն գոհանալ. իսկ եթէ ընդ իս և ժողովուրդս ամենայն զնոյն գիտացին, լիցին և փառաւորութեան իմոյ վկայութեամբն հաւասարք. յաղագս որոյ և ասէ բարձրաձայն.

«Օրհնեալ Հայր սուրբ ճշմարիտ Ած. օրհնեալ Որդի սուրբ ճշմարիտ Ած. օրհնեալ Հոգիդ սուրբ ճշմարիտ Աստուած։ Օրհնութիւն և փառք Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ»։ Երրորդութենէն ընկալեալ զշնորհս՝ յիրաւի զերիսն եզականապէս անուանէ ՚ի մի փառս և ՚ի մի պատիւ օրհնաբանէ. այսինքն Հայր օրհնեալ, որ զպատարագս հաշտութեամբ ընկալաւ. և Որդին օրհնեալ, որ փոխանակ եղբարցս մեռեալ պատարագեցաւ. իսկ Հոգին օրհնեալ, որ խոնարհեալ՝ հատուցումն մեզ փոխանակ պատարագիս շնորհեցաւ։ Եւ ժողովուրդքն որ տեսութեան արժանացան այժմ, զոր նախ ոչ գիտէին, ընդ նմին և քահանայիս գոհացողական օրհնութեան կցորդին, որում նախ ոչն հաղորդին՝ ըստ իւրաքանչիւրոցն զամէնն վկայելով. յայտ արարեալ թէ է ճշմարիտ հաւանութեամբ մտաց մերոց առ ՚ի քէն ասացեալսդ։ Այս ամենայն խորհրդածութիւնք՝ աւատալոյն աչաց սիրալի, իսկ անհաւատութեանն ծիծաղելի. վասն այսորիկ և սարկաւագն հրամանաւ ՚ի սկզբանն յերախայեցն ամփոփի, ոչ իբր

յանարժանից, այլ որպէս յանհաւատից. Եթէ հաւատով առ 'ի սոյն ունիցիմք, ոչ երբէք անարժանութեան խորշիմք. բայց զի ոչ հաւատամք, յիրաւի ըստ երկիւղին 'ի դրունս պարուրիմք: Նշդարք զհաւատն անձեցուցէք առ Տր, և զսէրն զոր և պահանջէ 'ի մարմնաւորացս, և դիւրաւ գիտէ 'ի մէնջ կատարել[1]. իսկ զմաքրութիւն 'ի պահանջելն՝ զպարտութիւն խոստովանեսցուք որպէս զմարմինս. հաւատոյն և սիրոյն չգտանիմք պատճառ, զի անաշխատ է. սրբութեանն ունիմք, քանզի աղտաւոր եմք:

Ո՛վ հաւատ, որքան բարձր ձկտիս. ո՛վ սէր, որքան յանհասն ժպրհիս. ո՛վ երկիւղ, որքան 'ի ստորինս նայիս[2]: Հաւատն զգլուխ Քրիստոսին ելեալ եւղարկեաց, և երկիւղն 'ի քղանցից նորա կեղակարծ զպարգևսն ամփոփեաց, սէրն 'ի լանջսն Յիսուսի զպարմանոցն ձգեաց, և երկիւղն 'ի բացուստ սարսելով նմին ակնարկեաց: Լծեա զսոսա ըստ միմեանս, և ել կառօք առ Տր. ապա թէ տկարացար, բարւոք է յերկեւղէն խուսափեալ քան 'ի հաւատոցն և 'ի սիրոյն. Հաւատն դիւրաւ կարէ ձգել զքեզ առ երկիւղն, երկիւղն ոչ կարէ բնաւ վերածել 'ի հաւատն: Ծնունդ է երկիւղն հաւատոյն, թոռն է երկոցունց սէրն: Օ հայրն Տր 'ի քեզ և զորդիսն ծնանի, զարմատն և զպտուղսն ընծիւղէ. հաւատով որոց տեսանես, և մի կեղակարծեր. աստուածային է աստուածութիւնս, և ոչ մարդկային. տէրունի խորհուրդս և ոչ երկրային. Եթէ հաւատաս, ապա երկնչիս. Եթէ երկնչիս՝ դիւրաւ սրբիս. բազմամեայ երկիւղածութիւնդ ոչ երկիւղի[3], այլ անհաւատութե մերոյ տայ զտարապացոյց. մի չար է հաւատոյն և սիրոյն արհամարհութի, և երկեղին անհաւատութի[4]. բայց համարիմ փոքր տեառնն զյանցանս արհամարհութեան քան զանհաւատութե. Նա յանդգնեցաւ արհամարհել զմեղսն՝ զի զԱստուած հաւատաց տկարութեան մարմնոյն սրբութիւն. Ես զի հրաժարիմ բազում ամս, զի ոչ 'ի նորայն՝ այլ յիմս հաւատամ սրբութեան կարօտութիւն: Ո՛ այր

1 Մի օրին. Գիտէ 'ի մէնջ կատարեալ: Այլ օր. Գիտէին 'ի մէնջ:

2 Երկու օրին. Ի ստորինս հայիս:

3 Մի օրին. Ու է երկիւղի: Երկու օր. Ու է երկիւղ:

4 Մի օրին. Անհաւատութիւն:

ինձ զհաւատս և զերկիւղն և զսէրն ընդ միմեանս ծնել ։ Բայց զի յերիցն վրիպեցայ, նախ զխարիսխն եդեալ կքակտեալ տաղաւար առաքինութեանն 'ի վերայ նորին շինեցից ։ Հաւատն է հիմն, հաւատն արմատ, աւատալ թէ զայսքան շնորհս 'ի պէտս փրկութե՟ մեր փրկիչն մեր տնօրինեաց ․ շնորհիմք այսօր զնոյն, մոլորութեամբ յերկիւղն պանծամք, ոչ եմք սրտիւ հաւատացեալ ․ ստացեալ զնոյն, մխիթարեսցուք զմիտս երկիւղիւ տատանեալ, շնորհօքն Քրիստոսի, որում փառք յաւիտեանս յաւիտենից, ամէն ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՂՕԹԻՑՆ ԶՈՐ ՅԵՏ ԱՅՍՐ ԽՈՆԱՐՀԻ ՔԱՀԱՆԱՅՆ ԵՒ ԱՌ ՔՐԻՍՏՈՍ ԱՍԷ

“ՆԱՅԵԱ, տէր մեր Յիսուս Քրիստոս, յերկնից 'ի սրբութենէ քումմէ, և յաթոռոյ փառաց թագաւորութեան քո ․ եկ 'ի սրբել և 'ի կեցուցանել զմեզ որ ընդ Հօր նստիս, և աստ պատարագիս ” ։ Որք ոչ գիտեն զքրիստոնէից խորհրդոյս բարեպաշտութիւն՝ երկուս ունին պատճառս, կամ զտգիտութիւնն կամ զանհաւատութիւնն ․ 'ի սոցանէ որք յորժամ լսէ զասացեալ աղօթիցս բան, կամ անհաւատութեամբն այպանէ, կամ տգիտութեամբն տարակուսի ․ զիա՞րդ յերկինս նստի էութիւնն Քրիստոս, և աստ պատարագի, կամ ո՞րպէս որ 'ի մէջ մեր է՝ յերկնիցն նայի ։ Այսպիսոյս պարտ է երկիւղածութեամբ ձգել 'ի միտս զգիտութիւն խորհրդոյս զօրութեան[1], որպէս և ցուցաք ըստ կարի հայրենի աւանդութեանցն ընթացիւք ․ այսինքն զի Քրիստոս ընդ Հօր նստի 'ի սրբութեան աթոռն՝ մերս մարմնոյ էութեամբ, և մեք պատարագեցաք զնորա խորհուրդն որ վասն մեր չարչարանացն աստ իմացողականս հայեցողութեամբ ․ զի հաւատացաք՝ թէ այս գործառնութիւնս և աղօթքս առաջի Աստուծոյ է՝ որոյ փառօքն լի է երկինք և երկիր, և այնպիսի յուսով տուաք աստ պատարագ Հօր զՔրիստոսի չարչարանացն զխորհուրդ, և անդր 'ի յերկինս իմացող մտօքս հաւատացաք զնոյն ինքն զՔրիստոս տալ,

1 Մի օրին ․ Զօրութիւն ։

որ սա քահանայագործելովն իւր զՀոգին 'ի Հօրէ փոխանակ պատարագիս մահուն, և առաքեաց 'ի նշանակս մարմնոյ և արեանս իւրոյ, և օծ զսա տնօրէնութեամբ Հոգւոյն տէր և Քրիստոս՝ որպէս և զիւրն մարմին. և մի Հոգին որ 'ի նա էջ 'ի Հօրէ, էջ 'ի Քրիստոսէ 'ի նուէրս ¹, և արար զսա ² մի մարմին Քրիստոսի, այլ և այլ որակութեամբ նիւթոցս. վասն այսորիկ ասէ.

«Արժանի արա տալ մեզ յանարատ մարմնոյ քո և 'ի պատուական արենէս, և 'ի ձեռս մեր ամենայն ժողովրդեանս»։ Ոչ ի մեք ըստ մերոց գործոցն ոչ ունիմք համարձակութիւն 'ի քեզ մերձենալ. դու տուր, որ ըստ քում ազատ և անմեղ մարմնոյդ ընկալար զայս շնորհ 'ի Հօրէ քումմէ մարդկայինս բնութեան առնուլ 'ի քեզ և 'ի մարմին քո զՀոգիդ քո անչափ. և միջնորդութեամբ մարմնոյ քո և արեան անցուցանես զնոյն 'ի մեզ՝ ըստ իւրաքանչիւր չափոյ և արժանաւորութեան։ Վասն աղաչեմք, զի տացես դու անընդմիջաբար մեզ, և 'ի ձեռն մեր ամենայն ժողովրդեանս, որպէս զի բովանդակ անդամքս հաղորդ լիցին 'ի գլխոյդ շնորհացս իջելոյ։

ԸՆԴԻՐ ՑԵՏ ԱՂՕԹԻՑՍ ԵՐԿՐՊԱԳԵԱԼ ՀԱՄԲՈՅՐԷ ԶՍԵՂԱՆՆ

Նորին անգամ այս երկրպագութիւն քահանայի և համբոյր սրբոյ սեղանոյն. և թերևս վայրապար. ոչ բնաւ. զի ոչ ինչ 'ի բարեկարգութեանցս եկեղեցւոյ հարևանցի կամ առանց խորհրդոյ։ Նախ քան զսկիզբըն աղօթիցս երկրպագեաց, և ապա ասաց նմա սարկաւագն օրհնել. երկրորդ յետ առնլոյ զՀոգին յառաջադրեալ նուէրսն. և երրորդ յետ զպատարագն յինքն առնուլ³ խնդրելոյ. և թէ զինչ են սոքա՝ մարմնական յարացուցիւ հաստատեսցուք։ Ոչ ի որպէս հրեշտակ մտեալ առաջի թագաւորի՝ նախ երկրպագէ, և ապա զպատգամաւորութիւնն պատմէ, այսպէս և սա նախ երկրպագեալ՝ համբուրեաց զտեղի փառացն

1 Այլք. ի Նուէրս։
2 Մի օրին. Զսոսա։ Այլք զը. Զտառին։
3 Մի օրին. Յինքեան առնուլ։

Աստուծոյ, և ապա սկսաւ զաղօթս ժողովրդեանն մատուցանել. և որպէս նա յորժամ առնու պարգևս՝ ըստ իւրաքանչիւրոցն երկրպագեալ շնորհ ունիցի, ըստ այսմ և սա. նախ յորժամ էառ[1] զՀոգին ըստ խնդրոյն 'ի պատարագն երկրպագեալ շնորհակալ եղև. և յայլ խնդիրս զբանն փոխեաց, այսինքն նովաւ զպէսպէս հայցուածս ունել յԱյ. իսկ յորժամ այն աւարտեցաւ, աղօթեաց զնոյն ինքն զբաշխիչ պարգևացն յանձն իւր ընդունել, և ինքեամբ 'ի ժողովրդեանն. եղեալ արժանի և այսմ շնորհի, դարձեալ երկրպագութ̃ե շնորհ ունի տրիցս պարգևաց. զի մեր այս է փոխարէն զոր տամք Աստուծոյ փոխանակ ամենայն շնորհաց որ 'ի նմանէ առ մեզ իջանէ. ըստ այնմ, “Մատո Աստուծոյ պատարագ զգոհութիւն, կատարեա բարձրելոյն զուխտ զքեզ”. այսինքն զերկրպագելն ։

## ԶԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ՅԵՏ ԱՅՍՐ ԿՐԿԻՆ ԴԱՐՁԵԱԼ ՔԱՀԱՆԱՅԻՆ ԲԱՐՁՐԱՑՈՒՑԱՆԵԼ ԶՏԷՐՈՒՆԱԿԱՆ ՄԱՐՄԻՆՆ Ի ՏԵՍՈՒԹԻՒՆ ԵԿԵՂԵՑԻՈՑՆ

ՆՇԱՆՕԹ է իմաստուն քննողաց՝ թէ մի ըստ միոջէ 'ի բարձրագոյնսն նկրտի գիտութիւն ժողովրդեանս. այսինքն զի որ նախ առ Քրիստոս աղօթէին, ձգեցան նովաւ 'ի Հօրն գիտութիւն որդեգրութեան աղօթիցն պայմանաւ. յետ այնորիկ արժանի եղեն և զխորհըրդաքար 'ի մէջ դասու քահանայից իջեալ շնորհն ականերև տեսանել ամենեքեան 'ի ձեռն քահանային։ Արդ այժմ զոր տեսին զպարգևս՝ քահանային խնդրեաց աղօթիւք 'ի Քրիստոսէ բաշխել և տալ իւր և նոցա 'ի ճաշակումն. վասն այսորիկ և վերստին զնոյն բարձրացուցանէ, յայտ առնելով թէ որք 'ի բացուստ միայն աչօք զսա տեսէք և զուարճացայք՝ յառաջ ողորմութենէն Աստուծոյ արժանի գտայք ճաշակել զսոյն և սըրբիլ. ուստի և որ 'ի նախ բարձրացուցանելն երկիւղալի ժողովրդեանն ընդ տեսութեանն ասելով, 'ի սըրբութիւնս նայեցարուք[2], որ սրբոցն է սրբարար, յայժ-

1 Երկու օրին. Ետ։ 2 Մի օրին. Սրբեցարուք։

մու վերերևութիւնս 'ի վերայ երկիւղիւ տարակուսեալ սրտից գյոյս խնդութեան արկանէ․ զի այս է բարիոք կարգաւորութիւն, որպէս զի երկիւղին մաքրեսցէն սիրոյն ընդունողքն, որպէս զի սէրն առանց արհամարհանաց մնասցէ առ նոսա։ Այս զի՞նչ է այժմու ասացուածս՝ զոր ընդ բարձրացուցանելոյ խորհրդոյն բարբառեալ, գյոյսն 'ի նոսա ձգէ ցնծութեամբ․ "Ի սուրբ 'ի սուրբ մարմնոյ և յարենէ տեառն մերոյ և փրկչին Յիսուսի Քրիստոսի ճաշակեսցուք սրբութք, որ իջեալ յերկնից՝ բաշխի 'ի միջի մերում։ Սա է կեանք, յոյս յարութեան, քաւութիւն և թողութիւն մեղաց ,,։ Ո՜վ սքանչելի և աստուածահրաշ բարբառոյս, որ և զանշունչ տարերս կարող է 'ի յոյսն ածել․ մի ասէ, եկեղեցի Քրիստոսի, զարհուրիր եթէ սրբութի սրբոց լուար զսա յինէն ասացեալ․ քանզի արդարև սուրբ սա միայն, ըստ որում զառ 'ի քէն վկայութիւնն լուեալ երկրորդեմ։ Սակայն ոչ թէ միայն յինքեան պահէ զմաքրութիւնն, այլ և 'ի մեզ անցուցանէ զնոյնն շնորհօք։ Եկայք ամենեքեան վայելեսցուք 'ի սրբութիւնս սիրով․ եկայք ճաշակեսցուք զմաքրութիւնս հաւատով․ եկայք մահկանացուք, կերիցուք զկեանս երկիւղիւ․ եկայք տառամնեալք, ամրասջիք 'ի յոյսս անաշխատ․ եկայք մեռեալք, կերիցուք գյարութեանն յիշատակս։ Սա է կեանք՝ ոչ մարմնոց այլ հոգւոց․ սա է յոյս ոչ ապականացու փառաց, այլ անապականին․ սա է քաւութիւն աղտեղացելոցն 'ի ժանեաց վիշապին․ սա է լուացարան թխատիպ գունոյն հնոյն Ադամայ։ Ո՜վ դանդաղիր եկեղեցի՝ սորա սեպհական, եկ յարեաց 'ի գլուխ քո սիրով, և լեր կենդանի․ մի հեղգանար, եկ ճաշակեա զհացս իջեալ քեզ յերկնից։ Շտապեա փութացիր, և եկեալ ձմլեա զարիւնս Յիսուսի 'ի լուացումն հոգւոյ քո աղտից․ եթէ ոչ մեղար, երագ մերձեցիր 'ի սուրբս սըրբոց․ եթէ մեղար՝ արիւնս այս մաքուր սրբէ զքեզ 'ի յաղտոյն։ Միայն հաւատա սրբութեանն, միայն սիրով եկ առ քո բաղձալիս, միայն խանդակաթ առ սա հպեսցիս, միայն բաղձմամբ ողջունի զսա համբուրեա, միայն ըղձիւք տենչանաց զսա ճաշակեա, միայն տըռփմամբ գորովոյ արբեամբս զմայլեաց։

Զայս աղաղակեալ յոյս ցնծութեան քահանայինն 'ի լուր ամենայն եկեղեցւոյն, անձնացուցեալ զտարփանս նոցա խանդաղատանօք բարեհաճակ բարբառոյն՝ ձգէ զկամս ամենեցուն 'ի խորհրդոյն սրբոյ ճաշակումն։ Եւ որ չունին ինչ պատասխանի այնուհետև ժողովուրդքն, որպէս և նախ քան զայս սովոր էին ասել. զի ողորմութիւնն զոր խնդրէին՝ զեղաւ. շնորհն զոր հայցէին 'ի տեառնէ, ծաւալեցաւ. հացն հանապազօրդ ընծայեցաւ՝, պարտեաց թողութիւնն խոնարհեցաւ, ահարկուն փորձողին 'ի փրկութիւն նոցին պարգևեցաւ. միայն սուրբն Յիսուս Քրիստոս՝ ամենեցուն սրբութիւն բաշխեցաւ, 'ի փառս Հօրն Աստուծոյ տէրն հաղորդ զեկեղեցի սիրելի ընկալաւ։ Զոր ծանուցեալ զօրս տէրն արժանի արար ճանաչել, գան յաժարամիտ բաղձանօք 'ի յայսքան շնորհացս հաղորդութիւն, ածեալ ընդ ինքեանս ընծայ սիրն զհաւատն, զյոյսն և զսէրն. և ճաշակեալ զլրումն հաւատոյ և զյուսոյն և զսէր տարփանացն, այնուհետև բոցակիզութեամբ սրտիցն անձնացուցեալ առաջորին։

ԶԻՆՉ ՍԱՐԿԱՒԱԳԻՆ ԱՅՍՈՒՀԵՏԵՒ ԴՊՐԱՑՆ ԴԱՍՈՒ ՀՐԱՄԱՆԱՏՐՈՒԹԻՒՆ

Ըստ որում յառաջնումն մինչ վերաբերիւր պատարագն 'ի ժողովրդենէն 'ի սեղանն, դպրացն հրաման տայ եղանակել սարկաւագն, այսպէս և այժմ առնէ յորժամ համբերձեալ է նոյն շնորհս իջանել առ ժողովուրդն 'ի բաշխումն։ Եւ այս ոյր աղաղակ. զի ազդումն երաժշտական եղանակին ըստ որում ունի զօրութիւն՝ ընդոստուցեալ զարթուսցէ զմիտս ամենեցուն առ 'ի տենչումն շնորհին. քանզի չիք ինչ որ ըզկամս մեր յեղաշրջէ յուրախութիւն կամ 'ի տրտմութիւն՝ որպէս զերգոցն ձայն, յորժամ որպէս պարտն է՝ լինիցի. վասն այսորիկ և եկեղեցական աւանդութիւն ընկալաւ զայն յարտաքնոցն։

1 Երկու օրէն. Ընչետեղաւ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԵՐԳՈՑՆ ՈՐՈՎ ԴՊԻՐՔՆ ՊԱՇՏԵՆ

«ՔՐԻՍՏՈՍ պատարագեալ բաշխի 'ի միջի մերում» ։ Տեսանեմս թէ որպէս 'ի քահանայէն առեալ զբանն աւետեաց՝ ընդ եղանակս արկեալ գեղգեղեն, և զմիտս և զխորհուրդն ամենեցուն բանիւն և եղանակաւն 'ի խընճոյս ցնծութեանն շարժեն ։ Բայց եկ և զզօրութիւն ասացելոցս քննեալ ծանիցուք ։ «Քրիստոս պատարագեալ բաշխի 'ի միջի մերում» . այսինքն թէ ով եկեղեցի, ծանիր սոսկալի խորհուրդ . զի Քս այն զոր[1] 'ի միջոյ մեր վերացեալ քրովբէապէս տուաք 'ի ձեռս քահանային՝ պատարագ մատուցանել[2] Աստուծոյ Հօր փոխանակ ամենեցուն, նոյն ինքն մատեաւ 'ի յերկինս, և զհաշտութիւն առ Աստուած և առ մարդիկ ուղղեալ, այժմ դարձեալ գայ 'ի մէջ մեր պարգև 'ի Հօրէ, և դեղ կենաց բաշխի ամենեցուն ։

«Զմարմին իւր տայ մեզ կերակուր, և զսուրբ զարիւնն իւր ցօղէ 'ի մեզ» ։ Որպէս ասացաք, զառ 'ի քահանայէն ասացեալն սոքա վերստին առեալ եղանակաւ համեղացուցանեն . զի նա 'ի սուրբ մարմնոյ և յարենէս Քրիստոսի ասաց՝ եկայք ճաշակեցուք, սոքա առեալ զնոյն, ծափս հարեալ սրտիւք, կայթելով նուագեն ։ Իսկ թէ որպէս տայ զմարմինն իւր և զարիւն, բազում անգամ ասացեալ է ։

«Մատիք առ տէր, և առէք զլոյս» ։ Քահանայն ասաց, եկայք ճաշակեսցուք սրբութեանց . սոքա ընդ նմին յորդորեն զեկեղեցւոյն բազմութիւն . մատիք, ասեն, 'ի կոչումն քահանային առանց հեղգալոյ ։ Բայց զի՞նչ է զօրութիւն մարգարէականս բանիս ։ Լոյս՝ հանապազ գիրք զիմանալի գիտութիւնն կոչեն, որպէս և Քրիստոս զանձն անուանէր և զառաքեալսն . արդ սոյն իմացողացն լոյս է տիրապէս՝ որք այնպէս մատչին ընդունել, զի գիտեն հաւատով թէ 'ի մերձենալն 'ի սա՝ ըստ անսուտ խոստմանն յամենայն մեղաց մեր սրբին ։

«Ճաշակեցէք և տեսէք, զի քաղցր է տէր» ։ Ո՞ ճաշակեմք, և զտեառնն քաղցրութիւն իմանամք, ասա

1 Երկու օրին . Որ ։    2 Մի օրին . Մատուցանելոյ ։

ինձ . զլոյսն . զի թէ զլոյսն մտօք ընդ զգալի հացիս ոչ ուտեմք, զտեառնն քաղցրութիւնն ոչ կարեմք ճաշակել. ապա թէ ունիցիմք առաջի՝ տայ զօր վասն մեր մահն, և զՀօր նովաւ հաշտութիւնն, և զՀոգւոյն սրբոյ վասն այնր յիշատակի՝ մարմնովս Քրիստոսի 'ի մեզ անցանելն, արդարև 'ի վեր ճանաչեալ տեսանեմք քան զարժանս մեր զտեառնն առ մեզ քաղցրութիւնն, որպէս ցուցեալ է ընդարձակ բանիւ : Իմանամք այնուհետև թէ ոչ երբէք զանզուգականն շնորհի եմք՝ կարող հատուցանել փոխարէն. և սա որ զայս եղանակաւս աւետարանէ, զի զայս ճաշակեալ է զլոյս և տեսեալ զտեառնն քաղցրութեանն առատութիւն, վասն այսորիկ և տկարանայ իւրովին հատուցանել նմին փոխարէն : Այլ զինչ . զերկնաւոր դասապետութիւնսն 'ի գոհաբանութեանս կցորդութիւն, ասելով.

“Օրհնեցէք զՏէր յերկնից”: Ո՛վք, ասէ, ծառայակիցք և պաշտօնեայք հոգիք հարկաւորք, զիա՞րդ կարեմք երկնաւորիս շնորհի երկրաւոր երգով հատուցանել փոխարէն, իմանալի բնութեանն զգալի լեզուով պաշտպանել : Դուք օրհնեցէք, դուք հատուցէք նմին ընդ մեր զանճառնջենաւոր փառաւորութիւն փոխարէն :

“Օրհնեցէք զնա 'ի բարձունս”: Ո՛չ թէ որքան զեղեալ շնորհօք պարգևացս ոչ միայն յերկնից՝ այլ և 'ի յետ բարձրագոյն կայանս զուարթնոցն եղեալ հրաւիրէ զնոսա 'ի կցորդութիւն գոհութեանս. որք արդարև սովոր են վասն առ մեզ շնորհացն՝ լինել Աստուծոյ օրհնաբանք. ըստ որում և 'ի ծննդեանն ծանուցին տիրապէս. և Քրիստոս՝ թէ ուրախութիւն է առաջի հրեշտակաց՝ մարդկան փրկութիւն : Արդ զի այսպէս ծանեաք զգթութեանն զնոսա առ մարդիկ, յիրաւի 'ի բարձունս ձգտեալ բնակչաց նմին օրհնել ընդ մեզ հրամայեմք :

“Օրհնեցէք զնա հրեշտակք նորա”: Հրեշտակք անուանեն ամենայն երկնային՝ դասապետութիւնքն համանունաբար. վասն զի միջնորդութեանն իւրեանց իջուցանեն 'ի վերուստ 'ի խոնարհ զլուսաւորութիւն

1 Մի օրին . Ճանաչել :
2 Երկու օրին . Շնորհէն :
3 Մի օրին . Երկնաւոր :

զխոստութեանն Աստուծոյ, և միմեանց միջնորդ և պատ-
գամաւոր առ 'ի նոյնն լինելն. սոցա ամենեցուն ընդ մեզ
օրհնել զտէրն՝ աղերսեմ ։

"Օրհնեցէք զնա ամենայն զօրութիւնք նորա" ։
Դարձեալ և զօրութիւնս անուն թէպէտ և 'ի մի դասու
վերայ մակարդի, այսինքն 'ի միջին պարունակին մի-
ջին կարգի, սակայն զիրք համանուանաբար 'ի վերայ ա-
մենայն երկնայնոցն զարդու առնուլ սովոր են. ըստ
այնմ. "Օրք զօրութեանց՝ որ առնեն զբանս նորա".
և "Տէր Սաբաւովթ". այսինքն զօրութեանց ։ Ի՞ր
վասն. քանզի ամենաքեան նոքա էութիւնք են զօ-
րաւորք և ներգործականք, և զօրանան ոչ յանձանց,
այլ յակնարկութենէ տեառն իւրեանց Աստուծոյ.
վասն այնորիկ և նորա զօրութիւնք անուանին՝ իբր նո-
վաւ զօրացեալք ։ Այսպէս զամենայն երկնայինն դասա-
պետութիւնքն զանազան անուանադրութեամբքս '
հաղորդ առնուն օրհնաբանող գոհութեանս՝ իբր հա-
մալծակից պաշտօնեայք 'ի միում տեառն փառաւորու-
թիւն. զի եղեալ տեսին զեկեղեցիս երկրի, և զորս
շուրջ կան՝ հրեշտակք, որպէս և գրեաց հայրն մեր
Եփրեմ ։ Ընդ որս և զալէլուիայն յարակցեն ըստ իւ-
րաքանչիւր տանցդ, որ է ըստ եբրայականին յամենայն
լեզուս ազգաց քրիստոնէից՝ օրհնութիւն Աստուծոյ.
համաձայն բարբառոյն վստահացեալք թէ կարող է
այսպիսի հնչմունք երգոց հեշտալուր մարմնոց՝ վերածել
զմիտս ամենեցուն առ իմացողութիւն լուսոյն, առ որ
մատչել հրաման առին՝ առնուլ և ճաշակմամբ իմաս-
տութեանն 'ի քաղցրութիւն սիրոյ տեառն բերկրել[2] ։
Աղաչեմ զամենեսեան, բացեալ զաչս մտաց՝ զառաւե-
լութիւն շնորհիս տեսցուք, և մի 'ի նանիր զաստուա-
ծավայելուչս ունիցիմք օրհնաբանութիւն, կամ զպարզ
միտս տեղեկանալն սմին վարկցուք բաւական. այլ զի-
տասցուք թէ որպէս յարեգականն լոյսն՝ այն մատչի և
վայելէ որ զաչսն ունի պայծառ զմարմնոյն, այսպէս և
յիմանալի լուսոյս այն ճաշակէ և քաղցրանայ որ իմա-
ցող միտք 'ի սոյն մերձենայ ։

1 Մի օրին. Աստուածապաշտութեանս ։ 2 Մի օրին. Բերկրելու ։

## ԸՆԴԷ՞Ր ԿԱՄ Ո՞ՅՐ ԱՂԱԳԱՒ ՍԱՐԿԱՒԱԳՆ ԱՅԺՄ ԶԺՈՂՈՎՈՒՐԴՆ ՅԱՌԱՋ ԿՈՉԷ Ի ՀԱՂՈՐԴՈՒԹԻՒՆ

ԶԳՈՒՇԱԿԱՆ վարդապետութեանցն որովք վարժեաց զնոսա՝ վախճան եհաս. և ողորմութիւն և շնորհն զոր խնդրէին ժողովուրդքն՝ եկն եհաս. զոր ծանուցեալ յառաջ կոչէ զաշակերտեալ մանկունքն.

"Երկիւղիւ, ասէ, և հաւատով յառաջ մատիք": Զի սոքա երկոքեան են սահմանք պաստիարակիչք ստահակութեան անձնիշխանս կամաց, երկիւղն և հաւատն. մին առ Աստուած ձգէ համարձակ, և միւսն պահէ ընդ նովաւ որպէս պարտն է. թէ երկիւղն միայն լինի, ուծանամք 'ի նմանէ. և թէ հաւատն առանց երկիւղին, յանդգնիմք առաւել քան զարժանն: Վասն այսորիկ ասէ, ընեալ զերկիւղն և զհաւատն, այնպիսի երագաքայլ թևօք ամբարձեալ զմիտս 'ի հաղորդս լինել. Մի՞ք վերածէք հաւատալ, թէ է սա աստուածային մարմին վասն ձեր բաշխեալ, որպէս և է ճշմարտապէս, և մերձենալ 'ի սա որպէս 'ի հուր զգուշութեամբ՝ որով մաքրի ամենայն ձեր անօրէնութիւնք և մեղքն սրբի. զի ահաւադիկ այս մերձեալ՝ 'ի շրթունս ձեր՝ լուանայ զամենայն անօրէնութիւնս, և զմեղս ձեր սրբէ[1] 'ի ձէնջ, որպէս և զաստուածաբանն մարգարէի: Զայս ասէ սարկաւագն, որպէս զի հրամանաւ և կոչմամբ և մի անձնական կամօք յառաջեսցեն[2] 'ի հաղորդութիւն. ըստ այնմ. "Առաքեաց զծառայսն իւր բարձր քարոզութեամբ կոչել 'ի խառնելիս իւր, և ասէ. որ ոք իցէ անզգամ, եկեսցէ առ իս և արբցէ. և ցպակասամիտսն ասէ. եկայք կերայք 'ի հացէ ատոի իմմէ, և արբէք զգինիս զոր խառնեցի". և ուտեն, ո՛չ վասն. որպէս զի թողեալ, ասէ, զանզգամութիւնդ՝ կեցջիք: Մի՛ ոք լինի այլ[3] իմաստութիւն քան զսա անուանեսցէ սեղան. քանզի արդարև որ ուտէ ճաշակելեօք իմացութեանն զխորհրդոյս զօրութիւն ընդ մարմնոյս զգայականի, թէպէտ և ան-

1 Երկու օրին. Մերձեցեալ:
2 Այլք. Յառաջ եկեսցեն:
3 Մի օրին. Իւր:

զգամ է կամ պակասամիտ, վաղվաղակի փոփոխի զօրու-
թեամբ Ճաշակմանն. ապա թէ միայն զմարմնով մեր-
ձենալն համարի բաւական, մնայ քաղցեալ և արդ ևս
պակասամտին կոկորդ. զի տէր մեր Յիսուս Քրիստոս
հոգի է, և հոգւոյ կեանք, հոգւոյ կերակուր և հոգևոր
հաց. յերկնից իջեալ և յերկիր մարմնով զգալեաւ ե-
րևեալ՝ առ 'ի զհոգի այժմ կենսացուցանել։

## ՍՐԲՈՅ ՀՕՐՆ ՄԵՐՈՅ ՅՈՀԱՆՆՈՒ ՈՍԿԵԲԵՐԱՆԻ ՅԵՓԵՍԱՑԻՈՑ ԳՐՈՑՆ ԽՐԱՏ ՅՈՐԴՈՐԱԿԱՆ ՎԱՍՆ ԶԳՈՒՇԱՒՈՐ ՀԱՂՈՐԴՈՒԹԵԱՆ,

### ԶՈՐ ԿԱՐԵՒՈՐ ՀԱՄԱՐԵՑԱՅ ԱՍՏ ԴՆԵԼ ԵՒ ՓՈՔՐ ՓՈՔՐ ԶԶՕՐՈՒԹԻՒՆ ԱՍԱՑԵԼՈՑՍ ՅԱՅՏՆԵԼ

“ՊԱՏԿԱՌԵՍՑՈՒՔ 'ի մերձաւորութենէ, ահն
ածեսցուք յազգականութենէ, երկիցուք զուցէ կրու-
րիցի ոք 'ի մարմնոյն. զուցէ քակիցի և անարժան
երևեսցի։ Եթէ թագ ոք մեզ ոսկի դնէր, և պսակ
ոսկի 'ի վարսից վերայ, ո՞չ ապաքէն զամենայն հնարս
հնարէաք, զի անշունչ ականակապ պսակին արժանի
գտանիցիմք։ Իսկ այժմ ոչ եթէ թագ 'ի գլուխս ունիմք,
այլ Քրիստոս իսկ գլուխ մեր եղև՝ որ առաւել ևս
մեծ է քան զամենայն, և մեք չհամարիմք ինչ. հրեշ-
տակք սարսեն 'ի նմանէ, հրեշտակապետք և վերին
զօրութիւնքն, և մեք մարմին ևս եմք նորա, և ոչ այ-
նիւ և ոչ այսիւ պատկառեմք. և ո՞ր յոյս փրկու-
թեան կայցէ մեզ։ Նայեաց ընդ աթոռն արքունա-
կան, 'ի միտ առ զպատուոյն առաւելութիւն. զի այն
ևս քաջ կարէ քան զգեհեանն երկեցուցանել զմեզ
եթէ կամիք. եթէ ընաւ գեհեն չէր, պատուին այն-
պիսի պատուով և յետոյ յանարժանութիւն գտա-
նել, քան զորպիսի տանջանս չիցէ անհնարին, քան
զո՞ր պատիժս՝ 'ի միտ առ. առ ո՞ր ընթեր նստի քո
գլուխն, ընդ ո՞ր աջմէ. և այն իսկ բաւական է քեզ
ընդ ամենայնի, 'ի վերոյ քան զպետութիւնս և զիշխա-
նութիւնս և զզօրութիւնս. և նորա մարմինն 'ի դի-

ւաց կոխի, այլ քաւ լիցի եթէ այնպիսին մարմին իցէ այնուհետեւ ։ Որ ընտիր ծառայքն իցեն՝ զարհուրին, և դու զմարմինդ ապստամբաց կոխանս արկանես, որպիսի՞ պատժոց չիցես արժանի ։ Եթէ զոտն թագաւորի ոք կապիցէ և կորեսցէ և շանց ընկենուցու՝ ո՞չ ապաքէն անհնարին պատժովք չարալլուկ դառնամահ մեռանիցի. և դու զամենայն իսկ մարմինն՝ չարաչար գազանաց արկանես կերակուր, և ո՞չ զարհուրիս, և չդողաս ։ Եւ քանզի զտէրունական մարմնոյն անկաւ ձեռն, ծն առեալ և զայն յիշեսցուք՝ որ խաչեցաւն և թաղեցաւն և զենաւ ։ Մարմին ես Քրիստոսի, համբեր խաչի, որպէս նայն տարաւ. առ յերես թուք, ընկալաւ և ապտակ, համբեր բևեռաց, այդպիսի մարմին էր և այն մարմինն և չարար մեղս, և ոչ նենգութիւն ամենևին գտաւ ՚ի բերան նորա. ձեռք նորա ՚ի բարերարութիւնս համակ ձգեալ՝ օգուտ ևեթ գործէին, չեհան երբէք ինչ անպիտան ընդ բերան, զի դիւահար կոչէին և չասէր ինչ ։ Զմարմնոյն դեռ են բանք, և յայն մարմնոյն չէ ինչ ընդհատ մեր մարմինս և ոչ հեռի. մանաւանդ որք հաղորդիցիմք ևս մարմնոյն, և ճաշակիցեմք յարենէն, ՚ի միտ առէք զի ՚ի նորա մարմնոյն որ ընդ աջմէ նստի և ՚ի հրեշտակաց փառաւորի՝ ճաշակեմք ։ Վա՜յ է ինձ և եղո՜ւկ եմ ես. ճանապարհ փրկութեան կայ մեր առաջի, մարմին արար զմեզ իւր, և զիւր մարմինն ետ մեզ կերակուր, և ոչ ինչ յայնցանէ դարձուցանէ զմեզ ՚ի չարեաց ։

Ո՜ խաւար և անհնարին խորք ամբարշտութեան. ո՜ այնպիսի անկասկածութեանս, և ոչ ածելով զմտաւ զայնպիսի ահագինս ։ « Զվերինն, ասէ, խորհեցարուք, ուր Քրիստոս է նստեալ ընդ աջմէ Աստուծոյ ». և զայն թողեալ ամենեքեան՝ զոչնչիւք զբաղեալ են, և այլք զփառաց զհետ երթան, և ոմանց ՚ի ցանկութենէ և ՚ի կարեաց ըմբռնեալք ։ Չտեսանէ՞ք զի և ՚ի մարմնոյ մերոյ և ՚ի ցանկութենէ որ ինչ անպիտան իցէ՝ կտրի և ՚ի բաց պարուրի, և չիք ինչ անտի շահ՝ թէպէտ և ՚ի մարմնոյն իցէ, քանզի մեռեալ է, և չէ ինչ օգուտ՝ յորժամ մեռեալ և փտեալ իցէ, յորժամ և այլումն ապականութիւն ևս իցէ ։ Մի՛թէ ինչ յայն ապաստան լինիցիմք՝ եթէ միանգամ եղաք անդամք մար-

մնոյն. եթէ բնութեան անդամն որ չիցէ պիտանացու մարմնոյն՝ 'ի բաց կտրի, իսկ կամաց անդամն եթէ ոչ յարեսցի 'ի մարմինն, որպիսի ինչ անհնարին անցս չարչարանաց կրեսցէ „:

ՄԵԿՆ. Տե՛ս զայս զի կամօք եմք անդամք Քրիստոսի, բնութենակից մարմնոյ Քրիստոսի եկեղեցիս:

ԲՆԱԲ. “Յորժամ հատանուցու խիստ մարմինն, յորժամ փնացք երակացն խնուցուն, յայնժամ մեռանի. նոյնպէս և մեք յորժամ խնուցումք զլսելիս, յորժամ վարի ընդդէմ գլխոյն մարմինս, յորժամ չճաշակիցեմք 'ի հոգևոր կերակրոյն, յորժամ չարիքն փոխանակ մաղասոյ եղծանիցեն զանոացն ստամոքսն, անտի ծնանին ամենայն ցաւք, և 'ի ցաւոցն փուտ գործի, և պիտոյ լինի այնուհետև այն հուր 'ի սրբել, որ հարկանէ և ընդ մէջ կտրէ, քանզի ոչ առնու յանձն Քրիստոս ընդ այնպիսի մարմնոյ միանալ յառագաստն: Եթէ որ զհանդերձս աղտեղիս զգեցեալ էր՝ 'ի բաց եհան 'ի հարսանեացն, որ զմարմին աղտով ծրդեալ իցէ՝ ընդ այնպիսին զորպիսի անցս չանցուցանիցէ: Բազումս տեսանեմ զի վայրապար և անխտիր և ըստ սովորութեան իմն հաղորդին մարմնոյն Քրիստոսի: Եթէ եկեսցէ ասէ, ժամանակ քառասներորդացն և յայտնութեանն, բարիոք է ասեն հաղորդել, մերձենալ յորէնս. Թէպէտ և ժամանակ մատչելոյ ոչ յայտնութիւնն է և ոչ քառասներորդքն, այլ հոգւոյն հաստատութիւնն և սրբութի̃. այնու հանդերձ հանապազ մերձեցիր, և առանց այնր մի երբէք ժտեսցիս: “Քանիցս անգամ եթէ առնուցուք, ասէ, զմահն տեառն ձերոյ պատմեսջիք „. այսինքն եթէ յիշատակ առնիջիք ձերոյ փրկութեանն և իմոյ բարերարութեանն: Ի միտ առ, որ 'ի զոհս հնոյն մերձենային՝ որպիսի սրբութեամբ պարկեշտանային. որչափ անկեղծութեամբ մատչէին, զինչ չառնէին, զոր հնարս ոչ հնարէին, զի ամենայն իւիք սուրբ գտանիցին. դու յայն զենումն և 'ի պատարագ մերձենաս՝ յորմէ և հրեշտակք դողան և հրեշտակապետք սարսին, և ժամանակաւ զիրսն սահմանես „:

ՄԵԿՆ. Տե՛ս զկամս երանելւոյս, զի ոչ կամի զմեզ ժամանակաւ, այլ միշտ ջանալ և մերձենալ սրբութե̃ 'ի սուրբ հաղորդութիւնս, և այն զի իւր մեծվայել-

չուԹիւնն ձգեսցէ զմեզ 'ի սէր իւր, և ոչ հարկք ժամանակաց ։

ԲՆԱԲ. " Նա զիարդ կարասցես յանդիման լինել առաջի բեմին Քրիստոսի ։ Դարձեալ և պիղծ շըրԹամբք ժտիցիս 'ի մարմինն. դու որ զԹագաւոր ոք չիշխէիր համբուրել եԹէ չար ինչ 'ի բերանոյդ գայր, և զերկնաւոր Թագաւորն հոտեալ հոգւով համբուրես, մեծի Թշնամանաց իրք են ։ Ագէ՛ ապա, անլուայ ձեռօք յօժարիցե՞ս մերձենալ 'ի պատարագն. Թուի ինձ Թէ լաւ համարէիր բնաւ չմերձենալ, քան Թէ աղտեղի ձեռօք մատչիցիս. փոքուն այնչափ երկիւղած ես, և աղտեղի ոգւովդ անխտիր ժտիս հաղորդել. Թէպէտ և ձեռաց աղտ առ ժամանակ մի է, և հոգւոյն ամենևին ներկեալ ,, ։

ՄԵԿՆ. Ողորմութեան վարդապետս՝ զայս ոչ սահման դնէ զբանս կսկծելի, այլ ահ արկանէ վարդապետութեամբս իւրում ժողովրդեանն, որոց օրէնն է ցանկն հաղորդել. մեք մի զվարդապետութիւնս որպէս զկանոնադրութիւն ընկալեալ՝ յայս ապաստան խորշիցիմք ։

ԲՆԱԲ. " Չտեսանիցե՞ս, զիարդ զսպասն սրբեմք և ջինջ և մաքուր առնեմք. առաւել քան զայն զոգիս մեր պարտիմք սրբել. քանզի այն վասն մեր սրբի՝, և ոչ ինչ հաղորդի ընդ որ 'ի մեզ 'ի ներքս մտանէ. քանզի ոչ եԹէ զգայուն ինչ է սպասն. և եԹէ սպասն աղտեղի էր, չառնուիր յանձն նմա զօրութիւնն մատուցանել, և ոգւով աղտեղեաւ անխտիր մատուցանես ,, ։

ՄԵԿՆ. Սպաս զքահանայական զգեստն ասէ, զըօ-կիհն և զմաղզմայն և զծածկոյԹս սեղանոյն. բայց մեք զայս չեմք տեսեալ, զոր ասէ երանելիս եԹէ հարկաւոր է այնոցիկ սրբկիկ լինել. այլ զի՞նչ կորկն և աղտոյն քսան տարւոյ կամ աւելի հոն կայ 'ի վերայ սկոյն, և մեք չլուանամք և չսրբեմք. նախ զի սպասուցն չունիմք սպասաւոր սարկաւագ, և ապա զի յառաւել զգուշուԹենէն մոլորեալ գնամք. սա ասէ՝ Թէ որպէս հոգւոյդ է հարկ սուրբ լինելն, նոյնպէս և մարմնոյն զգեստուց քահանայիդ և սպասուցն որովք պատարագես ։

ԲՆԱԲ. " Բայց կարի ինձ անհարԹ և անձահ և այլ ազգ զիրան տեսանեմք. յայլ ժամանակս Թէպէտ

և տուրք իցեն՝ չմերձենան, և զատկի Թէպէտ և կարի իսկ յանդգնեալ 'ի չարիս իցէ՝ անխտիր մատչի ։ Ա՛չար սովորութեանս և կանխակալոյ անմտութեան ․ 'ի զուր ուրեմն համապազորդ զենումն լինի ,, ։

ՄԽԿՆ ․ Այս բանս առ Հոռոմոց սովորութիւնն է, զատկի անպատրաստ հաղորդելն, զորս զգուշացուցանէ միշտ հաղորդել ․ իսկ Հայք զայս զգուշութիւն լուեալ, ամենեքին 'ի բաց կացին 'ի նմանէ, աշխարհականք և կրօնաւորք բազումք ։ Օ որ օրինակ Թէ վարդապետ զմանուկն վասն սխալելոյ յուսումն՝ հարկանէ ․ իսկ այլ ոք 'ի բացուստ տեսեալ զհարուածսն, երկուցեալ՝ ամենեքին հրաժարէ յուսմանէն ․ վասն որոյ նա հարկանի և սա մնայ անխրատ և առանց հարուածոց ։ Արդ ո՞ր լաւ էր, ուսանե՞լն և սակաւ հարուածովն զմեծ օգուտն շահել, Թէ անհարուած մնալ՝ և անուսումն անասուն ․ այսպէս և Հայք տեսեալ զի Յոհան զիւր ժողովուրդն վասն սխալելոյ յուսումն հաղորդութեան խրատէ սաստիւ, յերկիւղէ սաստիս՝ և զհաղորդելն Թողին ամենեքին, և զգանձս երկնիցն ․ և չիմանան Թէ հեռի են յԱստուծոյ որպէս և ցուցանելոցս է ․ լաւ էր մօտ յԱստուած ծեծուիլ[2], քան 'ի նմանէ հեռի լինել ․ զի Թէ բարի է չհաղորդելն, 'ի նոյն են հեԹանոսք ․ սա տրտնջէ Թէ միշտ ե՞ր չէք այսմ 'ի պատրաստել[3] ։

ԲՆԱԲ ․ “Այսրապա՞ր ինչ կայցեմք առաջի սեղանոյն ․ չիք ոք որ հաղորդի, չէ ոք որ յօրէնան մերձենալ ․ ոչ զայն ինչ ասեմ զի անխտիր ոք մերձենայցէ, այլ զի արժանի զանձինս յօրինեսցուք ․ չիցես արժանի պատարագին և ոչ մերձենալոյ 'ի սրբութիւնն, Թէ այնպէս իցէ՝ և ոչ աղօԹիցն ․ չլսիցես, զի՞նչ աղաղակէ քարոզն, եԹէ երախայք յաղօԹս կացէք, և որ ոչն հաղորդի՝ ընդ երախայսն է ․ զի՞ կայցես 'ի ներքոյ՝ որ ընդ երախայսդ իցես ․ ընդէ՞ր ասես Թէ որ երախայքդ էք ելԹայք, և դու ժպրհեալ անցեալ կաս իբրև զսուրբ ոք ։ Այլ չիցես յայնպիսեացն, այլ 'ի կարողացն ․ և ընդէ՞ր չփուԹայցես հաղորդել ․ ո՞չ ապաքէն զի ոչ համարիս ինչ զիրսն ։

1 Մի օրին․ Սաստիւ ։
2 Երկու օրին․ Ծեծանել ։
3 Մի օրին․ Ի պատրաստել բան ։

ՄԵԿՆ. Տեսանես, զի ամենայն ջան երանելւոյս և սպառնալիս մտ 'ի հաղորդելն փութացուցանելոյն է, և ոչ թէ արտաքոյ եկեղեցւոյ հանել, որպէս և կարծեմք. այլ զի՞նչ. զոր օրինակ իշխան տեսանէ զծառայ հեղգ 'ի սպասաւորութեան, բարկացեալ ասէ. թէ այդպէս կամիս ծառայել, գնա և մի՛ մնար առ իս. զայն մտօք ասէ, զի նա յերկեղէն փութասցի 'ի պաշտօնն. թէ ծառայն իմաստուն լինի՝ ժրէ, ապա թէ անմիտ՝ փախչի ըստ բանին, և լինի ըստ հեղգութեանն և անհաւատ. այսպէս և սա սպառնալով ասէ. չես արժանի պատարագին, այլ և ոչ եկեղեցւոյս. որպէս զի ջանասցեն ըստ եկեղեցւոյն և հաղորդին լինել պատրաստ. ապա թէ նոքա ողք զայս լուան ելին յեկեղեցւոյն՝ թէ եպիսկոպոսն վասն ոչ հաղորդելոյն սահմանեաց մեզ չմտանել յեկեղեցին, մին այլ օրն՝ տասն մարդ չէր կալեալ ունկնդիր իւր բանին. բայց զայս վասն այնր ասէ, զի անհնար էր քրիստոնէի արտաքոյ եկեղեցւոյ աղօթել. դու անմտութեամբ զսպառնալիս օրէնք ընչո՞ ընկալար, և զանօրէնութիւնդ օրինօք գործել, համարիս թէ Յոհան ասաց. Յոհան սպառնացաւ, որ բան 'ի ներս մտես ։

ԲՆԱԲ. " Մի՛տ դիր աղաչեմ. արքունական սեղան է, հրեշտակք սպասաւորք սեղանոյն, ինքնին իսկ թագաւորն եկեալ հասեալ 'ի սեղանն, և դու կաս, յօրանջես և ձկտիս, և աղտեղի հանդերձս ունիս, և չհամարիս ինչ վնաս. այլ սուրբ հանդերձս ունիցիս. եթէ այնպէս ինչ իցէ, ապա բազմեա և վայելեա "։

ՄԵԿՆ. Լուր, մի՛ խցեր զականջսդ, զի 'ի Յոհաննու պատարագն շուրջ էին արք և կանայք. ձկտէին, յօրանջէին. դու 'ի քոյոյդ ուստի՞ ուսար զհանելն և զբաժանել զանդամքն 'ի գլխոյն, ո՛ անմիտ ։

ԲՆԱԲ. " Համապազ գայ շրջել զբազմականօքդ, և ընդ ամենեսեան միշտ խօսի, և ասէ ցխոլձականն թէ ընկեր, զի՞արդ կաս աստ՝ որ ոչ ունիս հանդերձ հարսանեաց. չասաց թէ ընդէ՞ր բազմեցար, այլ յառաջ քան զբազմելն և մտանելն ես անարժան համարեցաւ. քանզի չասաց՝ թէ ընդէ՞ր բազմեցար, այլ թէ ընդէ՞ր մտեր. զոյն և այժմ ընդ ամենեսին մեզ խօսի, որք անամօթութեամբ և յանդգնութե՟ այսր մտանեմք.

ամենայն որ ոչ հաղորդի խորհրդոյս՝ անամօթութեամբ և ժպրհութեամբ կայ, և չէ նմա պարտ կալ»:

ՄԵԿՆ. Մ՚ի զսպառնալիս օրէնս համարիս, և արտաքս գնաս. զի վասն այնր ասէ, չէ պարտ կալ, քանզի զկալն հարկաւոր գիտէ. կամի զի և հաղորդեսցիս հարկաւորապէս. ապա թէ սա զի ոչ հաղորդիս՝ բարկանայ, դու թողուս և զտունս և գնաս, յայտ է թէ ասես թէ ես 'ի քո գնդէդ ելայ, ոչ այլ 'ի տունդ մտանեմ, և ոչ 'ի սպառնալեացդ զարհուրիմ. և ես այնուհետև յայլ դաս:

ԲՆԱԲ. «Վասն այսորիկ զերախայսն յառաջագոյն որոշեմք 'ի բաց, և ապա զխորհուրդն կատարեմք»:

ՄԵԿՆ. Զերախայսն որոշէ և ոչ զքրիստոնեայսն:

ԲՆԱԲ. «Նա և աստէն իսկ յորժամ այր տէր՝ 'ի հաց կամիցի լինել, որ ոք յանցաւոր 'ի ծառայիցն իցէ՝ մեկուսի գնայ. նոյնպէս և աստ, յորժամ սպատարագն ելանիցէ 'ի սեղանն, և Քրիստոս 'ի վերայ դնիցի գառն անարատ, և լսիցես եթէ ամենեքեան աղօթս արասցուք, յորժամ տեսանիցես զդրունս 'ի միմեանս ածեալ»:

ՄԵԿՆ. Դրունք աստ 'ի միմեանս ածեալ, ոչ զեկեղեցւոյն ասէ, այլ զխորանին սրբոյ, ըստ որում հոռոմոցն սովորութիւն. քանզի յիւր աթոռն դեռ այն եկեղեցին չէն կայ՝ ուր սա զայս բանքս ասաց, և սովորութիւնն զոր աւանդեալ է՝ անշարժ է:

ԲՆԱԲ. «Ի միտ առնուցուս եթէ երկինք 'ի վերուստ բանին, և հրեշտակք իջանեն. զոր օրինակ երախայի ումեք չէ պարտ 'ի ներքս մնալ, նոյնպէս և ոչ կնքաւորացն աղտեղեաց»:

ՄԵԿՆ. Աւադիկ հասկացիր, զի 'ի ներքս էր կնքաւորն աղտեղի, և սա ոչ զայն օրէնսն լուծանէ, այլ երկեցուցանելով 'ի հաղորդելն յօժարեցուցանէ. դու մի զայս լսելով զբարիոք գրեալս չարաչար ընթեռնուս:

ԲՆԱԲ. «Ողջէ աստ, եթէ ոք 'ի ճաշ կոչեսցի, ընդ ձեռս լուասցէ, և բազմեսցի, և մատչել չկամեսցի 'ի սեղանն և չճաշակէ ինչ, ո՞չ թշնամանիցէ զկոչեցեալսն. ո՞չ ապաքէն լաւ էր այնպիսոյն թէ բնաւ իսկ չէր եկեալ»:

ՄԵԿՆ. Այս լաւս ոչ եթէ տիրապէս լաւ դնի, այլ զինչ. հեթանոսին լաւ էր թէ չէր լեալ քրիստոնեայ,

քան լինել և զՔրիստոսի կամսն չառնել. զայս վասն այնր ասէ, որպէս զի քրիստոնեայ գոլով երկնչիցի. այսպէս և քեզ ասէ սպառնալիս, ոչ զի ելցես, այլ զի հաղորդեսցիս, դու ընդ այսմ լսելն և 'ի տանէս ես ելանես:

ԲՆԱԲ. "Որպէս և դու մտեր 'ի ներքս, զօրհնութիւնն ընդ ամենեսեան օրհնեցար, յայտ արարեր զի յարժանաւորացն իցես, այնու զի ոչ ընդ անարժանսն արտաքս գնացեր":

ՄԵԿՆ. Տես զի իմ չէ բանս որ երկիւղիւ ցուցանեմ, Ոսկեբերանին է. զի մտին յեկեղեցին արժանաւորքն և անարժանքն գիշեր և ցերեկ յամենայն աղօթսն. և ապա 'ի խորհուրդ պատարագին՝ միայն երախայքն արտաքս առաքէին. այժմ մեք 'ի պատարագէն ոչ թէ միայն պատճառաւ անարժանաւորութեանն խորշիմք, այլ 'ի տանէն ուր կատարի գիշեր և ցերեկ. զօրհնութիւնն զոր սա խորհրդոյ պատարագին դնէ, մեք տանն տամք մոլորեալքս:

ԲՆԱԲ. "Ո՞ խնդրդ մնացեր 'ի ներքս, և ոչ հաղորդիս սեղանոյս: Չեմ, ասէ, արժանի. թէ այնպէս իցէ, և ոչ աղօթիցն հաղորդութեան. քանզի ոչ միայն 'ի պատարագն, այլ և յօրհնութիւնսն իջանէ Հոգին":

ՄԵԿՆ. Աղօթիցն ասէ, և ոչ տանն:

ԲՆԱԲ. "Ո՞վ իր որ միշտ 'ի տունս աղօթես, յայս ժամս չես սմին արժանի":

ՄԵԿՆ. Աստէ, և ոչ օրէնս դնէ. մեք բնաւ ոչ ընդ տունն գիտեմք և ոչ զաղօթսն, միշտ արտաքոյ գոլով:

ԲՆԱԲ. "Զտեսանես, զխնդրդ սպասաւորք զսեղանն լուանան, լուանան և զտունն, սրբեն և զսկտեղսն[1] և զգաւթակն յօրինեն և դնեն, և այն յաղօթիցն ժամն լինի":

ՄԵԿՆ. Լուանան ասէ, յայտ է թէ սարկաւագքն և կէս սարկաւագքն, և ոչ աւագերէցն՝ զսեղանն սրբեն և զսկտեղսն[2]. չաւիլեն զտունն և զփոշին 'ի սեղանն կուտեն, և զսպասն յաղտէն մաքրել խորշին անպատիւ զգուշութեամբ: Նզքատ եմ ասէ. բարիոք. լիցուք աղքատ և 'ի սեղանոց, կալցուք մի սեղան, զոր կարող

1 Երկու օրին. Զօհիհան:

2 Երկու օրին. Զօհիհան:

լինիմք վայելչապէս պաշտել, և ոչ կրպակս վաճառուց բազմացուցանել:

ԲՆԱԲ. "Մինչ դեռ քարոզն աղաղակիցէ, իբրև սանդուղք շուրջ լուսացուք զեկեղեցի, զի 'ի սուրբ եկեղեցւոջ յօրինեսցի ամենայն ինչ, և մի ինչ իցէ անդ սպի կամ խորշ և՛ կամ աղտ. չեն արժանի և ոչ աչք անարժանիցն հայել յայնպիսի սրբութիւնսն, և ոչ ականջք լսել զայնպիսի բարբառսն զահագինս":

ՄԵԿՆ. Սաստ է և ոչ օրէնք. իսկ եթէ օրէնս համարիս, կա՛լ որպէս պարտն է. գիշեր և ցերեկ աղօթէ՛ յեկեղեցիս համարձակ, և յայնժամ միայն ել. որպէս զի ծանիցուք թէ խորհրդոյն առնես զպատիւն ըստ հրամանի սրբոյս. ապա թէ միշտ ես 'ի դուրս՝ տգէտ ես, վասն որոյ և անհաւատ:

ԲՆԱԲ. "Թէպէտ և գաղանի, ասէ, մերձեսցի՝ քարամբք քարկոծեսցի. և այնպէս հպելոյ անգամ 'ի լեառն չէին արժանի. Թէպէտ և յետս մատչէին և տեսանէին ուր կայրն Աստուած՝ չհամարձակէին տեսանել: Մինչ դեռ չէ եկեալ հասեալ նա՝ 'ի բաց գնա. չէ քեզ իշխանութիւն անդ կալ առաւել քան զերախային. քանզի չէ հասարակ բնաւ չհպել 'ի խորհուրդն, և հպել, և յետոյ անցանելն և արհամարհելն":

ՄԵԿՆ. Հայրն զորդիդ վարէ. մի՛ գնար, թէ և բիւր ասէ թէ գնա, այլ ծանիր թէ 'ի ծոցն կոչէ սաստիւ. ապա թէ գնաս, չհասկացար զհօր քո բան որպէս պարտն է, թէ քնքշութեամբ վարի առ որդիդ, և ոչ ուղղութեամբ. ապա թէ ոչ, լո՛ւր:

ԲՆԱԲ. "Էր և այլ ինչ բազում ասել ահագինս. այլ զի մի՛ ծանրաբեռնիցեմ զմիտս ձեր, բաւական համարիմ և այսչափ միայն ասել. զի որ սակաւուք ոչ ընդգաստանայցեն. և ոչ բազմօքն խրատեսցին, զի մի՛ առաւել դատապարտութիւն գործիցեմք ձեզ":

ՄԵԿՆ. Տե՛ս, չէ օրէնք ահագին [1], բանք է ահարկու, զի ընդ յանդգնութեանն և զգուշութիւն խառնեսցուք. մի՛ դու փոխանակ այսր զփախուստն ընտրեր, լաւ համարել զոչ մնալն կենդանի, քան թէ այսպէս յանդիմանիլ. որպէս և ասէ ուրեմն ածաբան զայս:

1 Մի օրին. Աշտոհն:

ԲՆԱԲ. «Աղաչեմ զամենեսեան, մի միայն 'ի գալն փութայցէք, այլ հանդերձ գալովն և մերձենալոյ առժամն զանձինս պատրաստեսջիք»։

ՄԵԿՆ. Հայեաց զի զորս վարեաց բազում անգամ, դարձեալ վաղուն նոցին գալոյ ճանապարհ հորդէ. որպէս զի ուսցիս թէ հայր է. զուղղելն կամի սաստելովն՝ և ոչ զգնալն։

ԲՆԱԲ. «Աղէ ասա, թէ թագաւոր հրաման տայր, եթէ որ զայս ինչ գործեաց՝ յիմ սեղանոյս 'ի բաց կացցէ, ո՞չ ապաքէն զամենայն հնարս հնարէիք զի մի 'ի բաց կացցէք 'ի սեղանոյն»։

ՄԵԿՆ. Ուրեմն և դու սուրբ հայր, վասն հնարս ուսուցանելոյ վարես զմեզ 'ի քէն առ 'ի միշտն մերձենալ, և ոչ թէ զի հեռասցուք. բայց սակայն բազումք տգիտացեալք՝ զսաստ հայրենի որպէս զօրէնս պահեն և գնան։

ԲՆԱԲ. «Իսկ նա ամենևին յերկինս կոչեաց զմեզ յարքունական սեղանն 'ի մեծն և 'ի սքանչելի, և մեք հեղգամք և յապաղեմք, և չփութամք և գուն 'ի վերայ իրացն գործեմք. և զի՞նչ յոյս փրկութեան կացցէ մեզ. չիք պատճառ զտկարութիւն դնել և ոչ զանութիւն. ծուլութիւնն միայն անարժան կացուցանէ»։

ՄԵԿՆ. Եթէ զայս 'ի պէտս զծուլութիւնն ուղղելոյ խօսեցաւ, և ոչ զյոյսն հատանելոյ, իսկ մեք ըստ հակառակն եղեալ՝ նիւթ առնումք զվարդապետութիւնս առաւել ծուլութեան, և ասեմք. դու 'ի հաղորդն կոչես ճաշակել, ես և ոչ յեկեղեցիս մտանեմ։ Արդարև չունիմք յոյս փրկութեան, ոչ միայն մեղուցեալք, այլ և օրինօք մեղանչել. այսինքն 'ի յանցանելն ըստ օրէնսն՝ զօրէնսն համարիմք կատարել։

ԲՆԱԲ. «Այս 'ի մէնջ ասացաւ. բայց որ բանայ ըզսիրտս և տայ զհոգւոյն յորդորմանն, յորդորեսցէ զմիտս ձեր և տնկեսցէ զ'ի խոր սերմանիս. զի արեամբ նորա յղասջիք ծնանել զհոգւոյն փրկութիւն, և գալ այսր համարձակութեամբ սրտի և աչալուրջ երեսօք. ըստ այնմ, եթէ «Որդիք քո որպէս նորատունկ ձիթենեաց շուրջ զսեղանով քո»։ Ոչ աւելորդ ինչ և մի դաժանագոյն, և մի խակ և տհաս. զի այնպիսի սեղանոյ նորատունկք պիտանացու են, պտղաբերիչք զարմանալի պտղոյն»։

ՄԵԿՆ. Դարձեալ լուր զի հորդէ գալըս ճանապարհ հայրս որդւոցն վաղորդեան աւուրն, որոց այսօր զաստուս երևեցոյց. և զորս նախ ընդ երախայսն հանէր, այժմ ձիթենի շուրջ զարքունական սեղանոյն կոչէ։

ԲՆԱԲ. «Ոձիթենւոյն ասեմ, որպէս զի ամենեցուն լինիցի շուրջ զօրբով սեղանոյն պատկիլ, և մի՛ 'ի զուր ինչ և ընդ վայր ժողովել այսր»։

ՄԵԿՆ. Սա ոչ սոսկ կամի զժողովեալսն, դու փախուցեալ և զժողովեալողն Թողուս. սա 'ի սեղանն ձգէ բռնի, դու և յեկեղեցւոյս ելանես. սա խրատովս ուղղել ջանայ, դու երկուցեալ 'ի խրատէս՝ 'ի վախից մղիս։

ԲՆԱԲ. «Այլ ահիւ և երկիւղիւ, այնպէս զի և զՔրիստոս տեսանիցէք համարձակութեամբ, որում լիցի ամենեցուն մեզ արժանի լինել, շնորհօք և մարդասիրութեամբ տեառն և փրկչին Յիսուսի Քրիստոսի, որում վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ. այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից, ամէն»։

## ԶԻ՞ՆՉ ԾԱՆԵԱՔ ԶՓՈՒԱՆԳԱՑ ՍՈՎՈՐՈՒԹԻՒՆ Ի ՀԱՂՈՐԴՈՒԹԻՒՆ ԽՈՐՀՐԴՈՅՍ

ՈՉ ԻՆՉ անպատշաճ վարկանիմ յետ 'ի հաւատարիմ վկայութենէ սրբոյ հօրս ուսանելոյ զՀոռոմոց յորդորումն հաղորդութեան, քննել և զՖռանգացն։ Քանզի նոքա նուրբ և անօսր ընթանան զայս շաւիղ, և բազմաց անգիտելի. այսինքն զի ոչ տիրապէս ճաշակեն 'ի տէրունական սեղանոյն ժողովուրդքն՝ բաշխելով քահանային, այլ՝ այլ իմն նորաձև ունին օրէնք օտար յայլ քրիստոնէից ազգաց շաւղաց. վասն զի քահանայն որ պատարագէ 'ի մէջ ժողովրդեան, յետ ճաշակման սուրբ մարմնոյ և արեանն՝ զսարկաւագն համբուրէ. իսկ նա իջանէ և համբուրէ զմի ոք 'ի ժողովրդենէն, և 'ի նմանէ ընդ ամենեսեան տարածի համբոյրն երկեւղիւ և հաւատով, և այսպէս միանան ամենեքեան ընդ քահանային, և նովաւ ընդ Աստուծոյ։ Ինձ Թուի Թէ 'ի ճարտարութենէ իմաստութեան գտեալ զայս՝ հանճարեղ նոցին առաջնորդաց. զի յորժամ տեսին զեկեղեցի որ ըստ օրէ հեղգացեալս առ սրբոյ մարմնոյն ճաշակումն, որպէս և գրեացդ Յոհան, որոց հարկ է հանապազ 'ի

ումս վայելել, նայեցեալ 'ի տկարութիւնն՝ ոչ կամեցան զժողովեալսն անբաժինս 'ի ժողովրդենէն առնել, այլ հաղորդինս Քրիստոսի և միմեանց համբուրիւն. քանզի և նոյն ինքն ստուգաբանութիւն անուանս՝ զտարացոյց խորհրդոյս մեզ յայտնէ [1]. համբոյր. համն՝ մի ստուգի, այսինքն թէ բազումքն այսպէս հաղորդեալ իբերաց միանան [2], ուստի ճաշակեալ քահանայն զՔ՟ն միացաւ ընդ նմա, և հաղորդեցուցանէ իւր ըն-սարկաւագն համբուրիւն, ձգեալ և 'ի նա զշաղկապ հոգւոյն զոր ընկալաւ ընդ մարմնական ողջունին, որպէս և ինքն առ զմարմնոյն Քրիստոսի ճաշակմամբն : Իսկ սարկաւագն նմին հոգւոյն հաղորդեցուցանէ զամենայն ժողովուրդն, իբերաց և գլխոյն Քրիստոսի. այսպէս կամեցան նոքա զտկարութիւն ժողովրդեանն կցորդս առնել հաղորդութեանն :

Իսկ Յոյնք ոչ այսպէս, այլ այլով օրինակաւ : Քանզի զնշխար մնացուածոյ պատարագին բաշխէ քահանայն եկեղեցւոյն՝ առ 'ի նոյն միտս հայելով, այսինքն 'ի հաղորդութիւնն. զի որք ոչ 'ի սեղանն, գէթ նշխարի մնացուածոյն լցլին արժանի, և մի Քրիստոսի եկեղեցին սակս մեղացն զատեալ՝ մեկնեսցի 'ի հաղորդութենէ գլխոյն. այլ լցլին այսու փոքրկացեալքն յառաքինութենէ՝ փոքր ինչ նմին հաղորդեալք : Իսկ որք մաքրեն զանձինս որպէս պարտ է, և յօժարամիտ բաղձանօք 'ի տէրունական սեղանն ընթանան, երկոքին ազգդ հաղորդեցուցանեն սրբոյ մարմնոյ և արեանն : Բայց մուծին երկրորդ օրէնք՝ զիջանելով առ տկարութիւն ժողովրդեանն. քանզի 'ի սկզբանն ամենեքեան հաղորդէին պատարագին յամ օր, որպէս յայտ է յառաքելոյ և 'ի սրբոց հարցն բանից. յետոյ նուազեցաւ սրբութիւն և սէրն՝ ըստ որում [3] ուսար 'ի Յօհաննէ. և խորշին 'ի սեղանոյս բազումք, հայեցեալ 'ի խիղճս մտաց իւրեանց. և նոքա որ խորշին՝ չեն ստարք, այլ մկրտութե՟ն հարկաւորապէս անդամք Քրիստոսի : Հեռանալ ոչ կարեն՝ զի չեն անձանց տեարք, թէպէտ և գրաւին 'ի մեղաց. սորին վասն

1 Երկու օրին. Անգէ :

2 Ըստ յարմարութեան իրացս դնէ զստուգաբանութիւն. ապա թէ ոչ՝ ըստ ինքեան համբուրելն է իբր համաբուրել, բուրել առ միմեանս զնշան սիրոյ, որ և այս 'ի դէպ գայ առաջիկայ բանիցն :

3 Մի օրին. Որդէս :

բարեփորձ հարքն այսու ամբողջ հաստատեցին զաւանդ֊
նոցն օրէնք հաղորդութեան, զի մի ամենեւին սոքա ան֊
բաժին գնասցեն 'ի շնորհաց հոգւոյն Քրիստոսի ։ Եւ
ամն սփռէ յոգիս ազգին իւրոյ զհոգին սուրբ իջեալ յին֊
քենէ մարմնոյն համբուրիւ, եւ ամն տայ նոցին զնոյն շնորհ
նշխարովք սեղանոյն, եւ պահէն հաղորդ զարդարս եւ
զմեղաւորս հանապազ ընթացակցութեամբ գլխոյն իւ֊
րեանց Քրիստոսի ։

## ԸՆԴԷ՞Ր ՑԵՑ ՃԱՌԱԿՄԱՆՆ ՍԱՐԿԱՒԱԳՆ ԺՈՂՈՎՐԴԵԱՆ ԳՈՀԱՆԱԼ ՀՐԱՄԱՅԷ, ԵՒ ՔԱՀԱՆԱՅՆ ԾԱԾՈՒԿ ԱՂՕԹԻՒՔՆ ԳՈՀԱՆԱՅ

ՓՈՔՐ ինչ եւ չնչին ունին 'ի միմեանց զանազանութիւն ընթացք բանի գոհութեանն եւ օրհնութեան. քանզի օրհնութիւնն է յէիցս բարեացս Աստուծոյ փառաւորութիւն. իսկ գոհութիւնն՝ նորոգ առելոցն շնորհակալութիւն ։ Արդ մինչեւ ցայժմ յաղագս որոյ ունէին շնորհ յԱստուծոյ՝ օրհնէին. իսկ այժմ դարձեալ նորոգ ընկալեալ զհասարակաց պարգեւիս բաշխումն, 'ի վերայ որոյ գոհանալ հրամայէ դաստիարակ նոցին սարկաւագն. որպէս զի ըստ այսմ հաղորդք լիցին քահանայական աղօթիցն, որ խորհրդաբարն գոհանայ անդր 'ի ներքին վայրս սրբոյ խորանին ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՔԱՀԱՆԱՅԱԿԱՆ ԱՂՕԹԻՑ ԳՈՀՈՒԹԵԱՆ

“ԳՈՀԱՆԱՄՔ զքէն Տէր, որ զայսպիսի ճաշակումն բարութեան շնորհեցեր մեզ 'ի փրկութիւն կենդանութեան”։ Յետ կատարման խորհրդոյս վերստին դարձեալ առ Քրիստոս դառնայ աղօթիւքս՝ որպէս 'ի սկզբանն, առ որ եւ զգոհութիւնս նուիրագործէ. դու ասէ, շնորհեցեր մեզ. այսինքն զի ինքն պատարագեալ փոխանակ մեր առ զհոգին սուրբ, եւ իջոյց յառաջադրեալ նշանակս իւրոյ խորհրդոյ, զոր ճաշակեալ կենդանացաք հոգւով 'ի ձեռն հաւատոցն՝ 'ի մեռելութենէ վտանգի մեղացն ։

„Սովիմբ պահեա զմեզ սուրբս և անարատս, բնա-
կեալ զմեօք ամենայնիւ խնամովդ, հովուեա յանդաստանս կամաց քոց սրբոց և բարեսիրաց„ ։ Զի յառաջին աղ-տոյն ասէ, հաւատամք առեալ սրբութիւն կենդանարար ոճառաւս · բայց զի գոլով յաշխարհի՝ միշտ ՚ի յուզմանէ մեղացն ալեաց տարաբերիմք, կարօտիմք ունել զորբաբար դեղս կնիք և պահապան հանապազ մեզ ։ Եւ այս որպէս լինիցի · յորժամ նա Քրիստոս, ըստ որում խոր- դրէ, իւրովք խնամովքն շուրջանակի պահեսցէ զմեզ, և լիցի ճարակ արօտի մտաց մերոց ոչ զբաղումն աշխարհի և պատրանք, այլ կամք և պատուիրանք օրինացն Տ՟ն ։ Այս ասէ, հովիւդ քաջ որ զանձնդ քո եդեր այժմ ՚ի վերայ ոչխարացս, հովուեա զմեզ ՚ի քո պատուիրանացդ անդաստանէ կերակրեալ զմիտս · որ բարին է մեզ՝ տնօրինեա զնոյն ։

„Որով ամրացեալք յամենայն բանսարկուին ընդդիմութեանց, քում նեթ եղիցուք արժանի լսել ձայնի„ ։ Միշտ է ընդդիմամարտ մարդկան բանսարկուն, և հանապազ ջանայ[1] ՚ի պատրել զմեզ · այս սպառազէն լիցի ամուր, ասէ, ընդդէմ նորին մարտի ։ Բայց քննելի է, որպէս ամրութիւնն · նախ քան զայս յուսահատ էաք ՚ի փրկութենէ ըստ իւրաքանչիւր յանցանաց · իսկ այժմ ճաշակեալ զշնորհս սիրոյն Ք՟ի, զի մեր փոխան մեռեալ՝ զամենեսեան արդարացոյց, և զԱ՟ծ ոգին գիտութե՛ առեալ յինքն մարմնովն իւրով ՚ի մարմին և յանդամ իւր յեկեղեցիս սփռեաց · Թերևս փոքր ամրութիւն է այս ընդդէմ խաբէութեան հեշտութեն՝ զոր սերմանէ ՚ի մեզ բանսարկուն · կամ թէ տկարանայ՞ այս շնորհ ճաշակողացն մտօքն՝ առաջնորդել զհետ Քրիստոսի, և նորա առնել ձայնին ունկնդիր · ինձ թուի ոչ բնաւ ։

„Եւ քեզ միայնոյ քաջայաղթ և ճշմարիտ հովուիդ հետևել, և առ ՚ի քէն ընդունել զպատրաստեալ տեղի արքայութեանդ երկնից, Աստուած մեր և տէր և փրկիչդ Յիսուս Քրիստոս„ ։ „Ոչխարքն իմ, ասաց Քրիստոս, ձայնի իմ լսեն, և ես ճանաչեմ զնոսա · զկնի իմ գան, և ես տամ նոցա զկեանսն յաւիտենականս„ · զայս խոստումնս ՚ի կիր առեալ՝ նմին յիշե-

1 Երկու օրին · Հանապազաջան ։

ցուցանէ աղօթիւքս, թէ որք այժմ մարմնոյ քոյ հաղորդիմք՝ և չարչարակցութեանդ, հաւատով և սիրով ընդ հետս առաջնորդիդ եկեալ յարքայութիւնդ երկնից, այդր փառացդ լիցուք կցորդութեան արժանի, և մշտնջենաւորդ ուրախութեան:

## ԸՆԴԻՐ ԴԱՐՁԵԱԼ ՔԱՀԱՆԱՅԱՊԵՏՆ ԶԳԵՑԵԱԼ ԶԵՄԻՓՈՐՈՆՆ ՊԱՏՈՒՈՅ Ի ՄԷՋ ԵԿԵՂԵՑՒՈՅՆ ԻՋԵԱԼ ԱՂՕԹԷ

ԵԹԷ զառաջինն որ յաղագս այսր բանի ամբողջ ունիմք ամբարեալ 'ի յիշողական միտս, կարողապէս և զայսր ըստ կարգի ուսանիմք զխորհուրդ. արդ քանզի ցուցաք զքահանայապետն պատկեր Քրիստոսի ըստ մարմնաւորութեանն՝ կացեալ 'ի դրունս եկեղեցւոյն, և ապացոյց նմին 'ի խորանն համբարձեալ և 'ի վեհագոյն աթոռն բազմեալ, յետ որոյ և յանդիման եղեալ Աստուծոյ Հօր ըստ Քրիստոսի 'ի ներքին կողմն վարագուրին, կատարեաց զվասն մեր բարեխօսութեանն սպասաւորութիւն յերկրի, որպէս և Քրիստոս կատարէ յերկինս. և ետ նուէր Աստուծոյ Հօր զմարմինն Քրիստոսի իւրովք խորհրդածութեամբք՝ զոր նուիրէ Քրիստոսի 'ի յերկինս, որով հաշտեալ Հօրն՝ ետ 'ի նա զՀոգին սուրբ. և նա առեալ զնոյն առանց չափելոյ 'ի մարմինն իւր, բաշխեաց եկեղեցւոյս ըստ իւրաքանչիւր չափոյ և արժանաւորութեան. այսմ ամենայնիւ զնկարագրութիւն փրկչին մերոյ կերպացոյց առաջի մեր՝ իւրս քահանայապետ, և սպասաւորեաց ամենեցուն փրկութեան, որպէս և Քրիստոս սպասաւորէ մինչ 'ի վախճան աշխարհի: Այց սա այժմ և զմիւսանգամ նորա փառաւոր գալստեանն տայ մեզ տարացոյց, կրկին դարձեալ 'ի մէջ եկեղեցւոյս գալով պատուական եմիփորոնաւն. որպէս և նա, զի յետ յերկրէ յերկինս վերանալոյն համբարձեալ է դարձեալ յերկնից գալ, և իւրաքանչիւր ումեք ըստ իւրում գործոց զվարձս աշխատութեանցս հատուցանել, այսպէս և

1 Երկաւ օրէն. Հաղորդ էմ:

սա՝ որ ել յապացոյցն երկնի՝ 'ի խորանն , յետ կատարելոյ զամենայն տնօրէնութիւն բարեխօսութեան՝ գայ դարձեալ 'ի ստորև , և զվարձս աշխատութեան գործոց աղօթից ժողովրդեանն հատուցանէ բարձրաձայն աղօթիւքն ։ Նա էր վասն բարձրաձայն . քանզի այս օրհնութիւն է , զոր առեալ յԱստուծոյ բաշխէ սոցա , և ոչ 'ի դիմաց սոցին աղաչանք . յորժամ 'ի նոցանէ՝ առ Աստուած մտանէր հրեշտակ , խոնարհ ձայնիւ և աղերսիւ գնայր . իսկ յորժամ յԱստուծոյ առ սոսա գայ , օրհնութիւն իշխանութեան զոր էառ 'ի նմանէ՝ բարձր բարբառաւ ընաւիցս բաշխէ ։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԲԱՐՁՐԱՁԱՅՆ ԱՂՕԹԻՑՆ ՕՐՀՆՈՒԹԵԱՆ ԶՈՐ ԻՋԵԱԼ Ի ԴՐՈՒՆՍ ԵԿԵՂԵՑԻՈՑՆ ՕՐՀՆԷ ՔԱՀԱՆԱՅՆ

“Որ օրհնես զայնոսիկ որ օրհնեն զքեզ տէր , և սուրբ առնես զյուսացեալսն 'ի քեզ„ ։ Նա Քրիստոս ասէ , յոր օրհնեցան ամենայն ազգ երկրի , սակս որոյ և ամենայն ազինք երանեն նմին ըստ մարգարէին . բայց զինչ յայտ առնէ զուգակցութիւն թէ որ զքեզ օրհնեն՝ ապա 'ի քէն օրհնին ։ Ցուցանէ այսու ոչ ըղկարօտութիւնն Աստուծոյ առ 'ի մերն օրհնութիւն , այլ զմեր սէրն առ նոյն և զհաւատս . զի օրհնութիւնն յայսմանէ գայ յառաջ , և մեք օրհնեմք զնա՝ զծայրագոյն հաստումն կամաց մերոց տալով նմին . իսկ նա զոր մեք սոսկ բանիւ տուաք՝ արդեամբք դարձուցանէ 'ի վերայ տուողացն ։ Որպիսի օրինակաւ . այս ինքն մարդիկ ցուցանեն զյօժարութիւն կամացն՝ օրհնելով զԱստուած , թէ ինձ եթէ կարելի էր գործն , սիրտս բաղձայ վասն սիրոյս զոր ունիմ 'ի վերայ քո օրհնութեանդ այլ յաւելուլ քեզ , և 'ի վերայ փառացդ այլ փառս բազմացուցանել ։ Իսկ Աստուած առեալ զսորա[1] յօժարութիւնն՝ որպէս զամենայնի 'ի տկարէ , և զսէրն ծանուցեալ 'ի պտղոյ բանիցն՝ սմա զնոյն օրհնութիւնն դարձուցանէ արդեամբք բարեացն և ողորմութեանց ։ Նա յս-

1 Երկու օրին . Ի սոցանէ ։ 2 Մի օրին . Զսոցա ։

պէս է և սուրբ առնելն մեր. սրբասացութիւնն զսէրն ցուցանէ, և նա մեզ հատուցմամն սիրոյն և զսրբութիւն շնորհէ։

«Կեցո տէր զժողովուրդս քո, և օրհնեա զժառանգութիւն քո»։ Ժողովուրդ է Քրիստոսի սեպհական եկեղեցիս և ժառանգութիւն նորին, զի զիւրն ետ զարիւն և գնեաց. զայս ժողովուրդս այսօր մեք 'ի բաց հանեմք 'ի նմանէ, և եպիսկոպոսք և քահանայք որպէս զմեր ծառայեցուցանեմք, և յետ մեր ազգատոհմին ժառանգեցուցանեմք. մեղս ոչ առ մարդ այսու՝ այլ առ Աստուած մեղուցեալ, որում չիք քաւութիւն առանց զղջման. զի զոր նա իւր գնեաց, ոչ վայրապար այլ արեամբ, և զմեզ կարգեաց նմին ոչ տէր, այլ պաշտօնեայս, ըստ այնմ. «Արածեցէք որ 'ի ձեզ հօտդ է Աստուծոյ» և ոչ ձեր. զի զարածելոյն վարձն յերևել հօտապետին առնուցուք, մեք 'ի յազգ մարմնոյ և 'ի տոհմին ժառանգութիւն արկաք՝ թողեալ զամենայն քրիստոնէից ազգաց ճանապարհ և ըստ այսմ մասին. զի նորա շնորհիւն Աստուծոյ և ցայսօր դեռ ոչ բնաւ մեղան յայս տեսակ անհնարին յանցանաց։

«Զլրումն եկեղեցւոյ քո պահեա. սուրբ արա զսոսա որք ողջունեցին սիրով զվայելչութիւն տան քո. դու զմեզ փառաւորեա աստուածային զօրութեամբ քո, և մի թողուր զյուսացեալսս 'ի քեզ»։ Լրումն եկեղեցւոյ է բազմութիւն հաւատացելոցս ըստ իւրաքանչիւր չափոյ և աստիճանի, որք շուրջ կան զնովաւ՝ յաղօթելս. զսոսա ասէ պահեա, զի մի զոք յափշտակելով 'ի լրմանէս զրկեսցէ զմեզ սատանայ. իսկ սրբութիւն հայցէ, քանզի քահանայ է, որ թարգմանի մաքրող կամ սրբող, և սրբէ զժողովուրդս աղօթիւքն. վասն այսորիկ ասէ, սուրբ արա զսոսա որք 'ի տուն քո սիրով ժողովեցան։

«Խաղաղութիւն պարգևեա աշխարհի, եկեղեցեաց, քահանայից, թագաւորաց մերոց, և զինուորեալ մանկանց նոցա, և ամենայն ժողովրդեանս»։ Զայսպէս խորհրդական խնդրուածսն զոր խնդրեաց յԱստուծոյ և հաւատովն ընկալաւ, բերեալ այժմ սփռէ 'ի վերայ

1 Մի օրին. Սոհա։

ամենեցուն, զառեալ շնորհ օրհնութեանն տալով 'ի ձեռս այսոցիկ, յորոց առաքեցան հրեշտակ։

"Օ ի ա̃մ տուրք բարիք և ա̃մ պարգևք կատարեալք 'ի վերուստ 'ի քէն են իջեալ որ ես Հայր լուսոյ ,,։ Տուրք բարիք են պէսպէս նախախնամութիւնքն՝ որովք կառավարէ Ա̃ստուած զարարածս, ըստ այնմ. "Նովաւ կեամք և շարժիմք և եմք ,,։ Նոյն և պարգևս առաքէ 'ի վերայ իւրաքանչիւրոցս ըստ զօրութեան հայցուածոցն և օգտի խնդրողին. այս ամենայն, ասէ, 'ի քէն միշտ 'ի ստորև հոսի՝ որ ես Հայր լուսոյ. և միշտ զիմանալի գիտութիւնն որ շնորհի յԱ̃յ իմացողացս մեզ և հրեշտակացն՝ ուսանիմք. քանզի որպէս զգալի լոյս մարմնոյ աչացս, իմաստութիւն մտացս՝ շնորհի յԱ̃ստուծոյ, ըստ որում բազում անգամ ասացաք. արդ 'ի նմանէ յորում ամենայն գանձք իմաստութեան ծածկեալ կան, իջանէ 'ի մեզ պարգև իմաստութեանս հոգևոր և մարմնական գործոցն տնօրէնութեան։

"Ոչ քեզ վայելէ փառք, իշխանութիւն և պատիւ ,,։ Քեզ այսմ ամենայնի զոր ընդունիմք շնորհ՝ չունիմք այլ փոխարէնս, բայց միայն փառաւորութիւնս. որ է ոչ փառաց քոց առաւելութիւն, այլ մերոյն սիրոյ ցուցակութեան բացերևութիւն։

## ԶԻ՛ՆՉ ԱՅԺՄ ԵԿԵՂԵՑԻՈՅՆ ԱՍԵԼ, ԵՂԻՑԻ ԱՆՈՒՆ ՏԵԱՌՆ ՕՐՀՆԵԱԼ ՅԱՅՍՄ ՀԵՏԷ ՄԻՆՉԵՒ ՅԱՒԻՏԵԱՆ

ԸՍՏ որում՝ [1] լուսն զի քահանայն մեծ և բարձրագոյն ետ նոցա շնորհ փոխանակ օրհնութեանն, և յորդորեն 'ի նոյն բաղձանօք սրտից, յայտ արարեալ թէ անուն տեառն մերոյ ոչ միայն այժմ օրհնեցաւ 'ի մէջ մեր, որպէս վկայեաց հայրդ սուրբ, այլ և յայսմհետէ օրհնեսցի մինչև յաւիտեան, այսինքն յանկէտն և յանսահման ժամանակին. զի յաւիտեան 'ի վեր քան զժամանակն և ոչ մասն ժամանակի։

1 Մի օրին. Յօրժամ։ Այլ օրին. Յորում լուսն։

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ԱՂՕԹԻՑՆ ՋՈՐ Ի ՎԵՐԱՅ ԺՈՂՈՎՐԴԵԱՆՆ ԱՍԷ ՔԱՀԱՆԱՅՆ

“ԿԱՏԱՐՈՒՄՆ օրհնաց և մարգարէից դու ես Քն փրկիչ մեր որ լցուցեր զամենայն հայրական տնօրէնութիւնս, լցո զմեզ հոգւովդ քո սրբով,,: Բովանդակէ 'ի բանս չափաւոր՝ զամենայն տնօրէնութիւնս խորհրդոց որ մինչև ցայժմ կատարեցաւ. քանզի սկսեալ 'ի կանխագուշակութենէ մարգարէիցն՝ յառաջ եբեր Քրիստոս 'ի գալստեանն իւրում զամենայն բանս նոցա, և կարգաւորապէս կատարեաց. նոյն և այժմ այսօր եղև 'ի մէջ մեր և նոցին յիշատակք անըստգիւտք. քանզի նախ խօսեցաք մարգարէիւքն, յետ այնորիկ հաստատեցաք և զխորհրդոց տնօրէնութեանն Քրիստոսի բացերևութիւնն: Բայց ընդէր ասէ հայրական տնօրէնութիւն. քանզի ոչ անձամբ անձին, այլ կամօք հօր և իւր ըստ աստուածութեանն Քն պաշտպանեաց մարդկայինս փրկութե̃[1]. ըստ այնմ. “Ես յանձնէ ինչ ոչ խօսիմ, այլ հայրն ետ ինձ պատուէր՝ զինչ ասացից և զինչ խօսեցայց,,: “Լցո զմեզ, ասէ, հոգւովդ քո սրբով,,: Օ ի քո, ասէ, ամենայն տնօրէնութեան դիտաւորութիւն առ այս հայէր, որպէս զի զհոգին զոր բարձեր 'ի մէնջ ըստ պարտեացն Ադամայ, արդարութ̃բ նոր Ադամդ ընկալեալ 'ի մեզ անցուսցես: Արդ զի տնօրէնութեանդ յիշատակ լի կատարեալ աւարտեցաւ, լցցուք ամենեքեան որք 'ի սոյն աշխատեցաք և պարգևօք հոգւոյդ, զոր քո այսպիսի ներգործութեամբ աստուածեղէն մարմնովդ 'ի մեզ ընկալաք:

1 Մի օրին. փրկութիւն:

## ԶԻՆՉ ՆՇԱՆԱԿԷ ԱՅԺՄ ԲԱՇԽԵԼՆ ՆՇԽԱՐ ԺՈՂՈՎՐԴԵԱՆՆ

ՑՈՒՑԱՒ յառաջագոյն այսմ խորհրդոյ զօրութիւն եթէ ոչ է վայրապար, այլ հաղորդս առնու զամենայն՝ եկեղեցին՝ նշխարաց սեղանոյն, որք 'ի տիրապէս ճաշակումն ոչ եղեն զօրաւորք վայելել. զի որք օրհնութեանն կցորդեցան չափաւորապէս, ըստ արժանեաց իւրեանց հոգեպէս, լցին և սեղանոյն նշխարաց մարմնապէս. ոչ որպէս սոսկ ընկալեալ զայն կերակուր 'ի քահանայական ձեռաց, այլ իբրև զնշխար հոգևոր և աստուածային բաշխեալ սեղանոյն՝ որ կարող է տալ շնորհս հաւատով ճաշակողացն՝ ըստ յուսոյն և սիրոյն որով ընդունին: Զայս և կինն քանանացի 'ի տեառնն ապացուցիւ 'ի մէջ առեալ արժանի զանձինս անմաքրիցն այսմ շնորհի վարկանէր. "Տէր, ասէ, և շունք կերակրին 'ի փշրանաց անկելոց 'ի սեղանոյ տեառն իւրեանց". ըստ այնմ յարացուցի և եկեղեցիս 'ի սեղանն տէրունի ոչ համարձակեալ, ըստ տկարութեան՝ փշրանացն դեգերեալ սպասեաց. և ընկալեալ զնոյն քահանայական օրհնութեամբ բարեյոյս կացեալ առ ողորմած տէրն՝ ճաշակէ:

## ՄԵԿՆՈՒԹԻՒՆ ՍԱՂՄՈՍԻ ՕՐՀՆՈՒԹԵԱՆ ԶՈՐ ԱՅԺՄ Ի ԲԱՇԽԵԼՆ ԱՍԵՆ

ԱՅՍ սաղմոս ոչ եթէ վայրապար ասի յայսմ վայրի, այլ քանզի զօրութիւն և միտք սաղմոսիս ընդ առաջիկայ խորհրդս միաբանի. և որ է սորին միտքն: Այն զոր տէրն ասաց յաւետարանին. "Յորժամ պիտոյ եղև, և քաղցեաւ Դաւիթ, ինքն և որք ընդ նմայն էին, զիարդ եմուտ 'ի տունն Աստուծոյ առ Աբիաթարաւ քահանայիւ, և զհացն զառաջաւորութեան եկեր, և ետ այնոցիկ որ ընդ իւրն էին". քանզի ծանուցեալ Դաւթի զթոյն դառնութեան Սաւուղի՝ փախեաւ 'ի նմանէ, և եկեալ առ քահանայապետն քաղ-

1 Երկու օրին. Զամենեսեան: 2 Այլք. Կարողութեանն:

ցեալ՝ թագուցանէր զփախուստն, այլագունեալ առաջի նորա՝ որպէս թէ 'ի Սաւուղայ պատգամաւոր է առաքեալ յիւր ինչ. և խնդրեալ հաց՝ ոչ գտանէր, բայց միայն զհացն սրբութեան յոր ըստ օրինացն քահանայիցն միայն արժան էր մերձենալ: Զոր առեալ քահանայապետին՝ ետ Դաւթայ և որոց ընդ նմա էին, նախ հարցեալ զսուրբ լինելն նոցա 'ի կանանց. և զայս ոչ վայրապար արարեալ, այլ նշանակեաց զնորս շնորհք զտէրունական սեղանոյս առատութիւն, որ ամենեցուն բաշխի հաւասար: Վասնզի յայնժամ եբաց զդրունս հաւատոցս այսոցիկ քահանայապետն առ Դաւիթ, թէ ոչ միայն քահանայքն՝ այլ և ամենեքեան 'ի քահանայական սեղանոյս նշխարս վայելեսցեն. ուստի և Դաւիթ սկսաւ զսաղմոսս աստուածեղէն Հոգւոյն նորոյ շնորհացս՝ որում եղեն ապացոյց մարգարէութիւնն:

"Օրհնեցից զտէր յամենայն ժամ, յամենայն ժամ օրհնութիւն նորա 'ի բերան իմ": Որպէս ասացաւ՝ նախատես եղև շնորհացս, որում և զհացն սուրբ ուտելով եղև օրինակ. վասն այսորիկ ըստ մեր խորհրդոյս կարգի[1] զմարգարէութիւնս դնէ, ապա և մեզ պարտ է քննութեամբս յառաջակայ նպատակս զսոյն յարմարել: Արդ քանզի բազմապատկաբար օրհնեաց եղեկեցիս մինչև ցայս վայր զփրկիչն իւր, որոց և ընկալաւ փոխարէն զքահանայականն օրհնութիւն. իսկ այժմ կոչեալ զնոսա 'ի կցորդութիւն սրբութեան սեղանոյն նշխարաց՝ կրկին գոհանան, 'ի վեր քան զարժանն իւրեանց դիտեալ զեղումն տրիցս. վասն որոյ և ասէն. "Օրհնեցից զտէր յամենայն ժամ". Եր վասն. զի յամենայն ժամ վայելեմ յողորմութիւն նորա, և չունիմ այլ ինչ այժմ փոխարէն, բայց միայն զօրհնութիւնս: Նախ քան զայս պատարագեցաւ 'ի վերայ իմ, վասն այնորիկ և օրհնեցի. յետ այնր և օրհնեաց զիս հոգևոր օրհնութեամբ, սակս որոյ օրհնեցի. իսկ այժմ 'ի նշխար քաւութեան սեղանոյն զիս հպեցուցանէ, յաղագս որոյ և յայս ժամս առանց յագելոյ է օրհնութիւն նորա 'ի բերան իմ. որպէս զի մի լիցի առ իս շնորհքն զանազանք առանց գիտութեան

1 Մի օրին. կարգէ:

կամ շնորհակալութեան, և այնպէս յանցաւոր լեցիմ տաւողին. սորին վասն քանիցս զձիրսն առնուլ, և բերանս զպարտսն օրհնութեամբք հատուցանէ։

«Ի տէր պարծեսցի անձն իմ, լուիցեն հեզք և ուրախ եղիցին»։ Արդարև պարծել յայնպիսի տեառնն սէրն է արժան, որ օր ըստ օրէ զպարտս ծառայիցն յանձն իւր ընդունի, և վասն նոցին մեռանի. և տես զի որ մինչդեռ չէր վայելեալ 'ի շնորհս՝ աղերսիւ խօսէր, այժմ յագեալ նովաւ՝ մեծաբանէ 'ի վերայ թշնամեացն, և խրախակից կոչէ զսիրելիսն։ «Լուիցեն, ասէ, հեզք և ուրախ եղիցին». հեզ ինձ թուի որ ըդսուրբ հրեշտակսն ասէ, որոց ուրախութիւն է մերն փրկութիւն։

«Մեծ արարէք զտէր ինև, և բարձր արասցուք զանուն նորա 'ի միասին»։ Զայս և փոքր ինչ յառաջ դարձեալ ասաց առ նոսա. «Օրհնեցէք զտէր յերկինս հրեշտակք նորա և զօրութիւնք». զի մեծացուցանելն, օրհնելն և փառաւորելն առ մի հայի խորհուրդ, ոչ թէ լիութեան Աստուծոյ առաւելութիւն յարարածոցս, այլ սիրոյն մեր առ նա ցուցակ ծայրագոյն. զի զոր սիրեմք՝ յորժամ ձեռնհաս լինիմք բարձրացուցանեմք։ Զայս տամք Աստուծոյ կամօք և ոչ գործով, քանզի անկարօտ է. արդ ես ասէ, միայն չեմ բաւական՝ յաղթահարեալ 'ի շնորհացս. այլ՝ և դուք, իմանալի զօրութիւնք, վասն իմ կցորդ լերուք ինձ 'ի շնորհակալութիս Աստուծոյ. և ձեօք ես բարձր արասցուք զանուն նորա 'ի միասին։

«Խնդրեցի 'ի տեառնէ և լուաւ ինձ, յամենայն նեղութենէ իմմէ փրկեաց զիս»։ Զփրկութեանն ընթացք ընդարձակ բանիւ է ցուցեալ վերագոյն. զայս մեք խնդրեցաք բազում անգամ յաղաղակելն՝ տէր ողորմեա։ Լուաւ, ասէ, զխնդրուածսն և ողորմեցաւ. իսկ տեսակ ողորմութեանն որպիսի՞. զի 'Քրիստոս փոխանակ իմ պատարագեցաւ, և այնպէս յամենայն մեղացն որովք խոցոտեալ նեղէի՝ փրկեաց զիս. սակս այսորիկ զձեզ 'ի զնա բարձրացուցանել հրաւիրեմ օրհնութեամբքս։ Այս պարտ է գիտել եթէ ոչ

1 Սղմ. ՃԽԸ։

էր վայրապար բազմապատիկ հրաման քարոզութեան սարկաւագին առ 'ի զտէր աղաչելն, այլ որպէս զի նախ մեք խնդրեսցուք կարգաւորապէս, և ապա նա ողորմեսցի, և մեր բախելովն զդրունս շնորհացն բացցէ, ըստ որում ասէ. "Խնդրեցի 'ի տեառնէ և լուաւ ինձ[1]":

"Մատիք առ տէր, և առէք զլոյս, և երեսք ձեր մի ամաչեսցեն": Որ օրինակ որ մտանէ առաջի թագաւորի յանսարգաց, և խնդրէ 'ի նմանէ չնչին ողորմութիւն. իսկ նա լուեալ զխնդիրն՝ ոչ զայն միայն տայ, այլ և զթագն առեալ դնէ 'ի գլուխ նորա, և ընդ իւր նստուցանէ. իսկ նորա բարեմիտ գոլովն եղեալ աղաղակէ. եկայք ամենեքեան առ այս թագաւոր որ իմ տարտամութեանս զայս արար, չարգելու 'ի ձէնջ զշնորհս իւր. այսպէս առնէ եկեղեցին. 'ի պարգևն յոր վայելեաց՝ զամենեսեան կոչէ. "Մատիք, ասէ, առ տէր, և առէք զլոյս": Լոյս՝ զգիտութիւն անքաւ գթութե և ողորմութեն Աստուծոյ առդնէ. զի դուք, ասէ, մեղաւորք՝ զահաւոր փառսն միայն տեսանէք 'ի բացուստ, և 'ի նմանէ երկուցեալ խուսափէք. արդ այսուհետև մի՛ մնայք անյոյս, այլ մատիք և առէք ձեզ լոյս իմաստից զիմն փրկութիւն, ուսեալք թէ որպէս զիս ապրեցոյց 'ի վեր քան զարժանն շնորհիւ, նոյնպէս և ձեզ արասցէ: "Եւ երեսք ձեր մի ամաչեսցեն". այսինքն 'ի պատկառմանց մեղացդ որով շաղախեալ էք՝ մի ամաչէք 'ի մատչելն առաջի Աստուծոյ. էր վասն. ինքն զպատճառն ցուցանէ:

"Այս աղքատ կարդաց առ տէր, և տէր լուաւ սմա. յամենայն նեղութենէ սորա փրկեաց զսա": Ես. ասէ, ձեզ ապացոյց, ես ձեզ մատչելոյ առ տէր առաջնորդ և ուսուցիչ լոյս: Ես ձեզ ոչ ամաչելոյ վասն մեղաց նշանակ, զի էի և ես այդպէս աղքատ, յամբահաւատ լինէի 'ի յուսոյ ողորմութենէն[2] Աստուծոյ, ոչ ունելով բարեգործութիւն դնել առաջի նորա. բայց յորժամ սրտապնդեցայ և կարդացի յաղքատութենէս, վաղվաղակի լուաւ ինձ և 'ի նեղութեանցն փըր-

1 Այլք. Նախ խնդրեցի և ապա լուաւ ինձ:  2 Մի օրին. Ողորմութեանն:

կեաց զիս ։ Արդ զիմ փրկութիւնս դիք առաջի աչաց յոյս և լոյս, և այնպէս առ Աստուած անամօթ ընթացարուք ։

“ Բանակք հրեշտակաց տեառն շուրջ է զերկեղածօք իւրովք, և պահէ զնոսա ” ։ Այս թուի թէ ոչ յարմարի ընդ ասացեալսդ վերագոյն, սակայն քննելով զզօրութիւնն՝ կարի ուղիղ զկարգ բանիցս ընթանայ. այսինքն զի ասաց, թէ մատիք առ տէր, և մատչելն առ Աստուած՝ աղօթիւքն է ։ Դարձեալ ասաց, թէ զիս փրկեաց, և գործ փրկութեանն սպասաւորօք հոգւովքն կատարի. արդ զի մի վարանեսցիս ասել, թէ Աստուած յերկինս 'ի վեր է, և ես յերկիր 'ի խոնարհ, որպէս և գրէն Սողոմոն, զիարդ լսէ զաղօթս իմ, կամ որպէս փրկէ, լուծանէ զայս տարակոյս՝ ասելով. “ Բանակք հրեշտակաց տեառն շուրջ է զերկեղածօք իւրովք և պահէ զնոսա ” ։ Զայս ոչ միայն Դաւիթ, այլ և տէրն հաստատէ. “ Մի՛ ասէ, արհամարհէք զմի 'ի փոքրկանցս յայսցանէ. զի հրեշտակք նոցա տեսանեն զերեսս Հօր իմոյ որ յերկինսն է ” ։ Սմին միաբան է և նահապետն Յակոբ. “ Հրեշտակն իմ, ասէ, որ պահէր զիս 'ի մանկութենէ իմմէ ” ։ Զինչ ասեմք և զորոց հարցն մերոց՝ որք տեսին բազում անգամ զբանակս նոցին, և գրեցին. արդ սոքա ասէ պահեն զմեզ, և հրեշտակ և պատգամաւոր լինին յորժամ մատչիմք աղօթիւք առաջի Աստուծոյ ։

“ Ճաշակեցէք և տեսէք, զի քաղցր է տէր. երանեալ է այր որ յուսայ 'ի նա ” ։ Զի՞ հրամայես մեզ ճաշակել աստուածընկալ հացի, և զտեառնն քաղցրութիւն տեսանել ։ Զիմ փրկութիւնն ասէ, զիմ աղքատութեանս ունկնդրութիւն, զհրեշտակաց բանակացն շուրջ զմեօք պահպանութիւն ։ Որ զայսպիսի ուտէ միայն բերանով, դիտէ այնուհետև զտեառն մեր տեսանել զքաղցրութիւն, և ոչ յուսահատութեան անօթոյն յամրահաւատ լինի առ զնա խնդրել ։

“ Երանեալ է, ասէ, այր որ յուսայ 'ի նա ” ։ Տես զողորմութեանն Աստուծոյ բարձրաձայն փառս. ոչ ասէ նա, երանի որ զկամս Աստուծոյ առնէ գործով. այլ զինչ. որ միայն յուսայ 'ի նա սիրով և հաւատով. և յոյս է՝ զտէրն զոր հաւատաց թէ է՝ 'ի յուշ մտացն

ունել հանապազ, և առաջի նորա զընթացս իւր տե-սանել. երանել է, զի կարծէ սոսկալի գիտութեամբն զյանցաւորն լինել:

«Երկերուք 'ի տեառնէ ամենայն սուրբք նորա. զի ոչինչ է պակասութիւն երկեղածաց նորա»: Ըստ կարգի տեսանեմ ամենեւին զընթացս երգոյս, այսինքն զի յետ յուսոյն դասէ զերկեղն. քանզի այսպէս է սկիզբն շաւղաց առաքինութեան, որպէս և ուսոյց առ-տուածաբանն. յետ զամօթն ձգելոյ զմեղացն, և առ Աստուած մատչի աղօթիւքն. հաւատն հաստատի ա-ռաջին սրբոցն օրինակաւ, յորմէ յառաջեալ 'ի յոյսն նկրտի. ինքն զԱստուած տեսեալ իմացողապէս, և զիւր ընթացքն առաջի նորա տեսեալ հաւանական մտօք. իսկ յորժամ յայս ուշ նպատակի ժամանէ յա-ռաքինութիւն ընթացման հոգի, բազում երկեղ տիրէ նմա, և նա 'ի նորոգն դառնայ՝ քաղցր զտէրն ճաշա-կեալ. յանձել երանելի յուսոյն՝ զահարկութիւն ճըշ-մարտութեանն տեսեալ՝ բազում երկիւղիւ զարհու-րեալ տատանի: Իսկ յայսմ աստիճանէ պնդութեամբն փոխեալ յանցաւութիւն 'սիրոյն երանէ: Որդ չև ես 'ի սէրն ժամանեալ, որոց յոյսն տիրեաց՝ յերկեղն յորդորէ, որով զտանի այն որ իւրով կատարելու-թեամբն 'ի բաց մերժէ զերկեղն, որպէս և որ կրեացն, գրեաց. «[1]Ոչ ինչ պակասութիւն երկեղածաց նորա». այսինքն 'ի սիրոյն աստիճանէ ոչ պակասէք սուրբք, թէ պնդիք երկիւղիւդ:

«Մեծամեծք աղքատացան և քաղցեան. բայց որք խնդրեն զտէր՝ մի պակասեսցէ 'ի նոցանէ ամենայն բարութիւն»: Ով ասէ, երկիւղածք Աստուծոյ, որք կոխեցիք զորկրամոլութիւն և զհեշտութիւն, պարտիք և 'ի սնափառութենէն, որով յետ այսր հանդիսի վտանգիք. զի որ մարմնական փառօք բարգաւաճի, յայդ կերակրոյդ զոր դուք ուտէք՝ աղքատ և քաղ-ցեալ է: Իսկ զի՞նչ է սոցա կերակուրն. այն որոյ վասն սա զերկինս և զերկիր արհամարհէ՝ յասելն. «Կա-լար զաջոյ ձեռանէ իմմէ, և 'ի խորհուրդս քո առաջ-նորդեցեր ինձ. այսուհետև զի՞նչ կայ իմ բնաւ յեր-

1 Այլք. Յանցաւորութիւն:

կենս կամ 'ի քէն զի՞նչ եւս խնդրեցից յերկրէ »: Արդ զայս խորհրդոց ճաշակ ուտեն երկեղածք Աստուծոյ 'ի լռութեանն իւրեանց. իսկ հեշտացեալքն 'ի փառս մեծութեան պատրանաց՝ հեղձուցանեն զնոյն աշխարհական հոգոյն փշովք. զգուշացուցանէ թէ մի տայք ըղձեղ ծառայս մնափառութեանն խորհրդոց. զի այն առ որ ձգէ զերկեւղածս չարն՝ պատրանօք ցանկութեան, աղքատ եւ քաղցեալ են ձեր իմանալի կերակրոցդ. բայց դուք եթէ խնդրէք զտէր, ոչ պակասէ[1] 'ի ձէնջ ամենայն բարութիւն. այս ինքն զի ժառանգէք զփառսն 'ի հանդերձելումն յաւիտեան՝ փոխանակ զարդականացուս արհամարհելոյ, եւ գտանէք յետ երկեղիդ զճանապարհ սիրոյն Այ, որով ստիպիք աղաղակել. "Ոչ որ կանս եւ ոչ հանդերձեալքն կարեն մեկնել զմեզ 'ի սիրոյ անտի Այ որ 'ի Քրիստոս Յն 'ի տէր մեր »:

"Եկայք, որդեակք իմ, լուարուք ինձ, եւ զերկեւղ տեառն ուսուցից ձեզ »: Ասաց վերադոյնն յորդորելով՝ թէ երկերուք. այժմ առ ինքն կոչէ զբաղձանօք ունկնդիրսն. խոստանայ եւ զճանապարհ երկեղին ցուցանել. եւ զայս ոչ սաստիւ կամ հրամանաւ, այլ որպէս հայր որդւոց.

"Ո՞վ է մարդ որ կամի զկեանս, սիրէ զաւուրս տեսանել 'ի բարութեան »: Տես զհայրաբար ուսուցանելն, զի ոչ հարկիւ պահանջէ զգործն, այլ նախ 'ի մեր ապաստան առնէ 'ի կամս: "Ո՞վ է մարդ որ կամի ըզկեանս »․ յայտ է թէ ամենայն մարդ, եւ չիք ոք արտաքոյ կենաց կամ բարութեան աւուրց զոր խոստանաս ունել՝ դնէ զախորժակս. բայց կեանս մի զպանդըխտութեանս նշդեհութեան վարկանիցիմք, թէպէտ եւ առ այս կարի օգուտ գործէ խրատս: Արդ կամիմք, հայր սուրբ, զկեանսն մշտնջենաւորս, սիրեմք որդիքս զանվախճան աւուրցն բարութիւն, ցոյց մեզ զճանապարհս նորա:

"Լռեցո զլեզու քո 'ի չարութենէ, եւ շրթունք քո մի խօսեսցի զնենգութիւն ». այս է սկիզբն գիտութեան երկիւղին Աստուծոյ, որ է նոյն ինքն եւ կենաց ճանապարհ. սահման դնել բերանոյ. որպէս եւ տէրն

1 Մի օրին. Պակասեսցէ:

ասաց. “Ի բանից քոց արդարասցիս, և 'ի բանից քոց պարտաւորեսցիս”: Արդ ուսաք զնախասկիզբն երկիւղիս 'ի քէն, որում և տէրն մեր համաձայնեաց, և գիտեմք եթէ բարիոք է սա. այլ զոր ինչ յետ սորին առժան է գործել՝ ծանի:

“Խոտորեա 'ի չարէ, և արա զբարի, խնդրեա զխաղաղութիւն և երթ զհետ նորա”: Անհնար է մինչ չև լեզուն 'ի ներքոյ սահմանի դաստիարակեալ է, ընտրութիւն առնել բարւոյ և չարի. վասն որոյ նախ զայն խրատեաց, և ապա ըստ կարգի բերէ զասացեալս. “Խոտորեա, ասէ, 'ի չարէ, և արա զբարի”. և ո՞ ուսուցանէ մեզ զընտրութի՛ սոցա՝ թէ այն չար է և կամ այս բարի. քո անձնիշխան միտք յորժամ ոչ ամբոխի 'ի հողմակոծութենէ[1] լեզուիդ. յետ զայդ լռեցուցանելոյ՝ 'ի ներքս ունիս զվարդապետդ. միայն յայն ըզգուշացիր, որպէս զի զոր ինչ հրամայէ՝ ոչ արհամարհեսցես, այլ զչար խորհուրդն թողեալ՝ որոյ վասն 'ի սրտէդ ստգտանիս, զանըստգտանելին խնդրեա և կատարեա.

“Խնդրեա, ասէ, զխաղաղութի՛”. ընդ ո՞. ընդ միտս քո և ընդ Աստուած. “Ոի յորժամ սիրտք մեր, ասէ Աստուածաբանն, ոչ ստգտանիցեն զմեզ, համարձակութիւն ունիմք առ նա, և զոր ինչ խնդրեմք՝ լսէ մեզ”:

“Աչք տեառն 'ի վերայ արդարոց, և ականջք նորա 'ի վերայ աղօթից նոցա”: Աչք և ականջք Աստուծոյ զպէսպէս տեսակ նախախնամութեանն որ 'ի վերայ երկեղածացն ասէ. և զայս ոչ եթէ վայրապար դնէ յայսմ վայրի, այլ քանզի յորժամ սկսանին[2] հետևել բարւոյն՝ յարուցանէ 'ի վերայ նոցա փորձիչն զպատրանս մեքենայիցն, և նոքա զօգնութենէն Աստուծոյ միշտ աղօթիւքն բուռն հարկանեն: Արդ զի մի վայրապար համարիցին կամ զինքեանց կիրս փորձանացն կամ զաղօթիցն հայցուած, ցուցանէ թէ աչք Աստուծոյ տեսանէ զամենայն, որոյ ազդումն սիրոյն զչունչ և զոգի որոշէ՝ ըստ առաքելոյ. և ականջք նորա լսէ զաղօթս ձեր, որ քննէ զսիրտս և զերիկամունս՝ արդարութեան իրաւամբքն:

1 Մի օրին. Հողմակոծութենէն: 2 Երկու օրին. Սկսանիցին:

“Երեսք տեառն 'ի վերայ չարագործաց՝ սատակել յերկրէ զյիշատակս նոցա”: Այթէ հասարակաց մարդկան է խրատս, 'ի նոցանէ մի՛ զոք չարագործ համարեսցուք՝ կամ սատակեալ, այլ զկարգ բանիս ամբողջ պահեսցուք. արդ քանզի աչք Աստուծոյ ոչ միայն զմեզ տեսանէ յաշխատութիւն փորձութեանն, այլ և զնեղութիւնն՝ զոր կրեմք 'ի չարագործ թշնամեաց, վասն այսորիկ ասէ. մի՛ յուսահատիք 'ի նեղութեան խորհրդոցդ՝ որով յիշատակէ 'ի միտս ձեր չարագործն զտեսակս մեղաց. զի 'ի յերկարելն ձեր յաղօթս՝ վաղվաղակի սատակէ զնոսա Աստուած, և չքացուցեալ պակասեցուցանէ 'ի մտաց ձեր երկրէ. ըստ այսմ յարմարի և յաջորդ բանիս.

“Կարդացին արդարք առ տէր, և տէր լուաւ նոցա, յամենայն նեղութենէ փրկեաց զնոսա”: Ու զի՞նչ կարդացին. զչարագործին յիշատակս որով նեղէինն ցուցին, որ բազմապատիկս է և զանազանս. զայս լուաւ նոցա Տէր. յորժամ սրտի մտօք կարդացին և ոչ վատթարացան 'ի փորձութիւնսն յորս մատնեցան՝ ընտիրք երևեալ. յետ այնորիկ լուաւ նոցա տէր և փրկեաց 'ի զանազան նեղութեանցն: Որք լսեն և զփորձութիւն նեղութեանցն ճանաչեն, նոքին և 'ի կարդալն առ Աստուած, և զճաշակ լսելոյն և փրկութեանն կերակրին. իսկ չև ևս անցեալ ընդ հանդէսն, 'ի կարծիս լինիմք պարտութեան մարտիս:

“Մերձ է տէր առ ամենեսեան ոյք մաշեալ են սրտիւք, և զխոնարհս հոգւով կեցուցանէ”: Ի մաշեալն մերձ՝ ոյք քակեցին զամենայն բարձրութիւն հպարտացեալ խորհրդոց 'ի վերայ գիտութեանն Աստուծոյ, և գերեցին զամենայն միտս 'ի հնազանդութիւնն Քրիստոսի. ապա ուրեմն պարտ է նախ զսիրտ մաշել, և ապա զմերձ լինելն Աստուծոյ ճանաչել: Ու սիրտ մի՛ զխնութիւն մարմնոյս իմանար, այլ զզանազան խորհուրդս որ 'ի սմա ստեղծանին, զորս մաշելն է հարկաւոր երկեղածացն Աստուծոյ: Ու տես, զի ապա ասէ, թէ “Զխոնարհս հոգւով կեցուցանէ”. քանզի որ ամենայն խորհրդոց յաղթէ, 'ի սնափառութենէ անտի նեղի, թէպէտ և ոչ գործով՝ սակայն խորհրդով. զայսպիսիս ասէ, կեցուցանէ Աս-

տուած, յորժամ ոչ տայ տեղի համբերութեան, այլ զուն գործէ 'ի խոնարհութիւնն հոգեկան խորհըր-դովքն ։

“ Բազում նեղութիւնք են արդարոց. յամենայնէ փրկէ զնոսա Տէր, և պահէ զամենայն ոսկերս նոցա, և մի 'ի նոցանէ ոչ խորտակեսցի ”։ Ո՛վ, ասէ, կարծեք դիւ-րաւ ընդդիմակել զերկեղ տն Աստուծոյ զոր ուսուցանեմս. այլ ծանիր, զի յորժամ սկսանիս առաւել արդարութի տանել զընթացս կենաց քոց, բազում նեղութեամբք փորձիս. Է՞ր վասն. որպէս զի ընտիր երևեսցիս, որպէս զի օրինակ մխիթարութեան պատկերեսցիս ։ Ընդ այս նեղու-թիւնս կրթեցաւ առաջին նահատակն Աբրահամ, և նորին հետևողքն ամենայն սուրբքն, որպէս ասաց Պօղոս. “ Պարտ է մեզ բազում նեղութեամբ մտանել յայն հանգիստ ”։ Ընդ զի նոքա մարտի խորհրդոցն յաղթեցին, յարտաքին թշնամեացն նեղեցան. իսկ մեր առաջի կայ մարտ և նեղութիւն՝ յանձանց ասպա-րիզս, վասն այսորիկ քաջալերէ ոչ վատասրտել. “ Յա-մենայնէ, ասէ, փրկէ զնոսա Տէր ”. և փրկէ Է՞րբ. յորժամ տեսանէ զխորհրդոցն համառօտութիւն 'ի նե-ղելն անխոնարհելի, յայնժամ արագ ժամանեցուցանէ զփրկութիւնն ։ “ Պահէ, ասէ, զամենայն ոսկերս նո-ցա ”. այսինքն զխորհուրդսն՝ որովք պնդի ընդ թշնա-մւոյն արկածս մարտնչել, նախախնամէ՝ ասէ՝ Աստուած և ուղղէ, առ 'ի յոչ կործանել հետևողութեամբ խորհրդակցութեան թշնամւոյն ։

“ Մահ մեղաւորին չար է, և որք ատեն զարդարն զղջասցին ”։ Մահ մի զմնացորդական, այլ զմեղան-չելոյն խմա. զի այս է արդ սովորութիւն՝ անուանել մահ և հիւանդութիւն. ըստ այնմ. “ Միթէ մեռելոց ո՞չ առնիցես զսքանչելիս ”. քանզի զընթացս ուղիղ վարէ զբանիւ ։ Ընդ քանզի ասաց, թէ որ արդարացեալ լինի 'ի բազմապատիկ նեղութիւնս թշնամւոյն՝ փրկի 'ի տեառնէ, կամի ցուցանել այսուհետև զհակառակն՝ եթէ որ ոչ կարէ մարտնչել և մեղկացեալ թուլանայ, զինչ պատահէ նմա. “ Մահ մեղաւորին, ասէ, չար է ”. այսինքն որ մեղօքն սպանանէ զիւր ըստ Աստու-ծոյ արդարութեանն կենդանութիւն, և 'ի բազմապա-տիկ մարտէն յողդողդեալ խոցոտի, չար մահ մեռանի.

էր վասն․ զի յատենին զարդարութիւնն՝ փոքր ինչ հեշտանայ 'ի մեղանչելն, և այնուհետև տիրէ նորա անտանելի զղջումն և ապաշաւ, կշտամբանք մտացն խղճի և նախատինք, վիշտ 'ի ներքուստ և անփախչելի տանջանք, զոր որք կրեն՝ իմաստութեամբ ճանաչեն, և զմահն ընտրեն կամօք քան զայսպիսի կեանս խղճիւ․ վասն այսորիկ չար է նոցին այսպիսի մահ սակաւ հեշտութեան, որ զանբերելիս գտանէ մեղուցելոցն զերկուսն ։

“ Փրկէ տէր զանձինս ծառայից իւրոց․ մի՛ զղջասցին ամենեքեան որք յուսացեալ են 'ի նա ”։ Յուսիւկ կարող եմք ճանաչել, թէ 'ի ստածել զբարեգործութիւնն ստեղծեալ եմք, և օտար է 'ի մեզ մեղացն կիրք․ զի 'ի յուսալն յԱստուած, և 'ի փութալն 'ի կամս նորա, թէպէտ և բազում աշխատիմք, զղջանամք և ոչ բնաւ․ իսկ 'ի մեղանչելն փոքու կամ մեծաւ՝ վաղվաղակի զղջումն և խիղճ մտացն կշտամբանք զկնի ընթանայ․ քանզի որ 'ի ծերպ ծակու մի մտեալ վասն Աստուծոյ, ուրախ է 'ի կեանս տիրապէս ուրախութեամբն՝ քան թէ թագաւորէր․ և նա որ թագաւորէ՝ եկեալ 'ի միտս իւր, ոչ ինքեան՝ այլ սմա տայ երանի․ յայտ է ապա թէ ընդ իւր ընթացս կենացն զղջացեալ է՝ զայլոց կեանս երանելով։ Իսկ սա որ յուսովն 'ի տէր աշխատի՝ զղջանայ ընդ իւրն և ոչ բնաւ․ ապա թէ գթէ և խոտորի, ընդ թուլանալն 'ի պնդութենէ զղջանայ, որպէս ասաց վերագոյնն զայսպիսի երկիւղիւս և յուսովս ապաստանեալ յԱստուած, և յերկս առաքինութեան կանխեալս միշտ, ասէ, փրկէ Աստուած, և պահէ անստերիւր յանզղջականն իւր ծառայութիւն․ որ և զմեզ նախախնամեսցէ ողորմութեամբն իւրով, փրկեսցէ որպէս յուսամք, և հանցէ 'ի բազմապատիկ նեղութենէս յանցաւութիւն սիրոյն զառ 'ի յինքենէ երկիւղածս․ թերևս և յայն արժանի լիցուք ժամանել 'ի կեանս, ուր ոչ տիրէ նեղութիւն չարեացն ։

# ՀԱՐՑԱՔՆՆՈՒԹԻՒՆ

## ԱՌ ՕՐԷՆՍ ՔՐԻՍՏՈՍԻ

## ԵՒ

## ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ ԹԷ ՈՉ Է ՊԱՐՏ ԶՎԻՃԱԿ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԱՍՏԻՃԱՆԻ ԶԳԵԼ ԸՆԴ ՄԱՐՄՆԱԿԱՆ ՏՈՀՄՈՒԹԵԱՄԲ

Շնորհօքն Աստուծոյ որում 'ի վեր քան զարժանն եղաքն ընդունակ, 'ի կէտ ժամանեաց յընթացս բանիս տէրունի խորհրդոյս քննութիւնն՝ յոր վայելել զմեզ Աստուած զօրացոյց մտօք և ոչ թէ գործովլ, բանիւ և ոչ թէ արդեամբք, իմացականապէս և ոչ մարմնապէս, անձին միայն 'ի յօգուտ՝ և ոչ թէ յայլս սփռեալ։ Ե՞ր վասն. քանզի անկար է յայլս ձգել այսօր զիմաստութիւն՝ այնու զի գերեալ տեսանեմք զեկեղեցի Քրիստոսի որ 'ի մեզ ըստ մարմնոյ 'ի մարմնական ժառանգութիւն. և գերեալ ոչ յօտարաց կամ հեթանոսաց, այլ յանմիտ մերոց կամաց և 'ի տմարդի վերակացուաց, որք քարշեն տառապեցուցանեն զնա, և առեալ բռնի 'ի կուր բարբարոսաց առամանցն ձգեն։ Ո՛վ աղէտիցս, ո՛վ աշխարհելի իմաստնոցն գործոցս։ Բայց սակայն և ոչ ողբալոյ տան թոյլ, զափս 'ի բերան եդեալ խփեն զջատագովաց ճշմարտութեանն զլեզուս. կամ այպանելով երգիծանեն, կամ սաստիւ կափահարեն. միայն զի մի 'ի ստութիւն սուտք երևեսցին, և կամ 'ի թիւրն շաւղաց 'ի յանդիմանութենէ անտի զամօթի հարեալ գղջասցին, այլ զի լցցի չափ մեղացն ջանսան, և Աստուած յարիցէ 'ի վրէժխնդրութիւն՝ ախորժեն. մանաւանդ և զնորայն 'ի մոռացօնս դարձուցեալ նշկահեն, և որ ըստ օրէ յարհամարհութիւն օրինացն ընթացք ազգիս մերոյ յառաջեն։ Եւ արդ զի՞նչ. լռեսցո՞ւք զայս մասն անբժշկելի յանցանաց այպանել, և ա՞կն առցուք մարդկան առաւել քան օրի-

նացն Աստուծոյ. և ո՛չ խօսիցիմք զկնափանս անձին նա-
խապատուեալ, և զփառս ոչ ընաւ: Ներելի է ինձ
տեառն իմոյ երանութիւն զոր հարայց փոխարէն նա-
խատանացն, և ախորժելի վասն նորին մարդկան չարա-
խօսութիւն:

Ամովսականն աղաղակեմ բարբառ. "Առիւծ գո-
չէ, և ո՞վ է որ ոչ սարսեսցի. տէր Աստուած խօսեցաւ,
և ո՞վ է որ ոչ մարգարէասցի: Եթէ ոք իցէ[1] Ամասիա,
առաքեսցէ զիս 'ի Բեթէլէ յԵրուսաղէմ վասն նո-
րայն լինելոյ օրինաց Ջատագովել: Քանզի զխաբեմք զի
բազումք ունին տեսանելով[2] բանիւս զայս բարբառին".
"Տեսանողդ, տեղի տուր 'ի Հրէաստան, զորոյ և զօրէնսն
պատմես. Բեթէլ սրբութիւն թագաւորաց է. աստ
ճանաչել զճանապարհս քո ոչ կամիմք": Ընդ զոր ծա-
նեայ զուշակեմ. 'ի լերին բարձու կացուցի զպատշա-
պար յօւսոյս, վասն այսորիկ և առաւել երկիւղի գո-
չեմ. "Որ արհամարհեսցեն է, արհամարհեսցէ, և որ
անօրինեսցեն է, անօրինեսցի". քանզի պատգամ եմ
առ ազգ մի' որ ոչ ինչ օգուտ է նմա բանքս, այլ յանցանք
և 'ի նախատինս: Արդ ասա որք ասեն զմարգարէս' թէ մի
պատմէք մեզ, այլ խօսեցարուք մեզ և պատմեցէք մեզ
այլ մոլորութիւն, ըստ որում ասէ ուրեմն Եսայի:
Նայց ես պատասխանեմ. "Եթէ տակաւին մարդկան
հաճոյ լինէի, ապա Քրիստոսի ծառայ ոչ էի". դար-
ձեալ և փափագեմ նզով լինել վասն Աստուծոյ՝ ժպր-
հեալ և 'ի Պօղոսի սիրոյն աշակերտեալ. զհնչոց ասա և
զբանս անխղճեցից յուսահատութեամբ ընկենեալ.
կարող է Աստուած և 'ի քարանցս յարուցանել որդիս
Աբրահամու, և հաստատել. իսկ զի հաստատեմ այսմ,
վասն այսորիկ և խօսիմ:

Արդ եկայք իշխանք ժողովրդեան իմոյ, հարցցուք
օրէնս 'ի քահանայից մերոց' որպէս երբեմն 'ի ղևտեաց
Աստուծոյ հարցանէր Մաղաքիաս. այսինքն յառաջին
քահանայապետէն Քրիստոսէ և 'ի նորին աթոռոյն
ժառանգաւորաց հետևաբար. մի՛ զուցէ 'ի զուր զա-
տիմք 'ի նախակարգեալ բանէ յանցաւորք, ուսուսցէ
մեզ իմաստութիւն Հօր' զճշգրիտն շաւիղ 'ի վերնա-

1 Երկու օր. Եթէ ո՞ք իցէ:   2 Երկու օր. Ունին տեսանելով:

կէս վերածեալ ։ Ո՛ տէր մեր, պատմեա ծառայից քոց զուղիղն. է՞ արժան զգնեալ քո արեամբ եկեղեցի՝ հօր 'ի յորդի որպէս զմարմնական ժառանգութիւնն աւանդել ։ Պատասխանէ Քրիստոս. զկանխուսեալն ընդէ՞ր 'ի մնացօնս դարձուցեալ վերստին հարցանես ։ Ո՞չ լուար զի ասացի, մայր իմ և եղբարք՝ ոչ որ ծնեան զիս, այլ որ լսեն զբանս Աստուծոյ և առնեն ։ Նոյն զայս ժողովուրդ ես ոչ վայրապար ստացայ, այլ խաչիւ և արեամբ. զկայլակս արեան իմոյ նուիրեցի Հօրն իմոյ փրկանս՝ և առի. վասն այնորիկ և աշխատութեամբ ստացեալդ՝ սիրելի է ինձ, և սեպհական ժառանգութիւն՝ իմ միայն և ոչ մարդոյ. զի հնձան հարի ես միայն, և կոխեալ զթշնամին զգերիդ դարձուցի. տամ զդա ոչ ումեք սեպհական, այլ և կացուցանեմ յաջորդս յաթոռ իմ զայնոսիկ որ լսեն զբանն Աստուծոյ և առնեն. ոչ տիրել վիճակին, այլ զանձն օրինակ տալով առաջնորդել հօտին ։ Իսկ յորժամ կոչեմ զնա առ իս, քննել և ըստ աշխատութեանն պսակել, յիմ տանէդ և 'ի ժողովրդոց զայլ ոք խնդրել կարգել, իմ ընտրութիւն է, տեառնս՝ և ոչ նորա որ հրամանաւ իմոց կարգեցաւ պաշտօնեայ. ապա թէ նա զնա ժպրհի առնել որ յաթոռն էր փոխանակ իմ, յայտ է թէ յափշտակեաց յինէն զիմն արեամբ ստացեալ ժառանգութիւն. անիրաւեաց յիս, զրկեաց զիս, զերկս քըրտանց իմոց եհան յինէն և իւր անուանեաց ։ Խաչիւ ստացայ, և որպէս 'ի ծառայ պաշտել հաւատացի. իսկ նա հակառակամարտ ինձ տիրեաց. մնացեալ 'ի ձեռս այնոցիկ որ զինքն սիրեաց՝ և ոչ զոր ես. յիւրոց եղբարց նորոյց յաթոռ իմ՝ և ոչ յիմոցն. զի՞նչ վասն այդորիկ կամիս ուսանել. ոչ առ մարդ մեղաւ այնպիսին, այլ առ Աստուած, և ո՞վ ժպրհի աղօթել վասն նորա ։

Որդիքն Հեղեայ զմիս 'ի կաթսայէն առնուին իշխանաբար, և ես զժողովրդն և զտապանակն յայլազգիս մատնեցի վասն նոցին յանցանացն. դու ո՞վ մարդ, ընդէ՞ր սքանչանաս, թէ որ զիմ արեամբ ստացեալ եկեղեցին 'ի ժառանգութիւն ինքեանց ձգեցին, բերեալ թողուն 'ի ծառայութեանն տրկութիւն այլազգեաց ։ Ո՞չ գիտես թէ ախորժելի է ինձ արհամարհութիւնն յօտարաց՝ քան թէ յիմոցն. ո՞չ իմանաս թէ կամիմ

մնալ նոցին ամայի, քան թէ յիմ ժառանգութիւնն և յաթոռ՝ ժառանգութեամբ ումեք հակառակամարտ իմոյ կամացս ելանել և բազմել, ունել զիմն որպէս տէր և ոչ որպէս ծառայ, որպէս իշխան և ոչ որպէս պաշտօնեայ. իբր 'ի հօրէ իւրմէ պարգև՝ և ոչ որպէս 'ի յինէն. իբր 'ի յերկիր ժառանգաւոր՝ և ոչ որպէս վասն առ 'ի յերկիրս յուսոյն աշխատեալ. իբր յաշխարհս փառաց հպատակեալ՝ և ոչ որպէս փախստական առ իս ընթացեալ. 'ի բաց տար, այս օրինացս և ոչ բնաւ յինէն հրաման ընկալայք: Այս պատասխանին է Քրիստոսին, և ոչ յինէն՝ այլ առ 'ի նմանէ ասացեալ. քանզի թէպէտ և տարազ բանիս այլապէս է, սակայն հիմն և արմատ սորին և նորին ճշմարտութիւն. և կարծեմ ոչ ումեք է կար ստերիւրել զսա 'ի Քրիստոսէ և 'ի նորին բարբառոյն:

Արդ եկեսցուք այսուհետև ըստ կարգի 'ի դասս արդարոցն, մի գուցէ մոլար նոքա հանեն զմեզ 'ի ճանապարհէ տեառն և վարդապետին Քրիստոսի: Երկրորդ յետ Քրիստոսի զքեզ ուսաք, ո՛վ Պետրոս. գլուխ յետ գլխոյն դու նստար աշակերտացս. վէմ հաստատութեան բնաւիցս զքեզ էարկ 'ի հիմն տաճարիս. ըզգառինսն և զոչխարսն 'ի ձեռս քո աւանդեաց արածել, յետ առնլոյ զգրաւական սիրոյդ. լո՛յծ մեզ զայս տարակոյս աղաչեմք: Այդրէն, ասէ, 'ի բանդ քո դարձիր քննութեամբդ և հաստատիս, փոքուդ թէ հաւատաս՝ հաւանիս: Ո՜ինչ է զոր ասացն առ իս Քրիստոս, յիշեա վերստին. ո՞չ նախ եհարց թէ սիրես զիս, և կրկնեաց զսիրելն զինքն, և երեքկնեաց թէ սիրես զիս. յորժամ երիցս ըմբռնեաց առ ինքն զսէր բերանով իմով, եղբայր, ապա հաւատաց ինձ զայդ զհօտ արածել, և ոչ վայրապար: Եւ յորժամ աւանդեաց, ո՞չ ասաց թէ Պետրոս, արածեա զոչխարս իմ, զոր տամ 'ի քեզ արածել և ոչ ժառանգել, հովուութեամբ տածել և ոչ իշխանաբար[1] տիրել: Եւ ես այնպէս ընկալայ և այնպէս արածեցի. զանցս չարչարանաց փոխանակ նոցին յանձն իմ կրեցի. և յորժամ տէրն իմ եցոյց զմերկանալն յինէն մարմնոյս, գրեցի թուղթ ընդ-

1 Երկու օր. Իշխանութեամբ:

հանրական առ ամենեսին ձեզ, և զայս Ճանապարհս ունել աղաչեցի։ Ո՞չ լուար զի կնիք գրելոցն առ երիցունսդ կարգեցի զաղաչանսդ՝ զորս հանդերձեալ փառացն որ յայտնելոցն է՝ հաղորդս ինձ առ ՚ի արածել Թախանձեցի զհօտդ որ Աստուծոյ է և ոչ ձեր. զի այսպէս ասաց և առ իս, արածեա զհօտդ իմ և ոչ զքոյդ. հրամայեցի ոչ տիրել վիճակիդ, այլ լինել օրինակ հօտին. որոյ վասն խոստացայ ՚ի հօտապետին երևելն առնուլ ձեզ պսակ՝ որոյ կամացն հնազանդեալ աշխատէիք։ Արդ եթէ զհօտդ ձեզ համարիք, և որպէս ՚ի ձեր տիրէք, և ում կամիք ժառանգեցուցանէք, ոչ վասն նորա վաստակեցէք, այլ ձեզ և ձերոյ որդւոցն. ՚ի նմանէ մի ակն կալջիք պսակաց՝ ՚ի պէտս ժառանգաւորաց աշխատեալքդ և ոչ վասն Քրիստոսի։

Արդ քեզ զամք անօթ ընտրութեան այսուհետև, խորոցն Աստուծոյ հազարապետ Պօղոս, հեթանոսաց եկեղեցւոյ սեպհական առաքեալ, մի արդեօք դու զտեալ զայս օտար շաւիղ ցուցեր մեզ ՚ի կարծեալս անձն օտար ՚ի Ճանապարհէ. եթէ քո է՝ հաւանութեամբ ընդունիմք. ապա թէ ոչ՝ տուր զխորշելոյդ վ֊կայութիւնն հաւաստի։ Ահա զայդ Ճանապարհ, ասէ, վաղ ուրեմն խցեալ փակեցի, և զճշմարտութեանն բացի յայնժամ՝ յորժամ կապեալ յԵրուսաղէմ յօժարութեամբ վասն Քրիստոսի գնացի։ Քանզի խորագէտ էի, և ոչ անտեղեակ խորհրդոցն սատանայի. վասն այսորիկ դադարեալ ՚ի Մելիտէ կղզի, զերիցունսն Եփեսացւոց եկեղեցւոյ կոչեցի, և նոքօք վկայութեամբ զճշմարտութիւնն յամենեսեան ՚ի ձեզ աւանդեցի։ Ո՞չ լուար, զի սուրբ զիս յամենեցուն ձեր յարենէ արարի յաւուրն յայնմիկ. է՞ր վասն. քանզի ընաւ ոչ խորշեցայ ՚ի պատմելոյ ձեզ զկամս Աստուծոյ։ Աւ զի՞նչ ասացի, երկրորդեա առաջի իմ. զգոյշ լինել պատուիրեցի անձանց և հօտիդ՝ որում եդ զձեզ Հոգին սուրբ տեսուչս՝ և ոչ տերս, հովուել զժողովուրդն տեառն՝ և ոչ զձեր, զոր ապրեցոյց արեամբ իւրով՝ և ոչ ձեր աշխատութեամբ։ Եթէ իմ ոչ էր հօտդ այդ, ձեզ ո՞րպէս տայի. եթէ ես զհարկաւոր պիտոյսն ոչ համարձակեցայ ՚ի նոցանէ առնուլ, այլ ձեռօքս վաստակէի, ձեզ ժառանգութիւն ունել զնոյն ո՞րպէս համար֊

ձանկեցուցանէի ։ Զիս ձեռքս իմ պաշտեցին յաւետարանեն ։ իսկ դու 'ի նոյն գործ կանխեալ՝ ոչ միայն ուսեա 'ի նոցանէ, այլ և այլոց յետ քո շնորհես, որպէս թէ քո իցէ՝ և ոչ տեառն իմոյ արեան գինք ։ Նա երկիւղիւ և ողորմութեամբ քարոզէի առ 'ի յոչ զեղծանել իշխանութեամբս զոր ետ ինձ տէր 'ի շինել և ոչ 'ի քակել ։ իսկ դու անմտութեամբ յափշտակես և այլոց շնորհուկս ընձեռես ։ Նա ոչ տիրէի իմով հաւատովս, այլ միայն գործակից էի շնորհացն ։ իսկ դու ոչ կենօք միայն, այլ և յետ մահու տիրես ։ Նա կացեալ վասն եկեղեցւոյ հեթանոսաց, և աղերսիւ նոցին հրամայող ։ դու ոչ կացեալ, և որպէս զքո ստացող ։ Ո՛րորիք զայդ զնոսա ածելով, ստերիւրիք 'ի ճշմարտութենէ թղթոյն առ 'ի յինէն գրեցելոց ։

Զգոյշ լերուք, ոչ էք ժողովուրդ միայն, այլ և յանցաւոր ։ յանցաւոր ոչ առ մարդ, այլ յԱստուած ։ չունիք ինչ այդմ յանցանաց պատասխանի, անձամբ անձին եղեալ զտակք չարեաց ։ Ընդէ՞ր ոչ ամաչէք 'ի Քրիստոսէ զնորա ժառանգութիւնն 'ի ձեզ գրաւելով ։ Ե՞ր վասն յիմարեցայք, ոչ անձամբ անձին եղեալ պատուող, այլ և օտարաց ։ Քրիստոս ոչ եգ շուք լինել անձին քահանայապետ, այլ կանխագիտութեամբն հաստատեաց ։ և դու ծառայ նորա, ոչ միայն 'ի տեղի ծառայից տեառն ժառանգութեան՝ զոր յետ քո վիճակել, այլ ազգատոհմի քո շնորհես ։ Զեղկղանացն սովորութիւն յառաջ բերես ։ զհնացեալ և զծերացեալ օրինացն զաստուածպաշտութենէն դարձեալ բուռն հարկանես ։ տոհմի և ազգի որոշմունք դարձեալ որպես ։ Ապա կացուցեալ զատս յաւետարանէն յօրէնս՝ քարոզեա թլփատութիւն և խտրութիւն, և մի հետևիր խաչին Քրիստոսի ։ հոգւով սկսար և մարմնով վախճանիս ։ այդչափ անձս կրեցէք զուր, և ոչ իմանայք ։ Փոփոխեցայք յաւետարանէ իմմէ, և ոչ ճանաչէք ։ Եւ եթէ այդմ սովորութեան էի ջատագով, ապա ընդէ՞ր հալածիմ ։ եթէ զոր քակեցի զնոյն միւսանգամ շինեմ, ապա յանցաւոր զանձն իմ ես ինձէն երևեցուցանեմ ։ որ օրինացն մեռայ, զօրինացն սովորութիւն զինքն վարդապետեմ ։ Ապա թէ վարդապետեմ կամ ես կամ հրեշտակ յերկնից աւելի քան զոր կանխաւն աւետարանեցի, նզովեալ եղիցի ։

Միահամուռ երկու և երեք վկայք հաւաստացին զճշմարտութիւնն, և յանձն առարին զատութիւնն. և վկայք այսպիսի ըստ որում և տեսաք, Քրիստոս և իւր եկեղեցւոյ հաստատութեան սիւնք։ Այլ զի մի երբեք վտանգեսցուսցեն զմեզ այպանօքն՝ խնդրեսցուք ըստ կարգի և ըստ սոցին պատուիրանացն պահպանին. այս ինքն համաձայն մնալ ընդ կարգս հայրապետաց. զորս թէ կարգաւորապէս առնում 'ի մէջ հանդերձ ժողովովքն՝ զոր առարին, և կանոնական սահմանութեամբքն զոր հաստատեցին, ծանրապատուական լինի ձեռս բազմապանութեամբ. այլ աա գիրս որ վասն նոցին պատմէ միայն առաջեմ զհակառակորդն անհաւանութեամբ, այս ինքն յեկեղեցական պատմութիւնն։

Քանզի թէ հայրապետացն զոր առեալ բերէ ըստ իւրաքանչիւր որ ընդ աթեւերս աթոռոց, ոչ տայ ընդունարարացոյց թէ երէց կամ եպիսկոպոս յեկեղեցի կամ յաթոռ իշխանութիւն առնէր՝ զոր յետ իւր յաջորդ յաջորդեցանել. այլ երկոտանքն ննջեալ, թողին զեկեղեցին 'ի կամս Քրիստոսի և եպիսկոպոսացն. և եպիսկոպոսքն 'ի կամս Քրիստոսի և ժողովրդեանն և եկեղեցւոյ ժառանգաւորացն և համաձայնութե եպիսկոպոսացն կոչման յոր առաքինեալ առաքեալ զաթոռն։ Այլ զամն յաղագարանէ՝ տեսչութեանքն Աստուծոյ առեալ նուաստեցին յաթոռն Հռովմայ, և զայլ ամն 'ի մանկական խաղուցն յաթոռն Աղեքսանդրու. Անդրանիկ յետաքաղութենէ կոչեցաւ եպիսկոպոս Մեղիտոս. վասն այնորիկ չարարեալ փոյթ անդորրութեամբ իւրոյ՝ անսաչառութեամբ անպարգէր զԹագաւորն. և Յոհան յԱնտիոքայ ժառանգէ զԿոստանդնուպօլիս. ասաց և ոչ տեսեալ զնոյն իւր հայրենիս, էջ վասն օրինացն Աստուծոյ 'ի յաքսոր։ Թէ իւր էր համարեալ զդասմնապատիկ իշխանութիւնն, ներէր արդեօք Թագաւորհւոյն՝ որ անուր զնա վտարեցուցանէր։ Այլ զայն անգոսնեալ, 'ի հետ վերջին պատկերն փութայր, և ոչ յաներն որպէս իւր հրաժարէր, և ոչ 'ի չուներն տարապայմէր. Այսպէս ընթացան և այսպիսի մեզ ձանապարհ

1 Այլք, ծողոհրդոսին. եպսք ըստ լուս. մերոյ օրինակի։     2 Մի օր. ժառանգորդ։

հողդեցին, և տիեզերք ամենայն ընդ նոյն պողոտայս անըստերիւր ընթանան այսօր առաջի աչաց մեր, ըդհետս հարցն շաւղաց կոխելով. իսկ մեք օտար ամենեւին և յիմարեալ, և ոչ գիտեմ զիարդ 'ի խելագարութիւնս ընկղմեալ: Այրէցն մատուռ մի չինէ, և ըդՔրիստոսի ժողովուրդն մտ այսորիկ ողդեացն և կնոջն ծառայ թողու յաւիտեան, թէ հովուեն և թէ ոչ. և արեգայն վանք չինէ, և զեղբայրութիւնն որ 'ի Քրիստոսի անուննն ժողովրին՝ քուերորդույն 'ի գերութիւն մատնէ, և զայն իրաւամբք առնել համարի: Ազ եպիսկոպոսքն այժմ ոչ մինչև 'ի մահն համբերեն, այլ բազումք կենօք զաթոռն ընտանեացն վիճակեն՝ որպէս զինքեանց սեպհական. 'ի վերայ որոյ ոչ գոյ որ նայի և ոչ որ խնդրէ զիրաւունս Աստուծոյ: Յայլ ազգաց օրէնս որ սմին արտաքոյ գնան՝ ոչ համարիմք իրաւունս հայել, թէ մոլորեալ են. և մեզէն զճշմարտութիւնն կամ տկարանամք խնդրել, և կամ բնաւ անփոյթ արարեալ թողումք. և որոմն չար օր ըստ օրէ աճեալ զարգանայ, և զարմատն 'ի խոր արձակեալ ատոքանայ, և զգայուն յինքենէ զչարաչար գիւտս զանազան մեղաց: Ի մի տեղն ուր բաւական էր մի կամ երկու եկեղեցի ժողովարան, այժմ տեսանի բազումս և անթիւս ծակոտեալ ոմքոլոնս, ոչ 'ի փառս Աստուծոյ, այլ անհնազանդութեանն և թշնամութեանն երիցանց աշակերտս. որպէս զի միմեանց հակառակս կացեալ զժողովուրդսն յիրերաց քեցեսցեն. և այսպէս զմարտ թշնամութեանն աճեցուսցեն, և իբր զի հայրենիս որդւոյն զնոյն թողուցու: Զիք մեր բնաւ կաթողիկէ եկեղեցի 'ի գեօղ կամ 'ի քաղաք՝ ըստ որում զայլ քրիստոնէից սովորութիւնս տեսանեմք, և ոչ անդր երիցանց և կղերիկոսաց ըստ արժանեաց վիճակ աստիճանաց, այլ միայն եկեղեցիքն աշակերտք անհնազանդութէ իրերաց: Ի տեղ ուր ազգ հայոց ըստ թուոյ չափոյ բազում է քան զայլս սակաւաւոր ազգն 'ի կարգ և 'ի հնազանդութեան. վասն այսորիկ և ոչ պտուղ ժողովըրդոց և ոչ հաւատոյ նոցին առ Աստուած զարգացումն, ոչ տօնից պայծառութիւն և ոչ անուանն Աստուծոյ 'ի մէջ մեր փառաւորութիւն. զիարդ այս չինեսցի՝ յորժամ հիմն խարխալեալ է: Եպիսկոպոսք

ձեռնադրիմք, և բնաւ ոչ գիտեմք զգործ այցելութե՛ն. աթոռոց վիճակիմք, և ոչ ամենևին ծանօթ եմք աթոռոյն, կամ թէ զի՞նչ է աթոռ մեր և ուր զետեղի։ Ո ի աթոռ եպիսկոպոսին յայլ քրիստոնէից զայն լսեմք և տեսանեմք, որ ՚ի խորանն սուրբ իցէ հաստատեալ ՚ի կաթողիկէ եկեղեցւոջն, ուր հանգչի փոխանակ Քրիստոսի ՚ի մէջ եկեղեցւոյ իւր ժողովրդեանն։ Մեք չունիմք ոչ կաթողիկէ, ոչ աթոռ, ոչ ժողովուրդ, և ոչ ՚ի մէջ նոցա գոլ հարկաւոր ուսաք լինել եպիսկոպոսի, այլ ժողովուրդքն են մատնեալ ՚ի ձեռս երիցանցն այդպիսի հակառակութե՛ք և մախանօք, և եպիսկոպոսք բացակայ ՚ի նոցանէ ՚ի ծերպս վիմաց աքսորեալք. յորժամ գայցէ ՚ի մէջ իւրում ժողովրդեանն որպէս յօտարաց՝ իւր միայն զերիցունսն գիտէ, և ոչ զժողովուրդսն. գաղտագող զսակաւիկ տուրսն ձգեն ՚ի նա և արտաքս առաքեն։ Թէ տօն է, չտեսանէ ժողովուրդն զնա. թէ հանդիսական օր է, ոչ փառաւորի անունն Աստուծոյ ՚ի ձեռս սորա ՚ի մէջ նոցա։ Խաւարն մածեալ է ՚ի վերայ մեր միայն՝ որպէս երբեմն յԵգիպտոս ՚ի մէջ Իսրայէլի. նա և ինքն որ եպիսկոպոս թէ և ՚ի կատարելոցն է՝ բնաւ և երբ գիտէ հարկաւոր իւր զայս գործառնութիւնս, կամ զժողովրդեանն հոգաբարձութիւն կամ զտօնից փառաւորութիւնն, կամ երբ մտէ յեկեղեցի Աստուծոյ, կամ այլոց ՚ի նոյն ճանապարհորդէ. բայց թէ ՚ի պէտս ձեռնադրութեան, և զայն դըժուարելով։ Բազում անգամ ձեռնադրեմք և ոչ պատարագեմք. պատարագիչս կատարեմք, և մեք զանձինս անարժան առնեմք. հովիւ ժողովրդեան կոչիմք, և վանօրէից հայրութիւն առնեմք. զվիճակս աշխարհաւ գիւղից և քաղաքաց վանօրէից ծառայեցուցանեմք, և աշխարհ՛ք մեր սովեալ և պապակեալ ՚ի գիտութենէն Աստուծոյ և փառաց։

Այսպիսի է ընթացք մեր այժմ, ընդ որ ոչ զառաջինսն տեսաք կամ լուաք ընթացեալս, և ոչ զաշակերտեալս սոցին քրիստոնեայս մոլորեալս։ Այլ մեք միայն գտաք զայս ճանապարհ. այժմ և ոչ ՚ի սկզբանէ այսպէս էաք. զի թէ այսպիսի էր լեալ ընթացք մեր, ոչ էաք մնացեալ ՚ի հաստատութեան. բայց ոչ էր այսպէս, այլ լսեմք մեծամեծ և բարձրաբերձ գոլ եկեղե-

ցիք յաշխարհն Հայոց՝ 'ի գեօղս և յագարակս, և երևելին գետ Եւս նշմարանք կայանի եպիսկոպոսացն 'ի նոսին. և մանաւանդ 'ի ժամանակս Բագրատունեացն և Արծրունեաց Թագաւորութեան, որք զամենայն կարգ աստուածպաշտութե՛ն իւրեանց ուղղեցին։ Ոչ էր առ նոքօք, որպէս առաջացոյց տան պատմութիւնք ժամանակաց, եկեղեցիք ժառանգութիւնք, և ոչ ժողովուրդք առանց հովուաց տածէին, և ոչ վանորայք 'ի քուերորդիսն պատսպարէին։

Այլ այս չարիք չունէր բազում ինչ ժամանակ զի սկսաւ ընձիւղել. գրեթէ հարիւր ամ աւելի կամ պակաս՝ յորմէ հետէ տապալեցաւ իշխանութիւնն, որ ըստ որէ սկսաւ զարգանալ, և բնաւ փոյթ ումեք չեղև առ 'ի կարճել զայն աշխատել. այլ մանաւանդ քանի ընդերկարութեամբ հնանայ՝ որպէս զօրէնս ընկալեալք զյանցանս. քանզի այս մարդկային բնութեան սովորութիւն է։ Իսկ նուաղեալ աղօտացեալ այժմ յանին կորստեան հասեալ ժամանեցաք. քանզի ամենայն հայրենի աշխարհն մեր՝ ոչ թէ միայն յանկարգութեան է, այլ և 'ի չար և 'ի դառն ծառայութեան. ոչ առեալ ըստ մարմնոյ՝ յոր Աստուած մատնեաց ըստ մեղաց մերոց, այլ ըստ հոգւոյ՝ յոր մեք եգաք անձամբ զանձինս անմիաբանութեամբ։

Զի լսեմք թէ Թուրքերն գործեն զգործ եպիսկոպոսաց, և նոքա տան հրաման եպիսկոպոսաց ձեռնադրել, և զարծաթն յինքեանս ընդունին. և ուրախ են առաւելապէս աշխարհն 'ի նոսա՝ քան 'ի քրիստոնեայսն որ զնոյն գործ կատարեն. զի նոքա խելամուտ գոլով մինչև 'ի չնչինչսն տուգանին, իսկ 'ի հեթանոսացն բազում ինչ զանխլացեալ թաքչի. մանաւանդ և օրինօք չարչարեն, հնազանդ գոլով իւրեանց իրաւանցն։

Վա՜յ ինձ, և եղո՜ւկ եմ ես. մեռեալք մեռանին և զաւուրս անթաղ մնան՝ յաղագս ոչ ունելոյ զգլխաւոր այնր անիրաւութեան հարկին, և մանկունք առանց մկրտութեան։ Իսկ ինքեանք իշխանք խոստովանաբար աղաղակեն, թէ 'ի ձէնջ գտաւ այս հարկաց բազմութի՛ւն և ոչ 'ի մէնջ. նա և արդար են ամենևին։ Քանզի եպիսկոպոսք զմիմեանս զզուեալ յիշխանութեանց յափշտակութիւն՝ զտին զայս, և որ ըստ որէ աճեցուցին

և աճեցուցանեն ։ Յայսմանէ թէ զի՞նչ և որքան գիւտք չարեաց ծնանին՝ ո՛ թուելով բաւականասցի ։ Իսկ ուր այնքան ամպրոպք խռովութեան 'ի վերայ եկեղեցւոյ զեղծեալ օրէնքս՝ ո՛վ բաւականասցի ուղղել. կամ ըզնորա պայծառութիւնն¹ կարասցէ նոցին քաղցրացուցանել. Աստուծոյ միայն է կարելի՝ որ կենդանի առնէ զմեռեալս ։

Իսկ այսուհետև որ 'ի քրիստոնէից ազգաց միջի եմք, ունիմք ցարդ ևս սակաւաւոր իշխանս քրիստոնեայս, մերձ առ հայրապետական իշխանութիւն և ընթերակայք նմին, զի՞նչ. ունիմք թերևս զբարեպաշտութեան շաւիղն անսայթաքելի. ոչ բնաւ. և զի ոչ ունիմք, ոչ եթէ կարծեօք ասի, այլ 'ի մերձակայ քրիստոնէից դատեալ յօրինացն գտանիմք դատապարտեալք. ընդ որս համեմատեալ, լոկ միայն² հաւատով և անուամբ անուանիմք քրիստոնեայք՝ թափուր 'ի գործոց ըստ իւրաքանչիւր ճանապարհի. այս ինքն զի ոչ ունի եօթանասուն ամ այսօր լինելն Փռանգաց յայս աշխարհս՝ որում տիրեցին զօրութեամբն Աստուծոյ. և նոքա յորժամ եկին՝ լի էր ա՜մ Միջագետք և Ասորիք, Միւրիա և Կիւլիկիա, Պամփիլիա և Կապադովկիա և ա՜մ Պամիրք՝ Հայոց ազգաւս, որք ունէին յայնժամ իշխանս և կրօնաստանս ըստ չափոյ իւրեանց, և չէ պակասեալ իշխանութիւնն մինչև ցայժմ. սակայն յայսքան ժամանակս ոչ շինեալ է ուրուք 'ի նոցանէ 'ի քաղաքս իւրեանց կամ յաւան եկեղեցի Աստուծոյ կամ եպիսկոպոսարան՝ վասն առ 'ի Քրիստոս յուսոյն և սիրոյն. բայց յայնմանէ զոր Արծրունիքն և վանանդեցի իշխանքն բարեպաշտք արարեալ են 'ի Սեբաստիա 'ի Հոռոմոց աւուրսն ։ Որչափ նոքա բարձան՝ կարգ մեր ամենեքին 'ի մոլորութիւն դարձաւ. ոչ թէ անկարգութե՛ է միայն, այլ և ըստ անիմաստութե՛ է ։ Իսկ Փռանգք 'ի սակաւ աւուրս լցին զամենայն աշխարհս բարեպաշտութե՛. 'ի տեղն զոր Հայոց իշխանքն ունէին զբազում ժամանակս առանց եկեղեցւոյ և եպիսկոպոսի, նոքա առեալ՝ նախ առաջին զեկեղեցական կարգ 'ի նմա ուղղէին, որպէս և տեսեալ եմ աչօք և լուեալ ականջօք ։

1 Մի օրին. Նոր պայծառութիւնն ։ 2 Երկու օր. Լոկ մ ։

Փոքր ինչ և ասել յօժարիմ. Մարաշ քաղաք մեծ և լցեալ բարութեամբ՝ Հայոց էր, առանց աթոռոյ և եկեղեցւոյ. Փռանգն յորժամ եկաւ, զբարձրաբերձն շինեաց 'ի նա եկեղեցի և աթոռ: Նոյնպէս և Քեսուն Կող Սաւլին որ ընդ բարեպաշտոն յիշատակի. և ոչ աթոռ 'ի նմա Քրիստոսի՝ և ոչ ժառանգութիւն. իսկ Փռանգաց տիրեալ՝ արքեպիսկոպոսարան 'ի նոյն ուղղեցին, և յամենայն աւանսն՝ որ շուրջ զնովաւ եկեղեցիս և պաշտօնեայս: Իսկ զԱնարզաբա և զՍիս և զորս ընդ նոքօք աշխարհս զինչ ասեմք, որ մինչև ցայսօր ընդ Հայոց տէրութեամբ են բազում աշխարհօք, և առանց հովուութեան և հովուոյն Քի, և առանց եկեղեցւոյ և նորին պայծառութե. քանզի եպիսկոպոսքն 'ի վանորայս են, և հօտն առանց հովուացն տածի:

Ոչ գիտեմ ուստի զայս օրէնս այժմ գտեալ մեր. 'ի նախնեացն ոչ ունիմք, զի ահա ցուցաւ վերագոյն. և յայլ ազգս ոչ տեսանեմք, և նոր առաքեալ չյայտնեցաւ մեզ որ խախտեաց զառաքելոյն սահմանս. յայտ է թէ ունիմք յանխմաստութենէ և յարհամարհութենէ օրինացն Աստուծոյ, և յոչ փութալոյ ամենևին առաջնորդաց 'ի վրէժխնդրութիւն օրինացն, և յոչ ծառայելոյ տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի, այլ իւրեանց որովայնին և աներկիւղածութեանն. որք իբր զպարկեշտ 'ի վանս նստիմք, և զհօտսն 'ի խաւար տգիտութեան լքեալ թողաք:

ՅԱնարզաբայ Հայոց իշխանքն եկեղեցի են շինեալ. Հոռոմք առին զտեղին մի անգամ և երկիցս, և 'ի Հայոց եկեղեցին եպիսկոպոսք կարգեցին և յաշխարհէն նուէր եկեղեցւոյն: Իսկ Հայոց իշխանքն առեալ զնոյն վերստին՝ զՀոռոմոցն եպիսկոպոս վարեցին, և զեկեղեցին այրի և ունայն թողին, և է նոյնպէս: Այսպէս է և Ուռհա, նոյնպէս և Սամուսատ և ամենայն Միջագետք. զի ըստ ներողութեանն Աստուծոյ եկաւ Թուրքն զաշխարհն, և զեկեղեցիսն ամենապայծառս՝ Հայք յաջորդեցին 'ի Փռանգաց: Հոն են եկեղեցիքն թափուր, կաթողիկէքն 'ի պաշտամանէ, և քահանայքն պառակտեալ 'ի միմեանց ծառայեցուցին

1 Մի օր. Կոյանան:

զժողովուրդն . և 'ի նոյն տեղն Ասորիքն 'ի հանդէս և 'ի փառաւորութիւն են անուանն Աստուծոյ ։

Իսկ Սիս որ իշխանանիստն է քաղաք մեր՝ այժմ լքեալ իշխանօք և ժողովրդօք, առանց այցելութեան և այցելուի . ոչ եկեղեցիք և ոչ 'ի նոյն ժողովրդեանն ըն-թացք, և ոչ բնաւ գիտեն թէ հարկաւոր է մեզ ունել զայս ։ Սարմ̃նական իշխանութիւնն՝ բազում ինչ բա-րեձևութիւն նախանձեալ առին 'ի Փռանգաց, և հո-գևորն անհաղորդ ամենևին . քանզի բազմութիւն քրիստոնէիցն որ 'ի նմա՝ տգիտութեամբ կորնչին, պաս-քեալ օրինացն Աստուծոյ և եկեղեցական օրինաց ։ Որպէս և ամենայն գղեակք և դաստակերտք ընդ նոցին իշխանութեամբ . զի եպիսկոպոսքն 'ի վանեարն են, միայն ձեռնադրութեանն գիտեն զինքեանս գոր-ծաւորք ։

Պարտ էր ըստ ա̃մ քրիստոնէից օրինաց՝ նստել եպիս-կոպոսին 'ի գլխաւոր տեղիս, իւրաքանչիւրոցն ունել կաթողիկէ եկեղեցի, և զօծնսն պայծառացուցանել, զհանդէսսն կումարել, զեկեղեցին 'ի սէրն Այ քաղ-ցրացուցանել, և զնոցն հոգևոր կերակրովն սնուցանել ։ Իսկ այժմ բարձեալ է այս 'ի մէնջ, և տիրեալ և յա-չաղանք և թամբասանք, այպանմունք միմեանց և ար-համարհութիւն . և բնաւ չհաւատամք իրերաց, թէ 'ի փառս Աստուծոյ գործ կատարի, այնու զի մեք ոչ կա-տարեմք, այլ զամենայն ինչ մարդկային ախտի ծա-ռայեցուցաք ։ Երբեմն յորժամ ժողով հանդիսական տօն լինի 'ի մէջ նոցա, և գան եպիսկոպոսքն 'ի դղունս իշխանին, խորշին առաքինիքն և տեղի տան 'ի պատա-րագելոյ զՔրիստոս վասն փրկութեան ժողովրդեան . մանաւանդ և ամօթ զայն իւրեանց համարին՝ աւուրն Քրիստոսի սպասաւորել, և զնորա անուննն 'ի մէջ ժո-ղովրդեան փառաւորել . - իսկ որ ժպրհի յառաջ գալ 'ի գործառնութիւնն, յամենեցունց թամբասի, յաչա-ղի . էր վասն . զի ոչ, ասեն, 'ի փառս Աստուծոյ կատա-րէ զգործն, այլ 'ի մարդկան . և ուստի՞ դու գիտես զայդ . այնու, ասէ, զի յիւր եկեղեցին զամս ողջոյն չէ թոյլ արարեալ զՔրիստոս պատարագելոյ . եթէ այդ այդպէս է, ապա արդարանաս 'ի բանս քո . զի որ աստ առնէ անսովորաբար՝ 'ի մարդահաճութենէ շարժի ։

Բայց սակայն ամենեքեան դուք մեղանչէք մարդահաճութեամբ․ զի որպէս նա որսաց զփառս պաշտամանցն, դուք որսայք հրաժարմամբք։ Եւ ընդէ՞ր այդքան լքեալ թողէք զշնորհսդ Քրիստոսի․ եթէ ոչ էիք արժանի, ե՞ր առիք․ և եթէ առէք, ո՞ր աղագաւ ոչ պաշտէք։ Ո՞չ գիտէք եթէ հարկաւոր է ձեզ զայն գործ առանց դանդաղելոյ կատարել, և քնութեամբ զպաշտօնս եկեղեցւոյ սիրել։ Ե՞ր վասն նախապատուէք զմարմնական գործ քան զտեառն ձերոյ, և սիրէք ըզփառս մարդկան առաւել քան զփառս Աստուծոյ․ և հեշտութեամբ զարշութեան զրկէք զձեզ 'ի հեշտութենէ մաքուր սիրոյն Քրիստոսի։

Ծանիք զի որպէս տուն իշխանին չէ առանց իւր փառաւոր, այսպէս և ոչ եկեղեցիս առանց ձեր՝ որ փոխան ¹ էք Քրիստոսի։ Որպէս դորա զամենայն օր հանդիսական պարտ է պատուել, այսպէս և ձեզ զամենայն տօնս տէրունական պարտ է ձերով պատարագաւն և պաշտամամբն փառաւորել։ Ծառայն ոչ զովի յորժամ վասն սխալանացն 'ի սպասաւորութէ տեառն խորշի, այլ անարգի թէ ընդէր սխալեաց կամ հեղգացաւ․ այսպէս և դուք թէ սխալանօք հեղգանայք, բարկութեան տեառն ձերոյ ակնկալէք, և թէ հեղգութեամբ՝ ևս առաւել սաստի, և թէ մարդահաճութեամբ՝ աստուածամարտութեան։

Եւ չունիմք ճշմարտութիւն, բարձաւ ստուգութիւն, գնաց քաղցրութիւն սիրոյն Աստուծոյ․ ամենեքեան ² իրերաց դատաւորք, և ուղղեալ և ոչ ոք։ Զի սիրեալ են զլեզուս առաջնորդք զիրեարս դատել, և ժողովուրդն զնոսա, ոչ որպէս զի ուղղեսցեն՝ այլ զի այպանեսցեն․ վասն այսորիկ և ամենայն օրինացն Աստուծոյ մոռացօնս արարաք ³։ Հարկաւոր գործ զերկրագործութիւնն ստացաք Քրիստոսի պաշտօնեայքս․ և սէր մեր 'ի ստացուածս դարձաւ, և ոչ 'ի փրկութիւն մեր կամ յայլոց։ Զեկեղեցիս ժառանգութիւն մեզ առաք՝ և այլոց շնորհեցաք․ զՔրիստոսի փոխան լինելն օտարութիւն 'ի նմանէ համարեցաք՝ և այնպէս առաք։

1 Մի օր․ Փոխանակ։
2 Երկու օր․ Որ։
3 Երկու օր․ Արարին։

Եպիսկոպոսք յաճախեն, և այցելութիւնն նուաղի. վանորայք շինին և բազմանան, և ժառանգութիւն ազգականաց շնորհին, և բաժանմանն ժողովրդեանն կայարանք շնորհին: Սակս որոյ բազումն ցաւէ ինձ. և յառաջ քան զհասակ իմ ձգէ զիս գործով սիրոյն բարբառել, և դատաւոր առնէ զմանուկ կրտսեր՝ ծերոցն տմարդութիւն: Նա անպարտ ստիպէ առնել ազդելով բանիւ յարենէ արդարոյն¹ անաչառն դատաստան. և խօսիմ խարշատեալ, թէպէտ և ոչինչ օգտիմ². ծանրալուր ունկանց փակելոց տամ վկայութիւն ճշմարտութեանն Աստուծոյ՝ և ոչ ամաչեմ. մայրենի գթով ստիպեմ զամենեսեան ձգել զստինս քաղցրաճաշակս բանից. ոչ թէ զի մայրաբար ծնայ կամ սնուցի, և կամ առի իշխանութիւն բժշկել որոց ախտացիմս, այլ զի միայն տեսանել արժանի գտայց զանձին իմոյ վէրս որով կեղեքիմս:

Աղաչեմ զձեզ, ներեցէք փոքր ինչ և իմոյ անզգամութեանս եղբարք, որք մտադիւրութեամբ անսայք նոցա՝ որոց նեղենն և տառապեցուցանեն զճշմարտութիւնն: Քանզի զայս և Պօղոս խնդրէր երբեմն 'ի Կորնթացւոցն 'ի չար մշակացն պարտելոց, երագահաս բժիշկն, հանճարեղ ուղղիչն, խորագիտութեամբ ըմբռնողն. Նմա այսօր կարօտի ճարակ վիրացս մերոց առ 'ի բժշկել. որ հիւանդանալն ուրուք հիւանդակցութեամբն առողջացուցանէր, 'ի գայթակղելն ուրուք տապանալովն վառվառեալ կազդուրէր: Այլ մեք բժիշկք մեղանչականք, ըստ որում ասէ ուրեմն Յոբ, մխիթարիչք չարեաց ամենեքեան, յայպանումն միայն նստեալ բանիւս ընդդէմ Քրիստոսի եկեղեցւոյ, և ոչ զվէրս մահու չափ սիրով 'ի յանձն առեալ, որպէս հրաման ընկալաք: Հովիւ ոչ քաջ, այլ վատթար. ոչ զանձն 'ի վերայ ոչխարացն եդեալ՝ այլ փախուցեալ. վարձկան տմարդի արդարև՝ և ոչ 'ի հետս ճշմարիտ հովուին ընթացեալ. արդեամբք ոչ փութացեալ վասն ոչխարացն, միայն զբանս յաճախեմ: Գայլն յափշտակէ և ցրուէ, և ես յաշտարակէս միայն խոնարհեալ նկատեմ, 'ի բացեայ կալով զբժշկելս հնարիմ, և ձեռն ձգեալ

1 Մի օր. Յարէնէ արդարութեան: 2 Մի օր. Ու օգտեմ:

հասարակաց վիրօքն վտանգիմ. այսօր մաքուր հոգեկիր, և վաղիւ մոլի խելագար։ Վասն այսորիկ ասէ ցիս Ճշմարտութիւնն, որպէս առ արդարն Յոբ, առ անարդարս իրաւամբ. «Մինչև յերբ խօսեսցիս զայդ՝ և ոգի մեծաբանութեան 'ի բերան քո. մի՞ թէ անիրաւ դատեսցի տէր, կամ որ զամենայն արար պղտորեսցէ՞ զիրաւունս. եթէ որդիքն քո մեղան առաջի նորա, առաքեաց 'ի ձեռին զանօրէնութիւնս նոցա։ Բայց դու կանխեա առ տէր ամենակալ աղօթիւք. եթէ սուրբ և ճշմարիտ իցես, աղօթից քոց լուիցէ»[1]։ Նա ահա հեռի եմ յայսմանէ; և գիտեմ զի ոչ լսէ. քանզի ըստգտանիմ 'ի սրտէ իմմէ, որպէս ասէ Աստուածաբանն, սորին վասն և ոչ ունիմ համարձակութիւն[2] առ նա աղօթել. և թէ ստգտանիմ, ապա ունիմ և ես 'ի հին մարդոյն. և թէ ունիմ, ոչ կարեմ դատապարտեալս զայլս դատել, այլ տամ զբան խոնարհութեամբ, զբոսանս առ գիտութեան իմաստից որոց ախորժեն, և տեղեկութիւն բարեպաշտութեանն՝ որոց փափագին։ Նաև եթէ ոք յաչաղանօք վարի առ իս յաղագս զայսորիկ քննելոյ, ընդունիմ սիրով. քանզի և ես անձամբ զչափ անձինս կշռեալ գիտեմ, և եթէ 'ի վեր է այս քան ըզհասակն իմ և զարժանս՝ ճանաչեմ։ Վասն որոյ և ներողութեամբ ունել զկշտամբանսդ աղաչեմ, ծանուցեալ թէ 'ի սիրոյն որ ոչ ամաչէ և ոչ խնդրէ զիւրն՝ ըմբռնեալ ես բերիմ։

## ՎԵՐՍՏԻՆ ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ ՈՉ ԺԱՌԱՆԳԵՑՈՒՑԱՆԵԼՈՑ ԱԶԳԱՏՈՀՄԻ ԶԱՌԱՋՆՈՐԴԱԿԱՆ ՊԱՏԻՒ, Ի ՊԱՏՄՈՒԹԵՆԷ ՀԱՐՑՆ ՄԵՐՈՑ

ՔԱՆԶԻ 'ի Քրիստոսէ և յիւրոցն բաւականապէս ուսաք զառաջադիր[3] խորհուրդս, ոչ ունելոյ զհոգևոր իշխանութիւն ժառանգաւորութեան, այսուհետև կարօտիմք ուսանել զնոյն և 'ի մերոց հարցն առաջնոց՝ որք գնացին զկնի փրկչին մերոյ, և մեզ զնոյն շաւիղս

1 Մի օր. Լսէ։
2 Երկու օր. Համախամախին։
3 Մի օր. Զառաջադրեալ։

ցուցին ։ Զի թէ 'ի սոցանէ կարեմք տիրապէս հաստատել զկամս բանիս, ամենեւին յամօթ եղեալ կրշտամբքն որք սուտերիւրեն զճշմարտութիւնն. մանաւանդ զի և բազումք 'ի սոցանէ զնիւթ գործոյս ունել վկայեն ասելով՝ թէ 'ի սրբոյն Գրիգորէ որդիքն և ցեղք նոցին զաթոռն ժառանգեցին¹. և զի հայրապետական տունն այսօր այսու անուամբ և գործով ճոխանայ. վասն այսորիկ և բովանդակ ազգս նախանձաբեկ եղեալ ընդ նոյն գնալ սովորեցան. ցուսա որպէս զիւր ունել զհոգևոր գործոյ պաշտօնն, և որպէս զիւր՝ 'ի ձեռս այլոց աւանդել ։

Արդ քննեսցուք նախ զի մի պարզմտութեամբ 'ի կարծիս կործանիցիմք ։ Եթէ 'ի նոցանէ ունիմք զսովորութիւնս՝ անպատասխանի եմք 'ի հակառակելս. թէթէտ և այլ ազգք քրիստոնէից ոչ այսմ վկայեն, մանաւանդ և նոքա յորոց նոյն ինքն սուրբն Գրիգոր և որդիքն եկեալ առ մեզ հասին ։ Բայց բաւական եմք 'ի սրբոյն Գրիգորէ զայս ուսանել, և յիւրոցն այսրէն 'ի մեզ կալով, և ոչ յայլ ազգս ձկտելով ։ Ես արդ զինչ ասեմք, ինքն սուրբն Գրիգոր անձամբ անձին էառ զայն պատիւ՝ որ իւրում ցեղին շնորհէր. ոչ յետ բազմապատիկ իւրոց երկոց չարչարանացն խորշէր և տեղի տայր 'ի ծանր գործոյն. տեսիլ հրեշտակին ոչ բանի եդ զպարանոց նորա 'ի ներքոյ լծոյն. և թէ ժառանգութի կամէր աւանդել որդւոցն, ինքն ընդէ՞ր ոչ փոյթ առնէր և զնոսա ընդ իւր ածէր ։ Մի՛ զանախտ հոգին, եղբարք, 'ի ներքոյ մարմնական ախտի դատէք. մի զխաչեալ աշխարհի 'ի մարդկային սովորութիւն ձգէք. մի զամենայն սրբոց գերագոյնն՝ վերջին ամենեցուն անմարդի² գործովդ ցուցանէք ։ Ոչ ներէ այդքան զրպարտութեան հայրն, թէպէտ և երկայնամիտ է ։ Բաքննութիւնք որդւոց սրբոյն Գրիգորի զնոսին յարգեցին, և ոչ սրբոյն Գրիգորի որդիութիւնն ։ Հրաժարեալ նոցա 'ի հօրէ և 'ի պատուոյն՝ պատուեաց զնոսա, և ոչ գարշելի և մեղսասէր անուն Պահլաւին. զի յայնքան փառս հօրն ոչ ձգեցան, այլ աստուածային տեսչութեամբն ածան բռնութեամբ ժառանգ աթո-

1 Երկու օր. Յաջորդեցին ։

2 Մի օր. Անմարդ ։

ռոյն Քրիստոսի և ոչ սրբոյն Գրիգորի, որպէս որդիք Քրիստոսի և ոչ Գրիգորի ։

Իսկ յորժամ ազգս առ 'ի նոյն ախտացաւ, և տգիտաբար յընտրութիւն ցեղիցն ձգեցին զհայրապետական աթոռն ըստ հնոյ օրինացն, տես զտեսչութիւն նախախնամութեանն Աստուծոյ թէ զինչ տնօրինեաց. արգել և փակեաց ոչ տալով զաւակ առու սրբոյն Սահակայ ։ Իսկ նա զինչ. որպէս մանուկ զհայր՝ թախանձէր յանօգուտ խնդիրսն զկամսն Աստուծոյ, զի մի ասէ աթոռ հայրապետութեանս յետ իմ անժառանգ մնասցէ ։ Յայտնէր ապա տէրն իւրում ծառային զնանրութիւն աղերսին սոսկալի տեսլեամբն. և նկուն առնէր զնա, որպէս երբեմն զՊօղոս յանօգուտ աղօթիցն ։ Օ իմ, ասէ, ժառանգութիւնս քեզ կամիս տանել. և զարեան իմոյ զինս՝ որդւոց քոց սեպհականել ։ Ի բաց տար, ոչ գիտես զինչ խնդրես. զի թէ առանց ժառանգութեան այդքան վտանգ մնայ ժողովրդեան քում 'ի յապա ժամանակս, ժառանգաւորաց ծառայելով՝ զինչ ոչ պատահէ ։ Իսկ նա ծածկեալ թաքուցանէր զխորհուրդն. քանզի և ինքն յարբշիռ ազգին իշխանաց յայնժամ եղև անարգեալ ։ Ապա յորժամ զղջացան և եկեալ շնորհուկս տային ցեղի նորա զհայրապետական աթոռն, պայազատեցեն, ասեն, տոհմք քո ազգէ յազգ զայդ պատիւ, միայն թող մեզ զայս նուազ յանցանաց քումդ անարգութեան, զինչ ապա երանելի աստուածազգեացն. յարտասուս, ասէ պատմութիւնն, հարաւ՝ նախ քան զպատասխանեն անիմաստ բաջաղմանցն. շարժեաց ապա հազիւ զքաղցրախօս շրթունսն, բարբառեցաւ արտասուօք զճշմարտութիւնն. ինձ ասէ, տայք զՔրիստոսի եկեղեցին, ազգին իմոյ զմշտնջենաւոր քահանայապետին զժառանգութիւն. ոչ գիտէք որոյ հոգւոյ էք, կամ թէ զինչ խնդրէք. տգիտանայք թէ յորքան խորխորատ կործանման 'ի ձեռն այսր խնդրոյ զանձինս ձեր ձգէք ։ Եւ ապա սկսեալ մի ըստ միոջէ պատմեաց ըղգիւտս չարեաց այսմ յանցանաց ։ Յետ որոյ պատասխանեաց. Քրիստոս լիցի ձեզ քահանայ, որ գնեաց արեամբ, և ոչ ազգ իմ և ցեղ. փակեաց և ընդ որոշմամբ նզովից՝ զառ 'ի յետոց օրինացն յանցաւորան. ուստի և սարսեալ դարձան դողացեալ ։

Այս սկսեալ 'ի սրբոյն Սահակայ մինչև 'ի տէր Պետրոս, ոչ բնաւ վարեցին զհայրապետական աթոռն ժառանգութեամբ, այլ աստուածային ընտրութեամբ. յաղագս որոյ և ոչ եպիսկոպոսք զիւրեանց վիճակսն, և ոչ հարք վանից զվանորայս, այլ բարեպաշտ և քրիստոնէական օրինօք ընթանային. և բանք սրբոյ հօրն կրճիմն և ցանգ եղաւ ցեղընտիր լինելոյն զայնքան ժամանակս:

Իսկ 'ի ժամանակս Գագկայ բագրատունւոյ՝ տէր Պետրոս իբր զարժանաւոր ընտրեցաւ, և ոչ որպէս զազգական, և յեղբօրէ իւրմէ 'ի տէր Խաչկայ զաթոռն ընկալաւ: Այս խոստեալ ապա ընթադրեցաւ. և ոչ յիւրոցն, այլ Դէոսկորոս նմին յաջորդ յաթոռն նստաւ, մինչև վերստին տէր Պետրոս քննեալ յառաջին պատիւն հաստատեցաւ: Նա խրամատեաց զօրէնսն. ոչ գիտեմ որպէս և զքուերորդին իւր զտէր Խաչիկ ձեռնադրեաց. բայց կարծեմ թէ վասն զի թագաւորութիւնն առ նուաւ տապալեցաւ՝ այս եղև: Յետ որոյ Հոռոմոց տիրեալ աշխարհացս, 'ի ներքոյ հրամանաց իւրեանց փակեցին զառաջնորդութիւն աթոռոյն, և առ 'ի նոցանէ հրամանաւ և խորհրդեամբ՝ յետ չորից ամաց անառաջնորդութեանն, բարեպաշտ Մարեմ թագուհին նստոյց զտէր Վահրամ, որ և Գրիգորիս, ոչ որպէս զՄագիստրոսի որդի կամ զՊահլաւունի, այլ որպէս զճգնաւոր և վասն Քրիստոսի աղքատացեալ: Իսկ առ նուաւ աջ այլազգեացն բարձրացաւ 'ի վերայ քրիստոնէից, և նա տարբերեցաւ, և հակառակամարտքն կամօք իւրովք և ակամայ բազմացան: Յետ որոյ տէր Բարսեղ՝ ազգիս և Անւանից ընտրութ͞բն. և տէր Գրիգորիս, և եղբայր նորին տէր Ներսէս՝ ամենեցուն կոչեցաւ վկայութեամբ: Այս որ առ մեօքս տէր Գրիգոր, թէպէտ և ազգ նոցին՝ սակայն 'ի ձեռ եպիսկոպոսացդ ընտրութենէ յաջորդեալ:

Սակայն թէպէտ և այս այսպէս, չար ախտս յայսմանէ առեալ զնիւթ՝ սկսաւ ճարակել. և ոչ ասեն թէ տէր Ներսէս արժանի յաջորդեաց յեղբօրէն, այլ զի եղբայր՝ վասն այնորիկ և եղբօրն փոխան. ուստի և ամենեքեան 'ի նոյնս կործանեալ հարան, և ակն 'ի վեհագոյն աթոռն տան՝ ունելոյ զմեղացս պատճառ. եպիս-

կոպտաք զվիճակս, հարց զվանորայս, քահանայք զեկեղեցիս՝ մարմնական ընտանեաց գրեն որպէս զմարմնական ժառանգութիւն. և բարձաւ աստուածային ընտրութիւնն, կամ իմաստնոյ կոչումն, կամ պատուոյ անարգողի պատիւ. այլ որ զանձն ընծայեցուցանէ՝ ընծայի, և զոր տէր ընծայեցուցանէ՝ անարգի. սակս որոյ և 'ի վերայ միմեանց յարուցմունք, կաշառք իշխանաց և տոկոսիք վասն վիճակաց և վանորէից: Զանձրացուցաք ընդ Քրիստոսի խաչեալ կրօնաւորքս զիշխանս՝ առ 'ի խնդրել զառաջնորդական պատիւ, և ոչ ամաչեմք: Նոքին դարձեալ տաղտկացուցին զունկն կաթողիկոսի վասն եպիսկոպոսութեանն, և ոչ մեհերին. հայր՝ ոչ եթէ անհայր՝ վանիցն լինել, այլ որպէս զի զոր կայն կործանեսցէ և ինքն նստցի. և եպիսկոպոս ոչ այլի եկեղեցւոյն, այլ որպէս զի յորմէ ունի՝ յափշտակեսցէ զպատիւն:

Ո՛վ աղետիցս. և ապա զի՞նչ. այսպանի անուն քրիստոնէիցս 'ի մէջ աշխարհի. հայհոյի վասն մեր անունն Աստուծոյ 'ի մէջ հեթանոսաց. քանզի հարկ է, սմա ըզհակառակամարտէն չարախօսել, որպէս զի իրաւ կարծեսցի յանիրաւութեանն, և նա զրկեալ՝ եկեալ զզըրկիչն բամբասէ. ծիծաղին և այպանեն իշխանք հեթանոսաց զմերս թշուառութիւն, և ոչ հաւանեցան 'ի զրպարտելն զմիմեանս, այլ զզուեալ 'ի նախանձէն կաշառս խոստացան[2], իսկ կաշառն բարձրացեալ 'ի հակառակամարտիցն կապալ եղև: Նա այսպէս ամենայն եկեղեցիք արևելից յանզերծ ծառայութիւն մատնեցան 'ի չարագործ հովուացն. ուստի այժմ տագնապին, չարչարին, և 'ի բազմութենէ հարկացն զզուեալ տառապին: Մահմէտ յիւր օրէնսն զեկեղեցի և զվանք ազատ գրեաց, և ժողովուրդն իւր զնոյն անսայթաք պահեցին 'ի տիրեն քրիստոնէից. իսկ մեք յամենայն քրիստոնէից միայն բռնադատեալ՝ զեկեղեցի առանց խնդրելոյ ծառայ նոցին շնորհեցաք: Ո՞վ է այնքան անագորոյն որ ոչ զայսպիսի յիմարութիւնս ողբասցէ արտասուէ[3]. մեզ ողորմել է պարտ վասն յանցանացս

1 Մի օր. Անհօր:
2 Մի օրին. Խոստանան:
3 Մի օրին. Արտասուեսցէ:

իբրեւ խելագարելոց , եւ ոչ որպէս զիմաստունս կշռամ-բել . զի ո՞ր իմաստուն է որ կամաւ զեկեղեցի Քրիս-տոսի՝ ծառայ մատնէ . այլ մեք մատնեցաք , եւ դեռ եւս ըստ իւրաքանչիւր կարի մատնեմք , եւ ի հարկ կապալացն բարձրացուցանեմք , եւ զախտ մեր ոչ յագեցուցանեմք , եւ կշտամբիչ յանցանացս ոչ ոք լինի , քանզի ամենե-քեան եմք ընդ խաւարաւ մածեալ . զի այսօր 'ի մէջ քրիստոնէիցս եմք , յափշտակել միշտ տոչորիմք զպա-տիւ իւրեանց . 'ի տեղիս տեղիս եւ առ սոսա եղաք հար-կատու , եւ յայլս կաշառս առատացուցաք . ոչ վասն սա-վոյ՝ որ մարմնոյս չարիք է , եւ ոչ վասն պոռնկութեան որ դնի եւ այն 'ի սորին հարկէ պիտոյից , թէպէտեւ ոչ հար-կաւոր . այլ միայն վասն մնոտի իշխանութեան եւ ան-օգուտ փառաց : Քրիստոսի խաչակիցքս այսպէս չարա-չար 'ի Քրիստոս մեղանչեմք . զի թէ զխիղճ մտաց տկարաց միայն 'ի կերակուր գայթակղեցուցանելոյն առաքեալ դնէ 'ի Քրիստոս մեղանչել , ապա ուր անօ-րէնքն այպանեն զօրինաւորացս անօրէնութիւն , եւ աշ-խարհականքն բամբասեն զկրօնաւորացս խայտառա-կութիւն , զի՞նչ լինիցի . ո՞չ ապաքէն լաւ էր բնաւ չճա-նաչել զայսպիսի ձեւոյ ճանապարհ , քան ճանաչել եւ յետս դառնալ 'ի սուրբ պատուիրանէն որ մեզ աւան-դեցաւ , որպէս ասէ Պետրոս թէ "Շուն դառնայ 'ի փոխած իւր , եւ խոզ լուացեալ՝ ընդ տիղմ թաւալեալ" : Քանզի արդարեւ մեզ է 'ի դէպ ճշմարտոս առակ . զի որ-պէս զկերակուր փսխեցաք զսէր աշխարհի՝ առ Քրիս-տոս մեռելութեամբս , եւ իբրեւ զաղտ տղմոյ լուացաք զցանկութիւն մարմնոյ սգաւոր ձեւովս , եւ ապա վե-րըստին 'ի նոյնս դարձեալ անիրաւաբար՝ զիա՞րդ ոչ լի-ցուք ատելի մարդկան եւ Աստուծոյ . եւ դարձ այսպիսի՝ զի ոչ 'ի ցանկութենէ մարմնոյ պատրիմք , որ ներելի է , այլ 'ի փառաց որ առանց հարկի է . եղբարքս անուն՝ արդեամբք ոսոխս ընդդէմ իւրեանց յառնեմք . զպար-կեշտութիւնն մեր վասն թշնամութեանն 'ի մէջ աշ-խարհի հրապարակեմք , որք առ ոտն կոխելով երգիծա-նեն զհարցն սրբոց որ 'ի մեզ բարեզգեստութիւն : Պօ-ղոս առ աշխարհի բնակիչս որ 'ի մէջ հեթանոսաց գրէր. "Իշխէ ոք 'ի ձէնջ եթէ իրք ինչ իցեն ընդ ընկերին՝ դա-տել առաջի անիրաւաց եւ ոչ առաջի սրբոց" . յետ որոյ

յաւելու. «Ո՛չ դատաստանք գոն 'ի միջի ձերում. ընդէ՞ր ոչ դուք զրկիք և նեղիք»: Նակ մեք՝ որ ողջոյն հրաժարման տուաք աշխարհի, ձանձրացուցաք զդիւան դատարանի՝ իշխանաց 'ի դատաստանս խնդրելն, և այն 'ի վերայ միմեանց և ոչ յօտարաց. զի՞նչ այլ այսմ առիթ քան հայրենիս և ժառանգութիւն համարելն ունել յաշխարհի. ընտրեաք ընտրեաք, եթէ օտարեաք 'ի սմանէ՝ դիւրաւ ընտրեաք զզրկիլն և զնեղիլն վասն հանդերձեալ յուսոյն, քան իրաւունս խնդրել վասն սնոտի կենացս. բայց անուամբ միայն օտարացաք, և գործով գիրացաք ստուարացաք. հնացեալքս 'ի 'ի չար սովորութիւնս, և չիք այսուհետև յոյս առողջութեան. ընդ փուշս մեղացն որպէս ընդ շուշանս հովտաց խաղամք անխտիր մտօք, և ընդ սուր յանցանացն կամաւ զձեռս բերեմք յօժար կամօք, և 'ի վախս կորստեան անձամբ զանձինս ձգեմք սրտի բաղձանօք: Ներկս ծիծաղելի ոմանց թուի ասացեալս. արդարև ծիծաղելի որոց ոչ հաւատան անաչառ դատաստանին Քրիստոսի. ապա թէ զայն կերպարանեմք առաջի աչաց, գտանեմք զառհաւատչեայ գեհենին այսօր զմեզ տոչորողս 'ի ձեռն խղճի մտաց. զայս ամենայն ոչ հարեանցի շաղակրատանս լեզուի, որք վայելեցաք 'ի գիտութիւն տեառն «Նորև 'ի ջուրս սաստիկս» որք ծածկեն զծովս». անխտիր ագիտութեամբ մի մեղիցուք մահու չափ. մահ է հեթանոսական անգիտութիւնն, և մահու չափ մեղք է քրիստոնէին անզեղջ ագիտութ՟ յանցանելն: Իսկ այժմ ո՞ դք է 'ի մէջ մեր որ յանցանս իւր համարի՝ զեկեղեցի Քրիստոսի ժառանգութիւն ստանալ և այլոց շնորհել. ո՞ դք է որ ակամայ 'ի պատիւ հոգևոր իշխանութեան ըստ որում օրէն է վերացաւ. ո՞ դք է որ ծանր և դժուարին որպէս է՝ զառաջնորդականն պատիւ համարեցաւ. մի և ես եմ յայդպիսի յանցաւորացդ, և անձամբ անձին մեծարող. զկշտամբանս բանիս նախ յանձն իմ և ապա յայլս ձգեմ. մեղաւոր եմ և ես, և ըստ այսմ մասին հաւասար յոգունց. սակայն զղջացեալ՝ ողորմութիւն և տեղի ապաշխարութեան գտի 'ի բարերար տեառնէն. ոչ եթէ իբր

1 Մի օրին. Դատաստանի:    2 Մի օրին. Ջուրս բազումս:

արդար՝ յանցաւոր զատեմ զայլս , այլ յանցաւորս զտեսակ յանցանացն զգացեալ խորշիմ , և այլոց քարոզեմ . Իբրև ընդ փորձ անցեալ՝ փորձառուացս 'ի յայս տեսակ մեղաց լինիմ օգնական ։ Ջանացի և ես , որպէս ասէ ուրեմն Ժողովողն , ձգել մարմնոյս զսիրտ իմ յայս տեսակ զբաղմանց . և տեսի զի զբաղումն չար ետ Թըշնամին ազգի կրօնաւորաց զբաղնուլ 'ի նոսա , և ատեցի միանգամայն զկեանս իմ , վասն զի չար էր 'ի վերայ իմ արարածն 'ի ներքոյ արեգական ։ Զոր վասն . ինքն Սողոմոն ուսոյց և ուսուցանէ ասելով . ‶ Դարձայ և տեսի ընդունայնութիւն 'ի ներքոյ արեգական , զի մի է և ոչ կրկին , և որդի և եղբայր ոչ գոյ նորա , և ոչ է վախճան ամենայն վաստակոյ նորա , և սակայն ակն նորա ոչ յագի մեծութեամբ ,, . յետ որոյ և ասէ առ այսպիսիս . ‶ Ես արդ ո՞ւմ ջանամ և զրկեմ զանձն քո 'ի բարութենէ , և զի այդ ընդունայնութիւն է և զբաղումն չար ,, ։ Արդ ո՞չ ապաքէն 'ի մեզ 'ի կրօնաւորս տեսանէ իմաստունս կանխաւ զայս ընդունայնութիւն . զի մի և ոչ կրկին մեք եմք 'ի մարմնական կեանս . որդի ունելոյ[1] ըստ մարմնոյ և եղբայր՝ մեք հրաժարեցաք՝ ըղհետ Քրիստոսի հետևմամբս . ընդէ՞ր , եղբարք , դարձայք վերստին 'ի զբաղումն չար , և ոչ յագեցուցանեմք զաչս մեր նանիր մեծութեամբս ։ Մի՛ ասեր թէ չունիմ՝ վասն այնորիկ յագեալ եմ , այլ զկամս դիտեսցուք ըղմեր . զի թէ գտանէր զկերակուր մեծութեանն՝ ասէ՞ր բնաւ յագուրդ ունել սնափառութեանն որովայնին թէ ոչ . կարծեմ և ոչ բնաւ , և զկարծիս 'ի փորձոյ հաստատեմ . զի որ զխաղաղութեան և զհնազանդութեան կեանս իւր մատնէ յերկս և յաշխատութիւնս և 'ի ծուփ վասն իշխանութիւն գտանելոյ , և ուրախ է , միայն զի այլոց իշխեսցէ , նա թէ և առանց աշխատութեան փառս և մեծութիւն գտանէր՝ յագեցուցանէ՞ր բնաւ զակն կամաց իւրոց . ինձ թուի ոչ երբէք ։ Տեսանե՞ս զի ամենեքեան անյագ եմք մեծութեամբ . վասն այնորիկ և դժուարաւ մտանեմք յարքայութիւնն երկնից , որպէս ասաց տէրն . զի մեծատունն կամքն է և յօժարութիւնն , և աղքատ . վասն այնորիկ և նա երա-

1 Մի օրին . Ընդունելոյ ։

նեաց ոչ զտուկ աղքատուն, այլ զհոգւոյն. այսինքն որ հոգւոյն բաղձանօք թէ և 'ի մեծութե է՝ 'ի խոնարհն նկրտի, և թէ աղքատ՝ զևս խոնարհութիւն աղքատութեանն սիրէ, որով դիւրաւ զՔրիստոս գտանէ. իսկ մեք ոչ այսպէս. այլ աղքատութեամբս անգամ եմք մեծութե՛, և միշտ յիշխանութե սիրեմք եղանել. խափանէ զմեզ միայն անպատեհութիւն հասակի և շնորհաց. թէ յայս միտեմք լինել կատարեալ, վաղվաղակի իշխել այլոց յօժարիմք. մինչև հնազանդեալ՝ զայլս հնազանդեցուցանել յաթոռս նստիմք: Քրիստոս նախ մահու չափ հնազանդեցաւ[1] յօրինակ մեզ, և ապա իշխանութի նմա յերկինս և յերկրի տուաւ. և մեք նորին մահակիցք 'ի նպատակ հնազանդութեն և մահուն բնաւ ոչ հայիմք, այլ միայն 'ի պատւին բաղձամք. որք ոչ բնաւ ուսաք ընդ իշխանութեամբ կալ, իշխանութեան բաղձամք և լինիմք. և զիա՞րդ կարացից ես զոք 'ի ճանապարհ հնազանդութեան ուղղել, ընդ որ ես ոչ գնացի: Քրիստոս փորձեցաւ, և ապա փորձանաւորացս օգնական եղև. ես յիմարս առանց փորձելոյ և ժամանակի՝ զնոյն գործ ձեռնարկեցի լրբութեամբ խլեցի. որ զմտաւ ածեալ զարմանամ ընդ Աստուծոյ 'ի վերայ իմ երկայնմտութիւն, զի զիմ զախտս տեսանէ, ընդէ՞ր ոչ հուրբ կիզեալ նշաւակեցայ որ այնպիսի յանդգնութե 'ի դժուարին իշխանութիւն համարձակեցայ. վասն այնորիկ և ոչ կարացի ունել գործակից զտուողն պատուոյս՝ յորմէ բռնի յափշտակեցի, այլ կամելով առնել զնոյն հոգևորապէս՝ ծաղր կատականաց լինէի յաչս տեսողացն. 'ի շաւիղս Ճշմարտութեան կացուցեալ զոտս, օտար անձնեցունց ունել շաւիղ թուէի. մոլեգնեալ թուէի մոլեգնելոցն վրէժխնդրութեամբ օրինացն, այնու զի տեղի ետ այս 'ի վաղ ժամանակաց, և ազգք աւուրցս անծանօթ և անգոյս են թէ որ 'ի պէտս փառացն Աստուծոյ զգործս Աստուծոյ կատարէ. և կարծեն զայս՝ վասն զի զայսքան անհարթութիւնս եղեալ 'ի մէնջ տեսանեն:

Զոր և Սողոմոն նախ տեսեալ աշխարհաց զարմացմամբ. եթէ կրկին էիր, ասէ, ունելով եղբարս և

1 Մի օրին. խոնարհեցաւ:

որդիս, ներեալ էիր ձգելով զանձն 'ի վախս զբաղ-
մանց, զառ ընտանիսն ունելով զգութս պատճառ.
իսկ յորժամ մի ես և ոչ կրկին, անորդի՝ ոչ ունելով
կին, անհեղեալ հրաժարեալդ 'ի տանէ, ընդէ՞ր տապիս
'ի զբաղումն, ընդէ՞ր տագնապիս յունայնութիւն, ընդ-
է՞ր սակաւ պարենիւ բաւականացեալդ ոչ առնես վախ-
ճան վաստակոցդ, ընդէ՞ր զանձնդ 'ի սուգ արջնաթոյր
գունովդ տուող՝ ոչ յագեցուցանես զակն քո 'ի մեծու-
թեանն. ո՞ւմ ջանաս, ո՞ւմ նիւթես, ո՞ւմ ժողովես,
ո՞յր աղագաւ զրկես զանձն քո 'ի յաւիտենականն բա-
րութենէ յանցանօք: Արդարև յընդունայնութիւն
ես, ասէ, որպէս զմի ոք 'ի մոլորելոցն 'ի հեշտութիւն
աշխարհի և 'ի զբաղումն չար. զի նոքա զբաղին և ըղ-
մարմինն պարարեն. քոյդ է չար որ զբաղանօքդ և 'ի հեշ-
տութենէ մարմնոյդ ես որիշ, որ կոյս եղեր մարմնով,
զի և հոգւով լինիցիս անհոգ. հոգիդ զբաղանօքդ ծա-
ռայեալ երերի, և մարմինդ անբանապէս կուսութ՟դ
ճգնի: Ո՞չ գիտես, ասէ, զի զամենայն ինչ արար Ա՟ս-
տուած բարի 'ի ժամանակի իւրում. և ժամանակ է
ամենայն իրաց և սահման, այսինքն կուսին զտեառնն
հոգալ, և ամուսնացելոցն զաշխարհի. նմա աղօթիւք
սրբել և ողորմութեամբ. կուսին զբանաւոր պատա-
րագն Աստուծոյ նուիրել, և սմա զմարմնաւորն. կոյս
լինել զի հոգւով սուրբ լիցի, և ամուսնացեալ՝ զի մար-
մնով. եթէ զբաղեցար կոյսդ յաշխարհի, ելեր ընդ քո
բարի ժամանակն. եթէ ծփեցար 'ի փառս, արտաքոյ
սահմանի գտար. եթէ զլուծ հնազանդութեան ար-
կեալ յերկիր կոխեցեր, անգաւշեցեր սիրելւոյն սնքա-
ցեալ. զգոյշ լեր զքո սահմանն ճանաչել. արթուն
լեր զաշակերտութեան օրէնսդ պահել, մի գուցէ ծան-
րասցի սիրտ քո շուայտութեամբ և արբեցութեամբ և
հոգօք աշխարհականօք, և յանկարծակի հասանիցէ 'ի
վերայ օրն այն: Ո՞ր օր. այն որ իբրև զորոգայթ հա-
սանիցէ 'ի վերայ ամենայն մարդկան որ բնակեալք են
ընդ երեսս երկրի. այն՝ յորմէ եղբայր ոչ փրկէ և ոչ
մարդ, այլ վաստակքն: Աստակք որպիսի՞ք. զոր հրա-
մայէ մեզ մարգարէս աւուրն պատրաստել ասելով՝ վաս-
տակեա յաւիտեան: Ո՞ ինչ այլ, բայց թէ զոր տէրն
մեր ուսոյց. «Արթուն կացէք, ասէ, և յամենայն ժամ

աղօթս տարէք „ . զոր Պաւղոս պատուական միայն վաստակել խրատեաց յաւիտեան , սա երևելապէս մերկացոյց , և զաղօթս առնէին՝ վաստակ յաւիտեան , և զայս ոչ վայրապար՝ այլ արթնութեամբ . Թերևս ՚ի բնաւորականս կարծես քնոյ , ոչ երբէք , այլ ՚ի շուայտութենէ աշխարհի , յարբեցութենէ սիրոյ սորա և ՚ի մնոտի հոգոցն զբաղմանց . յորժամ զայսպիսի քուն թեթևացուցանեմք ՚ի մէնջ , ապա թէ կարեմք արթուն լինել և աղօթից պարապիլ . և պտուղ աղօթիցն զի՞նչ . զերծանիլ ՚ի փորձանացն սատանայի և կալ յանվախճան կեանսն առաջի յուսոյն մերոյ Յիսուսի Ք՛ի :

Արդ այսպիսի հրամանօք վարժեալքս , եղբարք , այսքան լուսով պայծառացեալքս , սիրելիք , այսքան զգուշութեամբ խրատեալ՝ կրօնակիցք , ջանասցուք ոչ ննջել զքուն զառ ՚ի մահ , գուն գործեսցուք ոչ յաղթիլ ՚ի թշնամւոյն : Մեծ զէն ունի ՚ի ձեռս իւր զանփառութիւնն . զգոյշ լիցուք՝ որպէս հրաման ընկալաք՝ ոչ խոցիլ ՚ի հոգի . անմատչելի ունի վահան զշուայտութիւն հեղգութեանն , արթուն լիցուք ոչ մոռանալ զփրկչին մերոյ պատուիրանս . խաւար ունի ձգել ՚ի վերայ մեր զհոգս աշխարհիս , թօթափեալ զնոյն՝ զհետոց լուսոյն շաւղաց հարցուք բուռն : “ Եթէ ոք գայ , ասէ , զկնի իմ , ուրասցի զանձն „ . իսկ մեք գոնէ զմնոտի զբաղումն աշխարհիս ուրասցուք , զխոնարհութիւնն սիրելով՝ ուր Աստուած հայի , զհեզութիւնն պատուելով՝ ուր նա հանգչի , զհնազանդութիւն ողջունելով՝ զոր նա ոչ առնէ անտես , սրբութիւն սրտի ստանալով՝ որով զԱստուած տեսանեմք : Աչ ընթացան հարքն մեր ընդ վայր . ոչ նանիր աշխատեցան այս ձևոյս և կրօնից աշխատողքն , ոչ վայրապար գրեցին օրինաց բազմապատիկ խրատս . յառնեսցուք աղաչեմ երբեմն երբեմն ՚ի վարս նոցա և ՚ի բանս , թերևս ամաչեսցուք ընդ օտար մեր ընթացս և ընդ գործս . կացուսցուք մինչդեռ ժամանակս ՚ի ձեռս է , զնպատակն դատաստանի մերոյ առաջի աչաց և աշխարհեսցուք[1] , զի մի ՚ի Քրիստոսէ յարդարն օր եդեալ ընդդէմ մեր՝ դատապարտեսցեն զխոստմանն դժրողքս , զձևոյս նախատող-

1 Մի գիրն · Աշխարհեցուք :

քըս, զօրինաց սրբոցն այպանողքս, զկամակար մտօք յանցաւորքս, զճշմարտութիւնն զխոտութեամբ զլացողքըս. քանզի բանն Քրիստոսի և ձև զգեստուցս և գործք հարցն՝ դատելոց է զշատապարտեալքս յաւուրն յետնում:

Այլ մեք այսքան սարսափելի իրաւանցս առաջի կացեալ, ընդ ծաղու զբօսանօք զփրկութեան աւուրքս անցուցանեմք, ընդ խեղկատակութեամբ զընդունելի ժամանակս ծախեմք, ընդ սնոտի փառօք զփրկութե օրս վաճառեմք: Ո՜վ եղբարք, պատգամաւորեալ յԱստուծոյ Պօղոս աղաչէ զմեզ. "Աղաչեմ, ասէ, վասն Քրիստոսի հաշտեցարուք ընդ Աստուծոյ". և ո՞ր է ճանապարհ հաշտութեն, ուսո մեզ առաքեալ: "Ոչ իւիք, ասէ, տալ պատճառս, զի մի՛ արատեսցի պաշտօնն. այլ յամենայնի ընծայեցուցէք զանձինս ձեր համբերութեամբ բազմաւ 'ի նեղութիւնս, 'ի վիշտս, յաշխատութիւնս, 'ի սրբութիւն, 'ի հսկմունս, 'ի պահս սրբութեամբ, 'ի գիտութիւն երկայնամտութեամբ, 'ի քաղցրութեան, 'ի Հոգին սուրբ, 'ի սէր առանց կեղծաւորութեան, 'ի բանս ճշմարտութեան, 'ի զօրութեան Աստուծոյ, վասն զինուն արդարութեան որ ընդ աջմէն և ընդ ահեկէն է. փառօք և անարգութեամբ, գովութեամբ և պարսաւանօք": Արդ զայն զէն արդարութեան տացէ Հոգին սուրբ Աստուծոյ 'ի ձեռս մեր. զփառս յաջմէ և զանարգանս յահեկէ վասն սիրոյն Քրիստոսի հարկանել, զգովութիւնս կախել, և պարսաւանացն գեր 'ի վերոյ ելեալ՝ յանքոյթն ժամանել հանգիստ առ սուրբ հարսն մեր շնորհօքն Քրիստոսի, որում փառք յաւիտեանս. ամէն:

### Ի ՆՈՅՆ ԽՈՐՀՈՒՐԴ ԴԱՐՁԵԱԼ, ՅՈՐՈՒՄ ԹԷ ԵՒ ԶՄԵՐ ԱԶԳՍ ՈՒՆԻՄՔ ԻՇԽԱՆՈՒԹԻՒՆ ԴԱՏԵԼ ԵՒ ՈՉ ԶԱՅԼՍ

ԱՅՍՐ *երբեմն երանելին Յոբ՝ տագնապեալ 'ի վըշտացն ցաւեցուցանելոյ և 'ի բարեկամացն զխելն իրաւունս արդարութեան զընկենլոյ. «Դատարուք, եղբարք, և մի ինչ լիցի անիրաւութիւն. դատաստան արդար դատեցարուք 'ի միջի ձերում». կոչեմ և ես հաւասար նմին զեղբարս իմ դատաստանաւ ուղղել զիրաւունս Աստուծոյ մերոյ, մինչև եմք մատնեալ 'ի նորին ատեանն անաչառ: Դատեսցուք դատեսցուք, դատաւորք օրինացն, արդար դատաստան. նայեցուք խոնարհութեամբ 'ի խնդրել զվրէժն Աստուծոյ, և մի ինչ լիցի 'ի մէջ ձեր անիրաւութիւն: Ունի իշխանութիւն ծառայ Թագաւորին և պաշտօնեայ՝ փոխանակ հօրն 'ի գործն արքունի յետ մահու զոք յիշխանական պատիւն իւր հանել. Է՞ կարելի նմա զքաղաքն արքունի 'ի ժառանգութիւն որդւոցն գրել. համարձակելի՞ է առանց փորձելոյ արքային զեղբայր իւր 'ի տէրունական աթոռն կարգել. ո՛չ ապաքէն զայս գործելով յինքն սեպհականել զհաւատացեալ գործն. և է այնուհետև ոչ ծառայ արքային և պաշտօնեայ, այլ հակառակամարտ նմին ինքն իշխան. հարկ է այնուհետև Թագաւորին մարտակից նմին ելանել որպէս. Թշնամւոյ. Թշնամի ոչ վայրապար, այլ չար առաւել, զի 'ի տանէ բուսաւ և ոչ յարտաքնոցն. զերախտիսն զլացեալ՝ զտէրն անգոսնեաց, և ըզտէրունական պատիւն յինքն գրաւեաց: Նմանական է ընթացք օրինակիս ցուցակ խորհրդոյս. ընդէ՞ր ոչ յարմարէք զյարացոյցս ընդ Ճշմարտութեանն: Ծառայք եմք Քրիստոսի և պաշտօնեայք նորոց կտակարանացս, հազարապետք տէրունի խորհրդոցն և զօրացն, և ոչ տեարք. ո՞ր աւագաւ համարձակիմք յաջորդել զոք փոխանակ մեր առանց հրամանի նորին ընտրութեանն: Նա որո՞վք ընտրէ, ասիցես. այնոքիւք որք վեհագոյն քո պատիւ ընկալան. քեզ բնաւ ոչ տուաւ այդ իշխանութիւն, զտէրունիսդ որպէս զանձին քո ունել. այլ*

զինչ․ հարկաւորապէս կարգէ հազարապետն, և հազարապետ դուքսն, իսկ դուքս արքայն։ Տուք տեղի ճըշմարտութեանն՝ հաւանական յարացուցիւս․ եղիցի գոնէ օրէնք մեր որպէս զմարմնաւորացն, որք յեւս բարձր և անօսր գործ վերացաք․ ժառանգեցուցէ ըզքահանայ ժողովրդեանն փոխանակ քո՝ զոր եպիսկոպոսն ընտրէ և մի զոր դու։

Չէ քո՝ Քրիստոսի արեամբ գնեալ ժողովուրդդ․ մի տար որդւոցն յետ մահու․ ապա թէ ոչ, առ դատաւորն գնացեալ ամաչես, որպէս արծեմ․ իսկ զեպիսկոպութիւն՝ եպիսկոպոսապետն․ և մի երագէր զօծումն ընտանեացն․ Քրիստոսի է աթոռն 'ի պաշտօն քեզ հաւատացեալ, և ոչ հայրենիս տուեալ․ և զարքեպիսկոպոսութիւնն Քրիստոս և նորին ընտրութիւնն, և ոչ մարդկային ակնառութիւնն։ Զի կարասցուք այսպիսի ընտրութեամբ զօրավարացս մարտիկքս օրինօք մարտնչել, որպէս հրամանն ընկալաք․ զի կարասցուք զանձինս սուրբ պահել յօտարացն մեղաց, միմեանց վահանակիցք լիցուք սպառազէնքս և մի կործանիչք․ միմեանց մարտակիցք և մի ընթադրիչք․ չէ այդ օրէն ճակատեալ զօրացն զիւր զինակիցն սպանանել, այլ ճակատամարտին ախոյեանն յառնել։ Ոչ է այդ օրէն քրիստոնէից, զեղբայրն կործանել, այլ ընդ սատանայի զօրսն համագումար մարտնչել․ զինչ այլ այսպիսի չար և ողորմելի կործանումն, զի ստիպիմ կործանիլ ոչ յիմ մեղացն՝ այլ յօտարացն․ ոչ յիմ ախտէն թշուառացեալ, այլ յեղբօրն։ Այս ո՞րպէս․ Պօղոս նախահօգակ հօգւոյն մեզ ուսուցանէ․ "Ձեռս վաղվաղակի յուրուք վերայ մի դնիցես, և մի կցորդ լինիցիս մեղացն օտարաց"։ Տեսանես, զի որ ստիպես զիս 'ի վաղվաղել ձեռնադրութիւնս, ձգես 'ի գուբ օտար մեղաց և ոչ յիմ․ զիա՞րդ․ քանզի ոչ փորձ ուսեալ զեղբայրն, օրինացն տեղեկութեան և անձին մաքրութեան, այլ տամ շուտափոյթ կամօք նմին զպատիւն, կցորդիմ առ 'ի նմանէ մեղացն գործելոց․ զի յինէն առ զիշխանութիւն պատարագելոյ, զմեղս թողլոյ, մկրտելոյ, հովուելոյ․ թէ առ այսոսիկ անարժանութեամբ և հեղգութեամբ

1 Այլ օրին․ զեպիսկոպոսն։

գնայ, ո՞չ ապաքէն ես կցորդ եմ մեղացն որ հաւատացի անփորձ անձին զգործն Աստուծոյ. իբրև զչար մատակարար արքունի գանձուցն դատապարտիմ: Այլ ո՞ է որ զայս ստիպէ մեզ առնել. օրէնք ժառանգաւորութեան, ունել զվիճակս հոգևորական պատուոյ. զի յայսմ մեղաւորութենէ զզուի ճշմարտութիւնն. հայրենիսն իմ է, ասէ, աթոռն և եկեղեցին, զի մի օտարաց լիցի 'ի կերակուր: Ո՜վ անմտութեանս. և դու կամ այն օտարն կարծէք վայրապար զայդ ունել կերակուր. ո՞չ գիտէք թէ դատաւոր ունիմք որ դատելոց է խոյ առ խոյ և ոչխար առ ոչխար, ըստ որում ասէր առ քահանայս Իսրայելի Ամովս, ո՞ք ուտէին և ոչ փոյթ առնէին բեկմանն ժողովրդեանն և հօտային: Նոյն արդար իրաւունքն կայ մնայ և մեզ. «Որում շատ տուաւ, ասէ, շատ խնդրեսցի 'ի նմանէ». և այսմ ոչ հաւատաս վասն մնոտի կենացս յուսոյ, անձամբ զանձն 'ի յաւիտենական պատիժն ձգես:

Պարտ է հաւատալ թէ կայ Աստուած, կայ և նորա արդար իրաւունք դատաստանի, և ոչ այսպէս անձնիշխան կամօք արտաքոյ օրինացն յանհոգս արշաւել, այլ տալ զԱստուծոյն Աստուծոյ, և ոչ զնորայն իբր զմեր սեպհական ունելովն պանծալ:

Ո՞ր ինչ կամ ո՞ր բան բերէ զմեր կործանմունքս որ յայսմ մասնէ յանցանացս գտաւ, կամ զի՞արդ թուի, կամ ո՞րպէս 'ի ճշմարտութիւն բանիցս՝ քննակէ, կամ ե՞րբ կարող է տանել ականջ լսողի, կամ զի՞արդ ժպրհիմ պատմութեամբս զխիղճ մտաց տկարաց զայրացուցանել: Լաւ էր ինձ զլռել լինելն համարիլ խոհեմութիւն, քան այսպէս զվտանգ ժամանակիս ծննդոցս խայտառակել. էր վասն. քանզի օգուտ և ոչ ոք, ունկնդիր բանիցս ոչ բնաւ, ապաշաւ զղջման ոչ ումեք. ծանուցացաք առ հասարակ զսիրտս՝ զնանրութիւն խնդրել. ոչ բնաւ կամեցաք զսքանչելի սրբոցն Աստուծոյ ճանաչել զշաւիղս, յանդիմանելով զմիմեանս որպէս զանմիտ զատելութիւն յաւելումք: Բայց մի դանդաղեսցի բանս. որ սերմանէրն ոչ միայն յերկիրն բարի, այլ և 'ի վերայ փշոցն ուսոյց զմեզ սերմանել. իբրև փշումք

1 Մի օրէն. Ուղղոյն ճշմարտութեանն խնամոց:

արդարև աշխարհական հոգովք և պատրանօք մեծու-
թեան զառեալ շնորհս 'ի Հոգւոյն հեղձուցեալ՝ արա-
րաք անպտուղ. գնելով և վաճառելով եղև եկեղեցիս
կրպակ՝ ձրի շնորհաց սուրբ Հոգւոյն. չիք ուսումն 'ի
սա և ոչ վարդապետութիւն, որպէս լսեմք թէ անձեռն
առաջինքն, և ոչ բնաւ գիտեն զայս գործ ինքեանց ա-
ռաջնորդք հարկաւոր։ Ոչ ոք գայ յառաջ 'ի պատիւ
վասն Քրիստոսի, և ոչ պատուի յումեքէ իւր զնորին
պաշտօնեայ. կորեաք 'ի խորխորատն պատրանաց, ըն-
կղմեցաք, ալիք մոլորութեան 'ի վեր քան զգլուխ
ղեկավարաց եկեղեցւոյ նաւի բարձրացաւ. որպէս 'ի
խաւարէ 'ի լոյս այնպէս յառնեմք 'ի մեր անհարթու-
թենէս յայլ ազգաց քրիստոնէից բարեկարգութիւնս։
Յամենայն տեղիս նոցա եկեղեցիք վիճակաւ տուեալ
եպիսկոպոսաց ժառանգութեամբ, պաշտօնեայք ընդ
ձեռամբ նորին, ժողովուրդքն ընդ նոքօք, և այսպէս
որչափ կարող են 'ի վերջինս ժամանակ զանունն Քրիս-
տոսի մեծացուցանեն. և մեզ բնաւ և ոչ ուրեք եպիս-
կոպոսարան կամ աթոռ, և հաւք ժողովրդոց կապէնք
պռնկութե՟ հովուացն 'ի ձեռս հեթանոսացն տր-
ւեալ։ Ասեմ յանուանէ, զի մի թուեսցայց վայրապար
շաղակրատել. 'ի Բաբելոն Ասորի աղանդոյն քրիս-
տոնեայքն, 'ի Ֆռանգաց Հռոմոց հաւատոյն, յԵգիպ-
տոս, յԱրաբիա, 'ի Դամասկոս հռչակաւոր եկեղեցիք
և բազմութիւն ժողովրդոցն ընդ ձեռամբ անօրինացն
ազատութեամբ պաշտեն զհոգևորն պաշտօն. և մեք
'ի ձեռն անմիտ առաջնորդաց օր ըստ օրէ 'ի ստրկու-
կութիւն հարկացս սուզիմք, և զղջումն ոչ բնաւ, կամ
հնարք ելից, և չարաց փառամոլացն կարծումն։ Ո՞ր
յիմար է որ ոչ նախանձի, ո՞ր արբեալ է որ ոչ զչարի,
ո՞ր խելագար է որ ոչ 'ի վերայ թշուառութեանս մտա-
կօք արտասուաց տաղտապի. ընդ միով ձեռամբ մի
քրիստոնէից եկեղեցի, մին ազատ և միւսն ծառայ.
նա 'ի խաղաղութեան և սա 'ի խռովութեան. նա յե-
կեղեցին նստեալ զժողովուրդն հովուէ, և սա յաշխար-
հըն շրջեալ՝ զշնորհսն վաճառէ և հարկս զանձուց իշ-
խանաց ժողովէ. Հոռոմք առաջին քան զմեզ և ա-
զատ, և Ասորիք յետին և ազատ. և սորաւկ սեպհական
Քրիստոսի 'ի ձեռն մեր միայն։ Ուստի այս չարիք. ո՞

անխրատութեանս արմատ՝ եթէ ոչ մերն տմարդութիւն , զի ոչ անաշխատ իրաւամբք , այլ աշխատանօք կաշառացն ընտրեմք զհովիւսն , որք լինին վրէժխնդիրք իւրեանց զրկանաց և ոչ Քրիստոսի օրինացն . տան զանձինս հարկաց , զի ոչ զգործն Աստուծոյ , այլ զիւր զախտն մեծարէ . Քրիստոս ասաց , բարեկամս արարէք 'ի մամոնայէ վասն երկնաւորացն [1] , մեք երկնային շնորհացն ընտանենամք վասն մամոնային . եղբարք , յորժամ այն նուազի՝ զի՞նչ լինիցիմք . ո՞ր յարկ ընկալեալ հանգուցանէն զմեր աշխատութիւնն յետ մահու . վա՜յ ինձ . որպէս թուի 'ի կարծիս ձգեցաք զհանդերձեալ կենացն յոյս , վասն այնորիկ անխտիր աստէն մեղանչեմք . " Երիցուք արբցուք , քանզի վաղիւ մեռանիմք " : " Մի՛ խաբիք , աղաղակէ առաքեալ , ապականեն բարս քաղցունս բանք չարք : Զոր սերմանէ ոք՝ զնոյն և հնձեսցէ . եթէ 'ի մարմին՝ զապականութիւն , և թէ 'ի հոգի՝ զկեանս յաւիտենից " . ապա ընդէ՞ր սերմանեմք 'ի մարմին այսքան նախահոգութեամբս դաստիարակեալք , և սերմն չար քան զմարմնոյ հեշտութիւն : " Որ պոռնկի , ասէ , յիւր մարմինն մեղանչէ " . կարօղ է դարձեալ զոր յիւր մարմինն մեղաւ՝ իւրոյ մարմնոյն ճգնութեամբն վերստին բժշկել . ըստ որում արար կորնթացի պոռնկեալն , վասն որոյ գրեաց զայս Պօղոս . իսկ որ յԱստուած մեղանչէ և յօրէնս նորա , ո՞վ է որ աղօթեսցէ վասն նորա . " Մե՛ղք տանն Հեղեայ , ասէ , ոչ քաւեսցի զոհիւք և պատարագօք " . այսինքն զի զօրէնսն խրամատեցին ինքնիշխանութեամբ առնլով մեծ 'ի կաթսայէն . բայց մեղքն Դաւթի սպանութիւնն և պոռնկութիւն՝ վաղվաղակի քաւեցաւ . և թէ որպէս՝ ասելի է . որ շնայ կամ զրկէ՝ զմարմինն հեշտացոյց արտաքոյ օրինացն և զեղբայրն տրտմեցոյց . նա որ շնացաւ՝ յորժամ զղջանայ և տառապեցուցանէ առաջի Աստուծոյ զայն մարմինն որ հեշտացաւ , մարդասիրութիւնն Աստուծոյ ներէ նմա և թողու . և այն որ զըրկեաց՝ յորժամ զԶակէոսին զմնա ածէ , և դարձուցանէ 'ի վերայ զրկելոյն զինչս իւր՝ խնդրեալ ներրումն , ընդ նորա ներելն և Աստուած ներէ յանցանացն . և արարին սոքա այսպէս պտուղ արժանի ապաշխարու-

1 Մի օրին . ԵւԲԷՇ :

թեան ։ Բայց որ զցանգ օրհնացն Աստուծոյ՝ զոր արկին առաջին սուրբքն պարիսպ շուրջ զտուրբ զեկեղեցեաւ՝ վասն իւրոյ ախտին քակէ, ոչ իւր միայն եբաց զճանապարհ յանցանացն, այլ և բազմաց որ գան զկնի նորա, որոց համարձակելի արար զմուտ մեղացն իւր առաջնորդութեամբն, զիարդ քաւի մեղք այնպիսւոյն զոհիւք և պատարագօք. բայց թէ զնոյն ցանգ զոր պատառեաց և կոխեաց՝ վերստին կալեալ պարսպէ. որպէս և պոռնիկն որ ձգնեցաւ, և զրկողն որ ողորմեցաւ, ըստ մեղացն արարեալ զապաշխարութիւն, այսպէս և սմա ըստ յանցանացն պիտոյ է ապաշխարութիւն, զպատառեալ օրէնսն դարձեալ կարկատել և կնքել ։ Արդ մեղաք մեք և հարքն մեր ոչ 'ի մարմինս մեր՝ որ զղջմամբն քաւի, այլ յօրէնս Աստուծոյ, որպէս և տունն Հեղեայ, յանցանք՝ որ ոչ զոհիւք և պատարագօք քաւի. վասն այնորիկ հաճեցաւ Աստուած որպէս առ նոքօք զտապանակն, և առ մեզ զեկեղեցիս մեր մատնել յայլազգիս և 'ի տունն Դագոնայ. սակայն մերս չարիք այսու գերազանցեաց քան զնոցայն, զի նոքա յետ մեծամեծ կործանմանն վաղվաղակի զղջացան և աղաղակեցին առ Աստուած, սակս որոյ և յաջորդեաց զառաջնորդութիւնն վրէժխնդիրն Աստուծոյ Սամուէլ. իսկ մեզ զղջումն յայսքան ընդերկարութիւն ժամանակացս և ամացս ոչ բնաւ, այլ օր ըստ օրէ 'ի չարն նկըրտիմք ։ Զոր ասեմ ոչ զմարմնոյս մեղս որ ներելի է, այլ զքակտումն օրհնացն՝ որ առանց ներողութեան ցուցաւ, և բարձաւ ամենեւին քննութիւն կամ բարւոյն առաջջարկութիւն, այլ միայն այլոց ազգաց նստիմք դատաւորք ։ Վրէժխնդիր հաւատոյս և ազգիս նա անգամեմք 'ի մէջ մեր և զովլի յամենեցունց, որ զՀոռոմոց ազգն և զՖրանգացն նախատէ. իսկ որ զմերս՝ իբրև զթերահաւատ համարին և առ ոտն հարեալ այպանեն ։ Ա՛յլ անմտութեանն. և ոչ զուղիղն քննելոյ և ըստ այնմ մասին տան տեղի ։ Եղբարք, ընդէ՞ր լցեալ զականջս ոչ լսել զձայն Թովմէ, և ոչ առնուլ դեղ 'ի դեղատանէ իմաստնոյ ։ Վասն այսր խորհրդոյ զձեզ հարցից, տուք ինձ պատասխանի. ո՞ր ըստ ճշմարիտ գթոյ անուանի որդեսէր հայր, այն որ միշտ զիւր որդին ընդ երեսն գովէ, թէ այն որ զբարեօքն որ 'ի նմա կայ զանց արա-

րեալ, զմասունս չարին 'ի մէջ բերէ և խրատէ ուղիղ զայլս 'ի մանկանց՝ օրինակ առնլով. և թէպէտ և դըժուարի մանուկն, ոչ քննէ հայրն, զօգուտ նմին խորհելով։ Ո՞չ ապաքէն յորժամ գովէ հայրն զորդին, բարի և ուղիղ անուանելով զնա՝ երկուս չարիս մեծամեծս 'ի նմա բուսուցանէ. առաջին զհպարտութիւն, և յետ այնր զի ոչ համնէ զչարն զոր ունի, հօրն բանի հաւանեալ որ բարի նմին վկայեաց լինել. իսկ որ յանդիմանէ՝ հաւանի ասացելոցն. "Յանդիմանելով յանդիմանեսցես զեղբայր քո,'և ոչ առցես վասն նորա մեղս"։ Արդ ո՞չ ապաքէն անմտութիւն է ամենևին հօր և առաջնորդի հոգւոց՝ զիւր ազգն գովել և զօտարն յանդիմանել։ Ասես՝ զի ոչ կարգեաց զիս Աստուած նմին վերակացու և ուսուցիչ, և ես յորժամ ըստ իմ չափն ելանեմ անմտութիւն է. Երկրորդ՝ զի թշնամութեան ախտս 'ի մէջ ածէ, յորժամ ես զ[illegible]ուռն բամբասեմ, թէ և ուղիղ ասեմ. թշնամութեամբ ախտին տայ զխրատն, և ոչ ընդունի և տայ բանիցն 'ի յանձն տեղի, և լինի 'ի նանիր իմ աշխատութիւնն և խրատն գայթակղութիւն. պարտ էր նախ առաջին զթշնամութիւն բժշկել, և ապա սիրով և աղեկիզութեամբ խրատել, և թէ այնուհետև տայր բանիցն տեղի։ Երրորդ՝ զի յորժամ խրատեմ, զիս և զիմն ազգ, ասէ, նախ ուղղել, և ապա առ ինքն ձեռն ձգել. ապա ուրեմն սնոտի և ունայն է զայլ ազգ խրատել մեզ. զի որովհետև հակառակութիւնս 'ի մէջ է, թշնամութեանն տան և ոչ սիրոյ, բամբասանք համարին և ոչ խրատ։

Մանաւանդ զի և որք խօսեալ են առ նա այսպիսի օրինակաւ՝ տեսանեմք զգլութիւնս. ո՞չ ապաքէն յորժամ խրատեմ զայլ ազգս, ասէ ցիս տէրն իմ. կեղծաւոր, նախ 'ի քում ականէդ՝ այսինքն 'ի ժողովրդենէդ հան զգերանդ. յայտ է ամենայն իրօք թէ անօգուտ և աւելորդ է մեզ խրատել կամ ջանալ ուղղել զայլ ազգ և կամ 'ի պէտս այսորիկ զգութիւնս առնել. մանաւանդ զի և բամբասանք ելանէ յանդիմանութիւնն, և ասողին 'ի դատապարտութիւն. իսկ յորժամ առ մեզ պահեմք զխրատս և զսաստս, 'ի ներքոյ օրինացն

1 Մի օրէն. Մահկանացուաց։

նահանջիմք որ ասէ. «Պէտ կացուցի զքեզ որդի մար-
դոյ զգուշացուցանել զնոսա յինէն». և դարձեալ, «Այս
է ինձ թէ ոչ աւետարանեմ. եթէ կամաւ զայն առ-
նեմ՝ վարձք են ինձ, և եթէ ակամայ՝ տնտեսութիւն
յանձն է ինձ»: Իսկ զաւետարանութիւնս և զզգու-
շութիւնս գովութեան ազգին առնել և ոչ պարսաւանք
և յանդիմանութի՝ որ մարգարէ կամ առաքեալ խրա-
տէ զմեզ առ այս: Եսայի, որ զնշխարս ազգին իւրոյ
իշխանք Սոդոմացւոց կոչեաց, և զժողովուրդն Գոմո-
րացւոց. թէ Դաւիթ՝ որ ազգ չար և դառնացող զնոսա
անուանեաց. թէ Մովսէս՝ որ խորհրդակորոյս և թիւր.
թէ Եզեկիէլ՝ որ զՍոդոմ արդարացուցեալ ասէր Իս-
րայելի. «Ո՛չ չարեօք քո, ասէ, արդարացաւ քոյրն քո
Սոդոմ». Նա և բոլոր գունդ մարգարէիցն այսպէս գնա-
ցին: Երկնչիմ և ՚ի սուտ մարգարէից շաւղացն որք ըղ-
խաղաղութիւն մարգարէանային Իսրայելի, և ոչ գոյր
խաղաղութիւն. և յեղջերացն Սեդեկիայ որով հար-
կանէր ընդ այլազգեացն և զջատագովն ճշմարտութե
զՄիքիաս: Տէր մեր թէ գովող էր լեալ Իսրայելի՝
երբ էր խաչեալ. և նա ոչ զբարի ասողն մարդկան սուտ
մարգարէից հարցն համեմատեաց. և ամենեքին օտար
է ՚ի ճշմարտութեանն շաւղաց՝ առաջնորդի գովել զազգ
իւր և զժողովուրդ. իսկ զօտարսն ՚ի պէտս նոցա իրա-
ւացի, որպէս զի ՚ի նախանձ բարւոյ զնոսա շարժեսցէ,
որպէս և արար զայս Քրիստոս, զՏիւրոս և զՍիդոն
առ ՚ի կշտամբանս քաղաքացն՝ զորս ոչ կարաց մեծամեծ
գործովքն ուղղել:

Ապա մի՛ ոք հարկեցուսցէ զմեզ զարտուղի ՚ի հայրե-
նի շաւղացն գնալ, որպէս երբեմն ժողովուրդն Իսրայե-
լի զմարգարէսն՝ խաղաղութիւն ասեն մեզ մարգարէա-
ցէք: Այսպէս ասեն և այժմ բազումք. զքո ազգս գո-
վեա և զօտարսն բամբասեա. եթէ բամբասող եմ, և
զօտարսն և զիմս բամբասելովս մեղանչեմ. ապա թէ
յանդիմանութեամբս[1] ջան իմ ուղղութեան է, յոր-
ժամ զիմս տիրապէս ուղղեմ՝ ապա հարկաւոր է
ինձ նոցին քարոզ լինել. իսկ ձերդ խնդիրք այսպէս է՝
զոր օրինակ թէ ասէ մանուկ ցհայրն, միշտ գովեա զիս,

1 Մի օրէն. Յանդիմանելով:

զխաւարն լոյս և զլոյսն խաւար,,: Եօթներորդ՝ զի թէ յանդիմանութիւնս թիւր է մեզ, կամ 'ի նոսա զչարն եմ գովել զոր ունին և ոչ զբարին, որպէս զվաճառականն որ խառնէ զջուրն ընդ գինին դատիմ. ապա թէ մեր յանդիմանութիւնս ուղիղ է, և զնոցա ուղղութիւն ցուցեալ եմ ոչ վայրապար, այլ մեզ առ բարին զարթուցիչ, որ զմեզ առ 'ի սոյն մեղադրէ՝ յայտ է թէ զազատութիւնս զոր ունիմք 'ի Քրիստոս՝ ծառայ ջանայ առնել ախտին իւրոյ. որում ոչ բնաւ անսամք և ոչ ժամանակ մի, ունելով առ 'ի սոյն զերջանիկն Պօղոս ապացոյց. այլ ասասցուք զօրէնս Աստուծոյ, հաստատեցաք և վկայութեամբ այլոց ազգաց, որք ունին զնոյն այսօր և կատարեն առաջի մեր. ունիմք վկայ մեր 'ի սոյն յանցանացն զխիղճ մտաց իւրաքանչիւրոցս. թէ անգամնի այս 'ի մէնջ և յառաջնորդաց մերոց, յերկուց և յերից վկայից հաստատեալ դատապարտիմք. այսինքն յօտարացն և 'ի մերայնոցն վկայ լինելոցս և 'ի խղճէ մտաց իւրաքանչիւրոցս. և այնուհետև չիք պատճառ վասն մեղաց մերոց, որպէս ասաց ուրեմն Քրիստոս:

Արդ եղբարք, զարթիցուք զգաստասցուք մինչդեռ ունիմք զժամանակս ընդունելի և զօրս փրկութե՛, և մի զկեանս յայլոց դատելն ծախելով անօգուտ՝ զմեր դատաստանն չափով նորին անաչառ թողցուք յատենի չափել. "Որով չափով, ասէ, չափէք, չափեսցի ձեզ,,: Այլ դատեսցուք զանձինս՝ որք ոչ կարգեցաք այլոց դատաւոր կամ ուսուցիչ. իսկ որք յայս վերացան աստիճան, յետ զանձն դատելոյ ձգտեսցուսցուք զքննութիւս 'ի տոհմս մեր և յազգս, և մի յօտարս. այլ 'ի սոսա զօրս և դատելոյն օգտեցուցանել կարեմք. և քննեալ ծանիցուք զայսքան բիւրապատիկ արհամարհութիւն օրինացս, զորս գտաք և գտանեմք, և երբէք յուղղելն ոչ ջանամք. Ե՞ր վասն. զի միշտ զմեզ գովեմք առանց զգործն կշռելոյ, անխտրաս մնացեալ յառաքելոյ որ ասէ. "Զգործս իւր կշռեսցէ իւրաքանչիւր ոք,,. և ապա զինչ. "անձին իւրում տացէ պարծանս և ոչ առ ընկերաւն,,: Որքան զտանիմք աղետից արժանի, որք առանց զգործս կշռելոյ պարծիմք 'ի վերայ ընկերացն. և թէ կշռեսցաք, երբ տեսաք զմերն քան զնոցայն գերա-

զանց. որք զօրէնս կոխեցաք՝ զորս նոքա սահէն այսօր հաստատուն. որք ըստ մեղաց մերոց տարագրեցաք 'ի հայրենի աշխարհէն՝ յորս նոքա վայելեն. որք նախ զհայրապետութիւնն և ապա զամենայն եկեղեցիս զրաւեցաք ընդ ժառանգութբ, յորս նոքա վիճակաւ ընտրութեանն կարգին. որք բարձաք զայցելութիւնն եպիսկոպոսաց 'ի ժողովրդոց, որոց նոքա արդ ևս հովուեն. որք ստերիւրեալ զսէրն Աստուծոյ ընդ երկիւղիւ զրաւեալ յեկեղեցւոյ սրբոյ արտաքս եղաք, 'ի յորս նոքա աղօթեն. որք փակեցաք զրխոստութիւնն յուսոյ և սիրոյն Աստուծոյ ժողովրդոց, զորս նոքա փեռեկեն. որք բարձաք զորոշմունս աստիճանաց յեկեղեցւոյ, որովք նոքա միշտ պարեն. որք լուծաք զպէմ օրհնութեանն կրօնաւորութեանս կարգի, որով նոքա միշտ նիքեն. որք բաժանեցաք 'ի հաւասարութենէն տօնից, որովք նոքա կցորդին. որք արհամարհեցաք զպարկեշտութիւնն եկեղեցական զգեստուց, որովք նոքա 'ի փառս Աստուծոյ զարդարին. որք խոտեցաք զարարածս Աստուծոյ հրաշաբար, զորս նոքա աղօթիւքն սրբեն:

Այս ամենայն առ օրէնս Աստուծոյ է մեղանչականութիւն, և ոչ 'ի մարմինս մեր կամ յանձինս. հասարակաց ազգիս մերք, և ոչ ումեմն վասն տկար հեշտութեան հաճելի, և ումեմն վասն պարկեշտութեան խոտելի: Զայսոսիկ յորժամ կշռեալ ոք յիւրմէ կողմանէն պախաս գտանէ, զխնդիր 'ի վերայ լի և անթերի ունողին պարտ էր ժպրհի, որ ոչ և յունելն հրաման էառ պարծիլ, այլ միայն անձին տալ պարծանս և ոչ առ ընկերան: Այս բամբասողական նեղք մեր զմեզ խոցոտեցեն, որպէս զի վիրօքն բժշկեսցուք յետ տրտմութեանն: "Արդ, ասէ, առ ժամանակն տրտմութիւն է, բայց յետոյ պտուղ խաղաղութեան նովաւ կրթելոցն հատուցանի յարդարութիւն": Այս և քննութիւն մեր ասաէն առ մեզ Ճարակեցի, հաւատոյ՝ խնձ գտանէ կերակուր որով բորբոքի, թերևս և ուտել վնոյն զօրեսցէ. բայց այժմ ոչ մնամ այսմ լինել, քանզի զատակն գտաք հողմեաւքս կանխաւ զկորստեանն: Աստուծոյ ամենայն ինչ հնարաւոր է, որ զի-

1 Մի՛ օրէն. հասարակ ինչ:

տէ զձեռն իւր բարձրացուցանել, յորժամ մարդկային հնարք վերջանան առ 'ի փրկութիւնն ։ Որոյ զդրունս աղօթից բախեալ զողորմութեանն, աստանօր կնքեմք զընթացս բանիս 'ի փառս անուան նորա սրբոյ . յորս ապաւինեալ բուռն հարաք, և նովաւ զօրացեալ կատարեցաք Քրիստոսիւ Յիսուսիւ տերամբ մերով և Հոգւովն նորա սրբով, որում յերկնաւորացն վեհից և յամենայն ազգաց քրիստոնէից և 'ի մէնջ հայաստանեայցս, համբուրիւ սիրոյ և միութեամբ հոգւոյս, անարժանիս բերանով փառք պատիւ և իշխանութիւն, այժմ և յեկեղեցին անդրանկաց յաւիտեանս յաւիտենից . ամէն ։



# ՆՈՐԻՆ

# ՍՐԲՈՅՆ ՆԵՐՍԵՍԻ

## ՅԻՇԱՏԱԿԱՐԱՆ

ԱՅՍ բանք և աստուածային օրհնաբանութիւնք՝ սպասաւորութեան մտաց և ձեռին իմոյ Թշուառ Ներսեսի ասացաւ 'ի Հոգւոյն Աստուծոյ 'ի նախագրեալ Թուականդ՝ վեցհարիւր քսան և վեցին, և 'ի ժամանակ կենաց մերոց մինչ էր քսան և չորս ամաց, և կայր 'ի լռութեան և միայնութեան 'ի մէջ լերանցն Տօրոսի. իսկ յետ ամաց ինչ դարձեալ ածայ յեկեղեցական պաշտօն, և 'ի մարմնական գործով զբաղանք. և զհուր տոչորման սրտի իմոյ որ 'ի բանքս ցուցաւ՝ հնարէի և յայլս բորբոքել, և ըստ բանիս գործ գլխաւորել, և անկարանայր այս. քանզի մի անգամ և երկիցս հանի զսոյն յատեան և 'ի ժողովս եպիսկոպոսաց և իշխանաց, և ոչ եղև պարապումն զանէ ընթերցման կամ ունկնդրութեան։ Եւ 'ի սոյն ժամանակս 'ի Թուականութեանս վեցհարիւր և յերեսուն և վեցին յափշտակեցաւ սուրբ քաղաքն Երուսաղէմ 'ի Թուրքաց ազգէ, և եկեղեցականքն և իշխանքն որք սպասաւորէին սուրբ տեղեացն՝ գերեցան. և համբաւս այս հասեալ յարևմուտս՝ զբնաւ ազգսն Թագաւորօք և իշխանօք՝ ըստ հրամանի Հռովմայ հայրապետին շարժեաց գալ յայս աշխարհ. և մինչ նոքա հեղուին անթիւ բազմութիւնք նաւօք 'ի ծովէ անտի 'ի Պտղոմիդեայ, 'ի Թուականութեան 'ի վեցհարիւր յերեսուն և ութն, յղեաց իշխողս մեր մեծ Լևոն զմեզ առ կաթուղիկոսն սուրբ տէր Գրիգոր յաթոռն հայրապետական որ կոչի Հռոմի կլայ 'ի վերայ Եփրատայ. և 'ի գնալ մեր յաւուրս պենտակոս-

տէրց յայնկոյս Մարաշայ, յարձակեցան 'ի վերայ մեր Թուրքք Մարք, և սրով ճարակեցին զորս ընդ մեզ կրօնաւորք և աշխարհականք՝ ոգիք իբրև քսան. յափշտակեցին ընդ այլ ինչսն և զգրեանքս, 'ի վերայ որոյ սգայի անմխիթար չունելով զհաւատարիմ: Իսկ ապա 'ի տեսչութենէ գթութեանն Աստուծոյ 'ի թուին վեցհարիւր քառասուն և մէկ, քննեալ ուր վաճառեալ էին՝ դարձուցաք զսոյն 'ի գերութենէն. քանզի գտաւ 'ի գաւառն Ջահնայ, և սատարութեամբ եպիսկոպոսի գաւառին՝ Ներսեսի և Սարղանայ կրօնաւորի՝ ածաւ սոյն առ իս վերստին, և եղև վշտագնեալ ոգւոյ իմոյ մեծ սփոփանք և մխիթարութիւնք, և առ Աստուած երկրպագութեան գոհութիւն: Փառք ամենասուրբ Երրորդութեանն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1 Մի օրին. Քահանայք:

